# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ

---

# ՈՍԿԵԲԵՐԱՆ

Ծ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ

## ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

### ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

## ԹՂԹՈՑՆ ՊԱՒՂՈՍԻ

---

ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ

---

*ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՌՈՎՄԱՅԵՑՒՈՑ, ՀԱՏԱԾՔ,*
*ՃԱՌՔ ԵՐԿԲԱՅԱԿԱՆՔ*



*Ի ՎԵՆԵՏԻԿ*
Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ
ՅԱՄԻ 1862 ՌՅԺԱ

զայնպիսի զաղանութիւն կայցէ. զի եթէ մարդոյ ուրուք գործեալ էր զայսպիսի ինչ երախտիս առ մեզ, բազում անգամ կամէաք լինել նորա ծառայք. իսկ որ այսչափ երախտիս արար, 'ի բաց դառնամք և չհաւանիմք: Ո՜ ծուլութեանս, ո՜ անմտութեանս, որ հանապազ 'ի չարիս և 'ի մեղս կամք:

Եթէ դէպ լինիցի փոքր բարի ինչ գործիցեմք, որպէս ապախտաւոր ծառայք, խնդրեմք փոխարէնս վարձուցն այսրէն, թէպէտ և ունիցիմք զվարձս յառնել ըղբարին, որ են իսկ մեծ վարձք թէ յուսով գործիցես: Իսկ որ զսոցին հակառակն առնիցէ և հաւատոյս ապահանջիցէ յայնցանէ որ առնիցէ՝ նորա վարձքն բանքն իւր իսկ են որպէս և ապաշնորհ ծառայիցն: Այս պարտ և պատշաճ է զամենայն ինչ վասն Քրիստոսի առնել, և ոչ վասն վարձուց ինչ, այլ վասն նորա միայն: Սորին վասն գեհեն սպառնացաւ և արքայութիւն աւետարանեցաւ, որպէս զի սիրեսցի 'ի մէնջ. և սիրեսցուք զնա որպէս պարտն է սիրել: Քանզի այս են մեծ վարձք, սա քան զթագաւորութիւն եւս հեշտութիւն է, սա ինքն է սոյզ փափկութիւն և փառք և պատիւ, սոյն ինքն է լոյս և բազում երանութիւն զոր ոչ կարէ բան յանդիմանս կացուցանել և ոչ միտք հասու լինել:

Բայց ոչ գիտեմ եթէ ուստի եկն յայսպիսի բանսամարդիկ որ ոչ զիշխանութիւն և զփառս զայժմու ժամանակեայս կարեն արհամարհել, վասն Քրիստոսի զարքայութիւնն հրամայեալ արհամարհել. բայց սակայն մեծամեծ և ստացքինս մարդիկն այնորիկ և յայսպիսի սիրոյ 'ի չարիս հասանեն: Նաւ որպէս Պետրոսն բազմակիզեր սիրով նորա, զի և քան զանձն և քան զկեանս և քան զամենայն ինչ զնա նախամեծար համարէր. և յուրժամ ուրացաւ, ոչ եթէ վասն գեհենին ողբայր, այլ զի զփափագեցելին իւր ուրացաւ, և քան զամենայն գեհենս նմա այն դառն և դժնեայ էր: Եւ զայս յառաջ քան զհօգւոյն շնորհսն ցուցանէր, և ցանկ հանապազ տատան էր և չանէր ժոյժ և ասէր. "Ո՞ւր երթայցես". և յառաջ քան զայս՝ թէ "ուր ո՞ երթիցուք". և դարձեալ "թէ հետևեսցուք քեզ ուր և երթայցես": Քանզի զի ամենայն ընդ ամենայնի նա էր նոցա, և ոչ զերկինս և ոչ զերկնից արքայութիւն նախապատուեաց համա-

չէր ինչ պատիւ։ Նոքա ուրեմն այս էր զոր ասէրն. "Մի՞թէ անհաւատութիւն նոցա զԱյ հաւատոյն խափանեսցէ՞, քաւ լիցի"։ Որպէս զի ասիցէ ոք՝ թէ ես զայս անուն պատուեցի, և նա անշնորհակալ եղև. այնպէս և աստ՝ թէպէտ և նոքա ոչ հաւատացին, ասէ, այլ ինձ մեղադրութիւն չբերէ և ոչ արատէ ինչ զիմ զմարդասիրութիւնս, այլ զնոցա զանզգայութիւնն յանդիմանէ։ Իսկ Պաւղոս ոչ եթէ միայն զայն ասէ թէ ոչ միայն չմերձենայ մեղադրութիւնն առ Ած 'ի նոցա անհաւատն լինելոյ, այլ ևս մեծագոյն ցուցանէ զնորա պատիւն և ըզմարդասիրութիւնն. յորժամ և հանդերձեալ են անարգել զնոսա, յայնժամ երևի պատուեալ։ Տեսանե՞ս որպէս եցոյց զնոսա պատժապարտ մեղադրութեանն որով նոքայն զուարճանային. զի և ինքն Ած այսչափ և այսքան ինչ պատիւս ետ նոցա[1], որպէս և զհանդերձեալսն յառաջագոյն ուսանէին, և ոչ առին 'ի միտ. բայց սակայն սա ոչ հրաժարեաց յիւրմէ բարերարութենէն, և նոքա զնա թշնամանեցին որ պատուեացն և որով պատուեցան։

Իսկ վասն զի ասաց եթէ ոմանք ոչ հաւատացին, երևի թէ ամենեքեան իսկ չհաւատացին. և զի մի դարձեալ, զըստ պատմութեանն ասելոյ, կարծիցի ոմանց թէ յոյժ չարախօսեսցէ զնոցանէ իբրև զթշնամի, 'ի կարգի մտածութեան և խորհրդապէս դնէ իմն վասն ճշմարտութեանն եղելոյ. այսպէս ասէ՝ թէ "Եղիցի Ած ճշմարիտ և ամենայն մարդ սուտ"։ Իսկ զոր ասէն այսպիսի ինչ է. ոչ ասեմ, ասէ, թէ ոմանք չհաւատացին, այլ թէ կամին չհաւատալ ամենեքեան։ Իսկ ճշմարիտն լինելոյ՝ թէպէտ և գործի այս բազում անգամ 'ի յափըշտակութենէ մնաց, և արդեօք ոմանց ծանրաբեռն ինչ կարծիցի զոր ասեմս և լի կարծեօք, այլ մանաւանդ ասացի իսկ արդարանալ Ած։ Զի՞նչ է արդարանալն։ Թէ դատաստան և քննութիւն լինի այնմ որ 'ի նմանէն հրէին եղև, և որ ինչ 'ի հրէիցն՝ նմայն եղև, յաղթութիւնն որ յԱյ և արդարութիւն նորա ամենայն։ Իսկ յորժամ եցոյց զայն յայտնապէս առաջինն ասացելովքն, յայնժամ ապա և զմարգարէն իսկ 'ի մէջ բերէ

1 Պակասէր յօրինակին եւ նոցա. յաւելաւ 'ի յունէն։

պարտ է։ Այլ քանզի նոքա վերջարանեան անձինք, որ են նուագարանք, քանզի ասէ՝ թէ «Ուռեաց նոցա կախեցաք զերգարանս մեր», այլ և ոչ այնպէս յանձն առնուլին երգել։ Նոյնպէս և մեք, թէպէտ և բերան ունիցիմք և լեզու՝ որ է գործարան բանին, չէ արժան համարձակել մինչդեռ եմք զօտարաբարութեանց եւ բանսարկուին ծառայք մեղացն։

Նաև ասա ինձ, զինչ անխիս առնել առ հեթանոսս որ յափշտակեսցէ և ապահեսցէ։ Որքան՝ թէ հրաժարեալ ՚ի կռապաշտութենէ և ծանիր զնա, մի արծաթոյ և մի ոսկւոյ երկիր պագանեն և մի յարգէ ՚ի քեզ։ Որդեաք չծիծաղիցէ զքեզ և ասիցէ. դու որ ասես զայդ՝ նախ ցոյց եթէ չխարխս այդպիսեաք, և ապա ուսո. վասն զի չեն իսկ զայդ նմին կռապաշտին և քրիստոնէին ամին այսմիկ խնամ տանել։ Այս զիարդ կարիցեմք զայլս անձնատել ՚ի կռապաշտութենէ յորժամ զմեզ ինքեանս ոչ կարիցեմք ազատել. վասն զի քան զընկերացն՝ մեզ ինքեանց մերձաւորք եմք։ Այս յորժամ զմեզ ոչ կարեմք ազատել, զիարդ զայլս ածիցեմք ՚ի հաւատս։ Ոչ թէ որ իւրում տանն բարիոք վերակացու չկարէ լինել և ոչ եկեղեցւոյ խնամ տանել, որպէս առաքեալ ասէ որ իւրում անձինն վերակացու չկարէ լինել՝ զիարդ զայլս ածիցէ յուղղութիւն։

Այս մի խինչ զայն ասեր՝ թէ չերկրպագեմ ոսկի կռոց. այլ զայն խինչ ցոյց՝ եթէ զնոյն ոչ գործես զոր ոսկին հրամայէ։ Այս վասն զի այլ և այլ են կռապաշտութեանն օրինակք, և ոմն զմամոնայ վարկանի տէր, և այլ ոմն զորովայնն իւր, իսկ միւս ևս զժնեայ՝ զցանկութիւնն։ Նոյն արդեաք չզոհես նոցա զուարակս որպէս և այլ կռապաշտքն. այլ որ ևս զժնդագոյնն է՝ զայն գործես, զքո իսկ զանձն զենուս և զոհես։ Նոյն արդեաք չկրկնիցես ծունր և երկիր պագանիցես. այլ ևս առաւել հնազանդիս. և յանձն առնուս զոր միանգամ հրամայեսցէ քեզ ոսկին և որովայնն և ցանկութեանն բռնաւորութիւն։ Վասն զի և կռապաշտքն վասն այսորիկ են գարշելիք և պիղծք, զի զախտս մեր աստուածացուցին. զցանկութիւնն Աֆրոդիտէս անուանեցին, իսկ զբարկութիւնն Արէս, իսկ զարբեցութիւնն Դիոնիսոսի տօնացին։ Իսկ եթէ ոչ քանդակես կուռս դու որպէս և նոքայն, այլ բազում

յօժարութեամբ նոցին իսկ ցանկութեանց ընկճիս՝ յայժամ զանդամն Քրիստոսի առնես անդամ պոռնկի, և զայլս ես լուանաս քոյով անօրէնութեամբն։

Վասն որոյ աղաչեմ, գիտելով զանպատեհութեանն զաղտեղութիւն, փախերուք 'ի կռապաշտութենէ. վասն զի այսպէս Պաւղոս կոչեաց զագահութիւն։ Փախերուք մի միայն յընչիցն ագահութենէ, այլ և 'ի ցանկութենէ չարեացն և 'ի հանդերձիցն և 'ի սեղանոյն բազմախորտիկաց և յայլոցն ամենայնեաց։ Վասն զի բազում և յոյժ դառնագոյն տալոց եմք մեք վրէժս որք ոչ հաւատամք օրինացս, որպէս և ասէ՝ թէ "Ծառայ որ գիտէ զկամս տեառն իւրոյ և ոչ առնէ, բազումս տանջեսցի„։ Այլ արդ յայսպիսի դատաստանէ փախիցուք և լիցուք պիտանիք անձանց և ընկերաց. զամենայն չարիս 'ի բաց հալածեսցուք յանձանց և զհետ երթիցուք առաքինութեանն, և այսպէս հասանիցեմք հանդերձելոց բարութեանցն։ Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք Հօր հանդերձ Հոգւովն սրբով այժմ և յաւիտեանս. ամէն։

# ՃԱՌ ԽՕԹՆԵՐՈՐԴ

“Ո՞րք են իսկ առաւել իցեմք. ամենեւին և ոչ իսկ. քանզի յառաջագոյն իսկ մեղադրեալ եղեալք Հրէից և հեթանոսաց ամենեցուն ընդ մեղօք լինել. որպէս և գրեալ է՝ թէ ոչ գոյ արդար և ոչ մի, և ոչ գոյ որ իմանայ, և ոչ ոք է որ խնդրէ զԱծ. ամենեքեան խոտորեցան 'ի միասին և անպիտանացան. ոչ ոք է որ առնէ զքաղցրութիւն, և ոչ ոք է մինչև 'ի մի. գերեզմանք բացեալ կոկորդք նոցա, լեզուաւք իւրեանց նենգաւորք եղեն. թոյն իժից 'ի ներքոյ շրթանց նոցա. որոց բերանք անիծիւք և դառնութեամբ լի են. երագ են ոտք նոցա հեղուլ զարիւն. բեկումն և թշուառութիւն 'ի ճանապարհս նոցա, և զճանապարհն խաղաղութեան ոչ ծանեան. ոչ է երկիւղ Այ առաջի աչաց նոցա”։

Մեղադիր եղև Հրէից, մեղադրելոց և զհեթանոսս. այս ըստ կարգի էր առնել զարդարութեանէն որ 'ի հաւատոցն։ Քանզի յորժամ ոչ որ ըստ բնութեան օրէնքն էին՝ շահ ինչ գործիցեն, և ոչ որ գրովն տուաւ՝ աւելի ինչ գործեաց, այլ և յոյժ ծանրացան այնոցիկ որք ոչ գնային 'ի լաւ անդր 'ի կիր արկլին, և մեծամեծ տանջանաց ցուցին արժանաւորս զնոսա, կարևոր էր այնուհետև շնորհացն փրկութիւն։ Եւ առա այժմ զայն, ով Պաւղոս, և ցոյց։ Բայց չև եւս փառահանայր ակն ածեալ 'ի Հրէիցն, զի մի զարհուրիցին ինչ և անընդունակք գտանիցին բանին։ Բայց դարձեալ 'ի մեղադրութիւն դարձուցանէ զբանն, և նախ ամբաստանէ զնոցանէ, զԴաւիթ յառաջ բերէ զայս ասելով բազում անգամ, զոր Եսայի փոքր մի բանիւք եցոյց, և այսպէս զօրաւոր կազմէ զհահանջումնն, որպէս զի մի 'ի բաց սուիղիցէ լուծն, և մի դարձեալ յորժամ 'ի հաւատոն կըրթիցէ զբանն՝ այնուհետև 'ի բաց խայտառակեսցէ լուծն, բաւական համարի զմարգարէին զմեղադրութիւն. որպէս զի ամենեքեան իսկ զչար գործէին, ասէ. և եթէ ոչ երբեք խառնեցին ընդ չարն զբարի ինչ, այլ միայն 'ի չարիսն մտէին։ Եւ ոչ այսչափ միայն, այլ և յոյժ համարձակութեամբ և աներկիւղ զայս գործէին։

Իսկ յորժամ ածեցոյց զերկիւղն, յայնժամ առաջ ածէ և զշնորհացն և բազում կարգաւորութեամբ ցուցանէ զզանկութիւն զմեղացն թողութեան և ասէ. «Այժմ առանց օրինացն իսկ արդարութիւնն Այ յայտնեալ է»: Մեծամեծս բարբառեցաւ, և բազում յարդարմանս պէտք են: Զի թէ որ օրինօքն կեին, ասէ, ոչ զերծան 'ի տանջանացն, այլ և յոյժ ծանրաբեռինք եղեն, ապա զիա՞րդ իցէ առանց օրինացն ոչ միայն 'ի տանջանացն զերծանել, այլ և արդարանալ ևս: Իսկ երկուս ծանրագոյնս եդ աստ, և զարդարանալն, և զի առանց օրինացն հասանեմք այսմ բարութեան: Սորին վասն չասաց արդարութիւն միայն, այլ թէ Այ արդարութիւն. 'ի պատուոյ երեսացն և զշնորհսն մեծացուցանէ և զօրաւոր զխոստմանն. քանզի ամենայն ինչ կարողութի է նմա: Իսկ չասաց թէ տուան, այլ թէ յայտնի է, զի զնորաձևութեանն զմեղադրութիւն 'ի բաց կորեսցէ. քանզի որ ինչ յայտնին՝ որպէս զհին և զծածուկ ինչ յայտնի: Իսկ ոչ այսչափ միայն, այլ և որ ըստ կարգին է՝ զսոյնս յայտնէ՝ թէ չեն առժամայնք և նորք այսօրիկ:

Ուստի եթէ յայտնեալ է. ապա յարէ 'ի սոյնս՝ թէ «Վկայեալ յօրինացն և 'ի մարգարէիցն»: Մի՛ վասն զի այժմ տուան՝ խռովեցիս ինչ որպէս զնոր և զօտար ինչ իրս: Տեսանե՞ս՝ անդուստ 'ի վերուստ իսկ ասէ, զի օրէնքն և մարգարէքն գուշակէին զնմանէ յառաջ. և զկէսս եցոյց յօրինուած այսօրիկ, և զկէսս զհանդերձեալսն ցուցանէ: Յառաջին 'ի բանսն զԱմբակում մարգարէ ածէ 'ի մէջ որ ասէն՝ թէ «Արդարն 'ի հաւատոց իմոց կեցցէ». իսկ յետ այնր բանից զԱբրահամ և զԴաւիթ և զայլս զամենեսեան որք զայսպիսիս առմեզ ասացին: Իսկ քանզի բազում բանք էին վասն արանցս այսոցիկ առ Հրէիցն և յոյժ պատիւք. վասն զի մին հայրապետ և մարգարէ էր, իսկ միւսն թագաւոր և մարգարէ. քանզի վասն սոցին իրաց իսկ ընկալեալ էր նոցա աւետիս, և առ երկուսեան եղեն խոստմունքս այս: Վասն զի և Մատթէոս յորժամ սկիզբն առնէ աւետարանին, նախ զերկոսին զնոսա յիշէ, և ապա 'ի կարգի յառաջ բերէ զայլ զնախնիսն ասելովն «Գիրք ծննդեան Յիսուսի Քրիստոսի». և ոչ յապաղեաց ասել յետ Աբրահամու և Իսահակայ և Յակոբայ զԴա-

առաջադրին մեղացն գործելոց„: Տեսանեմս զիարդ հանապազորդ յիշեցուցանէ նոցա զկանոնանն: Ի երկրորդին ասէր՝ թէ օրինաւքն է գիտութիւն մեղաց, և զհետ արա՝ թէ ամենեքին մեղան. իսկ աստ ևս յաճախագոյն: Այլ ոչ ասաց վասն մեղացն գործելոց, այլ թէ վասն յառաջագոյն, այսինքն զմնացելութիւն: Քանզի ոչ ինչ կայր յոյս առողջութեան. այլ որպէս մարմին անդամալուծեալ կարօտ է վերստին շնորհացն, այնպէս և հոգի մեռեալ: Մանաւանդ թէ ևս դժնեայ, որպէս թէ ըստ կարգի դնիցես՝ մեծ պատճառք գտանին մեղադրութեան: Այլ զինչ իցէ այս, 'ի ներքեն ն̃յ վասն յառաջագոյն մեղացն գործելոց: Քանզի և ոչ ասել ոք ունի, ասէ, թէ ոչ վայելեցաք 'ի ներքեն և 'ի քաղցրութիւնն: Որ է „այժմու ժամանակիս„, առաւել տեսակ զօրութեան և մարդասիրութեան ն̃յ: Քանզի յորժամ անյոյսքն էաք և զվճիռ մահու ընկալաք յանձինս մեր, և աճեցին մեղքն, յայնժամ եցոյց զիւր զօրութիւնն, զի ուսցիս զառաւել զարդարութիւն նորա. զի եթէ 'ի սկզբանն իսկ եղեալ էր այս, ոչ այսպէս սքանչելի և հռաչակաւորագոյն երևէր, որպէս այժմ յորժամ ամենայն բժշկութեան օրինակքն յանդիմանեցան:

Այլ արդ զի՞նչ ասէ: „Ո՞ւր են պարծանքն, արգելան. որո՞վ օրինօք, 'ի գործո՞ցն. ոչ, այլ օրինացն հաւատովքն„: Մեծ ջան էր ցուցանել Պաւղոսի թէ այսպիսի ինչ հաւատքն զօրեցին զոր և ոչ անգամ զմտաւ ածել կարացին օրէնքն: Այլ իբրև ասաց՝ թէ արդարացուցանէ ա̃ծ զմարդն 'ի հաւատոցն, բուռն հարկանէր դարձեալ զօրինացն: Այլ չասէ թէ ո՞ւր են ուղղութիւնք հրէիցն և կամ ո՞ւր արդար իրքն, այլ թէ ո՞ւր են պարծանքն: Ամենայն ուրեք ցուցանէ թէ ջատագով օրինացն է, որպէս թէ բազում ինչ քան զայլսն ունելով և գործ ինչ ոչ վճարել: Այլ յորժամ ասաց եթէ ո՞ւր են պարծանքն, չասաց թէ ապականեցաւ և կործանեցաւ, այլ թէ փակեցաւ. մանաւանդ թէ արդ իսկ է, զի ոչ իսկ ունի ժամանակ: Որպէս և յորժամ զդատաստանին լուեալ զհրամանն՝ ոչ ևս ունի այսուհետև ժամանակ դատաստանի 'ի վերայ այնոցիկ որ յապաշխարութիւնն, այսպէս ապա և վճիռն 'ի բաց բարձաւ 'ի քէն և յամենայն հանգերձեալ բարութիւնսն վայելես. և 'ի ժամա-

իսկ միւսն բազում նենգութիւն գործէ։ Իսկ եթէ հնար էր մերկացուցանել զոգիս ձեր, ապա յայնժամ տեսանէիր հաւաստեաւ զայս ամենայն 'ի ներքս, և ապա գիտէիր թէ ոչ մոլիմ զայս ասելով։

Ո՛չ տեսանիցէք զզօրականսն զի յորժամ խաղաղութեան ժամանակ է, զիարդ 'ի բաց դնեն զզէնսն, և մերկք և առանց վառուածի շրջին և առանց պատերազմի անցանեն ընդ տեղիսն. իսկ յորժամ զինուն վառիցին, յայնժամ ապա պահապանս և յառաջապահս և գիշերապահս և հրայրեցութիւնս հանապազորդ. և ոչ եւս այնուհետև խաղաղութեան է ժամանակն, այլ պատերազմի։ Սոյնպէս և առ մեզ գտանի լինել. պահեմք զանձինս 'ի միմեանց և երկնչիմք, և 'ի միմեանց ականջս զընկերացն բամբասանս խօսիմք. և յորժամ տեսանեմք եթէ ոք մերձենայ առ մեզ, յայնժամ լռեմք, ապա և 'ի միջոյ բառնամք զամենայն, որ ոչ վստահանալոյ է, այլ երկիւղի։

Բայց զայս առնեմք, ասէ, ոչ առ 'ի վնասել զնոսա, այլ զի մի զոք վնասեսցուք։ Վասն այսորիկ իսկ հեծեմ և երկնչիմ զի 'ի մէջ կենդանի եղբարց այնպիսի պահպանութեան կարօտ եմ, որպէս զի մի վնասեսցին 'ի միմեանց. և հրայրեցութիւնք պիտոյին, և պահապանս և յառաջապահս կարգիցեմք։ Իսկ պատճառք ստութեանն և նենգութեանն է՝ սիրոյն 'ի բաց մերժումն 'ի մէնջ. ատոր և պատերազմ անհաշտ լինի։ Սորին վասն գտանեմ զի բազումք 'ի հեթանոսս վստահ լինին մանաւանդ քան 'ի քրիստոնեայս։ Իսկ արդ զինչ ասիցեմք, որպիսում ամօթոյ է այս արժանի, որչափ արտասուաց, որքան ողբոց։

Իսկ զինչ առնեմ, ասէ, զի չարաբարոյ է այս ոք և դժնեայ։ Իսկ ուր է փիլիսոփայութիւնն քո, այսինքն է իմաստասիրութիւնն. ուր և առաքելական օրէնքն են որ հրամայեն զմիմեանց զծանրութիւն բառնալ։ Զի եթէ զեղբայր չգիտես 'ի կիր արկանել և օգնել, իսկ օտարին ապա և ուստի կարիցես բարի առնել և օգտել զնա. զի եթէ զքո զանդամն ոչ գիտացեր շահել, զիարդ յօտարացն 'ի քեզ կարասցես յանգուցանել և շահել զդք։ Բայց զինչ գործեցից, յոյժ մղձկեալ եմ առ 'ի բխել արտասուս, զի թէպէտ և աղբիւր իսկ յորդահոս

բերանոյս. և ապա յայնժամ առնուցուս 'ի միտ՝ թէ զանգամն Պաւղոսի այլոց յաչաց հանես և զքո մարմինդ ուտես, և զահագին զդատաստանն զայն զանեղրական քեզ զժնդակս պատրաստես : Վասնզի նետն որ 'ի քէն արձակի, ոչ թէ զվիրաւորեալն, այլ զքեզ ապականէ

Այլ վնասեաց ինչ արդեօք քեզ եղբայրն և չար արար : Յոգւոց հան և մի չար ինչ ասեր. պատուաւես մի վասն քոյդ վնասուն, այլ վասն նորա կորստեանն, որպէս և քո տէրն զՅուդա արտասուէր. և ոչ զի ինքն խաչելոց էր՝ յայն սակս, այլ զնա որ մատնիչն լինելոց էր : Թշնամանեցին զքեզ և հայհոյեցին. աղաչեա զԱծ, որպէս զի երագ քաւիչ եղիցի նմա : Եղբայր քո է, անդամ քո կոչի. ազգակից երկունք երկնեցան և վասն նորա, 'ի սոյն իսկ 'ի սեղանս նմանապէս քեզ կոչեցաւ :

Այլ առաւել, ասէ, Ձոխանայ բարկութեանն, և չունիմ ժոյժ : Աւան այսորիկ իսկ են քեզ մեծ վարձք, սորին վասն և զօրութիւն արժան է քեզ 'ի բաց մերժել : Վասնզի խոցեաց զնա սատանայ և ղազդոյ ըղվէրան ընկալաւ. մի և դու վիրաւորեր զնա, մի և դու ընդ նմա ներնգեր եղբօրն : Մինչ դու զօրաւոր կաս, կարես և զնա ապրեցուցանել. իսկ աղ՝ եթէ և դու ես անկանիցիս փոխանակ անդրէն թշնամանելով զնա, ապա այսուհետև ով զքեզ յարուցանիցէ. այն որ վիրաւորեցաւն, այլ չէ բաւական միանգամ անկեալ կայ 'ի գետնի. իսկ դու որ այժմ զինուոր անկար յետ նորա. և զիարդ որ քեզ ինքեան չկարացեր բաւական լինել, այլոց ձեռն կարկառես յօգնականութիւն : Այլ այսուհետև առաքինութեամբ և յառաջ մատո զկաղանող, և զնա որ մեռեալ է՝ ձգեա և հան 'ի պատերազմէն քայով երկայնմտութեամբ : Խոցեաց զնա արտմութիւն, մի և դու խոցեր, այլ և զառաջինն նետոն 'ի բաց հան :

Իսկ եթէ այսպէս մերձեցեալք զմիմեանս, խոկոյն ամենեքին առժամայն ողջք գտանիցիմք. իսկ թէ հակառակ միմեանց զինիմք, այսուհետև և ոչ ինչ պէտք սատանայի 'ի կործանումն մեր : Աւան զի քան զամենայն պատերազմունս դժնեայ և զարհուրելի այն է որ 'ի ցեղակցութենէն լինի. և ես դժնեայ քան զքեզ ազգակցութիւն՝ որպէս զի առաւել ես է պատիւ արդարութեանն մե-

րոյ, մանաւանդ թէ ազգակցութիւնս այս մեծ է իսկ քան զայն :

Սպան երբեմն զԱբէլ եղբայրն և զազգակցութեանն արիւնն եհեղ. այլ այս մահ ևս դառնագոյն քան զայն է. զի որչափ մերձաւորութիւնս այս մեծ է, սաստկութիւն այս քան զայն: Սատան զի նա զմարմինն տապաստ արկ, իսկ դու ընդդէմ ծնուլոյն սրեցեր զսուրն: Այլ չար ինչ կրեցեր զառաջինն, և այն զինչ է. վասն զի ոչ եթէ ըկէին է չար, այլ որ զչարն առնէ՝ այն է չար. Տես այսպիսի ինչ է. սպան Կայէն, սպանաւ Աբէլ. արդ ո՞վ որ էր մեռեալ. որ յետ մահուանն գոչէր "Ձայն արեան եղբօր քո, ասէ, գոչէ առ իս յերկրէ", եթէ որ կենդանւոյն դողայրն և սասանէրն: Ո՞ արդեօք սա էր զոր աղորմելի բազում անգամ քան զմեռեալս էր առնանել. զի լաւ է մեռանիլ քան զմեռանել, թէպէտ մինչև 'ի մահ իսկ է :

Սուրբ և զայն թէ որպիսի չարիք են մեռանելոյ զայլս, թէպէտ մինչև յարիւն ոչ զօրեսցէ գործել զչար: Մերատորեաց և 'ի վայր կործանեաց նա զեղբայրն. այլ ո՞ տանջէր: Նորձա 'ի մէջս և սպանաւ առանց իրաւանց Աբէլ, և 'ի վախճանելն կշտամբէ և ասէ և յանդիմանէ. իսկ նա 'ի կենդանութեանն լուռ կայր և ամաչէր և զչարէր յամենեցունց և ընդդէմ իւր դառնէր զիւրան. վասն զի ոչ զոր ինչ կամէրն զայն կարող յորինել: Սպանանէ զնա, քանզի և եւս սիրեցեալ յոյժ. ակն ունէր թէ և 'ի սպանանելն և 'ի սիրոյն 'ի բաց մերժէ զնա: Իսկ նորա ևս առաւել սիրեցեալ զնա, և յետ մահուանն խնդրէր զնա ած. "Ո՞ւր է, ասէ, Աբէլ եղբայր քո": Ոչ եթէ շիջուցեր 'ի սպանանելն զսէրն, այլ ևս առաւել վառեցեր. և ոչ եթէ նուազեցուցեր ինչ զպատիւն սպանմամբն, այլ յոյժ յաղթեցեր: Նա յառաջ քան զսպանումն հնազանդեցոյց զնա քեզ ած. իսկ յորժամ ծախեցերն զնա, արդ և մեռեալն զքեզ տանջէ. վասն զի այսպիսի սէր է իմ առ նա, ասէ: Ո՞վ էր արդ որ դատապարտեալ գտանէր, որ չարչարէրն, թէ որ չարչարեցաւն. որ այնչափ վայելեաց յոյժ երախտիւն, եթէ որ զչքնաղ և զզարմանալի և զանհնարին զդատաստանն ընդունէր: Զերկեար, ասէ, 'ի նմանէ մինչ կենդանին էր, ունիս երկնչել յետ վախճանի նորա. ոչ

դողայիր մինչ հանդերձեալն էիր տանել զսուրն 'ի նա, տացէ զքեզ դողումն հանապազ յետ հեղլոյ զարիւնն: Մինչ կենդանին էր, ծառայ քո էր և չկամէիր. յետ վախճանին տէր քո գտաւ ահաւոր և սոսկալի:

Այլ արդ զայս գիտացեալ, սիրելիք, փախիցուք 'ի նախանձուէ, շիջուսցուք զչարութիւնն և տացուք միմեանց փոխ զձեռն, զի այսու ընդունիցիմք զպարգևս պտղաբերութիւնն յաւժամայն կենցաղումս և 'ի հանդերձեալ կեանսն շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր հանդերձ հոգւովն սրբով այժմ և յաւիտեանս. ամէն:

## ՃԱՌ ԻՆՆԵՐՈՐԴ

“Այլ զի գրեցաւ ոչ եթէ վասն նորա միայն՝ եթէ համարեցաւ նմա յարդարութիւն, այլ և վասն մերոյ համարելոց է, որք հաւատամք յայն որ յարոյց զՅիսուս զտէր մեր 'ի մեռելոց”:

Բազում և մեծամեծ առաց վասն Աբրահամու և վասն հաւատոցն նորա և վասն արդարութեանն և վասն պատուոյն զոր առ յԱյ. Ապա զի մի ասիցէ լսողն եթէ զի՞ առ ի՞ս՝ նա ինքն արդարացաւ, տանի կացուցանէ զմեզ մերձ առ հայրապետին գործեալ. վասն զի այսպիսի է հոգևորականն բանին զօրութիւն: Մինչև որք 'ի հեթանոսաց աւժամայն եկեալքն՝ որոց չէր ինչ վաստակեալ, ոչ միայն հրէից հաւատացելոց եցոյց ոչ ինչ ունել նուազ զհեթանոսին, այլ թէ և ոչ քան զհայրապետն իսկ: Մանաւանդ եթէ պարտ է զարմանալի ինչ և մեծագոյն ասել, եթէ այսչափ ինչ է մեր բարի ազգակցութիւնս, որպէս զի նորա հաւատքն մերոյս օրինակ լինէին: Այլ ոչ ասաց, թէ նմա համարեցաւ՝ ապա և մեզ, զի մի 'ի խոր հուրդս արկանիցէ ինչ զլսողն. այլ ճոխութեամբ բարբառի զգ̃ծայլին օրէնսն, և 'ի գրոց առնէ ամենայնի վճիռ: Ո՞ր վասն գրեցաւ, ասէ. զի և մեք հաւատասցուք՝ եթէ նոյնպէս արդարանամք. քանզի 'ի նոյն իսկ

հաւատացաք ա՛ծ և մեք և վասն նորին իրաց, Թէպէտ և զդէմն և զհետևայարանսն ոչ տեսաք:

Այլ իբրև ասաց զհաւատոյն մերոյ, ապա ձգաէ և զանեզրական զնո՛յ զմարդասիրութիւնէն զոր միշտ և ցանկ յեղյեղու, և զխաչն 'ի մէջ բերէ, զոր և այժմ յայտ արար ասելովն. "Որ մատնեցաւն վասն յանցանաց մերոց, և յարեաւ առ 'ի զմեզ արդարացուցանելոյ,,: Տես որպէս ասաց զպատճառս մահուն, զնոյն ինքն և ցուցակ յարութեանն գործէ: Նա՛ր վասն խաչեցաւն, ասէ: Ոչ վասն անձին ինչ մեղաց, և յայտ 'ի յարութենէն է. զի եթէ մեղաւոր ոք էր և պատժապարտ, ապա ոչ կարէր յառնել. և եթէ յարեաւ, որպէս և յարեաւն իսկ, յայտ է թէ չէր մեղաւոր: Այլ եթէ չէր մեղաւոր, ընդէ՞ր խաչեցաւ. վասն այլոց. և եթէ վասն այլոց, ապա ճշմարիտ և յարեաւ: Զի մի ասիցես թէ զիարդ կարիցեմք որք յայնչափ բազում մեղաց եմք պարտականք՝ արդարանալ, եցոյց եթէ զամենայն իսկ միանգամայն ջնջեաց զմեղս, և 'ի հաւատոցն Աբրահամու որով արդարացաքն և 'ի փրկչական չարչարանացն: Այլ զի հաստատեսցէ զբանն զմեղացն թողութեան՝ ասաց զմահուանէ նորա, ապա ձգաէ և զյարութենէն: Այլ ոչ եթէ վասն այնորիկ մեռաւ, ասէ, զի պատժապարտ անձնանաց և դատապարտութիւն գործեսցէ զմեզ, այլ զի ազատեսցէ յայնպիսի իրաց զախտեալսն. սորին վասն մեռաւ և յարեաւ, զի զարդարութիւն գործեսցէ 'ի մեզ:

"Այլ արդարացեալք 'ի հաւատոցն, խաղաղութիւն կալցուք առ ա՛ծ 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի,,: Զինչ է՝ խաղաղութիւն կալցուք: Ոմանք ասեն՝ մի ինչ ամբոխեսցուք և մի ինչ հակառակեսցուք յօրժամ զօրէնսն 'ի ներքս կամիմ ածել: Բայց ինձ թուի թէ վասն առաքինութեան ճառեալ խօսի ընդ մեզ, վասն զի բազում ինչ միջամտեցաւ վասն հաւատոցն, և որ 'ի գործոցն արդարութիւնն էր՝ առաջին եղ. ապա զի մի ոք ասիցէ եթէ ծուլութեան պատճառք ասացուն է, ասէ՝ "Խաղաղութիւն կալցուք առ ա՛ծ,,. այսինքն է մի ես մեղիցուք և մի դարձեալ անդրէն յառաջին վարսն դարձցուք. այս է որ առնէ պատերազմ ընդ մեզ և ընդ ա՛ծ:

Այլ զիա՞րդ գոյ հնար, ասէ, ոչ եւս մեղանչել: Որպէս

յաստուածութեան եղև հնարաւոր յորժամ այնչափ ունէաք զդատապարտութիւն մեղաց և միանգամայն յամենայնէ ազատեցաք 'ի ձեռն Քրիստոսի, ապա և առաւել այժմ գոյ հնար կալ մնալ 'ի նմին արդարութեն։ Ման զի չէ զոգ նմին չասնուլ զխաղաղութիւն և զտուեալն պինդ ունել. սորին վասն որ դժնդակն թուէր, 'ի յոյժ դիւրութիւն եկ։ Այլ արդ կալ մնալ 'ի նմին դիւրութե և ուղղութեան յանձն առցուք և նմին պարապել։ Այլ այսու թուի ինձ թէ ոչ միայն զդիւրութիւն ակնարկէ, այլ զևս լաւագոյնն՝ զհաշտութիւնն, զի իւրովք հաշտեցոյց։ Նոյն ընծայէր եթէ և զայլն ևս երախտիս տայ 'ի մեզ։

Այլ զի մի թուիցի ումանց եթէ ձրի զամենայնիս հաշտեցոյց ընդ հօր, վասն այսորիկ ասէ։ "Որով զընծայութիւնն իսկ ընկալաք 'ի հաւատոյն"։ Ո՞ր եթէ մինչ հեռաւորքն էաք՝ մերձակայս արար զմեզ, բազում առաւելութեամբ զմերձակայս ընդունիցի։ Դու և զայն ած զմտաւ զիարդ ամենայն ուրեք զերկուսն դնէ և զնորայն և զմերս։ Այլ նորայն պէսպէս և ազգի ազգի, զի և մեռաւ վասն մեր և զմեզ հաշտեցոյց ընդ հօր և մերձեցոյց առ նա և շնորհս ետ անբաւս. իսկ մեք զհաւատոյն միայն ընծայ մատուցաք. վասն որոյ ասէ՝ եթէ "Հաւատովք 'ի շնորհս յայսոսիկ"։ Ո՞ր շնորհս, ասա ինձ. զի արժանի եղաք գիտութեան այ և դարձաք 'ի մոլորութենէ և զճշմարտութիւնն ծանեաք և ամենայն իսկ բարութեանցն արժանի գտաք 'ի ձեռն մկրտութեանն։ Սորին վասն մերձեցոյց զմեզ, զի զայս ամենայն շնորհս ընկալցուք. ոչ զի միայն լոկ մեղացն թողութիւն լիցի 'ի հաշտել անդ, այլ զի և 'ի բիւր պատիւս վայելլիցեմք։ Այլ ոչ այսչափ միայն յայսմ եկաց մնաց, այլ և այլ ինչ խոստացաւ՝ զանճառելին զայն և որ քան զամենայն միտս և զբանս գերազանց են բարութիւնքն այն։ Այլ զերկոսին դնէ. յորժամ ասէ զշնորհըս զայս, զմերձակայէն յայտ առնէ զոր ընկալաք. իսկ յորժամ ասէ՝ թէ "պարծիմք յուսով փառացն այ", այսու զամենայն զհանդերձեալսն ցուցանէ։

Այլ բարւոք ասաց "յորում հաստատեալ եմք". վասն զի այնպիսի են այ պարգևքն, չգոյ կատարումն, չունի եզր և վախճան. այլ ևս մեծագոյն անձէ հանա-

պաղ, որ առ մարդիկ այնպիսի ինչ ոչ գտանի երբէք ։ Այդպիսի ինչ է զոր ասեմ․ Եւս որք զխոնարհութիւն եւ զփառս եւ զհարստութիւն, այլ չկայ 'ի նմին հանապազ, խոկոյն եւ վաղվաղակի անկանի․ Թէպէտ եւ մարդ չհանիցէ 'ի նմանէ զայն, սակայն մահ 'ի վերայ հասեալ զամենայնն անջատէն 'ի նմանէ ։ Իսկ զսոյն եւ ոչ մի ինչ յայտապիսեացս․ վասն զի ոչ մարդ եւ ոչ ժամանակ եւ ոչ բազմութիւն ինչ իրաց եւ ոչ նոյն ինքն սատանայ եւ ոչ մահ յորժամ 'ի վերայ հասանիցէ՝ կարէ հանել զնա 'ի մէնջ ։ Նոյն եւ յորժամ մեռանիցիմքն, յայնժամ առաւել զգուշութեամբ ունիցիմք զնա, եւ բազում եւս միշտ առ մեզ մնայ եւ վայելեմք 'ի բարութիւնսն, որպէս զի հանդերձելոցն հաւատացեալք 'ի մերձակայէս, եւ զոր ընկալաքս հաստատեսցուք, եւ այնց հաւատամք զի զայս ընկալաք ։ Վասն այսորիկ եւ ասաց իսկ՝ թէ "Պարծիմք յուսով փառացն այ", զի ուսցիս թէ որպիսում տեւոց արժանի է ընդունել զհաւատոն ։ Ոչ միայն վասն տուելոցն, այլ եւ վասն հանդերձելոցն յոյս, այսպէս հաւտատուն եւ անյայտ է քան զտուեալս․ եւ վասն նորա պարծիմք իսկ ։ Որոյն վասն եւ փառս կոչեմք, ասէ, զի յայ փառս ամենայն կատարի, քանզի 'ի ձեռն նորա գործի ամենայն ։

Իսկ զինչ ասիցեմք եթէ հանդերձեալ բարութիւնքն արժանի են պարծանաց․ նոյն ինքն որ աստէն յաշխարհիս մեզ չարիքն թուին, եւ նեղութիւնքն որ հասանեն 'ի վերայ վասն նորա, բաւական է զուարճացուցանել զմեզ եւ ուրախ առնել․ վասն որոյ եւ զնոյնիմն ածեալ ասէր՝ թէ "Ոչ այսչափ միայն, այլ եւ պարծիմք եւս 'ի նեղութիւնս մեր"։ Զմտաւ ած թէ որչափ ինչ իցեն հանդերձեալքն, յորժամ որ տրտմականքն թուիցին՝ զուարճանամք վասն նորին յուսոյ․ քանզի այսպիսի են այ պարգեւքն, եւ չիք ինչ 'ի նոսա վհատութիւն ։ Քանզի արտաքին իրաց մրցումն ջան ունի եւ կսկիծ վիրաց եւ ընդ իւղ եւ ընդ փոշի թաթաւումն․ իսկ ապա պսակացն բերումն եւ բազմութեանն գովութիւնք զհեշտութիւն մատուցանեն նմա ։ Իսկ աստ ոչ ինչ այսպիսի էր, այլ 'ի մրցարանին իսկոյն եւ ջանն 'ի վերայ ։ Վասն զի բազում փորձութիւնք յառնեն 'ի վերայ նոցա յայնժամ, եւ զի արքայութիւնն յուսով միայն էր խոստացեալ նո-

ցա, և որ զժնեայն է՝ այն ատեն առ ոտս, և հեշտու-թիւնքն անհնկալութեամբ, այս զտկարաց զիջման լուծա-նել կարող էր յառաջ քան զպատկն։ Իսկ ապա յոր-ժամ յետ պատկացն և զյաղթութիւնն ևս առնուին, յայնժամ ապա ասէին՝ թէ և 'ի նեղութիւնս պարծել պարտ է։ Այլ չասաց թէ պարտ է պարծել ձեզ, այլ թէ պարծիմք մեք. իւրովք կերպարանօքն և զայս ես 'ի ներքս ածէ։

Այլ՝ եթէ զարմանալի ինչ թուի ասացուածն, որք սո-վովն և շղթայիւքն զնա տանջէին և թշնամանէին, և նա պարծել համարէր այնու, վասն այսորիկ մեծագոյնս կազմէ և յարդարէ. պարտ է, ասէ, պարծել ոչ միայն 'ի հանդերձեալսն, այլ և յաժամանակեայ չարչարանս և 'ի նեղութիւնս. քանզի նոցա խնքեանց առանձին և նեղութիւնքն բարութիւն թուէին։ Որ վասն արդեօք. զի համբերութեամբն օժանէին։ Վասն որոյ և յաւէր իսկ թէ "Պարծիմք 'ի նեղութիւնս". ապա և զպատ-ճառն յաւելու ասելովն՝ թէ "Նեղութիւնքն զհամ-բերութիւն գործեն"։ Տես դարձեալ զհակառակու-թիւնն Պաւղոսի զիարդ անդրէն 'ի հակառակն շրջէ զբանն։ Այլ վասն զի նեղութիւնքն զյուսահատութիւնս ածելոց էին վասն հանդերձելոցն, իսկ նա ասէ՝ այժմ արժան է վստահանալ և համարձակել յորժամ 'ի նե-ղութիւնս եմք, և ոչ յուսահատել 'ի հանդերձելոցն։

"Նեղութիւնք զհամբերութիւն գործեն, ասէ, իսկ համբերութիւն զհանդէս, հանդէս զյոյս, յոյս ոչ եր-բէք ամաչեցուցանէ"։ Ո ի ոչ, ասէ, բարձիչ միայն չլի-նին նեղութիւնքն, այլ և կազմիչ։ Ունին և պտուղ ինչ յառաջ քան զհանդերձեալսն նեղութիւնքն, այսինքն է զհամբերութիւնն և զընտիրն գործել որ 'ի փորձու-թիւնսն են։ Այլ կարէ իմն և առ հանդերձեալսն ըզ-յոյսն 'ի մեզ սնուցանել, քան զոր ոչ ինչ կայ այլ քաղց-րագոյն, զնա կազմէ մեզ բարւոք ուղեկից։ Զի՞ք ոք որ բարւոք հաստատեալ իցէ, թէ կարիցէ անհաւատ լի-նել վասն հանդերձելոցն. զոր օրինակ և որք ապակա-նեալ միտս ունիցին և միշտ 'ի չարիս կեցցեն, ոչ կամի-ցին լսել վասն դատաստանին և փոխարէնս ընդունելոյ։

Այլ զի՞արդ, ասեն, յուսով իցեն մեր բարութիւնքն. այո յուսով, այլ և ոչ մարդկային որ առժամայն կոր-

ծանի և յամօթ առնէ զյուսացեալսն . վասն զի բաղում անգամ ակն ունիմ թէ հասանիցեմք որում ցանկացեալն եմք, և ապա կամ 'ի կենդանութեան և կամ 'ի մահուան այլ ինչ իրք շրջիցին, և նա մնայ անյոյս ։ Իսկ մերքս ոչ ինչ այսպիսի, այլ հաստատուն և անշարժ է յոյսն ։ Վասն զի և որ խոստացաւն՝ միշտ կենդանի է . իսկ մեք որ վայելելոցս եմք յայսպիսի յոյս՝ թէպէտ և մեռանիմք, դարձեալ յառնելոց եմք . և չիք ինչ բոլորովին որ զմեզ յամօթ առնել կարիցէ որպէս թէ ընդունայն ինչ և ընդվայր և 'ի վերայ խարխուլ հիման հաստատեալ իցեմք 'ի յոյսն մեր, այլ 'ի վերայ վիմին հաստատնոյ եղեալ է զհիմունս մեր ։

Եւ իբրև մխիթարեաց զնոսա 'ի բազմադարձութենէն բանիւքս այսոքիւք, և ոչ կայ մնայ յառաժամանակեանս միայն, այլ և զհանդերձելոյն կրկին ձայնէ, տեսեալ զտկարագոյնսն և որք զառաժամանակեանս խնդրէին և ոչ շատացան այսպիսի օրինակօք հաւատալ, զոր օրինակ ասաէն իսկ 'ի մերձակայսն ։ Եւ զի մի ոք ասիցէ թէ ոչ կամիցի մեզ շնորհել Աստուած, զի կարող է և միշտ է և կենդանի է՝ զայս ամենեքին գիտեմք, ասէ . բայց եթէ կամիցի տալ՝ այն ուստի է յայտ ։ Յեղելոցս, ասէ ։ Յորմէ՞ եղելոցս . զսէրն զոր եցոյց վասն մեր ։ Զինչ արար, ասէ . զհոգին սուրբ ետ ։ Վասն որոյ և ասէր իսկ՝ եթէ "Յոյս ոչ ամաչեցուցանէ,, . և զայս ասելով՝ 'ի տեսակ իսկ աստ զասացուածն՝ եթէ "Սէրն Այ,, . և չասաց թէ տուեալն, այլ թէ "զեղեալ 'ի սիրտս մեր,,, զառատիլն և զառաւելն յոյժ առնէ ։ Որ մեծ է քան զամենայն ընծայս, զայն մեզ շնորհեաց . ոչ երկինս և ոչ երկիր և ոչ ծով, այլ որ քան զայս ամենայն պատուականագոյն է՝ հրեշտակս 'ի մարդկանէ և որդիս Այ և եղբարս Քրիստոսի կազմեաց և յարդարեաց զմարդիկ ։ Եւ ո՞վ է որ զայս շնորհեաց . հոգին սուրբ ։ Ապա թէ ոչ կամէր մեզ մեծագոյնս յետ աշխատութեանցն շնորհել պսակս, և ոչ յառաջ քան զաշխատութիւնս զայսչափ զբարութիւնս պարգևէր ։ Եւ խոտանայեալս և նուաղեալս եգիտ զմեզ և սպասուեաց, և ոչ միայն պատուեաց՝ այլ միանգամայն զաղբիւրն ամենայն բարութեանց զեղոյց 'ի մեզ . և այս յառաջ քան զջանսն մեր, թէպէտ և յոյժ ոչ էաք արժանի ։ Եւ արդ մի յուսահատ լինիր, վասն զի ունիս

մեծ ջատագով զսէրն . վասն այսորիկ և սա ինքն ասէր՝ Թէ յոյսն ոչ ամաչեցուցանէ . և ոչ եԹէ մերոց ինչ ուղղուԹեանց, այլ Այ զամենայն վարկանի ։

Այլ յորժամ ասաց զսուրբս Հոգւոյն, մտի դարձեալ 'ի Ճառս խաչին . այսպէս ասէ . "Քանզի Քրիստոս 'ի ժամանակի 'ի վերայ ամպարշտաց մեռաւ . Հազիւ 'ի վերայ արդարոյ ոք մեռանիցի, իսկ վասն բարւոյ արդեօք և համարձակեսցի ոք մեռանել ։ Յայտնեաց Ած զսէրն իւր առ մեզ"։ Այլ զոր ասէն՝ այսպիսի ինչ է . զի ԹԷ վասն մարդոյ սրբոյ որ 'ի գլուխ առաքինուԹեանն հասեալ իցէ, ոչ կամիցի երբեք մեռանել վասն նորա, զմտաւ ած զանեանն քո զսէրն, յորժամ ոչ վասն արդարոյ, այլ վասն մեղաւորաց 'ի ժամանակին խաչեցաւ . որպէս և զայն իսկ 'ի սոյն յարէ՝ Թէ "Մինչ մեղաւորքն էաք, Քրիստոս վասն մեր մեռաւ, ապա մանաւանդ եւս առաւել յորժամ արդարացաք արեամբն նորա՝ ապրեսցուք 'ի բարկուԹենէն ։ Զի եԹէ մինչ Թշնամիքն էաք՝ հաշտեցաք ընդ Այ մահուամբ որդւոյ նորա, ապա եւս առաւել 'ի հաշտելս ապրեսցուք կենօք նորա"։ Թուի Թէ ամենայն բանք ասացուածին մի և նոյն իցէ . որք հաւատեաւ միտ դնիցեն, ոչ է մի և նոյն ։ Տես այսպիսի ինչ է . կամի հաւատացուցանել զնոսա վասն հանդերձելոյն, և նախ յարդարոյն յաջողուԹենէ պատկառեցուցանէ զնոսա, ասէ՝ Թէ հաստատեցաւ 'ի միտս իւր՝ Թէ որ խոստացաւն Ած, կարող է առնել . ապա 'ի շնորհացն որ տուաւ . դարձեալ 'ի նեղուԹեանցն Թէ բարւոքան են ածել 'ի յոյսն զմեզ . և 'ի Հոգւոյն դարձեալ զոր ընկալաք, և 'ի մահուանէ նորա, ապա և 'ի մերմէ չարեացն զոր յառաջին ունէաք՝ կարգէ զայս ։

Այլ որպէս ասացին՝ Թուի Թէ մի և նոյն իմն երևի ասացուածն, և գտան երկու և երեք և եւս բազում ։ Նախ զի մեռաւ . երկրորդ անգամ զի 'ի վերայ ամբարշտաց . երրորդ անգամ զի հաշտեցոյց և զի արդարացոյց և եԹէ անմահս եւս արար, զի և որդիս եւս գործեաց և ժառանգորդս ։ Ապա ոչ 'ի մահուանէն յանձնել արժան է, այլ և 'ի պարգևացն որ տուան մեզ 'ի ձեռն մահուանն ։ Զի Թէպէտ և մեռանելն 'ի վերայ մեր որ այնպիսիքն էաք՝ մեծ էր, իսկ յորժամ երևի յայտնապէս Թէ և մեռաւ և պարգևեաց, և զի այսպի-

սի մինչ են պարգևքն՝ որ և զամենայն զխեալ զմեղս մեր ծած_կեն, և զյոյժ զանզգայսն կարող են ածել 'ի հաւատս : Վասն զի և չէ այլ ոք որ հանդերձեալն է փրկել զմեզ, այլ նա որ սիրեացն զմեզ մինչդեռ մեղաւորքն էաք, որ և զինքն իսկ մատնեաց : Տեսանե՞ս որչափ մինչ ունի զա_սաւորութիւն կարգիս այսորիկ առ 'ի հանդերձեալ յոյսն յոր և ածելոցն էր զմեզ :

Յառաջ քան զայս երկու մինչ զժուարինք էին առ 'ի փրկութիւն մեզ. վասն զի և մեղաւորք էաք, և 'ի ձեռն տէրունական մահուն ապրանաց. և անհաւատալի իսկ լինէր յառաջ քան զլինելն, և բազում սիրոյ կարօտ էր որպէս զի լիցի : Իսկ այժմ յորժամ այս կատարեցաւ, առաւ և այն ամենայն դիւրաւ մնձարեցի. վասն զի բա_րեկամք նորա եղաք, և կրկին մեռանելոյ չունի պէտս : Յորժամ մինչդեռ թշնամիքն էաք այնպէս սիրեաց զմեզ մինչև յորդին իւր ոչ խնայեաց, իսկ յորժամ բարե_կամք եղաք՝ որչափ մինչ յաւելցէ, յորժամ որդւոյն այ_նաւհետև չեն մինչ պէտք 'ի մահ գալոյ : Այլ՝ եթէ մեք ոչ կամեցիմք, ոչ եթէ զի չկարիցէ, այլ վասն զի չկա_մեցիմք՝ չկեցուցանէ. զոր անհնարին է ասել վասն զի եթէ չկարիցէ, յորմէ հետէ զորդին ետ և ծանեաք զնա եթէ յամենայնի կարող է և իւրով կարողութեամբն՝ մեղաւորս գոլով մեզ՝ արդարացոյց : Ապա զինչ իցէ մեզ արգել և խափան առ 'ի ժառանգել հանդերձելոցն :

Եւ մի դարձեալ յորժամ լուար ամբարիշտս և մե_ղաւորս և տկարս՝ ամաչիցես և խորշեսցիս, այլ լուր զինչ ասէն. "Ոչ միայն այս, այլ և պարծիմք եւս յԱծ, ասէ, 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ո_րով այժմ զհաշտութիւն ընկալաք" : Զինչ իցէ՝ թէ "ոչ միայն" : Ոչ միայն, ասէ, ապրեցաք, այլ թէ պար_ծիմք եւս յայս 'ի սոյնս. զոր կարծեն ոմանք թէ արժան է թաքուցանել, որք յայսպիսի չարութեան կեցեալ էաք և զկնի ապրեցաք : Եւ այս ուստի էր, բայց թէ 'ի յոյժ սիրելոյն նորա զմեզ զորս փրկեացն : Մեծ նշան իսկ էր այս սիրոյ, զի ոչ հրեշտակօք և ոչ հրեշտակա_պետօք, այլ իւրով միածնաւն կեցոյց. որպէս զի և կե_ցուցանելն իսկ և սքանչելի կեցուցանելն այն է զի իւրով միածնաւն, և ոչ թէ իւրով միածնաւն միայն, այլ և ա_րեամբն նորա, որ և բեր մեզ պարծանաց պատճառ յօրինէ :

Ոչ ինչ առաւել քան զայն մեծ գտանի յորժամ սիրեցես յոյժ և կամ սիրիցես զնա. այս քան զհրեշտակս պայծառագոյնս զարդէ, սոյն և քան զհրեշտակապետս առաւել եւս պայծառ, սոյն և քան զիշխանութիւնս և զպետութիւնս, սա և քան զարքայութիւնն իսկ մեծ է. սորին վասն և Պաւղոս քան զայլս ամենայն զսա առաջին դնէ: Սորին աղագաւ և զանմարմնականսն երանեմ, զի սիրեն և 'ի հնազանդութեան կան նմին: Այսր աղագաւ և մարգարէն զարմացեալ հնչէր՝ թէ "Օրք զօրութեանց որ առնեն զբան նորա„. այնպէս և զՔրովբէիցն Եսայի քարոզէր և ցուցանէր եթէ միշտ առ արքունական աթոռոյն մերձ կան և տեսանեն զփառս նորա, որ է մեծ սիրոյ նշանակ:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Յախանձեցուք այժմ և մեք ընդ վերին զօրութիւնս. և մի միայն մերձ յաթոռն փառաց փութասցուք կալ, այլ և բնակել ընդ նմա որ յաթոռն նստիցի. քանզի նա մինչ ատեայքն՝ սիրեաց և զսէրն իսպառ կատարէ, վասն զի և զարեգակն ծագէ 'ի վերայ չարաց և բարեաց, և տեղայ 'ի վերայ արդարոց և մեղաւորաց: Դու գոնեայ յետ սիրելեացն սիրեա, վասն զի սիրէ զքեզ 'յոյժ: Այլ եթէ սիրէ, ասէ, ընդէ՞ր գեհենն և տանջանս և պատիժս սպառնացաւ: Վասն սորին իսկ սիրոյ որով սիրէն զքեզ: Քանզի կամի 'ի բաց հատանել զանօրէնութիւն 'ի քէն, և որպէս սանձիւք իմն երկիւղիւն արգելու զքո զդիւրով զհոսումնն. զամենայն ինչ առնէ և հնարի, և հեշտականօքն և տրտմականօքն, առ 'ի ժողովել զքեզ որ 'ի վայրդ հոսիս, և առ ինքն 'ի վեր տանել կամի, և յամենայն չարեաց մերժել՝ որ քան զգեհենն եւս դառնագոյն է: Այլ բազում անգամ արդեօք կամիցի 'ի չարիս կեալ քան զմին օր տանջել, չեն ինչ զարմանք. վասն զի այսպիսիք անկատար միտաց են և անբժշկելի ախտի և արբեցութեան:

Քանզի և մանուկ տղայ յորժամ տեսանիցէ զբժիշկն եթէ խարան կամ հատումն մերձ 'ի նա տանիցի, փախչի և 'ի բաց սլանայ, աղաղակով ասէ. լաւ է թէ յամենայն ժամ մարմինս իմ նեխութեամբ ծախիցի, և մի

առժամեայն այսպիսի այրմանք վայելել յառաջնութեան ։ Իսկ որ միտս ունիցին առեն՝ թէ քան զխոստանալն հատուցանել բարի է ։ Նոյնպէս և այժմ լաւ են սպառնալիքն քան զտանջանսն, քանզի մին զառաջնութիւն գործէ, իսկ միւսն զկորուստ և զհանապազորդ հիւանդութիւն ։ Այլ զի քան զհիւանդութիւն առողջութիւնն լաւագոյն է, ամենեցուն յայտնի է. վասն զի և զաւաղակս ոչ յորժամ զկողսն քերիցեն՝ յայնժամ տառապութեամբ, և են իսկ արտասուաց արժանի, այլ յորժամ զորմն փորիցեն և զմահս գործիցեն ։ Զի եթէ լաւագոյն է ոգի քան զմարմինն, որպէս և էն իսկ, ապա վասն սորա կորուսեան պարտ է հեծել և ողբալ. իսկ եթէ չզգայցեն ինչ, և այն ևս առաւել ողբոյ արժանի է ։ Վասն զի և որ յանասունս 'ի սէրսն հարեալ են, քան զջերմնակալսն ևս ողորմելոյ արժանի են, և քան զարբեցողս ևս առաւել խոշտանգին ։

Այլ եթէ այս, ասէ, դժնեայ ինչ իցէ, ընդէ՞ր հաճիմք ընդ այսպիսի իրս ։ Վասն զի մարդկան՝ լաւ տեսակարկողին, բազում ինչ որ ընդդէմ է՝ հաճոյ թուի, և ընդ այս հաճեալք՝ զլաւն զանց առնեն. զոր և 'ի կերակուրսն է տեսանել և յառաքինութեան և 'ի վարս նախանձու և 'ի հեշտութեան վայելչութեան և 'ի կանայս և 'ի տունս և որ յայլսն յամենեսին լինիցի ։ Ո՞ր հեշտութիւն է, ասէ սա ինձ, ընդ կանայս խառնակել եթէ ընդ արուս, ընդ կանայս թէ ընդ իշխանս՝ որ լսեն զօրէնս ։ Բայց սակայն զբազումս գտանեմք որք զկանայս զանց առնեն և ընդ անբան անասունս խառնակին, և զարուաց մարմինս անարատեն և զանձանս յանբնականս դարձուցանեն. բայց սակայն են յամենեցունց ատեցեալք և վարատեալք, և անհնարին տանջանաց ակն ունին ։ Այլ նոցա, ասէ, այն իմն հեշտ թուի ։ Սորին վասն են թշուառականք քան զամենեսին, զի զանհեշտալիսն հեշտալիս վարկանին. սոքա և զտանջանսն աւելի քան զայլսն ուզերձեն անձանց խաբեանց ։ Զի՞նչ ինչ անհնարին այլ քան զայսպիսի մեղս. զի եթէ չէր որովք մեղանչէին, ապա ոչ յաւելուր նոցա չար 'ի վերայ ամե և ոչ այնպիսի դժնեայ տանջանօք ծախէր. քանզի որ զամենայն ինչ արար առ 'ի շիջուցանել զչարիսն, զիարդ կամիցի արդեօք զանձուսն չարեացն ։ Նա ոչ ուրեմն թէ

տանջելն չար է զյանցաւորսն, այլ ոչն տանջելն զայն-
պիսիսն. զոր օրինակ և առ հիւանդացեալսն լինի, որք
ոչն կամին առողջանալ: Զիք այլ ինչ պատճառք նոցա,
բայց միայն անպատեհ ցանկութիւնքն:

Ընդպատեհս յորժամ ասեմ, զփափկութեանցն ա-
սեմ և ընդվայր փառացն և զմեծութենէն և զամենայն
առ հասարակ որ միանգամ աւելի քան զպէտսն իրքն
լինիցին: Նա որ այսպէս կեայ, քան զամենեսին զինքն
երանելի վարկանիցի, յետոյ գտանիցի հեք և թշուա-
ռական քան զամենայն մարդիկ, իբրև զորիկին որ զբա-
բարոյ և զանաւոր իշխան 'ի ներքս մուծեալ յիւր ա-
ղխն զցանկութիւնն: Վասն այսորիկ և աշխատութ̃
տուաւ ա̃ծ զառժամանակեայ զկեանս, զի յայնպիսի
ծառայութենէ զերծուսցէ զմեզ և 'ի մաքուր ազատու-
թիւնն առաջնորդեսցէ մեզ. սորին վասն և գեհենն ս-
պառնացաւ և աշխատութեամբ փակեաց զկեանս մեր
առ 'ի պնդել զթուլութիւն մեր: Այնպէս և Հրէայքն
մինչդեռ 'ի կաւին և յաղիւսագործութեանն կապեալ
էին, պարզամիտս մատուցանէին և զա̃ծ խնդրէին հանա-
պազ. իսկ յորժամ յազատութիւն վայելեցին, ապա տրտն-
ջեցին և բարկացուցին զտէրն. և բազում ինչ հնարս
հնարէր վասն նոցա, և նոքա ոչ կարծէին 'ի չարեացն:

Նա արդ զինչ ասիցես, ասէ, որք 'ի նեղութեանցն
յետոյ գտանայցեն և ոչ կարիցեն համբերել: Ոչ ե-
թէ նեղութիւնքն գործիցեն զայն, այլ իւրեանց ծու-
լութիւնն և տկար միտքն. զոր օրինակ եթէ ոք ախ-
տացեալ ստամոքս ունիցի և ոչ կարիցէ ընդունել զդա-
նութիւն դեղոցն որ զնայն սրբեսցեն, ոչ եթէ զդեղոցն
ինչ ստգտանիցեմք, այլ զհիւանդութիւն անդամոցն:
Այնպէս և աստ զդիւրագոյն զբարուն ստգտանեմք, վասն
զի ոչ եթէ 'ի նեղութեցն գտանայցէ, այլ ցանկութիւն
հանգստեան գործէ զայս: Զի եթէ զկքեալն և զհա-
տեալն պնդէ և յինքն յարէ նեղութիւնն, որչափ ևս
առաւել զայն որ կամիցի բևեռել ընդ նորա ջերմութ̃:

Զիարդ կարիցեմ, ասէ, չվհատել 'ի նեղութեանցն:
Յորժամ զմտաւ ածիցես՝ թէ կամաւ և եթէ ակամայ
պարտ է համբերել, և եթէ գոհութեամբ առնիցես
զայն, յայնժամ շահեսցես զմեծամեծ զօգուտսն. իսկ
ապ' եթէ վհատիցիս և յերկբայս լինիցիս և մատնես-

ցես զքեզ տրտմեալն, եւս մեծագոյն քան զնեղութիւն պատահիցեն թշուառութիւնքն, և առաւել ևս շահանդադ գործիցես օգուտ :

Այլ արդ զայս զմտաւ ածելով պատրաստ լիցուք, զի զոր ինչ 'ի հարկէ լինիցի՝ զայն յօժարութեամբ իսկ առասցուք : Որպիսի ինչ է զոր ասեմ․ որդի ուրուք վախճանեցաւ, և կեանքն և ամենայն մեծութիւնն մնաց․ աւ՛ եթէ զմտաւ ածիցես թէ որ ինչ եղեն իղձքն՝ լուծումն չիք, բայց կայ այլ տարազ մխիթար ինչ գտանել թշուառութեանն, 'ի բարիոք ծախել զինչսն և առաքինութեամբ համբերել որ ինչ դիպեցաւն, և փոխանակ տրտմեանն գոհութիւնս մատուցանել քում տեառնն, և ապա այսպէս զոր ոչն կամէիր զչարիսն զոր եկին 'ի վերայ քո, դու քոյին յօժարութեամբդ զքեզ յուղղութիւն զարդարեցեր :

Տեսանես զորդի քո յափշտակեալ 'ի քէն, յայնժամ ասա՝ տէր ետ և տէր առ : Տեսանես զմեծութիւնն հանեալ ուրուք 'ի քէն, ասա և դու՝ թէ մերկ եկի ես յարովայնէ մօր իմոյ և մերկանդամ երթալոց եմ: Տեսանիցես զամբարիշտս և զանօրէնս թէ 'ի բարեկենդանութեան են և զարդարս 'ի տանջանս և 'ի կշտամբանս, և ոչ գիտիցես զպատճառս իրացն որ լինիցին․ ասա և դու՝ թէ անասնապէս եմ առաջի քո, սակայն ես յամենայն ժամ ընդ քեզ եմ: Իսկ աւ՛ եթէ զպատճառսն խնդրիցես, ած զմտաւ թէ հաստատեցաւ օր յորում հանդերձեալ է դատել զտիեզերս ամենայն և զժանտագործսն 'ի բաց մերժէ յիւրմէ․ և յայնժամ ապա իւրաքանչիւր ոք ըստ արժանիս ընդունի որպէս Ղազարոս և մեծատունն : Զմտաւ ած և զառաքեալսն, քանզի և նոքա չարչարեալք և խոշտանգեալք և հալածեալք և բիւր ինչ չարչարեալք խնդային, զի վասն անուանն արժանի եղեն անարգանաց : Որպէս և դու այժմ եթէ հիւանդանայցես, համբերեա քաջութեամբ և մի՛ պարգևս խոստացիր զայն, ապա և դու նոյնպէս ընդ նոցին առնուցուս վարձս :

Այլ զիա՞րդ, ասէ, որ 'ի հիւանդութեանն իցէ՝ կարիցէ գոհանալ զտեառնէ : Եթէ ունիցիս սէրտ սէր ընդ նմա՝ մարթի : Զի թէ որք 'ի հնոցն անկան երեք մանկունքն և այլք ոմանք 'ի տանջանս և ոմանք յայլ ինչ 'ի

տանջանս և 'ի նեղութիւնս էին, և ոչ երբէք դադարէին 'ի գոհանալոյ և յօրհնելոյ, ապա ևս բազում մանաւանդ որք յախտսն և 'ի հիւանդութիւնսն են՝ կարող են զայս առնել։ Քանզի չէ և չէ իսկ ինչ որում ոչ յաղթէ յօժարութիւնն. մանաւանդ որք այն փափագիցեն՝ նոցա ոչ հուր, ոչ երկաթ, ոչ աղքատութիւն, ոչ հիւանդութիւն, ոչ մահ, և ոչ այլ ինչ 'ի սոյնպիսեացս երևելի դժնեայ նոցա. վասն զի հարեալք հարուածեալք են 'ի սէր նորա, և զամ իւրք զանց արարեալ առ երկինս թռչին, և քան զնոսա որք անդն շրջին՝ չեն ինչ ընդհատք 'ի նոցանէ. սորին վասն ոչ զայլ ինչ տեսանեն կամ համարին, ոչ զերկինս և ոչ զերկիր, ոչ զծով, այլ մի միայն զգեղեցկութիւնն փափագեն այսինքն է առ փառս նորա։ Այլ ոչ առժամանակեան տրտմութիւնքն կարեն զնոսա խոնարհեցուցանել. և ոչ հեշտականքն մեծամեծքն ինչ և բարձրանան, որպէս թէ ունիցին զքաղցրականն և զհանգստեանն իւր։

Ձգեսցուք և մեք նախանձաւորք այնմ սիրոյ որում չիք այլ ինչ զոյգ, և վասն առժամանակելիս և վասն հանդերձելոցն սիրեսցուք. մանաւանդ եթէ յառաջ իսկ քան զայս վասն բնութեան սիրոյս, որով կարեմք յայնմ կենցաղոյս և 'ի հանդերձեալ դատաստանացն և յարքայութիւնն վայելել։ Մանաւանդ եթէ չէ իսկ մեծ ոչ 'ի գեհենէն զերծումն և ոչ արքայութեան վայելումն առ որ հանդերձեալս եմ տալ. վասն զի քան զայս ամենայն մեծ է որ զՔրիստոս սիրէ և 'ի նմանէ սիրեսցի միանգամայն։ Ոչ թէ առ մարդիկ այսպէս դիպեսցի, յորժամ տեսանեմք զսիրելիսն՝ ամենայն իսկ բարութեամբք լնումք, իսկ առ ած յորժամ երկրպագեան իւրք դիպեսցին՝ ո՞ր քան և կամ որպիսի՞ միտք կարեն յանդիմանս կացուցանել զերանութի՛ւն այնպիսի հոգւոյ։ Չիք և ոչ մի ինչ զփորձ առնուլ՝ թէ փորձօղն կարիցեմք 'ի վերայ հասանել հոգևորական այնմ ուրախութեան և երանելի կենացն և բիւր բարութեան գանձուցն։ Այլ արդ զամենայն ինչ թողեալ զայնմ սիրոյ բուռն հարցուք յուրախութիւն անձանց մերոց. ձգեսցուք զնա 'ի փառս փափագելոյն այ և Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ, ընդ որում փառք Հօր հանդերձ Հոգւովն սրբով այժմ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# ՃԱՌ ՏԱՍՆԵՐՈՐԴ

‹‹Զի որպէս 'ի միոջէ մարդոյ մեղք յաշխարհ մտին և 'ի մեղաց անտի մահ, և այնպէս յամենայն մարդիկ տարածեցաւ մահ որով ամենեքին մեղան››։

Զոր օրինակ ճարտարք 'ի բժշկաց զապականեալ ախտիցն միշտ խնդրեն մինչև 'ի նոյն իսկ յաղբիւր չարեացն հասանել, նոյնպէս և երանելին Պաւղոս։ Ասաց՝ թէ արդարացաք, և եցոյց 'ի հայրապետէն և 'ի հաւատոյն և 'ի մահուանէն Քրիստոսի՝ եթէ ոչ էր հանդերձեալ արդարացուցանել՝ ոչ մեռանէր. կամի և այլ ուստեք, որպէս զի այսպիսի օրինակօք և զատուածկայն յայտնեսցէ, այսինքն է 'ի մահուանէն և 'ի մեղացն։ Զկարգ և կամ որով օրինակաւ խնդրէ թէ եմուտ մահ և զօրացաւ։ Ի ձեռն միոյն մեղաց։ Զինչ է՝ թէ որով ամենեքին մեղան։ Զի յորժամ նայն անկաւ, և որք ոչն կերան 'ի ծառոյն՝ եղեն ամենեքին 'ի նմանէն մահկանացուք։

‹‹Քանզի մինչև յօրէնսն մեղք էին յաշխարհի. բայց մեղք ոչ համարէին, ուր ոչ գոյին օրէնք››։ Մինչև յօրէնսն՝ ոմանք ասեն զայնմ ժամանակէ էր ասացեալ որ յառաջ քան զտուալ օրինացն էր, որպէս առ Աբէլիւ, որպէս առ Նոյիւ, որպէս առ Աբրահամու և մինչև Մովսէս ծնեալ լինէր։ Ո՞ր մեղք էին յայնժամ յաշխարհի։ Ոմանք ասէին՝ այն որ 'ի դրախտին գործեցաւ. վասն զի չև ևս, ասեն, էր լուծեալ, այլ և ծաղկեալ ևս երևէր պտուղն նորա. վասն զի առ հասարակ ամենեցուն հասոյց զմահ, և զօրացեալ 'ի վերայ բռնութիւն ունէր։ Ե՞ր վասն և զայն յարէ, ‹‹թէ մեղքն ոչ համարէին, օրէնքն ոչ էին››։ Ընդդիմադրութենէ Հրէիցն առնու զայս. յորժամ ասաց զմեղս, ասա և զհետոյն ևս եբեր 'ի մէջ. գուցէ ասիցեն թէ զի՞նչ յառաջ քան զօրէնսն ծախէր մահ զամենայն մարդիկ, որ և ինձ թուի մանաւանդ առաքելական մտաց ասացուածս։ Այլ զինչ իցէ այս որ ասէն՝ թէ մինչև յօրէնսն մեղք էին յաշ-

խորհի։ Նմանապէս թուի թէ 'ի տալ օրինացն և մեղացն զօրացեալ 'ի յանցուածոցն, և ցայն վայր զօրէր մինչև օրէնքն էին. քանզի և չէր իսկ, ասէ, համարեալ ընդնել մեղացն մինչ ոչ զօրէնսն ունէին։ Ապա՛ եթէ այս մեղք որ յօրինաց առաջի են ծնեալ զմահ, զիա՞րդ առաջին մարդիկն մինչև օրէնքն եկեալ էին՝ մեռանէին. զի եթէ 'ի մեղաց ընկալաւ մահ զօրութիւն, օրէնքն ոչ ուրեք երևէին և մեղքն ոչ համարէին, ապա զիա՞րդ զօրացեալ լինէր մահ։ Ուստի յայտ իսկ է՝ եթէ ոչ յայս օրինաց 'ի յանցուածոց 'ի մեղաց, այլ յԱդամայ յանհնազանդութենէն. վասն զի նա զբաւեալ ունէր զամենայն մարդիկ։ Այլ ուստի յայտ լիցի այս. անտի զի և յառաջ քան զօրէնսն մեռանէին։

“Այլ զի թագաւորեալ էր մահ յԱդամայ մինչև 'ի Մովսէս և 'ի վերայ չյանցուցելոցն ըստ նմանութեան յանցուածոցն Ադամայ, որ է օրինակ հանդերձելոցն„։ Վասն այսորիկ և Ադամ Քրիստոսի օրինակ էր. զի որպէս նոյն որ յնմանէն՝ թէպէտ և ոչ կերան 'ի ծառոյն՝ եղև պատճառ մահու 'ի ձեռն յանցանաց իւրոց, նոյնպէս և Քրիստոս՝ որք յիւրմէն թէպէտ և չէին արդարութիւնս ինչ գործեալ՝ եղև առաջնորդ արդարութեան, և 'ի ձեռն խաչին զամենայն ինչ շնորհեաց մեզ։ Վասն այսորիկ 'ի վեր և 'ի վայր զփոփոխէս ևեթ ճառէ և ցանկ զայնս բարբառի. “Որպէս 'ի միոջէ մարդոյ մեղք յաշխարհ մտին„. և “Եթէ միոյն յանցանօք բազումք մեռան„. և “Ոչ որպէս միոյն մեղուցելոյ պարգևքս„. և “Դատապարտութիւն 'ի միոջէ 'ի դատապարտութիւնն„. և դարձեալ “Որ թէ միոյն յանցանօք մահ թագաւորեաց 'ի ձեռն միոյն„. և “Արդ ուրեմն որպէս 'ի ձեռն միոյն յանցանաց„. և դարձեալ “Որպէս թէ յանհնազանդութենէ միոյն մարդոյ յանցաւորք բազումք եղեն„։ Այլ չթողու 'ի բաց զմիտս. զի յորժամ առիցէ ցքեզ հրէայն թէ զիա՞րդ կարէր միոյն ուղղութեամբն Քրիստոսի աշխարհ ամենայն ապրել, կարիցես և դու անդրէն ընդդէմ պատասխանի տալ նմա՝ թէ զիա՞րդ միոյն անհնազանդութեամբ Ադամայ տիեզերք դատապարտեցան։ Մանաւանդ թէ չեն ինչ զոյգ միմեանց նման մեղքն և շնորհքն, մահ և կեանք, և ոչ զոյգ միմեանց սատանայ և Տէր, այլ բազում ինչ կայ 'ի

մեղքն : Որպէս յորժամ յիրաց 'ի բնութենէն և 'ի նմանէն որում այսպիսին վայելէր էր, կարի վայելչագոյն էր ա̃յ այսպէս կերպացուցանել քան տանջել, առաւել է առաւելութիւն և յաղթութիւն, զի՞ր բան ունիցիս առ անհաւատութիւնն, ասա ինձ :

Եւ զի եցոյց զայն զոր ինչ առաջի ըստ բանից կարգէ յայտ առնէ ասելովն՝ թէ "Ոչ որպէս յանցանքն, այնպէս և շնորհքն . զի եթէ միոյն յանցանօքն բազումք մեռան, առաւել ևս առաւել շնորհքն ա̃յ և պարգևքն շնորհաց միոյն մարդոյ Յիսուսի Քրիստոսի 'ի բազումս առաւելան ,, : Եւ զոր ասէն այսպիսի ինչ է . զի թէ մեղքն այնչափ զօրեցին, և միոյ մարդոյ մեղքն ; իսկ շնորհն և ա̃յ շնորհքն, և ոչ ա̃յ հօր միայն, այլ և որդւոյ, և զիա՞րդ ոչ թուի մեծագոյն ինչ . բազում անգամ այս առաւել քան զայն : Վասն զի զայլ ընդ այլոց տանջեալ ոչ յոյժ պատշաճ թուի . իսկ այլ 'ի ձեռն այլոց փրկեալ՝ վայելուչ, մանաւանդ թէ ընդունելի երևի . զի թէ այն եղև, ապա ևս առաւել այս : Եւ զի ընտանի իսկ և ընդունելի առաւել եցոյց զերա, և դարձեալ կարգէ զի դիւրընկալ առնիցէ :

Եւ զի հանդերձեալ իսկ էր զայն կարգել, մանաւանդ զի և կարևոր իսկ էր, 'ի յաջորդաց անտի կարգէ . Եւ զիա՞րդ, ասէն, կարգեսցէ զայս : "Ոչ որպէս միոյն յանցանօքն, ասէ, պարգևքն . քանզի դատաստանն 'ի միոջէն և դատապարտութիւն, իսկ շնորհքս 'ի բազմաց յանցանաց յարդարութիւն ,, : Եւ զինչ իցէ այս զոր ասէն . վասն զի զմահ և զդատապարտութիւն միանգամայն զօրեցին մեղքն և 'ի ներքս անկին, իսկ շնորհքն ոչ միայն զայն մեղս ջնջեցին, այլ և որ յետ նորայն եմուտ : Եւ վասն այնորիկ յորժամ ասէ "այսպէս, և այնպէս ,, , զի մի զնոյն չափ զպարտութեանն և զմեղացն վարկանիցես , և մի դարձեալ կարծիցես յորժամ լսես զԱդամայ լոկ միայն զնորա զմեղսն ջնջեալ զոր նորայն եմոյծ, վասն այսորիկ ասաց՝ թէ բազմաց յանցուածոց թողութիւն եղև : Ուստի յայտ իսկ է թէ յետ բազում անչափ մեղացն այնոցիկ որ 'ի դրախտին գործեցան՝ յարդարութիւն եղաք ամենեքին . զի ուր արդարութիւն է, հարկ է թէ և կեանք գործին և բիւր բարութիւնք . զոր օրինակ ուր մեղքն են՝ մահ գործի, այն-

ձայնել. «Քանզի որպէս 'ի ձեռն անհնազանդութեան միոյն մարդոյ մեղաւորք բազումք եղեն, սոյնպէս և հնազանդութեամբ միոյն արդարք բազում եղեն »: Այլ թուի ինձ եթէ չիցէ փոքր խնդիր յառաջադրեալս. եթէ ոք ամենայն հաւատով քննեսցէ, և այս գիւտն է առ 'ի լուծանել:

Այլ արդ որպիսի՞ ինչ է խնդիրն յառաջն թէ 'ի ձեռն անհնազանդութեան միոյն մեղաւորք բազումք գտան: Վասն զի 'ի մեղանչելն նորա և լինել մահկանացու, և որք 'ի նմանէ ծնան՝ այսպիսի լինել և նոցա չէր անհնարին. իսկ յանհնազանդութենէ նորա այլոց մեղաւորս լինել որպէս արդեօք լինիցի այս ըստ կարգի: Քանզի զատանի այնուհետև այն՝ թէ ոչ է դատաստանի պարտական, թէ ոչ ընտանի յիւրոց մասանց լինի մեղաւոր: Այլ արդ զինչ իցէ որ ասէն՝ թէ մեղաւորք բազումք: Թուի ինձ եթէ պատժապարտք անձանց և դատապարտեալք մահուանք: Այլ զի 'ի մեռանելն Ադամայ ամենեքին եղեն մահկանացուք, յայտնապէս բազում իրօք եցոյց:

Իսկ զխնդիրն թէ վասն էր իրիք այս եղև՝ ոչ ևս յաւել, վասն զի ոչ ինչ վարկէր առաժամանակեանն. քանզի ընդ Հրէայսն գրեա պայքարէր որք հակառակէին և այսպէս ասէին վասն միոյն արդարութեան: Յաղագս այսորիկ և եցոյց իսկ թէ զկարգ միոյն դատապարտութե՛ն յամենեսեան ժամանակս. իսկ եթէ էր վասն եղև այս՝ չյաւել ինչ. վասն զի չէր ինչ 'ի խնդիր առաջարկաց, այլ միայն կարևորացն հաղ ասէր: Այսու ոչ թէ լոկ ընդ Հրէայսն միայն հարկաւորեցուցանէ զաւելորդսն չխնդրել, այլ զամենեսին իսկ. որոյն վասն և չձայնեաց:

Իսկ եթէ ոք 'ի մէնջ խնդրիցէ ուսանել, ասեմք այսպէս՝ թէ ոչ միայն չվնասեցաք ինչ 'ի մահուանէն նորա և 'ի դատապարտութենէն եթէ արթուն լինիցիմք, այլ և շահիմք ևս՝ մահկանացու լինել մեր. զառաջինն՝ զի մի՛ մահկանացու մարմնովս այլ մեղիցուք. երկրորդ անգամ զի բիւր ինչ ունիցիմք փիլիսոփայութեան իրս, և 'ի չափու ունել զմիտս և զգաստանալ և ամփոփ լինել և յամենայն չարեաց հրաժարել. և զառաժամանակեանս որ երևի և որում անկն ինչ ունիցիմք՝ հաւատա եթէ զայս ամենայն մահ լուծանէ: Այլ յետ այսորիկ, մանաւանդ եթէ յառաջ ևս քան զայս, և այլ բազում ե-

տոս Յիսուս, 'ի մահ անդր նորա մկրտեցաք, զոյգ թաղեցաք ընդ նմին մկրտութեամբ 'ի մահ"։ Ո՞րինչ է՝ թէ 'ի մահ անդր նորա մկրտեցաք. այսինքն՝ թէ մեք մեռաք որպէս և նայն։ Զանզի խաչ է մկրտութիւնն. որպէս խաչն և թաղումն Քրիստոսի, նոյնպէս և մեզ մկրտութիւնն եղև, թէպէտ և ոչ 'ի վերայ նորին. քանզի նա մարմնով մեռաւ և թաղեցաւ, իսկ մեք մեղաց զերկաւեան։ Նաև որոյ և չասաց իսկ թէ անկանիցք մահու, այլ եթէ նմանութեան մահու նորա։ Թէպէտե և այս մահ անուանի և այն, այլ ոչ նոյն նմին իրօք երկոքեան. այլ Քրիստոսի ըստ մարմնոյ, և մերս մեղացն. և որպէս այն ճշմարիտ, նոյնպէս և այս ճշմարիտ։ Ուստի պարտ է և յանձանց ինչ ընծայ լինել. և զարձեալ 'ի սոյն յարեան ասէ՝ թէ "Որպէս յարեաւ Քրիստոս 'ի մեռելոց փառօք Հօր, նոյնպէս և մեք 'ի նորոգումն կենաց շրջեսցուք"։ Աստ յետ պարկեշտութեան կեալ 'ի կենսն, և զյարութեանն ճառս ակնարկէ. զիա՞րդ. Հաւատացե՞ր, ասէ, թէ յարեաւ Քրիստոս 'ի մեռելոց, արդ և քումն հաւատա. քանզի վասն այնորիկ եղև, քանզի և քոյն խաչ է և թաղումն։ Ո՛ր եթէ մահուան հաղորդ գտար, ապա ևս առաւել մասնաւոր յարութեան և կենացն։ Նաև զի յորժամ մեծամեծ մեղքն լուծան, չէ պարտ յերկբայս լինել վասն նուազ ինչ իրաց անուհետև թէ որպէս մահ խափանի։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Այլ արդ այսուհետև զմտաւ ած զոր ինչ լուար զուքեղէն։ Յառաջ քան զհանդերձեալն այն իմն յարութիւն պահանջէ 'ի մէնջ այժմ՝ զնոր առաքինութիւնն ըստ այժմու կենցաղոյս, որ 'ի վարուց փոփոխմանէ գործի. յորժամ պոռնիկն զգաստ լինի և ագահն ողորմած և խիստն հեզ, և այսպէս աստ և աստ յարութիւն լինի՝ ակնարկելով զայն յարութեանն։ Այլ զիա՞րդ, ասեն, յարութիւն լինիցի այժմ. յորժամ մեղքն մեռանին և արդարութիւնն զօրանայ և հին կեանքն եղծանին և նորս այս հրեշտակականս յառաջ մատչի և 'ի գործ անկանի. իսկ նոր կեանս յորժամ լսիցես, բազում և մեծամեծ փոփոխմանց 'ի խնդիր լինել։

մեռնս եւ չարաչարութիւն յաւալ բերել 'ի բերանոյն. Եւ եւս դժնեայ այն է, զի եւ ոչ թքանել զայսպիսի շաղիս 'ի բերանոյն կամին, այլ ձեռօք ընդունելին եւ զարձեալ սովիմբք մարին, քանզի թանձր է եւ դժուարահալ։ Արդեօք զարշելիք ինչ 'ի պատմութեանս, այլ եւ առաւել 'ի գործոյն այսպէս է նողկալ։ Օր եթէ 'ի մարմնի յորում այսպիսի ինչ իցք պատահիցին՝ զարշ թուի, ապա մանաւանդ բաղում անգամ 'ի հոգին։

Այսպիսի ինչ էր եւ այն որդին՝ որ զամենայն զիւրն ծախեաց անառակութեամբ եւ 'ի վերջին թշուառութիւնն 'էհաս, եւ քան զամենայն աղքատեալս եւ ախտացեալս եւս յանզգայութեան անկեալ գնէր. այլ քանզի յանկարծակի կամեցաւ լինել երկրաւոր բարութեն միայն եւ փոփոխմամբ խրատին, եւ մանն զի եւ տեսց՝ թէ զարձայց անդրէն առ հայր իմ, այս բան շնորհեացնոս զամենայն բարութիւնս. մանաւանդ եթէ ոչ լոկ միայն բանքն, այլ ընդ բանիցն եւ զգործսն եւ յաւել։ Նա զի չասաց լոկ եթէ դարձայց առ հայրն իմ եւ յապաղեաց, այլ ասաց թէ դարձայց, եւ նոյն ժամայն դարձաւ, եւ զբաղում զձանապարհն զայն աշխատեցաւ եւ եկն։

Օայն եւ մեք արասցուք. թէպէտ եւ յարտաքին ատհմանս ուրեք երթայցեմք, դարձցուք անդրէն 'ի տուն հայրենի, եւ մի զանդատեսցուք երկայնութեամբ ճանապարհին. միայն եթէ կամիցիմք, դիւրով լինի մեզ վերլին ճանապարհորդութիւնն եւ երագ, միայն զօտարն եւ զայլազգին 'ի բաց թողցուք, այսինքն զատտանայ եւ զմեղս՝ որ զմեզ հեռի առնէ 'ի հայրենի տանէն։ Այլ արդ թողցուք զնոսա զի երագ դարձցուք 'ի հայրենի տունն մեր. քանզի գթած է հայրն, եւ այնպէս գթած, զի եւ զընտանիսն ոչ ինչ առաւել պատուէ քան զմեզ որք դառնամքս 'ի մեղաց, մանաւանդ թէ եւս առաւելլի զմեզ որպէս յայնժամ հայրն զնոյն պատուեաց. քանզի եւ առաւել եւս ցանկացեալ էր նմա իբրեւ կորուսելոյ որդւոյ։

Այս զինչ դատնայցեմ, ասէ. սկիզբն արա խրատիս միայն, եւ ամենայն ինչ դիւրաւ վճարի. կաց հակառակ չարին, եւ զամենայն ինչ կատարեցեր։ Օր օրինակ որք հիւանդութեամբքն աշխատին, յորժամ ոչ ծանրագոյն ունիցին՝ զխտեսցէ թէ սկիզբն է առողջութեան, այնպէս եւ 'ի չարիսն լինի, մի յառաջեր այլ 'ի նոսա, եւ

ահա կատարումն եղև չարեացն։ Թէպէտ և զերկուս աւուրս միայն և կամ զերիս մերժես 'ի չարեացն, ապա դիւրաւ իսկ թողուս 'ի բաց, ապա յետ երիցն և տասն յաւելուս, ապա և քսան և հարիւր, յետ այնորիկ զամենայն ժամանակս քո։ Վասնզի որչափ յառաջես՝ դիւրագոյն տեսանես զճանապարհն, ապա և 'ի նոյն իսկ 'ի գլուխ ելանիցես, և իսկոյն իսկ 'ի բազում բարութիւնս վայելիցես։ Զի և յայնժամ յորժամ անառակն այն դարձաւ, փողք և քնարք և պարք և ցնծութիւն և ժողով ամենեցուն. և որ սիրէրն, վասն ընդվայր ծախիցն և վասն հեշտ փախչելոյ մանկանն ոչ ինչ պահանջեաց վրէժս և ոչ այպանալից ինչ ասաց, այլ որպէս զմանուկ զոր սնեալ և ոչ բանիւք անգամ նախատէր զորդին. մանաւանդ թէ և ոչ յիշեաց իսկ վասն առաջինն գնացիցն, այլ և զեղաւ զնովաւ և ողջունեաց զնա և զպատուականն եդեն և զպատմուճանն զգեցոյց և 'ի վերայ բազում աշխարհաց կարգեաց։

Այս արդ զայսպիսի օրինակ ունելով լիցուք և մեք վստահք և մի եկեսցուք յանյուսութիւն։ Վասնզի ոչ խնդրայ այսպէս տէր կոչելով որպէս հայր, և ոչ ծառայ անուանել որպէս զորդի. մանաւանդ եթէ զայս իսկ կամի նա։ Վասն այսորիկ և զամենայն ինչ գործեաց զոր ինչ գործեացն, զի և 'ի միածինն անգամ ոչ խնայեաց, որպէս զի և մեք զորդեգրութիւն ընկալցուք. զի մի որպէս զտէր միայն, այլ որպէս զհայր սիրեսցուք զնա։ Թէպէտ և դիպեսցի այս 'ի մէնջ, որպէս զփառաւորիչ նորա բերկրելիք և զուարճանօք և զամենայն ինչ նմա վարկանիցէք, որ չեն կարօտ մերայոցս ինչ։ Զայս ասէ Աբրահամու ասաց. "Ես եմ, ասէ, ած Աբրահամու և Սահակայ և Յակոբայ"։ Այս մանաւանդ այսու ծառայիցն էր զուարճանալ. իսկ այժմ տեսանեմք զտէր զի զոյնս առնէ։ Սորին վասն և զՊետրոս ասէր. "Սիրես զիս առաւել քան զսոսա"․ ցուցանէ թէ ոչ խնդրէ ինչ յառաջ քան զայս 'ի մէնջ։ Սորին վասն և Աբրահամու զորդին յողջակէզս հրամայեաց հանել, զի ցուցանէ ամենեցուն թէ յոյժ սիրի 'ի հայրապետէն. այս յոյժ սիրել 'ի սիրելեաց անտի գործի։ Վասն այսորիկ և ցուցանելով ասէր՝ թէ "Որ սիրէ զհայր կամ զմայր առաւել քան զիս, չէ ինձ արժանի"։ Սորին վասն և

որ քան զամենայն ինչ ընտանեգոյն է մեզ հոգին, զոր երկրորդեցեր իւրոյ հոգւոյն. վասն զի բազում և յոյժ առաւելութեամբ կամի սիրել 'ի մէնջ: Վասն զի և մեք յորժամ տեսանեմք զոք եթէ ոչ յոյժ սիրիցէ զմեզ, ասեմք թէ չեմք կարօտ նորա սիրոյն, թէպէտ և մեծ ոք և երևելի իցէ: Իսկ յորժամ ջերմ զոք և սերտ սիրով տեսանիցեմք, թէպէտ և անարգ և կամ փոքր ոք իցէ, որ սիրիցէն, մեծագոյն փառս վարկանիմք զսիրելն առ 'ի նմանէ: Վասն որոյ և նա ոչ զսիրելն միայն առ 'ի մէնջ, այլ և զչարչարելն ևս վասն մեր զանարգանացն զայն զչարչարանաց փառս կոչէր, վասն զի այն սիրոյն վասն էին փառք:

Իսկ արդ մեք թէ վասն նորա չարչարիցիմք, ոչ վասն սիրոյն միայն, այլ վասն մեծ ցանկութեան և պատուոյն փառս կոչեմք, և է իսկ: Նախ և 'ի մեծագոյն պատիւս ընթացցուք այսուհետև յորժամ վասն նորա նեղութիւնք հասանիցեն: Որպէս ոչ զաղքատութիւն և ոչ զախտս և ոչ զխոշտանգանս և ոչ զզրպարտութիւնս և ոչ զնոյն ինքն զմահ համարիմք ծանր ինչ և դժուարընկալ յորժամ վասն նորա այսմ ամենայնի համբերիմք: Թէ արթունք իցեմք, մեծագոյն քան զամենայն ինչ շահիցիմք այսուհետև. որպէս յորժամ ոչ լինիցիմք զգոյշք և արթունք, և ոչ յայլ յիմեքէ շահիցիմք ինչ:

Այլ արդ տես որպիսի ինչ է. խարդախեա՛ց ինչ ոք զմեզ և պատերազմեցաւ. ապա ուրեմն արթուն զմեզ յորդորէ և պատրաստս առնէ քեզ նմանող լինել ո՞յց: Ոչ ի եթէ սիրիցես զնենգողսն քո, եղեր նմանող այնմիկ որ զարեգակն ծագէ 'ի վերայ չարաց և բարեաց. Իսկ այլ ամեն զինչ յափշտակեաց 'ի քէն. եթէ քաջութեամբ համբերես, որք յաղքատսն ծախիցեն զինչսն՝ զնոյն վարձսն առնուցուս և դու. քանզի "Զյափշտակութիւն ընչից ձերոց, ասէ, խնդութեամբ ընկալարուք, գիտացեալ եթէ լաւագոյն ինչ վարձ ունիք որ յերկինսն կան մնահին": Ասա՞ց ինչ ոք չար զքէն և նախատեաց. եթէ ճշմարիտ իցէ այս կամ սուտ, քեզ պսակ մեծագոյն բարեաց, եթէ համբերութեամբ բամբասանացն տանիցիս. և քանզի որ զրպարտեսն, բազում առիթ լինի մեզ վարձուց. "Խնդացէք և ուրախ լերուք, ասէ, յորժամ ասիցեն զամենայն բան չար զձէնջ սուտ, զի վարձք ձեր

ռաջին թողութիւն մեղացն՝ նորա պարգեւացն եղեւ. իսկ յետ մկրտութեանն կալ մնալ մեռեալս մեղացն՝ մեր պարտ է լինել փոյթ. եւ մանաւանդ եթէ աստ իսկ զմեծ աւետանեւք բազում օգնական: Վասնզի ոչ միայն զայս զօրէ մկրտութիւնն՝ զառաջին զմեղսն եղծանել, այլ եւ առ հանդերձեալսն զգուշաւորս գործէ զմեզ: Այլ զոր օրինակ անդ զհաւատոյն ընծայեցեր՝ զի մի եղծցի, նոյնպէս եւ աստ զյօժարութեանդ փոփոխումն ցոյց, զի մի դարձեալ աղտեղացուցանես զքեզ: Զայս եւ որքան այսպիսիք իւիք են՝ ուսուցանելով զմեզ ասէր. «Զի եթէ տնկակիցք եղաք նմանութեան մահու նորա, ապա եւ յարութեանն նորա լինելոց եմք»:

Տեսե՞ր՝ որպէս բարձրացոյց զլսողն եւ եհան զնա իւկոյն առ տէրն իւր, եւ բազում փութով եցոյց զնմանութիւնն: Զարքին վասն եւ չասաց թէ մահու՝ զի մի ընդդէմ ինչ ասիցեն, այլ եթէ նմանութեան մահու. քանզի ոչ եթէ էութիւնն իւր մեռաւ, այլ որ ՚ի մեղաց մարդն, այսինքն է չարիքն: Եւ չասաց թէ հաղորդեցաք նմանութեան մահու նորա. այլ զինչ. այլ թէ տնկակիցք եղաք, զի յանուանէ տնկոցն զնոյն պտղաբերութիւն ցուցցուք ՚ի մեզ: Զոր օրինակ մարմինն նորա թաղեալ ՚ի յերկրի պտուղ տիեզերաց բերէր զփրկութիւն, նոյնպէս եւ մեք ՚ի մկրտութեանն զսրբութեան զորդեգրութեան զբիւր բարութեանց, որպէս եւ յետ յարութեանն ՚ի միա առցուք զնորա պարգեւսն: Եւ քանզի մեք ՚ի ջուր թաղիմք, իսկ նա յերկրի. եւ մեք վասն մեղաց, իսկ նա ըստ մարմնոյ թաղեցաւ, յաղագս այսորիկ չասաց լոկ եթէ տնկակցութեան մահուն, այլ եթէ նմանութեամբ մահու: Եւ վասն զի եւ այն մահ էր եւ այս, այլ ոչ ընդ նմին իրօք:

«Զի եթէ մահուանն նորա, ասէ, տնկակիցք եղաք, ապա եւ յարութեանն լինելոց եմք»: Յարութիւն աստ զհանդերձեալ յարութիւնն ասէ: Վասնզի ՚ի վերագոյնսն զմահուանէն ճառեալ ասէր. «Թէ ոչ գիտէք, եղբարք, զի որ միանգամ մկրտեցաք ՚ի Քրիստոս Յիսուս, ՚ի մահ անդր նորա մկրտեցաք»: եւ ոչ ինչ վասն յարութեանն յայտնապէս ճառեաց անդ, այլ վասն վարուց յետ մկրտութեանն հրամայեաց եւ նորոգութեամբ կենաց շրջել: Իսկ աստ բուռն հարեալ զբանիւն ցուցա-

նէ մեզ զյարութիւնն ։ Այլ զի ուսցես եթէ ոչ վասն այնորիկ որ 'ի մկրտութեանն լինի յարութիւնն , այլ վասն հանդերձելոցն՝ ասաց "Զի եթէ տնկակիցք եղաք նմանութեան մահու նորա", և չասաց եթէ նմանութեան յարութեան նորա , այլ եթէ յարութեան ։ Զի մի ասիցես՝ եթէ յորժամ ոչ մեռաք որպէս մեռաւն , զիա՞րդ յառնիցեմք որպէս յարեաւն , առին վասն զմահուանէն յիշեաց ․ չասաց եթէ տնկակիցք մահու, այլ եթէ նմանութեան մահու ․ իսկ զյարութենէն չասաց՝ եթէ նմանութեամբ յարութեանն , այլ եթէ նմին իսկ յարութեանն լինիցիմք ։ Այլ այսու բանիւ ցուցանէ՝ եթէ չէ և ոչ եղև այն յարութիւնն , այլ հանդերձեալ է ։ Նոյն կամեցեալ արժանի հաւատարմութեան զբանս առնել , ցուցանէ այլ յարութիւն եղեալ աստ յառաջ քան զայն , որպէս զի և 'ի մնացուածոյս և 'ի հանդերձելոցն հաւատասցես ։

Այլ իբրև ասաց եթէ տնկակիցք լինելոց եմք յարութեան նորա , յարեաց 'ի նոյնս՝ եթէ "Զայս գիտացեմք զի հին մարդն մեր խաչակից եղև , զի խափանեսցի մարմին մեղաց", ։ Միանգամայն իսկ զպատճառն և զհանդերձեալ յարութեանն դնէ ։ Այլ ոչ ասաց եթէ խաչեցաւ , այլ եթէ խաչակից եղև , որպէս զի մերձեցուսցէ զմկրտութիւնն 'ի խաչն ․ վասն որոյ և վերագոյն ասէր՝ թէ "Տնկակից եղեալ նմանութեան մահու նորա , զի խափանեսցի մարմին մեղաց", ․ ոչ եթէ զմարմինս զայս այսպէս կոչէ , այլ զչարիսն ամենայն ։ Զոր օրինակ մարդ հին, կոչէ զաղտորաքն զմեղսն , սոյնպէս և մարմին մարդոյ յայտնանէ որ յազգի ազգի մասանց մեղացն զոր ունի յինքեան՝ զայն կոչէ խափանելի մարմին ։ Այլ զի ոչ ընդ վայր ինչ է ասացուածս , նմին իսկ Պաւղոսի որ յաջորդաց անտի քննեաց՝ լուր ։ Քանզի յորժամ ասաց "Զի խափանեսցի մարմին մեղաց", ընդմիջեմ եդ զայս ․ "Մի ևս ծառայել մեզ մեղաց", ։ Ոչ եթէ զայս մեռուցանել կամէր և ոչ եթէ զմեզ եղծանել և մեռուցանել , այլ զի մի մեղանչիցեմք ։

Նոյն և յառաջ մատուցեալ յայտնագոյնս իսկ ասէ՝ թէ "Որ մեռանի, Արդարացեալ է 'ի մեղաց", ։ Վասն ամենայնին մարդոյն ասէ զայս ։ Զոր օրինակ որ մեռանիցին վճարեալ իցէ յառաջիկայ մեղացն գործելոյ ,

վասն զի մեռեալ անկեալ դնի և ոչ կարէ մեղանչել այնուհետև, սոյնպէս և յորժամ 'ի մկրտութենէն ելանիցեմք. վասն զի մի անգամ մեռաւ անդ, պարտ է մեռեալ անշարժ կալ մեղացն: Ապա այսուհետև եթէ մեռար, մնա 'ի նմին մեռելութեան. վասն զի և իւրաքանչիւր որ յորժամ մեռանի, ոչ ևս կարէ այսուհետև մեղանչել. իսկ ապա եթէ մեղիցէ, ժխտացուցանէ ըզպարգևն Այ:

Եւ իբրև պահանջեաց 'ի մէնջ այսպիսի փոխարինութիւն, տես և զպտուղն նորին մատուցանէ ասելովն, «Եթէ մեռաք ընդ Քրիստոսի»: Զի և այս յառաջ քան զպսակն մեծագոյն պսակ է՝ հաղորդս գտանել մեզ տեառնն: Եւ զինչ ասէ. ոչ միայն այս, այլ և այլ իմն ձգնութեանդ ընծայ մատուցանեմ: Եւ զինչ իցէ այն. կեանքն յաւիտենից. քանզի «Հաւատամք, ասէ, թէ և կենակիցք լինիմք նորա»: Եւ ուստի յայտ իցէ այս. «Զի Քրիստոս յարուցեալ է 'ի մեռելոց, ոչ ևս մեռանի» ասէ: Եւ դու տես դարձեալ զյարութիւն նորա թէ որպէս 'ի հակառակորդացն կողմէ դարձեալ: Եւ քանզի սովորութիւն էր ոմանց խորհել վասն մահուն և խաչին, ցուցանէ թէ մահուանն այսու պարտ է պարծել: Եւ մի, ասէ, զի լուար թէ մեռաւ՝ մահկանացու զնա կարծիցես, որդին վասն անմահ մնաց. վասն զի մահու մահ՝ նորա մահն եղև: Եւ քանզի մեռաւ, վասն այնորիկ ոչ ևս մեռանի. զի և զոր մեռաւն, «զայն մահ մեղացն մեռաւ»:

Զինչ իցէ մեղացն մեռաւ. այսինքն է թէ և ոչ 'ի յանձն չէր պարտական, այլ վասն մերոց մեղացն. որպէս զի զնա ծախեսցէ և հատցէ զջիլս նորա և զամ զօրութիւնն, վասն այսորիկ մեռաւ: Տեսանես զիարդ երկեցոյց: Զի եթէ երկրորդ անգամ ոչ մեռանիցի, ապա և աւազան երկրորդ չիք. և եթէ աւազան երկրորդ չիք, ապա և դու առ մեղանչել մի դիւրահոս լինիր: Զայս ամենայն ասաց առ այնոսիկ որք յերկար կեալ ասէին՝ թէ արասցուք զչար զի եկեսցէ բարի. և դարձեալ թէ կացցուք մնասցուք 'ի յանցանսն զի շնորհքն բազմասցին: Վասն այսորիկ կամեցեալ արմատաքի խլել զայսպիսի չար արմատ՝ զայս ամենայն դնէ: «Իսկ որ կենդանին է, ասէ, կենդանի է Այ»: այսինքն է առանց

լուծանելոյ, որ ոչ ևս ընկճանի 'ի մահուանէ։ Զի և թէ զառաջին զմահն իբրև ոչ եթէ պատուհասական ինչ էր և մեռաւ, այլ վասն այլոց մեղաց, ապա մանաւանդ ևս առաւել այժմ ոչ մեռանի յորժամ զնոյն եղծ. զոր և հեբրայեցւոցն գրեալ ասէր՝ թէ "Մի անգամ 'ի կատարածս յաւիտենից յանարգութիւն մեղաց իւրով պատարագաւն յայտնեալ է"։ Եւ զոր օրինակ կայ մնայ մարդկան մի անգամ մեռանելն, նոյնպէս և Քրիստոս մի անգամ մատուցաւ առ 'ի բազմաց զմեղս վերացուցանելոյ. իսկ յերկրորդումն առանց մեղաց յայտնելոց է այնոցիկ որ ցանկանայցեն նմա 'ի փրկութիւն։ Եցոյց և ըստ այ կենացն զօրութիւն և զմեղացն զոյժ։ Ըստ այ կենացն, զի ոչ ևս մեռանիցի. իսկ ըստ մեղացն, զի անմեղ զնա կազմեաց մեռանել վասն այնոցիկ որ պարտականն էին մահու, ապա զիարդ ոչ կորուսանիցէ զմահ։

Արդ յորժամ Ճառեաց զկենացն նորա, զի մի ոք ասիցէ թէ մեզ զինչ օգուտ իցէ յասացելոցս, յարեաց 'ի նոյն՝ թէ "Նոյնպէս և դուք համարեցարուք զանձինս մեռեալս մեղացն և կենդանիս այ"։ Եւ բարւոք ասաց՝ թէ համարեցարուք, վասն զի անագան 'ի կիր արկ ըզձանս զայս. վասն այսորիկ իսկ 'ի դէմս ածէ զասացուածըս։ Եւ զինչ վարկանիցիմք, ասէ։ Մեռեալս լինել մեղացն և կենդանիս լինել այ "'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր"։ Զի խոր այսպէսն կեայ, զամենայն զառաքինութիւնս կատարէ, վասն զի զնոյն ինքն զՅիսուս ունի ինքեան գործակից. այս է զոր ասէն՝ եթէ 'ի Քրիստոս Յիսուս։ Զի եթէ մինչ մեռեալքն էաք՝ յարոյց, ապա մանաւանդ ևս առաւել զկենդանիսս կարող է պահել։

"Մի ևս թագաւորեսցեն մեղք 'ի մահկանացու մարմնիս ձեր առ 'ի հնազանդել ձեզ ցանկութեանց նորա"։ Եւ չասաց եթէ մի կեցցէ մարմինն և մի գործեսցէ, այլ եթէ մեղք մի թագաւորեսցեն։ Քանզի ոչ եկն եթէ զբնութիւնս 'ի բաց հատցէ, այլ զի զգաւրս ուղղեսցէ։ Արդ ցուցանէ թէ ոչ 'ի հարկէ և բռնութեամբ կամք 'ի հնազանդութեան մեղացն՝ այլ կամօք, չասաց եթէ մի բռնադատեսցի՝ որ 'ի հարկէ իմն թուի, այլ եթէ մի թագաւորեսցէ։ Եւ անպատեհ իսկ էր այնոցիկ որ 'ի յերկինս ունէին զթագաւորութիւն զմեղաց իւրեանց թագա-

ւոր անուանել, և որք թագաւորակիցք Քրիստոսի ե-ղեն՝ հանձոյ թուեսցի մեղացն գերիք լինել. զոր օրինակ եթէ ոք զթագ 'ի գլխոյ 'ի բաց ընկենուցու, և մնա-ցեալ առ կին մի ոք մուրացիկ չքնեղի և պատառատանս զգեցեալ իցէ՝ և նման կամիցի ծառայել, այնպէս և նո-քա գործեն :

Այլ զի ծանր համարէին յաղթել մեղացն, տես որ-պէս թեթևացոյց և զաշխատութիւնն սփոփեաց յա-ւելուլ՝ թէ "'ի մահկանացու մարմնիս ձեր": Այսու ե-ցոյց եթէ առ ժամանակեայս են աշխատութիւնքն և 'ի այն երագ լուծանին միանգամայն, և զառաջին զբա-րիսն մեզ յիշեցուցանէ և զմահու զարմանս: Այլ առա և 'ի սկզբանն իսկ եցոյց եթէ մահկանացու եղև: Այլ պարտ է թէպէտ և մահկանացու մարմին ունիցիք՝ մի մե-ղանչել, և զայս իսկ հնար: Տեսեր զառաւելութիւն շնոր-հաց մեծութեանն ո՛ր. վասն զի Ադամ չև ևս ունէր մահկանացու մարմին և ստնանեցաւ. իսկ դու զպատժա-պարտ մահու ունիս, և պահել կարող ես:

Այլ որպէս թագաւորեսցեն մեղք 'ի մարմնի, ասէ: Ոչ ընտանի իւրով զօրութեամբն, այլ 'ի մարդկան ծու-լութէ. վասն այսորիկ ասաց՝ թէ մի թագաւորեսցեն. և զոր օրինակ այսպիսի թագաւորութե ցուցանէ, 'ի նոյն յարեալ ասէ՝ թէ "Հնազանդել ձեզ ցանկութեանց նորա": Աստ զի չէ պատիւ ինչ եթէ զամենայն իշ-խանութեանն շնորհիցէ, այլ մերոյին ծուլութեան է անարգութեան հրամանքն. զի եթէ զոր ինչ կամիցիս գործիցես, յայնժամ յամենայն ազատութենէ հեռի ես. այլ եթէ արգելցես, յայնժամ մանաւանդ պա-հիցես ընտանի քո զպատիւն:

"Այլ մի պատրաստէք, ասէ, զանդամս ձեր զէն անօ-րէնութեան մեղաց, այլ զէն արդարութեան": Այսու ուրեմն 'ի մէնջ է մարմինս մեղաց և առաքինութեան, զոր օրինակ և զէնն յուրաքանչիւր 'ի կռուելեացն վարի. Այսպիսի ինչ է. յորժամ զօրական ոք առաքինի վա-ռեալ իցէ զինուք և զէնս զգաւառն պահիցէ, և միւսն առաւել ոք և սոյնպիսի զինուք վառեալ և մահս գոր-ծիցէ և զայլոց տունս անտուցու. այլ ոչ եթէ որ ձու-լեաց զզէնսն և կամ զինուն ինչ մեղս է, այլ նորա որ չարաչար զնա 'ի կիր եարկ: Այսպէս և վասն մարմնոյ է

մկրտութիւնն, որպէս և ասէր՝ եթէ “Հին մարդն մեր խաչակից եղև նորա”. այսինքն թէ մեռաւ։ Այլ արդ զայս գիտելով՝ յայսմ 'ի մեռելութենէ փախիցուք, որ և մինչ կենդանին եմք մեռանիմք, և 'ի սմանէ հրաժարեսցուք որ հաղորդն ամենեցուն մահն եհաս 'ի վերայ։ Իսկ զայլ ևս զերկուսն՝ որ մին է երանութեանն՝ որոյ յոյն ասաւ, իսկ միւսն որ 'ի մեղսն և յոյն ուղղեցաւ. Այլ հաւանեսցուք և նախանձեսցուք զայս զերկրաւեան առնել, զոր երբեմն Պաւղոս երանէ ասելով՝ թէ “Երանի որոց թողան մեղք նոցա”։ Իսկ ընդ միւսն Պաւղոս զառմանայր. զաղատացւոցն գրեալ ասէր՝ թէ “Որք Քրիստոսեանքն էին, զմարմինս իւրեանց 'ի խաչ հանին”։ Իսկ զայն որ 'ի լծակցութենէ, զոր և ոչ ուրիշն իսկ է արհամարհել, զոր և Քրիստոս իսկ ասէր՝ թէ “Մի՛ երկնչիք 'ի սպանանելեաց մարմնոյդ որ զհոգի ոչ կարեն սպանանել”. այլ ահաւոր այն է, “և յայնմանէ իսկ երկերուք որ զհոգի և զմարմին 'ի գեհենի կորուսանէ”։

Սասն այսորիկ փախիցուք յայնմանէ և զհետ մտցուք մեռելութեանն որ երանելին և զարմանալին է. որպէս զի և յայլ ևս յերկուցն 'ի միոյն փախիցուք և 'ի միւսոյն երկիցուք։ Քանզի չէ ինչ մեզ օգուտ եթէ զաւրեզական տեսանիցեմք, և ուտիցեմք և ըմպիցեմք, եթէ ոչ գործք բարիք մերձ իցեն։ Քանզի զինչ օգուտ իցէ թագաւորի, ասա ինձ, թէ թագ զգեցեալ իցէ, և զէն և զարդ զանձամբ արկեալ իցէ, և 'ի ծառայիցն որ 'ի հնազանդութեան իցեն՝ ամենեցուն սաստիւ թշնամանիցի և անգոսնիցի։ Այնպէս և քրիստոնէին չէ ինչ շահ. եթէ զհաւատսն ունիցի և զշնորհսն որ 'ի մկրտութենէն, և ինքն ամենայն ախտից հնազանդեսցի, առաւել ևս սա թշնամանիցի, և մեծ յոյժ ամօթ է. որպէս նա որ զթագն ունիցի և զծիրանիսն՝ ոչ միայն թէ չօգտի ինչ 'ի պատմուճանէն, այլ և զնա ևս յամօթ առնէ իւրով ըմբռնմամբ թշնամանօքն։ Այնպէս և հաւատացեալն որ ապականեալ կեանս կեայ, ոչ միայն եթէ չիցէ փափագելի ումեք, այլ և այսպէս կատականաց է, քանզի ասէ. “Որք առանց օրինաց մեղան, առանց օրինացն և կորնչին. և որք ընդ օրինօքն մեղան, օրինօքն և դատեսցին”. և հեբրայեցւոցն գրեալ ասէր՝ թէ “Զնարգեալ ուրուք զօրէնսն Մովսէսի, առանց ողորմութեան

առանձին երկուց կամ երից վկայից մեռանէր. ապա զիարդ չԹուիցի գժնեայ տանջանաց արժանի լինել որ զորդին Աստուծոյ առ ոտն եհար»: Նմանաւանդ եթէ յիրաւի իսկ. քանզի հնազանդեցուցի քեզ զամենայն ախտս 'ի մկրտութեանն, զինչ եղև այժմ զի այդչափ Թշնամանեցեր զշնորհսն և եղեր այլ ընդ այլոյ. սպանի և Թաղեցի և զյանցանսդ՝ քո որպէս զորդունս, ընդէր այլս ծնար. վասն զի եւս քան զորդունսն մեղք են չար. վասն զի սոքա բղ-մարմինս, իսկ նա զոգիսն ծակոտէ և եւս չար ժահահոտութիւնս գործէ:

Իսկ մեք չզգամք ինչ, վասն որոյ և ոչ մաքրել զնա փութամք. քանզի և ոչ արբեալն գիտիցէ Թէ որպէս չարժիցի և շուրջ գայցէ զնովաւ տեղին. իսկ որ չէ՛ն արբեալ, նա հաւաստեաւ իսկ գիտէ զայն զամենայն: Նոյնպէս և 'ի մեղսն գործի. որք զգաստութեա՛ն կեան, նոքա գիտեն հաւաստեաւ զտիղմն և զաղիսն որ անտի գործիցին. իսկ որ 'ի պոռնկութիւն զինքն տայ, որպէս յարբեցութենէ ծանրացեալ, զնոյն ինքն Թէ ախտանայցէ՝ չգիտիցէ: Նմանաւանդ Թէ այս եւս գժնեայ է քան զչարիսն, զի և 'ի միտ անգամ չառնու առնուլ որք 'ի մեղսն անկանիցին, վասն զի այնպիսի իսկ ընտանի իւրեանց ծանրութիւնն մեծ է, այլ 'ի տղմին Թաւալին և վարկանին Թէ յիւղս անուշունս վայելեն, վասն որոյ և ոչ հրաժարել կարեն յախտէն: Որդամբք լի են և որպէս ականք պատուականօք այնպէս զուարճանան. վասն այսորիկ և ոչ սպանանել կամին զնոսա, այլ սնուցանեն եւս և աճեցուցանեն յինքեանս; և այնքան մինչև առ հանդերձեալ յաւիտեանսն առաքեն զնա յորդունսն: Վասն զի և այնր որդանց սոքա են առիթք, և ոչ միայն առիթք, այլ և հարք իսկ են նոցա որք ոչն երբէք վախճանին. քանզի ասէ՝ Թէ «Որդն նոցա ոչ վախճանեսցի»: Սոքա և զգեհեննն լուցանեն որ ոչն երբէք շիջանի:

Արդ զի մի լիցի այս, զաղբիւրն չարեաց 'ի բաց մաքրեսցուք՝ և զհնոցն շիջուսցուք և զարմատն չարութեան 'ի ներքուստ 'ի բաց խլեսցուք. քանզի և ծառ յարժամ կտրի 'ի վերուստ, ոչ ինչ աւելի գործեցեր Թէ արմատն 'ի խոնարհ մնասցէ, և այսպէս դարձեալ շառաւիղս բերէ արմատն չարութեան: Ուսիր զայս 'ի բարւոք ունկն-

ղէն որ զամենայն հաւատաւ գիտէ և զհոգևորականն այգին բարւոք դարմանէ, և զնոյն տնեղերս մշակեաց։

Իսկ արդ զինչ իցէ այսր ամենայնի չարեացս արմատ. ընչիցն ցանկութիւն. «Արմատ ամենայն չարեաց, ասէ, արծաթսիրութիւնն է»։ Աստի կռիւք և թշուառութիւնք և ամբաստանք և կործիք չարեաց և թշնամանիք. ուստի մահք և գողութիւնք և գերեզմանակրկտութիւնք։ Որոյն վասն ոչ միայն քաղաքք, այլ և գաւառք և ճանապարհք, շէնք և անշէնք, լերինք և բլուրք և դաշտք և ամենայն իսկ առ հասարակ միանգամայն լի են արեամբք և սպանմամբք։ Այս և 'ի ծովու իսկ գտանին այսպիսի չարիք, քանզի և անդ դաւան մեղրութիւն պաշարեն զմիմեանս, և նոր իմն միտս անյագութեան տանանն։ Որոյն վասն և 'բնութեան օրէնքն եղծան և ազգականութեանն դաշինք քակեցան և սրբութեանն ազարութիւն կորեաւ։

Քանզի ընչիցն բանաւորութիւն ոչ միայն հակառակ կենդանեացս զինեաց զայլս, այլ և որք զնացլեն տատի մահուամբ՝ ընդ նոսա ոչ հաշտեցան. այլ և զզիրան բանան և պիղծ ձեռքն իւրեանց զմեռեալսն կողոպտեն. և ոչ որք վճարեցան 'ի կենցաղոյս ակամայ թողլ տան, զի զմնեայ յայնժամ առարեսցին 'ի նենգութեանցն։ Այսր և զտանեա չարիս կամ 'ի տան կամ 'ի հրապարակի կամ 'ի դատաստանի կամ 'ի խորհրդարանի կամ աթագաւորի և ամենայն ուստեք՝ առաի տեսանես բանեալ։ Քանզի այս չարիք են որ զամենայն տեղերս մահուամբ լցին. սոյն և զգեհեննն վառեաց. սա և քան զանապատն և զանկոխն եւս խաւարնագոյնս եցոյց զքաղաքս, մանաւանդ թէ եւս չար քան զայն։ Ասն զի անդ 'ի դարանակալսն եղեալ՝ զիւրով է զգուշանալ, և զի ոչ հանապազորդ գտանի ինչ այնպիսի. իսկ աստ 'ի մէջ քաղաքի նմանն նոցին, մանաւանդ թէ եւս առաւել դժընդակ. ուստի և առ 'ի պահելն և զգուշանալն այս դժուարին է քան զայն, և զի ամենայն համարձակութեամբ իշխեն գործել զայս և ոչ ինչ խորշին երբէք։ Քանզի զօրէնսն որ 'ի բաց հրամայեն լուծել զայսպիսի զիրսն, զնոսա իւրեանց պատերազմակից առնեն, և արդ այսպէս զարշելի սպանմամբ լնուն զքաղաքս։

Իսկ արդ չիցէ՝ սպանումն, ասա ինձ, և եւս չար քան

զտրտմութիւն՝ յորժամ տեսցէ մտանելիցս զազգատուն և բան-տարգելս ատենիցս, և յետ տեսլեան և տանջանս եւս մա-տուցանիցես. և ապա նոցա բազում պաղատանս առա-ջի եդեալ։ Այլ դու թէպէտ քեզէն չտանջիցես, սա-կայն պատճառս տաս նոցա որք զգործսն ունիցին տան-ջելոյ՝ մանաւանդ եթէ դու քեզէն իսկ տանջես։ Իսկ զի մարդասպանն միանգամայն իսկ յորժամ ցցէ զսուրն՝ առ փոքր մի ժամանակ տրտմեցուցանէ, և յորժամ սպա-նանէ՝ չկարէ ինչ այլ չարչարանս նմա յաւել բերել։ Իսկ դու զապարաւութիւնս զխարդախութիւնս զնենգու-թիւնս, և զայն խաւար գործես նմա. և ապա ցանկայ այնուհետև բիւր անգամ մեռանել քան թէ լիցէ կեն-դանի։

Այլ արդ զմտաւ ած քանի՞ մահս գործես, մանաւանդ թէ որ ևս զառնագոյն է՝ զի յափշտակես և ագահես, և այն զի ոչ յաղքատութենէ նեղեալ և ոչ 'ի սովոյ վտանգեալ ես. այլ զի զձիոյ զսանձս բազում ոսկւով օծանիցես, և զտանն վերնայարկս և զսեանցն խոյակս։ Այլ արդ որպիսում գեհենի՞ այս չիցէ արժանի, յորժամ զեղբայրն և որ անճառ բարութեանցն ընդ քեզ հա-ղորդեցաւ և նման քեզ պատուեցաւ 'ի տեառնէն ամե-նեցունց, զի զքարինսն զարդարեսցես և զյատակս տանն և զանբան անասնոցն զմարմինս՝ որք և ոչ զգան ինչ այս-պիսի զարդու, 'ի բիւր 'ի թշուառութիւնս արկանես։ Նաղաւս անգամ և շանն իսկ խնամ տանիս. իսկ ըզ-մարդն՝ մանաւանդ թէ զՔրիստոս իսկ վասն շանցն և զորոց յառաջագոյն ասացաք 'ի վերջին աղքատութիւն և 'ի սովս փակեալ արգելուս։

Այլ արդ զի՞նչ չար քան զայսպիսի չփոթութիւն կայ-ցէ, և կամ զի՞նչ դառնագոյն քան զայնպիսի անօրէ-նութիւն. քանզի գետք հրեղէնք բաւական են այնմ ո-գւոյ։ Քանզի որ ըստ պատկերին նմա եղև՝ նա անցեալ կայ երկիթացեալ և լի ամօթով վասն քո անագորոյն մը-տացդ. իսկ զերեսս ջորւոցն որ զքո կրինն բարձեալ բե-րեն՝ բազում ոսկւով պայծառացուցանես, և զմորթսն և զփայտսն և զձեղուն նորա, մանաւանդ թէ որդանցն զարդարես զայն։ Մինչդեռ ամթու ինչ կազմել և կամ ուրիցն պատուանդան՝ զամենայն ինչ յասկւոյ և յարծա-թոյ կազմես, իսկ Քրիստոսի անգամ վասն որոյ յերկ-

նից եկն և զիւր պատուական արիւնն եհեղ՝ և ոչ զխաբեող՝ կերակրիւքն գտանէ վայելել առ քում ապաւինութեանդ: Այլ մահիճքն ամենայն ուրեք արծաթով են զարդարեալ. իսկ սրբոցն մարմինք և 'ի կարևոր 'ի հարկէն չքաւորեալ գտանին: Այլ քան զամենայնս զՔրիստոս անարգ համարեցար, քան զծառայսն և քան զերրիսն և քան զմահիճսն և զաթոռսն և զպատուանդանսն և զայլն ամենայն զկահն:

Իսկ եթէ սոսկաս զայսոսիկ լսելով, 'ի բաց կաց 'ի գործոյն, և տեսանես զի ոչ ինչ վնասիցեն քեզ առացեալքս: Հրաժարեա և 'ի բաց լեր յայսպիսի մոլութենէ. քանզի և է իսկ մոլութիւն յորժամ յայսպիսի իրս փոյթք գտանիցիք: Վասն որոյ զայս 'ի բաց թողեալ՝ նայեսցուք զոնեայ անապան ուրեք յերկինս, և յիշեսցուք զհանդերձեալ օրն և զմտաւ ածցուք զահաւոր ընդատաստանն և զզաղտնեացն զհաւաստիս և զանվրէպ զհաշիւն: Խորհեսցուք զայն թէ զամենայն զայս տեսանէ ած և համբերէ, և ոչ ասասցէ իսկ առաքէ կայծակունս 'ի վերուստ. և ոչ եթէ այսոմ միայն արժանի եմք, այլ և զայն ևս չառնէ. զո՛ր, զի և ոչ ծովու տայ եղանել 'ի վերայ մեր և ծածկել, և ոչ երկրի հերձեալ ընդ մէջ և զմեզ ընկլուզել. ոչ զարեգական շիջոյց և ոչ զերկինս 'ի վայր կործանեաց հանդերձ լուսաւորօքն, և ոչ զամենայն ինչ ի բարձ 'ի միջոյ և կորոյս. այլ ետ 'ի կարգի կալ և մատակարարել մեզ արարածոցս:

Այլ զայս զմտաւ ածեալ զքաղցում մարդասիրութիւն նորա՝ զարհուրեսցուք 'ի նմանէ, և յիմաստնի մեր ազգականութիւնն եղցուք: Վասն զի այժմ չեմք ինչ ընդհատ յանբան անասնոց, այլ մանաւանդ թէ ևս 'ի վայր. քանզի նոքա սիրեն զազգակցութիւնն և բաւական է նոցա հաղորդութիւն բնութեանն առ միմեանց գութն: Իսկ դու յետ բնութեանն բիւր պատճառս ունիս որ ժողովէ զքեզ և միացէ առ ընտանի քո անդամսն: Յայնժամ պատուեցար բանիւ, մինչդեռ հաղորդն էիր բարեպաշտութեան և բիւր բարութեանցն՝ վայրենագոյն քան զնոսա գտար. որ անմտութեամբն էր ընդ վայր ծախքն՝ յայնս բազում փոյթս ցուցեր, իսկ զպատճառաւոր ոյ և սովով և մերկութեամբ անտես առնէիր և արձակէիր 'ի քէն, մանաւանդ թէ չարաբանութեամբ իսկ և

բամբասանօք։ Զի եթէ վասն փառաց ինչ գործէիր զայն, ապա եղբօրն պարտ էր հոգ տանել առաւել քան ձիոցն. քանզի որչափ 'ի լաւ երախտիսն քո վայելէ, այնքան ինչ պայծառագոյն յօրինէ զփութոյ քո զպսակըն։ Իսկ դու զհակառակն իսկ գործես. թէպէտ և բիւր չարախօսս ունիս, չզգաս ինչ։ Ո՞վ ոք իցէ որ քեզ չար չասիցէ. ո՞վ ոք ոչ գրեսցէ զքո զվերջին զանօրէնութիւնդ և զմարդատեցութիւնդ, յորժամ տեսանիցեն զաղքատականն անարգեալ և զանասունսն պատուեալ, և յետ անասնոցն զի և զտունսն խուցսս։ Ո՞չ լուար առաքելոյն որ ասէին՝ եթէ ոչք առաջին զբանն ընկալան, զտունս և զգեօղս վաճառէին, զի զեղբարսն կերակրեսցեն. իսկ դու և զտունս և զգեօղս յափշտակես, որպէս զի զձիսն և զփայտսն զարդարիցես և զմրթն և զձեղունն և զյատակն։

Այլ ևս դառնագոյն այն է յորժամ ոչ արք միայն, այլ և կանայք ևս զնոյն մոլութիւն մոլին, և զարսն իւրեանց վարժեն յայնպիսի ընդ վայր աշխատութիւնս ամենայն ուրեք, մանաւանդ քան 'ի կարևորսն ծախել։ Իսկ եթէ ոք յանկարծ յանդիմանեսցէ վասն այսպիսի ինչ իրաց, պատրաստեն իւրեանց բանս պատասխանատուութեան՝ լի բազում բամբասանօք. և այս լինի, ասեն, և այն։ Ո՞չ զարհուրիս զայդպիսիդ բարբառելով, ընդ ձիսն և ընդ ջորիսն և ընդ մահիճսն և ընդ աթոռսն և ընդ պատուանդանսն զՔրիստոս 'ի համար մուծանել. մանաւանդ թէ և ոչ ընդ նոսա իսկ, վասն զի նոցա բազում մասունք են անդ, իսկ նմա հազիւ թէ փոքր ինչ մասն տայցես։ Ո՞չ գիտես թէ ամենայն ինչ նորա է՝ և դու և քոյդ ամենայն. ո՞չ գիտես թէ զմարմինդ նա ստեղծ և զշունչդ նա շնորհեաց և զաշխարհս զամենայն յօրինեաց, իսկ դու և ոչ փոքր մի ինչ ընդ այսչափ երախտեաց հատուցանես նմա։ Եւ յորժամ փոքր մի խուղ 'ի վարձու տաս ումեք, ամենայն հաւաստեաւ պահանջես զվարձսն. իսկ զնորա զամենայն զընծայուածսն ընկալեալ և յաշխարհի յայսպիսում 'ի նորա բնակեալ, և ոչ փոքր մի վարձ կամիս հատուցանել նմա, այլ սնափառութեամբ զամենայն ընձեռեսցես և զքոյսն և զքեզ. քանզի և անտի իսկ առ սկիզբն այս ամենայն։ Միթէ ձիոյն լաւ ինչ իցէ քան զառաքինու-

թիւն, և կամ զարդն որ զնովաւ, և կամ մարդն որ 'ի վերայ նորա գտանի, թէ և անարգ իսկ իցէ։ Յորժամ տեսողքն հայիցին, ապա թողեալ զնա 'ի ձիոյն 'ի զարդն չքեղն զտեսանելիսն, և 'ի ծառայսն որ զհետ երթան և որք առաջի ընթանան պերճութեամբ. ապա յորժամ այնպէս բերեալ լինի բազմութեամբն, առեալ և 'ի բաց դառնան որպէս և 'ի հասարակաց թշնամւոյ։ Նոյն և որ և զհոգին զարդարէ՝ այնպիսի ինչ պատահիցի նմա. այլ և մարմին և հրեշտակք և տէրն հրեշտակաց և ամենեքեան իսկ զպսակին բոլորեն։

Իսկ արդ եթէ փառաց ես ցանկացող, մերժեա յայդմանէ որ այժմդ գործես. և մի զտունն, այլ զոգիդ զարդարեա, զի լինիցիս պայծառ և երևելի. զի յորում այժմդ ես, չիք ոք քան զքեզ անարգագոյն և անարգ. իսկ յորժամ ոգիդ զխաղաղութիւն ունիցի, ապա և տանն գեղեցկութիւն յառաջանայ։ Իսկ ապա եթէ չունիցիս յանձին յիմոց առացուածոցս, լուր զոր ինչ արար ամե յարտաքնոցն, ապա գոնէ ամաչեա 'ի նորա փիլիսոփայութենէն։ Ըանգր ասեն՝ թէ ոմն 'ի փիլիսոփայիցն 'ի տուն որումն թագաւորազնն ուրուք մտեալ՝ բազում ոսկւով պայծառացուցեալ տունն, և առաւել 'ի կճեայց անօթ ճառագայթեալ, և 'ի սեանցն գեղեցկութենէ, հայեցեալ և յատակս տանն և զայն պէսպէս շատրուանօք ծաղկագոյնս և շուշանանմանս զարդարեալ, ապա 'ի տանն տեառնն յերեսս եթուք փիլիսոփայն։ Իսկ որ շուրջն կային սկսան մեղադրել զնա և ասեն՝ թէ զինչ է, զի գործեցեր զայսպիսի զանարգութիւն, որ և ոչ ուրեք թքեր, այլ յերեսս տեառնդ։ Իսկ նորա պատասխանի տուեալ ասաց. վասն զի զոր ձեր պատուեալ էր, ես անպատուել ոչ կարեմ, զորմունս կճովք և ոսկւովք, զյատակսդ ծաղկապէս դաշտաւդ, զերեսս դորա գտի մերկ 'ի զարդուէ. զոր ձեր չէր պատուեալ, և ոչ ես պատուեցի։ Իսկ այնպէս յանդիմանեաց զնոսա և պատկառեցոյց։

Տեսանես զիարդ եղեն ծաղր և այսպէս կատականաց. վասն զի որ արտաքին զարդարանքս են, 'ի բազմաց զիւրաւ արհամարհին. մանաւանդ թէ յիրաւի իսկ։ Այլ զոր զի զքո զկենակիցն այսպիսիս գործես, որպէս զի պատառոտուն և աղտեղի համդերձս զգեցեալ է և անխնամ

լինել ամենեւին, եւ զաղախինն պայծառ եւ ազգի ազգի զարդուք զարդարես։ Եւ արդեօք զայրանայցես ինչ ընդ բանսդ եւ թշնամանս զիրսն վարկանիցես։ Սոյն եւ զոգւոյդ ած զմտաւ. յորժամ զորմն եւ զյատակսն եւ զայլն ամենայն զարդարիցես, եւ թէ ողորմութիւն չառնիցես եւ զայլն ամենայն իմաստասիրութիւն յանձին ունիցիս, ոչ ինչ վճարես, մանաւանդ եթէ եւս դժնեայ քան զայն գտանիս զոր յառաջն ասացաք։ Վասն զի 'ի միջի ոսկւոյ եւ աղախնոյ չիք ինչ, իսկ մարմնոյ եւ հոգւոյ բազում ինչ է 'ի միջի. զի եթէ ընդ մարմինն եւ ընդ հոգին, ապա յայտ է թէ ընդ հոգի եւ ընդ տունն եւս առաւել, եւ դարձեալ ընդ հոգի եւ ընդ աթոռս եւ ընդ պատուանդանս բազում ինչ կայ 'ի միջի ընտրութիւն։

Եւ արդ զո՞ր պատասխանատուութիւն ունիցիս յորժամ զայս ամենայն արծաթով պատիցեն, եւ զնա 'ի պատառատուքս տեսանիցեն եւ բորբոսեալ եւ քաղցեալ եւ լի վէրօք ն՛ բիւր շանց պատառեալ. եւ յետ այսր ամենայնի ապա եւ զուարճանայ եւս մանաւանդ արտաքին զարդուքն մեծատանն, որ մանաւանդ վերջին անմտութեանն եւ մոլորութեանն է եւ նախատանաց եւ ամօթոյ եւ անարգանաց, որ եւ 'ի վերջին իսկ 'ի տանջանսն տանի զայսպիսի զարդարողսն։ Վասն որոյ, աղաչեմ, զայս ամենայն իմացեալ զարթիցուք գոնեայ անագան ուրեք եւ 'ի մեր միտս եկեսցուք, եւ զարտաքին զարդն զայն յոգիս մեր փոխեսցուք. այնպէս եւ նա անկապուտ մնայ եւ զմեզ զոյգ հրեշտակաց գործէ եւ զանշարժ զօգտաւան մեզ ընձեռէ. Որում լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք եւ մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք Հօր հանդերձ Հոգւովն սրբով այժմ եւ յաւիտեանս. ամէն։

# ՃԱՌ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

«Մարդկօրէն ասեմ վասն տկարութեան մարմնոյ ձերոյ. զի որպէս պատրաստեցէք զանդամս ձեր ծառայս անօրէնութեան յանօրէնութիւն, նոյնպէս և այժմ պատրաստեցէք զանդամս ձեր ծառայս արդարութեան 'ի սրբութիւն»:

Այլ վասն զի բազում հաւատոյ պահանջեաց 'ի վերուց և մեռանել հրամայեաց յաշխարհէ և սպանանել զմեղսն և անշարժ մնալ 'ի մեղացն ազդմանէ, և կարծի թէ մեծ ինչ կամի ասել որ գերազանցէ քան զմարդկային բնութիւն, ցուցանել կամեցաւ ասելով՝ թէ ոչ ինչ ուժգին և քան զչափն աւելի պահանջեաց՝ որոց այսպէս վայելեալ էր 'ի շնորհսն, այլ յոյժ չափով և թեթեւագոյն 'ի հակառակորդաց անտի կազմէ զնա, և ասէ այսպէս՝ թէ «ըստ մարդկութեան ասեմ». որպէս յորժամ ասիցէ՝ եթէ 'ի մարդկայնոյ խորհրդոց Ճառեմ. որպէս զի ասացեալ՝ թէ 'ի սովորութենէ եղելոցն: Կամ՝ զի այս չափաւորութեան յորջորջումն զմարդկային յայտնէ. զոր և այլուր ասէ՝ թէ «Փորձութիւն 'ի ձեր վերայ ոչ է եկեալ, բայց 'ի մարդկանէ». այսինքն է չափաւոր և փոքր:

«Որպէս պատրաստեցէք զանդամս ձեր ծառայս յանմաքրութիւն անօրէնութեան, սոյնպէս և այժմ պատրաստեցէք զանդամս ձեր ծառայս արդարութեան 'ի սրբութիւն»: Թէպէտ բազում ինչ է 'ի մէջ տեսանն, բայց սակայն զմիօրինակ պահանջէ մեզ հնազանդութիւնն: Պարտ էր ևս առաւել ընծայ լինել, և այսչափ ինչ առաւել որպէս զի սորա տէրութիւնս մեծ է քան զնորայն. բայց սակայն, ասէ, ոչ առաւել պահանջեմ վասն տկարութեանդ ձերոյ: Այլ չասաց թէ վասն յօժարութեանդ ձերոյ, այլ վասն մարմնոյ ձերոյ. զի առանց ծանրանալոյ զբանն գործիցէ: Այլ զինչ է զի զմին անմաքրութիւն ասէ, իսկ զմիւսն մաքրութիւն. և այն անօրէնութիւն, իսկ միւսն արդարութիւն: Այլ ո՞վ ոք,

ասէ, որպէս թշուառական իցէ մինչև ոչ այսչափ փոյթ յանձին ունիցի ընծայել և ծառայել Քրիստոսի որչափ մեղացն և սատանայի: Նոյն թէ այդպէս է, լուր յաջորդացն և առնուս 'ի միտ յայտնապէս թէ և ոչ փոքր ինչ ընծայեսցէք: Այլ վասն զի այսպէս մերկ ասաց, չթուի հաւասարիմ և ոչ դիւրընկալ, և ոչ հնչէր յականջս լսողացն՝ թէ էր ասացեալ նորա թէ ոչ այնքան ծառայեցէք Քրիստոսի որպէս մեղացն և սատանայի, յաջորդացն կազմէ և առնէ հաւասարիմս յորժամ զծառայութիւնն զայն 'ի մէջ ածիցէ և ցուցանէ թէ որպէս ծառայեցին:

« Քանզի յորժամ, ասէ, ծառայքն էիք մեղացն, ազատեալք էիք յարդարութենէն »: Այլ զոր ասէն՝ այսպիսի ինչ է, թէ մինչ 'ի մեղսն կէիք և յամպարշտութեանն, և յետին չարութեամբ կէիք և հնազանդէիք, այսինքն է թէ ոչ ինչ բարիս գործէիք և արդարութիւն: Այս է զոր ասէն՝ թէ « ազատացեալք էիք յարդարութենէ »․ այսինքն է թէ չկայիք 'ի հնազանդութեան, այլ օտարացեալք էիք բոլորովին․ քանզի և ոչ լսել իսկ կամէիք զօրինակ ծառայութեան որ առ արդարութիւնն, և ոչ ընտրութիւն ինչ կամէիք առնել արդարութեանն և մեղացն․ ամենևին իսկ, ասէ, զձեզ մատնեցէք 'ի չարիս: Որպէս և այժմ, ասէ, յորժամ փոխեցարուք առ արդարութիւնն, ամենևին իսկ տուք զձեզ առաքինութեան․ մի ինչ ունել զչարութեան մեղացն ըստ առաջին գործոցն․ զանէ զոյգ չափով որպէս անդն՝ ծառայեցէք սրտի մտօք: Զի ոչ թէ տէրութեանն միայն այնչափ ինչ է 'ի միջի այնր և այոր, այլ և ծառայութեանն իսկ բազում ընտրութիւն է․ զոր և ինքն իսկ բազում համարձակութեամբ յայտ առնէ և ցուցանէ թէ ում յայնժամ ծառայէիք և կամ ում այժմ: Այլ չև ևս ճառէ զվնասուն որ յերացն եղեալ էր, այլ միայն զամօթոյն յիշեցուցանէ նոցա:

« Զինչ պտուղ ունէիք յայնժամ որով այժմդ ամաչէք »: Այնպիսի էր ծառայութիւնն, ասէ, մինչև այժմ յիշատակօք իսկ ամաչէք․ ապա յայտ է թէ գործովքն ևս առաւել: Իսկ այժմ, ասէ, երկպատիկ շահիք, զի զերծայք յամօթոյն և 'ի միտ առէք թէ որպիսի ոք էիք: Որպէս և յայնժամ երկպատիկ վնասէիք

Այլ արդ իբրեւ զծառայութեանն յիշեաց եւ զթագաւորէն, զանազանութիւն բերէ 'ի մէջ, ասէ. «Թոշակ մեղաց մահն է, իսկ շնորհքն Այ կեանք յաւիտենից 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր»: Այլ իբրեւ ասաց թէ Թոշակ մեղաց մահ է, 'ի հեշտագոյնսն իմն դառնայ, եւ ոչ թէ 'ի նմին կարգի յամէ: Վասնզի եւ ոչ իսկ ասաց թէ պտուղ ուղղութեանց ձերոց, այլ շնորհքն Այ. եւ եցոյց եթէ ոչ ընտանի իւրեանց ուղղութեամբքն կարացին զերծանել 'ի պատժոց, եւ ոչ դարձեալ պարտս ինչ առին զոր ընկալանն եւ կամ 'ի փոխարէնս ինչ երախտեացն, այլ շնորհօքն այս ամենայն վճարեցան: Այսպէս զի եւ յայսմ իսկ առաւելութիւն է, ոչ զի զերծոյց միայն, այլ եւ եւս մեծագոյնս պարգեւեաց` այնու զի որդւովն վճարեաց զայս ամենայն:

Այլ իբրեւ ճառեաց զշնորհացն, ապա այնուհետեւ եւ զօրէնսն կամի խափանել: Ոչ մի երկրորդեան ծուլագոյն գործիցեն զնոսա, 'ի միջի առնող զնէ զվարս անթլփատութեան, եւ ամենայն ուստեք զպայթուցանէ 'ի խնամս առաքինութեան զլսողսն: Յորժամ ասէ՞ եթէ Թոշակ մեղաց մահ է, բարիոք երկեցուցանէ դարձեալ եւ առ հանդերձեալսն զգուշագոյն գործէ. որով զգուշացուցանէ նոցա եւ վասն առաջին գնացիցն, նովիմբ եւ զոհացուցանէ զնոսա եւ զգուշագոյնս առ ամենայն վարս, եւ արդ հանգուցանէ զամփոփական բանին խրատս, եւ ապա ինքն դարձեալ 'ի հաւատոյն ձեռս մեր առնելովն. «Մի՞թէ ոչ գիտէք, եղբարք, զի ընդ գիտողս օրինացն խօսիմք»: Այլ վասն զի ասաց թէ մեռաք մեղացն, ցուցանէ թէ օրէնքն չտիրէ նոցա, եւ ապա յայտ է թէ եւ ոչ մեղք. եւ այնպէս հեշտացուցեալ զբանն, 'ի մարդկային կերպարանէ առնէ յայտնի: Այլ թուի մի ինչ ասացեալ, բայց երկուս զնէ ուղղելով զյառաջիկայսն. մի այն է զի 'ի մեռանել առն չէ ընդ օրինօք առնն կինն այնուհետեւ, քանզի չէ ոք որ արգելու. երկրորդ անգամ ասէ ոչ եթէ միայն այրն վախճանեցաւ, այլ եւ կինն. որպէս զի կրկին ընկալցին զազատութիւնն: Ոչ եթէ 'ի վախճանել առնն հրամայեաց յիշխանութենէ նորին կինն, իսկ յորժամ եւ կինն եւս վախճանեսցի, առաւել եւս ազատեսցի. զի եթէ 'ի միոյն մեռանելոյ ազատի յիշխանութենէն, յորժամ եւ նա եւս մեռանիցի` յայտ է թէ

երկոքեան միաբանին. Այլ արդ համդերձեալ է ելանել յայսպիսի օրինակս ինչ համդերձ զօրելով զբանն. ըսկիզբն առնէ Ճառին. "Ո՞չ գիտէք, եղբարք, ասէ. զի ընդ գիտօղս օրինացն խօսիմ": Ով որ յոյժն գիտէք իսկ և որ յայտնին է, զնոյն և ես ամենայն զգուշութեամբ խօսիմ. "Ո՜ի օրէնքն տիրեն մարդկան ցորքան ժամանակս կենդանի է": Այլ ոչ առաց առն և կամ թէ կնոջ, այլ թէ մարդոյ՝ որ համապատակաց իսկ է երկուց կենդանեացն անուն. "Վասնզի և որ մեռանին, արդարացեալ է, ասէ, 'ի մեղաց": Ապա ուրեմն կենդանեացն կան օրէնք 'ի վերայ. իսկ որք մեռանին՝ ոչ ինչ կարէ նոցա հրամանս տալ: Տեսանես զիարդ եցոյց կրկին զազատութիւն.

Այլ յորժամ յառաջագոյն ակնարկեաց զիրսն, ապա 'ի կնոջն 'ի կերպարանս շրջէ զբանն և այսպէս ասէ՝ եթէ "Այրն առնակին 'ի կենդանի այր իւր կապեալ կայ օրինօքն. ապա եթէ մեռանիցի այրն, խափանին օրէնք առնն 'ի կնոջէն: Ապա ուրեմն մինչ կենդանի է այրն, շուն կոչի եթէ լինիցի առն այլում. իսկ յորժամ մեռանիցի այրն՝ ազատեալ է, ոչ համարիցի շուն եթէ կամիցի լինել առն այլում": Հանապազորդ զայնս յեղյեղու և բազում զգուշութեամբ. իսկ, վասն զի յոյժ վստահ է աստի իսկ կազմել զայնս. քանզի 'ի կարգի անդ զօրէնսն եդ, և 'ի կարգի կնոջ զամենայն զհաւատացեալս: Ոչ եթէ ըստ առաջարկութեան ինչ յարէ. քանզի ըստ կարգի զայն էր ասել՝ թէ, եղբարք իմ, ոչ ևս տիրեն ձեզ օրէնքն, քանզի մեռան օրէնքն: Բայց չասաց այսպէս, այլ յառաջարկութեամբ բանին ցուցանէ զյաջորդսն. որպէս զի մի ծանրագոյնս առնիցէ ըզբանն՝ զկնոջ զվախճան բերէ 'ի մէջ ասելովն՝ որպէս թէ "Եղբարք իմ, և դուք մեռարուք օրինացն": Վասնզի յորժամ այս և այն լիցի և ազատութիւն շնորհիցի, զինչ խափան է շնորհել զիրսն յորժամ օրինացն մեռա ինչ ոչ լինիցի:

"Վասնզի կին առնակին 'ի կենդանի այր իւր կապեալ կայ օրինօք": Ո՞ւր իցեն այժմ որք զօրէնսն բամբասեն. լուիցեն զայս յորժամ 'ի վտանգաւորսն նմանա Պաւղոս, ոչ ջնջեաց 'ի բաց զնորա պատիւն, այլ և մեծամեծս ևս խօսի զնորա իշխանութենէն. զի և 'ի կենդանութեան նորա կապեալ կայ Հրէայն, և շունք կա-

չին որք յանցանէին և թողուին զնա մինչդեռ կենդանին է: Իսկ եթէ յորժամ վախճանեցաւ և թողլին, չէին ինչ զարմանք, և առ մարդիկ յորժամ լինիցի այսպիսի ինչ՝ է մեղադրութեան արժանի: «Իսկ արդ եթէ մեռանիցի այրն, ասէ, արձակեալ է յօրինաց առնն»: Տեսանե՞ս զիարդ յօրինակէն ցուցանէ թէ վախճանեցան օրէնքն. այլ և ոչ յաջորդոյքն զայնս գործէ: «Ապա ուրեմն, ասէ, մինչ կենդանի է այրն, շուն կոչի եթէ լինիցի առն այլում»: Տեսանե՞ս զիարդ յամէ 'ի մեղադրութեան այնոցիկ որք անցանէին զօրինօքն մինչդեռ կենդանին էին օրէնք: Այլ յորժամ զնոյն դադարեցոյց, ապա այնուհետև ամենայն զգուշութեամբ շնորհէ նոցա զհաւատսն, և ցուցանէ թէ ոչ ինչ վնասեցան առտի օրէնքն. ասէ. «Մինչդեռ կենդանի է այրն, շուն կոչի կինն եթէ լինիցի առն այլում»: Այնպէս և դուք, եղբարք. ըստ կարգի այն էր ասել, եթէ 'ի վախճանի օրինացն չհամարել շուն թէ լինիցի առն այլում: Չասէ այսպիսի ինչ, այլ զի՞նչ՝ թէ «Մեռայք օրինացն». և եթէ մեռեալք եղերուք, չէք ընդ օրինօք: Զի եթէ 'ի վախճանել առնն չէ կինն ընդ օրինօք առնն, ապա մանաւանդ ևս առաւել դուք 'ի վախճանել օրինացն ազատեալ էք յայսպիսի իրաց:

Տեսե՞ր զիմաստութիւնն Պաւղոսի. և եթէ օրինացն այս կամք էին, քանզի չարգելու լինել այլում առն 'ի վախճանել առաջնոյն, ո՞րպէս արդեօք որ մինչ կենդանին իսկ է՝ հրամայէ գիր արձակման տալ: Այլ չդնէ զայս այժմ, վասն զի մանաւանդ մեղադրութիւն իսկ էր կնոջն. զի թէպէտ և ներէր, այլ չէ ազատ 'ի պատժառանաց: Յորժամ 'ի կարևորացն և 'ի լաւագունիցն առնի զյաղթութիւնն՝ չներէ զաւելորդսն, քանզի չէ ինչ կարօտ: Զի յայնժամ իսկ է զարմանալի յորժամ նոյն ինքն օրէնքն ազատեն զմեզ 'ի մեղադրութենէն յորժամ 'ի բաց կամք 'ի նոցանէ, զի ցուցանէ թէ և ինքեանց օրինացն կամք էին այն, զի լիցուք մեք Քրիստոսի: Քանզի և օրէնքն իսկ մեռան և մեք մեռաք, և կրկին եղև իշխանութեանն բարձումն:

Այլ ոչ եթէ զայս միայն բաւական համարի, այլ և զպատճառս ևս դնէ. և ոչ լոկ եդ զանուն մահուն, այլ դարձեալ զայնս գործելով՝ զխաչն 'ի մէջ բերէ, և սմա

ցուցանէ զմեզ վրիժապարտս ։ Այլ չասաց լոկ եթէ ա-զատեցայք, այլ թէ 'ի ձեռն տէրունական մահուն ։ " Մեռայք, ասէ, օրինացն 'ի ձեռն մարմնոյն Քրիստոսի ,, ։ Այլ ոչ միայն աստ հրաման տայ, այլ և յառաւելութենէ երկրորդ առնն. վասն որոյ և յարեաց իսկ 'ի սոյնս՝ թէ " Լինել ձեզ այլում, այսինքն որ 'ի մեռելոցն յարեաւ ,, ։ Նոյնպէս զի մի՛ ասիցեն թէ ոչ կամիմք երկրորդ առն լինել, վասն զի օրէնքն չտանեն շուն զայրիսն, եթէ կամիցին երկրորդ առնն ամուսնանալ ։ Այլ արդ զի մի՛ այսպիսի ինչ ասիցեն, 'ի սկզբանն յիշաց ամուսնի իսկ պարտ է, մեզ կազմել. զոր օրինակ և այլ ուրեք յայտնապէս ասէ՝ թէ " Ոչ էք անձանց տեարք. գնոց գնեալ էք, ասէ, մի՛ լինիք ծառայք մարդկան ,, . և դարձեալ թէ " Մինն 'ի վերայ ամենեցուն մեռաւ ,, . ըղսոյնս և աստ ակնարկէ ասելովն թէ " Ի ձեռն մարմնոյ նորա ,, ։

Նոյնպէս և հրամայէ իսկ Խոհութեամբ 'ի լաւագոյն 'ի յոյս անդր յենուլ, և ասէ այսպէս. " Զի պտղաբերք լինիցուք այ̃ ,, . վասն զի յայնժամ մահու էաք պտղաբերք, իսկ այժմ այ̃ ։ " Քանզի մինչ մարմնովն էաք, կարիք մեղացն 'ի ձեռն օրինացն ազդէին յանդամս մեր առ 'ի պտղաբեր լինել ձեզ մահու ,, ։ Տեսե՛ր զշնորհսն զառաջին առնն ։ Այլ չասաց թէ մինչ էաք յօրէնսն, վասն զի ամենայն ուրեք խնայէր 'ի նոսա, զի մի՛ ինչ կռուան տայցէ հերձուածողացն. այլ ասէ թէ մինչ էաք 'ի մարմնին, այսինքն 'ի չարութեանն 'ի գործս մարմնաւոր վարուցն ։ Քանզի ոչ եթէ զայն ինչ ասէ թէ յառաջ քան զայս մարմնով էին և այժմ առանց մարմնոյ ։ Այլ ոչ ասէ պատճառք ինչ էին օրէնքն մեղացն, և ոչ ազատէ 'ի մեղադրութենէ զգործեալսն. զոր և զդատն յանդիմանչի և զչարախօսի կարգ ունէր, և մերկ դէմ յանդիմանն ցուցանէր զմեղսն ։ Քանզի ոչ եթէ որք ոչ ինչ կամէին բնաւ հաւանել ինչ՝ հրամայէր, այլ յաւելու և յանդիմանէ զյանցաւորսն միայն. վասն այնորիկ չասաց թէ կարիք մեղացն որ յօրինացն եղեն, այլ թէ 'ի ձեռն օրինացն. այսինքն է թէ որ օրինօքն երևեցան և ծանուցան ։ Այլ զի մի՛ դարձեալ մարմնոյն ոք ինչ ունիցի մեղադրութիւն, յայն սակս չասաց թէ զոր ազդէին անդամք, այլ թէ որ ազդէր յանդամս մեր ։ [illegible]

ցուցանէ զակնկալն չարեացն յաղթահարել խորհրդոցն, և ոչ եթէ յանգամայն յաղթմանէ։ Վասնզի հոգին զա-րուեստականի զկարգ ունի. իսկ մարմինն զքնարի, այն-պէս հնչէ որպէս նմա հարկ առնէ արուեստականն։ Ա-պա ուրեմն պարտ են անդամքն 'ի մեղադրութենէ՝ զնա նախ վարկանել և զմիտս ածել։

«Այժմ, ասէ, պատուէրսք յօրինացն»։ Տեսանես դարձեալ զկարգ և ասա խնայէ և մարմնոյ և օրինացն։ Զասաց թէ խափանեալ են օրէնքն, այլ զինչ. մեք, ասէ, խափանեցաք։ Այլ որպէս մեք խափանեցաք. 'ի մեռանել հին մարդոյն՝ մեղացն և թաղիլ, որ ունէրն և տիրէրն, քանզի զայս յայտ առնէր ակնարկելովն՝ թէ «'ի մեռանել այնորիկ որ ունէրն»։ որպէս զի յորժամ ասիցէ թէ կապանքն որով խափանեալն էաք՝ մեռան և 'ի բաց խլեցան, որպէս զի որով ունէրն՝ մի ևս կարասցէ ինչ ունել, այսինքն են մեղքն։ Այլ մի յորսայսեալ երբեք ծառայութեան կենիր վասն զի բարձիացեցաք. այլ արդ ծառայ եմ դարձեալ, ոչ հնման հնմին, «այլ նորոգութեամբ հոգւոյն և ոչ հնութեամբ գրոյն»։ Ոչինչ է զոր ասէն. հարկ է զայս լաւատուագոյն գնել, զի մի յորժամ յանդգա-մանս խնդրոյն մտանիցեմք՝ չփոթիցիմք ինչ։ Վասնզի, ասէ, յորժամ մեղաւն Ադամ և մարմինն որ եղև մահ-կանացու և չարչարելի, և բազում նուաղութիւնս և ախտս ծանրագոյնս ընկալաւ բաժ բնութիւն, և որպէս խոտ ե-րիվար որ ոչ լինիցէ նահանջման ամենայն, այնպէս և նա զինքն կարգեաց. իսկ Քրիստոս եկեալ 'ի ձեռն մկրտ-ութեանն մեզ զայն դիւրագոյնս յօրինեաց և թևով հոգւոյն զմեզ վերացոյց։ Վասն սորին իսկ այսորիկ ոչ մի և նոյն աշխատութիւն կայ մեզ և հնոյն. վասն զի ոչ այսպէս դիւրընթաց էր նոցա որպէս և մեզ։ Վասն վասն ոչ եթէ սոսկ 'ի պատուիրանէ կամի եթէ լինիցեմք միայն, այլ ասէ՝ և բարեկամաք իսկ մի. և ոչ թէ զգաս-տութիւն միայն հանէ 'ի մէնջ, այլ և զկատարեալ հայե-ցուածոն, և զանազանակ զայլոց զդեղոն զինել խափանել հրամայէ. և ոչ դարձեալ թէ երկամեայհամար միայն ցկե-նել, այլ ամենևին իսկ առանց երգեան հրամայէ մեզ զինել բարեկամաց. և զթշնամիսն հրամայէ մեզ սի-րել, և յայլոն ամենևին ևս երկայնագոյն զործեաց զպատուիրանն։ Ապա և զեհեն սպառնացեալ որք ոչն հա-

ւանիցեն կատարել զայսոսիկ։ Ո՛չ ցուցանէ թէ ոչ յա-
ռաւութենէ յայսոսիկ ինչ որ գործիցեն՝ եղեն ասա-
ցեալք, այլ ինքն իսկ ուղղեաց։ Ո՛չ մի՛ որք զթլփատու-
թիւնն պահիցեն և կամ զանթլփատացուածութիւնն յանձն
առեալ՝ այնու շատասցին. այլ զամենայն ինչ զպայտախ
զուղղութիւնս պարտիքս յանձինս ցուցանել, քանզի
կարևոր պիտանի այսոքիկ են իսկ։ Ապա յայտ իսկ է ե-
թէ որք ոչ առնիցեն զայն, վերջին զդատաստանն ըն-
դունելոց են։ Սոյն այսպիսի ասէր. «Եթէ ոչ առա-
ւելուցու արդարութիւնն ձեր առաւել քան զդպրացն և
զփարիսեցւոցն, ոչ մտանիցէք յարքայութիւն երկնից»։
Ապա ուրեմն որ յարքայութիւնն ոչ մտանէ, 'ի գեհենն
երթալոց է յայտ է։ Սորին վասն և Պաւղոս ասէր՝ թէ
«Մեղք ձեզ ոչ տիրեն. քանզի չէք ընդ օրինօք, այլ ընդ
շնորհօք»։ Եւ աստ դարձեալ թէ «Առ 'ի ծառայել մեզ
նորոգութեամբ հոգւոյն և ոչ հնութեամբ գրոյն»։ Քան-
զի չէր գիրն որ դատապարտ առնէր, այլ հոգին է որ
օգնէ։ Սոյն այսպիսի առ հնովն եթէ յանկարծ երևէր
ոք որ զկուսութիւն պահէր, յոյժ հիացումն իրքն թը-
ւէին. իսկ այժմ ընդ ամենայն տիեզերս համատարած
եղեն իրք կուսութեան։ Սոյնպէս և զմահ յայնժամ
սակաւ արք կարացին արհամարհել. իսկ այժմ և 'ի
գիւղս և 'ի քաղաքս բազմութիւն մարտիրոսաց նահա-
տակութեամբ ճառագայթեն. և ոչ միայն յարանց,
այլ և 'ի կանանց գտանէն բազումք։

Եւ ապա այնուհետև իբրև զայս ասաց, այց առնէ
այլում ընդդիմագրութեան որով զայս լուծանիցէ, և
'ի լուծմանէ անտի կազմէ զոր ինչ կազմիցէն. վասն որոյ
և ոչ յառաջագոյն մուծանէ 'ի լուծմունս, այլ անդըր-
ոտին իսկ յընդդիմաբանութիւն, զի 'ի հարկաւորէ լուծ-
մանն զպատճառն զոր ինչ կամիցի՝ յաւելցէ անտի ասա-
ցէ, զի և ս յաճախագոյնս արասցէ զմեղադրութիւնն.
Եւ քանզի ասաց թէ նորոգութեամբ հոգւոյն և ոչ հնու-
թեամբ գրոյն, ապա 'ի սոյն յարէ զայն. «Ո՛չ ինչ ա-
սեմք, ասէ, օրէնքն մեղք իցեն. քաւ լիցի»։ Եւ վասն
զի յառաջ քան զայս էր ասացեալ եթէ կարիք մարմնոյ
մեղացն որ օրինօքն ազդէին յանդամս մեր. և եթէ մեղք
ձեզ ոչ տիրեսցեն. և ուր ոչ են, ասէ, օրէնք և ոչ յան-
ցանք. և եթէ օրէնքն մտին զի բազմասցին յանցանքն.

և եթէ օրէնքն զպարկութիւն գործեն. և արդ վասն զի թուէր ոմանց թէ այսու ծմիւ զօրինացն անպատուան ինչ իցէ, առ ուղղելոյ զայսպիսի մտածութիւն ղնէ զայսպիսի զխնադրութիւն և ասէ. «Միթէ օրէնքն մե՞ղք իցեն. քաւ լիցի»: Յառաջ քան զկապմելն յարդարեաց զլուծումն ընդդա-նենալ, և զգայթակղութիւն ողջացոյց: Նոյն այնուհետև-ւեալ և վասն մերձաւորութեան նորա հաստատէին, և խընդ-րէին 'ի նմանէ ուսանել. զոր կարծէին եթէ հիացումն իմն թուի, և ապա այնուհետև և ոչ կարծիս ինչ ունի զառաջին, վասն որոյ և զդխնադրութիւն զայն յառաջա-գոյն կարգեալ եդ: Նանզի և չասաց իսկ եթէ ասեմք, այլ եթէ զինչ ասիցեմք. որպէս զի կամացն և բարուցն առաջի կացեալ, և հաղորդ ամենեցունց զեկեղեցին 'ի մէջ բերէ. և ոչ թէ յիւրմէ ինչ, այլ յասացելոց ան-տի որ բան կարգին և յերաց անտի ճշմարտութէ յայտ-նի զխնադրութիւնն: Այլ զի զիրն սպանանէ, չկարէ ոք ընդդէմ ասել ինչ, ասէ: Այլ զի ոգին կեցուցանէ, և այս յայտնի իսկ է և ոչ ոք կարէ հակառակել: Նոյն ե-թէ այս այժմ ամենեցուն քաջայայտ է, զինչ ոք ասի-ցէ վասն օրինացն՝ թէ մե՞ղք իցեն. քաւ լիցի: Այլ այս-պէս լուծանէ զզարմացումն իւրացն: Տեսանե՞ս զիարդ ե-կաց ընդ ուսոյին և զնորա պատիւն յինքն յափշտակեաց և առ, դարձեալ 'ի լուծումն անդր ընթանայ: Այլ զինչ իցէ լուծումնն:

Օրէնքն, ասէ, չեն մեղք. «այլ զմեղս ոչ գիտէի, ասէ, եթէ ոչ օրինօքն»: Տեսանե՞ս զիմաստական զպա-հանջումն: Մեր չէին օրէնքն, դիմադրութեամբ յօ-րինեաց, որպէս զի 'ի բաց բարձցէ զնա: Այլ զայս չնոր-հէ Հրէիցն՝ թէ զնուազագոյնն 'ի յանձին կալարուք գոր-ծել: Այլ զինչ իցէ կրտսերն այն՝ եթէ «Զմեղս ոչ գի-տէի, եթէ ոչ օրինօքն. և ոչ զցանկութիւն ճանաչէի, թէ ոչ օրինացն էր ասացեալ՝ թէ մի ցանկանայցես»: Տես որպէս առ փոքր մի ոչ միայն չարախօս ցուցանէ զնոսա մեղացն, այլ և խրատամտութեան նոցա կարգելը. և ոչ եթէ յանձանց ինչ չար էին օրէնքն՝ քաւ լիցի, այլ 'ի բարւոյն. և յաղագս բարւոյ տուեալք, բայց յապա-ճնորհութենէ Հրէիցն կարծեցան այնպիսի ինչ: Նան-զի այսու և զմանիքեցւոյն զբերանս խնու, որք բամբա-սէին զօրէնսն:

*Այս իբրև առաջ եթէ զմեղս ոչ գիտէի եթէ ոչ օրինօքն, և զցանկութիւն ոչ ճանաչէի եթէ ոչ օրինացն էր ասացեալ թէ մի ցանկանայցես, և 'ի սոյն յարեալ ասէ՝ թէ "Պատճառս առին մեղքն պատուիրանաւն և գործեցին յիս զամենայն ցանկութիւնս"։ Տեսանես որպէս ազատէ զնա յամենայն բամբասանաց, քանզի ասէ՝ պատճառս առին մեղքն պատուիրանաւն. և ոչ ասէ թէ օրէնքն աճեցուցին զցանկութիւնն, այլ և որ են Հակառակն թուի՝ զոր ինչ կամաւքն ամենայն եղև, որ մանաւանդ տկարութեանն էր և ոչ չարութեանն. քանզի յորժամ ցանկանամք և արգելեալ լինիմք, մանաւանդ և աճէ եւս ցանկութեանն մեզ։ Այլ ոչ եթէ օրինացն ինչ էր այս. քանզի նա արգել առ 'ի յերթալոյ յիրս մեղացն, այլ մինչ է 'ի ծուլութենէ մեղացն եղև այն և 'ի չար բարուց անտի՝ որք զբարիսն յանպատեհս 'ի կիր արկանեն։ Նոյն ուրեմն ոչ եթէ բժիշկն է մեղադրութեան արժանի, այլ հիւանդքն որ դեղոցն չարաչար վարեցան։ Մինթէ վասն այնորիկ տուան օրէնքն զի զցանկութիւնն բորբոքեսցեն. ոչ, այլ զի շիջուսցեն։ Նոյն ուրեմն ոչ եթէ նա, այլ մեք եմք մեղադրութեան արժանի. Վասն զի և ոչ զջերմանկան և որ ցուրտ ըմպելոյն ընդ վայր ցանկանայցէ, և որք չտայցեն երկուցեալ 'ի վնասակար առատէն՝ թէ զուցէ հեշտութեամբ ըմպելոյն աճեցուցանիցէ զցաւսն, մի թէ մեղադրութեան արժանի իցէ որ չետուն, և ոչ երբէք. քանզի բժշկին է արգելուլն, իսկ հեռանալն այնպիսի ըմպելեաց աշխատեալ հիւանդին։*

*Այս զինչ, մինթէ մեղքն անտի առին պատճառս յօրինացն. քաւ լիցի. քանզի բազումք 'ի չարաց 'ի բարւոք կարգաւորութեանն զկերեանց զչարութիւնն աճեցուցանեն։ Նոյնպէս և զՅուդաս սատանայ կորոյս յընչասիրութիւնն արկանելով, և գող արար զնա որ ինչ աղքատացն էր. և ոչ եթէ այնորիկ զնա էր որ նմա զարկղն հաւատաց, այլ իւր չար բարքն։ Այս Այսա զԱդամ կաղմերաց ուտել 'ի ծառոյն և այնու եհան զնա 'ի դրախտէն. այլ և ոչ անգ ծառն եղև պատճառք յանցանացն, թէպէտ և նովաւ եղև յանցումն։ Տես որպէս յայտ 'ի կիր արկանէ զբանն վասն օրինացն. և մի ինչ զարմանար, քանզի յայտ ջերմութեամբ Պաւղոս հաւատարմուն*

կեայ վասն օրինացն, և չԹողու և ոչ այլոց ինչ պատճառս գտանել և կամ կարեան ինչ առնուլ յասացելոցս. վասն զի բազում փոյԹ յանձին ունէր վասն զայժմուս յարդարելոյ։ Եւ արդ մի մերկ միայն քննէր զասացեալսն 'ի նմանէն այժմ, այլ և զպատճառսն ևս առաջի դնէր վասն որոյ զայսն ասաց. յառաջ բեր և զհրէականն մոլորուԹիւնն, զմիտս ած և զնորա 'ի տակ կախեն զոր լուծանելն փուԹայր. Որ բազմաց կարծիք կան Թէ ընդդէմ օրինացն ինչ շնչէր. ոչ զի զնա ինչ ստգտանիցէ, այլ զի զայլսն լուծցէ յայժ 'ի մեղադրուԹենէ օրինացն։

Զայն զոր ասացն՝ Թէ պատճառս առին մեղքն, նովաւ ցուցանէ Թէ և 'ի նորումս այսպիսի ինչ գտանի առասցեալ։ Եւ Թիւր օրէնք էին և վասն բազում և մեծամեծ իրաց. ապա պարտէին ուրեմն և այնք 'ի բաց եղանել. և ոչ եԹէ վասն ցանկուԹեանն միայն, այլ և վասն ամենայն չարեաց։ Զի "եԹէ չէր իմ եկեալ և խօսեցեալ ընդ նոսա, մեղ ինչ ոչ ունէին". ապա ուրեմն աստի առին մեղքն զպատճառսն և զմեծամեծ տանջանսն։ Եւ դարձեալ Պաւղոս վասն շնորհացն ճառեալ ասէր. "Որչափ ինչ տանջանաց արժանի վարկանիցիք զայն որ զորդին այ առ ոտն եհար"։ Ապա ուրեմն զդժնեայ զտանջանացն աստի ունի զպատճառսն 'ի մեծամեծ երախտեացն։

Աստի և զհեԹանոսացն ասէր՝ Թէ առանց պատասխանատուուԹեան են, զի և բանիւ պատուեցան և զգեղեցկուԹիւն արարածոց տեսեալ և 'ի սոցին իսկ յայսցանէ կարող էին առ արարչագործն յառաջադէմ լինել. այլ ոչ 'ի լաւ անդր արկին զիմաստուԹիւնն այ 'ի կիր։ Տեսանես որչափ ամենայն ուրեք զչարեացն զպատճառսն մեծամեծս տանջեալս 'ի բարուԹենէ իրացն գործելոյ։ Այլ ոչ երբէք մեք կարեմք բամբասել զայ զմեծամեծ բարուԹիւնսն և զերախտիսն, այլ և զքանչանաց ևս մեծապէս, և յետ այսորիկ և ընդ բարոյն որ փոխանակ հակառակորդացն 'ի բարին 'ի կիր արկանիցեն. և եԹէ մեղաւոր ոչ լինիցի, զայս և զօրինացն գտանելն լինեալ. այս հնարաւոր և դիւրին է, իսկ այն դժուարին է։ Զինչ ասէ՝ Թէ զցանկուԹիւն ոչ ճանաչէի, Թէ ոչ օրինացն էր ասացեալ մի ցանկանայցես.

զի թէ ոչ գիտէին զցանկութիւն մարդիկ մինչև զօրէնսն առեալ էին, ուստի՞ եղև ջրհեղեղն, ուստի՞ սոդոմայեցւոցն հրայրեցութիւնք։ Այլ զինչ ասէ. զտարածումն։ Վասն այնորիկ չասաց թէ գործեաց յիս զցանկութիւնն, այլ թէ զամենայն ցանկութիւն. զլրումն ակնարկէ աստ։ Այլ զինչ օգուտ յօրինացն թէ զախտն աճեցուցանէ, ասէ. և ոչ ինչ, այլ և յոյժ բազում վնաս։ Այլ չէ այս օրինացն մեղադրութիւն, այլ ծուլութեանն ընդունելեացն։ Թէպէտ և մեղքն գործեցան, սակայն, ասէ, 'ի ձեռն օրինացն. ոչ եթէ օրէնքն յայն փոյթ ինչ ունէին, այլ մանաւանդ թէ որ ինչ հակառակն է. այլ զօրաւոր եղեն մեղքն յոյժ 'ի ձեռն օրինացն։ Այլ սակայն և ոչ այս օրինացն ինչ մեղադրութիւն է դարձեալ, այլ նոցա անմտութեանն։

"Քանզի առանց օրինացն մեղքն մեռեալ էին"․ այսինքն է ոչ այսպէս ծանօթ և յայտնի։ Գիտէին և յառաջ քան զօրէնսն մեղանչումն. իսկ ապա յորժամ օրէնքն տուան, ևս հաւատեաւ 'ի վերայ հասին. վասն որոյ և մեծագոյն մեղադրութեան գտան պատժապարտք։ Քանզի չէր իսկ զոյգ նմին զբնութիւն ունել ամբաստան, և յետ բնութեանն և զօրէնսն ևս, որ յայտ յանդիմանն զամենայն քարոզէր համարձակ։ "Ես, ասէ, կենդանի էի երբեմն"։ Ե՞րբ. յառաջ քան զՄովսէս։ Տես որպէս փութացուցանէ յորմէ արարն և յորմէ չարարն, յերկոցունց ծանրացեալ զմարդկայինն բնութիւն։ Յորժամ, ասէ, առանց օրինացն կենդանի էի, ոչ այնպէս դատապարտէի։ "Այլ 'ի գալ պատուիրանին մեղքն կենդանացան և ես մեռայ"։ Այսու թուի թէ մեղադիր ինչ լինիցի օրինացն. իսկ եթէ ոք հաւատեաւ մտադնիցէ, ոչ եթէ ամբաստան միայն չէ զօրինացն, այլ և գովող ևս գտանի նոցա. զի ոչ եթէ զչգոյ ինչ հաստատէ, այլ զծածկեալն յայտնէ, որ և գովութիւն իսկ է օրինացն։ Զի եթէ յառաջ քան զնա անզգայութեամբ մեղանչէին, իսկ 'ի գալ նորա և ոչ յայնժամ ազդումն լինէր, ապա յայտնապէս սովաւ գիտէին թէ մեղաք. ուստի և ոչ փոքր ինչ է սա առ 'ի չարեացն հրաժարումն։ Իսկ ապա եթէ ոչ կամեցան 'ի բաց կալ 'ի չարեացն, ապա այս չէ ինչ առ նա որ զամենայն ինչ վասն նոցա գործեցին օրէնքն, այլ ամենայն ամբաստանութե

կան օրինացն ասիցէ զայս, գտանիցեմք զի ոչ Մովսէս ա-նիցի զնա։ Իսկ եթէ ճշմարիտ այսպէս իցէ, ապա գտանիցիմք քան զանբան անասունս անասնագոյնք։ Բայց չէ և չէ իսկ այս։ Զի որ 'ի դրախտին գործեցաւ, և ոչ հակառակել ումեք ախտոց է վասն նորա, և մի ուրեք աշխատութիւն ինչ անձանց առանցցեմք։ Իսկ զիա՞րդ ասիցէ՝ թէ "զմեղս ոչ գիտէի, թէ ոչ օրինօքն"։ Ոչ զմնաւ ազատութեանն ասէ, այլ զհաւաստեաւ զգիտութիւնն յայտնէ. զի թէ զբնական օրինացն ասէ զայս, ապա ընդէր յաւելորդօքն զայս բան 'ի վեր արկանէր. ասէ. "Իսկ առանց օրինացն երբեմն էի կենդանի"։ Քանզի զի ոչ Ադամ և ոչ այլ ոք 'ի մարդկանէ եկեալ երբեք առանց բնական օրինացն. զոյգ իսկ ընդ ստեղծուածին զնոյնս դնէ ած 'ի բնութեանն ընդունելից, և զգուշացուցիչ ամենայն բնութեանն կարգեալ։ Իսկ առանց այնորիկ չերեւի ուրեք եթէ զբնութեան օրէնս պատուիրանս կոչէ. և զմիւս պատուիրանն և արդար և սուրբ կոչէ, և հոգեւորական և սուրբ անուանէ։ Քանզի բնական օրէնք չտուան մեզ 'ի հոգւոյն. վասն զի բարբարոսք և հեթանոսք և ամ իսկ ազգք մարդկան ունէին զօրէնս զայս։ Ապա ուրեմն յայտ է՝ թէ զմովսիսական օրինացն ասէ, և 'ի վեր և 'ի վայր ձգաւէ, վասն որոյ և սուրբ իսկ կոչէ զնա ասելով՝ թէ "Օրէնքն սուրբ են և պատուիրանն սուրբ և արդար և բարերար"։ Զի թէպէտ ապիղծք և անմաքուրք եղեն Հրեայքն և անիրաւք և զրպարտողք, չխափանէ ինչ այն զսրբութիւն օրինացն, որպէս զի և ոչ զմեր հաւատոյն այլոց անհաւատութիւնն. ապա ուրեմն յայտ եղև թէ վասն Մովսէսի օրինացն ասացեալ է զայս։

Իսկ արդ զինչ է. "բարին, ասէ, ինձ մահ եղև. քաւ լիցի. այլ մեղքն, զի երեւեսցին մեղքն"։ այսինքն է զի յայտնեսցի թէ որչափ ինչ չարիք էին մեղքն և կամ ծուլագոյն յօժարութիւնն և առ 'ի յուսին միտուածն, և նոյն ինքն գործքն և միտքն ապականեալք գործին։ Բայց ամենայնի պատճառք չարեաց ծուլութիւնն է։ Բայց անձնացուցանեն օրէնքն և ցուցանեն զմեր շնորհացն զառաւելութիւն՝ թէ յորքան 'ի չարեաց ազատեաց զազգս մարդկան։ Զի թէպէտ և բժշկական դեղովքն են զծնեալ խմացան, և վասն արգելոյն ընկեցիլ անձանց։

Որով 'ի սոյն յարեալ ասէր. «Ոչ ի առաւել լինել մեղքն մեղուցելոցն 'ի ձեռն պատուիրանին»: Տեսանե՞ս զիարդ ամենայն ուրեք զօրէնսն պատուի. և որով թուի թէ մեղադիր լինիցի օրինացն, այնու աճեցուցանէ զառաւելնութիւն օրինացն: Քանզի և ոչ փոքր ինչ անկանոնեկաց և եցոյց թէ որչափ չարիք են մեղքն, և զամենայն իսկ զթոյնսն եցոյց և 'ի մէջ եբեր. վասն զի զայս յայտնի առնէր ասելովն. «Ոչ ի եղիցին մեղքն մեղաւոր 'ի ձեռն պատուիրանին»: Այսինքն է զի երևեսցի թէ որքան ինչ չարիք էին մեղքն և սատակիչք: Նոյն այս 'ի պատուիրանէն երևեցաւ. 'ի սմանէ և առաւելութիւն շնորհին յայտնեցաւ առ օրէնսն: Նա մի ինչ յայն հայիր թէ յուսկ եղեն որք ընկալան զօրէնսն. այլ զայն ած զմտաւ թէ օրէնքն չածեն 'ի հրամանս չարին, այլ և զյառաջագոյն զգործեալսն փութայր 'ի բաց կարել: Իսկ եթէ ոչ զօրեաց, ինքն պատկի 'ի բիւրոցն. և մեծագոյնս երկրպագի Քրիստոսի զօրութիւնն, որպէս զչարիսն և զչժուարամարտ եղծ և արմատաքի 'ի բաց խլեաց:

Իսկ մեղս յորժամ լսիցես, մի անձնաւոր ինչ զօրութիւն կարծիցես, այլ վարս չարս զկնեալսն և որ միշտ լինի. որ և ոչ յառաջ քան զլինելն չգոյր երբէք, և յորժամ լինի՝ դարձեալ եղծեալ ապականի: Սորին վասն և օրէնք տուան. իսկ օրէնքն չլինի բացբարձիչ բնութեան օրինացն, այլ առ 'ի յուղղել զբարս յօժարութեանն 'ի չար գործոցն: Ոչ այս և առաջին օրէնսդիրքն ճարտար գիտէին, և ամենայն իսկ մարդկային բնութիւն գիտէ՝ թէ որ 'ի ծուլութենէ միայն գործին չարիքն՝ յայնմանէ միայն կամին ամբոփել, և ոչ եթէ որ ըստ բնութեանն ժառանգութիւնն է 'ի բաց բառնալ. վասն զի բնութիւնն անշարժ մնայ, զոր բազում անգամ և յայլ ճառս ասացեալ է մեր առ ձեզ:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Արդ որոց զայսպիսի խնդիրս 'ի բաց թողեալ, զընտանի զմեր զբանս 'ի մէջ ածցուք, և սովորական իրօքն վարժեսցուք զլսելիս ձեր. մանաւանդ թէ և սոյն իսկ ինքն չէ փոքր աշխատութիւն: Քանզի զչարիսն 'ի բաց

խլեմք և զառաքինութիւն 'ի ներքս ածեմք ։ Վասն այսորիկ իսկ յայտ համարձակ ուսուցանեմք՝ եթէ ոչ բնութիւն ինչ են մեղքն ։ Այլ որք խնդրեն թէ ուստի են մեղքն, ոչ միայն 'ի բանից, այլ և յիրացն կարեմք ըմբռնել զնոսա. զի որք նոցայն հաղորդ են, ինքեանց իսկ բնութիւն իրքն թուին. իսկ յորժամ զերծանեն 'ի նոցանէն, ոչ ինչ ևս բնութիւնն ինչ երևի ։ Այլ մի դարձեալ յայն ինչ հայեսցուք թէ աշխատութիւն է առաքինութիւնն. այլ հնար գոյ զնա ուղղել, թէ կամիցիմք և փութայցեմք, ապա և թեթև և դիւրին մեզ երևի ։ Իսկ ապա եթէ զհեշտութենէ մեղացն ինչ առնիցես, ապա և զվախճանէն. քանզի նա 'ի մահ կործանէ, որպէս առաքինութիւնն մեզ 'ի կեանս առաջնորդէ. մանաւանդ թէ կամիցիմք, և յառաջ իսկ քան զվախճանն զերկուսեանն քննեսցուք, և գտանեմք զմեղսն զի բազում երկաւնս ունի, և առաքինութիւնն հեշտութիւն ։

Զինչ ինչ, ասա ինձ, ցաւագին քան զխեղճ չարեացն մտացն կայցէ, և զինչ հեշտագոյն քան զսրբոյն բարութեանց ։ Վասն զի չէ և չէ իսկ ինչ որ այնպէս զմեզ սովոր է ճնշել և մաշել որպէս զի զանձնկալութիւն չարեաց. և ոչ այնպէս դարձեալ թեթևաթռիչս և երագունս զմեզ առնիցէ որպէս զխորհուրդս բարիս ։ Զայս և այժմ առ մեզ իսկ տեսանեմք զի դիւրի այսպէս ։ Զի ամենեքին որք 'ի նեղափողոցսն շրջին և մուրանան, առ 'ի չգիտելոյ զխեղճ մտաց 'ի բերկրութեան են. իսկ որ 'ի բանտսն բնակեալ են և զանտանելութեան ակն ունին, թէպէտ և 'ի բիւր փափկութեան վայելեսցեն՝ վշտագին և ողորմելի կեանս կեան քան զամենեսեան. վասն զի անձնկալութիւն չարեացն չտայ զգալ զհեշտութիւն կերակրոցն ։

Այլ զինչ ասեմ զբանտարգելեացն. ուստի և այնոքիկ որ զտարաշխարհսն հատանիցեն և կամին մեծանալ և 'ի շահս բազումս վայելել, և եթէ այնպէս խեղճ մտաց 'ի ներքս կայցէ, թէպէտ և բազում շահս 'ի ներքս ժողովէ՝ չկարէ երբէք բերկրել ։ Ապա յայտ է թէ որ միշտ իւրով ձեռօքն զարուեստիւքն գործիցէ և 'ի տան նստիցի և միտքն 'ի բերկրութեան են, թէպէտ և հանապազ աշխատի, քան զնոսա վերագոյն գտանի ։ Այլ զմիայնակեացսն վասն սորին իսկ երանեմք, և ոչ զայնո-

ոփի որ 'ի կրպակն փութան, արբեցեալ փափկանաց ո-րովայնամոլք լինին, և յետոյ հէքք և թշուառականք քան զամենեսին գտանին. և զի մեծագոյն քան զհեշ-տութիւն կերակրոցն այն է՝ որ 'ի վախճանի իւրեանց թը-շուառութիւն զնոսա ընդունի։ Իսկ ապա եթէ հեշտա-լի ինչ վարկանիցես զախտալիցն կեանս, յիշեա զհանա-պազորդ զբանն զոր վերատին իմ ասացեալ է առ ձեզ՝ եթէ չէն ինչ զարմանք յորժամ չկամիցի ոք փախչել 'ի չարեաց՝ որ դառն և ժանտ զգործելոյս կաղզմն. և զախտալիցն իրս որպէս անեզր և անվախճան իմն կարծեն, այնինչն է զհեշտութիւն։ Այլ արդ վասն այսորիկ պա՛րտ է ինչ երանել զնոսա. այլ և յոյժ ողբերգելոյ վարկանել, զի և գիտել անգամ չետուն նոցա չարիքն թէ մեղանչեն։

Ո՛ ինչ առնիցեմք վասն շնացելոյն, որ վասն սակաւ մի ցանկութեան յանվայելուչ ծառայութիւն զինքն ար-կանէ և զինչս ծախէ, և հանապազ երկիւղն և անօթն 'ի վերայ կայ, և զկեանսն Կայենի յանձն առնու. Մա-նաւանդ թէ դժնեայ ևս քան զնորայն՝ յորժամ և ասա երկիւղիւ կեայ և անզգայ դողութեամբ երթայցէ. վասն զի և 'ի բարեկամաց և 'ի թշնամեաց ստգտեալ լինի, և որք գիտիցեն և որք չգիտիցեն. և յորժամ հանգ-չիցի, և յայնժամ չկարէ զերծանել յայնպիսի չար խղճէ խորհրդոց. այլ երազս տեսանէ լի արհաւրօք, և ստեղ-ծուն առաջի նորա ցնորս իմն։ Այլ և ոչ ցածն և պար-կեշտն այնպիսի ինչ կիրս կրէ, այլ 'ի հանգստեան և բա-զում ազատութեամբ մանաւանդ զիւր կեանսն անցու-ցանէ։ Այլ արդ դիր ընդդէմ միմեանց զփոքր ցանկու-թիւնն զայն և զբազմութիւն զալէկոծութեանն որ 'ի վախճանին դիպիցի նմա, և ապա փորձեա զմիւս ևս՝ որ 'ի ձեռն սակաւ մի ճգնութեան և պահոց միշտ 'ի խա-ղաղութեան վայելէ, և ապա տեսանես՝ թէ ճշմարիտ հեշտութիւն այս է և ոչ մեղքն։

Իսկ որ յափշտակելս կամիցի և այլոց ընչից տէր ե-ղեալ, ո՞չ բազում աշխատութիւս կրէ. շուրջ գայ, արկէ ծառայէ, ազատաց և ծառայից շողոքորթէ, դանդաղա-նայ մերթ սաստէ և մերթ երկեցուցանէ, անամօթա-նայ, դարձեալ աղաչէ, ահին դողայ սարսէ, յամենե-ցունց կասկածէ։ Այլ և ոչ նա որ զինչսն արհամար-հէ՝ այնպիսի ինչ կրէ, այլ մանաւանդ ևս առաւել 'ի

հեշտ և 'ի հանգստեան կեանս կեայ և ամենայն զգու-շութբ։ Նոյնպէս և զայլս 'ի չարեացն եթէ որ քննես-ցէ, բազում չփոթութիւն և խաւարութիւն գտանէ 'ի ներքս։

Իսկ յառաքինութեանն թէպէտ և զառաջինն աշ-խատութիւն ինչ թուիցի, այլ յետ փոքր միոյ քաղցր և հեշտական քան զամենայն, որ և զաշխատութիւնն իսկ կարող է թեթևացուցանել։ Իսկ 'ի մեղսն հակա-ռակ իմն ինչ գործին. յետ ցանկութեանցն ողբք և տանջանք, որ և առաւել իսկ եղծանեն զհեշտութիւնս։ Զոր օրինակ որք պատակեն անձն ունին՝ ոչ ինչ զգան ըզ-մերձակայ ծանրութիւնս, նոյնպէս և որ յետ հեշտու-թեանցն տանջանաց անձն ունին՝ ոչ կարեն շահել զու-րախութիւնս մեղաւր, այլ երկիւղիւն յամենայն ժամ զարհուրեալ գտանին. զոր մանաւանդ թէ որ հաւաս-տեաւ քննեսցէ, գտանէ յայսպիսեացս 'ի վերայ և յա-ռաջ քան զտանջանսն անկեալ ահն, և պաշարէ 'ի նոցին իրաց զոր յանդգնեցան գործել զչարիսն. քանզի նոյն ինքն մեղքն եղեն նոցա երկունք մահու։

Իսկ արդ եթէ կամիցիք, այսպիսիք և զնոսա քննես-ցուք որք զայլոցն կամիցին յափշտակել և զագահութիւն ընչիցն ժողովել. և զերկիւղն յանձանց 'ի բաց մերժե-ցին և զաշխատութիւն զօղմանն և զջան և զերկիւղն և զայլն ամենայն որ առանց իրիք մեծացուն։ Իսկ արդ թողցուք զայն 'ի բաց զոր ինչ գործեաց յափշտակու-թեամբ. բայց սակայն համարեաց թէ յարգար ստա-ցուածոց ունիցի զմեծութիւնն, և վստահ է թէ զգու-շութեամբ պահէ զայն՝ որ չէ հնար, բայց սակայն լիցի ըստ բանիդ ձերում։ Արդ յորպիսի հեշտութիւնս վայե-լէ այնպիսին, զի զինչսն շատ ունի. այլ նոյն իսկ ինքն ընչիցն չտան նմա ուրախ լինել երբէք։ Քանզի մինչ կամիցի քան զայլսն զընկերսն աւելի ունել, յայնժամ ևս քան զևս բազմանան չարչարանք մտացն. վասն զի ցանկութիւն՝ յորժամ իրքն 'ի գլուխ երթան՝ յայն-ժամ ինու ցանկութիւնն. զի և ծարաւեալքն յորժամ ըմ-պիցեն, յայնժամ չիջուցանեն զծարաւն. իսկ մինչդեռ ծարաւեալքն են, թէպէտ և զամենայն աղբիւրս և զգետս ծծեին մտօքն, ևս քան զևս բորբոքի ծարաւն։ Նոյնպէս և դու այժմ թէպէտ և զամենայն աշխարհի զինչս տա-ցես և այլում ևս ցանկանայցես, և ևս առաւել բորբո-

նանց, քան զՀրեայսն և զհինսն. մանաւանդ թէ այն չու-նի ինչ աշխատութիւն և երկրորդս բազում քրտամբք և աշխատութեամբք լի է։ Այլ արդ յորժամ ջանն փոքր է, մանաւանդ թէ ոչ ջան ինչ և աշխատութիւն, և շահն ևս մեծ է, և արդ ընդէ՞ր փութայցեմք յանդունդս խորոց ընկղմել զանձինս՝ զխիւր չարեացն ասեմ։ Այլ արդ ոչ եթէ չհայելն միայն 'ի գեղ կանանց դիւրին է, այլ և սուրբս և մաքուրս գտանել յայնպիսի ցանկու-թեանց. որպէս և որք նայիցինն՝ հանդերձ բազում աշ-խատութեամբք և լի արտասուօք զերծանիցին յախ-տէն, մանաւանդ եթէ հազիւ իսկ կարասցեն զերծա-նել։ Վասն զի որ ոչն կամիցի տեսանել զգեղեցիկ դէմս կանանց, միանգամայն իսկ և յառաժամայն ցանկութենէ սուրբ և մաքուր գտանիցի. իսկ որ ցանկայն տեսանել, և հարեալ պակշոտեալ իցէ 'ի գեղ ցանկութեանն նոցա, նախ ապա այնուհետև 'ի վայր կործանեալ զխորհուրդն և մաշեալ զինքն ցանկութեան և բազում անգամ պղծեալ, յայնժամ ապա հազիւ կարասցեալ ողջացու-ցանել զվէրսն և զախտն որ 'ի ցանկութենէն գործե-ցան, մանաւանդ եթէ կարիցէ իսկ ոչ երբէք բժշկել։

Վասն այսորիկ և Քրիստոս, զի մի այսպիսի ինչ կրի-ցեմք, ոչ զսպանումն միայն արգելու, այլ և զբարկու-թիւնն. և ոչ զշնութիւնն միայն, այլ և զյարատ հայե-ցուածն որ 'ի ցանկութիւնն գրգռէ. և ոչ զերդմնահա-րութիւնն միայն, այլ և զընաւ իսկ չերդնուլն յաւել ևս։ Այլ ոչ եթէ յայսմ ինչ եկաց չափ առաքինութեանն. այլ զայս օրէնս գրեաց, և յևս մեծագոյնս ապա յա-ռաջ մատեաւ։ Յորժամ հրաժարեցոյց 'ի սպանմանէն, ապա 'ի բարկութենէն ևս հրամայեաց մաքուրս գտա-նել, հրամայէ այնուհետև և առ չարչարանս պատ-րաստ գտանել զմեզ. և ոչ այնչափ միայն կամի կազմեալ գտանել զմեզ, որչափ ինչ նեղնգիչն կամի, այլ ևս առա-ւել 'ի յաղթել մոլութեանցն նոցա մեր ընտանի փիլի-սոփայութեամբքն։ Վասնզի չասաց լոկ թէ, որք յապատակ ածիցեն յանձ ծնունդ՝ հաւանեալ քաղաքութեամբ, այլ որ մեծն և երևելին է՝ զմիւսս ևս զպարծանս ասէ. որ է իսկ պայծառ յաղթութիւն, առաւել ևս քան զոր ինչ կամիցի նեղազորն շահել. և զայս առ հասարակ ցանկութեանն նոցա քո ա-ռատ երկայնմտութեամբդ անցանել, և ապա պարգևս

Եւ արդ տէր որպէս ընտրեաց յայտնեաց բարի պտուղ. նախ և առաջին այն՝ զի զերծուցանես զքեզ յամբոխէ և 'ի խռովութեանց. ապա՝ մնասցանք եթէ այս իսկ իցէ նախ և առաջին՝ այնուհետև թէ և մեզս իսկ ունիցիս, 'ի բաց մերկացար. զոր օրինակ և մաքսաւորն որ թամբաասանաց փարիսեցւոյն հեղութեամբ տանէր: Նա այսպիսի փիլիսոփայութեան իւրս կազմեաց և յարդարեա զոգիդ քո 'ի սոյնս խոկալ, և բիւր գովութիւնս յամենեցունց ընդունիս և վայելես, և յառաջին ատացելոցն ազատ և սուրբ գտանիս: Իսկ ապա եթէ և զնա ես կամիցիս 'ի լաւութիւն ածել, և այսու ես առաւել լինի քո բարեմտութիւդ: Բայց սակայն և ած իսկ տանջէ զայնպիսին վասն զչարն խօսելոյ, և յառաջ քան ըզտանջանսն զայնոսիկ՝ քոյին իսկ հեզ իմաստասիրութիւդ ազդոյ վերք լինին ընդդէմ նորա: Քանզի ոչ այնպէս ինչ սովոր է զկծել զթշնամանողսն, որպէս յորժամ թշնամանիցիմք և ծաղր վարկանիցիմք զթշնամանսն. որպէս զի այս փիլիսոփայական ոգւոյ է բարութիւնս: Այնպէս և 'ի կարճամտութենէ փոքրոգի գտանիմք, և հակառակ սմին իրքն գործին, և որք մերձակայքն են՝ վարկանին եթէ մեք իցեմք պատճառք ատացելոյն, և զհոգին աղմկալ նումք և զթշնամին ուրախ առնեմք և զած զայրացուցանեմք և յառաջին 'ի մեզանէն յաւելումք եւ:

Եւ արդ զայս ամենայն զմտաւ ածելով փախիցուք 'ի կարճամտութենէն խորխորատէն և առ նաւահանգիստ երկայնմտութեանն ընթասցուք. որպէս զի և աստ գտցուք հանգիստ անձանց մերոց որպէս և Քրիստոսն ասաց, և հանդերձեալ բարութեանցն արժանի գտցուք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք հօր հանդերձ հոգւովն այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն:

# ՃԱՌ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

«Գիտեմք զի օրէնքն հոգևոր են, այլ ես մարմնաւոր եմ ընդ մեղօք վաճառեալ»։

Այլ վասն զի առաջ եթէ մեծամեծ չարիք գործեցան և մեղք զօրագոյնք եղեն 'ի գալ պատուիրանին, և յոր ինչ փութային օրէնքն՝ այն կատարեցաւ, և որ ինչ հակառակքն թուէին, և իբրև 'ի բազում հարցմանս էարկ զլսողսն, ասէ այնուհետև ուստի իրքն գործեցան։ Նախ ազատէ զօրէնսն 'ի չարաչար կարծեացն. զի մի յորժամ լուիցես եթէ 'ի ձեռն պատուիրանին մեղքն՝ պատճառս առին, և 'ի գալն նորա մեղքն կենդանացան, և եթէ նովին խաբեցին զիս և սպանին, և զօրէնսն կարծիցես այսպիսի չարեաց լինել պատճառս, նախ զամենայն պատասխանատուութիւն մեծաւ առաւելութեամբ կազմէ։ Եւ ոչ եթէ միայն 'ի մեղադրութենէ ազատէ զնա, այլ և գովութիւն իմն մեծ մատուցանէ։ Եւ զայս ոչ եթէ առ 'ի շնորհս ինչ առնել նոցա ասէ, այլ ըստ հասարակաց հաշուոյն։ «Գիտեմ, ասէ, զի օրէնքն հոգևոր են»։ Որպէս յորժամ ասիցէ՝ թէ խոստովանիմ թէ այս այսպէս իցէ, և յայտնէ թէ հոգևոր են, և արդեամբ ինչ հեռի են առ 'ի մեղացն պատճառս լինելոյ, և յեղելոց չարեացն անպարտք։ Տեսանես զի ոչ միայն 'ի բամբասանաց ազատէ զօրէնսն, այլ և գովէ ևս առաւելութեամբ. քանզի յորժամ հոգևոր զնա անուանեաց, վարդապետ զնա առաքինութեան կարգեաց, և եցոյց և մեղացն պատերազմիչ և ընդդիմակաց։ Այսու օրինակաւ են հոգևոր, մերժեալ յամենայն մեղաց, զոր և օրէնքն իսկ ուղղէին երկեցուցանէին խրատէին տանջէին խորհրդակիցք լինէին յամենայնի առաքինութեան։

Այլ ուստի, ասէ, եղեն մեղք յորժամ վարդապետն այսպիսի զարմանալի էր. յաշակերտացն 'ի ծուլութենէ։ Վասն որոյ 'ի սոյնս յարեալ ասէր՝ թէ «Ես մարմնաւոր եմ», որ առ օրինօքն և յառաջ քան զօրէնսն

վարք էին մարդկան։ Ամենայն բովանդակեալ այժմ ընդ մեղօք վաճառեալ. յետ մահուանն, ասէ, ապա և առաւելագոյն հոյլք մտին 'ի ներքս։ Վասնզի յորժամ մահկանացու եղեւ մարմինն, ընկալաւ զցանկութիւնն, ապա հարկ է թէ և զբարկութիւն և զօրամոլութիւն և զայլն ամենայն՝ որ բազմաւ փոփոխակայութեան կարօտ էր, որպէս զի մի հատանիք յորձանացն ընկղմեցեն զմիտսն 'ի խորս մեղացն։ Նոյն ինքն օրէնքն չէին մեղք, այլ անչափքն որք ոչ նորօք սանձահարեցան՝ նոքա գործեցին զմեղսն։ Արգելուլ ինչ, որպէս յօրինակէ իմեքէ ընձեռեալ նոցա զցանկութիւնն, ոչ եթէ ցանկութիւնն ինչ մեղք իցեն, քաւ լիցի. այլ յորժամ յանչափսն անկանիցինք, յորժամ զամուսնութեան օրէնս չկամիցին ունել, այլ և յայլոց կա 'ի կանանց վերայ յարձակիցին, յայնժամ ապա իրքն շնութիւն կատարին։ Նա և այս ոչ եթէ 'ի ցանկութենէն ինչ, այլ յիւրեանց անյագութենէն։

Նա տես զիմաստութիւնն Պաւղոսի. զի յորժամ գովեաց զօրէնսն, ապա յառաջին ժամանակս անդր խոկոյն ընթացաւ։ Նա ցուցանէ թէ որպէս յայնժամ ազգ մարդկան մատակարարէր և կամզլխորդ յորժամ զօրէնսն ընկալան, որով ցուցանէր յայտնապէս թէ կարեւոր էր գալուստ շնորհացն, զոր և ամենայն ուստեք իսկ փութայ յօրինել։ “Ընդ մեղօք վաճառեալ եմ,, ասէ։ Նա զայս ոչ եթէ որ առ օրինօքն էին միայն ասէ, այլ և որ յառաջ քան զօրէնսն վարքն վարէին և զսկզբանէ իսկ զմարմնոցն։ Ապա և զօրինակն իսկ ասէ զվաճառմանն և զտորոցն։

“Վասնզի զոր գործեմն, ասէ, ոչ գիտեմ,,։ Զինչ իցէ. այսինքն է տգիտանամ։ Նա երբ եղեւ այս, քանզի ոչ ոք երբէք ուրեք տգիտութեամբ մեղաւ։ Տեսանես զի եթէ ոչ երկիւղածութեամբ ընդունիմք զառաքելական ասացուածն և առ նորին միտս ընթանամք, բնաւ ինչ անպատեհք 'ի ներքս մտանեն. զի եթէ տգիտութեամբ մեղանչէին, ապա և ոչ դատաստանի արժանի էին, որպէս և վերագոյնն ասաց՝ թէ “Առանց օրինացն մեղքն մեռեալ էին,,։ Ոչ զայն ինչ յայտ առնէ՝ թէ ոչ գիտէին թէ մեղք իցեն. այլ գիտէին, թէպէտ և ոչ այսպէս հաւաստեաւ. վասն որոյ և տանջէին իսկ, այլ ոչ այսպէս ինչ յոյժ խստագոյնս։

Այս դարձեալ թէ «Զցանկութիւն ոչ ճանաչէի», ոչ բոլորովին զանգիտութենէն ասէ, այլ զյայտնագոյն գիտութիւնն կամի ցուցանել։ Նաէ՝ թէ գործեցին յիս զամենայն ցանկութիւնս. ոչ զայն ինչ ասէ թէ զցանկութիւն պատուիրանն արար, այլ գիտելով նմա զցանկութիւնն մեղք 'ի ձեռն պատուիրանին 'ի վերայ ածին։ Նոյնպէս և աստ ոչ զբոլորովին անգիտութենէն ասէ. «Վասնզի զոր գործեմն, ասէ, ոչ գիտեմ»։ Ապա զիա՞րդ մինչդ ընդ օրէնսն Այ հաճեալ ես ըստ ներքին մարդոյն. զի՞նչ իցէ որ ասէն՝ թէ չգիտեմ։ Խաւարիմ, ասէ, երագ յափշտակելին միտքս, 'ի խարդախութենէ խաբանիմ, չգիտեմ որպէս գթեմ։ Որ և մեր սովորութի̃ է ասել՝ թէ չգիտեմ զիարդ այս անուն եկն և զմիտս յափշտակեաց։ Այս ոչ եթէ զանգիտութիւն առաջի դնելոյ ինչ, այլ խաբէութիւնս նմա և պատրանս և նենգութիւն երևեալ։

Նաէ. «Ոչ զոր կամիմն զայն գործեմ, այլ զոր ատեամն զայն առնեմ»։ Ապա զիա՞րդ չգիտէիցես զոր ինչ գործեսն. զի թէ կամիս զբարին և ատես զչարն, այսաքին կատարեալ գիտութեան են։ Աստի յայտ է՝ թէ և «զոր ոչն կամիմ» յաւել, ոչ զի զանձնիշխանութի̃ն 'ի բաց բարձցէ՝ քաւ լիցի, և կամ 'ի վտանգէ և 'ի բռնութենէ իւրքն գործին. զի եթէ ոչ կամօք, այլ 'ի հարկաւորութենէ մեղանչեմք, և դարձեալ առաջ տանջանացն առաջի լինել չառնու յանձն բանս։ Այլ որպէս չգիտեմն ասաց, ոչ թէ զտգիտութիւնն յայտնեաց՝ այլ վասն որոյ ասացաքն, սոյնպէս և զոչն կամեմն յաւելլով՝ ոչ հարկաւորութիւն ինչ եցոյց, այլ թէ չէ գովելի որ ինչ լինի։ Ապա եթէ զայս չառնէր յայտ առնելոյն՝ թէ զոր ոչ կամիմ զայն գործեմ, պարտ էր յաւել 'ի սոյնս՝ թէ 'ի հարկէ և ակամայ գործեմ զայս. քանզի այս կամաց և իշխանութեան ընդդիմակաց է։ Իսկ այժմ չասաց ինչ այսպիսի, այլ փոխանակ նորա զայն եդ՝ թէ «զոր ատեամն՝ գործեմ». և զի ուսցիս թէ յորժամ ասացն թէ զոր ոչն կամիմ, ոչ եթէ զանձնիշխանութիւնն ինչ մերժեաց։ Այս զի՞նչ է «զոր ոչն կամիմ». զոր ոչ գովեմ, զոր ոչ ընդունիմ, զոր չսիրեմն. զոր և ոչ միջնորդաւ ինչ բերէ զյաղթողն, յարեալ 'ի սոյնս դարձեալ ասէ. «Զոր ատեամն՝ զայն գործեմ»։

խորհելն և շարժումն տուեալ ՚ի խորհուրդս՝ մերոց բարուցս և յօժարութեանն է ։

“Ապա գտանիցեմ զօրէնսն թէ զոր ինչ կամիցիմ առնել զբարին, և ինձ չարն առաջի կայ ,, ։ Այսպէս իմն թուի պատգամս . և զի՞նչ իցէ զոր ասելն կամի ։ Այսինքն եթէ գտեմ զօրէնսն ըստ ներքին մտացս, և զըտանեմ զնա՛ զի և նա զիս գտէ որ զբարիս կամիմ առնել, և գտանեմ գործակից, և յաւելու յիմ ՚ի բարիոք յօժարութիւնս . զի որպէս ես նմա վկայեմ, այնպէս և նա գտէ զիմ բարիոք յօժարութիւն բարուցս ։ Տեսե՞ր զիարդ եցոյց որ ինչ բարին էր և որ ինչ ոչ՝ սոյնպէս և անդստին ՚ի սկզբանէ ունէին ամենեքեան զծանօթութիւն և զգիտութիւն . իսկ զօրէնսն Մովսէսի գտէ, և ինքն յօրինացն գտի ։ “Վասնզի և ոչ վերագոյն ասաց զայն եթէ ուսուցանեմ արտաքոյ օրինացն զոք, այլ թէ վկայեմ օրինացն . այսինքն թէ խոստովանիմ որպէս զի բարիոք ունի զկարգն, սոյնպէս և նա զիս որ կամիցիմ զբարիս գործել ։ Այսինքն է զբարին կամել և զմեղսն ՚ի բաց հանել՝ զայդ և վերստին իսկ յառաջ գիտէին ։ Իսկ օրինացն եկեալ, և ամբաստան լինէին զայնցանէ որք ՚ի չարիսն կէին, և բարեգործացն մեծ գովողք լինէին ։ Տես զիարդ ամենայն ուրեք զհրամանս նոցա ՚ի կիր արկանէ, և ակնարկէ թէ յաւելուած իմն էր իւր վկայութիւնն զնոցանէն . բայց սակայն ոչ ինչ վճարի այսու ։ Թէպէտ և գտէ, թէպէտ և վկայէ զօրինացն, և որք կամիցին զբարին առնել, և չարն առաջի կայ, այս ամենայն ՚ի գործոցն ՚ի բաց բարձումն լինի . որպէս զի օրէնքն՝ ըստ առաջին պատգամին՝ յորժամ բարի ինչ գործիցես՝ գործակից լինի միայն, զոր օրինակ և սա նոցա ջատագով ։ Եւ ասաց զի անյայտագոյնս եդ զայս, յառաջէ ՚ի մեկնութիւնն, որպէս զի ես յայտնապէս առնիցէ, և ցուցանէ թէ որպէս չարն առաջի կայ և կամ որպէս որք կամիցին զբարին առնել՝ միայն են նոցա օրէնքն օրէնք ։

“Հաճեալ եմ, ասէ, ընդ օրէնսն այ ըստ ներքին մարդոյն ,, ։ “Վասնզի գիտէի և յառաջ քան զայս զբարին, ասէ, յորժամ և զլոյս ես գտի զնա՝ գովեցի ։ “Տեսանեմ և այլ օրէնս հակառակ զինուորեալ օրինաց մտաց իմոց ,, ։ Օրէնս աստ զինուորեալ՝ զմեղսն կո-

չեաց, ոչ վասն բարեկարգութեան ինչ, այլ վասն յոյժ հնազանդութեան որք նմայն հաւատացեալքն։ Զոր օրինակ և զմամոնայն տէր կոչէ և աստուած զորովայն, ոչ եթէ վասն ընտանի իւրեանց ինչ պատուոյն, այլ վասն բազում հնազանդութեան այնոցիկ որք ծառայեցինն նոցա, սոյնպէս և աստ օրէնս կոչէ զմեղսն վասն նոցա որք այնչափ ծառայէինն նմա և երկնչէին 'ի բաց թողուլ զնա. զոր օրինակ որք զօրէնսն ընդունիցին՝ զարհուրին 'ի բաց թողուլ զօրէնսն։ Ապա ուրեմն, ասէ, այս որ հակառակ կայր բնութեան օրինացն։ Զսոյնս և միւսացն օրէնս անուանեաց, որ 'ի ներքոյ իսկ անձէ այնուհետև մարտս և պատերազմունս, և զՋան ընդդիմամարտութե բնութեան 'ի կիր արկանել։ Զի Մովսէսի օրէնքն թէպէտ և տուեալ են, սակայն յետոյ եղան. բայց սակայն և սա և նա ամն ուսուցանէր և ամն գովէր, և յայսպէս պատերազմաց ոչ ինչ մեծ վճարեցին։ Քանզի անչափ իմն էր մեղացն բռնաւորութի, մինչև յաղթեալ և տիրեալ ունէր։ Զոր և Պաւղոսի յայտ արարեալ զուժգին զպարտութիւնն ասէր. «Տեսանեմ այլ օրէնս հակառակ զինեալ օրինաց մտաց իմոց և գերեալ զիս»։ Եւ ոչ ասաց թէ յաղթեալ ինչ միայն, այլ թիւրեալ զիս օրինաց մեղացն. և չասաց թէ յարձակմամբ մարմնոյ, և ոչ դարձեալ թէ բնութիւն մարմնոյ, այլ թէ օրէնք մեղացն, այսինքն է բռնաւորին զօրութիւն։

Եւ զիարդ ասիցէ՝ թէ «Ոչ են յանդիման իմ»։ և այս զինչ իցէ։ Քանզի ոչ եթէ այսու ինչ զանգամն մեղաւոր առնէ, այլ մանաւանդ թէ որոշէ իսկ 'ի մեղացըն. քանզի այլ՝[1] որ յումեմն է, և յորում իցէն իսկ նոյն ինքն։ Զոր օրինակ պատուիրանն չեն մեղք, թէպէտ և 'ի ձեռն նորա պատճառս առին մեղքն, սոյնպէս և ոչ մարմնոյն բնութիւն չար է՝ թէպէտ և նովաւ ընդ մեղ մարտնչի։ Ապա եթէ զոր դուքդ ասիցէք է՝ յայտ է եթէ և ոգի չար է, մանաւանդ եթէ և ս առաւել սա քան զմարմինն, որպէս զի և տիրապէս իսկ սա ունի զառաջնորդութիւն գործոյ։ Այլ չէ իսկ և չէ այս։ Քանզի և ոչ սքանչելիք ինչ են եթէ բռնաւոր ոք զթագաւորական զապարան հանիցէ. ապա ոչ եթէ տունն ինչ եղև

1 Յօրինակին գրեալ էր այլում ան է. ուղղեցաք ըստ յունին։

բանաւորկու և մեղադրութեան արժանի, այլ ամե-նայն անհաստատութեան և մեղադրութեան արժա-նի այնպիսիք են՝ որք զԹագաւորական տունն այլս ա-ւազակաց արարին: Այնպէս և Թշնամիք ճշմարտու-թեանն գործեն այժմ. յետ այնչափ յափշտակութիւն և յանօրէնութիւն անկանելոյ, որ և ոչ զգան անգամ. և ոչ միայն զմարմինն բամբասեն, այլ և զօրինացն ամ-բաստանեն:

Դու արդ զի՞նչ ասիցեմք. եթէ մարմինք չար են, ապա բարիք են օրէնքն, զի ընդդէմ զինուորի և հակառակ կայ նմա: Իսկ եթէ օրէնքն չիցեն բարիք, յայտ է ե-թէ մարմինս բարիք է, մարտնչի ընդ նոսա ըստ նոցա բանիցն և պատերազմի: Այլ երկոքեան, ասեն, սատա-նայի են՝ և մարմինն և օրէնքն, և ընդդէմ հակառակու-թեան միմեանց կամին 'ի ներքս մտանել: Տեսանես որ-չափ անհաւատութեամբ և անօրէնութեամբ լի են: Այլ և ոչ եկեղեցւոյ աւանդութիւն այսպիսի ինչ, վասն զի զմեզ միայն դատապարտէ, և զերկաքանչիւր զօրէնսն յայ առէ տուեալ և զՄովսէսին և զայն որ ըստ բնու-թեանն, և ընդ այսմ պատերազմի և ոչ եթէ ընդ մարմ-նոյ. վասն զի ոչ մեղք են մարմինն, այլ գործ այ, և յոյժ իսկ առ առաքինութիւնսն պիտանի է մեզ թէ արթունք իցեմք:

"Այր տառապեալ եմ ես, ո՛վ ապրեցուսցէ զիս 'ի մարմնոյ աստի յայսմանէ": Տեսանես որքան ինչ բանա-ւորութիւն է մեղացն: Ոչ թէպէտ և հաճեալ եմ ընդ օրէնսն, այլ միայն յաղթեն: Քանզի և չունի իսկ ոք ասել թէ ատեամ զօրէնսն, և կամ 'ի բաց բառ-նամ 'ի նոցանէն, և վասն այսորիկ ես դժնեայ գործեն մեղքն: Այլ հաճեալ եմ և վկայեմ օրինացն և առ նա իսկ ապաւինիմ. և յորժամ փախստական առ նա անկայ, այսինքն առ օրէնսն, և ոչ յայնժամ զօրեաց ապրեցուցանել զիս. իսկ Քրիստոս մինչև փախուցեալ իսկ էի 'ի նմանէ, փրկեաց զիս և ապրեցոյց: Տեսանես քանիօն է առաւելութիւն շնորհացն: Այլ զայս այս-պէս չեղ ինչ առաքեալն. միայն ակնարկեաց և մեծա-գոյնս եհան յոգւոյ. որպէս յորժամ յանապատի ոք զքաւորի յօգնականութենէ, այսպէս իմն եցոյց զՔրիս-տոսի զօգնականութիւնն առ մեզ գործեալ, և ասէ այս-

պէս՝ թէ «Այր տառապեալ եմ ես, ով ազատեսցէ զիս 'ի մարմնոյ մահուս այսորիկ»: Օրէնքն ոչ զօրեցին, միտք չեղեն բաւական, և այլ զիա՞րդ ասէիր թէ բարիոք են և կամ զիա՞րդ գովէիր զօրէնսն. և ոչ այնչափ միայն, այլ պատերազմակից ես եղեր նոցա առ ընդդիմակացն. քանզի ասաց՝ թէ հակառակ զինուորեալ մտաց իմոց, եցոյց այսու թէ և նոքա ընդդիմակացք են. Այլ արդ ուստի՞ իցէ մեզ յայս փրկութեան:

«Գոհանամ զԱյ իմոյ, ասէ, 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ»: Տեսանե՞ս որպէս եցոյց կարեւոր զգալուստ շնորհացն, և զոյգ հաւասար հօր և որդւոյ զուղղութիւնն կազմեալ: Որպէս և զհօրէ գոհանայ, այլ և պատճառք գոհութեանս այսորիկ սա ինքն է: Այլ արդ յորժամ լսիցես՝ թէ ով ազատեսցէ զիս 'ի մարմնոյ աստի մահուս այսորիկ. մի կարծիցես զմարմնոյն չարախօսել զնա ..... քանզի և ոչ ունել անպատեհ վարկանէին: Այլ առանց այսորիկ և այլ բազում քան զնոյնս որ յօրէնսն էր և յառաջ քան զօրէնսն գիտէին կազմել և ուղղել 'ի բնական օրինացն խրատեալք: Այլ այսպէս աշխատեցաւն որ ըստ հնոյն վարէին՝ ըստ կարգի չափաւորութեան առ փոքր փոքր 'ի ներքս ածելով զնոսա: Իսկ այժմ եթէ և այսպէս ոչ կամեցան, նոցին ծուլութեանն է մեղադրութիւն: Վասն այսորիկ և Պաւղոս գոհանայ զի ոչ ինչ այսպիսի հաւատովս պահանջեաց Քրիստոս. և ոչ միայն զմերոց չարեացս չպահանջեաց զվրէժս, այլ և պիտանիս գործեաց զմեզ առ 'ի լաւ անդր ընթանալ: Վասն որոյ և ասէր. «Գոհանամ զԱյ իմոյ 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»: Այլ զփրկութիւնն թողու զոր խոստացաւն. ուստի և զայս կազմեաց և յայլ իմն փոխի, զորմէ ես առաւել ինչ ասէ՝ թէ ոչ միայն յառաջնմէն ազատեցաք, այլ և որ հանդերձեալքն էին 'ի վերայ գալ՝ և նոցա իսկ անըմբռնելիք գտաք: Քանզի ասէ՝ թէ «Ոչ ինչ դատապարտութիւն որք 'ի Քրիստոս Յիսուս, որք ոչ մարմնովն գնան»: Այլ յառաջնումն չասաց ինչ այսպիսի, մինչև վերստին յիշեցոյց նոցա յառաջին կարգաւորութենէ: Նախ ասաց՝ թէ «Ապա ուրեմն ես անձամբ ծառայեմ օրինացն Այ, իսկ մարմնով օրինացն մեղաց»: Այլ իբրև զայս ճառեաց, ապա յարեաց 'ի սոյն առե-

լով թէ «Ուրեմն չէ ինչ դատապարտութիւն որք 'ի Քրիստոս Յիսուս»: Այլ քանզի ընդդէմ կայր այն նախա՝ որ յետ մկրտութեանն բազում մեղք լինէին, սորին վասն հաւատեաւ ասէ զբանն այսպէս. և ոչ եթէ լոկ հարևանցի ինչ միայն ասաց՝ եթէ 'ի Քրիստոս Յիսուս, այլ ասաց՝ թէ որ ոչ ըստ մարմնոյ գնայցեն: Այլ ցուցանէ թէ 'ի մերմէ ծուլութենէ եղև այս ամենայն, զի կարող էաք ուղղել զայս ամենայն՝ ոչ ևս գնալ ըստ մարմնոյ, որ յայնժամ դժուարինն թուէր:

Ապա և այլ ևս ինչ 'ի յաջորդացն կազմէ ասելովն. «Քանզի օրէնք հոգւոյն ազատեցին զիս» ասէ: Զհոգւոյն օրէնս աստ զհոգին իսկ կոչէ: Զոր օրինակ օրէնս մեղաց զմեղսն ասէ, նմանապէս և զՄովսէսի իսկ օրէնսն այսպէս սովոր է կոչել, յորժամ ասիցէ՝ թէ օրէնքն հոգևոր են: Այլ արդ զինչ ինչ կայցէ 'ի միջի. նմանապէս եթէ մեծ և բազում ինչ. զի նա հոգևոր, իսկ սա օրէնք հոգւոյն, որ և բաշխէ զշնորհսն որք ընդունիցին մեծապէս առաւելութեամբ: Վասն որոյ կենաց օրէնս կոչէ զնա առ 'ի բաժանել յօրինաց մեղացն, և ոչ եթէ 'ի Մովսիսական օրինացն: Քանզի յորժամ ասէ՝ թէ ազատեցին զիս յօրինաց մեղաց և մահու, ոչ ինչ զՄովսէսի օրինացն ասէ զայս աստ. վասն զի ոչ երբէք զնա օրէնս մեղաց անուանեաց, այլ բազում անգամ սուրբ և արդար և բարերար կոչեաց և ջնջիչ մեղաց. այլ զայնմանէ ասաց որ հակառակ մտացն զինեալ էին օրէնքն: Զի այնմ օրինօք զդառնագոյն զպատերազմն եղծ՝ սպանանելով զմեղսն, և հոգւոյն շնորհօք զաշխատութիւն մեր թեթևագոյնս գործեաց. նախ պսակեաց զմեզ, և ապա բազում պատերազմակցութեամբն իւրով ձգէ զմեզ 'ի տեղի մրցարանին:

Այլ զոր միշտ սովոր է առնել, և այժմ յորդւոյ 'ի հոգին սուրբ փոխի, և 'ի հոգւոյն դարձեալ յորդի և 'ի հայր, և յերրորդութեանն վարկանի զամենայն զմերս: Ուստի և աստ զնոյնս գործեալ ցուցանէ ասելովն՝ թէ «Ով ապրեցուսցէ զիս 'ի մարմնոյ աստի մահու»: Այցոյց զի հօր 'ի ձեռն որդւոյ արարեալ զայս, ապա դարձեալ և զհոգին սուրբ ընդ նմին ինքն ընդ Քրիստոսի. քանզի ասէ՝ թէ «Օրէնք հոգւոյն կենաց 'ի Քրիստոս Յիսուս ազատեցին զմեզ»: Ապա դարձեալ զհայր և

զորոգի յիշէ՝ թէ «Ար անկարն է ըստ օրինաց, ասէ, որ տկարանայրն վասն մարմնոյ, ած զիւր որդին առաքեաց նմանութեամբ մարմնոյ մեղաց եւ վասն մեղաց, եւ դատապարտեաց զմեղս 'ի մարմնի»: Դարձեալ թուէր ինչ ումանց թէ ամբաստանիցէ զօրինացն եւ խօսէ. իսկ ապա եթէ ոք հաւաստեաւ միտ դնիցէ, եւ յայտ իսկ զովէ զօրէնսն, եւ զուգեալ ընդ Քրիստոսի կամացն ցուցանէ, եւ զայժմուս նոցին յառաջագոյն գուշակեալ: Վասն այսորիկ եւ չասաց իսկ եթէ չարիք օրինացն, այլ թէ որ անհնարինն եւ անկարն էր օրինացն. եւ դարձեալ թէ որով տկարանայրն: Նա չասաց թէ որ խոտամանկութեամբն նենգէր, եւ ոչ դարձեալ զտկարութիւնն ինչ նմա վարկանի, այլ մարմնոյ, յաւելով՝ թէ «որ տկարանայրն վասն մարմնոյ»: Մարմինն դարձեալ աստ ոչ եթէ զբնութիւնս զայս եւ ոչ որ 'ի հնազանդութեանս կայ, այլ զմարմնաւորագոյն զմտածութիւնսն կոչէ. վասն որոյ զմարմինն եւ զօրէնսն ազատէ 'ի բամբասանաց, եւ ոչ այսու միայն, այլ եւ յաջորդակցն իսկ: Զի եթէ հակառակ ինչ էին օրէնքն, ապա ո՞րպէս Քրիստոս յօգնականութիւն օրինացն գայր եւ զարդարութիւն նոցին ինքն եւ ձեռն կարկառ առ 'ի դատապարտել զմեղս 'ի մարմնի. քանզի այսոքիւք տկարանեալք էին, վասն զի 'ի վաղնջուց իսկ 'ի հոգւոյն հնացեալ էին օրէնքս դատապարտութեան:

Նա արդ զինչ, մեզ մեծամեծս օրէնքն կատարեցին, եւ զփրկչութեանն ճոյ միածինն. եւ ոչ երբէք. մանաւանդ թէ եւ զայն եւս ած գործեաց, որ զբնական օրէնսն եդ, նոյն եւ որ 'ի ձեռն գրոյն էր յաւել: Այլ ոչ ինչ օգուտ 'ի մեծամեծացն, յորժամ եւ ոչ նուազութիւնքն անգամ կազմէին: Քանզի զինչ օգուտ իցէ, ասա ինձ, եթէ տեսանիցեմք զգործս եւ նոցին ոչ նմանիցեմք: Ոչ ինչ օգուտ, այլ եւ մեծ դատապարտութիւն եւս: Արդ ուրեմն յայտ է թէ սա է որ զհոգին եւ զմարմին առ հասարակ ապրեցոյց, այսինքն է շնորհքն՝ որ եւ զմարմինս բարիոք նուաճեաց: Քանզի ուսուցանելն դիւրին է. իսկ յորժամ ճանապարհ եւս ցուցանես որով դիւրագործ այս լինի, այն է մեծ եւ չքնաղ:

Վասն այսորիկ իսկ եկն միածինն եւ ոչ հրաժարեաց զառաջինն մինչեւ ոչ յայտնախոսի դժուարութեանն զեր-

ծոյց զմեզ ։ Նա և այն իսկ է մեծ նշանակ յաղթութեան զի ոչ միայն մարմնով առ, այլ զոգիս որ կարի վշտացուցանեալ էր՝ զմերս ։ Որ օրինակ եթէ ոք 'ի հրապարակի կին աղքատ և մուրող և ամենևին անարգ և զան ընկալցէ յումեքէ և ողբասցէ, և տեսեալ զնա որդւոյ թագաւորի և մոռացեալ ապրեցուցանիցէ զնա և ազատեսցէ զնա 'ի նեղչաց անտի, այնպէս և Քրիստոս արար, և որդի մարդոյ յանձն առնու անուանիլ և յանդիմանն կացոյց զինքն և դատապարտեաց զմեղսն. և արդ այսպէս տեսեալ նորա զան արքեալ, ինքն եկն և յանձն առ ղզանն, մանաւանդ թէ զանիւն իւրով եւս հարուածս մահու. և այսպէս դատապարտեալ զնա հետևակորդս արար ։ Ոչ եթէ որ ատանջեցաւն մարմնոյն կորեաւ, այլ որ ատանջեցին զնա մեղքն՝ որ է մեծ և զարմանալի ։ Նա քանզի թէ 'ի մարմնի չէր եղեալ յաղթութիւնն, չթուէր իմչ այսպիսի զարմանալիք, վասն զի և օրէնքն զայնս գործէին. այլ զարմանալիք այն են զի մարմնով յաղթութիւն գործեցաւ ։ Նա որ բիւր անգամ եղեալն էր կոխան մեղացն, նոյն ինքն զնշան յաղթութեանն սպառնաց ընդդէմ նորին կանգնեաց ։

Նա և սոյնպիսի իմն հրաշափառագոյն իրք գործեցան. մի այն իսկ՝ զի չյաղթեցին մեղք մարմնոյ նորա. իսկ միւս ևս՝ զի յաղթեցաւն և զի 'ի նմին իսկ 'ի մարմնոյն յաղթեցաւ, քանզի և չէ իսկ զոյգ նմին չյաղթիլ և դարձեալ յաղթել այնմիկ որ միշտն յաղթէր նմա. իսկ երրորդն այն՝ զի ոչ միայն յաղթեաց, այլ և տանջեաց ևս ։ Քանզի չմեղանչելովն յաղթեաց, իսկ մահուամբն ևս առաւել յաղթեցաւ և դատապարտեցաւ՝ այսինքն է մահ. քանզի տեսանէր զնա մարմնով և կարծէր եթէ դիւրաւ արհամարհեսցէ զնա որպէս և զառաջինսն ։ Նա այսպէս լուծաւ զօրութիւն նորա, սոյնպէս և մեղքն 'ի բաց ջնջեցան ։ Քանզի մինչ որպէս զմեղաւորս զնոսա ընդունէր, տիրէր 'ի վերայ վախճանելոցն ըստ սահմանելոյ բանին իւրոյ. իսկ յորժամ զանեղծ զմարմինն եգիտ, որ և մահու իսկ մատնեցաւ, որպէս զի զրպարտող զոք դատապարտեաց զմահ և ըզմեղս ։ Տեսանե՞ս որպիսի յաղթութիւն գործեցաւ. նախ և առաջին զի չպարտեցաւ մարմինն 'ի մեղաց, երկրորդ զի յաղթեաց նմա և դատապարտեաց. և ոչ միայն զի

դատապարտեցան, այլ զի իբրև զյանցաւոր դատապարտեաց: Նախ յանդիմանեաց զնա արդարութեամբն, և ապա դատապարտեաց. և ոչ եթէ լոկ իշխանութեամբ և զօրութեամբ, այլ և արդարութեամբ վարուք: Քանզի զայս յայտ արար ասելովն՝ թէ վասն մեղաց, և թէ "դատապարտեաց զմեղս 'ի մարմնի,,. որպէս զի յորժամ ասիցէ ոք թէ նախ յանդիմանեաց զմեծամեծն և ապա դատապարտեաց: Տեսանե՞ս զի ամենայն ուրեք զմեղացն դատախազէ և ոչ զմարմնոյն. այլ զսա և պսակեալ իսկ ցուցանէ՝ և զվճիռն ընկալեալ:

Իսկ ապա եթէ ասիցէ՝ թէ "Նմանութեամբ մարմնոյ մեղ̃ զորդին իւր առաքեաց,,, յաղագս այսորիկ այլ մարմին կարծիցես զնորայն՝ վասն զի ասաց մեղս, վասն այսորիկ և զնմանութիւնն եդ: Այլ ոչ եթէ այլ մարմին ունէր Քրիստոս, այլ նման մերոյ մեղաւոր մարմնոյս, թէպէտ և առանց մեղաց, բայց սակայն բնութեամբ նոյն մերս: Ահաւասիկ և աստ եցոյց յայտնապէս թէ չէ չար մարմնոյս բնութիւն, և ոչ այլ մարմին փոխանակ առաջնոյն ա՛ռ Քրիստոս, և ոչ զնոյն իսկ զոր ա՛ռ՝ փոխեաց զբնութիւնն յայլ, այլ զնոյն իսկ զսա ուսոյց պատերազմիլ. թէպէտ և եթող 'ի նմին բնութեան կալ, որպէս զպսակ յաղթութեան 'ի գլուխ կապիցէ ընդդէմ մեղացն, և ապա յայնժամ յարուսցէ զնա անապական և անմահ գործիցէ:

Այլ զի՞ առ իս այս, ասէ, թէ այս ամենայն մարմնով գործեցաւ: Մանաւանդ եթէ առ քեզ իսկ իցէ. վասն որոյ 'ի սոյնս յարեալ ասէր. "Զի արդարութիւն օրինացն կատարեսցի 'ի մեզ որք ոչ ըստ մարմնոյ գնայցեմք,,: Իսկ զի՞նչ իցէ արդարութիւնն. կատարումն, ուղղութիւնն: Զի՞նչ կամիցի և նա և կամ զի՞նչ հրամանատայցէ. անմեղս լինել: Իսկ այս ամենայն այժմ Քրիստոսիւ ուղղեցաւ մեզ. և քանզի ընդդէմ կալ և յաղթել՝ նովաւ եղև մեզ, իսկ վայելել 'ի յաղթութենէն մերմէ, և ապա ուրեմն չէ պարտ կրկին մեղանչել: Այլ չմեղանչիցեմք ո՞րպէս: Թէ չլինիցիմք յորսայսեալք և լուծեալք ամենևին. վասն որոյ և յաւել իսկ 'ի սոյնս զայն թէ "որք ոչ ըստ մարմնոյն գնան,,: Որպէս զի մի յորժամ լսիցես թէ փրկեաց զմեզ Քրիստոս 'ի պատերազմէ մեղացն, և թէ արդարութիւն օրինացն յա-

ւնելու 'ի մեզ և զմեղացն դատապարտութիւն նեղեաց 'ի մարմնի, լուծանելով զամենայն պնդակազմութիւնս: Սան այսորիկ և անդ իսկ ասաց թէ չէ դատապարտութիւն ուրեմն, յաւել և զայն՝ թէ որք ոչ ըստ մարմնոյն գնան. և ասա դարձեալ թէ զի արդարացեալ գտցի առաւելութեամբ օրէնքն իմ: Այլ յաւելն նորա զայս այսպէս՝ յարեաց 'ի սոյնս, մանաւանդ եթէ ոչ զայս միայն, այլ և այլս բազումս:

Այլ իբրև ասաց թէ զի արդարութիւն օրինացն առաւելաւ 'ի մեզ որք ոչ ըստ մարմնոյն գնայցեմք՝ այլ թէ ըստ հոգւոյ, ապա ցուցանէ թէ ոչ միայն հեռանալ 'ի չարեացն պարտ է, այլ և 'ի բարիս գործել ձեռնամուխ լինել. քանզի տալ զպսակսն՝ նորա է, իսկ արժանի ըզքեզ կազմել՝ քոյին փութոյդ: Վասնզի և որպէս արդարութիւն օրինացն էր 'ի չլինել քեզ պատժապարտ անիծիցն, զայնս ենկն յայտնեաց քեզ Քրիստոս: Մ՚ի այսուհետև մասն լինիր այնչափ պարգևացն, այլ մնա հաստատութեամբ 'ի նմին պահելով զգանձս զայս: Այցոյց քեզ ասա՝ թէ չէ բաւական աւազանն միայն առ 'ի փրկութիւն, թէ ոչ յետ աւազանին և վարս արժանի պարգևացն ցուցանիցես: Այլ զայս ասելով դարձեալ ջատագով լինի օրինացն: Վասնզի յետ հաւատալոյն մերոյ 'ի Քրիստոս, զամենայն ինչ պարտ է շահել և գործել, որպէս զի արդարութիւն նորա մնասցէ 'ի մեզ, և մի երբէք եղծցուք զայն:

«Վասնզի, ասէ, որք մարմնաւորք են, զմարմնոյն խորհին»: Այլ և ոչ այսու իսկ զմարմինն մեղադրէ. զի մինչև զիւր զընտանի զկարգաւորութիւնն պահիցէ, ոչ ինչ անպատեհ լինիցի. իսկ յորժամ զամենայն ինչ նմա համարիցիմք, և յիւրոց ընտանի սահմանացն արտաքս ելանիցէ, և ընդդէմ հոգւոյն կայցէ. ապա յայնժամ ամենայն եղծանի և կորնչի, և ոչ եթէ 'ի բնութենէն ինչ լինի այն, այլ յանփութութենէն և յիւրմէ անկարգութենէն: «Իսկ հոգևորքն զհոգևորսն. քանզի, ասէ, խորհուրդ մարմնոյ մահ է»: Այլ չասաց եթէ բնութիւն մարմնոյ և կամ էութիւն անդամոց, այլ խորհուրդ, զոր ուղղելն իսկ դիւրին է և 'ի բաց բառնալ: Այլ զայս ասէ ոչ եթէ մարմնոյն ինչ առանձին խորհուրդ է, քաւ լիցի, այլ զթանձրագոյն մտացն յարձակումն ցուցանէ,

և յառաւելութիւն իսկ վնասին կոչէ, զոր օրինակ և մարմին զբանականացն մարդն և զհոգին սովոր են կոչել: Իսկ ըզ-խորհուրդն հոգւոյն, թէպէտ դարձեալ և աստ զհոգևո-րականն մտացն ասէ, որպէս և յառաջին ասէր՝ թէ "Որ քննէ զսիրտս, գիտէ զինչ խորհուրդ է հոգւոյն": Այս ցուցանէ բազում անգամ յայտնապէս բարութիւնս և յայժմուս և 'ի հանդերձելումն: Ոչ եթէ չար խոր-հուրդք՝ որ ինչ են 'ի ներքս անձին մարմնաւոր կամք, այլ մանաւանդ ևս առաւել քեր բարութիւն հոգևոր խորհուրդք ընձեռեն, զոր և յայտ իսկ արարեալ ասե-լովն թէ "Կեանք և խաղաղութիւն": Նա 'ի կրկին իմն 'ի մէջ արկանելով առաջնոյն՝ ասելով թէ "խոր-հուրդ մարմնոյ մահ է". և անջրպետ իմն առ 'ի յա-ջորդն զայս դնէ՝ թէ "խաղաղութիւն". և 'ի սոյն յարեաց անդէն՝ թէ "խորհուրդ մարմնոյ թշնամութիւն է առ Աստուած", որ քան զմահ ևս դժնդակագոյն է: Իսկ ա-այս ցուցանէ թէ որպէս մահ և թշնամութիւն է:

"Քանզի օրինացն Այ, ասէ, ոչ հնազանդի, նա և կարէ իսկ ոչ": Այլ[1] մի ինչ խռովեսցիս յորժամ լսի-ցես թէ "Նա և կարէ իսկ ոչ". վասն զի դիւրին ունի զլուծումն մտածութեանս այս: Խորհուրդ մարմնոյ աստ զհողեղէն և զթանձր զխորհուրդսն կոչէ, որք առ երկ-րաւորս իսկ միայն կապեն զինքեանս. զայսպիսեացն ա-սէ թէ ոչ կարէ հնազանդել Այ: Այլ ո՞ր յոյս փրկու-թեան կայցէ, ասէ, թէ չկարէ՝ որ չարն է՝ լինել լաւ: Ոչ զայս ինչ ասէ. այլ եթէ ո՛չ զիա՞րդ նոյն ինքն Պաւ-ղոս եղև այնպիսի լաւ. ո՞րպէս աւազակն, կամ զիա՞րդ Մանասէ և կամ Նինուէացիքն, և ո՞րպէս Դաւիթ ան-կեալ՝ վերստին զինքն ստացաւ, և կամ ո՞րպէս Պետրոս յորժամ ուրացաւն՝ զինքն դարձեալ վերստին նորո-գեաց, և կամ զիա՞րդ պոռնկացեալքն դարձեալ 'ի Քրիս-տոսի ճահուկսն խառնեցան, և կամ գաղատացիքն յոր-ժամ 'ի շնորհացն անկան՝ դարձեալ անդրէն 'ի նոյն լաւ-ւութիւնսն եկին:

Այլ արդ 'ի միտ առ թէ ոչ զայն ինչ ասէ որպէս զի անհնար է չարին բարի լինել, այլ զայն ասէ որք անդէն 'ի չարիսն մնայցեն՝ նոքա են որ չկարեն հնազանդել Այ.

1 Պակասէր յօրինակին Այլ մի . . . իսկ ոչ ». յաւելաւ 'ի յանեն:

իսկ որք փափկինն և զառանան, նոցա և հնազանդելն դիւրին է: Վասն որոյ և չասաց իսկ թէ մարդ չկարէ հնազանդել նմա, այլ եթէ չար գործք չկարեն լինել բարի. որպէս զի յորժամ ասիցես թէ պոռնկութիւն չկարէ անուանիլ զզաստութիւն, և ոչ չարութիւն առաքինութիւն: Զոր և յաւետարանին իսկ ասէր՝ թէ "Ոչ կարէ ծառ չար պտուղ բարի առնել,,, ոչ եթէ 'ի չարեացն յառաքինութիւն դառնալ արգել, այլ որք անդէն 'ի չարին կան՝ ասաց, եթէ ոչ կարեն պտուղ բարի բերել: Քանզի և չասաց իսկ եթէ ոչ կարէ ծառ չար բարի լինել. իսկ զի՞նչ, այլ եթէ պտուղ բարի չկարէ առնել մինչդեռ 'ի չարին է: Իսկ զի դառնալ և բարի լինել կարողութիւն է, զայս և աստ եցոյց և յայլ տեղւոջ, յորժամ թողուցու զորոմնն զի լինիցի ցորեան. վասն որոյ և խլել իսկ չետ հրաման, այլ արգել. "Մի գուցէ, ասէ, և զցորեանն ընդ նմին խլիցէք 'ի բաց,,. այսինքն է թէ հանդերձեալ են ոմանք 'ի նոցանէ ցորեան լինել:

Խորհուրդ մարմնոյ այժմ աստ զմեղացն ասէ. իսկ խորհուրդ հոգւոյ զշնորհացն որ տուանն և ազդեցանն ըստ բարւոք մերում յօժարութեանն՝ որք ընտրութեան 'ի կիր արկանեմք ըստ քաղցրութեան: Իսկ ոչ ուրեք աստ վասն անձնաւորութեան էութեան ճառեաց, այլ վասն առաքինութեան և մեղաց: Վասն զի զոր ինչ ոչ զօրեցին օրէնքն, այս այժմ կարողութիւն եղև քեզ, ասէ, ուղիղ գնալ և առանց գթելոյ և բուռն հարկանել զշնորհացն օգնականութենէ: Քանզի չէ այն միայն բաւական չգնալ ըստ մարմնոյ, այլ և ըստ հոգւոյն պարտ է գնալ. և ոչ դարձեալ այն միայն բաւական է մեզ 'ի փրկութիւն խոտորել 'ի չարէ, այլ պարտ է և բարիս գործել մեզ: Իսկ այս յայնժամ լինի յորժամ ըզշունչս ոգւոյն տայցեմք, և զմարմինս հաւանեցուցանիցեմք զընտանի զիւր զկարգն ճանաչել. ապա այսպէս կարեմք և զնա հոգևոր գործել: Իսկ եթէ ծուլանայցեմք, և զշունչն այնուհետև մարմնաւոր առնեմք:

Քանզի ոչ եթէ 'ի հարկէ բնութեանն եդ զպարգևն, այլ ազատութեան և յօժարութեան ընձեռեաց. ապա առ քեզ է առնել զայս և կամ զայն: Քանզի 'ի նմանէն կողմանէ ամենայն ինչ կատարեցաւ. վասն զի

և ոչ զինուորին ընդդէմ օրինաց մտաց մերոց մեղքն, և ոչ գիտեն զմեզ որպէս զառաջինն, այլ ամենայն լուծեալ խափանեցաւ և ընկղմեցան ախտք, զարհուրեալ և դողացեալ ախտքն 'ի շնորհաց հոգւոյն։ Իսկ արդ եթէ դու քեզ'ն զայրն շիջուցանիցես և զպատուավարն 'ի բաց հանիցես և զնաւավարն հալածիցես, ապա այնուհետև քեզ անձին քում քեզէն յարուցանես զմրրիկ ձմերանւոյ և զալէկոծութեան։

Այժմ դիւրագոյն եղև առաքինութիւնն, վասն որոյ և բազում հաւատարիք են խոստովանութեան. աղէ ուսիր և ած զմտաւ զժամանակն զայն մինչդեռ օրէնքն ունէին որպիսի ինչ 'ի մարդիկ գործէին և որպիսի ինչ այժմ յորժամ շնորհս ծաւալեցան։ Վասնզի որ ինչ անհնարինքն կարծէին առաջնոցն, այժմինքն է կուսութիւն և զմահ արհամարհել և զայլ ևս բազում ախտից, այս այժմ ընդ ամենայն տիեզերս ուղղեալ գտանի, և ոչ թէ 'ի մէնջ միայն, այլ առ սկիւթացիսն և առ թրակացիսն և 'ի հնդիկս և 'ի պարսիկս և յայլ ևս բազում բարբարոսս. ծաղկեալ են կուսանացն կարգ և մարտիրոսացն բազմութիւնք և միայնակեցացն դասք, այլ և բազում իսկ սոքա գտանին քան զամուսնացեալսն. և պահոց կարգք և անստացուածութեան առաւելութիւն, զոր օրէնքն որ նոքօք վարեցան՝ և յերազի անգամ չկարացին զայս առնել և վճարել։ Իսկ արդ տեսանելով թէ քան զփառս ևս առաւել գոչէ 'ի բաց Ճշմարտութիւն, մի թուլանար և մի մնան լինիր այնքան պարգևացն. զի և ոչ կարողութիւն է յետ հաւատոցն ծուլանալ։ Թէ ապրել կամիցիս, դիւրին է պատերազմն. այլ զի յաղթիցես մրցելով և ոչ զի նիրհիցես և ննջիցես, և ոչ զի դարձեալ զմեծութիւն շնորհացն առնիցես իբրև ծուլութեան յառաջին տղմին թաւալելով։ Վասն որոյ և զնավիմն ածեալ ասէր՝ թէ "Որ մարմնոյն են, այ̄ հաճոյ լինել ոչ կարեն"։

Իսկ արդ զի՞նչ, կոտորեսցո՞ւք զմարմինս, ասէ, զի լինիմք այ̄ հաճոյք և ելանիցեմք 'ի մարմնոյս, և մարդապա՞նս մեզ հրամայես լինել և գալ յառաքինութիւն։ Տեսանե՞ս քանի անպատեհ մտածութիւնք ծնանին՝ թէ մերկ զբանն ընդունիցիմք։ Վասնզի մարմին աստ ոչ զնոյն ինքն զմարմինն ասէ և կամ զնորին բնութիւնն,

այլ զմարմնաւոր վարուց և զերկրաւորաց՝ որ փափկութեամբքն և զխութեամբքն լի են, որ բոլորովին իսկ զմարդն մարմին գործեն ։ Որ օրինակ և ովք հոգւովն են թեթևացեալ և զմարմինն հոգևոր գործեն, սոյնպէս և որք այնպիսեացն ծառայեն որովայնի և հեշտութեան, և զհոգին մարմին առնեն. ոչ եթէ զէութիւնն ինչ շրջեն, այլ զազատութիւն ազգականութեանն նորա կորուսանեն ։

Այլ այս իսկ է օրինակ ասացելոցս՝ ուստի և 'ի հնումն բազում ուրեք գտանեմք, նշանակելով զմարմին զթանձրագոյն և զհողեղէն վարս և անպատեհ ցանկութեամբք լցեալս ։ Վասն զի և առ Նոյիւ ասէր՝ թէ “Ո՛չ մնասցէ հոգի իմ 'ի մարդկանս յայսմիկ առ 'ի լինելոյ դոցա մարմին„ ։ Ո՛չ և ինքն իսկ Նոյ մարմին զգեցեալ էր. և չէր նմա մեղադրութիւն թէ ընդէ՞ր մարմին զգեցեալ ես, քանզի այսօրիկ ըստ բնութեան են. այլ զմարմնաւոր զվարսն 'ի բաց կամէր բառնալ ։ Վասն այսորիկ և Պաւղոս ասէր՝ թէ “Որք մարմնովքն են, Այ հաճոյանալ ոչ կարեն„ ։ Այլ յարեաց 'ի սոյն դարձեալ թէ “Դուք չէք մարմնով, այլ հոգւով„ ։ Այլ ոչ դարձեալ թէ յախտաւն ինչ մարմնոյ ասաց զայս, այլ զայնպիսի զմարմնոյ՝ որք քարշին և ընդ ախտից բռնութեան կան 'ի հարկի ։

Այլ էր վասն չասաց այսպէս և ոչ ընտրութիւն ինչ եդ 'ի միջի ։ Բարձրացուցանել կամէր զլսողն, եցոյց զայն եթէ չէ 'ի մարմնի որ ուղիղն վարի. զի եթէ որ 'ի մեղսն չէր, յայտ է ամենեցուն թէ հոգևոր էր ։ Վասն այսորիկ զմեծն դնէ, զի ցուցցէ թէ ոչ միայն զի 'ի մեղսն չէ, այլ և ոչ 'ի մարմնի այնուհետև երևի թէ իցէ հոգևոր մարդ. հրեշտակ իսկ եղեալ աստէն և յերկինս համբարձեալ երևի, և զմարմինն լոկ արկեալ զիւրև ։

Իսկ արդ եթէ վասն այնորիկ ամբաստանես զմարմնոյ զի մարմնաւորն անուանեաց զվարսն մարմնաւորս, ապա պարտ է քեզ և զերկիր մեղադրել, վասն զի բազում անգամ և սա չար կոչի, որպէս և աշակերտացն ասէր Տր՝ թէ “Դուք չէք յաշխարհէ աստի„. և դարձեալ ցիւր եղբարսն ասէր. “Ոչ կարէ աշխարհս ատել զձեզ, իսկ զիս ատեայ, զի ես վկայ եմ նորա թէ գործք իւր չար են„ ։ Այս և զհոգին իսկ օտարացուցանէք յԱյ. վասն

զի որք 'ի մոլորութեանն կեցին, շնչաւորս կոչեաց զնոսա։ Նոյն չէ և չէ իսկ այս. քանզի ոչ լոկ յառաջացուածս բանիցն պարտ է հայել, այլ զմիտս բանիցն առաքելոյն ուրեք կարևոր է քննել և հաւաստեաւ 'ի վերայ հասանել ասացելոցն։ Վասնզի ամն բարի է և միայն չար. և երկոքեան 'ի միջոցի՝ որպիսի ինչ շունչ և մարմին 'ի միջոցի են, և սոքա և նմա դիւրինն է առ 'ի լինել բարի. իսկ հոգին միշտ բարի, և ոչ այլ տարազ ինչ երբէք կարէ լինել։ Այլ զարմանալ թէ խորհուրդ մարմնոյ՝ այսինքն է չար վարք, որ միշտն չար՝ նա ոչ կարէ այ օրինացն հնազանդել։ Իսկ ապա եթէ 'ի լաւ անդր խոնարհեսցի հոգին և մարմինն, եղեն միաբան հոգւոյն. իսկ եթէ զարմանալ չար և զժնեայ ինչ, զսոսա հաղորդ իսկ ասէն կարատեանն. ոչ եթէ բնութիւնն ինչ շնչոյ և մարմնոյ զայն ունէր, այլ իշխանականն բարուքն երկոքեան զայն ընտրեցին։ Այլ զի այսպէս ունի զօրինակս, և ոչ զմարմնոյ ամբաստանութենէ ինչ ասացեալ։

Զարմանալ եթէ կամիցիք ձեռնարկեսցուք յառաջուածս բանիցն և հաւաստեաւ քննեսցուք։ "Դուք, ասէ, չէք մարմնով, այլ հոգւով"։ Այլ արդ զիարդ չէին մարմնով, այլ անմարմինք շրջէին. և որ բան ունիցի զայս։ Տեսանեմս զի զմարմնաւոր զվարսն ակնարկէ։ Այլ էր վասն չասաց՝ թէ դուք չէք մեղօք. զի ուսանիցես եթէ ոչ միայն զմեղաց բանաւորութիւն շիջոյց Քրիստոս, այլ և զմարմինն թեթև և հոգևոր գործեաց. ոչ եթէ զբնութիւնն փոխեաց, այլ թևաւոր արար զնա։ Օր օրինակ յորժամ 'ի հուր մերձենայցէ երկաթ, և ինքն երկաթն հուր լինի և պահէ զիւր զբնական բընութիւնն, սոյնպէս և որ հաւատացեալն է և զհոգին ունի, և մարմինն նորա փոխի յայլ ազգութիւն և թռուցանելին իսկ հոգևոր լինի, և յամենայն կողմանց խաչեալ, և զոյգ ընդ հոգւոյն 'ի վեր թռչի։ Որպիսի էր իսկ և նորա մարմինն որ զայն խօսէր. որ զամենայն փափկութիւն և զցանկութիւնս ծաղր առնէր, և փափկանայր սովածն և տանջանօքն և կապանօքն, և ոչ ցաւէր ինչ և ոչ վիշտս վարկանէր զչարչարանսն։ Այլ զայս յայտ առնէր ասելովն՝ թէ "Առժամայն իսկ թեթևութիւն նեղութեանս"։ Այսպէս բարիոք էր և առաքինի, մինչև զմարմինն ևս խրատեաց զոյգ ընդ հոգւոյն ընթանալ։

“Զի եթէ հոգի ա̅յ բնակեալ է ՚ի ձեզ”: Զզին և զԹէն ընդ բազում տեղիս դնէ ոչ երկբայելոյ վասն, այլ և յոյժ հաւատալոյ իրք են, և փոխանակ այոր զզին և զԹէն դնէ. որպէս յորժամ ասիցէն. “Զի թէ արժանի է առաջի ա̅յ հատուցանել նեղութիւն նեղչացն ձերոց”. և դարձեալ. “Այնչափ ինչ անցք անցին ընդ ձեզ զուր, թէ իցէ զուր”: “Եթէ ոք զհոգի ա̅յ չունի, սա չէ նորա”: Այս չասաց եթէ դուք չունիք, այլ յայլս դարձոյց զտրտմականն. սա չէ նորա՝ ասէ: “Իսկ եթէ Քրիստոս ՚ի ձեզ է”. Դարձեալ Քրիստոս նոցա ասէ. և զտրտմականն եդեալ եթէ փոքր մի և զիջական, իսկ փափագելին՝ երկաքանչիւրոց, այլ և բաղձանաց, որպէս զի զայն ծածկելով զայս ասիցէ՝ եթէ զհոգին քարոզեսցի զՔրիստոս աւետարանելով: Ցուցանէ թէ որ զհոգին ունի, ոչ միայն զանուն Քրիստոսի ունի և Քրիստոսի անուանի, այլ զնոյն ինքն զՔրիստոս ունի. քանզի չէ երբէք յորժամ հոգին մերձ լինի, թէ և[1] Քրիստոս չիցէ մերձ: Քանզի ուր մի անձն յերրորդութենէն մերձ է, բովանդակ երրորդութիւն շուրջ պատեալ կայ. վասն զի անքակ են ՚ի միմեանց, և միաւորին ա̅մ հաւատեաւ:

Այս զինչ իցէ զոր ասէն՝ “Թէ Քրիստոս ՚ի ձեզ է, ապա մարմինն մեռեալ է վասն մեղաց և հոգին կենդանի է վասն արդարութեան”: Տեսանե՞ս որչափ չարիք են ՚ի չընդունելոյ զհոգին սուրբ. մահ, թշնամութիւն առ ա̅ծ, և ոչն կարել հնազանդել օրինացն ա̅յ, և չունել մեզ զՔրիստոս որպէս պարտն է և զբնակելն նորա ՚ի մեզ:

Այս արդ տես որչափ ինչ բարութիւնք են յորժամ զհոգին ընդունիցիմք. յորժամ Քրիստոսի լինիցիմք, զնոյն ինքն զՔրիստոս ընդունիմք և ընդ հրեշտակս խառնակից լինիմք. քանզի այս է զոր ասէն՝ թէ “Սպանէք զանդամս ձեր”. զկենդանութիւն զանմահ կենացն ոյք ասէն իսկ ընկալայք զյարութեան զգրաւականն, որով դիւրաւ ընթանամք զառաքինութեան ընթացսն: Վասն զի չասաց եթէ զատարկացի մարմինդ ՚ի մեղաց լոկ, այլ թէ մեռեալ լիցի. ընդդարձակել կամեցաւ զդիւրական զընթացսն մեր. քանզի առանց իրաց և աշխատութեան այսպիսի պսակի այնուհետև: Վասն այսորիկ և

1 Իմա Քրիստոսի նա:

զմեղացն ձառս յաւել, զի ուսցիս և զպարիսն, և ոչ եթէ
զբնութիւն մարմնոյն միանգամայն 'ի բաց եբարձ. զի
եթէ այս լինել էր, ապա և զհոգւոյն բնութիւն 'ի բաց
բառնալ էր։ Նոյն չասէ այսպիսի ինչ, այլ կամի թէ
կեայ և շարժի և գործէ. այլ մեռեալ կամի զի իցէ, որ-
պէս զի զՔրիստոս յինքեան կարիցէ ունել. և ապա
այն լինիցի նշան թէ 'ի մեզ Հոգին սուրբ է, յորժամ
զկարգ սահմանի իւրոյ բարիոք պահիցէ մարմինն, և ոչ
եւս աղտիցէ 'ի գործաւորութիւն մեղաց։ Նոյն արդ մի
վհատիցիս 'ի մեռելութիւն, զի ունիս զճշմարիտ կեան-
սն՝ զոր և ոչ մի ինչ մահ կարիցէ փոխանակել։ Վասն
զի այսպիսի են Հոգւոյն կեանք. չանկանի ընդ մահուանն
այնուհետև, այլ ծախէ զմահ և սպառէ, և զոր առն՝
անմահ պահէ։ Վասն որոյ և չասէ թէ մարմին մեռեալ
է և Հոգին կեայ, այլ թէ կենդանութիւն, զի ցուցցէ
թէ և այլոց կարող է զնոյն շնորհել։

Նա այս դարձեալ ածէ զլսողն առեալ զպատճառս կեն-
դանութեանն, և օրինակ այսպիսի՝ արդարութիւնն.
քանզի յորժամ մեղք ուրեք չիք, և ոչ մահ ուրեք գը-
տանի. և յորժամ մահ ուրեք չերևի, յայտ է թէ ան-
լուծանելի կեանք կեան։ “Ոի եթէ Հոգի այնորիկ որ
յարոյցն զՅիսուս բնակեալ է 'ի ձեզ, ապա և որ յա-
րոյցն 'ի մեռելոց զՏէր մեր Յիսուս Քրիստոս կենդա-
նացուսցէ և զմարմինս ձեր առ 'ի բնակել 'ի ձեզ Հո-
գւոյն„։ Դարձեալ վասն յարութեանն յուղէ զձառս.
մանաւանդ թէ այս իսկ յոյս օծանէ զլսողն, և հաստա-
տէ այնուիկ որ ինչ Քրիստոսին գործեցաւ։ Մի զար-
հուրիր, ասէ, թէ մեռեալ անկեալ է մարմինդ. ընկալ
զՀոգին և իսկոյն յարիցէ։ Նոյն զինչ, որք ոչն ունիցին
զՀոգին՝ մարմինքն ո՞չ յարիցեն. և ո՞րպէս ասիցէ՝ թէ
“Ամենեցուն մեզ յանդիման լինել կայ առաջի բեմին
Քրիստոսի„։ Նոյն ուստի դարձեալ ձառք գեհեննին հա-
ւատարիմ լինին. եթէ ոչ յառնեն, յայտ է թէ գե-
հեն չիք. և արդ որպիսի ինչ զոր ասիցէն։ Ո՛չ է յառ-
նել ամենեքին յառնեն, այլ ոչ ամենեքեան 'ի կեանս,
այլ ոմանք 'ի տանջանս և ոմանք 'ի կեանսն։ Սորին
վասն չասաց թէ յարուսցէ, այլ թէ կենդանացուսցէ՝
որ 'ի վերն է քան զյարութիւն, զոր արդարոցն միայն է
պատրաստեալ։

Այսպէս և զգաստանալս պատառոյն այնուհետև յայտնէ ա-ռաքելովն՝ «Առ 'ի բնակելոյ Հոգւոյ Նորա 'ի ձեզ»։ Զի թէ հալածիցես, ասէ, զՀոգւոյն շնորհս մինչդեռ աստ ես, և ոչ ամբողջ ունիցիս զնա 'ի քեզ, երթիցէ 'ի քէն. և թէպէտ և յարիցես՝ կորստեան մատնիս, վասն զի չառնու յանձն ծագել 'ի քեզ Հոգին յորժամ տեսա-նիցէ թէ մատնեցար գեհենին։ Այնպէս և չառնու յանձն զխաւարեալ լապտերօք զքեզ ընդունել և 'ի ներքս տանել 'ի Հոգևոր առագաստն որպէս և զայն զկուսանսն։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Դու արդ մի՛ տար այժմ կենդանանալ մարմնոյդ, զի անդ կենդանասցի. մեռ զդա աստ, զի մի՛ յաւիտեան մեռանիցի։ Զի եթէ աստ պահես զդա կենդանի, ա-պա անդ ոչ կենդանանայ. իսկ եթէ մեռանի, յայնժամ կենդանի լինի։ Այս և 'ի հասարակաց յարութեանն գործի. նա պարտ է նմա մեռանիլ և թաղիլ, և ապա անմահ յառնել։ Այն և յաւազանին գործեցաւ. քան-զի խաչեցաւ նախ և թաղեցաւ, և ապա յարեաւ։ Զնոյն զայս և 'ի տէրունական մարմնին. քանզի և նա նախ խաչեցաւ և մեռաւ և թաղեցաւ, և ապա յա-րեաւ։ Զնոյն և մեք այժմ արասցուք, 'ի գործս նո-րա յամենայն ժամ սպանցուք զմեզ. ոչ եթէ զբնու-թիւնս ինչ ասեմ, քաւ լիցի. այլ զյարձակմունս չար գործոցն։ Քանզի և այսպիսիկ կեանք են, մանաւանդ թէ այն իսկ են ճշմարիտ կեանք յորժամ ոչ մարդկօրէն ինչ վարիմք և երկրաւորս, և ոչ ցանկութեանց ծառայ-եմք։ Դու եթէ ոք զայսպիսիկ չկարիցէ ընդ իւրև հնա-զանդել, նա և կեալ չկարէ այնուհետև 'ի վհատութե-նէ որ յիւրացն լինիցի, և երկիւղ և վտանգ և բիւր թաղ-մութիւնք ախտիցն 'ի ներքս անկեալ հեղձուցանեն։ Դու եթէ մահու ակն ունիցիս, յառաջ քան զժամ մահու մեռեալ գտանի. և կամ թէ հիւանդութեանց և ախ-տից կարծիք ըմբռնեն և թշնամեաց և կամ աղքա-տութեան և կամ այլ ինչ յորոց ակն ունիցի, կորեաւ և եղծաւ վաղվաղակի։ Դու արդ զի՞նչ քան զայնպիսի կեանս հիքագոյն կայցէ։

Այլ ոչ որք Հոգւովն կեան՝ այսպիսի ինչ կրիցեն, այլ

թենէ յարիցէ, սակայն և ոչ այնպէս վայելէ 'ի յատուկ զգաստութեան. վասն զի դեռ անմեղ և մատաղատուղ որպէս 'ի ձմերանւոյ որ յարբեցութեանն գործեցաւ՝ առաջի աչացն կայ: Նայց սակայն թէպէտ պարտ էր նմա յատուկ նայել, այլ զինչ օգուտ է յորժամ ոչ ինչ տեսութիւն նորա 'ի պէտս գործիցի, այլ 'ի բամբասանս և յամօթ. այնքան ինչ է յիրացն շահ մինչև զգայ ոչ անգամ յորժամ ծաղրն կայցէ: Եւ յորժամ տիւն իսկ լինիցի, այնպիսի իմն մխիթարութիւն գտանէ՝ զծառայիցն տրտունջ և զկնոջն զամօթ և զբարեկամացն զմեղադրութիւն և զթշնամեացն ծաղր տանել զոր ոչ ինչ զգայ: Եւ արդ զինչ ինչ ողորմելի քան զայնպիսի կեանս կայցէ որ զօրն բոլոր այսպէս կատականաց լինիցի յամենեցունց, և երեկունն դարձեալ զնոյն ամօթ նախատանաց կրիցէ:

Եւ արդ զինչ, կամիցիս թողեալ զասա տացուք 'ի մէջ զագահսն. վասն զի և այս ևս դառնագոյն արբեցութիւն է և մահ, և քան զմահ ևս դառնագոյն, որպէս և արբեցութիւն այս ևս դժնեայ է քան զայն. քանզի և չէ իսկ այսպէս չար գինւոյ արբեցութիւն քան զընչիցն ցանկութիւն: Վասնզի անդ այնքան ինչ է վնասն և յայն կատարի՝ անզգայ լինել արբեցելոյն, և նորուն անձին է կորուստն միայն. իսկ այս արբեցութիւն 'ի բիւր ոգիսն ազդէ վնասն, և պէսպէս ամենայն ուրեք բորբոքէ զպատերազմունս: Եւ արդ բեր և զայս և զայն կշռեսցուք առ միմեանս և տեսցուք թէ իւ զատանիցն հաղորդ միմեանց, և այսպէս երկոցունց արբեցութեանց արտացուք հանդէս այսօր: Իսկ առ երանելի կեանսն և հոգևոր կենդանութիւնն մի ևս մերձեսցին այնպիսիքս առ այժմ, այլ առ միմեանս քննեսցին: Եւ զսեղանն ևս 'ի մէջ բերցուք որ բիւր սպանմամբք լի է: Եւ արդ իւ իւրք հաղորդին միմեանց և կամ իւ նմանիցին. այնու ինչ արդեօք ըստ բնութեան ախտին: Ոչ. այլ տես և զզանազանութիւն արբեցութեանն. քանզի մին 'ի գինւոյ, իսկ միւսն 'ի ցանկութենէ ընչիցն լինի, և ախտն նմանն նմին լինի, քանզի երկոքեան անպատեհ ցանկութիւնքն պատին: Վասնզի որ գինւոյն արբենայ, որչափ ինչ շատ ըմպէ տուշտիւքն, սոյնպէս և թմբրի միայն. իսկ որ յընչանս հարբեալ իցէ, որչափ ինչ ստանայ, քան զնոյնս

եւ առաւել վասն զեղց ցանկութեանն, եւ եւս դժնեայ զպատգամսն իւր պատուրասէ․ այսպիսի ինչ է արբեցութիւնն, եւ այլ զինչ։ Դարձեալ արծաթասէրն յափշտակէ․ եւ այն զինչ իցէ։ Քանզի նա ախտանայ զոր ինչ՝ բնութեանն իրք ունին․ վասն զի գինւոյն բնութիւն ջերմ է, եւ զգինարբուս զխանդութիւն մարմնոյն յինքն ձգելով գործէ արբեցելոյն զծարաւն։ Իսկ նա ուստի․ թէ ոչ յայտնանանէ թէ առաւելուլ կամի յինչսն, եւ առաւել յայնժամ աղքատագոյն քան զամենեսին խակ զինքն վարկանի․ քանզի անյագ է ախտն եւ լոկ օրինակաւ երեւի թէ մարդ է։

Այլ արդ եթէ կամիցիս, զննեսցուք զնոսա եւ յետ արբեցութեանն։ Մանաւանդ եթէ զարծաթասէրն չիք երբէք գտանել լուրջ, այլ միշտ յարբեցութեան կայ։ Այլ արդ մինչ յարբեցութեանն երկոքեան են, տեսցուք եւ այց արասցուք իրացն՝ եւ արդ ո՞ ոք ՚ի սոցանէ ծաղր կայցէ, եւ կերպարանեսցուք զերկոսեան եւ զրեւցուք զայն։ Այլ տեսցուք որ երեկոյ խելաթափ ՚ի գինւոյն եղեալ էր եւ զաչսն բացեալ ոչ զոք կարէր տեսանել, այլ լոկ ընդ վայր կարծէր զամենայն ինչ շուրջ եկեալ, եւ որք պատահէին՝ զրթի համարէր, եւ յարիւնեալ ծակոտեալ եւ մերկապէս խայտառակեալ, եւ կնոջն մերձ կալով եւ զաւակը եւ աղախնացն եւ ծառայիցն այսպէս կատականաց առնելով։ Այլ արդ բեր եթէ թուի եւ զագահն ՚ի մէջ եւ տես որ ինչ ՚ի նմանէն գործի․ եւ ոչ միայն ծաղու արժանի է, այլ եւ անիծից եւ սրտմտութեան եւ բազում շանթից ՚ի վերուստ։

Բայց սակայն տեսցուք թէ ուստի եւ ծաղրն լինի։ Այլ նման նմին իսկ չտեսանէ զամենեսին, ոչ զազգականս, ոչ զթշնամիս․ եւ այնպէս նման նմին բացեալ աչքն՝ կափուցեալ գտանի․ եւ զոր օրինակ նա գինւոյն ցանկայ, նոյնպէս եւ սա զամենայն ոսկի տեսանէ։ Այլ փսխածն եւս դառնագոյն սորա քան զնորայն․ զի ոչ եթէ կերակուր ընդ բերան փոխէ, այլ բանս հայհոյութեան, թշնամանաց, պատերազմաց, մահուան, եւ որ ինչ անդուստ ՚ի ներքուստ[1] կազմեալ փայլատակունս՝ դժոխոյն իւղ եւ առնէ։ Այլ որպիսի ինչ իցէ մարմին արբեցելոյն՝ զանձրացեալ եւ լուծեալ, նոյնպէս եւ սորա ոգին։

1 Ցոյնն յերկնուստ։

Մանաւանդ թէ ոչ սորա ոգիքն և ոչ մարմինն յախտէս յայտնանէ կարիցեն զերծանել, այլ մանաւանդ թէ ծախէ և մաշէ եւս առաւել քան զգինւոյն զարբեցութիւն՝ հոգքն, տրտմութիւնն, տքնութիւնն՝ որ առ փոքր փոքր ուտէ զմարմինն նորա և ծախէ։ Վասնզի գինւոյն բարբաքուածն գոնէ յետ գիշերոյն կարէ զուարթանալ։ Իսկ սա յամենայն ժամ արբեալ է 'ի տանջանս և 'ի գիշերի. և յորժամ արթունն է, քան զամենայն եւս քնով կապեալ գտանի. քանզի և որ զմեռանողն գործեն և թէ այլ ինչ քան զայս առաւել և ծանր և դժնեայ իցէ՝ եւս չար դառնագոյն չարչարի սա աստէն։

Այլ արդ ասա ինձ, այնպիսի կեանք կեանք իցեն, այլ ոչ եթէ մահ, մանաւանդ թէ եւս դժնեայ քան զմահ և ողորմելի։ Վասնզի մահ զմարմինն հանգուցանէ, և 'ի ծաղր առնելոյ և 'ի նշաւակաց և 'ի մեղաց անջատէ. իսկ այս արբեցութիւն յամենայն յայնոսիկ արկանէ, զլսելիսն խնու, զաչսն կափուցանէ և զմիտսն կապէ 'ի խաւարի։ Վասնզի ոչ լսել և ոչ խօսել ընդ ումեք յանձն առնուն, այլ վազվզեն և տակտակին տակտակեալ և զանասնոթութեան շահեն և զատեցեալ վաճառականութեան հաշուին և զանազգաստութեան[1] զշահն և զծառայակէս. և որպէս շունք ընդդէմ ամենեցուն ողանջեն, զամենեսին ատեան, յամենեցունց 'ի բաց փախչին, ընդ ամենեսին մարտնչին առանց իրիք պատճառանաց, յաղքատացն վերայ յանկեն, ընդ մեծատունս չարախնեն և ընդ ումեք իսկ չեն կամակից։ Թէպէտ և կին ունիցի և որդիս և բարեկամս, եթէ ոչ յամենայն ուստեք շահեսցի ինչ, չթուի ինչ քաղցր. բնութիւն իւր պատերազմող երևի, և այլքն եւս առաւել։

Այլ արդ զինչ չար քան զայնպիսի մոլորութիւն կայցէ, և կամ զինչ հէք և թշուառական քան զնա, յորժամ ինքն անձին իւրում այնպիսի խեթոտ իրս կազմիցէ և զանհամբերութիւնս և խորամանգս և բիւր խորխորատս։ Մարմին ունելով՝ որ միայն որովայնի ծառայիցէ, թէպէտ և 'ի քաղաքային մատակարարութիւնս ոչ զքեզ արկանիցէ՝ փախչիս յերկինուղէն, վասն զի զամենայն ինչ որովայնի ծախիցես. իսկ արդ և առանձին իսկ կազմես այնպիսի ծախս. և ոչ եթէ ծախս միայն,

1 Ցօրինակին զանազգաստութեան. նշան բառ յանձին

թէ յամենայն 'ի կենացն իսկ անկեալ։ Այլ արդ զխորհուրդ կարիցեմք բանիւք զայս չարիս յանդիմանս կացուցանել։ Իսկ թէ ասա զայսպիսի ինչ, զմտաւ ած յետ աստի անցք երթալոյն, զարտաքս հանումն յաղքատութենէն, զմերժումն գեհենին, զհանապազորդ զկապանսն, զը-խաւարին արտաքին, զորդն զթունաւոր, զկրճտումն ատամանցն, զնեղութիւնն, զհրեղէն գետն, զհնոցն որ ոչ երբէք շիջանի։

Այլ արդ զայս ամենայն 'ի մի վայր ժողովեալ զմտաւ ած զի կարասցես կալ ընդդէմ ցանկութեան ընչիցն խորհրդոց, զի արմատաքի իսկ խլեսցես զախտն զայն, որպէս զի զճշմարիտ զմեծութիւնն ընկալցիս և 'ի գըժնեայ յաւիտենական յաղքատութենէն զերծցիս, և մերձակայից և հանդերձելոց բարութեանցն արժանի գտցիս։ Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք Հօր հանդերձ Հոգւովն սրբով այժմ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ՉՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

"Արդ ուրեմն, եղբարք, պարտապան եմք ոչ մարմնոյ՝ ըստ մարմնոյ կեալ. զի եթէ ըստ մարմնոյ կեցէք, մեռանելոց էք. իսկ եթէ Հոգւով զգործս մարմնոյ սպանանիցէք, կեցջիք"։

Եցոյց թէ որչափ ինչ գործեն հոգևոր վարքն, և եթէ Քրիստոսի բնակութիւնս առնեն զմեզ, և թէ կենդանացուցանէ զմահկանացու մարմինս և առ երկինս թռուցանէ, և թէ զճանապարհս առաքինութեան դիւրին գործէ։ Արդ կարևոր համարի 'ի սոյնս յարել և զխրատն ասելով՝ թէ չպարտիմք կեալ ըստ մարմնոյ. այլ այսպէս չասաց ինչ յայտնի, այլպէս դիմօք և յոյժ զօրաւոր ասաց՝ թէ պարտապան եմք հոգւոյ. քանզի ասելն թէ չեմք պարտապան մարմնոյ՝ զայս յայտ առնէ։ Այլ ամենայն ուրեք զնոյնս կազմէր և ցուցանէր թէ որ ինչ յԱյ առ մեզն եղեն՝ չեն ինչ պարտուց իրք, այլ մեծի

շնորհացն մեղացն. իսկ յետ այսորիկ 'ի մէնջ առ նոսա որ ինչ եղեն, ոչ էր առատ ընծայութեան, այլ պարտուց։ Որպէս եւ յորժամ ասէ «Գնոց գնեցայք, մի լինիք ծառայք մարդկան», զայնս ակնարկէ. եւ յորժամ դարձեալ գրէ՝ թէ «Չէք անձանց տէրք», զայնս յայտ առնէ. եւ այլուր դարձեալ զնոյն յիշեցուցանէ ասելով՝ «Մինն 'ի վերայ ամենեցուն մեռաւ, ասէ, ապա ուրեմն ամենեքեան մեռեալ էին. զի որ կենդանիքն իցեն, մի ինքեանց իցեն կենդանիք»։ Զայնս զայս եւ առաւել կազմեալ ասէ՝ թէ պարտապան եմք։

Նոյն իբրեւ ասաց՝ թէ չեմք պարտապան մարմնոյ, եւ զի մի ոք զատուցեալքն ձեղքիցէ[1] եւ 'ի մարմնոյ բնութիւն ամբաստանիցի, ոչ ընդ տեղւոյ եթող զբանն եւ լռեաց, այլ յառաջ մատուցանէ եւ ասէ՝ թէ «ըստ մարմնոյ կեալ». վասն զի եւ բազում ինչ եմք պարտապան մարմնոյ՝ սնուցանել, խնամ տանել, հանգուցանել, ողջացուցանել յորժամ 'ի հիւանդութեան իցէ, զգեցուցանել եւ այլ եւս ինչ սպասաւորութեան պէտք են։ Եւ զի մի ասիցեն թէ զայսպիսի խնամ 'ի բաց բարձ 'ի նմանէ, ասաց թէ չեմք պարտապան մարմնոյ, անդրէն մեկնէ իսկ ասելովն՝ թէ ըստ մարմնոյ կեալ. զայն բառնամ 'ի նմանէն, ասէ, որ փութայն զնա 'ի մեղս ածել. որպէս զի ողջացուցանել իսկ փութամ զնա, զոր եւ յառաջագոյն յայտ արար՝ թէ մարմնոյ խնամ մի տանիք. եւ չդադարեաց յայնմ, այլ զամփոփն ածեալ ասէր՝ թէ առ 'ի ցանկութիւնս։ Նոյնս եւ աստ խրատէ ասելով՝ թէ դարման տանել մարմնոյ պարտական եմք, այլ ոչ եթէ ըստ մարմնոյ կեալ. այսինքն զի մի արասցուք զնա տէր կենաց մերոց. եղեւ նա 'ի պէտս կարեաց, այլ ոչ եթէ վերակացու եւ առաջնորդ կենաց մերոց, այլ Հոգւոյն օրինաց ընդունակ.

Եւ ապա իբրեւ անմեղադրեաց զայս առ երկաքեան եւ կազմեաց զմեզ պարտականս Հոգւոյն, ապա ցուցանէ թէ ում եմք պարտապան, այսինքն երախտեացն։ Եւ զայս ոչ եթէ զանցելոց զերախտեացն ասէ, որ մնացական զարմանալի է խնամութիւն նորա, այլ զՀանդերձեալոցն ասէ։ Ահեղէ եւ բաւականք առաջինքն էին, բայց առակայն չզնէ առ այժմ զայն եւ ոչ ձայնէ ինչ զնա,

1 Ի լուսանցս օրինակին ծեծղէ ։

նմանապէս ցուցանել, այլ ոչ չքաւորել 'ի պատահմունս. վասն զի չընկալան հոգի սուրբ ժողովուրդն Հրէից: Այլ արդ այս իցէ, ասէ, զգիրն այսպէս կոչեաց, քանզի հոգևոր էր. որպէս և զօրէնսն հոգևոր անուանէ և զջուրն որ 'ի վիմէն և զմանանայն. «Քանզի ամենեքեան, ասէ, զնոյն հոգևոր կերակուրն կերան և ամենեքեան զնոյն հոգևոր ըմպելի արբին»: Այլ զվէմն ասա հոգևոր անուանէ ասելով. «Ըմպէին 'ի հոգևոր վիմէն որ երթայր ընհետ նոցա»: Քանզի 'ի վեր քան զբնութիւնն էր ամենայն որ կատարէր, վասն այնորիկ հոգևոր անուանեաց զնա, և ոչ եթէ հոգի առին որք հաղորդէին այնմիկ յայնժամ:

Այլ զիարդ յայնժամ գիրն այն գիր ծառայութեան էր. անցանէ իսկ ընդ բոլոր կարգաւորութիւնս, և ապա ցուցանէ զայս յայտնի: Վասն զի կշտամբանօքն անդէն առ նոսա մերձ, և վարքն անդէն երագ, թէպէտ և փոքր և չափով էր. զոր օրինակ և որք զհանապազորդ ռոճիկն տայցեն իւրեանց ծառայիցն, այլ առակայն ահին և երկիւղն հանապազորդ առաջի աչաց ածէ, նոյնպէս և նոքա ունէին զմարմնոց սրբութիւն և ժուժկալութիւն մինչև 'ի գործսն: Իսկ մերքս ոչ այսպիսի ինչ, այլ և զմիտսն և զխորհուրդսն պարտաւորեն մեզ մաքուր ունել. քանզի չասաց մեզ թէ մի սպանաներ միայն, այլ թէ և բարկանալ ևս մի: Այլ դարձեալ չասաց թէ մի շնար միայն, այլ թէ և նայիր մի անպատեհս. որպէս զի մի առ ահի գեհենին առնիցեմք զայս, այլ ցանկութիւն իսկ զիրան վարկանիցիմք. քանզի այն իսկ կամք են առաքինութեանն և այլոցն ուղղութեանցն: Քանզի ոչ աւետարանեցաւ մեզ երկիր որ բղխէ զկաթն և զմեղր, այլ միածնին ժառանգակիցս առնէ, 'ի մերձակայիցս զմեզ հրաժարեցուցանէ: Այլ մանաւանդ զայն խոստացաւ տալ մեզ զոր որք որդիքն եղեն այ՛ ընդունելոց են, անասելի և մարմնական ինչ ոչ, այլ ամենայն հոգևոր: Սակայն թէպէտ և անուանէին և նոքա որդիք, այլ իբրև զծառայս. իսկ մեք ազատք եղաք յորժամ զորդեգրութիւն ընկալաք և երկնից ևս ակն ունիմք. և նոցա 'ի ձեռն այլոց խօսէր, իսկ մեզ ինքն անձամբ. և նոքա ահիւն և դողութեամբն յամենայն ժամ տանջէին 'ի վարսն, իսկ մեք յօժարականն հոգւով և ցանկութեամբք առնեմք:

Այլ զայս յայտ արարեալ անձին որք և քան զերդոյն հրամանս են զանցանեն։ Նոքա որպէս փորձկանք և ա-պաշտօնարհք ոչ երբէք դադարէին 'ի սպասաւորել, իսկ մեք 'ի հանճարութիւնս հօրն նայիմք. նոքա և յորժամ զե-րախոսական ընդունէին՝ հայհոյէին, իսկ մեք և յորժամ վշտանամքն գոհանամք. Թէպէտ և չարչարիմք յորժամ մեղանչեմքն, սակայն և այսմ ընտրութիւն կայ. քան-զի ոչ որպէս նոքայն խոշտանգեալք և այրեցեալք և ծառ-այակոյտ լեալք 'ի քահանայից, ոչ եթէ այնպէս զար-ձակեցանեմք և մեք զյանցանօրան, այլ բաւական է այս-պիսումն արտաքսել 'ի հայրական սեղանոյս և յերե-սաց 'ի բաց մերժեմք սակաւ ժամանակօք ինչ։ Այլ հրէի-ցին բանն իւր միայն էր որդեգրութիւնն, իսկ աստ և իրքն իսկ զհետ եկին, միայն որ 'ի մկրտութեանն սրբութիւն լինի, և դարձեալ հոգւոյն առումն և այլոց բարութեանցն բաշխումն։ Այլ զնոցայն այլսն կատակականաց առնեմք, և զմերս իրքն զբարեպաշտմիկ զօր ցուցանեմք և զնոցայն խա-ռնեմք, վասն զի առ երկիւղի գործէին զամ. իսկ մերս հո-գեւոր որդեգրութիւն, այնպէս և ծառայութիւնս մեր երեւի թէ այլ ինչ իցէ, և զի ունիմք զհոգի որդեգրու-թեանն. զո՞ր ինչ. զայն՝ “Որով աղաղակեմք աբբայ հայր„։ Այլ որչափ ինչ իցէ այս՝ գիտեն խորհրդականք որք խոր-հրդապէս կատարեն յաղօթս զխորհուրդն, զի նախ զայս բան հրամայեն 'ի կիր արկանել։

Այլ արդ զիա՞րդ, ասէ, մինթէ նոքա չկոչիցե՞ն հայր զԱ՟ծ. չլսիցե՞ս Մովսէսի որ ասէն թէ “Զաստուած որ ծնաւն զքեզ„. և կամ դարձեալ Մաղաքիաս զիա՞րդ նախատէ զնոսա և ասէ. “Ո՞չ Ա՟ծ մի արար զձեզ և հայր մի է ձեր ամենեցուն„։ Թէպէտ և զայս կամ ա-ւելի քան զայսս ասիցէ, սակայն չգտանեմք ուրեք թէ այսպիսի բանիւք կարդային առ Ա՟ծ և ոչ աղօթէին այս-պէս։ Իսկ մեք ամենեքին և քահանայք և աշխարհա-կանք և իշխանք և որք ընդ իշխանութեամբն այսպէս ասել հրամանն աղօթելոյ, և զայս զձայն առաքեմք յա-ռաջ յետ զքանչելի երկանցն այնոցիկ և զարմանալի և միայն հրաշափառագոյն ծննդեանն։

Իսկ թէպէտ և կոչէին երբեմն և նոքա յիւրեանց մտաց միայն, իսկ առ շնորհօքս 'ի հոգեւորական ազդմա-նէն միայն։ Որպէս զի որպէս հոգի իմաստութեան է ո-

րով յիմաստքն իմաստունք գտանին, և այս յայտ 'ի վարդապետութենէ անտի լինի. այլ և Հոգւոյ զօրութեան է՝ լուր այնմ զի տկարքն մեռեալս յարուցին և զդևս հալածականս առնէին, և Հոգւոյ շնորհաց և բժշկութեան է և Հոգւոյ մարգարէութեան և որպէս Հոգւոյ լեզուաց է, նոյնպէս և Հոգւոյ որդեգրութե։ Իսկ որպէս 'ի մարգարէս Հոգւոյ մարգարէութե է, որով որք ունէին զնա յառաջագոյն առնէ զհանդերձեալսն, և ոչ եթէ ինքն յինքեանս մնաց ինչ բարբառի, այլ 'ի շնորհաց անտի որով զազդուածն ընդունի, նոյնպէս և Հոգւոյ որդեգրութեանն՝ որք առնէին զնա՝ Հայր կոչեն զԱծ 'ի Հոգւոյն ազդմանէ. Իսկ ապա եթէ ոք կամի ցուցանել տերունական որդեգրութեանն, զոր և յեբրայեցւոց լեզուն 'ի կիր արկ. և ոչ առաց միայն Հայր, այլ թէ աբբայ Հայր՝ որ եբրա խօսից որդւոց ձայն է առ Հայր.

Իսկ արդ իբրև առաց զընտրութիւն առաքինութեցն 'ի շնորհացն որ առեալ յաղագատութենէն, ցուցանէ ապա և այլ օրինակս իմն զատուցել որդեգրութեանն զայսորիկ. զորպիսի ինչ։ Զայս զնոյն ինքն զհոգին առէ թէ “վկայէ Հոգւոյս մերում թէ եմք որդիք Այ ”։ Իսկ ոչ եթէ միայն 'ի բանից յամառնելք ցուցանել զորդեգրութիւն, այլ և 'ի պատճառէն ուստի ձայնս ծնանի. Զնազի Հոգւոյն ազդմամբ զայս առնեմք. որպէս և այլուր ևս յայտնագոյնս ցուցանէ՝ թէ “Առաքեաց Աստուած զՀոգի որդւոյ իւրոյ 'ի սիրտս մեր որով աղաղակեմք աբբայ Հայր ”։ Զինչ է այն զոր առէ՝ թէ ինքն Հոգին վկայէ Հոգւոյս մերում. Մխիթարիչն է, առէ, որ զշնորհսն ետ մեզ. քանզի ոչ եթէ շնորհացն ձայնիւ, այլ առաջին շնորհաց մխիթարչին. քանզի նա ուսոյց զմեզ այսպէս բարբառել 'ի ձեռն շնորհացն։ Իսկ արդ զինչ երկբայութիւն է այսուհետև. զի եթէ մարդ ոք էր կամ հրեշտակ և կամ հրեշտակապետ և կամ այլ ոք 'ի վերին զօրութեանցն որ զայս մեզ խոստանայր, էր ինչ արդեօք երկբայանալոյ արժանի. իսկ ապա եթէ վերին էութիւնն և անճառելի բնութիւնն շնորհեաց մեզ զայս և այսպէս աղօթել, որ շնորհեաց մեզ մխիթարիչն՝ մեզ վկայէ, ապա որպիսի ինչ երկբայութիւն կարիցէ մտանել 'ի մեզ վասն պատուոյս։ Զի եթէ այր թագաւոր յուժամ պատուով զոք ձեռնադրեսցէ և քարոզ առաքեսցէ այ-

Հանդերձելոցն։ Նոյն չասաց եթէ առ հանդերձեալսն հան-
գստեանն, այլ որ եւս մեծն է՝ թէ առ հանդերձեալ
փառսն. քանզի ուր հանգիստ է յայտ է թէ փառք. եւ
ուր փառք են, յայտ է թէ եւ հանգիստ։

Նոյն սորա վասն զի հանդերձեալ ասաց, ցուցանէ թէ
ահա է իսկ. վասն զի չասաց թէ որ հանդերձեալն է
լինել, այլ որ հանդերձեալն է յայտնել. որպէս եւ այ-
լուր յայտնապէս ասէ՝ թէ "կեանքն մեր ծածկեալ են
ընդ Քրիստոսի յԱծ"։ Սաստ է այսուհետեւ վասն
նորա, զի կազմէ այնոցիկ որք ակն ունիցին վասն աշխա-
տութեանցն առնուլ. իսկ եթէ հանդերձելովքն տըրտ-
մեցի, առաւել այսուհետեւ իսկ պարտ է ուրախ լինել։ Որպէս
զի մեծ ինչ է եւ անհաւատալի եւ գերազանցէ քան զա-
մենայն միտս եւ զմերձակայս եւ անդր հանճարոյ։ Վասն
զի եւ ոչ ընդ վայր ինչ ասաց՝ եթէ չարչարանք ժամա-
նակեանս. այլ զի ցուցցէ թէ ոչ որպիսութեամբն յաղ-
թէ այն։ Նոյն այս զինչ իցէ զի փակէ առ ժամանակեան
չարչարանսն. որպէս զի ժառանգորդք փոքուք հանդեր-
ձեալ բարութեանցն, առ անմահականացուն ձգէ ըզ-
բանս. զոր բանիւ չունէր յանդիման կացուցանել, յա-
ղագս այնորիկ որ ինչ մեզ ծանօթն է փառաց անուն՝
զայն անուանեաց. զի թէ ծայր ամենայն բարութեանց
եւ գլուխ այս թուի լինել։ Սրացուցանէ եւ այլ պէս
զլսողսն, եւ յարարածոցս իսկ ածեցուցանէ զբանն եւ եր-
կուս կազմէ վասն հանդերձեալ ասացուածին, եւ վասն
կարծեաց մերձակայից եւ վասն ցանկանալոյ հանդեր-
ձելումն. եւ երրորդ յետ այսորիկ, մանաւանդ թէ եւ ա-
ռաջին իսկ, զի ցուցցէ թէ որչափ ինչ փոյթ է Այ վասն
ազգի մարդկան, եւ թէ որպէս զմեր բնութիւնս պա-
տուեաց։ Նոյն յետ այսորիկ զամենայն փիլիսոփայական
աւանդութիւնն հանդերձ աշխարհաւս այսուիկ ծանոյց
նոցա, որպէս զարդխոստայն ինչ եւ զողայոյ զաղփաղփ-
մունս՝ այսոքիւք իսկ ՚ի վայր կործանէ զնոցա զաւանդու-
թիւնսն։ Նոյն զի եւս յայտնագոյն լիցի այս, նմին իսկ
առաքելական ձայնին լուիցուք։

"Քանզի ակնկալութիւն արարածոցս, ասէ, յայտ-
նութեան որդւոյն Այ սպասէ. քանզի ընդունայնութե
արարածք հնազանդեցան ոչ կամաւ, այլ յաղագս այ-
նորիկ որ հնազանդեցոյցն յուսով"։ Նոյն զոր ասէն

լանիցէ, ընդ նմին և զայնասիկ զոյգ վայելէ 'ի բարու-
թիւնսն, որպէս և արարածքս, ասէ: Տեսանեմս ըղ-
մարդն ամենայն ուրեք յառաջ պատուեալ և վասն նո-
րա զամենայն եղեալ: Տես զարձեալ որպէս ափոփէ
զաշխատեալն և ցուցանէ զնոյն զանբառ մարդասիրու-
թիւնն: Դու, ասէ, վասն քո չարչարիս. իսկ արարած-
քըս ոչ եթէ վասն իւրեանց իմն, այլ վասն քո: Այլ ոչ
եթէ միայն ափոփէ, այլ և հաւատարմագոյնս իմն զա-
տացեալն ցուցանէ: Զի թէ արարածքս յաւսան՝ որ
վասն քո եղեն ամենայն, ապա և առաւել դու որով
արարածքս վայելեն 'ի հանդերձեալ բարութիւնն, այս-
ինքն է յանապականութեանն: Որպէս և մարդիկ
յորժամ որդին հանդերձեալ իցէ ելանել 'ի պատիւ
իմն, և ծառայիցն պայծառ հանդերձս աղուցանեն 'ի
փառս որդւոյն, սոյնպէս և Աստուած անապականու-
թիւն զգեցուցանէ արարածոցս յազատութիւն փառաց
որդւոյն:

"Գիտեմք եթէ արարածք ամենայն հեծեն և երկ-
նեն մինչև ցայժմ": Տեսանեմս որպէս յանդիմանէ ըղ-
լսողսն չլինել 'ի վայր քան զարարածսն, և մի յառաժա-
մանակեանսն միայն յամել: Այլ ոչ եթէ միայն զայս
ցուցանել յանձին չէ պարտ, այլ և հեծել ևս վասն հան-
դերձեալ գնալոյն աստի. զի թէ արարածքս զայս առնի-
ցեն, ապա մանաւանդ քեզ որ բանիւդ ես պատուեալ:
Այլ չև ևս է մեծ առ 'ի յանդիմանութիւնն. ապա և
զայն ևս յաւելու՝ թէ "Ոչ միայն, այլ և մեք իսկ որ
զպտուղ հոգւոյն ունիմք, անձամբ յանձինս զոյգ հե-
ծեմք ընդ նոսա". այսինքն է որ զհանդերձելոյն ճա-
շակս առաք: Թէպէտ և քարեղէն ոք իցէ, ասէ, բա-
ւական են առաւելքն իսկ զարթուցանել զնոսա և 'ի
մերձակայէս հրաժարեցուցանել և առ հանդերձեալսն
թռուցանել և մեծամեծս վարկանել զպարգեւսն, և որ
այսպէս և այսպիսի իմն պտուղն իցէ: Այլ եթէ պտուղն
այնպէս իմն է՝ մինչև մեղացն թողութիւն նորա եղև,
և արդարութիւն սերմանեցաւ և սրբութիւն ժամանե-
ցին, իսկ յայնժամ զդևս հալածեցին և զմեռեալս յա-
րուցին, առաքելքն միայն և հանդերձեալքն զանխառն
բժշկէին, ապա զմտաւ ած թէ բովանդակն իմքեանց որ-
չափ իմն: Իսկ եթէ արարածքս որ 'ի բանէ զրկեալ են,

և ոչ ինչ զխառնայեալ[1] այսպիսի իրք՝ հեծեն, ապա մա-նաւանդ բազում անգամ մեզ պարտ է հեծել։

Ապա զի մի տայցէ պատճառս գտանել հերձուածո-ղացն՝ թէ զարարածս ինչ չար համարի, հեծեմք ասէ, ոչ եթէ զմերձակայս ինչ ամբաստանեմք, այլ 'ի հան-դերձեալսն ձեպիմք. քանզի յայտ արար ասելովն՝ թէ "Արդեգլութեան ակն ունիմք,,։ Օ ինչ գործես, ասա ինձ, 'ի վեր և 'ի խոնարհ զնոյն յեղյեղուիր գոչելով համապազ՝ թէ եղաք իսկ որդիք, և այժմ յուսով ասես զայնպիսի բարութիւնսն, և գրես թէ պարտ է ունել ակն։ Նա արդ կամեցեալ զայսպիսի մտածութիւնս ուղ-ղել՝ ասէ. "Օ փրկութիւն մարմնոյ մերոյ,,. այսինքն զկատարեալ զփառսն։ Այժմ անյայտ են, ասէ, մեր իրքն մինչև 'ի վերջին շնչոյն ժամ. քանզի բազում էին որդիք և գտան անշնորհք և գերիք։ Իսկ ապա եթէ քաղցր յուսովն զերծանիցիմք աստի, ապա յայնժամ լինին պարգևքն անշարժ և յայտնի ես մեծագոյն, ոչ ևս երկուցեալ 'ի մահուանէ և 'ի մեղաց, և ոչ փոփո-խումն ինչ ընդունի. վասն զի յայնժամ լինի հաստա-տուն պարգևն յորժամ և մեր մարմինքս անմահ լինի-ցին և 'ի բիւր ախտից ազատանան. յայնժամ և փըր-կութիւն է, և ոչ միայն փրկութիւն, այլ չդառնալ իսկ յառաջինն գերութիւնն։ Նա զի մի դարձեալ պար-տասիցիս ինչ յորժամ համապազ փառս լսիցես, և ոչ ինչ յայտնապէս երևի, քանզի փոքր մի մասամբ ակն-արկէ քեզ զհանդերձեալսն փոփոխմամբ մարմնոյդ քո և ամենայն արարածոյս փոփոխմամբ, զոր և յայլուր յայտնապէս ցուցեալ ասէր՝ թէ "Որ նորոգեսցէ զմար-մին խոնարհութեան մերոյ կերպարանակից լինել մարմ-նոյ փառաց նորա,,. և այլուր դարձեալ ասէր. "Յոր-ժամ ապականացուս այս զգեցցի զանապականութիւն, յայնժամ եղիցի բանն որ գրեալ է՝ թէ ընկլաւ մահու յաղթութիւն,,։ Յուցանէ թէ յետ ապականութեան մարմնոյս և ամենայն վարք իրացն եղծանին, որ է և այ-լուր եդեալ՝ թէ "Անցանելոց է վայելչութիւն աշխար-հիս այսորիկ,,։

"Քանզի յուսով ապրեցաք,, ասէ։ Նա զի 'ի հանդեր-

1 [illegible]

րել, տալով զինչ պէտք են յուսոյ։ Այլ արդ զինչ է յոյսն. վստահ լինել 'ի հանդերձեալսն։ Այլ արդ զինչ մեծ խնդրէ 'ի քէն ած, վասն զի ինքն բոլորովին շնորհէ զամենայն բարութիւնս։ Այլ միայն խնդրէ 'ի քէն՝ զյուսալն, որպէս զի և ընծայ լինիցիս և զու վասն քոյին փրկութեան, զոր և ակնարկելով իմն 'ի սոյն յարէ. “Զի թէ զոր ոչն տեսանեմք յուսամք, ասէ, համբերութեամբ ակն ունիմք„։ Զոր օրինակ զաշխատաւորն և զտառապեալն և որ զտիւ զվաստակս վաստակեալ իցէ՝ վարձուց ակն ունի և հանգստեան, այսպէս և որ յուսայն՝ պատրաստէ ած։ Վասն զի համբերութեանդ անուն քրտանց առնուն է և բազում ժուժկալութեան. բայց շնորհեաց և զայս յուսացելոյն, որպէս զի մխիթարեսցէ զաշխատեալ հոգին։

Ապա ցուցանէ թէ և 'ի թեթև իրս յայտնի 'ի բազում օգնականութիւնս վայելեցաք՝ ասէ. “Այնպէս և հոգին օգնէ տկարութեանս մերում„։ Քանզի սկիզբն 'ի քէն լինի համբերութեանն, իսկ ապա 'ի կատարումն և յարգ ածել հոգւոյն բաշխման է։ Տեսե՞ր զի յորուցանէ զքեզ յուսովն, և նովաւ դարձեալ զաշխատութիւնն թեթևացուցանէ։ Ապա զի և ուսցիս թէ ոչ միայն յաշխատութիւնն և 'ի ջանսն մերձ էին 'ի քեզ շնորհքն, այլ որ թուինն դիւրագոյնք և թեթևագոյնք՝ և յայս ևս գործակից է քեզ և ամենայն ուրեք պատերազմակից քեզ գտանի, վասն այսորիկ ասէր՝ թէ “Զոր յաղօթսն կամք, որպէս պարտ է չգիտեմք„։ Զայս ասէր որպէս զի ցուցցէ զհոգւոյն սրբոյ զբազում նախախնամութիւնն վասն մեր. խրատէ զնոսա միանգամայն մի կարծել զայն միայն օգուտ որ ինչ 'ի մարդկայինն միտսն անկանիցի։ Քանզի կարեւոր և հարկ էր նոցա որք տանջեալքն և հալածեալքն էին և բիւր դժնդակ չարչարանս կրէին՝ հանգիստ խնդրել, և զայն ևս զպարգև առնուլ յԱյ և համարէին թէ բարի ինչ է՝ ասէ, մի զամենայն ինչ որ մեզ հաճոյն կարծիցեմք՝ թէ օգուտ այն իցէ. թէպէտ և մեք վարկանիցիմք, սակայն և յայսմ կարօտ եմք հոգւոյն օգնականութեան. այսպէս իսկ տկար է մարդ, և առանձին ինքեան կարէ և ոչ ինչ։ Վասն որոյ զնովիմբ իսկ ածեալ ասէր՝ թէ “Զոր կամքն յաղօթս, ոչ գիտեմք

Այս արդ որովհետեւ գիտացէք և ուսայք զգեղեցիկ զայն զազատութիւն, 'ի բաց խզեցէք զկապանսն, և հեռի ոստիր 'ի ծուղակացն. և մի բնակեսցէ ոսկի 'ի տունս ձեր, այլ որ ևս մեծագոյնն է՝ ողորմածութիւն և մարդասիրութիւն փոխանակ ոսկւոյն եղիցին. քանզի այսոքիկ են որ տան մեզ համարձակութիւն առ Տծ. իսկ ոսկին անօթոյ աշակերտս գործէ զմեզ, և յոյժ տայ չնչել ընդդէմ՝ սատանայի: Այս արդ ընդէր զինես զթշնամին հակառակ քեզ, և զօրագոյն քան զքեզ առնես զնա: Զինեա զաջն քո հակառակ նմա, և զամենայն զտան քո զգեղեցկութիւն ամփոփեա յոգիդ քո, և զամենայն զմեծութիւնն ժողովեա 'ի միտս քո, և փոխանակ ոսկի զմէէիցն[1] եղիցին քեզ երկինք և անդ պահեսցի, և մեք ամենեքին աստ անդր արկանիցեմք զմերն: Քանզի յոյժ լաւագոյն քան զորմն մերքն են և քան զկատակմն պարկեշտագոյնք: Այս արդ ընդէր զմերս թողեալ յայլն ամենայն թափես զփոյթսդ, ուստի որոց առնեմն, առնուլ ինչ չիք քեզ 'ի նոցանէ: Բազում անգամ թերևս մինչև աստէնդ իսկ ես՝ չկարիցես զգուշանալ. վաճառաշահութիւն մեծ այն է՝ որ ոչ միայն աստ, այլ և 'ի հանդերձելումն ցուցանէ զվաճառաշահութիւնն. քանզի և զգիւղս և զտունս և զոսկիդ ընդ օդւոյդ տար անդր, ուր վախճան չիք մեծութեանն: Այս զիա՞րդ, ասէ, մարթիցի լինել այնմ: Գոյ և գոյ իսկ հնար, այլ և յոյժ դիւրութեամբ իսկ. եթէ յերկինս փոխիցես զմեծութիւնն 'ի ձեռն աղքատացն, զամենայն իսկ 'ի քո ոգիսդ զանձեցեր այնուհետև. Թէպէտ և մահ հասանիցէ, չկարիցէ զայն 'ի քէն 'ի բաց բառնալ, այլ երթայ ընդ քեզ անդր մեծութիւնն: Զայսպիսի գանձս ունէր Տաբիթայ. վասն այսորիկ ոչ տունն և որմքն քարոզէին զնա և կամ քարինքն և սիւնքն, այլ այրեացն մարմինք զոր զգեցուցանէրն, և արտասուքն որ վասն նորայն հեղուին՝ զմահ փախուցին և զնա վերստին կենդանացուցին:

Այսպիսի շտեմարանս կազմեսցուք և մեք անձանց, սոյնպիսի շինուածս շինեսցուք զտունս մեր. որպէս զի Տծ մեր գործակից լիցի և մեք իսկ անձանց օգնական

1 Ցօրինակին գմէէյին:

լիցուք։ Վասնզի նա 'ի չգոյէ 'ի գոյ ած զքաղցեալսն, իսկ դու 'ի գոյսն եկեալս և քաղցեալս մի՛ թողուլ սովամահ լինել, և յայլոցն ևս տառապանաց ազատեա՛ ազզելով ամենայն ուստեք զտառապանս մեր. և տալ այսպէս լիցի զդէպ յօգուտ և 'ի փառաւորութիւն բանին։ Իսկ ապա եթէ ոչ հաւատաս համբեր 'ի վերայ թէ որպիսի զօրութ զարդարեաց զքեզ յորժամ հրամայեաց կերակրել զքաղցեալսն, զայն տալ ած զմնաւ տառանձինն։ Ոչ յանկարծ երկինք 'ի վայր կործանեալ էին յերկիր, և քեզ տալ իշխանութիւն հաստատել զնա և ուղղել, ո՞չ ապաքէն ևս առաւել զերազանցեալ քան զամենայն միտս վարկանէիր զպատիւն զայն։ Իսկ արդ աւասիկ ևս մեծագոյն պատուի արժանի արար զքեզ. զի չէին երկինք պատուականագոյն քան զայն որ քեզն հրամայեաց կազմել. վասն զի քան զմարդ յերեւելեաց չէք ինչ պատուականագոյն ըստ և ոչ զդէպ նմին. քանզի և զերկինս և զերկիր և զծով վասն նորա արար և 'ի նմա ուրախ է բնակել քան յամենայն արարածս։ Այլ սակայն և մեք զայն ամենայն գիտելով և ոչ մի ինչ խնամ չտանիմք տնանկացն մեր, այլ զնոսա թողեալ 'ի խնամոց՝ անձանց մեծամեծ տունս և ապարանս շինեմք։ Աստ այսուրիկ և թափուր իսկ եմք յամենայն բարութեանց և յոյժ քան զաղքատս անանկագոյնք. վասն զի զայսպիսի զտունս գեղեցկացուցանեմք զոր չեմք կարող տանել ընդ մեզ յորժամ գնայցեմք աստի։

Դու արդ զայս 'ի բաց թողեալ զայն տաճարս շինեսցուք և նորոգեսցուք որ ընդ մեզ անցք գալոց են. քանզի և յորժամ լուծանին մարմինք աղքատաց, դարձեալ յառնեն անապական։ Զայս որ զայսն հրամայեաց մեծ 'ի մէջ ածիցէ զնոսա և որք զխնամսն տարան նոցա՝ գովէ և երանցանայ թէ զիարդ որ մերձ 'ի լուծանել էին մարմինքն՝ յանկարծ կազդուրեցուցեր և կարողացուցեր և նորափետուր զարդարեցեր, երբեմն 'ի սովս, երբեմն 'ի մերկութենէ և յայլոց դժուարութեանց ամենայն օրինակաւ ուղղեցեր։

Դու արդ որովհետև այսչափ օգտութիւնք առաջի կան մեր, պարտիմք և մեք ընթանալ յայսպիսի խնամածութիւնս աղքատաց։ Դու արդ զինչ վայելուչ է այս առայն, յորժամ Քրիստոս ոչ ունիցի տեղի իջեւանի, այլ

նաւանդ թէ ոչ զայս միայն, այլ և փոքր մի յառաջա-
գոյն քան զայսն էր ասացեալ։ Վասնզի և զայն՝ թէ "չեն
արժանի չարչարանք ժամանակեանս առ հանդերձեալ
փառսն որ յայտնելոց են 'ի մեզ", և զամենայն զարտա-
քանոց ասաց թէ հեծեն, և յաւելու թէ "յուսով ապ-
րեցաք", և թէ "համբերութեամբ ակնունիմք", և ե-
թէ "զոր կամքն յաղօթս, որպէս պարտն է ոչ գիտեմք",
և արդ զայս ամենայն առ նոսա ասացեալ խրատէ զնո-
սա մի վարկանել թէ զրկեալ ինչ իցեն յուրեանց օգ-
տէ անտի. զայս կամի 'ի բաց պարտուրել, և զայն ուսան-
դէ նոցա զոր հօգւոյն կամք են։ Վասնզի և բազում
ինչ լաւ թուէր նոցա հեշտութիւնն, ուստի և բազում
մտաց գործեցան իսկ, հանգիստն և հրաժարեսն 'ի վը-
տանգիցն և դիւրութեամբն կեալ, որ թուէր թէ սա
իցէ բարի և օգուտ նոցա.

Այլ զինչ զարմանք են թէ նոքա, ուստի և երանե-
լոյն Պաւղոսի իսկ այն ինքն այս հաճոյ թուէր. բայց
սակայն ուսաւ յետոյ թէ որ ինչ օգտին հակառակքն են,
այն է բարի և հաճոյ, և ուսեալ գոհանայր. յորժամ
երիցս զայեր աղաչէր զի 'ի բաց արասցէ 'ի նմանէ զնե-
ղութիւնն, և յորժամ լուաւ 'ի նմանէ թէ "շատ են
քեզ շնորհք իմ, քանզի զօրութիւն իմ 'ի տկարութե
կատարի", խայտայր այնուհետև հալածանօքն և թըշ-
նամանօքն և անկշռելի չարչարանօքն. վասն որոյ "հա-
ճեալ եմ, ասէ, ընդ թշնամանս, ընդ հալածանս, ընդ
վիշտս". զոր և ասէրն իսկ թէ "զոր կամքն յաղօթս,
որպէս պարտ է չգիտեմք". և զամենեսեան խրատէ հո-
գւոյն սրբոյ յանձն առնել զայն. ցուցանէ թէ ա̃յ այն
հաճոյ թուի, և եթէ յոյժ խնամ տանի մեզ հոգին
սուրբ։

Այլ իբրև օծ յամենայն կողմանց զնոսա, ապա յարէ
'ի նոյնս և զօրաւոր զասացուածն առ 'ի բաւական լինելոյ
գիտել նոցա զխորհուրդն. "Վասնզի գիտեմք, ասէ, թէ
որք սիրեն զա̃ծ, յամենայնի գործակից լինի 'ի բարիս"։
Իսկ յորժամ զա̃մ ասէ, և որք թուին թէ տրտմականքն
իցեն՝ և զայնցանէ ակնարկէ։ Զի եթէ նեղութիւնք ինչ
իցեն կամ աղքատութիւնք կամ բանդք կամ սովք կամ
մահք և կամ այլ ինչ յայսպիսեացս իցէ, կարող է ա̃ծ
փոխանակ վշտացն դիւրութիւն գործել. և որ թուին

թէ մեծ ջանք իցէ, թեթեւագոյն մեզ յօրինէ զայն և 'ի մեր յօգնութիւն դարձուցանէ ։ Վասն որոյ և չասաց թէ որք սիրեն զա̃ծ, չկրեն ինչ դժնեայ կիրս, այլ թէ գործակից լինի 'ի բարիս ․ այսինքն է զնոյնս ինքն զդժնեայ զիրսն արկանէ 'ի կիրս առ 'ի ցուցանել զնոսա ընտիր իւրեանց նենգչացն ․ որ մանաւանդ եւս մեծագոյնն է՝ քան զարգելուլն զգալն նեղութեանց 'ի վերայ՝ զեկեալսն երագ լուծանել 'ի բաց՝ այն զօրաւոր է ։ Սոյնպէս և 'ի հնոցին Բաբելոնի գործեաց ․ ոչ արգել զնոսա յարկանելոյ անդր, և ոչ դադարեալ յորժամ անկան սուրբքն այնոքիկ՝ շիջոյց զբոցն, այլ թոյլ ետ վառելոյ, որպէս զի նոքիմբք իսկ իրօքն սքանչելագործիցէ ։ Զոր օրինակ և առաքելովքն նշանագործէր ․ այլ այս յամենայն ժամ ։ Զի թէ մարդիկ որ զփիլիսոփայութիւն ուսեալ են՝ կարեն որ ինչ բաւ բնութեանն իրք են 'ի հակառակս անդր 'ի կիր արկանել, և որք յաղքատութեանն կեան եւս շահաւէտք երևին քան զմեծատունսն և անարգութ̃ն պայծառանսան, ապա մանաւանդ եւս առաւել ա̃ծ որք սիրեն զնա՝ և քան զայսոսիկ եւս առաւել մեծագոյնս գործէ ։

Սիրոյ իրիք միայն պէտք են, այսինքն թէ սրտիւ ոք զնա սիրիցէ, և այլն ամենայն դիւրաւ գայ զհետ ։ Զոր օրինակ այսպիսեացս և որք կարծեն թէ վնասակարք ինչ իցեն՝ օգուտ գործեն, սոյնպէս և որք ոչն սիրիցեն զնա և որք թուին եթէ օգուտ ինչ իցէ՝ բազում վնաս գործէ ։ Եւ այս 'ի Հրէից իսկ անտի յայտ է, որոց և նշանքն ցուցան 'ի վարդապետութենէն՝ փիլիսոփայութիւն և առաւելութեանցն ուղղութիւնք ․ և քանզի նոքեանք ժանդք և անպիտանք էին, վասն վարդապետութեանն դիւահար կոչէին զնա, իսկ վասն սքանչելեացն՝ հակառակ ա̃յ, և վասն նորին իսկ նշանացն բազում անգամ և սպանումն իսկ մտաբերեցին ։ Իսկ աւազակն զնա ընդ խաչն բեւեռեալ տեսանէր և հայհոյեալ և բիւր չարչարանս կրեալ, և ոչ միայն չվնասեցաւ ինչ, այլ և զեւս մեծագոյնս շահեցաւ ։ Տեսե՞ր որպէս որք սիրեն զա̃ծ՝ գործակից լինի 'ի բարիս ։

Եւ իբրև ասաց զմեծ բարութեանն և որ յայժմ գերազանցէ քան զմարդկայինն բնութիւնս, ապա զի մի անհաւատ այսպիսի ինչ իրք թուեսցին նոցա, 'ի յանցե-

լոց անօրէն առնէ հաւատացեալ զատուցեալսն : "Իսկ յա-
ռաջադրութեան կոչեցելոցն": Տեսանե՞ս անդէն իսկ
ասէ 'ի կոչմանէն անօրէն զատուցեալսն : Այլ էր վասն 'ի
սկզբանն իսկ չկոչելոց զամենեսեան և ոչ զնոյն իսկն ըղ-
Պաւղոս իսկոյն ընդ այլսն ամենեսեան. որ կարծի թաղ-
մանց եթէ զնա ինչ եղև յառաջադասն, բայց ասկոյն 'ի
ձեռն իրացն ցուցաւ թէ ընտիր եղև : Յառաջադրութի
ասա վասն այնորիկ առնէ, որպէս զի մի զամենայն ինչ
որ կոչեցան՝ նմա վարկանիցիս, և զի մի դարձեալ ընդ-
դէմ բերիցեն մեզ հեթանոսք և հրէայք և ասիցեն՝
զի եթէ կոչումն միայն բաւական էր՝ էր վասն ամենե-
քին ոչ ապրեցան, վասն այսորիկ առնէ թէ ոչ կոչումն
միայն, այլ և յառաջադրութիւն կոչեցելոցն զփրկու-
թիւն գործեցին. վասն զի ոչ եթէ ակամայ ինչ եղև
կոչումն կամ 'ի հարկէ և 'ի բռնաւորութենէ : Այս
զամենեսեան իսկ առ հասարակ կոչեաց, այլ ոչ հնազանդե-
ցեցան ամենեքին :

"Զի զոր յառաջագոյն սահմանեաց կերպարանա-
կիցս լինել պատկերի որդւոյն իւրոյ": Տեսանե՞ս զպատուոյն
զմեծութիւն. քանզի որ ինչ միածինն բնութեամբ էր,
զնոյն և մեք եղաք շնորհօք : Նոյնց ասկայն ոչ շատա-
ցաւ այսու միայն անուանել՝ թէ կերպարանակիցք, այլ և
այլ ևս յաւել՝ թէ "Լինել նմա անդրանիկ". և ոչ
եթէ ևս : Այլ ոչ եթէ յայամ կայ միայն, այլ և յետ
այսորիկ դարձեալ և այլ ինչ ածէ զնախիմն անուանէ՝ թէ
"Ի մէջ եղբարց բազմաց": Այլ արդ զայս ամենայն
վասն անաւետութեան նորա խնայեր ասացեալ, քանզի
ըստ մեծութեանն միածին էր. միայն ած զնմա թէ
որչափ ինչ շնորհեաց մեզ : Այլ արդ մի ինչ յերկբայս
լինիցիր վասն հանդերձելոցն. քանզի և այլ ուստեք ցու-
ցանէ զխնամսն նորա առ մեզ և ասէ՝ թէ անդուստ 'ի
վերուստ յօրինեալ կարգեալ էր զիրսն : Վասն զի մար-
դիկ յիւրաց անտի եղելոց ստանան զպարսն, իսկ այդ 'ի
վաղուց իսկ առաջ հանձայ էր, և 'ի վերուստ 'ի սկզբանէ
իսկ զայս մեզ կազմեալ էր. ասէ. "Այլ զորս կոչեաց,
զնոսին և արդարացոյց" 'ի ձեռն աւազանին վերստին
ծննդեանն. "և զորս արդարացոյց, զնոսին և փառա-
ւորեաց". այսինքն եւ շնորհօքն և 'ի ձեռն որդեգրութեան :

"Այլ արդ զի՞նչ ասիցեմք առ այս": Որպէս զի ասիցէ՝

թէ մի առնէր ինձ այժմ փառս վշտացն ինչ այնուհետև և յամենեցունց նեղութեանցն ։ Զի թէպէտ և հանդերձելոցն ունիմք անհաւասար լինելն, այլ աստէն իսկ ՚ի մեռոյս տուեալ բարութիւնքն, չունիցին ինչ տալ պատասխանի ․ զորպիսի ինչ ՚ի վերուստ յոյս առ քեզ ըղձերն, զարդարեցուցանէն, զփառաւոր առնէն ։ Քանզի այսորիկ յայտնեցանէ որ տրտմականքս քեզ թուէին, անուրի քեզ պարգևեցան ․ և զոր ամօթոյ և նախատանացն վարկանէիր՝ զխաչն, զչարչարանսն, զկապանսն, մանաւանդ եթէ այսորիկ են որ զախեզերս ուղղեցին որով և ինքն իսկ չարչարեցաւ ․ և որք տրտմականքն թըւէին՝ այնորիկ վարժեաց յաղթութիւն զամենայն մարդկային բնութիւնս ։ Այնպէս և որք սողին համբերեն, սովին և փառս և պսակս գտանեն յորժամ նովին չարչարանօք վարիցին ։

« Զի թէ ած ՚ի մեր կոյս է, ով իցէ մեր հակառակ » ։ Այսինքն է թէ ով ոք չիցէ մեր հակառակ ։ Ամենեքին ․ քանզի և տիեզերք մեր հակառակք են, և բռնաւորք և ռամիկք և ազգականք և քաղաքացիք ։ Բայց սակայն սոքա որ հակառակք մեզ են, այնքան ինչ ՚ի բացեայ են ՚ի նենգելոյ զմեզ՝ մինչև ակամայ իսկ պատճառք պսակացն մեզ լինելն և ընձեռիչք բիւր բարութեանց ․ վասն զի ած իմաստութիւնն զնենգիչսն ՚ի մեր փրկութիւն և ՚ի փառս դարձուցանէ ։ Տեսանե՞ս զի ոչ ոք գտանի մեզ հակառակ ։ Քանզի և զառաքինին զՅոբ սոյն գործեաց պայծառ՝ վասն սատանայի ընդդէմ նորա ․ վասն զի և զբարեկամս հակառակ նմա կազմեաց, և զկինն և զընտանիսն և զվէրսն և բիւր ևս այլ մեքենայս կազմեաց սատանայ և շարժեաց ընդդէմ նորա, բայց սակայն ոչ ինչ կարաց հակառակ նմա առնել ։ Եւ այս չև էր ինչ մեծ ․ թէպէտ և յոյժ մեծ էր, այլ և որ մեծագոյն էր՝ զի և յինքենէ և յիւրոցն առ հասարակ անկաւ ․ և քանզի ած էր ՚ի նորա կողմն, վասն այնորիկ և որ թուէր թէ հակառակ նմա իցէ՝ ՚ի նորա կողմն գտանէր լինել ։ Այսպէս ինչ և առաքելովքն դիպէր ․ քանզի անդ և Հրեայքն և որք ՚ի հեթանոսացն էին և սուտ եղբարքն և իշխանք և ռամիկք, և սով և աղքատութիւն և այլ ինչ բիւր էր ընդդէմ նոցա, և ոչ ինչ թուէր հակառակ նոցա ․ մանաւանդ եթէ նոքիմբք իսկ եղեն այնո-

խնդն մերձեցուսցէ. զի յորժամ յիւր որդին ոչ խնայեաց, այլ վասն մեր մատնեաց զնա, տես որչափ ինչ եւս բարերարութիւնքն։ Յորժամ յիւր որդին ոչ խնայեաց, այլ եւ ետ եւ մատնեաց զնա յայնժամ, ապա զիա՞րդ արդեօք ոչ զոյգ ընդ նմին զամենայն ինչ շնորհեսցէ մեզ։ Իսկ զոր ասէն այսպիսի ինչ է. զի եթէ զորդին իւր շնորհեաց մեզ, և ոչ լոկ շնորհեաց, այլ և 'ի սպանումն մատնեաց, էր ապա վասն այլոցն երկբայանաս. ընդէ՞ր յերկմիտս լինիս յստացուածոցն յորժամ ընդ քեզ ունիս. քանզի որ զմեծն ետ թշնամեացն, ո՞րպէս արդեօք զնուազագոյնսն չտայցէ սիրելեացս։

“Իսկ արդ ո՞վ իցէ որ ընդդէմ մեղադիր լինիցի ընտրելոց Աստուծոյ„։ Աստ առ այնոսիկ ասէ՝ որ ասէինն թէ չեն ինչ օգուտ հաւատքն, և անհաւատ լինէին յանկարծօրէն փոփոխմանն, այսինքն 'ի մեղաց յարդարութիւն։ Եւ դու տես զիարդ երագագոյն ըմբերանէ զնոսա 'ի պատուոյ կոչելեացն։ Եւ չասաց թէ ո՞վ է որ ընդդէմ մեղադիր լիցի ծառայից Աստուծոյ և կամ թէ հաւատացելոց Աստուծոյ, այլ թէ ընտրելոց Աստուծոյ. քանզի ընտրութիւն առաքինութեան նշանակ է։ Զի թէ աստ զբազումս յորժամ ընտրէն և միախուռն ընթանան և 'ի պէտս ինչ ոչ գտանիցեն, և ոչ 'ի խնդիր ոք և 'ի փոյթ արկանէ, այնուհետև այպն լինի թէ մեղադիր ևս ոք նմին լինիցի, ապա ևս առաւել յորժամ Աստուած ընտրեսցէ զոգիս և ոչ պիտանիք լինիցին՝ գտանիցին ծաղու և մեղադրութեան արժանի։

“Զի եթէ Աստուած է որ արդարացուցանէ, ո՞ ոք դատապարտ առնիցէ„։ Եւ չասաց եթէ Աստուած է որ թողու ըզմեղս, այլ որ ևս մեծն էր՝ Աստուած է որ արդարացուցանէ։ Իսկ յորժամ դատաւորն այսպիսի ինչ իցէ, ի՞մ իմիք արժանի որ չարախօսն իցէ՝ գտանիցի։ Ապա եթէ այդպէս է, և ոչ 'ի փորձութեանցն պարտ է զանգիտել, վասն զի 'ի մեր կողմն է Աստուած, և յայտ յորոց գործեացն՝ արար, և ոչ եթէ 'ի շատխօսութենէ հրէիցն։ Վասն զի և ընտրեաց զմեզ և արդարացոյց, և այն են զարմանք զի մահուամբ որդւոյն իւրոյ արդարացոյց։ Ո՞վ իցէ որ դատապարտ առնիցէ՝ Աստուծոյ զմեզ պսակելով, Քրիստոսի վասն մեր սպանեալ, և ոչ եթէ սպանեալ՝ այլ և յետ այնորիկ բարեխօսէ վասն մեր։

"Քանզի Քրիստոս է, ասէ, որ մեռաւն, մանաւանդ եթէ յարուցեալ իսկ է և է ընդ աջմէ Այ, որ և բարեխօս իսկ է վասն մեր": Որ թէպէտ և ընտանի իւրով պատուովն է, այլ ոչ ինչ անփոյթ արար զմերոց նախախնամութենէն, այլ և բարեխօսէ ևս վասն մեր: Վասն զի ոչ բաւական համարեցաւ զպատմութիւնն իւր միայն, այլ միշտ կայ և պահէ զսէրն իւր առ մեզ, որ մանաւանդ մեծի իսկ խնամոց նշանակ է. որ ոչ միայն իւրով հնազանդութեամբն զայն գործեաց, այլ և զայլսըն ևս վասն նորին իրաց աղաչէ: Քանզի զայս ինչ կամեցաւ յայտ առնել ասելովն՝ թէ բարեխօսէ վասն մեր. մարդկօրէնս իմն ճառեալ զիջանելոյ վասն ասէ, որպէս զի զսէրն մարթիցէ ցուցանել: Ապա եթէ զչխնայելն այսպիսի ինչ չիմանամք, բազում իրք անպատեհք յառնեն 'ի մեզ: Այլ զի ուսցիս թէ այսպիսի ինչ է զոր յարդարելն կամի, յառաջ ասաց թէ է ընդ աջմէ Այ, և յայնժամ ապա յարեաց 'ի նոյնս՝ թէ և բարեխօս իսկ է վասն մեր: Այլ այսու եցոյց զզուգապատուութիւնն և զհաւասարութիւնն. զի յորժամ լսիցես եթէ բարեխօսէ, մի նուաղութեան ինչ՝ այլ սիրոյ միայն երևեցի ամենայն: Զի որ ինքն կեանք է և աղբիւր ամենայն բարութեանց, և համանգերձ իշխանութեամբ իւր և հօր իւրոյ, և զմեռեալս կենդանացուցանէր և զայլն ամենայն գործէր, որպէս արդեօք պաղատանաց կարօտէր առ 'ի յօգնել զմեզ զյուսահատեալս և զդատապարտեալս. ընտանի իւրով իշխանութեամբն յայնպիսի դատապարտութենէ զերծոյց զմեզ, և արդարս և որդիս արար զմեզ և 'ի վերին պատիւս եհան զմեզ, և որում երբէք ակն ոչ ունէաք՝ զայն գործով իսկ եցոյց, որպէս արդեօք յետ այսչափ ուղղութեանց և զմեր զանութիւն ցուցանելոյ 'ի վերայ թագաւորական աթոռոյն, զիա՞րդ առ դիւրագոյնս բարեխօսութեան կարօտասցին: Տեսանե՞ս զիարդ ամենայն ուստեք ցուցանէ թէ զբարեխօսելն ոչ վասն այլ իրիք ասէ, այլ զի զջերմ և զհանապազորդ զանձկումն սիրոյն որ վասն մեր եցոյց: Ուստի և հօր երևի աղաչելն զմարդիկ զի հաշտեսցին ընդ նմա. "Վասն Քրիստոսի բարեխօսեմք, ասէ, որպէս թէ Այ իսկ աղաչելով": Այլ մարդկան բարեխօսելով վասն Քրիստոսի և առ մարդիկ, ոչ ինչ անարգանս վարկանիմք այնմ

զհրամն իսկ 'ի մէջ բերէ առաքեալն՝ թէ "Համարեցաք որ-պէս զոչխար 'ի սպանումն,,։ զհանապազորդ զառաքե-լոցն զմահս ակնարկէր։ Տեսանե՞ս զզօրութիւնն և զհե-զութիւնն։ Զի որ օրինակ, ասէ, նոքա ոչ ընդդիմանային յորժամ սպանանէին զնոսա, նոյնպէս և ոչ մեք։

Այլ քանզի մարդկային մնաց էր տկարութիւն զար-հուրել 'ի փորձութեանցն, տես որպէս դարձեալ յա-րուցանէ զկամսն և բարձրաթռիչ տայ շողալ առաքելոյն. "Այլ յայսմ ամենայնի, ասէ, առաւել յաղթեմք նո-վաւ որ սիրեացն զմեզ,,։ Քանզի սքանչելիքն այն իսկ են ոչ զի յաղթեմքն միայն, այլ զի նենգչօքն ևս յաղ-թեմք. և ոչ միայն յաղթեմք, այլ և յոյժ դիւրաւ և առանց քրտանց և աշխատութեանց։ Զի ոչ եթէ ի-րացն համբերել միայն, այլ և զպարան բարկոյ յօրինել ասէ, որով նշան յաղթութեան ամենայն ուրեք ընդ-դէմ թշնամեացն կանգնեմք. մանաւանդ եթէ յիրաւի իսկ, քանզի ած է որ զոյգ ընդ մեզ պատերազմի։ Այլ արդ մի անհաւատ լինիցիս եթէ չարչարեալքս չարչա-րողացն յաղթեմք և կամ հալածեալքս զհալածիչսն ըմբռնեմք և որք մեռանիմքս զկենդանիսն պարտեմք. զի յորժամ զզօրութիւնն այ և զսէրն ընդ նմին դնի-ցես 'ի միջի, չէ այնուհետև ինչ որ խափան կարիցէ լի-նել առ 'ի զարմանալի և հրաշափառագոյն և առաւել պայծառ զյաղթութիւնն առնել։ Այլ ոչ լոկ յաղթել, այլ և յոյժ բազում սքանչելեօք. և որպէս ուսանէին իմն նենգչացն թէ չէ առ մարդիկ նոցա պատերազմն, այլ առ անմարտնչելի զօրութիւնն այն։

Այլ դու տես զՀրեայսն իսկ, անդէն 'ի միջի իւրեանց ցուցանէին և 'ի վարանս մտեալ ասէին՝ զինչ արասցուք զարսն զայսոսիկ. քանզի սքանչելիքն իսկ այն էին զի մինչ-դեռ 'ի բանտ իսկ ունէին որպէս զպատժապարտսն և ծեծեալս՝ 'ի վարանս անհնարինս մտեալ էին, նախկին իսկ այնոսիկ պարտեցան որով ակն ունէին յաղթել։ Այլ ոչ բռ-նաւորք և ոչ ռամիկք և ոչ դիւացն փաղանգք, և ոչ նոյն ինքն սատանայ կարաց նոցա գեր 'ի վերոյ լինել, այլ 'ի բազում և 'ի մեծամեծ իրացն նոցա պարտեալ գտանէր. և զոր ինչ հնարս հնարէր հակառակ նոցա, գտանէր զայն ած 'ի նոցա կողմ լեալ, զոր և Պաւղոսի տեսեալ ասէր՝ թէ "Այսու ամենայնիւ առաւել ևս յաղթեմք,,։

՝Նոր ինչ և չքնաղ էր օրինակ յաղթութեանն այնորիկ. Հակառակորդքն իւր զօրանային և ոչ երբէք պարտեալ գտանէին, այլ այնպէս որպէս զի մերձեալքն իւրեանց տեսաքը պատերազմին՝ այնպէս հանապազորդութեամբ 'ի նոյնս վազէին :

"Յուսացեալ եմ, ասէ, թէ ոչ մահ և ոչ կեանք, ոչ հրեշտակք, ոչ իշխանութիւնք և ոչ զօրութիւնք, ոչ որ կանն, ոչ հանդերձեալքն, ոչ բարձրութիւնք, ոչ խորութիւնք և ոչ այլ ինչ արարած կարէ մեկնել զմեզ 'ի սիրոյն Այ որ 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր" : Մ՝եծ է ասացուածն. այլ մեք չեմք արժանի, վասն զի այսպիսի սէր չունիմք 'ի մեզ : Բայց սակայն թէ և մեծ է, կամեցաւ ցուցանել թէ չէ ինչ առ սիրոյն այնորիկ զոր Ած զնոյն սիրեաց. վասն այնորիկ և յետ նորա զիւրն զնէ, զի մի ոք կարծիցէ թէ մեծագոյն ինչ ասաց զինքենէ : Եւ զոր ասէն այսպիսի ինչ է. զինչ պէտք են, ասէ, զառժամանակեայսն ճառել և կամ զվարուցս զայսոցիկ զժառանգութեանն. Թէպէտ և զհանդերձեալսն ոք ասիցէ և զմահ և զզօրութեանն իւր, որպէս զմահ և զկեանս, զզօրութիւնս, որպէս զհրեշտակս և զհրեշտակապետս և զամենայն իսկ զվերին զարարածս, այս ամենայն իսկ, ասէ, փոքր թուի ինձ առ Քրիստոսի սիրոյն : Քանզի ոչ՝ եթէ և մահ ոք սպառնայր 'ի հանդերձեալ անմահութեանն, սակայն և այնպէս ոչ ոք կարէ մեկնել զմեզ 'ի սիրոյն Քրիստոսի. և կամ եթէ կեանս ոք խոստանայր անվախճանս, և ոչ զայն իսկ առնուի յանձն : Եւ արդ զինչ պարտ է ասել զթագաւորսն որ 'ի վայր առս իւրեն և կամ զհիւպատոսն և կամ զայս անուն և կամ զայն անուն. Թէպէտ և զհրեշտակաց իսկ ասիցես ինձ, և զամենայն իսկ զանմարմնական զօրութեանցն և կամ զամենայնէ որ կանն և կամ զամենայն իսկ զհանդերձելոցն, ամենայն ինչ փոքր և երկրաւոր թուի, և երկնայինք և որ յերկիրս և որ ընդ երկրաւ և որ 'ի վերոյ երկնից՝ առ նորա սիրոյն ոչ ինչ վարկանի :

Եւ ապա զի չունէր բաւական այնպիսի ինչ որով զիւր զփառաւորագունիւն յանդիմանեալ կացուցանէր, այլ ուսանէք ընդսոսա յանդիմանեալ կացուցանէր ասելովն՝ թէ "Եւ ոչ այլ ինչ արարած" : Եւ զոր ասէն այսպիսի ինչ է. թէ-

պէտս և այսքան այլ ևս արարածք են որչափ տեսանե-
լիքս և կամ որք իմանալիքն են, ոչ կարէին զիս անջա-
տել 'ի սիրոյն Քրիստոսի ։ Ոչ այս ասէր ոչ եթէ հրեշ-
տակք ինչ յայն ձեռնարկէին, քաւ լիցի, և կամ այլ
վերին զօրութիւնքն կամէին զնա օրոշել 'ի սիրոյն Քրիս-
տոսի, քաւ լիցի, և ոչ երբէք. այլ կամեցեալ զիւր ա-
ռաւել սէրն ցուցանել զոր ունէր ընդ Քրիստոսի ։ Քան-
զի ոչ եթէ զՔրիստոս սիրէր վասն այնց որ ինչ քրիս-
տոսինքն էին, այլ զՔրիստոս իսկ վասն Քրիստոսի սի-
րէր և առ նա հայէր միշտ. և կասկածէր թէ գուցէ եր-
բէք անկանիցի 'ի սիրոյ նորա. որ և քան զգեհեննն ևս
ահեղի թուէր նմա, և կալ մնալ 'ի նոյն 'ի սէր փափա-
գելի՝ քան զարքայութիւնն երևէր ։

ՅՈՐԴՈՐԱԿ

Եւ արդ որո՛ւմ նեղելոյ և թողութեան արժանի զառա-
նիցիմք մեք, յորժամ նա և ոչ ընդ երկինս զարմանայ
առ Քրիստոսի փափագմամբն, իսկ մեք զտիղմ և զկա-
նախամեծար քան զՔրիստոս վարկանիցիմք. և նա
վասն նորին սիրոյ և 'ի գեհեննն յանձն առնոյր անկա-
նել և արտաքոյ արքայութեանն լինել, թէպէտ և ա-
ռաջի իսկ կային երկոքեան. իսկ մեք և ոչ զառժամա-
նակեանս կարեմք արհամարհել ։ Եւ արդ լիցիմք ար-
ժանի գոնեայ օղոյ ոտիցն որք այսչափ հեռացեալ եմք
'ի նորա մեծութենէն. քանզի նա և զարքայութիւնն
իսկ չհամարէր ինչ առ Քրիստոսիւ, իսկ մեք զնա իսկ
արհամարհեմք, և միայն լոկ բազում բանս ձայնեմք
վասն նորա ։ Եւ երանի թէ գոնէ և զայս. բայց այժմ
և ոչ զայս իսկ, այլ և զարքայութիւնն ևս առաջի մեր
եդեալ՝ և մեր զայն 'ի բաց թողեալ զստուերաց և զե-
րազոց զամենայն օր զհետ ընթանամք ։

Եւ այն զի ոմն մարդասէր է և հեզ, և այսպիսի իմն
արար որպէս զհայր ոք որդեսէր, և որդին զժկամակ լի-
նիցի ինչ ընդ հօրն խօսս զոր հանապազ առ նայն ասի-
ցէ, այլ տարապ իմն խնամատարեսցէ ։ Սոյնպէս և մեզ
քանզի չունիմք զփափագումնն նորա 'ի միում մեր կա-
մօք, բազում և այլ իրս արկանէ առաջի մեր, որպէս զի
զմեզ կարասցէ յինքն յանկուցանել ։ Բայց սակայն և

ոչ այսպէս անսասամք նմա, այլ 'ի բաց սրանամք և 'ի մանկկունոյ 'ի շաղփաղփութիւնս յարիմք։ Այլ և ոչ Պաւղոս այսպիսի ոք էր. այլ որպէս զբարեպաշտ մանուկ ոք և ազատ և հայրասէր՝ զհայրենիսն միայն խնդրէր, իսկ զայլմանէն զամենայնէ ոչ այնպէս կարի փոյթ առնէր։ Քանզի ոչ եթէ առ հասարակ զհայրն և որ ինչ նորայքն էին՝ պատուէր, այլ յորժամ զհայրն տեսանէր, զայլսն չհամարէր ինչ. այլ լաւ համարէր հալածել և չարչարել ընդ նմա, քան եթէ զատանել 'ի նմանէն և փափկանալ։

Այլ արդ զարհուրեսցուք այսուհետև որք և ոչ զինչ կարեմք արհամարհել վասն Քրիստոսի, այլ վասն անձանց իսկ պարտիմք արհամարհել։ Պաւղոս միայն էր որ սէրս և ճշմարիտ սէր ունէր ընդ Քրիստոսի և զամենայն զչարչարանս յանձին կրէր ոչ վասն արքայութեան ինչ և ոչ վասն անձին պատուոյ, այլ վասն առ նա բարեմտութեանն միայն։ Իսկ զմեզ ոչ Քրիստոս և ոչ քրիստոսինքն կարեն առ իւրեանս ձգել յերկրաւոր իրացս, այլ որպէս օձ կամ քարբ և կամ խոզ և եթէ այլ ինչ միանգամայն 'ի սոյնպիսեացս ընդ տիղմ և ընդ ցեխ քարշիմք։ Այլ արդ ևս ևեթ իցեմք մեք ընդհատ յայնպիսի սողնոց, որք այսպէս և այսչափ և այսպիսի օրինակս ունիմք, և տակաւին ընդ երկիր աշուցեալ հայիմք, և ոչ առ փոքր մի յանձն առնումք 'ի վեր յերկինս նայել։

Այլ տակայն ած և զորդին իւր եա, այլ դու անգամ և ոչ հաց կամիցիս տալ այնմիկ որ վասն քոյն մատնեցաւ, որ վասն քո սպանաւ։ Հայրն վասն քո իսկ 'ի նա ոչ խնայեաց, և այն զի սէրտ իսկ որդին էր. իսկ դու տեսանես 'ի սովոյ մաշեալ զնա և զանց առնես. և մանաւանդ զի 'ի նորայոցն իսկ տաս և ծախես, և յերկուանաս 'ի նա ծախել։ Այլ արդ զինչ։ ինչ քան զայնպիսի անօրէնութիւն չար կայցէ։ Մատնեցաւ վասն քո, սպանաւ վասն քո, շրջի քաղցեալ վասն քո. 'ի նորայոցն տաս՝ զի դու օգտեսցիս, սակայն և այնպէս չտաս։ Այլ արդ որպէս չիցեմք քան զամենայն քարինս և անզգայագոյնք, որ այսքան և այսպիսի իրօք ձգէ զմեզ առ ինքն, և մեք տակաւին 'ի սատանայական յանօրէնութեանն վերայ յամառեալ կամք։ Այլ նա չհամարեցաւ բաւական միայն

զխորչն և զանոհն, այլ և աղքատ ես լինել յանձն էառ և օտար և Թափառական և 'ի բանտ մտանել և ընդ հիւանդութեամբք անկանել, որպէս զի գոնէ այնպիսի իրօք կակղացուսցէ զքեզ։ Օ՜ ի եթէ վասն չարչարանացն նորա չգործիցես ինչ լաւութիւն, գոնէ վասն աղքատութեանն ողորմեսցիս. և եթէ չկամիցիս վասն աղքատութեանն ողորմել, գոնէ վասն ախտիցն գթասցիս, գոնէ վասն բանտին և կապանացն խոնարհեսցիս։ Իսկ ապա եթէ այսոքիկ ես չառնիցեն զքեզ մարդասիրագոյն, գոնէ 'ի ձեռն Թեթևագոյն խնդրոյն լեր պիտանի. քանզի ոչ ինչ խնդրէ 'ի քէն բազմագինս ինչ և մեծամեծս, այլ հաց միայն և յարկ և բանից մխիթարութիւն։ Իսկ ապա եթէ յետ այսորիկ մնաս նոյնպէս վայրենագոյն, գոնէ վասն արքայութեանն լիցիս լաւագոյն, և կամ վասն լաւագոյն խոստմանցն։ Իսկ ապա եթէ և զայս ինչ չհամարիցիս, գոնէ վասն նորին իսկ քոյին բնութեանդ խոնարհեսցիս և գթասցիս. յորժամ մերկ տեսանիցես, յիշեսջիր զմերկութիւնն զայն զոր մերկացաւն նա 'ի վերայ խաչին վասն քո. իսկ եթէ վասն այնորիկ չկամիցիս, գոնէ վասն այսորիկ որ յաղքատութենէս մերկացեալ է՝ ողորմեսցիս։ Կապեցաւ յայնժամ վասն քո տէրն, այլ և այժմ վասն քո, որպէս զի կամ այնու կամ այսու կակղեցուսցէ զկամս քո, Թերևս արասցես ումեք ողորմութիւն։

Պահեցի վասն քո յայնժամ, այժմ դարձեալ քաղցեալ վասն քո. ծարաւեցի յորժամ կախեցայ զխաչէն, ծարաւի եմ և այժմ դարձեալ 'ի ձեռն աղքատացն, որպէս զի այնու և կամ այսու կարացից զքեզ ինքն յիս ամփոփել և առնել զքեզ մարդասէր վասն քոյին փրկութեան։ Վասն այսորիկ և բիւր պարտուց երախտեաց ես ինձ՝ պարտական. և ոչ որպէս զպարտական պահանջեմ զքեզ, այլ իբրև զպարգևիչ պսակեմ, զարքայութիւնն ընծայեմ փոխանակ փոքունցս այսոցիկ։ Քանզի չասեմ եթէ լոյծ զիմ աղքատութիւնս և կամ շնորհեա ինձ մեծութիւն, Թէպէտ և աղքատացայ վասն քո. այլ սակայն հաց միայն խնդրեմ և հանդերձ՝ և սակաւիկ փոքր մի սփոփանս։ Իսկ Թէպէտ 'ի բանտ մտանիցեմ, չասեմ քեզ հարկ զկապանսն լուծելոյ և 'ի բանտէն հանելոյ, այլ զմինն միայն խնդրեմ, որպէս զի տես֊

# ՃԱՌ ՎԵՇՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Սպառեաք ոչ ինչ 'ի վեր քան զմտաւորութիւն վասն սիրոյն Պաւղոսի և Քրիստոսի յառաջնագոյն ասացաք ձեզ. այլ և էր իսկ մեծ և զարմանալի և գեր 'ի վերոյ քան զամենայն զբանս և զմիտս: Բայց սակայն զոր ասացեալ եմք, եւ առաւել է քան զայն՝ որչափ նորայն քան զմերս: Եւ զի թէպէտ և այսչափ ինչ առաւելութիւն է, բայց սակայն մեք մխեցուք յընթերցուածս այսր աւուր՝ որ քան զառաջինսն ևս պայծառագոյնս և լուսաւոր երևի. զոր և իսկ զմտաւ ածեալ, յասացուածէ անտի յայս յանդիման կացոյց: Եւ վասն զի 'ի մեծագոյնս իմն հանդերձեալ էր մտել և բազմաց անհաւատալի թուէին իրքն, վասն այնորիկ նախ հաստատէ զորոց հանդերձեալն էր ճառել, զոր և բազմաց իսկ սովորութիւն է զայն առնել վասն անհաւատ լինելոյ ոմանց: Եւ վասն զի չէին հաստատեալք, վասն այնորիկ ասէ՝ թէ "Ճշմարիտ ասեմ 'ի Քրիստոս և ոչ ստեմ, զի և միտք իմ իսկ վկայեն ինձ, թէ տրտմութիւն մեծ է ինձ և անպակաս ցաւք սրտի իմոյ, զի ուխտիւք խնդրէի ես ինքն նզով լինել 'ի Քրիստոսէ ,,: Օ՜ ինչ խօսիս, ով Պաւղոս. 'ի Քրիստոսէ՞ 'ի փափագելոյն քումմէ յորմէ ոչ արքայութիւն ոչ գեհեն որոշել զքեզ կարէր, յորմէ ոչ երևելիքս և ոչ իմանալիքն և ոչ այլ ինչ այնպիսիք, իսկ այժմ աղօթես 'ի նմանէ նզով լինել: Օ՜ ինչ եղև քեզ, միթէ շրջեցա՞ր ինչ և կամ փոխեցար և լուծեալ կորուսեր զայնպիսի փափագումն սիրոյն: Ոչ, ասէ, քաւ լիցի. մի ինչ յերկուանար, ասէ, մանաւանդ եթէ առաւատանամ իսկ նովիմբ այնուիկ: Եւ ապա որպէս աղօթես նզով լինել և օտարանալ խնդրես, և բաժանումն այնպիսի զոր յետոյն ոչ կարիցես գտանել. վասն զի յոյժ, ասէ, սիրեմ զնա: Ե՞ւ և որո՞վ օրինակաւ. քանզի յօրինակի անոր, ասէ, իրքն բնակեն: Մանաւանդ եթէ հաճոյ թուեսցի, նախ ուսցուք եթէ զինչ նզովքն էին, ապա հարցանիցեմք զնա վասն այսց իրացն,

խօսել զնա վասն այնորիկ թէ անդրէն հրէայք, այլ մանաւանդ առէիր թէ այնու եղեր արժանի պատկանին՝ որով առաքածուն 'ի հրէութենէն, նոյնպէս և յարժամ լինիցես թէ ցանկանայր նզով լինել 'ի Քրիստոսէ՝ մի ինչ վտանգելոցիս և խոտելոցիս ; այլ վասն սորին իսկ այսորիկ պարտիս զնա ամենայն համարձակութեամբ գովել յորժամ զպատճառն ուսցիս՝ թէ էր վասն զայն կամեցի :

Ձի եթէ ոչ զպատճառն գիտացեն քննիցեմք, ապա և զՅովբ մարդասպան վարկանիցիմք, և զԱբրահամ դարձեալ ոչ միայն մարդասպան, այլ և որդեգէն. և զՓենեհէս և զՄովսէս ընդ սպանողսն դատեսցեմք : Այլ զինչ ասեմք զորբոցն զայնցանէ, ուր և զամենեցունցն իսկ զմի դատեսցեմք՝ եթէ չէ պահեալ զայսպիսի զնա-նոսա, և քաղում ինչ անպատեհս կարծեմք 'ի հրաման-ացն, որ քան և մի երբէք լիցի : Այլ 'ի վերայ այսր ա-մենայնի և զպատճառն և զժամն և զժամանակն և զա-մենայն ինչ վասն որոյ գործն գործի՝ ժողովեալ պա-տասխանատրութեամբ ձեզ մատուցանեմք յորժամ զիրսն պատմիցեմք, զոր և այժմ իսկ վասն երանելւոյն Պաւ-ղոսի առնեմք :

Այլ արդ զինչ իցեն պատճառք նորա իրացն. դար-ձեալ առէ վասն փափագելոյն Յիսուսի : Այլ ոչ առէ թէ վասն նորա աղօթեմ, առէ, նզով լինել 'ի նմանէ վասն եղբարց իմոց և ազգականաց : Այլ այս նորա խոնարհու-թեան էր . վասն զի չվարկանէր մեծ ինչ առնել, և Քրիս-տոսի զայս նմա չնորհեալ : Վասն որոյ առէր՝ թէ ազ-գականաց իմոց, որպէս զի թագաւորեսցէ զաստուած ինչ : Այլ զի զամենայն ինչ վասն նոցա կամէր, լուր յաջոր-դացն . զի յորժամ ասաց թէ վասն ազգին իմոյ, յա-ւելաց 'ի սոյն՝ թէ "Որոց որդեգրութիւնն և փառքն և կտակարանքն և օրէնսդրութիւնն և պաշտօնն և աւե-տիքն . որոց հարքն, յորոց և Քրիստոս ըստ մարմնոյ՝ որ է 'ի վերայ ամենեցուն Աստուած՝ օրհնեալ յաւիտեանս ամէն ". Այլ արդ այս զինչ է . զի եթէ վասն այլոց հա-ւատալոյ ինքն նզով կամէր լինել, ապա պարտ էր և վասն հեթանոսաց զնոյնս առնել. իսկ եթէ վասն հրէիցն միայն աղօթէր նզով լինել, ցուցանէ ապա եթէ ոչ վասն Քրիստոսի ինչ կամի զայս, այլ առ նոցա ընտրութեանն :

քանզի այնպիսի մահ մանաւանդ առնէր զնա զաւակից Քրիստոսի և 'ի նորին 'ի փառսն վայելել:

Այլ են ամենք որ յանդգնին և զայս ասել: Եւ եթէ զանհնարինն իմն, ասեն, ասէր. այլ և զևս ծանրագոյն յանդգնին ասել՝ թէ սպանդ իմն և նուէրս կամէր լինել Քրիստոսի: Արդ ո՛վ որ այնպիսի, թէպէտ և յոյժ 'ի վատթարաց իցէ և կամ յառաւել 'ի ծուլից, չապաղձանայցէ այսպիսում իրաց, զոր նա վասն ազգականացն հանդերձեալ էր առնել: Արդ 'ի բաց թողեալ զառաքելականն զարդարանսն և զամենայն շառախօսութիւնն, քանզի և պատասխանատուութեան իսկ այնպիսիքն չեն արժանի, որպէս և ոչ մանկունքն որ աշխարհիկքն իցեն, 'ի նոյն ինքն յառաջուած բանիցն զարձեալ եղբարք և փափկացուք յանդգնութեան սիրոյն, և ամենայն հեշտութեանց 'ի նոյն խորս դուզեցուք, և զբոյն զանձկալեան սիրոյն զմտաւ ածցուք. մանաւանդ եթէ ըստ ինչ որ առիցէ, չկարէ ըստ արժանեաց ասել, վասն զի քան զամենայն անդունդս յորդառատ և քան զարտաքսեալ զաւաց և ջերմագոյն է սէրն այն, և ոչ որ ըստ արժանւոյն կարիցէ ինչ անուանել բանիւ. այլ նա միայն գիտէ զայն՝ որ ամենայն հաւատովք զնա ստացաւ:

Իսկ այսուհետև զնոյն բան զարձեալ 'ի մէջ ածցուք. զո՞ր. զայն զոր ասացն՝ թէ "Աղօթս առնէի ես ինքն նզով լինել 'ի Քրիստոսէ": Արդ ո՞ որ իցէ այն. նա ինքն, ասեն, նա որ վարդապետն եղև ամենեցուն, որ զբիւր զուղղութիւնս յանձին ցուցանէր, որ բիւր պսակացն ակն ունէր, որ այնպէսն փափագէր նմա որ քան զամենայն ինչ զնորա սէրն նախամեծար վարկանէր, որ զօրհանապազ նորա սիրոյն հրակիզեալ բորբոքէր, և զամենայն ինչ կրտսեր և 'ի վայր համարէր առ նորա սիրոյն և գթոյն: Քանզի ոչ եթէ հանդերձեալ էր սիրել 'ի Քրիստոսէ՝ միայն առնէր զայս, այլ վասն իւրոյ յոյժ սիրոյն. և մանաւանդ եթէ այս իսկ էր և յայս միայն հայէր, որպէս զի բարւոք նորա սիրոյն յաղեսցի: Եւ թէպէտ աղօթէ զայս, այլ ոչ թէ այսպիսի ինչ հանդերձեալ էր լինել և կամ նզով լինել. հանդիսանայ ապա այնուհետև պատասխանատրութիւն առնել մեղադրութեանցն, և զհոչակելին յամենեցունց 'ի մէջ հրամայէ ածել: Եւ յառաջ քան ըզ-

յայտնի առնելն՝ յայսպիսի պատասխանատուութեան մսի, և զսէրն յառաջագոյն ցուցանէ յորժամ ասիցէ՝ « Ո՞վ է որոց որդեգրութիւնն և փառք և օրէնսդրութիւն և պաշտօնն և աւետիքն »: Այլ ոչ այլ ինչ ասէ զայս, եթէ ոչ զի ած կամէր զնոսա կեցուցանել. և զայս յայտ առաւելումն արար, յորոց Քրիստոս, ասէ, ըստ մարմնոյ և որ ինչ առ հարսն աւետիքն եղեն: Իսկ նոքա, ասէ, անպարտոյն մնացին իւրեանց ընդդիմանհարեցին իւրեանց երախտաւորին. վասն որոյ և զայն եւս գնէ որ ած պարգևացն է յայտնիչ՝ և ոչ եթէ նոցա ինչ գովութիւն:

Այլ քանզի և որդեգրութիւնն որ եղև՝ շնորհացն էր, և փառքն և աւետիքն և օրէնքն, և զամենայն ինչ իմացեալ և զմտաւ ածեալ՝ թէ որչափ ինչ փութացաւ ած հանդերձ որդւովն կեցուցանել զնոսա, ուժգինս ողբրագաշեալ ասէր՝ թէ « Որ է օրհնեալ յաւիտեանս, ամէն »: Ընդ ամենեցուն զգոհութիւնս ինքն առաքեալն մատուցանէ միածնին այ. զի թէպէտ և այլքն, ասէ, հայհոյեսցեն, այլ մեք որ զանձառելին նորա գիտիցեմք և զանեզրական զիմաստութիւնն, և զբազում նախախնամութիւնս նորա 'ի մեր առայք, գիտեմք եթէ ոչ հայհոյութեան՝ այլ փառաբանութեան արժանի է.

Այլ ոչ շատացաւ այսու մինչ միայն առաքելոյն, այլ և յառաջ մատուցեալ՝ խորհուրդ ինն աւելի յանձին ցուցանէ և յոյժ ինն 'ի կիր արկանէ զբանն. և ոչ յառաջեալ ճառէ առ նոսա այսպիսի ինչ իրս, մինչև զկարծիսն 'ի բաց բառնալ 'ի նոցանէն, զի մի կարծիցեն թէ որպէս ընդ թշնամիս ինչ վիճի ընդ նոսա, զոր և յառաջ իսկ ասէր՝ թէ « Աղաչեմ, իմ կամք սրտի և աղօթք առ ած՝ վասն նոցա փրկութեան են »: Այլ աստ դարձեալ յետ այլոց աստուածացն և զայն եւս կարգէ՝ զմին կարծել զոլ թշնամիս նոցա և նախանձ ինչ ունել նոցին, վասն որոյ և ոչ եղբարս և ազգայինս հրաժարեաց անուանել զնոսա: Զի թէպէտ և վասն Քրիստոսի ասէ զոր ինչ ասացն, այլ սակայն և առ նոսա տարածանէր զմիտսն, և յառաջ հոգէ ճանապարհ բանին և յամ կարծեաց կամի ազատ առնել վասն այնորիկ՝ զոր հանդերձեալն էր ասելոց, և յայնժամ ապա մխի 'ի բազում բանս խնդրոյն, վասն զի և էին իսկ 'ի խնդիր բազումք առացելոյն. Էր վասն ամենից ընկալեալ զաւետիսն արտաքս

անձկան, ենկ այդոցն ամենեցուն ենկ ուրեք չէր լուեալ, և յառաջ քան զնոսա ասացեալն ։ Եւ արդ զայսպիսի զանձ. Հնարքեան կամեցեալ լուծանել այժմ, յառաջ քան զդիմադրութիւնն՝ մեզ լուծումն տանէ ։ Զի մի ոք ասիցէ թէ զու՞ տաււեալ Հոգաս փառացն այ քան զինքն, և քում օգնականութեանդ կարօտ է զի մի բանն նորա անկցի, վասն այնորիկ կամիս լինել նզով, առ այս ամենայն ասէր Հաստատութեամբ՝ ոչ անկաւ ինչ բանն այ, ասէ, այլ զի ցուցից զառաջնում սէրն իմ զոր ունիմ առ Աբրահամ, և այսպէս կատարեմ զերդս իւրացն ։ Եւ ոչ ինչ, ասէ, նուազ գտաւ բանն այ, և ցուցանեմ թէ Հաստատուն կան աւետիքն զոր ած ասաց Աբրահամու՝ թէ «Քեզ և զաւակի քում տաց զերկիրս զայս»․ և դարձեալ թէ «Ի զաւակի քում օրհնեսցին ամենայն ազգք»։

Եւ արդ տեսցուք ո՞ ոք իցեն զաւակք նորա․ քանզի ոչ եթէ ամենայն որ 'ի նմանէն են՝ զաւակ նորա իցեն, վասն որոյ և ինքն ասէր․ «Վասն զի ոչ ամենեքեան որ յԻսրայէլէն՝ Իսրայէլեանք իցեն, և ոչ որ զաւակ Աբրահամու են՝ ամենեքեան նորա որդիք իցեն»։ Իսկ ապա եթէ ուսցիս թէ ո՞յք իցեն զաւակ Աբրահամու, տեսանիցես զի տուեալ են աւետիքն զաւակի նորա, և ապա առնուցուս 'ի միտ եթէ ոչ անկաւ բանն այ ինչ։ Եւ արդ ասա ո՞ ոք իցեն զաւակքն։ Չասեմ յանձնէ, ասէ, այլ նոյն ինքն 'ի հնումն մեկնէ զայս ասելովն՝ թէ «Իսահակաւ կոչեսցի քեզ զաւակ»։ Եւ զի՞նչ է Իսահակաւն, մեկնեա մեզ․ այսինքն է «Ոչ որդիք մարմնոյ են՝ նոքա են որդիք այ, այլ որդիք աւետեացն՝ նոքա համարին 'ի զաւակ»։ Եւ դու տես զիմաստութիւն Պաւղոսի և զմեծարգութիւն մտութեանն․ չասաց թէ որդիք մարմնոյն այնոքիկ են զաւակ Աբրահամու, այլ եթէ որդիք այ․ այսու զմերձակայս ընդ հնոյն միաւորանէ։ Եւ չասէր թէ լոկ Իսահակ էր զաւակ Աբրահամու։ Եւ զոր ասէն այսպիսի ինչ է, եթէ որք ըստ օրինակին Իսահակայ են, նոքա են որդիք այ և զաւակ Աբրահամու։ Վասն այսորիկ իսկ ասաց՝ եթէ «Իսահակաւ կոչեսցի քեզ զաւակ»․ զի ուսանիցիս և 'ի միտ առնուցուս թէ որք ըստ այսմ օրինակին՝ կոչին զաւակ Աբրահամու։

լով և ոչ 'ի հեշտութիւն անկողնոյն ինչ ծնաք, այլ յա̃յ մարդասիրութենէն ամենայն ինչ վճարեցաւ։ Եւ զոր օրինակ նոքա 'ի հասակաց անտի յուսահատք էին առ որդեծնութիւնն, նոյնպէս և աստ հնացեալք ծերութեամբք մեղաց կարեմք՝ եթէ կամիմք՝ վերստին նորոգել։ Եւ յանկարծօրէն երեւեցաւ Իսահակ մանուկ, և ամենեքին նովաւ եղաք որդիք ա̃յ և զաւակ Աբրահամու։

“Եւ ոչ այսչափ միայն, այլ և 'ի Ռեբեկայ 'ի միոջէ անկողնոյ ունելով Իսահակայ հօր մերոյ„։ Մեծ էր խնդիրն. վասն որոյ 'ի բազում խորհուրդս յուզէ և 'ի կիր արկանէ, և ամենայնիւ ձեռնարկէ լուծանել ըդհիւցումնն։ Զի թէ հրաշափառագոյն և նոր ինչ էր յետ այսչափ ինչ իրաց անկանել յաւետեացն նոցա, ապա ևս առաւել այն է մեզ մտանել 'ի նոցա բարութիւնսն, որ ոչ ինչ այնպիսեաց ակն ունէաք։ Եւ յանկարծօրէն սոյնպիսի ինչ մեզ դիպեցաւ, որպիսի ինչ եթէ իցէ ոք որդի թագաւորի, և ընդունիցի աւետիս որպէս թէ զիշխանութիւնն հօր առնլոց իցէ, և նա 'ի յոռութիւնս հատանիցի և ընդ անարժանս զինքն կարգիցէ. և այլ ոք դատապարտեալ և բիւր չարեօք լի, և 'ի տանէ կապանաց ելեալ առնուցու զիշխանութիւնն նորա առժամայն։ Եւ արդ զի՞նչ ունիցի ասել. եթէ անարժա՞ն էր որդին. մանաւանդ եթէ սա ևս անարժան։ Ապա ուրեմն պարտ էր կամ պատուել 'ի միասին և կամ տանջել։ Այսպիսի իմն առ Հրէայս և առ հեթանոսս եղև, մանաւանդ եթէ ևս առաւել սքանչելիք։ Զի ամենեքեան անարժանք էին, յայտ արար ասելովն՝ թէ “ամենեքին մեղան և նուազեցան 'ի փառացն ա̃յ„։ Իսկ նոր և չքնաղ այն էր, զի ամենեցուն անարժանք գտանելով՝ հեթանոսք միայն ապրեցան։

Եւ յետ այսորիկ և այլ իմն մտածութիւն ասէ. զի եթէ չէր հանդերձեալ, ասէ, ա̃ծ ընուլ զաւետիսն, է՞ր վասն և խոստանայր։ Մարդիկ որ զհանդերձելոցն փորձ ինչ ոչ գիտէին և բազում անգամ խաբեալք, և որում չէինն արժանի առնլոյ՝ այնպիսի իմն պարգև աւետարանեցաւ, իսկ որ զմերձակայս և զհանդերձեալսն հաւաստեաւ յառաջն գիտէ՝ նմա ամենայն ինչ առաջի կայր, և յայտնի էր եթէ անարժանս զինքեանս կազմեցին

Հրէային պատերազմին . ուստի և զերան իսկ զամենայն անուորի անձնէ յայտնապէս : Օ՛ն ի պքանչանսա , ասէ , եթէ 'ի Հրէից մանուկ սպիրեցան և մանուկք ոչ սպրեցան այժմ . ուստի և վերաղուցին իսկ այնս 'ի Հայրապետէ անուորի զաւակ նիցի լինել . Ո՞ր վասն ,, ասա ինձ , Իսահակ միայն ա-նուանի զաւակ , ուստի և Իսմայելի նա ինքն էր Հայր և այլոց բազմաց : Այլ յաղախնին մօրէ էր նա : Իսկ այս զի առ ծնեալն . բայց սակայն ոչ ինչ հակառակին հա-նել զնա վասն մօրն : Իսկ վասն Քետուրայ , ասէ , զինչ ասիցես , ո՞չ ազատ էր և ազատ որդիս ծնաւ . իսկ ապա ընդէ՞ր ոչ պատուեցան գահերիցութեամբն որպէս Իսա-հակ : Իսկ զինչ ասիցեմ զնոցանէն , ուր և Ռեբեկա իսկ Իսահակայ միայն եղև կին և երկուս մանկունս ծնաւ և զերկոսեան Իսահակայ , և որք ծնան' 'ի նմին հօրէ և 'ի նմին մօրէ ծնան , և զնոյն զերկուսն լուծին և զոյգ ու-նէին զհայրն և զմայրն . առ այսոքիւք զի և երկաւորիք ևս էին , և առ հասարակ զամենայն ինչ ունէին : Իսկ չունիս ասել աստ եթէ աղախնին էր մայրն որպէս առ Իսմայելիւն , և այսպէս 'ի նմին 'ի մօրէ ծնեալ , և ոչ եթէ այլ և այլ մարս ունէին որպէս և Քետուրն և Սա-ռայն , որք 'ի նմին ժամու հաղորդեցին երկանցն : Վասն այնորիկ և Պաւղոսի յայտնի յօրինակն եղեալ ասէր' թէ ոչ միայն առ Իսահակ այսպիսի ինչ դիպեցաւ , „Այլ և 'ի Ռեբեկայ 'ի միոջէ անկողնոյ , ասէ , Իսահակայ հօր մերոյ որ չև ևս էին ծնեալ և ոչ գործեալ բարի ինչ կամ չար , որպէս զի ըստ ընտրութեանն յառաջա-դրութիւնն ա͞յ հաստատեսցի ոչ 'ի գործոց , այլ 'ի կոչե-լեացն , քանզի ասացաւ նմա' թէ մեծն նուազին ծա-ռայեսցէ , որպէս և գրեալ է թէ զՅակոբ սիրեցի և զԵսաւ ատեցի „ :

Ո՞ր վասն , ասէ ասա ինձ , ոմն սիրի և ոմն ատի , ոմն ծառայէ և ոմն ազատանայ . վասն զի ոմն չա՞ր էր և ոմն բա-րի : Մանաւանդ զի և յառաջ իսկ քան զծնանելն ոմն պա-տուէր և ոմն դատապարտ լինէր . վասն զի մինչև ծնեալ էին' ասէր ա͞ծ , թէ „երէցն կրտսերոյն ծառայեսցէ „ : Իսկ արդ է՞ր վասն ասէ զայս ա͞ծ . քանզի չէր իբրև զմարդ ոք որ կայ մնայ վախճանի իրաց ինչ' և ապա իմանայ ըզ-բարին և զոչ բարին . իսկ նա և յառաջ քան զծնանելն գիտէր որ բարին էր և որ ոչն սոյնպիսի : Այսպէս և առ

տէր. և զպղծովքն զամենեքումբք զանց արարեալ՝ ընդ նորա միայն ընդ գեղեցկութիւն սքանչացեալ ընտրեաց, և զյօժարութեանն զբարեպաշտութիւն տեսեալ եդ 'ի նմա յիւրոց շնորհաց անտի, և այնպէս ընտրիր զնա ամենեցուն յայտ յանդիմանն եցոյց: Ոչ թէ յայլ յարուեստն որք առժամանակեան են և ըստ իւրաքանչիւր խրաց գիտեն քննել, ոչ եթէ որք միանգամայն չինականքն և ողէտքն առաջի կայցեն՝ արկանիցեն 'ի համար և կամ 'ի նոցանէ ինչ ընտրիցեն 'ի յառաջիկայ իրա անդր, այլ զորոց զփորձն հաւաստեաւ գիտեն յայտնապէս: Նաւզումք և 'ի չինականաց իսկ ընտրիք. երևեցան և պատուեցան, իսկ այլոց անփորձ գտեալ անարգեցան: Այս ես բազումք զայս և 'ի ձիան առնէին և յականան պատուականս. և այլոց ես արուեստագէտքն այնպիսի ինչ քննութիւն իրաց առնեն: Ոչ եթէ նոքա այնպէս գիտեն ընտրել զականան և զձիան և զգործիս արուեստից, ապա ես առաւել մարդասէրն Տր, որոյ անեզրական իմաստութիւնն է, որ միայնն գիտէ զամենայն յայտնապէս. ոչ եթէ 'ի մարդկայինն մտաց ինչ ուսանի, այլ իւրով ընտանի իմաստութեամբն հաւաստեաւ և աներկբայելի զամենեցունց զիւրաքանչիւր ուրուք բերէ զհամար: Վասն այսորիկ և զմաքսաւորն ընտրեաց և զաւազակն և զպոռնիկն. իսկ զքահանայսն և զծերսն և զդպիրսն անարգեալ արտաքս եհան: Այնպէս և առ մարտիրոսօքն այսպիսի ինչ դիպեալ լինէր. քանզի բազումք յոյժ յանարգացն 'ի ժամանակի նահատակութեանն պսակեցան, և ընդդէմ իմն իրքն գործէին. և որ 'ի բազմաց կարծէին եթէ մեծ և սքանչելիք իցեն, և 'ի ժամանակի նահատակութեանն գթեալք 'ի վայր կործանեցան:

Այս արդ մի այսուհետև հաւաստիս պահանջէր յարարչէն, և մի ասեր եթէ այս անուն տանջի և այս անուն պսակի. քանզի գիտէ ինքն հաւաստեաւ զամենայն ինչ առնել, վասն որոյ և ասէր՝ թէ “զՅակոբ սիրեցի և զԵսաւ ատեցի„: Այս յիրաւի իսկ. վասն զի դու 'ի վախճանէ անտի իրացն գիտացեր, իսկ նա յառաջ քան զլինելն գիտէր յայտնապէս. քանզի ոչ եթէ զգործոյն զտեսիլ խնդրէ Տծ միայն, այլ և զյօժարութեանն զբարեպաշտութիւն: Վասն զի այսպիսին թէ-

պէտ և յանկարծորէն ինչ ըմբռնմանն մեղանչէ, երագ իսկ անողէն վերստին կարէ ստանալ. Թէպէտ և ժամանակ մի յամիցէ 'ի չարիսն, երագ իսկ ամենեցուն ա̃ծ որ զամենայն գիտէ, յիշեցուցանէ նմա. զոր օրինակ և որ յայնպիսին է միշտ ապականեալ, Թէպէտ և բարիս ինչ վարկանիցի գործել, զամենայն կորուսանէ հանդերձ չար գործովքն և մտօքն որ զայնպիսիսն գործէ: Սոյն զի և Դաւիթ սուրբ և շնացաւ, և քանզի ոչ խորհրդեցաւ և միշտ զնոյնս խոկալով գործեաց, այլ յանկարծորէն 'ի յափշտակութենէ իմն ինչ գործեցաւ, վասն այսորիկ իսկ երագ առժամայն 'ի բաց կարաց լուանալ: Իսկ փարիսեցին ոչ ինչ յայսպիսեացս յանդգնեցաւ գործել, այլ յոյժ ձոխաբաներ բարեգործութիւքն, ապա չար յօժարութեամբն զամենայն կորոյս:

"Իսկ արդ զինչ ասիցեմք, միթէ անիրաւութիւն ինչ իցէ առ 'ի յա̃յ. քաւ լիցի": Այլա եթէ այդպէս իցէ, լուր և որ ինչ ըստ կարգին է: Վասնզի անդ առաքինութիւն և չարութիւն ճառէր. իսկ աստ մեղքն ամենեցուն իսկ հրէիցն էին, վասն զի առ հասարակ իսկ արարին զորթն ամենեքին իսկ. բայց սակայն ոմանք 'ի նոցանէ տանջեցան, ոմանք ոչ տանջեցան. վասն որոյ և ասէր իսկ՝ թէ "Ողորմեցայց որում ողորմեցայց, և գթացայց յորս գթացայցն": Վասնզի ոչ եթէ քո է, ասէ Մովսէսի, գիտել զիք արժանի իցեն մարդասիրութեանն, այլ ինձ թողացո, ասէ, զայն: Իսկ եթէ Մովսէսի չէր զայն գիտել, ապա ևս առաւել ձեզ: Սոյն այսորիկ և ոչ այնպէս լոկ եդ զասացեալսն, այլ առ ով ասացն՝ և զնա ևս յիշեաց. քանզի Մովսէսի ասէ, որպէս և զկերպարանսն արժանի հաւատարմութեան ցուցանելով յանդիմանեսցէ զնոսա:

Իսկ ապա իբրև առաջ զլուծումն չքաւորութեանն նացա, դարձեալ ընդ մէջ կարէ զասացուածն, և այլ իմն դիմադրութիւնս 'ի մէջ մուծանէ ասելով թէ "Ոչ որ կամիցին և ոչ որ ընթանայցէն, այլ ըստ ողորմութեանն ա̃յ: Վասնզի ասէ գիր ցՓարաւոն՝ թէ 'ի սոյն իսկ յայս զարթուցից զքեզ, որպէս զի 'ի քեզ ցուցից զզօրութի՛ իմ և պատմեսցի անուն իմ ընդ ամենայն երկիր": Օյ որպէս անդ, ասէ, ոմանք ապրեցան և կէսք տանջեցան, սոյնպէս և աստ. սակայն պահէր.

Ապա դարձեալ այլ ինչ զխնամածութիւն 'ի ներքս ածէ. «Ապա ուրեմն ում կամի ողորմի և ում կամի խըստանայ, մեղ եւս, ասէ, ընդէ՞ր դնիցէ, քանզի կամացն նորա ո՞վ կարէ ընդդիմանալ»: Տեսանե՞ս որպէս փութացաւ զայս ասել ամենայն ուրեք չքաւորութիւն պատասխանատուութեան նոցա: Այլ ոչ զլուծումն անդամ 'ի մէջ ածանէ. վասն օգտի նոցա ինչ գործէ զայս: Այլ նախ ըմբերանէ զայնափիկ որք ասէին զայսպիսիսն. «Այլ արդ, ասէ, դու ո՞վ ես մարդ որ պատասխանի տայցես այ»: Առնէ զայս յայն սակս, որպէս զի զընդվայրաքննութիւնսն 'ի բաց ձևիցէ և զգազաղամ յուզախնդիրսն, և սանձս 'ի բերան եդեալ խրատեսցէ. գիտել 'ի միտ առնուլ՝ եթէ զինչ է Ած իցէ և զինչ մարդ, և եթէ որչափ անհասանելի են տեսչութիւնք նորա և կամ որպէս գեր 'ի վերոյ քան զմեր զմիտս և զխորհուրդս գտանիցին, և եթէ զի պարտ է յամենայնի նմա հաւատալ: Այլ յորժամ առ այս կազմեսցէ զլսողն և յինքն ամփոփեսցէ կամ հարթիցէ զնորա զբարսն, յայնժամ տայ բազում ուղղութեամբ յայտնէ նմա զլուծումն, և դիւրընկալ առնիցէ զբանն: Այլ չասէ թէ անհնարինք են զայնպիսիսն լուծանել. այլ զինչ, թէ անօրէնութիւն է զայսպիսի ինչ խնդրել. պարտ է, ասէ, ամենայնի հաւատալ զոր ինչ Ած առնիցէ և ոչ եթէ 'ի քննիս ինչ արկանել, թէպէտ և զմիտս նորա չգիտիցեմք. վասն այնր և ասէր՝ թէ «Դու ո՞վ ես որ պատասխանի տաս այ»:

Տես որպէս անարգեաց զնոսա, և զիարդ զիջոյց զայտուցումն հպարտութեանն նոցա: Դու ո՞վ ես, ասէ, միթէ հաղորդ ինչ ես իշխանութեանն այնմիկ և կամ դատաւո՞ր նստար այ. քանզի առ նորա համեմատութեամբն դու ոչ ինչ կարես լինել, ոչ այս ինչ և ոչ այն, այլ և ոչ իսկ ինչ ես, քանզի առաւել եթէ ոչ ինչ ես՝ եւս մեծ է քան զայն յորժամ ասիցէ թէ դու ո՞վ ես. զայն ասէ՝ թէ ոչ ուստեք: Այլ և այլ ինչ զայլրազնութիւնս ցուցանէ հարցուածովս. և չասաց թէ դու ո՞վ ես որ պատասխանի տաս այ, այլ թէ դու ո՞վ ես որ ընդդէմ պատասխանիդ առնես. այսինքն է թէ որ ընդդիմաբանեսդ և ընդդէմ կաս: Քանզի առաւել եթէ այսպէս պարտ է և ոչ այնպէս, ընդդիմաբանութիւն է.

Տեսե՞ր որպէս երկեցոյցն, որպէս վիրաւորեացն և որպէս 'ի դողութեան կալաւ զնոսա: Այս ընտիր և առաքինի վարդապետի է, որ ոչ յամենայն ժամ զցանկութիւն աշակերտացն կատարէր, այլ մանաւանդ զի զնոսա առ իւր ընտանի բարւոք ձգիցէ և զփուշսն նախ 'ի բաց խլիցէ և ապա զսերմն ցանիցէ, և մի խոկոյն անդէն առ ժամայն առ հարցումն նմ ուրեք պատասխանի տանիցէ:

“Մի՛թէ ասիցէ՞ ստեղծուած զստեղծիչն իւր թէ ընդէ՞ր այսպէս արարեր զիս. մի՛թէ ո՞չ ունիցի իշխանութիւն բրուտն կաւոյն 'ի նմին զանգուածոյ առնել ոմն անօթս զոմն 'ի պատիւ և զոմն յանարգանս„: Այս ոչ եթէ զանձնիշխանութիւն ինչ 'ի բաց եբարձ ասելովն, այլ եցոյց եթէ մինչև ցորչափ ինչ պարտ է հնազանդել մեզ այ: Վասնզի որք յայ զհաւատոյն պահանջեն, չեն ինչ ընդհատ 'ի կաւոյ. քանզի ոչ եթէ ընդդէմ ինչ ասել նմա չէ պարտ, այլ և ոչ 'ի խնդիր լինել և խօսել և կամ ձիկ հանել և ոչ շշնջել ինչ ամենեւին և կամ զմտաւ ածել, այլ նմանել անխօսի անշնչոյն և հետևել ձեռաց բրտին՝ երթալ ուր և կամիցի զմեզ տանել: Այս օրինակի վասն, և ոչ 'ի ցուցումն ինչ առաքինութեանն, այլ 'ի հաստատութիւն հնազանդութեան և 'ի լռութեան: Իսկ զայս ամենայն ուրեք պարտ է մեզ պահել և 'ի միտ առնուլ՝ թէ ոչ զամենայն զօրինակս բոլորովին պարտ է մեզ ընդունել, այլ զպիտանիսն միայն ընտրել և որ մեզ օգտակարքն են, և զայլն ամենայն 'ի բաց թողուլ: Որպէս յորժամ ասիցէ՝ թէ “Նազիրեցար նմանեցէք իբրև զառիւծ„. այսինքն է զանկռուութիւնն և զահաւորութիւն միայն ընդունիցիք, և ոչ եթէ զգազանաբարեան և կամ զայլ ինչ որ խիստ են առիւծուն ընտանի բարք իցեն: Իսկ դարձեալ յորժամ ասիցէ՝ թէ “Պատահեցից նոցա իբրև զարջ„, զտանջանական զիրսն յայտ առնէ. իսկ յորժամ ասիցէ՝ թէ “Աստուած մեր հուր ծախիչ է„, զծախումն որ 'ի տանջանացն լինիցի՝ յայտ առնէ: Այնպէս և աստ զկաւն և զբրուտն և զանօթսն կարևոր էր 'ի կիր արկանել:

Իսկ յորժամ դարձեալ զնովիմբ ածեալ ասիցէ. “Մի՛թէ չունիցի՞ իշխանութիւն բրուտն կաւոյն առնել 'ի նմին զանգուածոյ անօթս զոմն 'ի պատիւ և զոմն յանարգանս„, մի վարկանիցիս եթէ վասն արդարութեան

ինչ ճառեալ ասիցէ զայս Պաւղոս, և մի դարձեալ 'ի բարուց ինչ հարկաւորութենէ, այլ առ 'ի առատատու-թիւն իշխանութեանն զանազանեալ. զի թէ ոչ այսպի-սի ինչ իմանայցեմք, բազում անպատեհ իրք մերձե-նան: Վասնզի զվարուց իսկ աստ ճառեաց զբանն վասն բարուց և որք ոչն են բարիք, և զմարդն կամի առանց իրիք պատճառանաց ցուցանել: Սոյնն վասն և Պաւղոս պատերազմեալ ամենայն ուրեք կամէր ցուցանել՝ եթէ զյօժարութիւնն միայն ցուցանելով, լինի գործակից ած և պսակէ: Եւ ոչ այլ ինչ այժմ աստ կամի յարդարել, այլ միայն հաւանեցուցանել զլսողսն և բազում առա-ւելութեամբ կամի զնոսա այ ընծայեցուցանել, և ամե-նեւին ոչ ինչ երբէք պահանջել հաւատոյս 'ի նմանէ: Զոր օրինակ և բրուտն, ասէ, 'ի նմին զանգուածոյ զոր ինչ կամի առնել առնէ, և չիք ոք որ ընդդէմ ասիցէ ինչ, սոյնպէս և ած 'ի նմին յազգէ մարդկան զոմանս պսակէ և զոմանս տանջէ և զայլսն պատուէ, և մի ինչ 'ի քննիս անկանիր և մի բազում խնդիրս յուզել. այլ երկիր պագ նմա միայն և նմանեա կաւոյն. և զոր օրի-նակ նա երթայ զհետ ձեռաց բրտին, սոյնպէս և դու բարուցն այնորիկ որ զայսպիսին մատակարարէ. քանզի ոչ ինչ ընդ վայր և լոկ գործէ, թէպէտ և դու տգէտ ես անճառ իմաստութեան նորա: Եւ արդ զիարդ նմա նե-րես՝ այսինքն է բրտին՝ 'ի նմին զանգուածոյ առնել ազ-գի ազգիս՝ և չլինիս մեղադիր, իսկ յայ հաւատոյս պա-հանջես վասն տանջելոցն և որք պատուելոցն, և չթողուս ցնա զգիտելն՝ թէ ո՛ր արժանի իցեն պատուոյն և որք չիցենն: Այլ արդեօք ասիցես՝ թէ 'ի նմին զանգուա-ծոյ են, այսինքն է յէութենէն, ապա ուրեմն պարտէին և յօժարութեամբքն սոյնպիսիք գտանել: Ոչ է, քանզի մոլորութեամբ լի է բանս: Եւ զոր առ բրտին ոչ իշխե-ցեմք ասել վասն պատուականին և անարգին, աստ հա-մարձակութեամբ իմն առաջարկութիւն առնեն բանին վասն տանջանաց և պսակացն: Եւ արդ զի՞նչ իցէ, յանձ-նականութիւն ելեալք զայս ասեն. բայց մեք սակայն թէ հուն ինչ իցէ զամենեսեան ածցուք 'ի խորատ, և ցուցցուք թէ ըստ իւրաքանչիւր յօժարութեան իրքն վճարին. բայց սակայն զայս միայն առաջի դիցուք ասե-լով՝ թէ մի ինչ ընդդէմ ասասցուք այ, այլ զամենայն

ինչ նորա անհասանելի խնամոցն թողցուք ։ Վասնզի միշտ իսկ օրինակի մեծի պէտք են վասն առաջիկայիցն, վասն որոյ և 'ի մէջ իսկ ածէ զայն, որով մարթէր զարթուցանել զլսողսն. զի եթէ չէր մեծ ինչ և առաւել, ապա ոչ ցանկ զայն 'ի կիր արկանէր, որով կարողն էր յանդիմանել զընդդիմակացսն ։

Այլ արդ յորժամ զընդվայր յանմտութիւնս նոցա ըմբերանեաց, ապա մեծաւ իսկ առաւելութեամբ ածէ զնովիմբ զլուծումնն. և զինչ իցէ լուծումնն ։ "Իսկ ապա եթէ կամէր նա ցուցանել զբարկութիւն իւր և յայտնի առնել զզօրութիւն իւր զոր համբերէր բազում երկայնմտութեամբ անօթոցն բարկութեան պատրաստելոցն 'ի կորուստ, զի յայտնի արասցէ զմեծութիւն փառացն իւրոց 'ի վերայ անօթոցն ողորմութեան զոր յառաջագոյն պատրաստեաց 'ի փառս նորին. զոր և կոչեաց իսկ զմեզ ոչ միայն 'ի Հրէից, այլ և 'ի հեթանոսաց „ ։ Այլ զոր ասէն այսպիսի ինչ է. անօթ բարկութեան էր Փարաւոն, մարդ որ զայն զբարկութիւնն բորբոքէր 'ի ձեռն ընտանի իւրոյ խստասրտութեանն ։ Այլ քանզի 'ի բազում երկայնմտութեանն նա վայելեաց և չեղև ինչ պիտանի, այլ կաց մնաց նոյնպէս առանց ուղղելոյ, վասն որոյ ոչ միայն անօթ բարկութեան կոչէ զնա, այլ եթէ պատրաստեալ 'ի կորուստ, այսինքն է յիւրոց ընտանի կամացն պատրաստեցաւ 'ի կորուստ ։ Վասնզի ոչ եթէ նա ինչ պակասեցոյց 'ի նմանէ զուղղութիւնն, այլ ինքն իւրովք կամօքն պատրաստեցաւ 'ի կորուստ, և զրկեալ գտաւ յամենայն ներելոյ և 'ի թողութենէ. զի թէպէտ և յառաջագոյն գիտէր զայն նա, այլ համբերէր բազում երկայնմտութեամբ առ 'ի ածել զնա յապաշխարութիւն. զի եթէ զայս ոչ կամէր, ապա և ոչ երկայնամտէր իսկ ։ Այլ քանզի ոչ կամեցաւ գալ յապաշխարութիւն և լինել պիտանի երկայնմտութեամբն, այլ պատրաստեաց զինքն ընդդէմ բարկութեանն, ապա այնուհետև արկ 'ի կիր և նա զայն ինչ՝ որով զայլսն մարթէր ուղղել նորա տանջանօքն, որպէս զի նորա կորուստեամբն այլք փութագոյնք եղիցին առ 'ի խրատն, և զիւր զզօրութիւնն ցուցանիցէ ։ Ոչ է ոչ կամի նա այսպիսի ինչ իրօք ցուցանել զիւր զզօրութիւնն, այլ խնամօքն և բարեգործութեամբք զոր առ մեզ, և այս ամե-

նայն ուրեք անդուստ 'ի վերուստ իսկ երևէր ։ Զի ե-թէ Պաւղոս չկամի երևել այնպէս զօրաւոր, «Մի զի մեք, ասէ, ընտրեալք երևեսցուք, այլ զի դուք զբարիս գործիցէք», ապա մանաւանդ եթէ եւս առաւել ամե-նեցունցն ա̃ծ ։ Երկայնամտեաց զի յապաշխարութիւն ածիցէ զնա, իսկ նա ոչ կամեցաւ ապաշխարել յանչափ 'ի բազում ժամանակս ։ Իսկ ապա ա̃ծ զի՞նչ. միանգա-մայն եցոյց նախ զքաղցրութիւն իւր, ընդ նմին յայտ-նեաց և զզօրութիւն իւր ։ Աստ զի ոչ կամեցաւ իւքն օգտել և ոչ յանչափ երկայնմտութեանն, և որպէս ա-ռանց ազդելոյ կաց ծ̃ոց, ընկալաւ զպատուհասն, որով յայտնի եղև զօրութիւնն ա̃յ, նոյնպէս և որք բազում մեղան և ապաշխարեցին՝ ողորմեցաւ, և այսու յայտնի եղև մարդասիրութիւն նորա, այսինքն է ողորմութիւն ։

Եւ չասաց թէ մարդասիրութիւն, այլ փառք որով ցուցանէ իսկ թէ մանաւանդ իսկ են փառք ա̃յ, և յա-ռաջ քան զայն ամենայն զայս փոյթ յանձին կալաւ ։ Զի յորժամ ասիցէ թէ զոր յառաջն պատրաստեաց 'ի փառս իւր, ոչ եթէ ա̃յ միայն է այս՝ ասէ, ապա թէ ոչ զի՞նչ արգել էր ամենեցուն միանգամայն ապրել ։ Այլ և 'ի մէնջ իմն խնդրէ, և այսու ցուցանէ զա̃յ զյա-ռաջգիտութիւնն, և զանխտրութիւնն որ 'ի միջի կայր ընդ Հրէայս և ընդ Հեթանոսս՝ 'ի բաց բառնալով ։ Սա-կայն և աստ ոչ փոքր ինչ կազմէ զբանին զպատասխա-նատուութիւն. և ցուցանէ թէ ոչ միայն 'ի Հրէից ո-մանք կորեան և ոմանք ապրեցան, այլ և առ Հեթանոսս նոյն եղև. վասն որոյ և չասէ թէ ամենայն Հեթանոսք, այլ թէ 'ի Հեթանոսաց. նոյնպէս և ոչ զամ Հրէայսն, այլ եթէ 'ի Հրէից ։ Եւ զոր օրինակ Փարաւոն անօթ բարկութեան եղև իւրով ընտանի չարութեամբն, նոյն-պէս և սոքա անօթք ողորմութեան ընտանի իւրեանց բարեմտութեամբն. զի թէպէտ և մեծ մասնն ա̃յ էր, այլ և ամենայնն իսկ, բայց սակայն փոքր մի և ինքեանք նպաստ եղեն յիրսն. վասն այնորիկ և չասաց իսկ ա-նօթք ողորմութեան և համարձակութեան, այլ թէ ո-ղորմութեան, ցուցանէ թէ ամենայն իսկ ա̃յ էր ։ Քան-զի և զայն զոր ասէրն իսկ թէ «Ոչ որ կամիցին և ոչ որ ընթանայցեն», զի թէպէտ և 'ի կարգի ընդդիմա-բանութեան եղեալ իցէ, բայց սակայն և 'ի Պաւղոսէ

յորժամ ասի այս, չունի ինչ պակասութիւն։ Ոչ է յոր-
ժամ ասիցէն՝ թէ ոչ որ կամիցին և ոչ որ ընթանայ-
ցեն, ոչ եթէ զանձնիշխանութիւնն 'ի բաց բառնայ,
այլ ցուցանէ՝ զի թէպէտ և ամենայն ինչ քո է, այլ կա-
րօտ ես վերին պարգևացն. և թէ պարտ է և կամել և
ընթանալ, և վստահ լինել ոչ 'ի մեր ընտանի ջանս և 'ի
վաստակս, այլ յա̃յ մարդասիրութիւնն. զոր և այլուր
իսկ ասէր՝ թէ "Ոչ ես, այլ շնորհքն ա̃յ որ ընդ իս"։

Ու բարիոք ասաց՝ թէ զոր յառաջին պատրաստեաց
'ի փառս։ Ու քանզի այսու իմն նախատ լինէին զի շնոր-
հօքն ապրեցան, և անօթ և նախատինս իմն անձանց
վարկանէին, յաղագս այնորիկ մեծաւ առաւելութեամբ
բառնայ զայսպիսի կարծիս 'ի միջոյ. զի թէ ա̃յ այնպիսի
իրք փառք բերէին, սոքա ևս առաւել նոցա՝ որովք ա̃ծն
փառաւորեցաւ։

Ու հայեաց 'ի բարեմտութիւնն և յանդգաւ իմաս-
տութիւնն Պաւղոսի. զի կարող էր և առանց զՓարա-
ւոն 'ի մէջ բերելով և զնորին զպատիժսն՝ 'ի նոցունց
իսկ 'ի Հրէից անտի որք մեղանն՝ առնել յայտնի զբանն
և ցուցանել թէ որոց այնպիսի հարքն էին՝ ձեզ իսկ սի-
րեցին մեղքն. և սակս զինչ, ոմանք կորեան և ոմանք
ողորմութիւն գտին, և հաւանեցուցանէ զնոսա՝ մի ինչ
զարմանալ թէ և 'ի հեթանոսաց ոմանք ապրեցան առ
Հրէիցն կորստեամբն. այլ զի մի ինչ ծանրագոյն զբանն
գործեսցէ, վասն այսորիկ զիրս տանջանացն 'ի բարբա-
րոսէն յայտնմանէ բերէ 'ի մէջ, որպէս զի մի հարկաւո-
րեսցի կոչել զնոսա անօթս բարկութեան. իսկ զողոր-
մութեան անօթսն 'ի բազմութենէ Հրէից անտի բերէ
'ի մէջ։ Նոյնու և զա̃յ իսկ բաւական էր զարմանալ. զի
բազում անգամ ետես զնոսա պատրաստ առ 'ի կո-
րուստ, և միշտ զիւր զերկայնմտութիւնն և զներողու-
թիւնն ցուցանէր առ նոսա. և ոչ միայն երկայնմտու-
թիւն, այլ թէ բազում երկայնմտութիւն. բայց սա-
կայն չկամեցաւ զայսպիսի ինչ զփորձ իրացն 'ի Հրէից
անտի առնել։

Ու արդ ուստի իցեն, ասէ, ոմանք անօթ բարկու-
թեան և այլք ողորմութեան. յընտանի իւրեանց յօ-
ժարութենէն։ Իսկ ա̃ծ որ յոյժ բարերարն է՝ յերկո-
քանչիւրս ցուցանէ զիւր զքաղցրութիւնն. և ոչ եթէ

փրկելոցն միայն ազգացն, այլ և Փարաւոնի յիւրմէ կող-մանէ. քանզի յերկայնմտութեանն և նա և սոքա միա-պէս վայելեցին: Իսկ ապա եթէ չապրեցաւ, իւր ընտա-նի մտացն էր ամենայն վնասն, քանզի յա̄ծակայս կող-մանէ անտի չգտան ինչ նուազ իրք առ նմա որով մարթն էր ապրել:

Իսկ արդ տուր մեզ զլուծումն խնդրոյն 'ի ձեռն իրաց ուրուք, որպէս և այլ ուսուցք արժանի հաւատարմու-թեան զբանն կազմիցես: Իսկ ապա զինչ գործիցէ. ըն-թերց զմարգարէսն 'ի մէջ և ցուցանէ թէ նոքա իսկ ան-դուստ 'ի վերուստ յառաջագոյն զնոյնս գուշէին. քան-զի Ովսէա, ասէ, զայսպիսի դրեալ նշանակեր ասելովն այսպէս. "Կոչեցից զոչ ժողովուրդն ժողովուրդ իմ և զչսիրեցեալն սիրեցեալ": Իսկ զի մի ասիցեն թէ անար-գելով զմեզ՝ զմերս զանց արարեր, և զՈվսէա կոչեցեր վկայ և ասես թէ վերստին գուշէր և ասէր՝ թէ կոչեցից զոչ ժողովուրդն ժողովուրդ իմ: Վասնզի մինչ էին ոչ էին ժողովուրդ, յայտ է թէ հեթանոսք. և մինչ էին դարձեալ չսիրեցեալքն, նոքին իսկ հեթանոսք. բայց սակայն ասաց զնոցանէն թէ ժողովուրդ և սիրե-ցեալ. և ոչ այսչափ միայն, այլ եթէ որդիք եւս այ. քան-զի ասէ՝ թէ "Նոքա կոչեսցին որդիք այ կենդանւոյ": Իսկ ապա եթէ ասիցեն թէ զայս որք 'ի Հրէից անտի հաւատացին՝ ցուցանէ ասէ, սակայն և այսպէս հաստա-տուն լինի բանս: Զի եթէ վասն ապաշնորհացն որ այնչափ վայելեցին 'ի խնամսն և օտարացան և զժողո-վուրդն լինել կորուսին՝ այսչափ փոփոխմունք եղեն մին-չև դարձեալ որդիք լինիցին, ապա զինչ խափան և արգել այնոցիկ էր որ յետ ընտանանալոյն ընդ նմա ոչ եւս օտարացան, այլ 'ի սկզբանէ օտարք գոլով՝ յետոյ կոչեցան և ապրեցան, և 'ի ձեռն իւրեանց հնազանդու-թեանն նմին պատուի արժանիք գտան:

Իսկ արդ 'ի մէջ ածեալ զՈվսէա և չվարկանի զնա միայն բաւական, այլ և զԵսայի եւս 'ի մէջ ածէ և ցու-ցանէ զուգաձայն ընդ նմին բարբառեալ. ասէ. "Ես-այի աղաղակէ վասն Իսրայէլի". այսինքն թէ ամե-նայն համարձակութեամբ վերաձայնէ և ոչ ինչ պատ-կառէ: Իսկ արդ զոր, ասէ, այժմ ընդդէմ լինիք մեղա-դիք, յորժամ նա զփողոյն զիւր զձայնն պայծառացու-

ցանէ։ Եւ արդ զի՞նչ աղաղակիցէ Եսայի. ասէ. «Եթէ իցէ թիւ որդւոցն Իսրայէլի իբրեւ զաւազ ծովու, մնացորդք միայն ապրեսցին»։ Տեսանե՞ս զիարդ աւանիկ նա ոչ զամենեցուն ասէ թէ ապրեսցին, այլ որք արժանիքն միայն իցեն ապրանացն։ Քանզի չփափագեմ ինչ բազմութեանն, ասէ, ոչ զուարճանամ ինչ ընդ շախնդն բազմութեան ազգիդ այդորիկ, այլ զայնոսիկ միայն կամիմ փրկել՝ որք զանձինս իւրեանց արժանիս փրկութե̃ յօրինեցին։ Եւ ոչ եթէ ընդ վայր լոկ ինչ յիշեաց զաւազ ծովու, այլ կամեցեալ յուշ առնել նոցա զհին աւետեացն որոց անարժանս զինքեանս կացուցին։ Եւ արդ ընդէ՞ր այժմ ամբոխիցէք յորժամ լսիցէք թէ անկեալ էք 'ի խոստմանց անտի, զոր և ամենայն մարգարէքն յայտ առնեն՝ թէ չեն ամենեքին ապրելոց, այլ սակաւ և նուազունք։

Նոյն և զօրինակ փրկութեան ասէ։ Տեսե՞ր զմարգարէական հաւատարիմն, ապա 'ի միտ առ և զառաքելական զիմաստութիւնն թէ որպիսի վկայութիւնս 'ի մէջ բերէ, որ յոյժ իսկ և 'ի պատշաճ իրաց անտի էր 'ի ձայն։ Ոչ եթէ զայն միայն եցոյց թէ ոմանք են ապրելոց և ոչ ամենեքին, այլ թէ որպէս ապրեսցին՝ զայն եւս յաւել։ Եւ արդ զիա՞րդ իցեն ապրելոց և կամ որպէս ա̃ծ զնոսա արժանիս առնիցէ երախտեացն։

«Բան մի հակիրճ և համառօտ արդարութեամբ. զի զբանն համառօտ արասցէ տէր 'ի վերայ երկրի»։ Եւ զոր ասէն այսպիսի ինչ է, եթէ չեն ինչ պէտք ճանապարհորդութեան և աշխատութեան և ոչ օրինական իրացն տառապանք ինչ, այլ թէ յոյժ երագահասութեամբ է փրկութիւնն մեր. քանզի այսպիսի իմն են հաւատքն որ 'ի ձեռն փոքր բանի շնորհէ մեզ զփրկութիւն։ Եւ արդ զի՞նչ իցէ այն փոքր բանն. «Զի եթէ խոստովանեսցիս բերանով քով զտէր Յիսուս և հաւատասցես 'ի սրտի քում թէ ա̃ծ յարոյց զնա 'ի մեռելոց՝ կեցցես»։ Տեսե՞ր թէ զի՞նչ է բանն համառօտ զոր առնիցէ տէր 'ի վերայ երկրի։ Նոյն են մեծամեծ սքանչելիք զի փոքր բանս այս ոչ եթէ փրկութիւն միայն, այլ և արդարութիւն եւս շնորհեաց մեզ։

«Եւ որպէս յառաջագոյն ասէր Եսայիաս. եթէ ոչ տէրն զօրութեանց թողեալ էր մեզ զաւակ, իբրեւ

"Վասնզի գթեցին, ասէ, նոքա առ վիմին գայթակղութեան որպէս և գրեալ է. ահա դնեմ 'ի Սիոն վէմ գլորման և քար գայթակղութեան, և ամենայն որ հաւատասցէ 'ի նա՝ մի ամաչեսցէ,,: Տեսե՞ր դարձեալ որչափ համարձակութիւն ունին հաւատքն և ընդհանրական պարգևս. քանզի ոչ վասն հրէիցն միայն ասի, այլ վասն ամենայն իսկ առ հասարակ ազգի մարդկան. ամենայն որ թէպէտ և հրեայ, ասէ, և կամ հեթանոս և կամ սկիւթացի և կամ Թրակացի և կամ այլ ուրեք, և հաւատասցէ միայն, 'ի բազում համարձակութեան վայելէ: Իսկ սքանչելիք այն են մարգարէին, զի ոչ եթէ հաւատան ամենք՝ զայն առաց միայն, այլ թէ ամենք և չհաւատան. քանզի գթեցին, ասէ, որ է անհաւատութեան: Որ և մերագոյնն իսկ եցոյց զկորուստեալսն և զփրկեալսն՝ ասելովն "Թէ իցէ թիւ որդւոցն Իսրայէլի իբրև զաւազ ծովու, մնացորդքն միայն ապրեսցին,,. և դարձեալ "Եթէ ոչ տէրն զօրութեանց թողեալ էր մեզ զաւակ, իբրև զՍոդոմ լինէաք,,. և եթէ "Կոչեաց ոչ միայն 'ի հրէից, այլ և 'ի հեթանոսաց,,. զոյնս և աստ ասէ՝ թէ ոմանք հաւատան և ոմանք գայթակղին: Իսկ գթելն յայնմանէ լինի յորժամ չնկատիցեմք յառաջ զճանապարհն, յորժամ բերան բացեալ ընդ այլ ոք նայիցիմք յիմարելով: "Գթեցին, ասէ, առ վիմին գայթակղութեան,,: Քար և վէմ գայթակղութեան զայն ասէ որ 'ի բարուցն անհաւատիցն վախճան լինիցի:

Եղբարք եղե՞ ձեզ յայտնի աստուածն, եթէ կարօտ էք և բազում յայտնութեանց: Եւ այսպէս թուի՝ թէ որք անձանց միտ դնիցեն, զոգ ընդ մեզ գիտիցեն զաստուածեալսն. իսկ որպէս եթէ ոմանք մոռանայցեն, պարտ է նոցա որոց պատահեն ծանօթից՝ հարցանել և զիւրաւ ուսանել: Սորին աղագաւ և ես երկայնաձիգ արարի զպատմութիւն բանիցս, որպէս զի մի ընդ մէջ հատանիցեմ զհանապազորդ ասացութիւնն և յաւէ ցուցանիցեմ զյայտնութիւն աստուածոյն:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Վասն որոյ աստանօր հանգուցանեմ զբանս և ոչ ինչ ՚ի սովորականացն ձեզ ճառեմ այժմ, որպէս զի և մեր սովորութիւնն էր միշտ, այսինքն է վասն ընչից, վասն ողորմութեան, վասն ոխս չունելոյ. որպէս զի մի դարձեալ մթացուցանիցեմք զյիշատակս ձեր բազմութեամբ առասպելովքն: Վասնզի և ժամ իսկ է մեզ փութալ այսուհետև. ՚ի հայրենի տունն և ՚ի հանգիստն մեր ամենեցուն, և անդր ամենայն իրօք փութկել մեզ զբանս ՚ի փառաբանութիւն ամենեցունցն այ առ հատուրակ ամենեցունց հաղորդական հանգստեանքն՝ մեք որ ուսուցողքս եմք և դուք որ լսողքդ էք՝ առ հատուցակ փառս մատուցանեսցուք հօրն հանդերձ միածնի որդւովն և կենդանարար սուրբ հոգւովն, քանզի նորա իսկ է արքայութիւն և զօրութիւն, տէրութիւն և իշխանութիւն և համապատիւ փառաբանութիւն յամենայն արարածոց իւրոց այժմ և յաւիտեանս. ամէն:

## ՃԱՌ ԵՕԹՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

“Եղբարք, իմ կամք սրտի և աղօթք առ Ած վասն նոցա են ՚ի փրկութիւն„:

Հանդերձեալ է դարձեալ զկծեցուցանել զնոսա յոյժ առաւել քան զառաջինն. որով դարձեալ ՚ի բաց բառնայ զծանրաբեռն զկարծիսն, և բազում իմն ուղղութիւնս ՚ի կիր արկանէ: Ո՛չ, ասէ, ՚ի բանս միայն հայիցիք և մի ՚ի մեղադրութիւնսն եւեթ, այլ յայն զի ոչ թշնամութեան մտօք զայսպիսիսն բարբառիմ: Վասնզի և չէ իսկ զնոյնս ինքեանս ցանկալ ապրեցուցանել. և ոչ միայն ցանկայ, այլ և աղօթս ևս առնէ, և դարձեալ առեալ ՚ի բաց դառնալ: Վասն որոյ զկամսն ասա՝ ըղյոյժն ցանկութեանէն ասէ: Եւ արդ տես և զայն թէ որպէս առնէ զխնդրուածսն սրտի մտօք. զի ոչ եթէ լոկ ՚ի տանջանացն կամի զերծուցանել զնոսա միայն, այլ

որպէս զի և ապրեսցին՝ և բազում փոյթ ցուցանէ և աղօթս ևս առնէ։ Եւ ոչ եթէ յայսմ միայն, այլ և որ լաւ կարգին է՝ յայսմանէ ցուցանէ զսէր զբարեմտութիւնն զոր ունէր առ նոսա. զի որով հնարն էր, այնու հակառակի և բանագրաւէ՝ գոնէ ստուեր ինչ պատասխանատուութեան գտանել նոցա, և չկարէ զօրել՝ յաղթեալ 'ի բնութենէ իրացն։ Եւ ապա զինչ։

“Վկայեմ նոցա, ասէ ; զի զնախանձն Այ ունին, այլ ոչ գիտութեամբ„։ Ապա ուրեմն այս ներելոյ արժանի է և ոչ եթէ մեղադրութեան. զի եթէ վասն մարդկան չիցեն 'ի բաց հեղգեալք, ապա ողորմութեան արժանի են և ոչ տանջանաց։ Բայց տես որպէս խնամութեամբ 'ի պէտս անցք 'ի կիր արկանէ զբանն և ցուցանէ նոցա զընդդիմայն զյամառութիւնն, քանզի ասէ. “Տգէտ են Այ արդարութեանն„։ Պարծեալ թուի թէ ներելոյ ինչ արժանի իցէ բանս. այլ յաջորդն մեղադրութեամբ լի է, և զամենայն զպատասխանատրութիւն նոցա 'ի բաց բառնայ։ “Քանզի զիւրեանց զարդարութիւնն, ասէ, խնդրեն կացուցանել„։ Եւ որ վասն. “զի արդարութեան Այ ոչ հնազանդեցան„։ Զայս ասէ առ 'ի ցուցանել թէ զյաղթելն կամէին միայն, և եթէ յիշխանասիրութէն մանաւանդ քան 'ի տգիտութենէն մոլորեցան, և զի եթէ ոչ զնոյն ինքն զօրինացն զարդարութիւն հաստատեցին. Քանզի ասելն թէ խնդրեն կացուցանել՝ զայն ինչ յայտ առնէ. բայց սակայն այսպէս համարձակ չէր զայն։ Բայց և ոչ ասաց իսկ եթէ յերկաքանչիւր արդարութեանց անտի անկան, բայց յայժ խնամութեամբ իմն ակնարկեաց ընտանի իւրով հանճարուն։ Իսկ եթէ զիւրեանցն կամին կացուցանել, ասէ, բարեաւ իսկ յայտ է՝ թէ չկարացին հաստատել, և եթէ Այ արդարութեանն չհնազանդեցան, ապա յայտ է թէ անկան իսկ անտի։ Իւրեանց արդարութիւն զայն կոչէ զոր ոչ ևս զօրէին օրէնքն կատարել վասն քրտանցն և աշխատութեանցն։ Իսկ զայս արդարութիւն Այ վասն այնորիկ կոչեաց՝ առ 'ի բոլորովին իսկ վերին շնորհացն գոլ, և Այ արդարացուցեալ ձրի զմեզ և ոչ եթէ վաստակօք ինչ։ Բայց որք սովոր են միշտ հոգւոյն սրբոյ հակառակել, նոքա յամառէին օրինօքն արդարանալ և չկամէին մերձենալ 'ի հաւատսն։

Այս յայժամ չմերձենան 'ի հաւատս, և ոչ արդարու-
թեանն նորա հաղորդ գտանին. և դարձեալ օրինացն
չկարացեալ լնուլ արդարացուցանել, ապա ամենայն
ուրեք անկեալ գտանիցին։

«Քանզի կատարումն օրինացն, ասէ, Քրիստոս է
յարդարութիւն ամենայն հաւատացելոց»։ Տեսե՞ր ըզ-
Պաւղոսի զիմաստութիւնն, քանզի վարդապետութեան
էր բանն. զի մի որք 'ի Հրէից հաւատացեալքն էին՝
վարկանիցին թէ զկէսն ունիցին՝ և 'ի կիսոյն նուազեալք
իցեն և անօրէնութիւն ինչ համարիցին զայն. քանզի
և չէր իսկ պարտ զայն երկիւղ ունել 'ի մտի, և մի դար-
ձեալ յանձանց ինչ ակն ունել առ 'ի զայն ուղղելոյ և
ասել՝ զի թէպէտ և այժմ ոչ կարացաք, այլ է երբեմն
զի կատարեսցուք։ Բայց տես զկարգ կարգէ և ցուցանէ
թէ մի է արդարութիւնն, և 'ի նոյն իսկ յայն վերա-
բերի. և որ զայս արդարութեան զհետ երթայ որ 'ի
հաւատոցս է, ապա և զայն կատարէ. իսկ որ զայս ա-
նարգէ, և յայնմանէ հանդերձ նուազ անկանի։ Որ
եթէ կատարումն օրինաց Քրիստոս է, և յայժամ ըզ-
Քրիստոս չունիցի, թէպէտ և զայն համարեսցի թէ
ունիցի, ոչ ինչ ունի. իսկ որ զՔրիստոս ունի, թէպէտ
և ոչ ինչ կարաց ուղղել ըստ օրինացն, զամենայն ինչ
ընկալաւ։ Քանզի կատարումն բժշկութեան առողջու-
թիւն է. զոր օրինակ որ կարողն է առողջ առնել, թէ-
պէտ և չգիտիցէ ինչ զբժշկական զարուեստն՝ զամենայն
ինչ լիով գիտաց. այնպէս և որ չգիտիցէն բժշկել, թէ-
պէտ և մերձաւոր զինքն արուեստին վարկանիցի, յամե-
նայնէ անկեալ է։ Նոյնպէս և առ օրէնսն և առ հաւատ-
ոյն է իմանալ. վասն զի որ զայս ունի, և զայն կատա-
րեալ ունի. իսկ եթէ սոցա արտաքոյ իցէ, ապա յեր-
կաքանչիւրոցն իսկ օտարացեալ գտանի։

Այս արդ զի՞նչ կամէին օրէնքն. Արդարացուցանել
զմարդիկ, այլ ոչ զօրեցին. վասն զի ոչ ոք լնուլ կա-
րաց կատարել։ Քանզի այս իսկ էր օրինացն կատա-
րումն, և այսմ ամենայնի ակն ունէր, սորին. վասն և
ամենայն ինչ լինէր՝ տօնքն և պատուիրանքն և զոհքն
և այլն ամենայն, որպէս զի մարդն արդարասցի։ Այլ
զայսր ամենայնի զկատարումն ակնարկեաց Քրիստոս
մեծապէս իմն 'ի ձեռն հաւատոցն։ Մ՛ի երկնչիր ինչ,

ասէ, որպէս թէ զանցանես ինչ զօրինօքն. վասն զի առ հաւատոյն մատուցար: Յայնժամ զանցանես զնոքօք, այսինքն է ըստ օրինօքն, յորժամ վասն օրինացն՝ Քրիստոսի չհաւատաս. որպէս զի յորժամ Քրիստոսի հաւատաս, և զօրէնսն կատարես, մանաւանդ թէ և առաւել յորժամ զմեծագոյն արդարութիւն ընկալար: Ապա քանզի այն յայտնապէս վճիռ իսկ էր, 'ի դրոց այնուհետև հաւատարիմ առնէ զիրսն:

“Մովսէս, ասէ, գրէ որ յօրինացն արդարութիւնն է„: Եւ զոր առէն այսպիսի ինչ է, թէ Մովսէս ցուցանէ մեզ զարդարութիւնն որ յօրինաց անտի է թէ որպիսի ինչ իցէ և կամ զիարդ: Եւ արդ որպիսի՞ ինչ իցէ և կամ յումմէ՞ իմեքէ լինէր հաստատուն: Ի կատարելոյն զպատուիրանսն. քանզի ասէ՝ թէ “Որ արասցէ զնոսին՝ կեցցէ նոքիմբք„: Եւ այլ ազգ չէր հնար արդարանալ յօրինացն, բայց եթէ զամենայն՝ ոք կատարէր. և այս չեղև ումեք հնար 'ի մարդկանէ: Ապա ուրեմն անկաւ արդարութիւն այն որ 'ի հաւատոցն էր:

Այլ ասա մեզ զմիւսն, ով Պաւղէ, զայն արդարութիւն որ 'ի շնորհաց անտի է: Եւ արդ ո՞ր իցէ այն և կամ ուստի՞ հաստատեցաւ: Լուր նմին իսկ որ յայտնապէս զայս 'ի գրոց յայտ առնէ: Եւ վասն զի յանդիմանեաց զնոսա, փոխի դարձեալ 'ի սոյն յայս և ասէ՝ թէ “Որ հաւատոցն արդարութիւնն է, այսպէս ասէ.' Մի ասեր 'ի սրտի քում թէ ո՞վ ելանիցէ յերկինս, այսինքն է զՔրիստոս 'ի խոնարհ ածել. և կամ ո՞վ իջանիցէ յանդունդս, այսինքն է զՔրիստոս 'ի մեռելոց 'ի վեր ածել: Այլ զի՞նչ ասէ. մօտ է բանն 'ի բերան քո և 'ի սրտի քում, այսինքն է բանն հաւատոց զոր քարոզեցաք: Զի եթէ խոստովանեսցես բերանով քով տէր զՅիսուս և հաւատայցես 'ի սրտի քում թէ ա̄ծ զնա յարոյց 'ի մեռելոց՝ կեցցես„: Որպէս զի մի ասիցեն Հրեայքն թէ զիա՞րդ գտին նոքա զմեծագոյն արդարութիւնն, որոց և զնուազն երբեք չէր ծանուցեալ, վասն այսորիկ խորհուրդս իմն ընդդիմակաբանութեան 'ի միջի դնէ և ցուցանէ թէ թեթևագոյն ճանապարհ գտին նոքա քան զձեզ: Վասն զի ձեր արդարութիւնն որ ըստ օրինացն էր, ասէ, զամենայն զկատարումնն պահանջէր, և ապա թէ յայնժամ հաղիւ կեցցէ. իսկ որ 'ի հաւա-

տոցն արդարութիւնն է, ոչ այսպիսի ինչ ասէ, այլ զինչ. “Եթէ խոստովանեսցես բերանով քով տէր զՅիսուս, և հաւատասցես 'ի սրտի քում թէ ա̃ծ յարոյց զնա 'ի մեռելոց՝ կեցցես„:

Այս զի մի թուեսցի գիրքն ասացուածն՝ արհամարհելի և նուաղ ինչ, կրկին ընդարձակէ զբանն վասն նորին իրաց. քանզի ոչ անդրէն իսկ առժամայն 'ի սոյնս յայս եկն զոր ասացաքս, այլ զինչ ասիցէ՝ թէ “Որ 'ի հաւատոց արդարութիւնն է՝ այսպէս ասէ. մի ասիցես 'ի սրտի քում թէ ով ելանիցէ յերկինս, այսինքն է զՔրիստոս իջուցանել. կամ ով իջանիցէ յանդունդս, այսինքն է զարձեալ զՔրիստոս 'ի մեռելոց 'ի վեր ածել„: Այլ զոր օրինակ առաքինութեան 'ի ձեռն գործոց հակառակ կայ ծուլութիւն, և զաշխատութիւնս լուծանել յայժ պէտք են ոգւոյն տքնութեան՝ որպէս զի մի մեղկիցի, և սոյնպէս յորժամ հաւատայցէ՝ են խորհուրդք որ առնուլեն զբազմաց միտս, և պէտք են այնպիսումն երիտասարդական և յայժ զօրաւոր ոգւոյ, որպէս զի կարիցէ 'ի դիմի հարկանել այնպիսի խորհրդոց: Սորին վասն և նա իսկ զայսպիսիս 'ի մէջ եբեր:

Այլ զոր յորժամ վասն Աբրահամուն ճառեալ ասաց, զայն և աստ գործէ: Զի անդ եցոյց եթէ 'ի հաւատոցն արդարացաւ, զի մի կարծիցեն թէ 'ի զուր ինչ և ընդ վայր պսակեցաւ առանց իրիք իրաց, բարձրացուցանէ զհաւատոցն զգնութիւն ասելով՝ թէ “Որ յանյոյսն յուսով հաւատաց նա 'ի լինել նմա հայր ազգաց բազմաց, և ոչ տկարացաւ հաւատովքն. Թէպէտ և հայեցաւ 'ի մեռելութիւն մարմնոյ իւրոյ և 'ի մեռելութիւն արգանդին Սառայի, սակայն յաւետեացն ա̃յ ոչ երկմտեաց անհաւատութեամբ, այլ ետ փառս ա̃յ և հաստատեցաւ 'ի միտս իւր թէ որ խոստացաւն՝ կարող է առնել„: Եցոյց եթէ ուժոյ պէտք են և բարձրագոյն ոգւոյ՝ որ զայնպիսի յոյսն ընդունել մարթասցէ, որպէս զի մի ինչ խափան լիցի 'ի տեսանելեացս: Զսոյնս այժմ աստ գործէ և ցուցանէ թէ փիլիսոփայական վարուց պէտք են և մտաց՝ որ մանաւանդ քան զերկնից բարձրութիւնն գերազանցեն: Վասն որոյ և չասաց իսկ եթէ մի ասեր, այլ թէ մի ասիցես 'ի սրտի քում, այսինքն է և մի զմտաւ ածեր անգամ յաղագս երկբայութեան ինչ

և ասել քեզ ընդդէմ հակառակ։ Այլ զիա՞րդ գուցէ հնար, ասէ. գոյ և կարի իսկ քաջ. մանաւանդ զի այս իսկ առանձինն է հաւատոցն՝ յորժամ զատորինս զամենայն թողեալ, և որ ՚ի վեր քան զամենայն բնութիւն է՝ խնդրեսցես, և զանկար խորհուրդս ՚ի բաց մերժեսցես, ապա յա͞յ ՚ի զօրութէ անտի զամենայն իմն ընկալեալ։

Այլ ոչ եթէ զայն միայն ասէին Հրէայքն, այլ թէ և ՚ի հաւատոցն ոք չկարէ ապրել։ Իսկ Պաւղոս յայլ իմն առանի զեղեալ իրսն. որպէս զի յորժամ ցուցցէ թէ այնչափ մեծ են հաւատքն, մինչև յետ իրաց. իմն գործելոց նոյին հաւատոց պէտք են, և այսու ցուցանէ թէ յիրաւի պատկին նոքա որք հաւատովքն արդարացան։ Այլ Ճաշս իմն որ ՚ի հնումն կային ՚ի կիր արկանէ. քանզի զի փութայ միշտ ՚ի նորաձևութեանցն նոցա և ՚ի կռուոյ մեղադրութեանն զոր առ հաւատոն ասէին՝ յայտնանէ փախուցէլ։ Վասն զի որ իմն հաւատոցն էր՝ զայն ասէ սոսս, իսկ վասն պատուիրանին Մովսէսի ասաց իսկ նոցա. և այսու ցուցանէ նոցա թէ յոյժ իսկ անբաւ վայելեցին ՚ի խնամսն ա͞յ։ Վասնզի չէ ասել, ասէ, թէ յերկինս պէտք են եղանելոյ և կամ ընդ հանճարարած մեծ անդունդս հասանել անցանել. և այնպէս գտանել զպատուիրանն. այլ զայնչափ զմեծն և որ դժուարին թուէր՝ յոյժ դիւրին և հարթ գործեաց մեզ ա͞ծ։

Այլ արդ զի՞նչ իցէ. "Մերձ է, ասէ, բանն ՚ի բերան քո"։ այսինքն է թէ դիւրին է. քանզի ՚ի սրտիդ քում և ՚ի լեզուիդ կայ փրկութիւնն. և չեն պէտք երկայն ճանապարհ գնալ և ոչ ընդ անդունդս նաւել և ոչ ընդ լերինս անցանել և կամ այնպիսեաւն ապրել։ Այլ թէ չկամիցիս իսկ բնաւ ճանապարհորդել ուրեք, և ՚ի ներքս ՚ի տանս իսկ նստեալով գտանես զփրկութիւնն. քանզի ՚ի բերան քում և ՚ի սրտի քում են պատճառք փրկութեանն։

Այս և այլուստ ևս դիւրագոյն ցուցանէ զհաւատոցն բան և ասէ այսպէս՝ թէ "Աստուած յարոյց զնա ՚ի մեռելոց"։ Ի միտ առ զպատուոյն զմեծութիւն, և ապա տեսանես թէ ոչ մի իմն սոսս կամակորութի կայ յիրսն։ Այս ուրեմն թէ տէր է, այն ՚ի յարութենէն յայտ եղև. զոր և յորժամ սկիզբն իսկ առար թղթոյս, զայնմանէ նախ ճառեաց՝ թէ "Սահմանելոյ որդւոյն ա͞յ ՚ի

յարութենէ մեռելոց տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
տոսի,, ։ Այլ զի յարութիւնն եւս դիւրին է, յայտ 'ի զօրութենէ այնորիկ է որ յարեաւն, Թէպէտ և յոյժ յերկբայս ոք վճնիցի ։ Իսկ աստ յորժամ մեծ է արդարութիւնն այն՝ որ 'ի հաւատոցն է և փութովի և դիւրընկալ և այլով իւիք չէր արդարանալ, ապա զիա՞րդ չիցէ այս վերջին անմտութեան մոլորութիւն 'ի դժուարինն ձեռնարկել, և զհարթն և զդիւրինն 'ի բաց մերժել յանձանց. վասն զի և ոչ ասել իսկ ունիք թէ որպէս 'ի ծանրաքեռն ինչ իրաց 'ի բաց կայցէք ։

Տես որպէս զերկեալ գտանին յամենայն ներելոյ. քանզի որպիսում պատասխանատուութեան արժանի իցեն յորժամ զծանր իրաց զհետ մտեալ իցեն և միշտ տագնապիցին, իսկ որ դիւրինն և թեթևն է՝ զայնց անեն. մանաւանդ արդ կարողն էին կեալ՝ և զայն եւս շնորհէր նոցա, զոր օրէնքն ոչ զօրեցին ։ Այլ արդ այս ոչ այլ ինչ է, բայց միայն հակառակող մտաց և որ առ Ած երկպառակութիւն առնէ ։ Վասն զի օրէնքն ծանրատաղտուկք էին, իսկ շնորհս դիւրինք. օրէնքս թէպէտ և բիւր անգամ հակառակեսցեն[1], չկարեն արդարացուցանել. իսկ շնորհքն և դիւրեանցն և զօրեանցն զարդարութիւն պարգևեն ։ Այլ արդ ո՞ր բան հանդիսական գտանի 'ի նոսա յորժամ վասն օրինացն հակառակիցեն և շնորհացս ընդդիմանիցեն գտանին ընդ զուր և ընդ վայր ։ Այլ ապա քանզի մեծագոյնս իմն ճառեաց, դարձեալ 'ի գրոց առնէ զառաջեալսն հաւատարիմ ։

“Քանզի ասէ գիր՝ ամենայն որ հաւատայ 'ի նա, մի ամաչեսցէ. քանզի չէք խտիր ոչ Հրէի և ոչ հեթանոսի, վասն զի նոյն տէր է ամենեցուն, բաւական յամենեսին որ կարդան առ նա. քանզի ամենայն որ կարդասցէ զանուն տեառն՝ կեցցէ,, ։ Տեսե՞ր որպէս զհաւատոցն և զխոստովանութենէն 'ի մէջ բերէ զվկայութիւնն. զի ասելն թէ ամենայն որ հաւատասցէ 'ի նա, այնու զհաւատոն եցոյց. իսկ ասելովն թէ ամենայն ոք որ կարդասցէ զանուն տեառն՝ զխոստովանութիւնն յայտնեաց ։ Այլ ապա դարձեալ զհասարակաց զհաւատոյն յայտ յանդիման քարոզէ, և զնոցա զհպարտութեան զպատուոն զի-

1 Յօրինակին գրեալ էր յանս յառաջեսցէն ։

ցուցանէ. և զոր ևս յառաջ 'ի ձեռն մկրտութեան ե-
ցոյց, զայն և աստ փոքր բանիւք վերստին յիշեցուցա-
նէ։ Այլ զմարմնաւոր յայտնէ թէ չիք ինչ 'ի միջի ընդ
հրէայն և ընդ անթլփատն, քանզի չիք ինչ խտիր, ա-
սէ, հրէի և հեթանոսի։ Այլ զոր ինչ զՀօրէ ասաց
յայսպիսի իրաց յօրինակին, զայն աստ զՈրդւոյ ասէ.
որպէս և յառաջինն ճառեալ ասէր՝ թէ "Հրէից մի-
այն իցէ Ա͞ծ և հեթանոսաց ոչ. այո և հեթանոսաց,
վասն զի մի է Ա͞ծ", սոյնպէս և այժմ ասէ՝ թէ "Նոյն
ինքն տէր է ամենեցուն որ կարդան առ նա"։ Տեսանես
զիարդ ցուցանէ զնա յոյժ փափագեալ մերում փրկու-
թեան, զոր և իւր իսկ մեծութե՜ զայսպիսի իրս վարկանի։

Այլ արդ մի վհատեսցուք և մի զայս ածցուք զմտաւ
եթէ իւր վարկանիցի, և զղջանայցեմք ինչ և 'ի յուսա-
հատութիւն անկանիցիմք. վասն զի իւր ընտանի հա-
րստութիւն զմեր փրկութիւնն համարի, և մեզ զայն
զմեծութիւն պարգևէ որ ոչն երբեք զադարէ 'ի մեծա-
ցուցանելոյ. քանզի սոյն իսկ այս մեծութիւն 'ի բա-
զումս բաշխեաց զպարգևսն։ Այլ մանաւանդ զի այս իսկ
ամբոխէր զնոսա՝ 'ի զահերիցութեան վայելել քան զա-
մենայն տիեզերս կամէին, իսկ այժմ ոչ այնպիսի ինչ
յորժամ 'ի հաւատոց անտի հաստատեսցուք յաթոռս,
չվարկանիմք եթէ քան զընկերսն ինչ աւելի ունիցիմք։
Իսկ անդ յայնժամ միշտ զմարգարէսն 'ի մէջ բերէր որով
մարթէին թագել և հանել 'ի մտաց նոցա զայնպիսի զախ-
տս՝ և զուգապատիւ առ ընկերսն լինել. քանզի ասէ՝ թէ
"Ամենայն որ հաւատասցէ 'ի նա, մի ամաչեսցէ"։ Այլ
հանապազ զամենայնն դնէ, որպէս զի մի ասիցեն ընդ-
դէմ ինչ։

ՅՈՐԴՈՐԱԿ

Այլ չիք ինչ զառաւելագոյն քան զխոնարհութիւն, մա-
նաւանդ թէ նա իսկ է որ ամենեւին զնոսա կորզեան. վասն
որոյ և Քրիստոս իսկ ասէր ցնոսա՝ թէ "Զիա՛րդ կա-
րէք դուք հաւատալ որ 'ի միմեանց խնդրէք զփառս, և
զփառս միայն ա͞յ ոչ խնդրէք"։ Այս ախտ է որ յետ
կորստեանն ծաղր ևս կացուցանէ, և յառաջ քան զան-
տի տանջանսն աստէն իսկ բիւր չարեաց պաշարէ զմեզ։

Այլ արդ եթէ կամիցիք հաւատարիմ իսկ ուսանել, թո-ղում 'ի բաց զերկիւղս սաստիկ նորա զմեզ հանէ, և զգե-հեննս յոր արկանելոցն է զմեզ, և արդ զխոկն իսկ ստա քննեսցուք զամենայն։ Ո՞չ ինչ քան զնա ծախիչ կայցէ, և կամ զինչ քան զնա անվայելուչ և գժուա-րին գտանիցի։ Այլ զի ծախիչ է ափսոս այս, յայտ ան-տի է զոր 'ի զուր և ընդվայրն ծախեմք 'ի թատերսն և 'ի ձիրնթացսն կառավարաց՝ և յայլսն ևս յայնպիսիսն ընդվայր և յանմիտ յաստատութիւնս, 'ի տանցն չի-նուածսն 'ի պայծառս և 'ի մեծագինս և յայլս ամե-նայն՝ զոր մեծաւ առաւելութեամբ յօրինեն իւրեանց անխտութեամբն, զոր չէ հնար այժմ բանիւ յանդի-մանն կացուցանել։ Այլ զի ծախիչ է ափսոս այն և բազ-մաթոյն, անտի յայտ է զոր ինչ ուսուցանեն ամենք. վասն զի որ զնայն յանձին կրէ, հարկ է զի յափշտա-կող և ագահ գտանիցի. որպէս զի զայնպիսի զգազան կերակրիցէ, յայլոց յարբաս զիւր ձեռս մխեալ յափշտա-կեսցէ։

Այլ զինչ ասեմ եթէ զաւարանն. զի ոչ եթէ զինչն միայն, այլ և զոգիսն իսկ ուտէ այնպիսի հուր. և ոչ միայն զանժամանակեանս, այլ և հանդերձեալսն իսկ գործէ մեզ զնահ. քանզի մայր գեհեննին է փառասի-րութիւն և զանգն նորա բորբոքէ և զթոյնս որդանցն արկ։ Այլ երանի թէ զանէ 'ի վախճանին արգել ինչ լի-նէր ախտին, սակայն ոչ այնչափ ինչ լինէր կարի չար։ Վասն զի այլ ամենայն ախտքն 'ի հասանել մահուն լուծանին, իսկ փառասիրութիւն յամառեալ հակա-ռակի և յետ վախճանին զիւր զգնութիւն յանդիմանն կացուցանել 'ի մեռեալ մարմնի անդ։ Յորժամ զգե-րեզմանս պայծառս և զարդարունս՝ և զամենայն զիւր ըղ-կեանսն յայն ծախիցէ, և այնպէս կանգնեալ զյիշա-տակ գերեզմանին, և զպաստառն ազգի ազգիս և փա-փուկս և մեծագինս նեխեալ մարմնոյն բազում փութով յաւաղագոյն պատրաստեն. և զինչ զանխնայն յաղագս խերեկչի մոյ և պատառոյ հացի լուածոյ, հանեն 'ի թշնամանս զաղքատս որ մերձենան առ նոսա. իսկ 'ի վախճանի իւրեանց բազում սաստութեամբ յօրինեն մեռեալս որդանցն։

Այլ արդ զինչ այլ ինչ բանաւորացն քան զայսպիսի

ախտ կայցէ: Վասն զի յայժմ ախտէ և անպատեհ սէրք ծնանին. քանզի բազումք ոչ եթէ տեսլեան երեսացն ցանկան և ոչ դարձեալ խառնակման ցանկութեան, այլ միայն առ պարծանս փառասիրութեան. որպէս զի ասիցեն՝ եթէ զայսինչ զանուանի ընկեցի ՚ի չնութիւն: Իսկ զինչ պէտք են զամենայն ասել որ ինչ անտի բուսանին չարիքն: Այս իսկ ինքն զգլխաւորն կամէի բերել անգամ անողորմ բարբարոսացն ծառայել, քան փառասիրութեանն մի անգամ. վասն զի նոքա չտան ինչ այնպիսի հրամանս գերեացն որպէս փառասիրութիւնն իւրոց հնազանդելոցն: Իսկ արդ զինչ հրամայիցէ. ամենեցուն, ասէ, ծառայ լեր, թէպէտ և երևելի ոք իցէ քան զքեզ և կամ ՚ի վայր. ամենեցուն շողոքորթեա, որպէս զի առնուցուս փառս. արհամարհեա զոգիդ, մի ինչ փոյթ առներ զառաքինութենէ, ծաղր արա, արհամարհեա զազատութիւն, սպան զքո զփրկութիւն. թէպէտ և բարիս ինչ գործիցես, մի ըստ Այ հաճոյիցն, այլ առ ՚ի ցոյց բազմաց, որպէս զի կորուսցես զպսակն որ անտի քեզ լինիցի. թէպէտ և ողորմիցիս ումեք և կամ պահիցես, զաշխատութիւնս առ յանձն, բայց զվարձս շահին փութաս կորուսանել: Իսկ արդ զինչ ինչ քան զայնպիսի հրամանս անօրինագոյն կայցէ: Անտի առ սկիզբն չարակնութիւն, անտի և անբարտաւանութիւն, ՚ի նմանէ ծնաւ պատկեր արծաթսիրութեանն. քանզի զգեստս ծառայիցն և զոր ՚ի բարբարոսացն գնես զմանկունսն՝ յոսկի հանդերձես, և ոսկեզանազարդս կուտես և փաղաքշանս, և արծաթապատ կառս յօրինես և զայլն ամենայն՝ որ քան զորս ևս ծաղրալիցքն են. որ ոչ եթէ առ հեշտութեան ինչ և կամ վասն պիտոյից լինին, այլ առ փառասիրութեան միայն:

Այո, ասէ, գիտեմք թէ չար է ախտս այս և ամենեցուն քաջայայտ է. բայց թէ ո՞րպէս փախչել մարթի ՚ի նմանէն՝ զայն պարտ է ասել մանաւանդ: Թէ հաւատացեալ գիտես ՚ի մտօդ թէ ստոյգ դժնեայ է ախտն, սկիզբն արարեր առաքինութեան վարուց գիտելով զայն: Վասն զի որ յախտին կայ, երբեք խնդրէ զբժիշկն. և եթէ զայն ուսցիս հաւաստեաւ թէ ախտ են իրքն՝ կարես առողջել: Իսկ ապա եթէ այլ ճանապարհ խնդրեսցես որով յախտէն կարասցես փախչել, ես քեզ ցու-

ցանեմ. Նայեաց 'ի վեր առ ա՟ծ յամենայն ժամ եւ բաւական վարկանիցիս զայն փառս որ 'ի Նմանէն քեզ շնորհիցին։ Թէպէտ եւ ատեանիցես զախտն զի խաղաղիցէ զքեզ եւ զրգռիցէ՝ զի ատեացես ծառայակցացն քոց զաղղութիւնն, խորհեաց դարձեալ զայն եւ ատեացես ընդդէմ մնացղ՝ եթէ յետ ատելոյն ոչ ինչ շահ լինի, այլ եւ վնաս. եւ շիջո զանպատեհ զպանկութիւնն։ Եւ դարձեալ ցհօգիդ ասա՝ թէ ահա ցայսքան ժամանակս երկնեէիր յայտնել ումեք զքո ուղղութիւնն, եւ ոչ կարացեր պահել 'ի լաւութեան, այլ յամենեսեան իսկ տարածեցեր, որպ զինչ աւելի քեզ յայտնանէ եղեւ։ Ոչ եղեւ եւ ոչ ինչ, իսկ վնաս բազում, եւ ընդ վայր թափեցեր զարդիւնան զոր բազում ջանիւ եւ աշխատութեամբ ժողովեցեր։

Ընդ այսոսիկ եւ զայն եւս ած զմտաւ՝ եթէ եղծանելի են բազմաց հաչիւք եւ իրաւունք. եւ ոչ եթէ եղծանելիք միայն, այլ եւ երագ իսկ թառամին։ Զի թէպէտ եւ առժամանակ մի սքանչանան ինչ, եւ փոքր մի ժամանակ 'ի վերայ անցեալ՝ ամենեցունց մոռացօնք լինին, եւ լոկ միայն զի որ յայն շնորհեալ էր քեզ պատիւն՝ յափշտակեցին 'ի քէն եւ զիւրեանցն ոչ զօրեցին պահել առ քեզ։ Զի թէպէտ եւ զիւրեանցն տուեալ էր քեզ, բազում թշուառութիւն իսկ էր այն, զի զերկնաւորն ընդ երկրաւորիս փոխանակէիր. իսկ յորժամ եւ այս եւս 'ի մէնջ 'ի բաց հանեցի, զոր պատուախնդրութիւն ունիցիմք յորժամ վասն չկալեացս զհաստատունն վաճառիցեմք, եւ վասն սակաւ մի գովութեանց զանչափ զքաղցրութիւնն կորուսանեմք։ Զի թէպէտ եւ բազումք իցեն որ գովիցեն, մանաւանդ եթէ այնու իսկ եմք աղորմելիք զի 'ի բազմաց զգովութիւնն խնդրեմք։

Իսկ արդ եթէ սքանչանաս ինչ ընդ ատեացեալն, լուր զՔրիստոսի որ զայսպիսի զհամար բերէ 'ի մէջ. "Վայ, ասէ, ձեզ յորժամ բարի ասիցեն զձէնջ մարդիկ"։ Մանաւանդ եթէ յիրաւի իսկ. քանզի ամենայն արուեստք զիւրաքանչիւր զարուեստագործն կարգեն զատաւորս, եւ զիւրեանց զառաքինութեանն զհանդէս բազմաց հրամայեն. այլ ոչ եթէ յառաջ քան զամենայն զնա, մանաւանդ եթէ նախ՝ քան ամենայնի խնամ տանել՝ որով պատկերին կարեմք։ Եւ զայս զբանս այժմ

զգեսցուք և յարձ և 'ի զուրս և 'ի միտս, և միշտ հա-
նապազ տասցուք յանձինս մեր՝ թէ վայ մեզ յորժամ
բարի ասասցեն զմէնջ ամենայն մարդիկ։ Վասնզի նո-
քին իսկ որք ասենն զբարին, 'ի վերջոյ դարձեալ բամ-
բասեն որպէս զնենափառս և զփառասէրս և զցանկացողս
առ 'ի նոցանէ գովութեանցն. իսկ ա̃ծ ոչ ինչ այսպէս,
այլ յորժամ տեսանիցէ զքեզ հարեալ 'ի փառսն որ 'ի
նմանէն են, յայնժամ մանաւանդ գովէ զքեզ և զար-
մացեալ յայտ յանդիման քարոզէ զերան։ Իսկ մարդիկ
ոչ այսպիսի ինչ, այլ փոխանակ ազատի՝ ծառայ առնեն
զքեզ, և վասն մերկ բանին զոր շնորհենն քեզ սուտ
գովութեամբն՝ յափշտակեն 'ի քէն զճշմարիտ վաշխն,
և քան զարծաթագինսն ևս մանաւանդ զքեզ 'ի հնա-
զանդութեան կացուցանեն. վասն զի նոքա ըստ կարգի
ունին զհնազանդութիւնն իւրեանց տերանցն, իսկ դու
առանց հրամանի և կարգի ծառայես։ Վասն զի և ան-
տաս իսկ ոչ հրաման առնուլ 'ի նմանէն. այլ միայն եթէ
ճանաչես թէ որով բերկրի փառասիրութիւնն, և ապա
այնուհետև և զոր ինչ չհրամայեն՝ և զայնս ևս գործես։
Իսկ արդ որպիսում գեհենի չիցեմք արժանի յորժամ
զընդունայն զՋանսն և առանց հրամանի իսկ յօժարու-
թեամբ կատարեմք. իսկ ա̃ծ որ զօրհանապազ բողոքէ
և հրամայէ և խրատէ՝ և ոչ այնպէս լսեմք նմա։

Բայց սակայն թէպէտ և փառաց ինչ տենչանայցես,
փախիր 'ի մարդկային գովութեանցն, և ապա յայն-
ժամ հասանես փառաց. 'ի բաց դարձիր յայնցանէ որք
զքեզն բարեբանեն, և ապա յայնժամ վայելեսցես 'ի
բիւր գովութիւնս և յա̃յ և 'ի մարդկանէ։ Վասնզի չեմք
սովոր զարմանալ ընդ այնպիսի ոք՝ որպէս որք փառացն
տենչանայցեն, և ոչ դարձեալ զարմանալ և գովել՝ որ-
պէս որք արհամարհիցեն զգովութիւնս։ Զի եթէ
մեք այսպէս, ապա ևս առաւել ամենեցունցն ա̃ծ. և
յորժամ նա զքեզ փառաւորեսցէ և գովիցէ, ո՞ ոք քան
զքեզ երանելի կայցէ։ Զի որչափ 'ի մէջ իցէ փառաց
և անարգութեան, այնչափ վերինն փառացն և մարդկայ-
նոցս է ընտրութիւն. մանաւանդ թէ ևս բազում ինչ
և անբաւ։ Զի եթէ այնպէս յոռի և դժուարատես է
ախտն այն՝ մինչև առանձինն իսկ մեզ անձթանս առնէ,
իսկ յորժամ 'ի մէջ ընկերացն զնա քննիցես, ապա

կարես 'ի միտ առնուլ թէ որչափ ինչ իցէ օգտութիւն նորա: Որ օրինակ կին ոք այլ ընդ այլ, և 'ի հրապարակի անամօթեալ՝ յայտ յանդիման զինքն ամենեցուն մատնէ, սոյնպէս և փառասիրութեանն ծառայք. մանաւանդ եթէ քան զայն այս ուժգին է: Քանզի փոխ բազում անգամ՝ ամանք 'ի հանճարեաց անտի որք հարեալ էին 'ի սէր նորա, արհամարհեցին և ոչ ինչ համարեցան. իսկ դու զքեզ իսկ ամենեցուն առաջի եղիր՝ հացկատակաց և աւազակաց և որք զքասակս ընչիցն հատանիցեն. քանզի այսպիսի գովութեանց այսպիսի թէատրոն յօրինեցաւ ձեզ: Այլ յորժամ առանձին միայն ես՝ և ոչ ինչ արժանի վարկանիս զնոսն, և յորժամ գովողքն առ քեզ ժողովեսցին՝ զնոցա զբանն քան զքո զփրկութիւնն նախամեծար համարիցիս, և քան զամենեսին զնոսա անարգ գտանիցիս: Այլ զի՞նչ չիցես անարգագոյն որ ընկերացն գովութեանց կարօտ ես, և չհամարեալ զքո անձինդ միայն բաւական՝ թէ և ոչ յընկերացն առնուցուս փառս:

Այլ արդ չածիցես զմտաւ և զայն, աղէ ասա ինձ, հանդերձ առաջելովքս, զի եթէ երևելի իցես և ամենեցուն շնորհաւոր և յանկարծ մեղիցես ինչ՝ բիւր չարախօսս ունիս. իսկ եթէ աննշան ոք իցես, 'ի զգուշութեան պահիս: Այո, ասէ, այլ և յուղղութիւնսն բազումք սքանչանան: Այլ այն իսկ են անհնարին չարիք, զի ոչ միայն 'ի մեղանչելն, այլ և յուղղութիւնսն գործել մատնէ զքեզ փառասիրութիւնն. և յայնժամ բազում անգամ խափանէ զքեզ և չտայ 'ի միտ առնուլ զվարձուցն կատարումն: Դժնեայ և ամենայն անարգութեանց լի է եթէ ոք 'ի քաղաքավարութեան իւրացն փառաց ցանկանայցէ. իսկ յորժամ և 'ի հոգևորսն այս իրքս լինին, ապա այսուհետև ո՞ր ներել թողութեան կայցէ մեզ յորժամ և ոչ այնքան պատիւ կարիցեմք տալ ա̃յ որչափ մեք 'ի ծառայիցն պատուիցիմք: Քանզի և ծառայն զաշս անձկացեալ միայն 'ի տէրն հայի, և վարձկանն առ գործոյն տէր՝ որ հանդերձեալն է հատուցանել նմա զվարձսն, և աշակերտն ընդ վարդապետն հայի: Իսկ դու զամենայն ինչ ընդ հակառակս գործես, զի զայն որ 'ի վարձու կալաւ զքեզ ա̃ծ՝ զնա թողուս որ տէրն քո է՝ և ընդ քո ծառայակիցսն աչուցեալ հայի-

խօսէր ընդ այնչափ բազմութեանն, նա և զարհուրե-ցուցանէր ևս առերեսն՝ թէ օձք ծնունդք իժից: Այս այն զի հասարակ իսկ առ նա ընթանային, և զքաղաքս և զգիւղս թափուր թողուին, որպէս զի կարասցեն տեսա-նել զայրն և զպատուական զգլուխն զայն. բայց սա-կայն զնա ոչ ինչ յայնցանէ կարաց մեղկել, վասն զի հեռի էր 'ի փառասիրութենէ և ազատ յամենայն յամ-բարտաւանութենէ:

Այնպէս և Անտիփաննոս տեսանէր զբազմութիւն ամ-կին, ոչ զի պատուէին զնա, այլ զի մեղեգնէին հանդա-ակ նմա և կըծնէին զատուածսն, և նորա բարձրա-ձայն գոչեալ քան զնոցա չարութիւնն՝ ասէր այսպէս. “Խստապարանոցք և անթլփատք սրտիւք և ականջօք„: Նոյնպէս և Եղիա մինչդեռ զօրքն մեծ կային և թա-գաւորն, ամենայն իսկ բազմութեանն ասէր՝ թէ “Մին-չև յերբ յերկուս հետս կաղայք„: Իսկ մեք աւասիկ յամենայն ժամ կաղամք, բուծանեմք զեղանաբոյծս և զողջակէզս, և զայնպիսի զծառայական զպաշտօնս և ըղ-պատիւս խնդրեմք որք ոչ կան մնան հաստատուն: Զա-ղագս այնորիկ ամենայն ինչ վեր 'ի վայր կործանեցաւ. Նորին վասն ամենայն իսկ իրք քրիստոնէից 'ի գերու-թիւն մատնեցան, և ամենայն հօգք մեր այն են թէ որպէս 'ի բազմաց փառս մարթասցուք գտանել:

Այլ արդ հանցուք արտաքոյ սահմանաց մերոց այժմ զփառացն զախտ, և յայնժամ կարեմք զգալ բարիոք ազատութեանն և վայելել 'ի խաղաղ նաւահանգըս-տեանն: Վասն զի փառասէրն յաղէկոծութեան բնակէ, քանզի միշտ դողայ և սարսափէ և զբազում զանարգս ա-զդէ. իսկ որ այսր ախտի բանաւորութեան արտաքոյ գտանիցի, 'ի խաղաղ նաւահանգստեան է հանգուցեալ, և 'ի սուրբ և յստակ ազատութեան վայելէ: Նայլ և ոչ նա որ փառացն ցանկայ. զի նա քանի ծանօթս ևս ունիցի, զամենեսին զնոսա իւր տեարս ունի. քանզի 'ի հարկէ ամենեցուն ծառայէ: Այլ արդ փախիցեսցուք փառացն ախտից որ սաստիկ փառքն են, որպէս զի ազատե-ցուք և գերծցուք յայնպիսի բուռն ծառայութենէ: Օ՜ն զոր օրինակ որք 'ի մարմնոյն գերեցկութիւն հարկեալ-իցեն, եթէ դէպ լիցի յանկարծօրէն՝ ևս գերեցիկ ե-րեսս տեսանել, իսկոյն յառաջնոյն անտի 'ի բաց հրա-

ժարեն, այնպէս և որ առ 'ի մէնջ փառացն են ցանկա-ցեալք, եթէ յանկարծ զմտաւ ածիցեն զպայծառա-թիւն երկնաւոր փառացն, ապա կարեն վասն նորա ար-համարհել զայս փառս:

Նա արդ փութասցուք զայն զփառսն ստանալ և ա-մենայն հաւատով ջանասցուք զնա. որպէս զի ստա-նալով զգեղեցկութիւն նորա, կարիցեմք փախչել 'ի սովո-րութենէ երկրաւոր փառացս և 'ի քաղցր հեշտութենէ անցաւոր փառացն վայելել: Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մե-րոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք Հօր համ-դերձ Հոգւովն սրբով այժմ և յաւիտեանս. ամէն:

## ՃԱՌ ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

“Իսկ զիա՞րդ կարդասցեն յոր ոչն հաւատացին, և կամ զիա՞րդ հաւատասցեն զորմէ ոչն լուան, և կամ զիա՞րդ լուիցեն առանց ուրուք քարոզելոյ, և կամ զիա՞րդ քարոզեսցեն եթէ ոչ առաքեսցին, որպէս և գրեալ է”:

Պարծեալ 'ի բաց բառնայ 'ի նոցանէ զներողութիւն: Նա զի ասացեալ էր յառաջագոյն զնոցանէն՝ թէ “Վկայեմ զի ունել ունին զնախանձն այ, այլ ոչ գիտութեամբ”, այսինքն է թէ կարի յոյժ ոգէսս են այ արդարութեան և յաղագս նորին այնորիկ չհնազանդեցան, ցուցանէ այ-նուհետև թէ և ընդ ագիտութեանն դատ ունին տալ այ: Նա չասէ ինչ այսպէս յայտնի. բայց կարգէ և 'ի դէմս հարցմանն յառաջ բերէ զբանն, և ես յայտնա-գոյնս կարծէ զյանդիմանութիւնն 'ի ձեռն զխնդրու-թեանն և լուծմանն, և ամենեքին իսկ ջանայ մաքրել զանդրդատաստանս մտացն: Տես որպիսի ինչ է զոր ասէն: Ընդդարձն 'ի վերուստ առաց, ասէ, մարգարէն՝ թէ “Ա-մենայն որ կարդասցէ զանուն տեառն՝ կեցցէ”:

Բայց թերևս ասիցէ ոք արդեօք՝ թէ զիա՞րդ կարէին կարդալ առ այն որում ոչն հաւատացին: Նա դարձեալ հարցմամբ խնդրութեամբ համդերձ 'ի նմանէն, և ե-թէ էր վասն չհաւատացին: Նա դարձեալ այլ ընդդի-

մտադրութիւնք, որպէս զի ասիցէ ով՝ թէ զիա՞րդ կարէին հաւատալ զորմէ չէրն լուեալ։ Եւ դարձեալ լուծումն տանէ և ցուցանէ՝ թէ քարոզեցին, և բազումք առաքեցան ՚ի սոյն իսկ։ Եւ ապա յայտ առնէ թէ սոցա առաքեցան առ նոսա, յայնժամ ածէ բերէ զմարգարէն ՚ի մէջ որ ասէ. «Որքա՜ն գեղեցիկ են ոտք աւետարանչացն խաղաղութեան՝ և որ զբարութիւնս աւետարանեն»։ Տեսանե՞ս որպէս յօրինակէ քարոզութեն ցուցանիլն և քարոզքն. քանզի ոչ եթէ այլ ինչ ամենայն ուրեք ճառէին, այլ զայն ասէին՝ զա̃յ զբարութեցն և զնորին զխաղաղութենէն որ առ մարդիկս եղեն։ Ապա թէ չհաւատայք, ասէ, ոչ եթէ մեզ չհաւատայք, այլ Եսայեայ որ յառաջ քան զբազում ամսն ասէր՝ թէ և առաքեցաք և քարոզեցաք և գտաք զորմէ ասացաքն։ Ապա եթէ ապրելն ՚ի կարդալոյն էր և կարդալն ՚ի հաւատալոյն, իսկ հաւատալն ՚ի լսելոյն և լսելն ՚ի քարոզելոյն, իսկ քարոզելն յառաքելոյն, ապա ուրեմն և առաքեցան և քարոզեցին։ Ընդ նոսա և մարգարէն եւս հանդիպանայ ցուցանել նոցա, և ամենայն համարձակութեամբ քարոզէ և ասէ՝ եթէ ոտքս են զորս յառաջ քան զբազում ժամանակս քարոզէաք ձեզ, զորոց և զոտսն ՚ի գովութիւն առնուաք վասն քարոզութեանն։ Ապա ուրեմն բարւոք իսկ եղև յայտնի՝ եթէ որք չհաւատացինն, նոցա եղև մեղադրութիւնն միայն, իսկ յա̃յ կողմանէ ամենայն ինչ կատարեցաւ։

«Այլ ոչ ամենեքեան հնազանդեցան աւետարանին։ Եսայի ասէ. տէր, ո՞ հաւատաց լրոյ մերում։ Ապա ուրեմն հաւատք ՚ի լսելոյ են և լուր ՚ի բանէն Քրիստոսի»։ Եւ դարձեալ այլ գիմադրութիւնս բերէ ՚ի մէջ և ասէ՝ թէ և Եսայիաս նոցին առաքեցաւ, թէ և ա̃ծ իսկ յղեաց զնա առ նոսա, որում պարտէին ամենեքեան լսել և հնազանդել։ Տես զիմաստութիւնն Պաւղոսի. յորժամ խառվէին և ամբոխէին, զայնպիսի զբանս արկանէ ՚ի կէս որ ամբոխողն և խռովութեանն ջրիչ էր։ Ի՞ր վասն, ասէ, գայթակղեցիս, ով Հրեայդ, յետ այսպիսի և այսքան վկայութեանց և իրացն տեսակօք՝ եթէ ոչ ամենեքեան հնազանդեցան աւետարանին։ Այս ինչ այլ աստուածային բաւական իսկ էր հաւատարիմ առնել զայն՝ եթէ ոչ ամենեքին հնազանդեցան աւետարանին։

Վասն զի զօրէն զայսոսիկ մարգարէն յառաջագոյն անդուստ 'ի վերուստ գուշակէր: Եւ դու տես զանեղրական զիմաստութիւնն Նորա թէ զիարդ եւ առաւելս ցուցանէ քան զայն՝ որում Նոքայն ակն ունէին եւ յաւայլին ընդդէմ կալ: Զինչ ասիցէք, ասէ, թէ ոչ ամենեքեան հնազանդեցան աւետարանին. եւ զայն զայս անդուստ 'ի վերուստ յառաջագոյն գուշակեաց Եսայիաս. մանաւանդ եթէ ոչ զայս միայն, այլ եւ բազում: Դուք, ասէ, մեղադիր լինիք եթէ ընդէր ամենեքին ոչ հնազանդեցան աւետարանին. իսկ Եսայիաս եւ առաւելս քան զայնս ասէ: Եւ զինչ իցէ զոր ասէն. "Տէր, ո՞ հաւատաց լրոյ մերում":

Այս իսկ եւ 'ի բաց ընկեաց զամբաստանութիւնն՝ յանդիման կացուցանելով Նոցա զբանս մարգարէին, դարձեալ բուռն հարկանէ զառաջին կարգէն: Եւ քանզի ասաց եթէ պարտ է կարդալ, եւ որք կարդասցեն հաւատալ, եւ որք հաւատասցեն Նախ լսել, եւ որք հանդերձեալ են լսել ըզքարոզն ընդունել, եւ զքարոզն յառաքչէն, եւ ապա այսպէս եցոյց եթէ առաքեցան եւ քարոզեցին, եւ դարձեալ այլ ինչ հանդերձեալ է դիմադրութիւնս 'ի Նոցանէ առնծանել՝ պատճառս առեալ յառաջագոյն յայլմէ մարգարէէ մեղադրութեանց, զոր եւ եղոյծ իսկ յառաջ քան զփոքր մի զայս, եւ այժմ դարձեալ զնոյն իմն անդրէն զուգէ ընդ առաջինսն: Եւ քանզի 'ի մէջ ած զմարգարէն որ ասէն՝ թէ "Տէր, ո՞վ հաւատաց լրոյ մերում", ապա ժամ էր այնուհետեւ Նմա բուռն հարկանել ըզվկայութեանցն եւ ասել. "Որպէս ուրեմն հաւատք 'ի լսելոյ են": Եւ զայս ոչ եթէ լոկ ինչ եդ, այլ վասն զի յիւրաքանչիւր ժամանակս Նշան խնդրէին Հրեայքն եւ զկերպարանս յարութեանն, եւ կարի իմն յայսոսիկ բերանաբացք յաքանքէին[1], եւ սակայն մարգարէքն զայս ինչ ոչ ասէին, այլ զայն՝ թէ միայն 'ի լրոյ պարտ է մեզ հաւատալ. վասն որոյ եւ յառաջագոյն իսկ զայս կանխեալ ասէր "Որպէս ուրեմն հաւատք 'ի լսելոյ են": Ապա քանզի Նուազագոյն ինչ թուէր այս, տես որպէս հանէ զնա 'ի վեր: Ոչ միայն լուր ասացի, ասէ, եւ ոչ եթէ մարդկային բանիցս լսել եւ հաւատալ, այլ մեծա-

1 Օրին. բերանաբացք էին:

զայն լուր ասացի. քանզի լուրն 'ի բանէն եղ։ Ոչ եթէ զմեր ինչ ասէի, ասէ, այլ զայն որ յԱյն էր՝ զայն ուսայ և պատմեմ, որ քան զնշանսն ևս մեծագոյն է։ Վասն զի և Այ և առեալքն և սքանչելագործութեանն միապէս պատուիրանք Հաւատոյ, քանզի և գործքն և սքանչելիքն 'ի նոցա բանէն լինէին. վասն զի երկինք և այլ ամենայն արարածք այնպէս Հաստատեցան։

Իսկ յորժամ եցոյց եթէ պարտ է Հաւատոյ մարգարէիցն զի միշտ զնոյ զբանս խօսէին, և քան զլուրն այլ մի ինչ ասելի խնդրէր, յարէ դարձեալ այլ իմն զխնադրութիւնս զորոց ձայնեացն, և ասէ. "Այլ ասեմ՝ միթէ ոչ լուան,,։ Ո՛ինչ է, ասէ, եթէ առաքեցան որք քարոզեցինն, և քարոզեցին զոր ինչ Հրամայեցանն։ Ապա և մեծապէս իմն ասէ զլուծմունս ընդդիմախօսութեանցն և ասէ. "Մանաւանդ եթէ ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա և 'ի ծագս տիեզերաց բանք նոցա,,։ Իսկ արդ զի՞նչ ասես, ասէ, միթէ ոչ լուան։ Որ տիեզերք և ամենայն ազգք երկրի լուան, իսկ դուք որ մերձ էիք և որ այնչափ ժամանակս ընդ ձեզ շրջեցան քարոզքն, ուստի և էինդ իսկ, և ոչ լուարուք. և ո՞ր բան ունիցի զայս։ Ո՛ի եթէ ծագք երկրի և տիեզերք ամենայն լուան, մանաւանդ թէ ևս առաւել դուք։

Ապա դարձեալ այլ ևս զխնդրութիւնս յաւելու։ "Այլ ասեմ, ասէ, միթէ Իսրայէլ ոչ գիտաց,,. և կամ եթէ լուան և ոչ իմացան և ոչ գիտացին և ոչ առին 'ի միտ, և զի նոցա էին առաքեալ։ Իսկ արդ միթէ ներումն ինչ թողութեան գտանիցե՞ն վասն այնպիսի տգիտութեան. և ոչ երբէք. քանզի և Մովսէս իսկ ծրագրեալ ասէր նոցա. "Իբրև զի գեղեցիկ են ոտք աւետարանչացն խաղաղութեան,,. և յառաջ քան զայս ինքն իսկ օրէնսդիրն. վասն որոյ 'ի սոյնս յարեալ ասէր՝ թէ "Նախ Մովսէս ասէ՝ ես նախանձեցուցից զձեզ ոչ ինչ ազգաւ, և անմիտ ժողովրդեամբ զկծեցուցից զձեզ,,։ Ուստի և յայտնանէ պարտ էր ճանաչել զքարոզսն. և ոչ միայն զի Հաւատարիմք եղեն և կամ զի խաղաղութիւն քարոզէին նոցա և զբարութիւնս զայն աւետարանէին և կամ զի ընդ ամենայն ծագս տիեզերաց սերմանէին ըզբանն աւետարանին, այլ և յայտնանէ ևս զի և զնուաստագոյնս քան զնոսա որք 'ի Հեթանոսացն էին՝ յառա-

զարթեայց ընդդէմ նոցա. զի զանէ յորժամ տեսանիցեն զայնս որք քան զնոսա նուաստագոյնք և կրտսերագոյնքն իցեն, նոքօք զգուշիցին 'ի նախանձ՝ ոչ 'ի գոյից ինչ 'ի բարութեանց, այլ որ յոյժ մեծն էր: Սորին վասն և զկանոնաւորագոյն զախտն դնէ, այսինքն է զնախանձն, առաւել կարիցէ զգզակել զնոսա և ածել յայնպիսի մեծ և կարևոր բարութիւնն, զոր և յանուրջս և յերազի անգամ չէր տեսեալ երբէք. այլ նոքա և ոչ այնպէս լուան: Այլ արդ որում նորեցոյ և թողութեան արժանի լինիցին, որք այնպիսի առաւելութեամբ ցուցին զհակառակութիւն: Այլ ոչ միոյ իմիք: Այլ այժմ չասէ ինչ զայն այսպէս յայտնի, բայց 'ի միասս լռողին թողու զամենայն զառաջեալն. և ինքն դարձեալ զայնս 'ի յանձորդաց անտի կազմէ հանդերձ իւրով առվորական իմաստութեան:

Զոր և յառաջինսն առնէր՝ դիմադրութիւն 'ի նոսա մեծամեծելով և վասն օրինացն և վասն ժողովրդեանն որ մեծագոյն ամբաստանութիւնն ունէին զնոցանէն, և աստ 'ի լռութիւնս դիմադրութեանցն դատաւորը, և այնչափ առաջ նորութիւն իւրացն որչափ ինքն կամէր, որպէս զի մի ծանրաստացուսցէ զբանսն առնիցէ, զայնս և աստ գործէ գրելով. "Ասեմ, ասէ, միթէ մերժեաց ա̃ծ զժողովուրդ իւր զոր յառաջն ծանեաւ. քաւ լիցի": Այլ կերպարանօք իսկ մեծամեծէ զհիացումնն 'ի նոցա, և յառաջին յասացուածոյ անտի առնէ սկիզբն, և զարհազին զայսպիսի զաւաժանմունս դնէ առ 'ի դիւրընկալ առնելոյ այնուհետև. և զորս առաջնովքն կազմէ ցուցանել, զայն և այժմ կազմէ ասա. զորպիսի ինչ: Մինչպէս և ասկաւք իցեն որ ապրեցանն, սակայն աւետիքն հաստատուն կան: Յաղագս այնորիկ չասաց լոկ թէ ժողովուրդն, այլ յաւելու՝ թէ զոր յառաջագոյնն ծանեաւ:

Նա և օրինակաւ իսկ յայտ առնէ զչմերժումնն ժողովրդեանն ասելով թէ "Այլ ես իսրայէլացի եմ յազգէ Աբրահամու 'ի ցեղէ Բենիամենի": Այլ, ասէ, որ վարդապետս եմ, որ քարոզս եմ: Այս քանզի թուէր թէ ընդդէմ ինչ իցէ այս առաջնոյ ասացուածին այնորիկ՝ թէ "Տէր, ո՞ հաւատաց լրոյ մերում", և դարձեալ եթէ "Զօր ամենայն ձգեցի զձեռն իմ առ ժողովուրդն անհաւան և ընդդիմախօսան", և չհաւատացաւ այնու միայն՝ թէ քաւ լիցի, այլ և միբրանն եւ կազմէ դարձեալ և.

նանս պատասխանութիւն առնողըն. Թողի ես ինձ ինքեան եօթն հազար այր որք ոչ խոնարհեցուցին ծունր Բահաղու: Նոյնպէս ուրեմն և այժմ յայժմուս ժամանակիս մնացորդք ըստ ընտրութեան շնորհացն եղեն »: Իսկ զոր ասէն այսպիսի ինչ է. Ոչ մերժեաց ած զժողովուրդ իւր. զի եթէ մերժեալ էր, ապա և ոչ զոք ընդունէր. իսկ եթէ զամենս ընկալաւ, ապա յայտ է եթէ ոչ մերժեաց. և եթէ զամենս, ասէ, ընկալաւ, ապա պարտ էր զամենեսին իսկ ընդունել: Այլ ոչ երբէք, քանզի և առ Եղիայիւ 'ի վերայ եօթն հազարացն միայն հաստատէր զփրկութիւն. նոյնպէս և այժմ բազում բազումք են հաւատացոյ: Իսկ ապա եթէ դուք տգիտանայք, չէ ինչ զարմանք. վասն զի և որ մարգարէանային այնպիսի և այնքան ազանցելի այր՝ տգիտանային. այլ ած այնպէս իմն անօրինէր զիւր իրսն և զմարգարէին տգիտութիւն:

Այլ դու տես զիմաստութիւնն Պօղոսի որպէս սա 'ի կազմելոյ զառաջիկայսն՝ ծածուկ 'ի նոցանէն աւելցուցանէ զամբաստանութիւնն որ զնոցանէն. յաղագս այսորիկ իսկ յիշեաց զամենայն վկայութիւնս, որպէս զի խայտառակեսցէ զնոցա զանագորոյնութիւնն, և ցուցանէ թէ այսոքիկ անգստին 'ի վերուստ իսկ էր կազմեալ: Այլ եթէ զայս չկամէր, այլ լոկ զայն կամէր ցուցանել թէ սակաւք են ժողովուրդն, պարտ էր ասել թէ և առ Եղիայիւ եօթն հազար միայն մնացին. իսկ նա աւանիկ անգստին 'ի վերուստ գիտէ զվկայութիւնս զամենայն: Այլ ամենայն ուրեք փութայր ցուցանել թէ ոչ ինչ օտար գործք գործեցան Քրիստոսի և առաքելովքն, այլ ըստ սովորութեանն և ըստ միշտ խոկմանն: Այլ զի մի դարձեալ ասիցեն թէ իբրև զմոլար զոք սպանաք ըզՔրիստոս, և կամ զառաքեալսն իբրև զմոլորեցուցիչս հալածեցաք, յայն սակս բերէ զմոլարութիւնն զայն 'ի մէջ. « Տէր, զմարգարէս քո կոտորեցին և զսեղանս քո քակեցին »:

Այլ ապա զի մի կարծի ծանր զասանն առնիցէ, այլ վկայութիւնս 'ի մէջ բերէ և զնէ զպատճառսն. ոչ որպէս թէ կամիցի ինչ աւելցուցանել զամբաստանութիւնն, այլ իբրև յորժամ իմեմնէ փութայ չքաւորեցուցանել զնոցա վասն ասացելոցն եղելոցն 'ի ներքելոյ և 'ի թողութենէ: Այլ տես որպէս ընդարձակէ զամբաստանութիւն

ժամանակս մեծ միշտ սովոր է փրկել և կեցուցանել, և զի ամենայն ազգաց 'ի վերայ կան աւետիքն: Զայս անդուստ իսկ 'ի վերուստ եցոյց առաքեալն. «Եթէ իցէ թիւ որդւոցն Իսրայէլի իբրև զաւազ ծովու, մնացորդք միայն ապրեսցին». և «Եթէ ոչ տէրն զօրութեանց թողեալ էր մեզ զաւակ, իբրև զՍոդոմ լինէաք». ցուցանէ աստ և 'ի սոյն յարէ առաքեալն. «Այնպէս և յայժմու ժամանակիս մնացորդք ըստ ընտրութեան շնորհացն եղեն»: Տես զկարգ զիւրաքանչիւր ասացելոցն զբարեմտութիւն ամբողջ պահէ, և զնոյն շնորհացն և զփրկելոցն զբարերարութիւն: Ասաց՝ թէ ըստ ընտրութեանն, զնոցա զընտիրն զատանել ասէ. իսկ ըստ շնորհացն՝ զնոյն զպարգևսն յայտնեաց:

«Ապա եթէ ըստ շնորհացն, ոչ ևս 'ի գործոց. ապա եթէ ոչ՝ շնորհքն ոչ ևս շնորհք լինին»: Ապա եթէ 'ի գործոց, ապա ոչ ևս են շնորհք, և կամ գործքն ոչ ևս են գործք: Ապա դարձեալ 'ի վերայ դիմէ 'ի հակառակութեանն Հրէից հանդերձ ասացելովքս, և աստ ևս չքաւոր առնէ զնոսա 'ի ներել պատասխանատուութեան: Զանիմք ասել, ասէ, թէ մարգարէքն կոչէին զմեզ, և մեծ աղաչէր, և գործք իրացն գոչէին, և նախանձ իրացն բաւական էր զմեզ յինքն ամփոփել: Այլ քանզի զանեսակ գործոյն պահանջէաք և ջան ուղղութեանց, յաղագս այնորիկ ոչ կարացաք մերձենալ առ նա: Զէ և չէ իսկ զայս ասել. որպէս արդեօք մեծ պահանջէր 'ի ձէնջ, որ և շնորհօքն իւրովք միշտ իսկ հանդերձեալ էր ձեզ հովանի լինել: Այլ զայս ասաց զի կամեցաւ ցուցանել թէ յայժմ ցանկացաւ փրկութեան ձերում. որ ոչ միայն զիւրն փրկութիւն ընձեռէր նոցա, այլ և այն մեծ փառք թուէին առ 'ի ցուցանել զիւր զմարդասիրութիւնն: Այլ էր վասն երկեար առ 'ի մերձենալ որ ոչդ պահանջիս գործս. էր վասն ընդդէմ կաս և հակառակիս յորժամ շնորհքն առաջի կայցեն, և օրէնս ինչ 'ի մէջ բերես ընդ վայր և 'ի զուր. զի նոքօք չկարես ապրել և զնոր զպարգևսն յաւացուցանել նոքօք: Զի եթէ յամենայնս և ասես՝ անտի է փրկութիւն, 'ի բաց բառնաս զպայծառափայլ շնորհացն մեծ:

Ապա զի մի համարեսցին եթէ օտար ինչ իցէ այս, յառաջեալ բանն հարկանէ զեօթն հազարացն, և ցու-

պէս. «Մ՛իթէ յանցեան զի անկցին. քաւ լիցի»: Յոր-
ժամ եցոյց զնոսա բիւր չարեաց պատժապարտս, ապա
մխիթարութիւն իմն զնոսա ածէ: Այլ դու տես զիմաս-
տութիւնն Պաւղոսի. զմեղադրութիւնն ’ի մարգարէից
անտի եբեր, և զմխիթարութիւնն յանձնէ դնէ: Գի-
տեմք, ասէ, թէ նոքա մեղանչիցեն, և չէ ոք որ ասէ թէ
ոչ, այլ և յոյժ իսկ: Այլ արդ տեսցուք թէ այնպիսի է
յանցումն այն, և եթէ սաստիկ բժշկութեան իցէ. և
կամ թէ չունիցի ինչ ուղղութիւն. այլ չէ այսպիսի որ-
պէս այժմուս: Տես որպէս դարձեալ մխիթարէ զնոսա
և ’ի դէմս մխիթարութեան ցուցանէ զնոսա մեծամեծ
մեղաց պատժապարտս: Տեսցուք զմխիթարութիւնն զոր
վասն նոցայն անուանեցին ասել. և արդ որպիսի ինչ իցէ
մխիթարութիւնն այն. «Յորժամ լրումն, ասէ, հե-
թանոսաց մտցէ, յայնժամ ամենայն Իսրայէլ կեցցէ»
ընդ ժամանակի երկրորդ գալստեանն և ’ի վախճանին:
Այլ չասէ անդրէն նոյն զայս, վասն զի յոյժ համար-
ձակէր ’ի վերայ նոցա, և ամբաստանութիւնս ընդ ամ-
բաստանութիւնս խառնէր և զմարգարէ ’ի վերայ մար-
գարէի բոլորէր՝ որք գոչէին առ նոսա՝ զԵսայիաս, զԵր-
եմիաս, զԴաւիթ, զՈվսէէ, զՄ՝ովսէս և միանգամ և
երկիցս և բազում անգամ:

Այլ տես զի մի այսու ամենայնիւ ’ի յուսահատու-
թիւն արկանիցէ զնոսա և թուիցի նոցա թէ փակեաց
ինչ զճանապարհն որ առ հաւատն էր և որք ’ի հեթա-
նոսաց հաւատացեալքն էին, զի մի դարձեալ և նոքա
յամբարտաւանութիւն հպարտութեան եկեսցեն և մե-
ծամտեսցին ինչ հաւատոցն բանիւ, սփոփէ զնոսա դար-
ձեալ ասելովն՝ թէ «Նոցա յանցանօքն փրկութիւն հե-
թանոսաց»: Պարտ է մեզ ոչ լոկ ընդ վայր լսել զասա-
ցեալսն, այլ իմանալ և զզաւրս և զիմաստս ասացելոցն,
և եթէ զինչ փութայցէ ուղղել. վասն որոյ աղաչեմ
զձեր սէրդ: Զի եթէ սրտի միտք ընդունիցիմք զասա-
ցեալսն, և ոչ ’ի միում իմիք ինչ յայսօսիկ գտանեմք
դժուարինս: Քանզի փոյթ այն էր յայնժամ, որ յա-
սացելոց անտի հպարտութիւնն ծնանէր առ այնոսիկ որք
’ի հեթանոսաց էին հաւատացեալք, զայնպիսի զչար
ախտ կամէր ’ի բաց ջնջել, որով և նոքայն զգուշութեամբ
կեցին. զՀրեայսն ազատէր ’ի վհատութենէ, որպէս զի

ոչ զի 'ի նմին անհաւատութեան կայցեն, այլ զի՝ ընդ այլոց հաւատացելութեամբն փրկեսցէ, զսոսա նոքօք եւ զնոսա սոքօք։ Այլ դու տես. անհաւատք եղերուք դուք, ասէ, զառաջինն, եւ նոքա փրկեցան. դարձեալ նոքա եղեն անհաւատք, եւ դուք ապրեցարուք. ոչ զայնպիսի փրկութիւն ասաց դարձեալ արտաքս եղանելոց որպէս եւ հրէայքն, այլ զայն որով եւ զնոսա կարող էք 'ի ձեզ կոչել զմոլորեալսն 'ի նախանձու է։

“Ո՛վ խորք մեծութեան եւ իմաստութեան եւ գիտութեան այ, որպէս զի անանց քննելոյ են իրաւունք նորա„։ Նայեաց 'ի վեր յառաջինն ժամանակս եկ, եւ 'ի վերուստ ուսաւ զայն զմատակարարութիւնն յորմէ հետէ աշխարհ եղեւ մինչեւ ցայժմու ժամանակս։ Այլ զմտաւ ած թէ զիարդ պէսպէս զամենայն մատակարարեաց, եւ զահի հարեալ սքանչանայր եւ 'ի վեր գոչէր, զի հաւատացուցանէ զլսողսն թէ ճշմարիտ է զոր ասացն. նա եւ ոչ զահի հարեալ գոչէր՝ եթէ չէր այսպէս եղեալ։ Այլ զի խորք են՝ գիտաց, բայց թէ որչափ խոր՝ զայն չգիտաց. եւ այսպէս սքանչելի է զուշածն որ ոչ զամենայնն գիտէր։ Այլ զահի հարեալ զարմանայր ընդ քաղցրութիւնն նորա, ընդ իւրում կատարածին 'ի ձեռն երկուց կարգաւորականն անուանցս այսպիսի քարոզեաց զնա՝ մեծութիւն եւ խորագոյնս։ Այլ զահի հարեալ, զի եւ կամեցաւ եւ կարաց, այնպէս եւ հակառակօքն զհակառակսն կազմէ։

“Որպէս զի անանց քննելոյ են իրաւունք նորա„։ Ցուցանէ ոչ միայն հասու լինել անհնար է, այլ եւ ոչ քննել ոք կարող է։ “Այլ անանց գնալոյ են ճանապարհք նորա„. այսինքն է անզօրէնութիւնն։ Ցուցանէ եւ նա ոչ միայն չգիտէ, այլ եւ ոչ խնդրել կարողութիւն է։ Այլ ոչ ես ինքն, ասէ, գտի զամենայն, այլ փոքր մի միայն եւ ոչ եթէ զամենայն. ինքն միայն գիտէ զիւրն յայտնապէս։ Վասն որոյ 'ի սոյն յարեալ ասէր՝ թէ “Ո՞ գիտաց զմիտս տեառն եւ կամ ո՞ խորհրդակից եղե նմա եւ կամ ո՞վ ետ նմա փոխ յառաջագոյն եւ հատուցանիցէ նմա„։ Այլ զոր ասէն այս է՝ թէ որպէս իմաստունն է, չէ յայլմէ ուսեալ իմաստացեալ, այլ ինքն լոկ է աղբիւր բարութեանց։ Այլ այնքան իւրոց գործեաց եւ պարգեւաց մեզ. չէառ յայլմէ ումեքէ փոխ եւ ետ մեզ, այլ ինքն յանձնէ բաշխեաց. եւ ոչ եթէ երախտեաց ուրուք

պարտական է որպէս թէ առեալ ինչ յումեքէ, այլ ինքն է իշխան բարութեանց, մանաւանդ եթէ այն իսկ է զեղումն մեծութեանց որ չէին կարօտ այլում. յաղագս որոյ զառնիլն ածեալ ասէ՝ թէ "Ի նմանէ և նովաւ և 'ի նոյն ամենայն,,: Ինքն եգիտ, ինքն արար, ինքն ընդունի. վասն զի մեծատուն է և չէ կարօտ յայլմէ ինչ առնուլ, և իմաստուն է և ոչ ունի պէտս խորհրդակցի, այլ և ոչ գիտել ոք կարէ զնորայսն, այլ ինքն միայն մեծատուն է և իմաստուն: Վասն զի քան զբազում մեծատունս որք 'ի հեթանոսաց են՝ ևս շահաւէտս առնէ սա զոր կամի, և քան զբազում իմաստունս ճգնելոցն զնուաստագոյնս 'ի նոցանէն նոցա վարդապետս կարգեաց:

Իսկ ապա իբրև զահի հարեալ, գոհութիւնս մատուցանէ նմա ասելովն՝ թէ "Նմա փառք յաւիտեանս. ամէն,,: Վասնզի յորժամ մեծ ինչ և չքնաղ ասիցէ, զարմանացեալ՝ զամենն 'ի փառս կատարէ: Ո՛չ այսու և վասն որդւոյ առնէ, քանզի և անդ զարմացեալ զայսն գործէ զոր և աստս ասէ. "Յորոց Քրիստոս ըստ մարմնոյ, որ է 'ի վերայ ամենեցուն Աստուած օրհնեալ յաւիտեանս,,:

ՅՈՐԴՈՐԱԿ

Նմին և մեք նմանողք լիցուք և փառաւորեսցուք զԱստուած զարմանս տանելով վարուցն մերոց, և մի 'ի նախնեացն առաքինութիւն ապաստանք լիցուք՝ առնլով զՀրէայսն օրինակ մեզ. քանզի չէ և չէ իսկ այսպիսի ազգականութիւն քրիստոնէից, այլ հոգւոյն մերձաւորութիւն: Սովաւ և սկիւթացին Աբրահամու որդի լինի, և առանց սորա և զաւակն իսկ Աբրահամու քան զսկիւթացին ևս օտարացեալ գտանի: Իսկ արդ մի 'ի հարցն ազգութիւնս ապաւինիցիք. զի թէպէտ և յոյժ զարմանալի ծնողս ունիցիս, չէ քեզ այն բաւական 'ի փրկութիւն կամ 'ի պատիւ և 'ի փառս, թէ ոչ դու լինիցիս նոցին ծնունդ ըստ բարուց բնութեանդ. սոյնպէս և եթէ յոռի ծնողս ունիցիս, չդատապարտէ ինչ այնու ըզքեզ և յամօթ առնէ, մանաւանդ եթէ քեզէն իսկ զքեզ ուղիղ կարգիցես:

Իսկ արդ ո՞ ոք քան զհեթանոսս էր անարգ. բայց սակայն հաւատովքն նոցա իսկոյն որդւոց ազգականք եղեն:

Ո՞ք ընտրանեգոյն քան զհրեշտակսն. այլ վասն անհաւատութեանն ստորացան։ Քանզի այն ազգականութիւն բնութեանն է և 'ի հարկէ ըստ ամենեցուն ազգականութեան. վասն զի ամենեքին յԱդամայ եղաք մեք, և չիք ոք 'ի մեզ առանց ազգականութեան և ըստ Ադամայ և ըստ Նոյի բանին և ըստ երկրին ըստ հասարակաց ամենեցուն մօրս։ Իսկ[1] սայն՝ որք արժանիք լինին ազգականութեան բանին 'ի հոգւոյ անտի. քանզի չէ ամենեցուն առ լինել ազգական, այլ հաւանելոյն միայն. և ոչ եղբարս կոչել որք զնոյն երկունս լուծանեն ընդ մեզ յարգանդէն, այլ որք զնոյն հոգևոր նախանձն ցուցանեն։ Որպէս և Քրիստոս որդիս այ կոչէ զամենս. սոյնպէս և որդիս սատանայի 'ի հակառակորդաց անտի, և անհաւատս կոչէ զնոսա և որդիս գեհենի և կորստեան։ Սոյնպէս և Պաւղոսի որդի Տիմոթէոս էր յառաքինութենէ, և սերս և սիրելի որդի անուանէր. իսկ քեռ իւրոյ որդւոյն և ոչ ուրեք յիշէ անունն։ Եւ զի մին ըստ բնութեան իսկ էր նորա մերձաւոր, այլ չեղև ինչ օգուտ այն. իսկ միւսն և բնութեամբ և տեղեաւ յոյժ 'ի բացէ՝ քանզի Լիւստրացւոց քաղաքակից էր, այլ սակայն քան զամենեսին մտերմագոյն և մերձաւորագոյն գտաւ։

Եղիցուք և մեք յոյժ որդիք սրբոյն, մանաւանդ եթէ որդիք այ եղիցուք։ Եւ զի զայդ հնար որդիս այ լինել, լուր Քրիստոսի զինչ ասէ. "Եղիջիք կատարեալ, որպէս և հայրն ձեր որ յերկինս է"։ Վասն այսորիկ և հայր կոչեմք զնա յորժամ աղօթեմքն. ոչ եթէ ընդ չնորհացն միայն յիշեցուցանեմք անձանց, այլ և զառաքինութենէ, որպէս զի մի ինչ անարժանս այսպիսի ազգականութեան գործիցեմք։ Եւ արդ զիարդ, ասէ, լինիմք որդիք այ. հրաժարել յամենայն ախտից, հանդարտութիւն ցուցանել առ այնոսիկ որք թշնամանեն զմեզ և զնասել կամիցին. քանզի և հայրն քո այսպէս առնէ առ իւր հայհոյիչսն։ Յաղագս այսորիկ բազում ինչ բազում ուրեք չասէ՝ թէ որպէս լինիջիք որդիք հօրն ձերոյ, այլ յորժամ ասացն թէ "Աղօթս արարէք 'ի վերայ լլկչացն ձերոց և բարի արարէք ատելեաց ձերոց",

1 [illegible]

զի և զանձն եւս յառատաձեռնութիւն կրթէ և 'ի բազում առաքինութիւն. զոր օրինակ և որ զինչսն արհամարհեսցէ վասն աղքատացն և վասն նոցին փափագանացն, այնպիսին ողորմած և մարդասէր կոչի։ Իսկ Քրիստոս իսկ յօժարամ երանէ զողորմածսն, ոչ միայն զայնոսիկ որք ընչիւքն ողորմին, այլ և որք յօժարութեամբ զայս առնեն՝ երանէ և զայլս։

Իսկ արդ զայսպիսի զառատաշատ գիրս կազմեցաք վասն խնդրոյն, և ամենայն իսկ բարութիւնքն մերձենան։ Զի որք ողորմած և մարդասէր բարս ունին, թէպէտ և ինչս ունին, յօժարութեամբ բաշխեն. և կամ 'ի մերձին թշուառութեան տեսանիցեն, լան և ողբան ընդ նմին. և եթէ տեսանիցեն զոք զրկեալ յումեքէ՝ վերակացու լինին. և կամ 'ի խարդախութեան զոք տեսանեն, ձեռն կարկառեն. քանզի զանձ բարութեան ունին զմարդասէր և զողորմած հոգին, և անտի բխեն զօգուտ եղբարցն, և ընդ այնր ամենայնի վայելեն առատապէս յածայինն վարձուց անտի։ Որով և մեք այժմ արժանի գտցուք, և նախ քան զամենայն զհոգիս մեր հեզս և հանդարտս յօրինեսցուք, զի այնպէս և մինչ աստ եմք բիւր բարութիւնս գործեսցեմք և 'ի հանդերձեալ բարութիւնսն վայելեսցեմք։ Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր հանդերձ Հոգւովն սրբով այժմ և յաւիտեանս. ամէն։

## ՃԱՌ ՔՍԱՆԵՐՈՐԴ

«Աղաչեմ զձեզ, եղբարք. գթութեամբքն Այ պատրաստել զմարմինս ձեր պատարագ կենդանի, սուրբ, հաճոյ Այ, զբանաւոր պաշտօնն ձեր»։

Բազում ինչ ճառեաց վասն Այ մարդասիրութեան, եցոյց զնորա զանբաւ զխնամսն և զանճառելի զքաղցրութիւնն. և իբրև ոչ կարաց քննել և հասու լինել, ապա այնուհետև զայս առաջի արկանէ առ 'ի հաւանեցուցանել զայնոսիկ, որոց զերախայրսն ընկալեալ

էր, որպէս զի արժանի պարգևացն վարս պատրաստ ցու-ցանիցեն: Այլ որ այսպէսն էր և այսպիսին ոք, չհրա-ժարէ յաղաչելոյ. և այս զի ոչ ինքն հանդերձեալ էր վայելել յայն, այլ որով նոքայն մարթեսցին օգտել: Այլ արդ զի՞նչ խորհիցեն եթէ նա չհրաժարէր յաղաչելոյ, այլ և զգթութիւնն իսկ ոչ առաջի դնէ: Սան զի բիւր բարութիւնք մեզ 'ի գթութեանցն այ եղեն, ասէ, նա-վաւ հաշտեցարուք, 'ի նա ապաւինեցարուք. քանզի զնոսա իսկ առնի ընդ իս 'ի պաղատանս, որպէս զի մի ա-նարժանք ինչ նոցա գտանիցին: Սորին վասն, ասէ, նա-քիմիք իսկ աղաչեսցէք որ ապրեցարուքն: Զոր օրինակ եթէ ուրուք մեծամեծ երախտիս ընկալեալ իցէ յու-մեքէ՝ և ապա անձնկորեալ ամաչիցէ 'ի նմանէն, և որոյ զերախտիսն արարեալ իցէ՝ նա մատուցեալ աղաչիցէ զնա:

Այլ արդ է՞ր վասն աղաչիցես. «Պատրաստել, ասէ, զանձինս ձեր պատարագ կենդանի սուրբ հաճոյ այ զբա-նաւոր պաշտօնդ ձեր»: Այլ քանզի զենումն ասաց, մի ոք համարեսցի եթէ զանդամսն հրամայեաց սպանանել, երագ իսկ ած զնմին և ասէ՝ թէ կենդանի: Նոյն ա-զատէ զնա 'ի հրէականացն. ասէ՝ սուրբ և հաճոյ այ զբանաւոր պաշտօնդ ձեր: Զի այն մարմնաւոր էր և չէր կարի հաճոյ այ. «Ո՞ խնդրեաց զայս 'ի ձեռաց ձե-րոց», ասէ: Նաղուամ և այլ ուրեք երբեք ընդդէմ կա-ցեալ այնոցիկ, այլ ոչ եթէ յայսմ. զի և յորժամ զայնս տայրն, զայս խնդրէր. վասն որոյ և ասէր՝ թէ «Պատարագ օրհնութեան փառաւոր արասցէ զիս». և դարձեալ թէ «Օրհնեսցից զանուն այ իմոյ օրհնու-թեամբ». և թէ «Հաճոյ եղիցի այ քան զորթ մա-տաղ որ բերէն զեղջիւրս և զկճղակս». և այլուր մեր-ժէ զնոսա 'ի բաց և ասէ. «Ոչ ուտեմ ես զմիս զուա-րակաց քոց, և ոչ զարիւն նոխազաց քոց ըմպեմ. այլ զեն այ զենումն օրհնութեան և հատո բարձրելոյն զա-ղօթս քո»: Նոյնպէս և Պաւղոս հրամայէ պատրաս-տել զմարմինս զենումն կենդանի:

Այլ զիա՞րդ լինիցի, ասէ, մարմինն այնպիսի զենումն: Մի՛ ինչ չարութեանց տեսցէ ակն, և եղև զենումն այնպիսի. մի ինչ զանպատեհ խօսեսցի լեզու, և եղև պատարագ. մի ինչ գործեսցեն ձեռք զանօրէնութիւն, և եղև ողջակէզ: Մանաւանդ եթէ չիցէ այս բաւա-

կան, այլ և բարի գործոց պէտք են, որպէս զի ձեռնն ողորմութիւնս արասցէ, իսկ բերանն օրհնեսցէ զՀարածիչսն, իսկ լսելիքն ամենայնի բանիցն լսելութեան պարապեսցին. քանզի պատարագն չունի ինչ պիղծ և անսուրբ, պատարագ պտուղ կալցի է: Այնպէս և մեք այժմ և 'ի ձեռաց և յաչաց և 'ի բերանոյ և յայլոցն ամենայնէ հանցուք պտուղ ա̃յ:

Այսպիսի պատարագ հաճոյ է ա̃յ, և ոչ եթէ Հրէիցն որ պիղծն էր. “Պատարագ նոցա, ասէ, հաց սգոյ իւրեանց”: Այլ ոչ եթէ մերս: Զի նա յորժամ զենու խինս՝ մեռեալ զասանէր, իսկ այս զենումն կենդանութիւն գործէ. քանզի յորժամ մեռուցանեմք զանդամս մեր, յայնժամ կարեմք կենդանի լինել: Այս իմն են այսմ զենմանս օրէնքս, որին վասն և հրաշափառապայն է հրայս այսորիկ օրինակ. քանզի չէ փայտի կարօտ, և ոչ այլոց նիւթոց 'ի սատարայնոցս, այլ ինքն իւքեամբ իսկ վառի հուրս մեր և ոչ այրէ և՛ ծախէ զողջակէզն, այլ մանաւանդ կենդանագործէ զնա: Զայսպիսի զզենումն անդուստ 'ի վերուստ իսկ խորհրդէր ա̃ծ. վասն որոյ ասէր իսկ մարգարէն՝ թէ “Պատարագ ա̃յ հոգի մաքրեալ”. և երեք մանկունքն զայնս մատուցանէին ասելով՝ թէ “Ոչ իշխան և ոչ մարգարէ և ոչ տեղի պտղաբերութեան առաջի քո, և գտանել ողորմութիւն, այլ անձամբք բեկեալք և ոգւովք խոնարհութեան լիցուք ընդունելիք”: Տես զկարգ զիւրաքանչիւր ոք յառաջելոցն որպէս հաւատեաւ 'ի կեր արկանէ ասա: Զասաց թէ արարէք զմարմինս ձեր զենումն, այլ թէ պատարագեցէք. որպէս զի ասիցէ՝ թէ մի ինչ հաղորդութիւն ունիցիք առ նա, վասն զի այլում ընծայեցէք զնա:

Աստ զի և որք զպատերազմական զերիվարան պարատս ունէին, չունէին ինչ նոքա ընդ այլսն հաղորդութիւն. այնպէս և դու այժմ պատարագեցեր 'ի պատերազմ ընդդէմ սատանայի զանդամս քո, և՛ գիտես եթէ ահագին է ճակատն այն և յոյժ ահեղ բանակն նորա, և արդ մի ձգեր և խառնահիր յաշխարհական պաշտամունս նորա: Այս և այլ իմն ցուցանէ ասել թէ պարտ է ընտիր և պիտանի գտանել այնպիսւոյն. զի թէ պէտ յանցիմանն պատարագեալ եւս կալոյ, ոչ՛ երկրա-

ւոր մարդոյ ուսմբք, այլ նոսա իսկ Թագաւորին ամենեցունցն ա̃յ եմք կալեալ յանդիմանն. ոչ զի պատերազմիցի մերոյն ախտալիսին, այլ զի և զԹագաւորն իսկ ունի նստեալ ՚ի վերայ։ Չհամարի ամօթ նստել յանդամ մեր, այլ կարի իսկ կամի զայն. և զոր Թագաւոր չառնու յանձն որ մեր ծառայակիցն է, զայն որ Հրեշտակաց տէրն է՝ յանձն առնու։

Այլ արդ քանզի հանդերձեալ եմք յանդիմանն կալ, և պատրաստ և զինուած լինել, զամենայն զօրաւ ՚ի բաց արասցուք։ Քանզի մինչ բիծ և արատ ունիցիմք մինչ, չկարեմք լինել պատրաստ և զինուած. քանզի և ոչ այն կարէ զինուած լինել զպատանեկական տեսանելով, և ոչ ձեռն պատրաստ յանդիմանն կալ յափշտակելոյն և զրկելոյն, և ոչ ոտք կաղապարեալ գնալոյն որք ՚ի Թատերսն ընթանայցեն, ոչ որովայն որ փափկութեան ծառայէ և զհեշտութեան ցանկութիւնս բորբոքէ, ոչ սիրտն որ ատելութեամբ զզուեալ և պոռնկական խանդաւոք, ոչ լեզու զպիղծսն և զաղտեղիսն բարբառելով։ Այսն արդ պատրաստ է յամենայն կողմանց արատոյն և բծին զգուշանալ որ լինին ՚ի մարմինս մեր։

Զի եթէ որք զհին զողջակիզման մատուցանէին՝ ամենայն իրօք զգուշանային, և ոչ զախտաւորն և ոչ զկոթանն և ոչ որ քոսոտն էր և կամ շրթնատն՝ չհրամայէին զայն մատուցանել, ապա մանաւանդ ևս առաւել մեզ, որք ոչ անբան ոչխար, այլ զանձինս իսկ մատուցանեմք, ևս առաւել հաւաստեաց պէտք են և ամենայն ուստեք գտանել սուրբս և մաքուրս, որպէս կարացուք և մեք ասել ընդ Պաւղոսի առաքելոյն՝ թէ «Այս առաւօտիկ նուիրեալ եմ և ժամանակ դարձի իմոյ հասեալ կայ»։ Այսն զի և էր իսկ ինքն սուրբ և մաքուր քան զամենայն պատարագս. յաղագս այնորիկ իսկ և նուէր կոչէ զինքն։ Այլ արդ յաջողի այս եթէ ՚ի բաց մերկանամք զհին մարդն, և եթէ մեռուցանեմք զանդամս զերկրաւորս, և եթէ ՚ի խաչ հանիցեմք զանձինս աշխարհիս։ Այլ ոչ արդ պէտս ունիմք և ոչ սեղանոյ և հրոյ. մանաւանդ եթէ ունիմք իսկ այսմ ամենայնի պէտս, բայց սակայն ոչ ձեռագործ, այլ անդուստ ՚ի վերուստ գայ մեզ ամենայն, և հուրն ՚ի վերուստ և սեղան, և սեղան է մեզ երկնից լայնութիւնն։ Զի թէ Եղիայի

զշօշափելի զգոհսն մատուցեալ՝ զանխղաքը բոցոյ 'ի վե-րուստ իջեալ զամենայն ծախեցին՝ զջուրն և զփայտն և զքարինսն, ապա և ս սաւուեր քե կեցի այս։ Նոյնպէս և ունիս ինչ հոսանական և երկրաւոր, յորժամ զպատա-րագն մատուցանիցես ուղիղ մտօք, իջեալ հուր հոգւոյն սրբոյ և զերկրաւորն զայն 'ի բաց ծախէ, և զպատա-րագն զամենայն ընդունի և սրբէ։

Օ՜ ինչ է բանաւոր պաշտօնն։ Հոգևորականն պաշ-տաւորութիւնն, վասզի ըստ Պօղոսի կամացն։ Օ՜ որ օրինակ եթէ ոք 'ի տանն իւր սպասաւորեսցէ և սրբիցէ, որչափ ինչ ոք և իցէ՝ անմիջաբի յայնժամ և զգաստա-գոյնս լինի, նոյնպէս և մեզ զամենայն ժամանակս պարտ է լինել որպէս զաւուրս պաշտօնեայս. և լինի այս՝ թէ զօրհանապազ մատուցանիցես նմա զենումն, և քահա-նայ քում մարմնոյդ լինիցիս ըստ հոգւոյդ առաքինու-թեանն. յորժամ զգաստութիւն և պարկեշտութիւն մատուցանես, յորժամ զողորմածութիւն և յորժամ զհեզութիւն և զանոխակալութիւն. քանզի այսպիսի են որով մատուցանես զբանաւոր պաշտօնն, այսինքն է ոչ ինչ ունելով մարմնական և ոչ թանձրագոյն ինչ և շօշափելի։

Բարձրացոյց զկարգն անուանս այսպիսիս, և զիւրա-քանչիւր ոք՝ քահանայ իւր մարմնոյն եցոյց, որ՝ ասէ և զօրինակն որով կարող էին զայս ուղղել։ Եւ արդ զինչ իցէ օրինակն։ «Մի՛ կերպարանիք, ասէ, ընդ յաւիտենիս այսմիկ կերպարանիք, այլ նորոգեցարուք 'ի նորոգութիւն մտաց ձերոց»։ Վասնզի ընդ երկիր քարշին կերպարանք յա-ւիտենիս այսորիկ, և անարգք և առժամանակեայք են, և չունին ինչ բարձրագոյնս և ոչ ցանկալիս և ոչ ուղ-ղութիւն ինչ, այլ ամենայն ինչ խոտորնակ է։ Եւ արդ եթէ կամիցիս ուղիղ գնալ, մի՛ սպասաւորեր զքեզ ըստ օրինակի անցաւոր կենցաղոյս. քանզի չէ ինչ 'ի սմա որ ամբողջ և հաստատուն կայ մնայ. յաղագս այսորիկ և կերպարանս կոչեաց. և այլուր դարձեալ ասէ. «Անցա-նելոց են կերպարանք աշխարհիս այսորիկ»։ Վասնզի ոչ ինչ հիմնաւոր և հաստատուն ունի, այլ ամենայն առժամեայ է. սորին վասն և յաւիտենիս այսորիկ ա-սաց, կամեցեալ ցուցանել թէ առժամանակեանք են և անհաստատուն կերպարանք։ Նոյնպէս և զմեծութենէ

ասիցես կամ զփառաց կամ զմարմնոյ գեղեցկութենէ կամ զփափկութենէ և կամ այլ ինչ 'ի այնպիսեացս՝ զոր կարծիցես եթէ մեծամեծք ինչ իցեն, կերպարանք միայն են և ոչ եթէ իրաց ճշմարտութիւն, ստուեր միայն է և երևումն և ոչ մշտնջենաւոր ինչ հաստատութիւն ։ Ո՛չ դու, ասէ, մի՛ կերպարանիր այսպիսիւք, այլ նորոգեաց, ասէ, 'ի նորոգումն մտացդ ։ Յուցանէ թէ աշխարհիս կերպարանք միայն է. իսկ առաքինութեանն ոչ են կերպարանք, այլ նորոգումն ճշմարիտ՝ որ ըստ բնութեան իսկ ունի զգեղեցկութիւնն և չէ կարօտ արտաքին անճառացն գեղեցիկ երևել և 'ի կերպարանացն՝ որ զայդ ընդ երևելն եղծանին. վասն զի ամենայն այսոքիկ նախ քան զերևելն լուծանին ։

Որք եթէ զօրինակն 'ի բաց ընկենուցուս, երագ իսկ սա պատկեր ճշմարտութեանն հաստատիցես. քանզի չիք ինչ քան զմեղս տկարագոյն, և ոչ այլ ինչ քան զնա երագ հնանայ ։ Այլ աստ զի մարդկան առանձին իմն էր յընտանանի իւրեանց կամացն զօրհանապազ մեղանչել, յայն սակս մխիթարէ զլսողսն ասելով՝ եթէ ցանկ հանապազ նորոգեա ։ Որ և մեք 'ի տունս շինուածոցն առնեմք՝ զխարխուլն և զհնացեալն միշտ կազմեմք. նոյնպէս և զոգիս մեր գործեսցուք ։ Մեղա՞ր այսօր, հնացուցեր զքո հոգին. այլ մի՛ յուսահատ լինիցիս և մի՛ միշտ 'ի վայր կործանեալ կայցես, այլ կանգնեա և նորոգեա զնա ապաշխարութեամբ արտասուօք և խոստովանութեամբ և արգասեայն բարեգործութեամբ, և մի՛ երբեք պակաս գտանիցիս զայսպիսիս առնելոյ ։

Այլ զի՞նչ կարիցեմք, ասէ, զայս առնել ։ “Ի՛ն 'ի ընտրել ձեզ զկամն, և եթէ զինչ են կամքն ա̃յ բարին և հաճոյն և կատարեալն„ ։ Այսպիսիւք, ասէ, նորոգեաց, որպէս զի ուսջիք եթէ զինչ են կամքն ա̃յ. յայնժամ կարէք նորոգել յորժամ ուսանիցիք թէ ո՛ր է օգուտն և կամ զինչ կամիցի ա̃յ ։ Ոչ թէ զայս գիտեսցես և զիրացն ուսանիցիս ճանաչել զբնութիւն, այլ առհետեաւ բուռն հարկանիցես զառաքինութեն ճանապարհէն.

Այլ ո՞ր ոք տգիտանայ, ասէ, զբարին և զօգուտն, և կամ թէ զինչ կամիցի ա̃յ ։ Արք 'ի մերձակայս են հարեալք, և զհաստատութիւն նախանձելի իմն վարկանին և զաղքատութիւնն եղկելի, որք զմեծութեան զհետ

մնեալ են և առ արտաքին փառսն զմերսն բացեալ կամ հիացեալ, որք մեծամեծ զանձինս կարծիցեն, որք ունեն պայծառս և մեծապարգևս շինիցեն և զգերեզմանս բազմածախս և ճաճանչազգեստս, և զծառայիցն զշուքս ունիցին և զբազմութիւն ներքինեացն շուրջ զինքեամբ պատիցեն: Սոքա են որ զինքեանց զօգուտն և զնոյն զկամսն ագիտանան. և երկոքեան այսոքիկ մի իմն են:

Վասն զի զօգուտն և զբարիսն մեզ ա͞ծ կամի, և զոր ինչ ա͞ծ կամի՝ այն է մեզ բարիս և օգուտն, և արդ ո՞ր են կամք ա͞յ: Աղքատութեամբ կեալ, 'ի խոնարհութեն կեալ, զխռովս արհամարհել, ժուժկալութեամբ կեալ և ոչ փափկութեամբ, նեղութեամբ և ոչ հանգստութեամբ, արթնութեամբ և ոչ ծուլու՝ զերկնայինս և այլովքն ամենեքումբք զորս օրէնս գրեաց: Այլ բազումք որք զայսոցիկ զհետ ոչ չոգան և այնչափ հեռի են յիրացս, կարծեն թէ այն է մեզ օգուտ և ա͞յ կամք, այսինքն է մեծութիւնն. վասն այսորիկ և ոչ մերձենալ անգամ կարեն այնպիսիքն յառաքինութեանն աշխատութիւնս, նա և գիտեն իսկ ոչ եթէ զինչ իցէ առաքինութիւն. և քան զնա մեղքն իմն զարմանալիք թուին նոցա և քաղցունք, և զպատնիկս փոխանակ ցածուն և զգաստ կանանց յանձինս կուտեն: Այլ արդ երբ կարիցեն այնպիսիքն մերժել 'ի յաւիտենից յօժարմանէ:

Վասն որոյ պարտ է նախ քան զայլսն ամ՛ զիրաւունս իւրացն 'ի մեզ հաստատուն պահել. Թէպէտ և ոչ փախիցուք յառաքինութիւն, գոնեայ զամբիցեմք զառաքինութիւն. Թէպէտ և չփախչիցիմք 'ի մեղացն, գոնեայ չար կոչիցեմք զմեղսն: Ոչ թէ այսպէս պահիցեմք անշփոթ զճշմարտութեանն սահմանադրութիւնս, ապա յուղի անկեալ և զգործոյն իսկ բուռն կարեմք հարկանել: Վասն այսորիկ և սա ինքն այսպէս հրամայէր նորոգել. "Նորոգել ձեզ, ասէ, զմիտսն, և եթէ զինչ են կամք ա͞յ": Այս ինձ թուի թէ և 'ի հրեայսն կամի մտել որք զօրէնսն ունէին, քանզի և 'ի հին կարգաւորութեանն էին կամք ա͞յ, ոչ եթէ նախերկրութեամբն, այլ վասն նոցա տկարութեանն թոյլ ետ: Իսկ կատարեալս և հաճոյն՝ նոր կարգաւորութեամբս է: Վասնզի և յորժամ բանաւոր պաշտօն կոչեաց զայս առ 'ի խորոց 'ի մէջ արկանելոյ ընդ հին և ընդ այս, այսպէս անուանեաց:

"Ասեմ, ասէ, 'ի ձեզ շնորհացն որ տուեալ են ինձ, որ է յամենեսին 'ի ձեզ, մի առաւել ինչ խորհել քան զարժանն խորհելոյ. այլ խորհել 'ի զգաստանալ իւրաքանչիւր ոք, որպէս բաժանեաց Ած ըստ չափոյ հաւատոյն ,,: Զառաջինն ասէր՝ թէ աղաչեմ զձեզ գթութեամբն Այ. իսկ աստ դարձեալ ասէ՝ 'ի ձեռն շնորհացն: Տես զհարուցն բարեկարգութիւն. ոչ ուրեք զինքն արժանի հաւատարմութեան վարդապետի այսպիսում խրատու և խորհրդակցութեան. այլ երբեմն զգթութիւն առնու ընդ իւր և երբեմն զշնորհսն: Ոչ եթէ զիմ ինչ բանս ասեմ, ասէ, այլ զայն որ յԱյն է: Եւ չասաց եթէ ասեմ ձեզ 'ի ձեռն իմաստութեանն իմ և կամ 'ի ձեռն օրէնդրութեանն իմ, այլ թէ 'ի ձեռն շնորհացն իմ. միշտ հանապազ զերախտեացն յիշեցուցանէ նոցա, որպէս զի և ս բարեբարոյս առնիցէ զնոսա. և ցուցանէ թէ այնմ ևս պարտական էին, այսինքն է ստացելոցն ունկնդրութեան:

"Ամենեցուն որ 'ի ձեզդ էն ,,. Ոչ եթէ այնմ անուանն և կամ այնմ անուանն, այլ իշխանաց և որք ընդ իշխանութեամբ են, աղքատաց և ծառայից, ազատաց և խնամողաց, արանց և կանանց, ծերոց և երիտասարդաց. ամենեցուն հասարակաց են օրէնքս այս, քանզի տէրունական իսկ է այս: Եւ անտաղտուկ զբանն գործէ, ամենեցուն իսկ առ հասարակ առաջի դնել զայսպիսի զվարդապետութիւն որք էին պարտականք և որք չէին. որպէս զի նոցա առաւելն այլք զիւրեանց ուղղեսցեն և ընդունիցին զխրատն: Եւ արդ զի՞նչ կամիցիս ասել, ասա ինձ. զայն՝ թէ "Մի՛ առաւել ինչ խորհել քան զարժանն խորհելոյ ,,: Զնոյն ամենեցուն բարբառ կամիցի 'ի ներքս մուծանել զխոնարհութիւնն, իբրու մայր վարդապետին նախանձեալ: Զոր օրինակ և յարժամ նա 'ի լեառնն էր և հանդերձեալ էր զուսումնական զբանն յօրինել զխրատու, աստի նախ արար սկիզբն և զայս երհրեմն վարդապետութեանն ասելով այսպէս՝ թէ "Երանի աղքատաց հոգւով զի նոցա է արքայութիւնն երկնից ,,, սոյնպէս և սա յաւանդութենէ անտի 'ի կարգաւորական 'ի բանին փոխեցաւ:

Եւ իբրև ուսոյց բոլորովին իսկ զառաքինութենէն և զսքանչելի զզենումն և զպատուիրանն զայն 'ի մէջ պա-

նի ։ Այլ որպէս տալն 'ի մարդասիրութենէ եղև , այս- պէս և որքան տալն արժան է ։ Քանզի ոչ եթէ զկնա- ւորապէս ինչ ցուցաք զառաքելութիւնս՝ որ է տուեալն պարգևացն , վասն այնորիկ չափով լոկ բաւելոյ ան- ձինն . զի թէ անարգել կամէր զմեզ , անդէն 'ի սկզբանն իսկ չտայր ։ Իսկ արդ եթէ փրկել և պատուել փու- թացաւ , յաղագս այնորիկ իսկ եկն և այսչափ բարու- թիւնս բաշխեաց , և արդ էր վասն ամբոխիս և աղմկիս և 'ի մոլորութիւն դարձուցանես զխոնարհութիւնս , մե- ծագոյն քան զանութիւն յամօթ առնես զքեզ ։ Քան- զի որ լոկ բնութեան մոլորութիւնն է , այնմ չիքայ ինչ մեղադրութիւն . իսկ որ յիմաստութենէ յիմարութիւն է , այսպիսին և 'ի ներելոյ զրկեալ գտանի և մեծամեծ տանջանս ածէ 'ի վերայ իւր ։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Այսպիսիքն են որ իմաստութեամբն մեծամտիցեն և 'ի վերջին անպարշտութիւնս անկանիցին . քանզի չառնէ այլ ինչ մոլոր զոք որպէս զհպարտութի՛ ։ Վասն որոյ և մարգարէն այսպէս կոչէր զամբարտաւան զայն ա- սելով թէ « Զյիմարն զյիմարութիւն խօսի » ։ Այլ զի 'ի բանիցն իսկ ուսցիս զնորա յիմարութիւնն , լուր զինչ ասէ . « Ի վերայ աստեղաց երկնից , ասէ , եդից զա- թոռ իմ , և եղէց նման բարձրելոյն . առից ձեռամբ ի- մով զաշխարհս որպէս զբոյն և որպէս զձուս մնացեալս բարձից » ։ Այլ արդ զինչ յիմարութիւն քան զայս բան կայցէ ։ Այլ զի իւրաքանչիւր ոք յասացելոց բանից ան- տի խոկոյն լի են նախատանօք , թէպէտ և յասացելոցն 'ի մէջ անհիւսիցն զիւրաքանչիւրոցն՝ ոչ կարես ճանաչել յառաջ և 'ի միտ առնուլ զբանս յիմարին . և այսպէս մի է ամենեցուն նոցա պակասամտութիւն ։ Ոչ և այլ միւս ևս բարբարոս ասէր՝ թէ « Աստուած եմ ես և ոչ մարդ » . և միւս ևս դարձեալ . « Ո՞ր թէ կարող իցէ ած փրկել զձեզ և ազատեցուցանել 'ի ձեռաց իմոց » . և եգիպտացին՝ թէ « Ոչ գիտեմ զտէրն և զԻսրայէլ ոչ արձակեմ » . և որ 'ի մարգարէէն անտի ասացեալ ան- զգամն էր՝ այնպիսի ամն էր , մինչև ասէր 'ի սրտի իւ-

ցուք, վասն զի չիք ինչ քան զնա զօրագոյն, այլ և քան զմեռանելն ուժեղ է և քան զանդամանդ հաստատուն և քան զաշտարակ և զքաղաք ամուր և քան զպարիսպ ես 'ի զգուշութեան պահէ զմեզ և քան զամենայն սատանայական մեքենայն բարձրագոյն կարգէ զմեզ. իսկ ամբարտաւանն և մեծամիտն և 'ի դղեկն իմեքէ դիւրաւ ըմբռնի, որպէս տեսցի իսկ աստ՝ եթէ և քան զաղաղաջանս ես դիւրաւ հեղձնու, և քան զարդիւնաւոյն ես երագ սասանի, և զօրէն ծխոյ լուծանի: Իսկ մեք 'ի վերայ վիմին հաստատուն կացցուք, և զայս թողեալ զայլոց զհետ երթիցուք. ապա այնպէս և 'ի մերձակայ կեանսս հանդիստ գտանեմք, և անդ 'ի հանդերձեալ բարութիւնսն վայելեսցուք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ որում փառք Հօր հանդերձ հոգւովն սրբով այժմ և յաւիտեանս. ամէն:

## ՃԱՌ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ

“Որ օրինակ 'ի միում մարմնի անդամս բազումս ունիմք, և անդամքն ամենայն ոչ զնոյն գործ ունին, այնպէս և բազումքս մի մարմին եմք 'ի Քրիստոս, որպէս զի և եմք միմեանց անդամք”:

Պարծեալ զնոյնս աստ 'ի կիր արկանէ, որպէս և առ կորնթացիսն զայնպիսի զչար ախտ ամբարտաւանութեան շիջուցանէր: Այս մեծ իսկ է դեղոյս այսորիկ զօրութիւն, և մեծ սաստի պէտք էին առ 'ի յուղղելոյ զայնպիսի զամբարհաւաճութիւն: Ո՞չ վասն մեծամտես, ասէ, դու, և կամ դարձեալ զընկերն ընդէր անարգեալ անգանես. ո՞չ ապաքէն ամենեքին մի մարմին եմք և մեծամեծք և փոքունք. յորժամ ընդ գլխոյն միաւորիմք, այնու լինիմք միմեանց անդամք, և արդ ընդէր անջատեալ բաժանես զքեզ ամբարտաւանութեամբդ, հի՞մ յանձն առնես զեղբայրն. զի որպէս նա քո անդամ է, նոյնպէս և դու նորա, մանաւանդ թէ այսու իսկ եմք պատուակիցք:

Այլ արդ երկուս ինչ եդ, որով բաւական էր զնոյն հպարտութիւնն 'ի բաց ընկենուլ. և զի միմեանց անդամք եմք, ոչ եթէ փոքունք մեծին միայն, այլ և մեծն կրսերոյն. և զի ամենեքին մի մարմին եմք: Մանաւանդ եթէ երիս իսկ եդ, և եցոյց եթէ պարգևք են զորս ընկալաք: Այլ արդ մի ինչ մեծամտեր. ոչ եթէ դու խնդրեցեր և գտեր, այլ յԱյ տուաւ քեզ. սորին վասն և յորժամ զշնորհացն ճառեաց, չասաց եթէ ոմն առաւել և ոմն նուազ ընկալաւ. այլ զինչ. եթէ այլապէս շնորհս ունիցիմք. ոչ եթէ առաւել և կամ նուազ ինչ, այլ ազգի ազգիս. զի թէպէտ և չհամարեցար մեծամեծս ինչ գործել, սակայն 'ի մարմնոյ նորա ես:

Այլ առաջ այնուհետև սկսեալ 'ի շնորհացանտի յուղղութիւնս անդր տանի: Նախ եթէ մարգարէութիւն և պաշտօն և որքան այսպիսիք ինչ, տանի յառաջ ընթանն յողորմածութիւնն և 'ի փոյթն և յօգնութիւն: Այլ քանզի ամենայն ընտանի իսկ էր առաքինեաց յառաքինութեան կալ և չունել մարգարէութեան շնորհս, ահա եցոյց եթէ և այն շնորհք են, մանաւանդ թէ ևս մեծագոյն՝ զոր և առ կորնթացիսն եցոյց. և այնչափ մեծագոյն, որպէս զի սա վարձս ունի, իսկ միւսն չունի ինչ երախտիս, վասն զի բոլորն իսկ պարգևք են և շնորհք, վասն այնորիկ ասէ՝ թէ "Ունիմք շնորհս ըստ շնորհացն որ տուեալ են մեզ ազգի ազգիս, եթէ մարգարէութիւն ըստ չափոյն հաւատոց": Այլ քանզի բաւականութեամբ իսկ մխիթարեաց զնոսա, կամի զի պատրաստք և փոյթք գտանիցին. և ցուցանէ թէ նոքա եղեն պատճառս գտանել առ 'ի ստանալ զմեծն և զնուազն զշնորհսն: Ասէ թէ և յԱյ այսպէս տուան, որպէս յորժամ ասիցէ՝ թէ "Իւրաքանչիւր ումեք որպէս և Ած բաժանեաց ըստ չափոյ հաւատոցն": և դարձեալ "ըստ շնորհացն, ասէ, որ տուեալ են մեզ": որպէս զի զիջուցանիցէ զամբարտաւանութիւնն նոցա: Ասէ՝ 'ի ձեռն եղև սկիզբն, որպէս զի այսու զարթուցանիցէ զծուլագոյնսն. զոր և առ կորնթացիսն իսկ զերկոսին զայսոսիկ առնէ 'ի կիր: Յորժամ ասիցէ՝ թէ "Նախանձաւոր լերուք շնորհացն", եցոյց թէ նոքա եղեն պատճառք զանազանութեանս այսմիկ որ տուան. յորժամ ասիցէ՝ թէ "Զայս ամենայն ազդէ մի և նոյն հոգի և բաժանէ իւրաքանչիւր որպէս

այն կամի զմեզ՝ եթէ օգնիցեմք կարօտելոցն, այլ և բա-նիւք և խօսք և մարմնով և այլովք ամենայնիւ : Նոյնց և զգլխաւորականն վերակացութեանցն, այս է զվարդապետ-տութեանցն, քանզի այսոքիկ են կարևորք և որ օգտայն իսկ կերակրիչ է. ապա եկն և յայս որ յընչիցն լինի և 'ի ձեռն այլ իրացն : Եւ ցուցանէ թէ իբր կաղմեցի այն՝ զմայրն սոցին 'ի ներքս ածէ, այսինքն է զսէրն :

"Սէր, ասէ, առանց կեղծաւորութեան" : Զի ե-թէ զայն ունիցիս, ոչ ընչիցն ծախուց զգայցես և ոչ աշ-խատութեան մարմնոյ, ոչ ջանի բանից, ոչ քրտանց սպասաւորութեան. այլ ամենայնի քաջութեամբ համ-բերես, թէպէտ մարմնով իցէ կամ ընչիւք կամ բա-նիւք կամ այլով իւիք որով կարօտ է ընկերին օգնելոյ, զամենայն իսկ յանձն առնուս : Որպէս և նայն ոչ միայն զտուրսն պահանջէ՝ այլ և զառատութիւնն, և ոչ լոկ զվերակացութիւնն միայն՝ այլ և զփոյթն, և ոչ զողոր-մածութիւնն միայն՝ այլ և զլրջմտութիւնն, սոյնպէս և ոչ լոկ զսէրն՝ այլ և զանկեղծաւորն. և այն իսկ է սէր : Եւ եթէ այս լինիցի, ապա այլն ամենայն զհետ գայ : Քանզի և որ ողորմին, ուրախութեամբ ողոր-մի, զի իւրում անձինն տայ. և որ վերակացուն է, փու-թով է վերակացու, զի իւրում անձին է վերակացու. և որ տայն՝ առատութեամբ առնէ, քանզի իւր շնորհէ :

Եւ ապա վասն զի է և 'ի չար իրս սէր՝ որ յանառա-կութեանց և 'ի գինեմոլութեանցն լինի և կամ յընչիցն յափշտակութենէ զոր 'ի միասին խորհին. և կամ զոր 'ի հանդգնականացն և յաքաղցութենէն ունիցին, և արդ յայսպիսեացս սաստիկ կամեցեալ որոշել զնոսա՝ ասէ. "Ա-տեայք զչար" : Եւ չասաց եթէ մերժել, այլ թէ ատել, այլ և յոյժ իսկ ատել. քանզի այս բանս 'ի բազում տեղիս որպէս հրաման տուեալ 'ի սմանէ ասին. որպէս յորժամ ասիցէ՝ թէ ակնկալութեան մեծամբ և փրկու-թեան : Եւ վասն զի են ոմանք որ թէպէտ և չգործեն զչար ինչ, սակայն զնոյն ցանկութիւն 'ի սրտին ունին. յաղագս այնորիկ ասաց՝ ատեալ զչար. Այս և զմիտսն եւս կամի սրբել և բազում թշնամութիւն մեզ ընդ մեղսն ունել և պատերազմող և ատելի վարկանել : Եւ արդ մի զի լուար յինէն, ասէ, թէ սիրեցէք զմիմեանս, հա-մարիցիք եթէ մինչև ցայն վայր եւս հրաման, որպէս

զի և ընդ չարսն գործակից լինիցիք. այլ որ ինչ սորին հակառակքն են, ասէ, օրինադրեմ. ոչ միայն 'ի վարուցն, այլ և 'ի մերձաւորութենէ նոցա որք 'ի չարիսն են՝ օտարանալ ձեզ. և ոչ միայն 'ի մերձաւորութենէ նոցա օտարանալ ձեզ, այլ և մեծաւ առաւելութեամբ 'ի բաց դառնալ 'ի նոցանէն և ատել:

Եւ ոչ միայն այսոքիւք շատացաւ, այլ և զառաքինութիւն արգասիս 'ի ներքս ածէ ասելովն՝ թէ "Զհետ եղեալ բարեաց": Եւ չասաց թէ առնել միայն, այլ և յամենայն ժամ յայն խոկալ և 'ի նմին կալ. քանզի վասն հրամայէ ասելովն՝ թէ զհետ երթայք: Սոյնպէս և ա՛յ կամեցեալ զուգել զայրն ընդ կնոջն, ասէր՝ թէ "Յարեսցի 'ի կին իւր": Այս և զպատճառսն ասէր որով պարտիք սիրել:

"Եղբայրսիրութեամբ առ միմեանս գթածք": Եղբարք էք, ասէ, և նոյն երկունքն լուծան 'ի վերայ ամենեցունց. ապա եթէ այդպէս է, իրաւունք են սիրել զմիմեանս: Զայս և Մ՝ովսէս որք յԵգիպտոսն մարտընչէին ընդ միմեանս ասէր՝ թէ "Ա՛րք եղբարք էք, ընդէ՞ր զրկէք զմիմեանս": Զի յորժամ վասն օտարանացն՝ ասէր թէ հնար իցէ ձեզ ընդ ամենայն մարդկան խաղաղութիւն կալջիք. իսկ յորժամ վասն ընտանի իւրոցն՝ ասէր յեղբայրսիրութեամբ առ միմեանս գթածք: Անդ ընդ չկամեցելսն խնդրայ, և ոչ եթէ ատել և 'ի բաց խոտորել 'ի նոցանէն. իսկ աստ սիրել, և ոչ լոկ սիրել, այլ և գթալ. քանզի ոչ միայն, ասէ, անկեղծ պարտ է ունել զսէրն, այլ և յոյժ զեղմամբ ջերմեռանդն: Զինչ օգուտ է, ասէ, թէ սիրէ ամենևին, և ոչ ջերմ սիրով սիրել: Վասն որոյ և ասաց՝ թէ "առ միմեանս գթածք", այսինքն է թէ ջերմագոյնս սիրեա, մի կար մնար յայլմէ սիրիլ, այլ դու նախ յառաջեա և սկսիր. և այսպէս ապա և զնորա սիրոյն զվարձս դու պարգևեսցես:

Եւ իբրև ասաց զպատճառսն որով պարտիք սիրել, ապա ասէ զայն ուսումն անշարժ մնայ սէրն. "Ի պատիւ, ասէ, նախամեծար վարկանիջիք": Վասն զի 'ի սմանէ լինի սէր, և եղեալն ապա հաստատուն կայ: Եւ ոչ այսպէս սիրելիս առնէ, որպէս յորժամ պատուովն փութամք յաղթել ընկերին: Եւ ոչ սէր միայն է, այլ և պատուոյն առաւելութիւն յայսմանէ լինի. վասն զի

առնիցես եղբօրն քում, 'ի ակրն քո երթայ. և զոր ինչ չարչարիս, այնպիսի վարձս վարկանի քեզ։ Տեսանեմ ուր առաւել եհան զմիտս որք զայսպիսին գործեն։ Այս ցուցանէ՝ թէ իւ վասն բաց հոգւոյն.

«Յուսով խնդացէք, ասէ, նեղութեան համբերեցէք, յաղօթս ժուժկալեցարուք»։ Վասնզի այս ամենայն է բորբոքումն հրոյն այնորիկ։ Այլ վասն զի զընչիցն զծախս պահանջէաց և զմարմնոյ զաշխատութիւնս և զերկարաձգութիւն և զփոյթ վարդապետութեան և զայն ամենայն ջան, օծանէ դարձեալ զնահատակն յետ սիրոյն և հոգւոյն 'ի ձեռն յուսոյն։ Վասնզի ոչ այլ ինչ այնպէս զօրաւոր գործէ և անվեհերս առ ամենայն ինչ զհոգին որպէս յոյսն քաջութեան։ Այս և նա քան զյուսալ 'ի բարութիւնսն այլ իմն դարձեալ մատուցանէ, արութիւնն։ Այլ վասն զի յայս համբերելոյն էր, ասէ. «Նեղութեան համբերեցէք»։

Այլ զի յառաջ քան զհամբերելոյն առաւել առ ժամանակէիս իսկ մեծ լաւութիւնս ընձեռեն նեղութիւնքն, այսինքն է ժուժկալս և ընտիրս լինել, յետ այսորիկ միւս ևս օգնութիւնս մատուցանէ առեալ զնա՝ թէ «Յաղօթս ժուժկալք լերուք»։ Այլ արդ որովհետև սէրն դիւրին գործէ և հոգին օգնէ և յոյսն թեթևացուցանէ և նեղութիւնքն ընտիր ցուցանեն և կացուցանեն առ 'ի համբերել ամենայնի քաջութեամբ, և յետ այսորիկ ունիս և այլ ևս մեծագոյն զէն զաղօթսն, և որ 'ի պատրաստականացն լինի օգնութիւնն, ապա և զինչ աշխատութիւն 'ի պատրաստականացն իցէ. և ոչ ինչ։ Տեսանես որպէս ամենայն ուստեք յարդարեաց զնահատակն և թեթևացոյց զհրամանսն։

Այլ և դարձեալ՝ որպէս զողորմածութեանն բուռն հարկանէ. մանաւանդ ոչ լոկ զողորմածութեանն, այլ զայնմանէ որ 'ի սուրբսն լինիցի։ Վասնզի յառաջագոյն ասաց՝ թէ որ ողորմի լզուարթութեամբ, զամենեցուն իսկ զպէտսն ասաց. իսկ աստ վասն հաւատացելոց ասէր. վասն որոյ 'ի սոյնս յարեալ ասէր՝ թէ «Ի պէտս սրբոց հաղորդեցարուք»։ Այլ չասաց թէ տուք նոցա զպէտսն, այլ թէ հաղորդեցարուք 'ի պէտս նոցա. ցուցանէ թէ մեծագոյնս առնուն քան թէ տան. և քանզի շահաւորութիւն են իրքն, յաղագս այնորիկ հաղորդութիւն

կոչի։ Մատուցանես զու զանձս, մատուցանեմ և ծառա քեզ համարձակութիւն առ նմ։

«Ստապախոութեան զհետ երթայք», ասէ։ Այս չառացթէ գործեցէք. խրատէ զմեզ մի կալ մնալ կարօտելոցն առ մեզ, այլ մեք ընթացուք և զհետ երթիցուք։

## ՑՈՐԴՈՐԱԿ

Այսպէս Պօղոս, որպէս և Աբրահամ արար. զխորովլին խոկ զօրն 'ի նմին ծախէր և կայր մնայր բարւոք որոյն, և տեսեալ կայսաւէր և ընդ առաջ ընթանայր և երկիր պագանէր 'ի վերայ երկրի և ասէր. «Տէր, թէ գտի շնորհս առաջի քո, մի զանց առներ 'ի ծառայէ քումմէ»։ Այս ոչ թէ որպէս մեք յորժամ գտանեմք զօտար և կամ զաղքատ ոք, զլխոս 'ի վեր պնդեցեմք և պատասխանւոյ անգամ արժանի չվարկանիցեմք զնոսա, թէպէտ և բիւր պաղատանօք կակղիցեն զմեզ։ Այս թէ յանկարծ հրամայեմք ծառայիցն տալ փոքր մի արծաթ, վարկանիմք թէ բնաւ իսկ զամենայն ուղղեցաք։ Այլ ոչ թէ և նա այսպիսի ինչ. այլ ծառայի կերպարանօք պաղատէր, և այն զի չգիտէր իսկ թէ զով հանդերձեալ է ընդունել. իսկ մեք յայտնապէս գիտեմք թէ զՔրիստոս ընդունիմք, սակայն և ոչ այնպէս լինիմք համբոյր։ Նա աղաչէր և պաղատէր և երկիր պագանէր, իսկ մեք թշնամանեմք ևս զայնոսիկ որ առ մեզն մերձենան և խնդրեն։ Այս նա ինքն անձամբն զամենայն ինչ առնէր, իսկ մեք և ոչ ծառայիցն հրամայեմք։ Ապա եթէ զսեղանն կամիցիս տեսանել զոր առաջի նոցա յօրինեաց, բազում առատութիւն պատուասիրութեան գտանես. առատութիւն ասեմ ոչ որ յաւելութենէ ընչիցն լինի, այլ որ 'ի յօժարութենէ բարուցն մեծութիւն գործի։

Վասն զի շահավաճառք էին յայնժամ, այլ ոչ ոք 'ի նոցանէն այսպիսի ինչ կատարեաց. որչափ այրիք էին յԻսրայէլի, այլ ոչ ոք 'ի նոցանէն եղև ասպնջական Եղիայի. քանզի ընչաւէտք շահաւէտք էին դարձեալ առ Եղիսէիւ, այլ սակաւուցին կթեաց զօտարասիրութեանն զպտուղ. որպէս և յայնժամ Աբրահամ՝ որ ընդ առատութեանն և զբարիոք յօժարութիւնն եցոյց. ընդ

որ մանաւանդ է սքանչանաց, զի և չգիտէր իսկ թէ որ-պիսիք ոյք իցեն որք եկեալն ։ Այսպէս և դու մի պահան-ջեր հաւաստիս, քանզի վասն Քրիստոսի ընդունելիս ։ Ապա եթէ բազում անգամ ՚ի խոյզ և ՚ի խնդիր ար-կանիցես, իցէ զի յընտիր և յառաքինի արանց վրիպես-ցիս և զայնպիսի զվարձս կորուսանիցես ։ Եւ այն թէ չիցէ ոք ընտիր զոր ընդունիցիս, չէ քեզ ինչ վնաս, այլ և վարձս ես ընդունիցիս. «Որ ընդունի, ասէ, մար-գարէ յանուն մարգարէի, զվարձս մարգարէի առցէ» ։ Իսկ յընդվզայր քննութեանցն բազում անգամ և զպար-մանալի արարմք զանց առնիցէ և զատելոց է ։

Եւ արդ մի այսուհետև զվարս և զգործս ՚ի բազում քննութիւնս արկանիցեմք. զի յոյժ անմտութիւն է այս, վասն հացի միոյ զամբողջ կեանս խուզեսցես ։ Ոչ ի թէպէտ և մարդասպան ոք իցէ և կամ աւազակ այնպիսին, ապաքէն մի հացի և փոքր մի արծաթոյ չհա-մարիցիս արժանի ։ Իսկ տէրն քո և զարեգակն ծագէ նոցա. դու և ուտելոյ կերակրոյ զնա արժանի չվարկանի-ցիս ։ Եւ զևս մեծագոյնն գնեմ. զի թէպէտ և հաւա-տեաւ իսկ գիտիցես թէ բիւր չարեաց լի իցէ, սակայն և ոչ այնպէս ունիս պատասխանատուութիւն զրկելով զնա յաւուրն կերակրոյ ։ Նորա ծառայ ես որ ասէրն. «Ոչ գիտէք որոյ հոգւոյ էք» ։ Նորա սպասաւոր ես որ բժշկէր զքարկոծիչսն իւր, մանաւանդ թէ որ խաչե-ցաւն իսկ վասն նոցա ։ Եւ մի ինչ ասեր թէ զայլս սպան և չար է. թէպէտ և զքեզ ինքն իսկ հանդերձեալ է սպանանել, և այնպէս մի անտես առներ զնա մաշեալ ՚ի սովոյ ։ Վասն զի այնորիկ աշակերտ ես որ խաչահա-նուացն փրկութեան փափագէր, որ ասէր ՚ի նմին իսկ ՚ի խաչին՝ թէ «Հայր թող դոցա զի ոչ գիտեն զինչ գոր-ծեն» ։ Նորա ծառայ ես որ զապտակիչսն բժշկեաց, որ զթշնամանիչսն իւր ՚ի վերայ խաչին բժշկեաց ։ Եւ արդ զինչ զոյգ այսմ կայցէ. վասն զի ՚ի սկզբանն երկոքեան իսկ աւազակքն թշնամանէին. բայց սակայն միումն ըզ-դրախտն յառաջ քան ամենեցուն եբաց ։ Եւ արտա-սուէր ՚ի վերայ նոցա որք զնայն սպանանէին ։

Խռովէր և նեղէր յորժամ տեսանէր զմատնիչն, ոչ զի խաչելոցն էր, այլ զի նա կորնչէրն. յայն սակս խռո-վէր զի յառաջ տեսանէր զխեղդն նորա, և յետ խեղ-

ցուք, վասն զի չիք ինչ քան զնա զօրագոյն, այլ և քան զկեանս ուժեղ է և քան զադամանդ հաստատուն և քան զաշտարակ և զքաղաք ամուր և քան զպարիսպ ևս 'ի զգուշութեան պահէ զմեզ և քան զամենայն սատանայական մեքենայս բարձրագոյնս կարգէ զմեզ. իսկ ամբարտաւանն և մեծամիտն և 'ի դոյզն իմեքէ դիւրաւ ըմբռնի, որպէս ասացի իսկ արդ՝ եթէ և քան զպղպջակս ևս դիւրաւ հեղձնու, և քան զսարդոստայն ևս երագ պատառի, և զօրէն ծխոյ լուծանի: Իսկ մեք 'ի վերայ վիմին հաստատուն կացցուք; և զայն թողեալ զայսր զհետ երթիցուք. ապա այնպէս և 'ի մերձակայ կեանսս հանդիստ գտանիցեմք, և անդ 'ի հանդերձեալ բարութիւնսն վայելեսցուք շնորհօք և մարդասիրութե̃ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ որում փառք Հօր հանդերձ Հոգւովն սրբով այժմ և յաւիտեանս. ամէն:

## ՃԱՌ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ

"Որ օրինակ 'ի միում մարմնի անդամս բազումս ունիմք, և անդամքն ամենայն ոչ զնոյն գործ ունին, նոյնպէս և բազումքս մի մարմին եմք 'ի Քրիստոս, որպէս զի և եմք միմեանց անդամք":

Դարձեալ զնոյն ասէ 'ի կիր արկանէ, որպէս և առ կորնթացիսն զայնպիսի գչար ախտ ամբարտաւանութե̃ն շիջուցանէր: Այս մեծ իսկ է դեղոյս այսորիկ զօրութիւն, և մեծ սաստի պէտք էին առ 'ի յուղղելոյ զայնպիսի զամբարտաւանութիւն: Ո՞ր վասն մեծամտես, ասէ, դու, և կամ դարձեալ զընկերն ընդէ՞ր անարգեալ անդոսնես. ո՞չ ապաքէն ամենեքին մի մարմին եմք և մեծամեծք և փոքունք. յորժամ ընդ գլխոյն միաւորիմք, այնու լինիմք միմեանց անդամք, և արդ ընդէ՞ր անջատեալ բաժանես զքեզ ամբարտաւանութեամբդ, հիմ յանձնեթ առնես զեղբայրն. զի որպէս նա քո անդամ է, նոյնպէս և դու նորա, մանաւանդ թէ այսու իսկ եմք պատուակից:

Իսկ արդ երկուս ինչ եդ, որով բաւական էր զմտաց հպարտութիւնն 'ի բաց ջնջել. և զի մեծամեծաց անդամք եմք, ոչ եթէ փոքրն մեծին միայն, այլ և մեծն կրտսերայն. և զի ամենեքին մի մարմին եմք։ Մանաւանդ եթէ երկու իսկ եդ, և եցոյց եթէ առաւելք են զորս ընկալաքն։ Իսկ արդ մի ինչ մեծամտեր. ոչ եթէ դու խնդրեցեր և գտեր, այլ յԱյ առաւ քեզ. սորին վասն և յորժամ զշնորհացն ձայնեաց, չասաց թէ այն առաւել և այն նուազ ընկալաւ. այլ զի՞նչ. եթէ այլապէս շնորհս ունիցիմք. ոչ եթէ առաւել և կամ նուազ ինչ, այլ ազգի ազգիս. զի թէպէտ և չհամարեցար մեծամեծս ինչ գործել, սակայն 'ի մարմնոյ նորա ես։

Իսկ ապա այնուհետև սկսեալ 'ի շնորհացանտն յաղղութիւնս անցը առնէ։ Ասաց եթէ մարգարէութիւն և պաշտօն և որքան սոյնպիսիք ինչ, առնէ յառաջ բերանն յողորմածութիւնն և 'ի փոյթն և յօգնութիւնս։ Իսկ քանզի ոմանց ընտանի իսկ էր առանձին յառաջենութեան կալ և չունէին մարգարէութեան շնորհս, առաս եցոյց եթէ և այն շնորհք են, մանաւանդ թէ ևս մեծագոյն՝ զոր և առ կորնթացիսն եցոյց. և այնչափ մեծագոյն, որպէս զի սա վարձս ունի, իսկ միւսն չունի ինչ երախտիս, վասն զի բոլորն իսկ պարգևք են և շնորհք, վասն այնորիկ ասէ՝ թէ "Ունիմք շնորհս ըստ շնորհացն որ տուեալ են մեզ այլ ազգի ազգիս, եթէ մարգարէութիւն ըստ չափոյն հաւատոց"։ Իսկ քանզի բաւականութեամբ իսկ մխիթարեաց զնոսա, կամի զի պատրաստք և փոյթք գտանիցին. և ցուցանէ թէ նոքա եւսուն բարուքս գտանել առ 'ի ստանալ զմեծն և զնուազն զշնորհսն։ Ասէ թէ և յԱյ այսպէս առեալ, որպէս յորժամ ասիցէ՝ թէ "Իւրաքանչիւր ումեք որպէս և Ած բաժանեաց ըստ չափոյ հաւատոյն"։ և դարձեալ "ըստ շնորհացն, ասէ, որ տուեալ են մեզ"։ որպէս զի զիջուցանիցէ զամբարտաւանութիւնն նոցա։ Ասէ՝ 'ի ձեռն եղև սկիզբն, որպէս զի այսու զարթուցանիցէ զծուլագոյնսն. զոր և առ կորնթացիսն իսկ զերկոսին զայսոսիկ առնէ 'ի կիր։ Յորժամ ասիցէ՝ թէ "Նախանձաւոր լերուք շնորհացն", եցոյց թէ նոքա եղեն պատճառք զանազանութեանս այսմիկ որ տուաւ. յորժամ ասիցէ՝ թէ "Զայս ամենայն ազդէ մի և նոյն հոգի և բաժանէ իւրաքանչիւր որպէս

և կամք,,, զայն կամս կոչէ, թէ մի ոք մեծամտիցէ առաւել շնորհօքն. ամենայն ունիք Քանզի ողջմտու-ցանել զախտն նոցա: Սոյնպէս և աստ գործէ, և դար-ձեալ կանգնէ զանկեալսն, ասէ. "Եթէ մարգարէութիւն ըստ չափոյ հաւատոյն,,: Ոչ թէպէտ և շնորհք են, ասէ, այլ ոչ եթէ ընդ վայր ինչ զեղուն, այլ ըստ չափոյ որք ընդունիցինն՝ տուեալ լինին. այնքան բղխէ որքան գտանէ զանօթն 'ի հաւատոց մատուցեալ:

"Եթէ պաշտօն ըստ պաշտամանն,,: Ընդհանրա-կան իմն իրս դնէ աստ. քանզի և առաքելութիւն պաշ-տօն է, և ամենայն իսկ հոգևոր գործ պաշտօն է: Եւ և առանձինն իսկ իրացս այսոցիկ անուն տնտեսութեան: Իսկ աստ տիեզերական կամեցաւ զանունն դնել, յայն սակս այսպէս անուանեաց: Նոյն ասէ՝ թէ "Որ ուսու-ցանիցէն ըստ վարդապետութեանն,,: Տես որպէս առանց զանազանութեան դնէ զայս զիրերն առաջի: Դարձեալ խրատէ զնոսա մի հպարտանալ և ամբարտաւանել. "Որ մխիթարիցէն՝ ըստ մխիթարութեանն,,: Եւ այս տեսակ է վարդապետութեան. "Ոչ եթէ իցեն, ասէ, 'ի ձեզ բանք մխիթարութեան, առ ժողովուրդն ասացէք,,:

Նոյն ցուցանէ թէ չէ մեծ օգուտ յառաքինութե-նէն, թէ ոչ կամօք և յօժարութեամբ լինիցի ըստ որի-նացն՝ ածէ զամփոփ՝ թէ "Որ տայն առատութեամբ,,: Ոչ է, ասէ, տալն միայն բաւական, այլ պարտ է բազում իսկ յաճախութեամբ զայն առնել: Առատութիւն ամենայն ուրեք իսկ յիշէ: Այս և կուսանացն ունել ու-նէին իւղ. և քանզի զբաւականն չունէին, յամենայնէ իսկ զրկեցան: "Որ վերակացուն է փութով,,: Ոչ է բա-ւական վերակացուն միայն լինել, այլ ամենայն փութով և յօժարութեամբ:

"Որ ողորմի զուարթութեամբ,,: Քանզի չէ բաւա-կան ողորմելն միայն, այլ բազում առատութեամբ և անտրտում բարուք պարտ է առնել զայն. մանաւանդ ոչ առանց տրտմութեան միայն, այլ զուարթութեամբ և խնդալով. քանզի չէ զոյգ տրտմելն և խնդալն: Սոյնս զայս և առ Կորնթացիսն գրեալ բազում փութով կաց-մէր, յառատութիւն յորդորեալ զնոսա այսպէս ասէր. "Որ խնայելովն սերմանէ, պակասագոյնս հնձեսցէ. և որ օրհնութեամբն սերմանէ, օրհնութեամբ և ժողո-

այն կամի զմեզ եթէ օգնիցեմք կարօտելոցն, այլ և բա-նիւք և խրոք և մարմնով և այլովք ամենայնիւ։ Նոյնց և զգլխաւորական վերակացութեանն, այս է զվարդապետ-ութեանն, քանզի այսոքիկ են կարեւորք և ոչ ոգւոյն իսկ կերակրիչ է. ապա եկն և յայս որ յընչիցն լինի և 'ի ձեռն այլ իրացն։ Այլ ցուցանէ թէ երբ կամիցի այն՝ զմայրն ասցէ 'ի նեղքս ածէ, այսինքն ի զոհերն։

«Սէր, ասէ, առանց կեղծաւորութեան»։ Ոչ ե-թէ զայն ունիցիս, ոչ ընչիցն ծախուց զգայցես և ոչ աշ-խատութեան մարմնոյ, ոչ ջանի բանից, ոչ քրտանց սպասաւորութեան. այլ ամենայնի քաջութեամբ համ-բերես, թէպէտ մարմնով իցէ կամ ընչիւք կամ բա-նիւք կամ այլով իւիք որով կարօտ է ընկերն օգնելոյ, զամենայն իսկ յանձն առնուս։ Որպէս և նոյն ոչ միայն զտուրսն պահանջէ՝ այլ և զառատութիւնն, և ոչ լոկ զվերակացութիւնն միայն՝ այլ և զփոյթն, և ոչ զողոր-մածութիւնն միայն՝ այլ և զլրջմտութիւնն, սոյնպէս և ոչ լոկ զսէրն՝ այլ և զանկեղծաւորն. և այն իսկ է սէր։ Այլ եթէ այս լինիցի, ապա այլն ամենայն զհետ գայ։ Վասնզի և որ ողորմին, զուարթութեամբ ողոր-մի, զի իւրում անձինն տայ. և որ վերակացուն է, փու-թով է վերակացու, զի իւրում անձին է վերակացու. և որ տայն՝ առատութեամբ տանէ, քանզի իւր շնորհէ։

Այլ ապա վասն զի է և 'ի չար խոյս տալ՝ որ յանառա-կութեանց և 'ի գինեմոլութեանց լինի և կամ յընչիցն յափշտակութենէ զոր 'ի միմեանս խորհին. և կամ զոր 'ի հանդգնականացն և յարբեցութենէն ունիցին, և արդ յայսպիսեաց ատելի կամեցեալ սրբել զնոսա՝ ասէ. «Ա-տեալ զչար»։ Այլ չասաց եթէ մերժել, այլ թէ ատել, այլ և յոյժ իսկ ատել. քանզի այս բանք 'ի բազում տեղիս որպէս հրաման տուեալ 'ի սմանէ ասին. որպէս յորժամ ասիցէ՝ թէ ատենակալութեան մնամք և փրկու-թեան։ Այլ վասն զի են ոմանք որ թէպէտ և չգործեն զչար ինչ, սակայն զնոյն ցանկութիւն 'ի սրտին ունին. յաղագս այնորիկ ասաց՝ ատեալ զչար։ Այս և զմիտսն եւս կամի սրբել և բազում թշնամութիւն մեզ ընդ մեղսն ունել և պատերազմող և ատելի վարկանել։ Այլ արդ մի զի լուար յինէն, ասէ, թէ սիրեցէք զմիմեանս, համ-մարիցիք եթէ մինչև ցայն վայր եւս հրաման, որպէս

զի և ընդ չարեաց գործակից լինիցիք․ այլ որ ինչ սորին հակառակքն են, ասէ, օրինադրեմ․ ոչ միայն 'ի վարուցն, այլ և 'ի միջնաւորութենէ նոցա որք 'ի չարիսն են՝ օտարանալ ձեզ․ և ոչ միայն 'ի միջնորդութենէ նոցա օտարանալ ձեզ, այլ և մեծաւ առաւելութեամբ 'ի բաց դառնալ 'ի նոցանէն և ատել։

Եւ ոչ միայն այսոքիւք շատացաւ, այլ և զատուցանութիւն արգասիս 'ի ներքս ածէ առելովն՝ թէ “Զհետ երթալ բարեաց”։ Եւ չասաց թէ առնել միայն, այլ և յամենայն ժամ յայն խոկալ և 'ի նմին կալ․ քանզի զայս հրամայէ առելովն՝ թէ զհետ երթայք։ Միանգամայն և ո՜ր կամեցեալ զուգել զայլն ընդ կնոջն, ասէր՝ թէ “Յարեսցի 'ի կին իւր”։ Նոյն և զպատճառսն ասէր որով պարտիցէ սիրել։

“Եղբայրսիրութեամբ առ միմեանս գթածք”։ Եղբարք էք, ասէ, և նոյն երկունքն ծնան 'ի վերայ ամենեցունց․ արդ եթէ այդպէս է, իրաւունք են սիրել զմիմեանս։ Զայս և Մովսէս որք յԵգիպտոսն մարտնչէին ընդ միմեանս ասէր՝ թէ “Արք եղբարք էք, ընդէ՞ր զրկէք զմիմեանս”։ Զի յորժամ վասն արտաքնոցն՝ ասէր թէ հնար իցէ ձեզ ընդ ամենայն մարդկան խաղաղութիւն կալջիք․ իսկ յորժամ վասն ընտանի իրացն՝ ասէր յեղբայրսիրութեան առ միմեանս գթածք։ Անդ ընդ չկռուելն խնդրեմ, և ոչ եթէ ատել և 'ի բաց խոտորել 'ի նոցանէն․ իսկ աստ սիրել, և ոչ լոկ սիրել, այլ և գթալ․ քանզի ոչ միայն, ասէ, անկեղծ պարտ է ունել զսէրն, այլ և յոյժ զեղմամբ ջերմեռանդն։ Զինչ օգուտ է, ասէ, թէ սիրէ անմենգ, և ոչ ջերմ սիրով սիրել։ Վասն որոյ և ասաց՝ թէ “առ միմեանս գթածք”, այսինքն է թէ ջերմագոյնս սիրեա, մի կալ մնար յայլմէ սիրել, այլ դու նախ յառաջեա և սկսիր․ և այսպէս առցես և զնորա սիրոյն զվարձս դու պտղաբերես։

Եւ իբրև ասաց զպատճառսն որով պարտիցէ սիրել, ապա ասէ զայն ուստի անշարժ մնայ սէրն․ “Ի պատիւ, ասէ, նախամեծար վարկանիջիք”։ Վասն զի 'ի սմանէ լինի սէր, և եղեալն ապա հաստատուն կայ։ Եւ ոչ այսպէս սիրելիս առնէ, որպէս յորժամ պատուովն փութամք յաղթել ընկերին։ Եւ ոչ սէր միայն է, այլ և պատուոյն առաւելութիւն յայսմանէ լինի․ վասն զի

առնիցես եղբօրն քում, 'ի տէրն քո երթայ. և զոր ինչ չարչարիս, այնպիսի վարձս վարկանի քեզ: Տեսանե՞ս ուր տարաւ եհան զմիտս որք զայսպիսիսն գործեն: Ապա ցուցանէ՝ թէ իւ վասն քոյ Հոգւոյն.

“Յուսով խնդացէք, ասէ, նեղութեան համբերեցէք, յաղօթս ժուժկալեցարուք„: Վասնզի այս ամենայն է բարերարութիւն Հոգւոյն այնորիկ: Աւ վասն զի զընչեցն զծախս պահանջեաց և զմարմնոյ զաշխատութիւնս և զպերճակացութիւն և զփոյթ վարդապետութեան և զայն ամենայն ջան, օծանէ դարձեալ զնահատակն յետ սիրոյն և Հոգւոյն 'ի ձեռն յուսոյն: Վասնզի ոչ այլ ինչ այնպէս զօրաւոր գործէ և անփոփոխ առ ամենայն ինչ զհոգին որպէս յոյսն քաջալերութեան. Ապա և նա քան զյուսալ 'ի բարութիւնսն այլ ինչ դարձեալ մատուցանէ, աղօթիւքն: Աւ վասն զի յայս հանդերձեալսն էր, ասէ. “Նեղութեան համբերեցէք„:

Աւ զի յառաջ քան զհանդերձեալսն տայցէ առ ժամանակեաւ իսկ մեծ լաւութիւնս ընձեռեն նեղութիւնքն, այսինքն է ժուժկալս և ընտիրս լինել, յետ այսորիկ միւս ևս օգնութիւն մատուցանէ ասելովն՝ թէ “Յաղօթս ժուժկալք լերուք„: Աւ արդ որովհետև սէրն դիւրին գործէ և հոգին օգնէ և յոյսն թեթևացուցանէ և նեղութիւնքն ընտիր ցուցանեն և կազմեն առ 'ի համբերել ամենայնի քաջութեամբ, և յետ այսոցիկ ունիս և այլ ևս մեծագոյն զէն զաղօթսն, և որ 'ի պաղատանացն լինի օգնութիւնն, ապա և զինչ աշխատութիւն 'ի պատուիրանացն իցէ. և ոչ ինչ: Տեսանե՞ս որպէս ամենայն ուստեք յարդարեաց զնահատակն և թեթևացոյց զհրամանսն:

Այսպէս դարձեալ որպէս զողորմածութեանն բուռն հարկանէ. մանաւանդ ոչ լոկ ողորմածութեանն, այլ զայնմանէ որ 'ի սուրբսն լինիցի: Վասնզի յառաջագոյն ասաց՝ թէ որ ողորմի ըզուարթութեամբ, զամենեցուն իսկ զպէտսն ասաց. իսկ աստ վասն հաւատացելոց ասէր. վասն որոյ 'ի սոյնս յարեալ ասէր՝ թէ “Ի պէտս սրբոց հաղորդեցարուք„: Աւ չասաց թէ տուք նոցա զպէտսն, այլ թէ հաղորդեցարուք 'ի պէտս նոցա. ցուցանէ թէ մեծագոյնս առնուն քան թէ տան. և քանզի շահաւորութիւն են իրքն, յաղագս այնորիկ հաղորդութիւն

կոչի։ Մատուցանես դու զանձս, մատուցանեմ և ծոցս քեզ համարձակութիւն առ Ած։

«Ողորմութեան զհետ երթայք», ասէ։ Եւ չասաց թէ գործեցէք. խրատէ զմեզ մի կալ մնալ կարօտելոցն առ մեզ, այլ մեք ընթասցուք և զհետ երթիցուք։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Այսպէս Պօղոս, այնպէս և Աբրահամ արար. զբոլորովին իսկ զօրն ի նմին ծախէր և կայր մնայր բարեաց որսոյն, և տեսեալ կայտառէր և ընդ առաջ ընթանայր և երկիր պագանէր ի վերայ երկրի և ասէր. «Տէր, թէ գտի շնորհս առաջի քո, մի զանց առնէր ի ծառայէ քումմէ»։ Եւ ոչ թէ որպէս մեք յորժամ գտանեմք զօտար և կամ զաղքատ ոք, զայնս ի վեր ամբարձցեմք և պատասխանւոյ անգամ արժանի չվարկանիցեմք զնոսա, թէպէտ և բիւր պաղատանօք կակղիցեն զմեզ։ Եւ թէ յանկարծ հրամայեմք ծառայիցն տալ փոքր մի արծաթ, վարկանիմք թէ բնաւ իսկ զամենայն ուղղեցաք։ Այլ ոչ թէ և նա այսպիսի ինչ. այլ ծառայի կերպարանօք պաղատէր, և այն զի չգիտէր իսկ թէ զով հանդերձեալ է ընդունել. իսկ մեք յայտնապէս գիտեմք թէ զՔրիստոս ընդունիմք, սակայն և ոչ այնպէս լինիմք համբոյր։ Նա աղաչէր և պաղատէր և երկիր պագանէր, իսկ մեք թշնամանեմք և զայնոսիկ որ առ մեզն մերձենան և խնդրեն։ Եւ նա ինքն ամենայնիւ զամենայն ինչ առնէր, իսկ մեք և ոչ ծառայիցն հրամայեմք։ Արդ եթէ զսեղանն կամիցիս տեսանել զորս առաջի նոցա յօրինեաց, բազում առատութիւն պատուասիրութեան գտանես. առատութիւն ասեմ ոչ որ յառաւելութենէ ընչիցն լինի, այլ որ ի յօժարութենէ բարուցն մեծութիւն գործի։

Վասն զի շահավաճառք էին յայնժամ, այլ ոչ ոք ի նոցանէն այսպիսի ինչ կատարեաց. որչափ այրիք էին յԻսրայէլի, այլ ոչ ոք ի նոցանէն եղև ասպնջական Եղիայի. քանզի ընչաւէտք շահաւէտք էին դարձեալ առ Եղիսէիւ, այլ Սոմնացին կթեաց զպատուասիրութեանն զպտուղ. որպէս և յայնժամ Աբրահամ՝ որ ընդ առատութեանն և զբարիոք յօժարութիւնն եցոյց. ընդ

որ մանաւանդ է սքանչանալ, զի և չգիտէր իսկ թէ որպիսիք ոյք իցեն որք եկին: Այնպէս և դու մի՛ պահանջեր հաւատոյ, քանզի վասն Քրիստոսի ընդունիս: Ապա եթէ բազում անգամ 'ի խոյզ և 'ի խնդիր արկանիցես, իցէ զի յընտիր և յառաքինի արանց վրիպեսցես և զայնպիսի զվարձս կորուսանիցես: Այլ այն թէ չիցէ ոք ընտիր զոր ընդունիցիս, չէ քեզ ինչ վնաս, այլ և վարձս ևս ընդունիցիս. «Որ ընդունի, ասէ, մարգարէ յանուն մարգարէի, զվարձս մարգարէի առցէ»: Իսկ յընդդէմն քննութեանցն բազում անգամ և զզարմանալի արամբք զանց առնիցէ և դատելոց է:

Այլ արդ մի այսուհետև զվարս և զգործս 'ի բազում քննութիւնս արկանիցեմք. զի յոյժ անմտութիւն է այս, վասն հացի միոյ զբոլորովին կեանս խուզեսցես: Զի թէպէտ և մարդասպան ոք իցէ և կամ աւազակ այնպիսին, սակայն մի հացի և փոքր մի արծաթոյ չհամարիցիս արժանի: Իսկ տէրն քո և զարեգակն ծագէ նոցա. դու և աւուրն կերակրոյ զնա արժանի չվարկանիցիս: Այս զեւս մեծագոյնն դնեմ. զի թէպէտ և հաւատեաս իսկ գիտիցես թէ չար ոք իցէ, սակայն և ոչ այնպէս ունիս պատճառախնդրութիւն զրկելով զնա յաւուրն կերակրոյ: Նորա ծառայ ես որ ասէրն. «Ոչ գիտէք որոյ հոգւոյ էք». նորա աշակերտ ես որ բժշկէր զքարկոծիչսն իւր, մանաւանդ թէ որ խաչեցաւն իսկ վասն նոցա: Այլ մի ինչ ասեր թէ զայլս սպան և չար է. թէպէտ և զքեզ ինքն իսկ համոզերձեալ է սպանանել, և այնպէս մի անտես առներ զնա մաշեալ 'ի սովոյ: Վասն զի այնորիկ աշակերտ ես որ խաչահանուացն փրկութեան փափագէր, որ ասէր 'ի նմին իսկ 'ի խաչին՝ թէ «Հայր թող դոցա զի ոչ գիտեն զինչ գործեն»: Նորա ծառայ ես որ զապտակիչսն բժշկեաց, որ զթշնամանիչսն իւր 'ի վերայ խաչին բժշկեաց: Այլ արդ զինչ զոյգ այսմ կայցէ. վասն զի 'ի սկզբանն երկոքեան իսկ աւազակքն թշնամանէին. բայց սակայն միումն ընդդրախտն յառաջ քան զամենեցուն եբաց: Այլ արտասուէր 'ի վերայ նոցա որք զնայն սպանանէին:

Խռովէր և նեղէր յորժամ տեսանէր զմատնիչն, ոչ զի խաչելոցն էր, այլ զի նա կորնչէրն. յայն սակս խռովէր զի յառաջ տեսանէր զխեղդն նորա, և յետ խեղ-

գին զգեհենն. Թէպէտ և յառաջ գիտէր զպարտութիւն նորա, այլ մինչև յետին ժամն տանէր հեզութեամբ, և ոչ ինչ ընդդէմ ասէր, այլ և ողջունեացն ևս զմատնիչն 'ի վերջին ժամուն: Այլ արդ տէրն քո զողջոյն ըն-թանցն յանձն առնու զայնորիկ որ հանդերձեալ էր զպատուականն արիւնն նորա հեղուլ. իսկ դու և ո՛չ զաղքատն աղքատ մի հացի վարկանիս արժանի: Ոգիտ-ցես զօրէնսն զոր եդ Քրիստոս. վասն այսորիկ եցոյց զի ոչ միայն զաղքատն, այլ և զորս 'ի մահն տանիցեն՝ չէ պարտ 'ի բաց դառնալ 'ի նոցանէ մեզ: Այլ մի ինչ զայն այժմ ասել՝ թէ չար գործեաց այս անուն. այլ զայն ած զմտաւ թէ զինչ գործեաց Քրիստոս անդէն իսկ 'ի ժամ խաչին. զի 'ի ձեռն ողջունին որ հանդերձեալ էր մատնել զնա՝ կամէր ածել յուղղութիւն զմատնիչն: Այլ դու տես զիարդ պատկառեցուցանելով զնա ասէր. «Յուդա, համբուրելո՞վ դու մատնես զորդի մարդոյ»: Ո՞ որ ոչ կակղեցուցանէր այնպիսի ձայն, զո՞ որ ոչ խո-նարհեցուցանէր, զայնպիսի գազան, զայնպիսի սրտամտա-դեալ. այլ ոչ թէ և զհեքն զայն: Այլ արդ ասէր իսկ դու մի՛ թէ զայն անուն եղական այս անուն, և յաղագս այսորիկ 'ի բաց դառնամ 'ի նմանէն: Ուսցուք և ընդ-դէմ քո հանդերձեալ է բերել զսուրն, և զայն թաց-ցէ յարեան քում և զսուրն 'ի ներքս մխիցէ մինչև 'ի կատարածն՝ զնոյն խնդրն զայն համբուրեա, քանզի և Քրիս-տոս զայն բերան ողջունեաց որոյ զմահն գործեալ էր: Այնուհետև և դու մի ատեար, այլ արտասուեա և ողոր-մեա ներհակագործին, քանզի ողորմելոյ արժանի են այն-պիսիքն 'ի մեզ և արտասուելոյ. վասն զի նորա ծա-ռայք եմք որ զմատնիչն ողջունեաց:

Չդադարեմ հանապազ զնոյնս յեղյեղուլ. և որ քան զնոյնս ևս կակղագոյն զբանս խօսեցեալ. վասն զի չա-սաց՝ թէ ով պիղծդ և ամենաչար ժանտ և մատնիչդ, զայսպիսի փոխարէնս հատուցանես ինձ ընդ երախ-տեացն իմոց: Այլ զի՞նչ, թէ Յուդա. զամպարշտական անուանն դնէ, որ մանաւանդ եղկելոյ զնա էր և վերստին ուղղելոյ, և ոչ եթէ բարկութեան ինչ: Այլ չասաց թէ զտէրն քո և զվարդապետն քո և զբարերարն, այլ եթէ զորդի մարդոյ: Ով թէպէտ և վարդապետ և տէր չէր, ո՞չ էր այնպիսի զգաստութիւն առ այնպիսի

երթիցէ առոյ. իսկ դու առանց ուրուք մեղելոյ և հարկաւորութեան ծառես զեղբայրն խածանելով և պատառելով. զի թէպէտ և ոչ ատամամբք, այլ բանիւքն՝ որ և ս դժնդակ վէրս գործէ քան զժանեացն։

Այլ արդ զիա՞րդ կարիցես ընդունել զա̃ծային զպատարագն, որ մարդկային արեամբն կարմրացուցեր զլեզուդ. ո՞րպէս կարիցէ տալ զխաղաղութիւն բերանդ որ պատերազմաւ լի է. և կամ զիա՞րդ կարիցես վայելել 'ի կերակուրս յայս յոր այնպիսի թոյնք ժողովեալ են։ Զուզես զաղքատութիւն, ընդէ՞ր և 'ի վայր կործանես զնա. չկամեցանես զդլորեալն, ընդէ՞ր և ս ընդ գետին տանիցես զնա. չմերժես 'ի նմանէ զվհատութիւնն, ե՞ր վասն և ս քան զև ս թանձրացուցանես. չտաս ինչ, հի՞մ և բանիւք թշնամանես։ Զիա՞րդ թէ որպիսի պատժոց են որք ոչ կերակրեն զաղքատս, կամ որպիսի խոշտանգանաց տանջելոց են. քանզի ասէ. "Երթայք 'ի հուրն զոր պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա"։ Որ եթէ որք ոչ կերակրեցին միայն՝ այսպէս դատապարտին, ապա որք չկերակրեցին և թշնամանեցին և ս՝ զորպիսի՞ դատ առնլոց են, քանի՞ տանջանս և գեհենին ընդունելոց են։

Այլ արդ զի մի այսպիսի վնասուցեալք զկարիւն, մինչդեռ 'ի ձեռս մեր է՝ ուղղեսցուք զայնպիսի զախտ, և լեզուի սանձս դիցուք. և մի միայն 'ի թշնամանացն փախիցուք, այլ և մխիթարեսցուք և ս զնոսա և բանիւք և իրօք, որպէս զի բազում իւղս համբարեսցուք մեզ յառաջագոյն անդր, որով հասանել կարասցուք խոստացելոց բարութեանցն։ Որոց լիցի ամենեցուն մեզ արժանի լինել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք Հօր հանդերձ Հոգւովն սրբով այժմ և յաւիտեանս. ամէն։

# ՃԱՌ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՐԿՐՈՐԴ

«Օրհնեցէք զհալածիչս ձեր, օրհնեցէք և մի անի-ծանէք»։

Ուսոյց նոցա թէ որպէս ընդ միմեանս պարտ է կեալ, և յարել հաստատուն զանդամսն 'ի միմեանս։ Նա այսպէս հանէ զնոսա և յարտաքինն 'ի ճակատամարտ և դիւրին գործէ զայն։ Զի որ առ ընտանիսն չցուցանիցէ զուղղութիւն, դժուարաւ կարէ մատակարարել առ օտարան. զի որ յայսոսիկ վարժեալ իցէ, ապա և յարտաքինն իսկ երագ հաստատուն գտանի։ Վասն այսորիկ և Պաւղոսի յուղի անկեալ յետ այսորիկ և զայս դնէ. ասէ. «Օրհնեցէք զհալածիչս ձեր»։ Ոչ ասաց թէ մի չարայուշք լինիք և մի վրէժ խնդրէք, այլ և որ ևս մեծագոյնն քան զայս էր խնդրեաց. քանզի այն առն փիլիսոփայի էր, իսկ այս հրեշտակի իսկ։

Իսկ իբրև ասաց թէ օրհնեցէք, յարեաց 'ի սոյն՝ թէ և մի անիծանէք. որպէս զի մի զերկոսեան առնիցեմք, այլ զայն միայն։ Իսկ և վարձս ևս բազմաւն ընձեռեն մեզ հալածիչքն. եթէ արթունք իցեմք, և այլ ևս դու ընդ նմին կազմես քեզ վարձս. զի նա 'ի հալածելոյ անտի ընծայէ քեզ վարձս, իսկ դու յօրհնելոյ անտի քեզէն քեզ ժողովես զգանձս և զմեծ նշան սիրոյն Քրիստոսի ցուցանես։ Զի զոր օրինակ որ անիծանէ զհալածիչն, ցուցանէ թէ չէ կարի ուրախ զի այնպէս չարչարի վասն Քրիստոսի, այնպէս և որ օրհնէն՝ յայտ առնէ թէ կարի հարեալ է 'ի սէրն Քրիստոսի։ Իսկ արդ մի բամբասեր, և որպէս զի նա քեզ մեծ վարձս պտղաբերեաց այնու, և զնա իսկ ուսուցանես թէ յաժարութեան են իրքն և ոչ եթէ 'ի հարկէ ինչ, ուրախութեան և առնի և ոչ եթէ հեքութեան ինչ և վհատութեան։ Յաղագս այսորիկ և Քրիստոս ասէր՝ թէ «Խնդացէք յորժամ ասասցեն զամենայն բան չար ըզձէնջ սուտ»։ Սորին վասն և առաքեալքն դառնային

յերեսաց ատենին ուրախութեամբ. ոչ զի զչարն լուան միայն, այլ զի և զգանն արբին։

Համօրէն ասացելովքս և այլ իմն ոչ փոքր ինչ շահիս, զի այսոքիւք ստգտանես զոսոխն և խրատես զնա գործովքն՝ եթէ այլ իմն 'ի կեանս փոխիս. զի յորժամ տեսանիցէ զքեզ յօժարամիտ առ 'ի յընդունել զչարչարանսն, հաւաստեաւ իսկ 'ի միտ առնու 'ի ձեռն իրացն թէ արդարեւ մեծագոյն իմն քան զառժամանակեայս այլ իմն յոյս ունիս։ Իսկ եթէ զայս չառնիցես՝ այլ տրտմիցիս, ուստի կարիցես զնա ուսուցանել թէ այլում կենաց ակն ունիս։ Նոյնպէս սոյնս գործեալ և այլ իմն ուղղես. քանզի յորժամ տեսանէ թէ ոչ ինչ ցաւեցին քեզ թշնամանքն՝ այլ ուրախ եղեր, դադարէ 'ի հալածելոյն աշխատեալ։ Տեսանես որքան ինչ լաւութիւնք լինին յայսմանէ, զի և քո վարձքն առաւելուն և փորձութիւնքն նուազին, և նա հրաժարէ 'ի հալածելոյն, և ած փառաւորի, և վարդապետութիւն մոլորութեանն 'ի բարեպաշտութիւն դառնայ քոյով փիլիսոփայութեամբդ։ Վասն այսորիկ և ոչ միայն ըզթշնամանիչսն, այլ և զհալածիչսն և որք 'ի ձեռն իրաց ինչ լլկիցեն՝ ընդդէմ նմին իմն երախտիս հրամայեաց գործել, և այժմ օրհնել հրամայեաց զնոսա։ Իսկ եւս յառաջ մատուցեալ, և գործովք եւս խրատէ երախտաւոր լինել առ նոսա։

«Խնդալ ընդ խնդացողս, ասէ, և լալ ընդ լացողս»։ Վասն զի մարթի օրհնել և ոչ անիծանել, ոչ եթէ առ սիրոյ ինչ առնէ զայս, իսկ նա կամի ջերմագոյն գործել 'ի մեզ զսէրն։ Վասն որոյ և զայս իսկ յաւելեաց, որպէս զի ոչ միայն օրհնիցեմք, այլ և ցաւակիցք և վշտակիցք եղիցուք՝ թէ յանկարծ տեսանիցեմք զնոսա 'ի թշուառութիւնս ինչ անկեալ։ Այո, ասէ, վշտակցին լինել յիրաւի կարգեաց որք 'ի վիշտսն են. իսկ զմիւսն եւս էր վասն կարգեաց որ չէր ինչ մեծ։ Նա մանաւանդ այս իսկ փիլիսոփայական ոգւոյ է՝ խնդալն ընդ խնդացողսն մանաւանդ քան լալ ընդ լացողսն է մեծագոյն։ Քանզի զայս և բնութիւնն իսկ ուղղէ, և չիք այնպէս քարեղէն որ ոչ արտասուեսցէ այնորիկ որ 'ի թշուառութիւնս իցեն։ Իսկ միւսն քաջի և առաքինի ոգւոյ է. յորժամ ընտիր ոք գտանիցի, ոչ միայն չնա-

խանձի, այլ և կամակից լինիցի ևս։ Այս և առաւելն խաղ զայս գնէ։ Քանզի ոչ այնպէս ինչ ժողովէ զանցոն ՚ի մեզ, որպէս յորժամ ուրախութեան և տրտմութեան միմեանց հաղորդք գտանիցիմք։ Այլ արդ մի վասն զի հեռի ՚ի նոցա գժնդակութենէն կայցես, և վշտակցութեանն արտաքոյ գտանիցիս. զի յորժամ ընկերն ինչ չարչարանս կրիցէ, հասարակաց հաշուիցես զթշուառութիւնն։ Այլ արդ հաղորդեաց այժմ արտասուաց նորա, զի և թեթևացուսցես զվհատութիւն. հաղորդեաց բերկրութեանն, որպէս զի արմատացուսցես զուրախութիւն և հաստատեսցես զսէր, և նախ քեզ նմա՝ անձինդ օգուտ գործես. որպէս զի յարտասուացն ողորմած կազմիս, իսկ հեշտ թուելով ՚ի նախանձուէ և ՚ի չարակնութենէ ազատես զքեզ։

Այլ դու տես զիմաստ զմտառողոքականն ասաց Պաւղոս. ոչ ասաց թէ լոյծ զտառապանսն և զթշուառութիւնս նորա, թէ գուցէ ասիցես՝ չեմ բաւական չկարեմ, այլ զթեթևագոյնն հրամայեաց, որում և անձն իսկ ես։ Զի թէպէտ և ՚ի բաց, ասէ, չկարես բառնալ զթշուառութիւնս նորա, հեղ արտասուս և զմեծ մասնն ՚ի բաց ընկեցեր. թէպէտ և չկարես ինչ յաւելուլ ՚ի բարեկենդանութիւն նորա, խնդակից լեր նմին և բազում յաւելուած բարուցն արարեր։ Վասն այսորիկ ոչ միայն զի չնախանձեսցես, այլ և որ ևս մեծն է՝ բազում զայն խնդրէ թէ հեշտակից լեր նմա, որ ևս առաւելն է քան չնախանձելն։

«Զնոյն, ասէ, զմիմեանց խորհել. և մի բարձրամտել ինչ, այլ ընդ խոնարհս գնացեալ»։ Դարձեալ բազում փոյթ ցուցանէ վասն խոնարհութեանն, ուստի և սկիզբն արար բանիցն։ Այլ առանձինն ընտանի իսկ էր նոցա լի լինել իմաստութեամբ և ՚ի քաղաքէն և յայլոց բազմաց. վասն որոյ և ցանկ իսկ կորզէ զայնպիսի զախտ՝ թէ գուցէ հպարտանայցեն ինչ, և շիջուցանէ զփողփողայթ այտուցմանն. զի ոչ այնպէս բաժանէ և երկպառակէ զմարմինն եկեղեցւոյ որպէս զամբարհաւաճութիւն։ Զինչ է «զնոյն զմիմեանց խորհեսջիք»։ Եկն աղքատ ոք ՚ի տուն քո, լեր խոնարհ միօքն նմին նմա, և մի մեծ ինչ և ուժգին վասն հարստութեանն վարկանիցիս. քանզի ՚ի Քրիստոս չէ աղքատ և մեծատուն։ Այլ արդ մի ա-

մաշեսցես վասն արտաքին զգեստուն նորա, այլ ընկալ զներքին զհաւատոյն: Այլ մի դարձեալ յորժամ տեսանիցես զնա 'ի սուգ և 'ի տրտմութեան, արժանի չվարկանիցես[1] զկեանս քո առ նմա և մխիթարել. և մի յորժամ 'ի բարեկենդանութեան զոք տեսանիցես, երջանիկ և երանելի եղեալ՝ չարախօս լինիցիս ընդ այն, և չկամիցիս ինչ նորա հեշտութեանցն հաղորդել. այլ որպէս զանձնկէզ խորհիս, այնպէս և զընկերին լինիցիս կամել: "Ո՛չ սոյնս զմիմեանց խորհեսջիք" ասէ: Արդեւ ինչ. մեծ և պատուական վարկանիցիս, այնպէս և զնա համարեսջիր. խոնարհ և փոքր զնա վարկանիցիս, սոյն և զքեզ այնպէս հաշուեսջիր, և զամենայն զանհաւրթութիւն 'ի բաց մերժեա:

Այլ որպէս արդեօք լինիցի այս. եթէ զհպարտութիւն 'ի բաց ընկեսցուք: Վասն որոյ 'ի սոյնս յարեալ ասէ՝ թէ "Մ՛ի մեծամտէք, այլ ընդ խոնարհս զիջանիջիք", այսինքն է 'ի նորա 'ի չափոն իջանիցես շըջեալ յածեալ: Մ՛ի միայն մտօք խոնարհիր, այլ և օգնեա և ձեռն տուր, մի այլով, այլ քոյին իսկ անձամբդ. որպէս հայր որդւոյ խնամ տար, որպէս գլուխ մարմնոյ. զոր և այլուրն ասէր՝ թէ "Ընդ կապեալսն զոյգ կապեցարուք": Իսկ խոնարհս աստ ոչ եթէ ընդվայր խոնարհութենէ ինչ ասէ, այլ զստոյգ խոնարհացն և որք զանձինս 'ի չափու ունիցին՝ ասէ:

"Մ՛ի լինիջիք իմաստունք յանձինս ձեր". այսինքն է մի վարկանիր եթէ բաւական ես քեզ ինքեանց. քանզի և այլուր ասէ գիրք՝ թէ "Վայ այնոցիկ որք զանձինս առ իմաստունս ունիցին, և յաչս անձանց իւրեանց վարկանիցին հանճարեղք": Նոյն դարձեալ զամբարտաւանութիւնն 'ի բաց կորզէ և զհպարտութիւն և զխռով-խայլթն զիջուցանէ. քանզի ոչ ինչ այնպէս հպարտացուցանէ և բաժանէ յայլոցն որպէս զայն որ կարծիցէ թէ բաւական իցէ ինքն անձին. յաղագս այսորիկ 'ի պէտս միմեանց կարգեաց զմեզ Ած: Ո՛ի թէպէտ և իմաստուն իցես, սակայն այլում պէտս ունիս. իսկ եթէ ասիցես՝ եթէ չեմ ինչ կարօտ, անմտագոյն քան զամենեսին գտար և տկարագոյն: Այլ մերկացոյց այնուհետեւ

1 Օրինակին վարկանիցես. յայլն անարժան վարկանիցես:

ըստ սովորական ձեւոյ զառաջնորդութիւնն և ասէ՝ թէ պարտ է թէպէտ և գազան ոք իցէ թշնամին՝ կերակրել. և ցանկալի այնուհետեւ թշնամի յորժամ կերակրեցի: Թէպէտ և յոյժ կարծրամիտ իցես և գազանաբար յաղթէ, կերակրեա և արբո, ապա և դու քեզէն զամենայն նորա ամենայնացն: Ոչ յեւս իբրայն հալածեալ՝ ոչ միայն ազատեցաւ, այլ ես քան զնա ամենեցունց ապաշաւանագանս: Զասաց եթէ ասանձեալ լեր, այլ թէ կայծակունս հրոյ կուտես 'ի գլուխ նորա:

Իսկ և քարոզէ իսկ զայնս ասելով թէ "Մի՛ յաղթիր 'ի չարէն, այլ յաղթեա բարեաւ չարին": Զի տես զիարդ եցոյց թափուր յամենայնէ զայնոսիկ որք ոչն յօժարութեամբ զայս առնիցեն. քանզի որ դեռ ես զոխն պահիցէ, պարտեալ գտանի 'ի չարէն: Ո՛չ ասաց զայս յառաջագոյն, զի մի և ես եր ժամանակ. իսկ յորժամ թափեաց զնորա սրտմտութիւնն, ապա ած զամենայն ասելովն՝ թէ "Մի՛ յաղթիր 'ի չարէ, այլ յաղթեա բարեաւ չարին": Զի և այս յաղթութիւն է. քանզի և մարտիկն յայնժամ յաղթէ մանաւանդ, յորժամ վիրացն համբերէ. այլ յորժամ կազմ է 'ի բուռն արկանել զգիմամարտն, և այնպէս վիրացուցեալ յօժն զամենայն զզօրութիւն նորա թափէ. այնուհետեւ ապա ինքն ոչ վիրաւորի, և զնորա զամենայն զզօրն լուծեալ քակտեսցէ:

Այնպէս և 'ի թշնամանսն լինի. եթէ անդրէն ընդդէմ թշնամանեսցես՝ պարտեցար ոչ եթէ 'ի մարդոյ ումեքէ, այլ և որ ևս անարգագոյնն է՝ յանազատութենէ կարեաց, 'ի բարկութենէն յաղթեցար: Իսկ եթէ լռեսցես՝ յաղթես, և բազում համարձակութեամբ զնշանս յաղթութեան կանգնեսցես, և բիւրս բիւրոց անխոքեզ պսակեսցես. և զնոսա զասողն ստորադասեն և յամօթ առնեն: Վասնզի անդէն որ ընդդէմ թշնամանիցէ, զկըծեալ այնպէս թուի թէ կարիցէ ինչ առնել ընդդէմ, և նա կարծիս ևս տայ այնոցիկ որ լսենն: Իսկ ապա եթէ ծաղր առնիցես զասացեալսն, ապա իսկ անձամբ զանձինն ցուցանես: Զի թէ կամիցիս իսկ հաւատեալ օրինակ ինչ զասացեալսն առնել, ցնցեն իսկ հարցիր զթշնամանողն՝ թէ յոր ժամ չար ցուէ քեզ, զի՞ ջեռեալ անդրէն ընդդէմ թշնամանիցէ, թէ յորժամ թշնամանիցես՝

'ի բարի և յօգուտ օրինադրեաց, և եցոյց եթէ զինչ է որ զմեզ փառաւորս առնիցէ և զինչ այն որ զմեզ անպիտանս գործէ. և թէ այն ինչ ծառայ և անօթոյ էր որ ինչ աշակերտացն պատուիրեաց, նա և տայր իսկ ոչ զայնպիսի զհրամանս: Այլ քանզի այսպիսիկ էին որ զնասս պայծառ և լուսաւորագոյնս գործէին՝ չասել ինչ չար յորոց զչարն լսէին և չհատուցանել չար յորոց չարչարէինն, յաղագս այսորիկ զայս հրամանս եդ: Իսկ եթէ այսպէս է, ապա մանաւանդ ևս առաւել այն է յայժամ թշնամանիցիմք և երախտիս առնիցեմք նենգաւորացն: Վասն այսորիկ զայսպիսի օրէնս դրեաց: Քանզի յոյժ խնայէ յիւր աշակերտսն և գիտէ յայտնապէս թէ զինչ է որ առնիցեն փոքունս և մեծամեծս: Արդ եթէ խնայէ և գիտէ, ընդէր հակառակիս ընդ այլ ճանապարհ գնալ: Այս և յաղթելն իսկ չարաւ լլկելն 'ի սատանայական օրինացն է: Վասն այսորիկ և յողիմպիական մրցմունսն յառաջ ածեն զայնոսիկ և ամենեքեան կան պատրաստեալ, և քանզի ամենայն ըմբշամարտաքն ընդդիմակացութեամբքն յաղթեն: Այլ ոչ այսպէս և 'ի Քրիստոսի յասպարիզին օրէնք պատկին են. այլ հակառակ սմին, զչարչարեալն և ոչ որ չարչարէն զնա՝ օրինադրեաց պսակել: Այսպիսի է այն ասպարէզ որ դէմ յանդիման ամենեցուն առաջի ունի զկարգաւորութիւն, որպէս զի մի յաղթութեամբն միայն, այլ և օրինակ յաղթութեանն մեծասքանչ լինիցի: Յորժամ այլ տարազ զպարտութիւնն առնիցես, դու ինքն գործաւոր այնորիկ զասր այ զօրութեանն: Այս է երկնից ասպարէզն, այս է հրեշտակացն տեսարան:

Ես արդ գիտեմ թէ այժմ յոյժ ջեռեալ էք յիրս և քան զամենայն մոմ ևս կակղագոյնք եղերուք. այլ յորժամ աստի ելանիցէք, ամենայն իսկ 'ի բաց հօսեալ գտանիցի: Վասն այսորիկ յոգւոց հանեմ զի զասացեալսն գործովք չցուցանեմք, և այն զի հանդերձեալ եմք աստէն իսկ մեծամեծս շահել յայնմանէ: Զի եթէ ցածութիւն և հանդարտութիւն ցուցանիցեմք, անըմբռնելիք ամենեցուն լինիցիմք, և չիք ոք 'ի մարդկանէ մեծ ոք կամ փոքր որ մեզ վնասել ինչ կարիցէ: Իսկ եթէ չար ոք ինչ առիցէ, քեզ և ոչ ինչ, իսկ իւր բազում վնաս գործեաց քան քեզ: Զանազանեա աստէն

այն, վասն զի անուղէն 'ի սկզբանն զայս յայտ առնէ ա-
սելովն՝ թէ "Ամենայն անձն որ ընդ իշխանութեամբք
իցէ, 'ի հնազանդութեան կացցէ": Մինչդեռ առաքեալ
իցես կամ աւետարանիչ կամ մարգարէ և կամ այլ
ինչ որ, չվնասէ ինչ բարեպաշտութեան և ուղղափառու-
թեան այսպիսի հնազանդութիւն: Եւ ոչ ըսկ ասաց թէ
հաւանեցարուք, այլ թէ 'ի հնազանդութեան կացէք:

Եւ յառաջ իսկ ցուցանէ զիրաւունս այսպիսի օրէնս-
դրութեան, և հաւատացելոցն մտածութիւնս տայ թէ
յԱյ են կարգեալ նոքա. չիք, ասէ, իշխանութիւն որ
ոչ յԱյ է կարգեալ: Զինչ ասեմ, միթէ ամենայն իշխան
յԱյ ձեռնադրի: Ոչ եթէ զայս ինչ ասեմ ասէ, և կամ
թէ զիւրաքանչիւր իշխանաց իցէ բանս իմ այժմ, այլ
վասն նորին իրացն. զի ոմանց իշխան լինել և ոմանց ընդ
իշխանութեամբք լինել, և մի զամենայն ընդ վայր և
ժպրհութեամբք վարել, որպէս զալիս ծփեալս ասմկին
տարեալ և բերեալ լինելն՝ ասացի թէ յԱյ իմաստու-
թեանն գործ է:

Եւ ոչ վասն այնորիկ ասաց՝ թէ չեն իշխանքն թէ
ոչ յԱյ, այլ վասն իրացն ձեռնեալ ասէր, թէ "Ոչ է իշ-
խանութիւնն թէ ոչ յԱյ. այսպէս ուրեմն որչափ ինչ իշ-
խանութիւն է՝ յԱյ կարգեալ է": Որպէս և յորժամ
ասիցէ նոյն իմաստունն՝ թէ "Ի տեառնէ պատշաճի առն
կին", զայն ասէ՝ թէ զամուսնութիւն Աստ. արար, և ոչ
թէ զամենայն կանայս ինքն միաբանեցուցանէ առ նոսա:
Քանզի տեսանեմք զբազումս որ չարեօք ամուսնութեան
օրինացն իսկ վարին ընդ միմեանս, և ոչ եթէ յԱյ զայն
ինչ վարկանիցիմք: Այլ զոր ինքն ասէր՝ թէ "Որ ա-
րար 'ի սկզբանէ արու և էգ արար զնոսա", և ասաց
թէ "փոխանակ այսորիկ թողցէ այր զհայր իւր և զմայր
իւր և յարեսցի 'ի կին իւր". զայնս և իմաստունն այն
միտեէր ասելովն: Եւ քանզի զուգապատուութիւնն բա-
զում անգամ կռիւս 'ի մէջ արկանէ, յաղագս այնորիկ
բազում իշխանութիւնս կարգեաց, որպիսի ինչ, որպէս
զայր և զկին, որպէս զորդւոց և զհօր, որպէս զծերոց
և զերիտասարդի, որպէս զծառայից և զազատաց, որ-
պէս զիշխանաց և որք ընդ իշխանութեամբք են, որպէս
զվարդապետի և զաշակերտի: Եւ զի՞ զարմանաս թէ
առ մարդիկ այսպիսի ինչ եդաց, ուր և 'ի մարմին 'ի միում

մարմնոյ ոչ զամենեսին զանդամս ոչ զուգապատիւս ե-ցոյց, այլ զոմն նուաղ և զոմն առաւել կարգեաց, զոմն իշխել անդամոցն և զոմն ընդ իշխանութեամբ հրամայ-եալ լինել։ Նոյնս և յանդամս գտանիցէ ոք կրեալ, որպէս 'ի մեղուս և 'ի խորդայս և 'ի ձկնհաւս վայրենիս ոչխարացն։ Այս և ոչ ծով զերկրաւ զատանի յայտնապէս կարգաւորութենէ, այլ և անդ բազումք յառաջանայն ծնեալցն միոյ ձկան հետևին, և զօրավար լինի նոցա, և այնպէս զհեռաւորութեան ձեռնասարահարգութիւնն հարկանեն։

Այլ քանզի անիշխանութիւնն ամենայն ուրեք չար է և պատճառք շփոթութեան, և իբրև առաց թէ առաւել է իշխանութիւն, յարեաց 'ի նոյն՝ թէ "Որ հակառ-ակ կայ իշխանութեան, այ հրամանին ընդդէմ կայ"։ Տեսանես ուր տարաւ եհան զիրսն և առաւել երկեցոյց զլսողսն, որպէս եցոյց թէ վասն օգտի եղև այն։ Որպէս զի մի ունիցին ասել հաւատացեալքն՝ թէ անարգեցեր զմեզ և արհամարհելիս արարեր, որք զերկնից արքայու-թիւնն ընդունելոց եմք՝ երկրաւոր իշխանաց հրամայես մեզ 'ի հնազանդութեան կալ, ցուցանէ թէ ոչ իշխա-նաց, այլ այ հրամանին հնազանդիս որ զայսպիսիսն ա-նէն, որք այնպիսի իշխանութեանց հաւանին հնազան-դել։ Եւ ոչ ասաց այսպիսի ինչ. այլ զինչ, եթէ այ հաւանի որ իշխանացն հնազանդի. և հակառակն եր-կեցուցանէ և զգուշագոյնս կարգէ ասելովն՝ թէ որ ոչ հնազանդի նոցա, ընդ այ պատերազմի որ զայն օրէնս-դրեաց։ Եւ փութայ ամենայն ուրեք ցուցանել՝ թէ ոչ շնորհս ինչ առնեմք նոցա զհնազանդութիւնն, այլ պարտական եմք. մանաւանդ եթէ այսպիսիք իսկ կարծէ ձգել ածել և զանհաւատ իշխանսն 'ի բարեպաշտու-թիւն, իսկ զհաւատացեալսն 'ի հնազանդութիւն։ Վասն-զի բազում բանս յօդէին յայնժամ մեղադրիչք լինելով առաքելոցն, որպէս թէ հրամանս ինչ և նորաձևութիւն մուծանիցեն և աղաւաղիցեն զհասարակաց օրէնս մարդ-կան։ Իսկ յորժամ ցուցանիցեն թէ մեր իսկ Հասարա-կաց Տէրն ամենեցուն զայս իսկ ընձեռեաց իւրոց ա-շակերտացն, ապա յայնժամ զամբաստանութիւնն կըրա-ւոր և խափանողն ցուցանեն և կարկեն զբերանս նոցա, և ևս առաւել համարձակութեամբ վասն ճշմարտութեան հաւատոցն խօսիցին։

այսորիկ երկոցունցն է մեզ նա հաշտելի, զի և յոյս առաքեցաւ, և վասն այսպիսի իրաց։

“Իսկ ապա եթէ զչար գործիցես, երկիր, ասէ, ապա ուրեմն ոչ եթէ ընդ վայր ածեալ է զսուրն„։ Տեսանե՞ս որպէս վառեալ կազմեաց զնա, և իբրև զզօրական ոք զահեղ 'ի վերայ մեղուցելոցն կարգեաց։ “Քանզի ա̃յ սպասաւոր է, ասէ, վրէժխնդիր 'ի բարկութիւն որ զչարն գործէ„։ Եւ մի դարձեալ յորժամ լուիցէ տանջանս և պատիժս և սուր՝ 'ի բաց փախիցի և սրանայցէ, յաղագս այնորիկ ասէ դարձեալ՝ թէ զա̃յ զօրէնսն կատարէ։ Թէպէտ և դու տգիտանայցես, այլ սակայն ա̃ծ այսպէս տպաւորեաց։ Ապա եթէ տանջելոյ և պատուելոյ սպասաւոր է, վրէժխնդիր առաքինութեան և հալածիչ չարեաց զոր ա̃ծ իսկ կամիցի, և արդ էր վասն հակառակիցիս ընդ այնմիկ որ այնչափ բարութիւնս 'ի ներքս ածէ և յառաջ ճանապարհ հորդիցէ քոյումս ուղղութեանցն։ Քանզի բազումք զառաջինն վասն իշխանաց զառաքինութիւն ճգնեցան, 'ի վերջոյ ապա և վասն երկիւղին ա̃յ զնմանէ բուռն հարին. զի զթանձրագոյնսն ոչ այնպէս հանդերձեալքն որպէս մերձակայքս նախանձեցուցանեն։ Եւ արդ յորժամ զհոգիս բազմաց յարդարէն երկիւղիւն և պատուովն, որպէս զի լինիցին պիտանիք առ 'ի վարդապետութիւն բանին, յիրաւի այնպիսին պաշտօնեայ ա̃յ կոչի։

“Վասն որոյ հարկ է հնազանդել ոչ միայն վասն բարկութեանն, այլ և վասն խղճին„։ Զի՞նչ իցէ՝ թէ ոչ միայն վասն բարկութեանն։ Ոչ միայն, ասէ, թէ ընդդէմ կայցէր ա̃յ չհնազանդելովն և չթուի քեզ թէ մեծագոյն չարիս քեզ կազմեցեր և յա̃յ և յիշխանէն, այլ զի և 'ի մեծամեծաց իսկ քեզ երախտաւոր լինի, զխաղաղութիւն ընձեռէ և զքաղաքական մատակարարութիւն յօրինէ նա, և բիւր բարութիւնք իսկ քաղաքացն յայնպիսի իշխանաց լինին։ Եւ եթէ զնոսա 'ի բաց մերժիցես, ապա տեսանիցես զի ամենայն իսկ առհասարակ 'ի վայր հոսեալ կործանի. ոչ քաղաքք և ոչ գաւառք և ոչ տուն և ոչ վաճառափողոցք և ոչ այլ ինչ յամենայնէ կայ հաստատուն, այլ ամենայն ինչ շրջեալ եղծանիցի, և որք զօրաւորքն են՝ զտկարագոյնսն իբրև զնկուլս կլանիցեն։ Զի թէպէտ և ոչ վասն բարկու-

թեանն և տպաւորեալեացն անհնազանդից, ամենայն քեզ և այնպէս պարտ է հնազանդել, որպէս զի մի առանց խղճի մտաց կարծիցես լինել, և անազգոյն առ երախտաւորն գտանիցիս:

«Յաղագս այնորիկ և հարկս հարկանէք. ասէ, զի ծառայ պաշտօնեայք են 'ի նոյն ժուժկալեալք»: Աղթողասել զամենայն զերախտիսն որ քաղաքացն յիշխանաց անտի լինին. զոր ինչ. զպարկեշտութիւնս, զխաղաղութիւնս, զոր ամենայն զմտաւորկարգութիւնս զոր առ զօրականսն առնեն, զի առ հասարակ հաղորդական իրացն վայելեսցեն. և զայս զամենայն մի թող եցոյց: Այլ զերախտիսն զոր առնուս 'ի նոցանէն, ասէ, դու իսկ միայնես զի զհարկն տաս նոցա, այսինքն է զվարձսն ընդ երախտեացն: Տես զիմաստութիւն և զհանճարն Պաւղոսի. քանզի որ թուէրն եթէ ծանրաբեռնի և տաղտկալի ինչ իցէ, այսինքն է հարկացն պահանջումն, զայն 'ի զէնս իւր առնէ նոցա խնամոցն: Ըստ վասն, ասէ, հարկս տայք թագաւորի, ոչ որպէս հօրգին և յաւելոյ խաղհաղի զմէնջ, ոչ իբրև վերակացուի վարձս ընդ երախտեացն հատուցանելոք. և ոչ իսկ ասայոք հարկս՝ թէ չէր 'ի սկզբանէ գիտացեալ թէ չահելոք ինչ յայսպիսի հրամանաց: Բայց անդստին 'ի վերուստ իսկ միահամուռ ամենայն ազգի մարդկան հաճոյ թուեցաւ կերակրել իշխանացն 'ի մէնջ. վասն զի զերեանց առանցն անփոյթ արարեալ՝ առ հասարակ զամենայն աշխատհի իւրոց հոգան և խնամ տանիցին, և զամենայն զպարապումնն յայն ծախեն, որով և մեր կեանքս ամբողջ պահին:

Այս արդ իբրև ասաց զայն ինչ որ յարտաքնոցն էր, ապա դարձեալ յառաջինն 'ի բանն անկցի եկանէ. մանաւանդ զի զհաւատացեալսն այնու իսկ էր բաւական յինքն կորզել: Այլ եցոյց դարձեալ թէ և ծառայ այն կամք են, և 'ի նա անդրէն փակէ զիմաստութիւնն ասելով այսպէս՝ թէ «Աստուծոյ պաշտօնեայք են»: Ապա և զաշխատութիւն նոցա ցուցանէ և զտառապանսն. ասէ. «Անձզի և 'ի նմին ժուժկալեն»: Այն իսկ են, ասէ, նոցա վարձք, նոյն փոյթք, որպէս զի դու վայելեսցես 'ի խաղաղութեան: Այս և յայլում թղթի ոչ միայն հնազանդս լինել, այլ և աղօթս առնել վասն նոցա հրա-

մայէ, և ցուցանէ՝ թէ և ամէն հասարակաց է շահն. «Աղօթես զի խաղաղութեանն և յաղթութեանն վարեսցուք 'ի կենցաղումս»: Ոչ եթէ փոքր ինչ նպաստ լինելոց նոցա մեզ յառժամանակեան կարգաւորութեանս յայսմ, յորժամ զինուքն վառիցին և Հռովմայեցւոցն 'ի գիրկս հարկանելոյն. և կամ յորժամ դարձ 'ի քաղաքաց երկպառակութիւնքն լինիցին, զխռովս առաջ առաջ ընդելումն առնեն և զամենայն Թշնամութիւնս լուծեալ եղծանեն: Այլ մի ինչ այժմ զայնցանէ ասել որք զկրօն չարաչար 'ի կիր արկանեն. այլ 'ի նոյն ինքն հայեաց 'ի կարգաւորութեանն բարեզարդութիւն, և առաւել աւետարանս անդէն 'ի սկզբանն զպայմանաց զօրէնսդրութեանն զկարգում խնամութիւն:

«Արդ հատուցէք ամենեցուն զպարտս, որում ըզհարկն՝ զհարկն, որում զմաքսն՝ զմաքս, որում զերկիւղն՝ զերկիւղ, որում զպատիւ՝ զպատիւ. և մի ումեք պարտապան գտանիցիք, բայց 'ի սիրելոյ զմիմեանս»: Դիտեա ես զնոյն ունիք. ոչ ինչս միայն հրամայեմ տալ նոցա հարկ, այլ և զպատիւ և զերկիւղ: Այլ զխոնարհ վերագոյն առնէին, «Կամիս չերկնչել յիշխանութենէ, զբարիս գործեա», և աստ ասէ՝ թէ հատուցէք զերկիւղն: Ոյժ պատուոյն առեալ, ասէ, ոչ որ 'ի չարեաց անտի երկիւղն լինի. զայնմանէ ակնարկէ վերագոյնն: Այլ չասաց թէ տուք, այլ թէ հատուցէք. նա և զպարտուցն ես անուն յաւել. զի ոչ եթէ շնորհս ինչ առնես զայս, ասէ, այլ պարտականն ես խրացն. թէպէտ և ոչ վարիս նոքօք, այլ զապաշնորհացն դատ առաս: Այլ արդ մի կարծիցես խոնարհել ինչ և փոխանակել զխոնարհ զխոնարհութեանն քո զպատիւ, զի[1] եթէ անիշխան լինիցիս և 'ի յանցաւորաց 'ի վերայ յանձնիցես: Ոչ եթէ մինչ յայնժամ իշխանքն հեթանոսք էին՝ զայսպիսի օրէնս եդ, այլ և առաւել այժմ առ հաւատացեալս քո պարտի այս լինել:

Իսկ արդ եթէ ասիցես՝ եթէ ինձ մեծ հաւատացեաքան նոցա, ուսիր զի չէ քո այժմ ժամանակ. վասն զի օտար և նժդեհ ես. է ժամանակ յորում դու ես քան զամենայսիս պայծառագոյն երևեսցիս: Այժմ կեանքն

1 Օրին. Եթէ իշխան մեզ լինիցի՝ յայն խաղես, եթէ գլուխ հանայցես:

չասաց լոկ թէ կատարի, այլ թէ բովանդակի. այսինքն է թէ երագ և փոքր մի պատճառաւ կատարէ զպատուիրանացն զգործ։ Նաև զի սկիզբն և վախճան առաքինութեան սէրն է. զսա կալ քեզ արմատ, զայն արա քեզ մերձաւոր, սա լիցի քո գլուխ։ Ոչ թէ սկիզբն և կատարած նա է, զինչ ինչ զոյգ կացցէ նմա։ Ոչ զընդվայր սէրն խնդրէ, այլ զհաստատունն և զջերմն. վասն որոյ և չասաց լոկ թէ սիրեսցես զընկեր քո, այլ թէ իբրև զանձն քո։ Յաղագս այնորիկ և Քրիստոս զօրէնսն և զմարգարէսն ասաց թէ 'ի նա կախեալ կան, և երկաւս զէմս զնէ սիրոյն։ Տես ուր տարաւ եհան զնա. ասաց թէ առաջին պատուիրան այն է՝ սիրեսցես զտէր ա՟ծ քո. Ճառեաց և զերկրորդն և չլռեաց, այլ յաւել՝ թէ նման նմին, յաւելն՝ թէ սիրեսցես զընկեր քո իբրև զանձն քո։ Իսկ արդ զինչ զոյգ այսպիսում մարդասիրութեան կայցէ, յորում մեք հեռացեալք մեկուսի կացաք 'ի նմանէն, և նա զիւրն զսէրն նախ մերձեցոյց 'ի մեզ և ապա զմեզ առ ինքն ամփոփեաց, և որ ինչ նման նմին է զայն ասաց։ Իսկ զոյգ իսկ մայրական գթոյն եդ իսկ զերկոսեան. քանզի 'ի նորայն ասէր՝ թէ յամենայն սրտէ քումմէ և յամենայն անձնէ քումմէ սիրեա։ Իսկ Պաւղոս ոչ այսպիսի ինչ էր և ոչ պարտէր ինչ նոցա, և այնպէս սաստիկ 'ի կիր արկանէր զաւնն. որպէս և մեք ասեմք յորժամ զոք սիրիցեմք՝ թէ զնա սիրես, զիս սիրեա. զայնս և նա յայտ առնէր ասելովն թէ նմին նման է, այսինքն այնմ սիրոյ. զոր և առ Պետրոսն ասէր Քրիստոս՝ թէ սիրես զիս, արածեա զոչխարս իմ։

“Սէր ընկերի իւրում չար ոչ առնէ. լրումն օրինացն սէր է„։ Տեսե՞ր որպէս զերկաքանչիւր զառաքինութիւնսն ունի՝ զմերժումն չարեաց և զմեզսն չգործել և զբարեացն արգասիս։ Լրումն օրինացն է, ասէ. ոչ եթէ զվարդապետութիւն վարուցն մերոց ընդ Մովսէսի զուգէ միայն, այլ և զուղղութիւն առաքինութ՟ե գիւրինս գործէ. զի ոչ եթէ այնքան ինչ միայն զոր պարտ էրն ինչ փութայր հատուցանել՝ որ էր օրինացն, այլ և 'ի գործ իսկ արկանէ զնա և պատերազմակից մեզ կոչէ, ոչ մասն ինչ 'ի պատուիրանացն, այլ բոլորովին իսկ ուղղէ 'ի մեզ զառաքինութիւնն։

Յաղագս այնորիկ առ օձն ոչ պատասխանի ինչ ասաց. քանզի զի նա էր չարեացն ճարտարապետ, և չունէր յայլ ոք փոխել զպատճառանս. յաղագս որոյ սաստկագոյնս իսկ զնա պատժեաց. և ոչ այսչափ միայն, այլ և զերկիր եւս հաղորդ արար անիծիցն: Նախ առաջ եթէ եհան 'ի դրախտէն և բնակեցոյց զնա յաշխատութեան, յաղագս այնորիկ իսկ պարտ է երկիր պատաղանել նմա և պղանչանալ: Այս վասն զի 'ի ծուլութիւն ած զնա փափկութիւնն, կարծէ զուրախութիւնն, և որոմնութեամբն պարարեալ զծուլութիւնն, որպէս զի այնու անդրէն առ օձն նորա վերադարձուցանելոց:

Այլ արդ զի՞նչ՝ մի թէ առ Կայենն ո՞չ զնոյն օրինակ հեզութեան արկ 'ի կիր. թէպէտ և թշնամանեցաւ 'ի նմանէն, այլ չթշնամանեաց անդրէն փոխանակ. այլ աղաչէր և ասէր. "Ընդէ՞ր անկան երեսք քո". և այն զոր ինչ եղեն չէր արժանի ներման, և յայտ 'ի կրտսերոյ եղբօրէն էր: Ո՛չ սակայն չխոշտանգեաց ինչ, այլ զի՞նչ ասաց. "Մեղա՞ր, ասէ, լուռ լեր, մի եւս յաւելուր. առ քեզ դարձ նորա, և դու տիրեսցես նմա". զեղբօրէն ասէր: Մի՛ երկնչիր, ասէ, թէ զուցէ վասն ա-ջակիզի նորա զանդրանկութիւնն բառնայցեմ ինչ 'ի քէն. քաջալերեա մի երկնչիր. այլ զամենայն իսկ զիշխանութիւն նորա տամ 'ի ձեռս քո. միայն լուռ լեր և տիրեա զայն որ ինչ քեզ ոչ մեղաւ. քանզի եւ երկրո-ցունց զարմանն տանիմ: Այս այս է որ զինն ուրախ առնէ՝ չամբաստանելն ձեր ընդ միմեանս: Այս զոր օրինակ մայր գթած, այսպէս և նա զամենայն ինչ առնէր և հնարէր, որպէս զի մի՛ ձեղքեսցին 'ի միմեանց: Այս զի եւ յայտնապէս զկանոն օրինակին արասցուք, զմինս ածել զհաւերեկայ զխառնելն և զաղմկելն և ամենայն ուրեք ընթացեալ, յորժամ երեց որդին մարտնչէր ընդ կրտսերոյն մանկանն. զի թէպէտ և յոյժ սիրէր զՅակոբ, այլ և ոչ 'ի յԵսաւայ 'ի բաց դառնայր և մերժէր: Նա որպէս և ասէր. "Մի՛ գուցէ անզաւակեցայց յերկոցունց 'ի ձէնջ 'ի միում աւուր": Սոյնպէս և սա յայնժամ ասէր. "Մեղա՞ր, լուռ լեր. առ քեզ դարձ նորա". զպատճառանս յառաջ կամէր ցածուցանել և զխաղաղութիւն երկպառակելոցն խնդրէր: Այս յորժամ զնոյն եսպան, սակայն և ոչ այնպէս եբարձ 'ի նմանէ զխեր

յորժ սիրոյն, որպէս զի և տանջանքն յօգուտ լինէին՝ հարկէր զտանջանսն ՚ի վերայ ածել։ Տեսանեմք և ըզՊաւղոս զի զայս ասէր կորնթացւոցն. “Ո՞վ է, ասէ, որ ուրախ առնէ զիս՝ թէ ոչ որ տրտմեցին յինէն„։ Վասնզի յորժամ թանձրացուցանէ զպատիժսն, յայնժամ ցուցանէ և զսէրն։ Որպէս և եգիպտացիսն ՚ի մեծի սիրոյն յորժամ տանջէաց զՅովսէփ. այլ այն սէր խստանականութեան էր, իսկ այն ՚ի բարիս, և արժանի իսկ բարեկամութեան էր սէրն այն։ Վասն այսորիկ չհրաժարէ ՚ի թանձրագոյն ՚ի բանս զիջանել և բարբառել զմարդկային կարեացն անուանս և նախանձոտ զինքն կոչել. “Աստուած նախանձոտ եմ ես„ ասէ. որպէս զի ուսցիս զսիրոյն զհամբաւս։

Արդ սիրեսցուք զնա որպէս և նայն կամեցի, քանզի մեծ իրս դնէ առաջի մեր։ Թէպէտ ՚ի բաց դատանայցեմք ՚ի նմանէ, կայ միայ ապաշխարել զմեզ. թէ չկամիցիմք դառնալ, տանջէ վասն սիրոյ, և ոչ վխոշտանգանաւ պահանջիցէ։ Տես զինչ ասէ ցԵզեկիէլ առ որս սիրեցաւն և արհամարհեաց զնա քաղաքն. “Եծից ՚ի վերայ քո զհոմանիս քո, ասէ, և մատնեցից զքեզ ՚ի ձեռս նոցա, և քարկոծեսցեն զքեզ և սպանցեն. և բարձցի նախանձն իմ ՚ի քէն և հանգեայց և ոչ ևս հոգացից„։ Այլ արդ զինչ ինչ քան զայնպիսի սէր սաստիկ կայցէ, յորժամ որ սիրէն՝ արհամարհեցի յայնմանէ զոր սիրեացն, և յետ այնորիկ նա դարձեալ տաչորեալ լինի սիրոյն նորա։ Օրինակ ինչ ած գործէ, որպէս զի սիրիցէ ՚ի մէնջ. վասն այնորիկ և յորդին անգամ ոչ խնայեաց. իսկ մեք ապաշնորհք և ստամբակք։ Սակայն եղիցուք երբէք հեզք և սիրեսցուք զած որպէս սիրէն պարտ է, որպէս զի հեշտութեամբ յաւաքինութիւնն վայելիցեմք։ Զի եթէ որք կին հաճոյական ունիցի, չզգայ իմիք զցանկորդ տրտմականացն. իսկ յորժամ զածայինն և զսուրբ. զհաճոյականն ունիցիմք, զմտաւ ած թէ յորչափ ՚ի հեշտութեան վայելեմք։ Վասնզի սա ինքն է երկնից արքայութիւնն, սոյն շքեղութիւն բարութեան, սոյն է հեշտութիւն, սա է ուրախութիւն, սոյն ինքն է բերկրութիւն, նա և երանութիւն իսկ սա է. մանաւանդ եթէ բիւր ինչ ասիցեմ, չկարեմ որպէս արժանն է յանդիման կացուցանել, այլ փոքր իրաց միայն

*գիտէ ուսուցանել զլաւն։ Նման այսորիկ և մարգարէն ասէ. «Յուսա 'ի տէր». և դարձեալ թէ «Ճաշակեցէք և տեսէք զի քաղցր է տէր»։ Իսկ արդ հաւանեսցուք նմա և փափկասցուք 'ի սէրն նորա, և այնպէս ապա ատենէն իսկ տեսանիցեմք զարքայութիւնն և հրեշտակական կեանս կեամք, և յերկրի շրջելով քան որ յերկինսն բնակեն չգտանիցեմք ինչ նուազագոյն, և յետ ատոր անդր երթոյն ամենայն պայծառութեամբ կացցուք առաջի բեմին Քրիստոսի և յանձառելի փառսն վայելիցեմք։ Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք հօր հանդերձ հոգւովն սրբով այժմ և յաւիտեանս. ամէն։*

## ՃԱՌ ՔՍԱՆԵՐՈՐԴ ՉՈՐՐՈՐԴ

*«Եւ զայս գիտասջիք եթէ ժամ է մեզ 'ի քնոյ զարթնուլ»։*

*Իսկ իբրև զամենայն ինչ որ պէտք էին՝ կարգեաց և ետ հրամանս, մղէ զնոսա դարձեալ յերկրաւորացս 'ի բարի գործս։ Մերձ 'ի դուրս եկեալ կայ, ասէ, ժամանակ դատաստանին. զոր և կորնթացւոցն գրէր՝ թէ «Ժամանակս կարճեալ է այսուհետև». դարձեալ հեբրայեցւոցն՝ թէ «Փոքր միւս ևս որ գալոցն է եկեսցէ և ոչ յամեսցէ»։ Այլ անդ զաշխատեալսն հաստատէր, և զքրտնեալսն զօրս 'ի միմեանց առնուին փորձութիւնս՝ յաղագս մխիթարելոյ զնոսա ասէր զայս. իսկ աստ ընդնիրհեալսն զարթուցանէր. քանզի առ երկաքանչիւրսն իսկ վայելուչ է բանս այս։ Արդ զինչ է զոր ասէն՝ ժամ է մեզ 'ի քնոյ զարթնուլ։ Այսինքն է մերձ է յայտնութիւնն, 'ի դուրս հասեալ է ահագին ատեանն, մերձեալ է ահաւոր օրն որպէս հնոց բորբոքեալ, և պարտ է մեզ այսուհետև զերծանել 'ի ծուլութենէ։*

*«Քանզի այժմ մերձ է մեզ փրկութիւն քան յորժամ հաւատացաքն»։ Տեսանե՞ս որպէս եցոյց նոցա հաւաստեաւ զյարութիւնն, թէպէտ և յառաջ քան*

զժամանակն առաջ. զի որչափ անցանէր ժամանակս ծախի, այնքան հանդերձեալ յաւիտեանն մերձ լինի։ Այլ եթէ պատրաստ գտանիս և զամենայն զոր ինչ հրամայեալն առարկի, որ փրկութեան է քեզ օրն այն. իսկ ապա եթէ զորին հակառակն, ոչ ևս փրկութեան։ Այլ չառնէ սկիզբն 'ի տրտմականացն, այլ 'ի հեշտականաց անտի յարդարէ, և այսու 'ի մերձակայս վշտակցութեննև սփոփէ զնոսա։ Այլ վասն զի առանձին իմն էր յառաջինսն փութադոյնս լինել և աճեցուցանել զփափագումն, և յորժամ ժամանակ ինչ 'ի վերայ անցանէր՝ մեղկէին զփոյթն, ասէ թէ զորին հակառակն գործեցէք, և մի մեղկէք զորոյ փութային ժամանակօք, այլ մանաւանդ աճեցուցէք։ Զի որչափ թագաւորն մերձ է, այնպէս և առաւել ևս պարտիմք պատրաստ գտանել. մանաւանդ որչափ բրաբիոնն մերձ է, այնքան արժան է պատրաստ գտանել մեզ առ մրցումն։ Զայն և սուրհանդակքն գործեն. յորժամ մերձ 'ի կատարել զընթացսն են և զբրաբիոնն առնուլ, յայնժամ առաւել պնդի ճիգնի։ Վասն այսորիկ և նա ասէր՝ թէ "Վասն այսորիկ մերձ է մեզ փրկութիւն քան յորժամ հաւատացաքն"։

"Գիշերն մերժեցաւ և տիւն մերձեցաւ"։ Ո՛չ ապա ուրեմն այս վախճանի, իսկ այն մօտի. և արդ ըստ այնմ վարեսցուք, և մի ըստ այսմ։ Նա և 'ի կենցաղոյս կիրս այնպէս իմն լինի. յորժամ տեսանիցեմք զգիշերն մերձ յայգ եկեալ և զձիձռունսն ծիծառանցն լուիցեմք, իւրաքանչիւր ոք այսուհետև զընկերսն յարուցանեմք. զի թէպէտ և փոքր մի կայցէ 'ի գիշերոյն, քանզի մերձ է 'ի լոյս, սկսանիմք ասել միմեանց՝ եթէ միջօրեայ իսկ է, և ապա զգենուցումք և զաւուրն իրս վճարեմք և յերազոցն զերծանեմք և քնոյն ընդդէմ կամք, որպէս զի կազմ և պատրաստ զմեզ օրն գտանիցէ, և չև սկսեալ է ճառագայթս արեգականն՝ յառնիցեմք և սթափիցեմք։

Այլ այժմ զոր ինչ անդ առնիցեմք, զայն և աստ գործիցեմք. մերկասցուք 'ի բաց զտեսիլ ամենայն, զերծցուք յերազոց կենցաղոյս այսորիկ, 'ի բաց ընկեսցուք ըզթանձր քունն, և զգեցցուք փոխանակ հանդերձից զառաքինութիւն. քանզի զայս ամենայն յայտ առնէր

ասելովն՝ թէ "Ի բաց մերկասցուք այսուհետեւ զգործս խաւարին և զգեցցուք զզէնս լուսոյ". վասն զի 'ի ճակատս և 'ի պատերազմունս կոչէ զմեզ օրն։ Այլ մի զարհուրեսցիս ճակատս լսելով և զէնս։ Վասն զի երեւելի զէնքս ձուլածոյք և ծանունք են, և դժկամակ լինին այնու որ վարին. իսկ աստ հեշտալի իմն և ազօթից արժանի։ Վասն զի լուսոյ զէնն է. յաղագս այնորիկ և զպայծառացութիւնն քեզ լուսատուագոյն ցուցանէ. և բազում փայլատակմունս արձակէ և 'ի զգուշութեան պահէ. քանզի զէն է և լուսատու իմն է և լուսաւորէ զայնոսիկ որք կրեսն։ Իսկ արդ զինուոր չիցէ առն պատերազմել. հարկ է պատերազմել, բայց տակային չէ տառապանօք և աշխատութեամբ. նա և պատերազմն իսկ չէ այնպիսի, այլ տօնի իմն և ժողովարան ցնծութեան. զի այսպիսի իմն է զինուց բնութիւն, այսպիսի իմն և զօրավարին բնութիւն։ Իսկ զոր օրինակ փեսայ յորժամ զարդարիցի և ելանիցէ յառագաստէ, այնպէս և նոքա որ այնպիսի զինուքն վառիցին. նա և զօրական իսկ և փեսայ միանգամայն գտանիցի այնպիսին։

Իսկ իբրև ասաց եթէ տիւն մերձեցաւ, և չասաց թէ եկն եհաս, այլ թէ դեռ սկիզբն է՝ ասէ. "Իբրև 'ի տուընջեան զգաստութեամբ շրջեսցուք"։ Զի յորժամ սկիզբն աւուրն լինիցի, մանաւանդ յայնժամ բազումք կազմին այսպիսի զգաստութեամբ, ձգէ տանի զնոսա։ Ազդումն իմն էր նոցա 'ի բազմաց փառաւորագոյն բանն երեւեալ։ Իսկ չասաց թէ զգաստութեամբ գնասջիք, այլ թէ գնասցուք. որպէս զի առանց ծանրատաղտուկ ինչ առնելոյ կազմեսցէ զխրատն և թեթեւացուսցէ զկապանսն։

"Մի անառակութեամբք և արբեցութեամբք" ասէ։ Ոչ եթէ զըմպելն արգելում, այլ զանչափն. և ոչ եթէ զվայելումն գինւոյն, այլ որ ինչ շուայտութիւնն գործի 'ի գինւոյն. որպէս զայն որ ինչ ըստ կարգի անորինէ է, չափով նորին դնէ ասելովն. "Իսկ մի պղծութեան անկողնօք"։ Զի ոչ եթէ այսու զզուգիլն ընդ կանանց արգելու, այլ զպոռնկելն. "Մի հերիւ և նախանձու" ասէ։ Քանզի այսու զաղդուածս ախտից շիջուցանէ, զցանկութեան և զբարկութեան ասեմ. որով ոչ զնոսա միայն, այլ և զաղբերսն իսկ զնոցա խնու։ Քանզի ոչ այնպէս ինչ բորբոքէ ցանկութիւնն և վա-

Որ թէպէտ և ծնցի քեզ որդի ՚ի նմանէն. քեզ ամօթանք են և նմա պատիւ, զի ՚ի գիճութենէ և յանառակութենէ եղև ծնունդն: Որ թէպէտ և բիւր ինչ թողուցուս նմա, անարգ ՚ի տան է նա և անարգ ՚ի քաղաքին և անարգ յատենի զոր ՚ի պոռնկութենէ ծնար և կամ յաղախնոյն: Նախատիս և դու դարձեալ և մինչ կենդանին ես և յետ վախճանին. զի թէպէտ և գնացեր աստի, յիշատակ խայտառակութեանն կենդանի կայ: Իսկ արդ էր վասն սերմանիցես անդ ուր անդաստանն փութայ ապականել զպտուղն: Ուր բազում անծին արգանդք, ուր նախ քան զծնունդն սպանութիւնք. քանզի և զպոռնիկն չթողուս միայն պոռնիկ լինել, այլ և մարդասպան առնես զնա: Տեսեր յարբեցութենէն զպոռնկութիւնն և ՚ի պոռնկութենէն զսպանութիւն: Մանաւանդ թէ որ քան զսպանութիւնն ևս գժնդակ է, զի չունիմ իսկ յանդիմանս կացուցանել զնա բանիւ. քանզի ոչ եթէ զծնեալն սպանանեն, այլ զծնանելն արգելուն և չտան բուսանել: Ընդէ՞ր զԱյ պարգևս թշնամանես և ընդ նորին ընդդ օրէնսն մարտնչիս, և որ ինչ անիծիցն է՝ զայնպիսիս որպէս զօրհնութեանն զհետ երթաս, և զշտեմարանս ծննդեանն տուն մահու գործես զայն, և որ վասն որդեծնութեանն տուաւ կնոջ՝ զնա ՚ի սպանութիւն կազմես: Որպէս զի միշտ բաղձալի հաճոյ թուեսցին քեզ և ցանկալիք, թէպէտ և բազում արծաթ ծախիցես, սակայն և ոչ այնպէս հրաժարես յիրացն, մեծամեծս ՚ի քո գլուխ առաքի կուտես զկայծակունս: Ուր թէպէտ և յանդգնութիւն նորա է, այլ դու եղեր պատճառք: Աստի կռապաշտութիւնք. որպէս թէ ՚ի բազում խնդրանս եղեալ, և նուէրս և բարեկամութիւնս և այլ ևս բիւր հնարս հնարեն:

Բայց սակայն յետ այսչափ խայտառակութեանց, յետ սպանմանցն, ևս և կռապաշտութեանցն, և բազմաց իսկ իրքն անխտիր թուին, վասն զի շատ են որ կանայս ունիցին, և յոյժ մտադիրք են ՚ի չարիսն. և կախարդութիւնս յուզեն և դեղատուութիւնս, ոչ եթէ ՚ի վերայ պոռնկացն որք նոցայն պատուեն, այլ ՚ի վերայ իւրեանց ամուսնացն որք զրկեցան ՚ի նոցանէն, և դիւաց կոչմունք և բիւր նենգութիւնք և մեռելակոչութիւնք և պատերազմունք զօրհանապազ և անհաշտ կռիւք և ընտանեկացն

հակառակութիւնք։ Վասն որոյ և Պիւռոսն ասէր՝ թէ “Ո՛հ պիղծ անկողինք„. և յորժամ զայս եդ, երագած զնովիմբ՝ թէ “Ո՛հ հեռի և նախանձու„. վասն զի գիտէր զայսպիսի զպատերազմունս, զաւանցն զկործանմունս, զբարետոհմիկ զմանկանցն զրկանս, զայլ ևս բիւր չարիսն։

Նա և որդ յայսմ ամենայնէ փախիցուք, և զՔրիստոս զգեցցուք և հանապազորդ ընդ նմին բնակիցեմք. վասն զի և այն զգեցումն է չթողուլ զնա երբէք 'ի բաց, յամենայն կողմանց երևել նորա 'ի մեզ 'ի ձեռն սըրբութեան մերոյ հանդարտութեանն։ Որպէս և վասն բարեկամացն ասեմք՝ թէ այս անուն զայն անուն զգեցաւ, զյոյժ սիրոյն ասեմք և զանպակաս միաւորութենէն. քանզի որ զգենուն՝ այն երևի որ զգեցաւն։ Նա և որդ երևեսցի ամենայն ուրեք Քրիստոս 'ի մեզ։ Նա որպէս երևեսցի. եթէ զնորայսն առնիցես։ Իսկ զինչ արարնա. “Որդի մարդոյ, ասէ, չունի տեղի ուր դիցէ զգլուխ իւր„։ Նորա նախանձաւոր լեր և դու։ Սեբակրոյ պէտք եղեն, և 'ի գարեղէն հացէ կերակրեցաւ. ուղեգնացութեան պէտս ունէր, և ոչ ուրեք երևին ձիք և ջորիք, այլ այնչափ գնայր մինչև վաստակէր. իսկ ննջելոյ պէտք էին, և 'ի վերայ բարձի միայն անկեալ դնէր. 'ի լերինն բազմականաց պէտք էին, և 'ի վերայ խոտոյն հրամայէր բազմել։ Նա և հանդերձն իսկ չէր ինչ կարի պատուական. և բազում անգամ և միակ իսկ շրջէր և ոչ զոք քարշէր զկնի։ Նա որ ինչ 'ի խաչին և կամ 'ի թշնամանս և զայլն ամենայն ած զմտաւ և լեր նախանձաւոր նմին. և այնպէս զգենուս զՔրիստոս, յորժամ մարմնոյ խնամ ոչ տանիս 'ի ցանկութի։

Նա և հեշտութիւն իսկ չունին իրքն. քանզի այնպիսի ցանկութիւնքն յետոյ բիւր դառնութիւնս ծնանին, և ոչ երբէք ունիցին յագումն, այլ մեծամեծ տանջանս գործեն քեզ։ Ո՞ր օրինակ եթէ ոք դժնդակ ծարաւով պապաքեալ իցէ, թէպէտ և բիւր աղբիւրս առաջի կայս ունիցի՝ չօգտի ինչ 'ի նոցանէն յորժամ զախտն չկարիցէ շիջուցանել, այսպէս և որ 'ի հանապազ 'ի ցանկութեանն կեայ։ Իսկ ապա եթէ պիտոյիցն փարիցես, ոչ երբէք զայսպիսի ծիւրումն ջերմանն ընդունիցիս, այլ ամենայն իսկ այն 'ի բաց գնայի և պղծութիւնն և ար-

բեցութիւնս և գինեութիւնս։ Իսկ արդ այնքան ինչ կեր որչափ զքաղցն լուծանիցես, և այնչափ ըմպեսցիր որով ծածկեսցես զքեզ միայն. և մի զարդարեր հանդերձիւք զմարմինդ, զի մի զնա կորուսցես. քանզի և թուլագոյնս գործես զնա, այլ և զբարեկարգութիւնս զայս եղծանես, և 'ի բազում 'ի զրգանաց անտի թոյլ և մեղկ գտանես։ Իսկ արդ զի ունիցիս զնա զեղեցիկ կառս հոգւոյդ, որպէս զի նաւուղիղն ամենայն զգուշութեամբ նաւիցէ 'ի խելոն, և զօրականն դիւրաւ ընձեռիցէ զզէնն, ամենայն յօրինուածով։ Քանզի ոչ եթէ զչարն ունել, այլ որ զառակաւն ունիցի՝ նա խոհ ունի զամենայն առանց ծախելոյ։ Քանզի նա որ զչարն ունի, թէպէտ և չմտանեցաւ յումեքէ, սակայն կասկածէ. իսկ սա թէպէտ և մտանեցի, քան որք չմտանեցանն եւ 'ի լաւութեան կայ և 'ի բազում բարեհամբաւութեան է։ Իսկ արդ մի զպիտաստրականն յումեքէ խնդրիցեմք, այլ թէ և լինել որք կամիցի՝ զայն ցուցցուք զոր չկարիցեն առնել։ Իսկ այս ոչ այլ ուստեք լինիցի, այլ լոկ զպէտսն ունել և աւելորդացն չցանկալ ինչ։ Քանզի և այնպէս և սաստ կարիցեմք փախչել և հանդերձելոց բարութեանցն ժամանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք Հօր հանդերձ Հոգւոյն սրբով այժմ և յաւիտեանս. ամէն։

## ՃԱՌ ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ ՀԻՆԳԵՐՈՐԴ

“Իսկ զտկարացեալն 'ի հաւատս, ընկալարուք մի խտրոձիւ երկմտութեամբ։ Մին հաւատայ ուտել զամենայն. և որ հիւանդն է, բանջար կերիցէ”։

Գիտեմ զի բազմաց դժուարինաց իմն թուին ասացեալքս. վասն որոյ կարեւոր է առել նախ զկարգ իրացն, և եթէ զինչ կամիցի ուղղել։ Զի բազում հաւատացեալք 'ի հրէից անտի որք ըստ օրինացն իմն ունէին զմիտսն և յետ հաւատոյն և զկերակրոց խտրութիւնն պահէին, զի չև եւս վստահէին կատարելապէս հրաժարել յօրինացն։ Իսկ ապա զի մի լինիցի ինչ նոցա եր-

աւելի չափով հետաքրքրելի զմիտս և ձանձրացուցանել զնա խեղդ կազմելով:

«Մին պահէ օր ըստ օրէ և մին պահէ զօրհանապազ»: Թուի ինձ թէ այսու միանգամայն և զպահոց ակնարկէ. վասն զի առանձինն ընտանի իմն էր ոմանց պահելն, և զայնոսիկ որ զօրհանապազն չպահէին՝ քամահէին, զոր և խտրութիւնս իսկ վարկանէին. և զի յայտնի աւուրն հեղանային, և դարձեալ այլ յայտնի աւուրք էին յորս մերձենային. յաղագս որոյ և ասէր իսկ՝ թէ «Իւրաքանչիւր ոք զիւր միտս հաճեսցէ»: Նոյնս և զերկիւղ խաղաղանացն եղծ. առանց ընտրութեան են իրքն, ասէ. և զհակառակութիւնն որ 'ի մէջ Նոցա եդեալ էր՝ զայն 'ի բաց ջնջեաց, և եցոյց եթէ չեն ինչ կարեւոր իրքն: Այլ ոչ եթէ ըստ բնութեան ինչ է, այլ ըստ ժամանակի, և կամ գուցէ զիւրաքանչիւրք 'ի հաւատոցն լինիցին: Իսկ կողոսացւոցն գրէր, յոյժ առաւելի 'ի բաց բառնալ զայս ասելով. «Տեսէք, ասէ, մի ոք իցէ որ զձեզ կողոպտիցէ Ճարտարաբանութեամբ և սնոտի խաբէութեամբ որ ըստ մարդկան աւանդութեան և ըստ աշխարհիս տարերց և ոչ ըստ Քրիստոսի»: և դարձեալ թէ «Մի ոք իցէ որ զձեզ դատեսցի ուտելով կամ ըմպելով, և մի այլ ոք զձեզ հաստատեսցէ»: Նա և գաղատացւոցն գրեալ բազում հաւատեաւ պահանջէ 'ի նոցանէն զայսպիսի իրաց զխտրութիւն և զկատարումն: Իսկ աստ չարկանէ ինչ այսպէս այնոր 'ի կերզկրան, զի դեռ ևս նորատունկ էին առ նոսա հաւատքն, թէ գուցէ յամենեսին ձգեսցի ախտքն՝ ասէ «Իւրաքանչիւր ոք զիւր միտս հաճեսցէ»: Իսկ յորժամ վասն հաւատոց բանքն էին, լուր զինչ ասէ. «Եթէ ոք ձեզ աւետարանեսցէ աւելի քան զոր ընկալարուք, թէպէտ և հրեշտակ իցէ, նզովեալ լիցի»: և դարձեալ թէ «Երկնչիմ, գուցէ որպէս օձն զԵւա խաբեաց, ապականեսցին միտք ձեր»: այնպէս և փիլիպպեցւոցն գրէր. «Տեսէք զշունսն, տեսէք զչար մշակսն, տեսէք որք 'ի հատմանէն են»: Իսկ առ հռովմայեցիսն չև ևս էր ժամանակ այսպիսի ինչ ուղղելոյ, յայն սակս ասէր՝ թէ «Իւրաքանչիւր ոք զիւր միտս հաճեսցէ»: Այն զի վասն պահոց իսկ բանքն էին, և զնոցա զհպարտութիւնն ջնջէ և զնոցա զերկիւղն լուծանէ:

“Որ խորհին, ասէ, զօրն՝ Տեառն խորհի, և որ ոչ խորհի զօրն՝ Տեառն չխորհի. որ ուտէ՝ Տեառն ուտէ և գոհանայ զա̃յ, և որ ոչն ուտէ՝ Տեառն չուտէ և գոհանայ զա̃յ”: Դնէ ևս, ասէ, զնոյն ունիք: Այլ զոր ասէն այս ինչ է. ոչ եթէ աւելորդ իրք ինչ են, ասէ, այլ խնդիր այն է՝ թէ որպէս վասն ա̃յ գործին և սա և նա. ապա նոյն ուրեմն խնդիր է որպէս զի երկոքեան 'ի գոհութիւն անդր կատարեսցին. քանզի և գոհանան իսկ երկոքեան և սա և նա զա̃յ: Այլ ապա եթէ երկոքեան գոհանան, ապա չկայ բազում ինչ 'ի միջի: Այլ դու տես որպէս և աստ վիրաւորէ 'ի ծածուկ զայնոսիկ որք հրէաբարոյն կէին. զի եթէ խնդիր այնոր է, ասէ, գոհանալն՝ ապա ուրեմն յայտ է թէ նա է որ գոհանայն որ ուտէն, և ոչ եթէ որ չուտէն: Բայց զիարդ մարթի, զի դեռ ևս օրինօքն վարիքն. զոր և առ գաղատացիսն ասէր՝ թէ “Որ օրինօքն արդարանայք, 'ի շնորհաց անտի անկեալ էք”: Իսկ աստ ակնարկէ միայն զայն և չյայտնէ համարձակ այնպէս, զի չև ևս էր ժամ. բայց սակայն ներէ, և յաջորդօքս ևս դարձեալ կամի բանալ զմիտս նոցա. քանզի ասաց այսպէս՝ թէ “Ոչ ոք 'ի մէնջ անձամբ կեայ և ոչ անձամբ մեռանի. և արդ եթէ կեամք՝ Տեառն կեամք, և եթէ մեռանիմք՝ Տեառն մեռանիմք”: Այս յայտնագոյնս այսու ծանոյց նոցա՝ եթէ որ օրինացն կեայ, չկարէ Քրիստոսի կեալ: Այլ ոչ այսչափ միայն կամէր զայս, այլ և 'ի յաջորդէ անտի դարձեալ մատուցանէ նոցա մխիթարութիւն որով կարիցեն ուղղել. ուսուցանէ և հաւանեցուցանէ երկայնամտել եթէ չէ հնար զա̃ծ արհամարհել նոցա, այլ մերձակայ իսկ ժամանակաւս ուղղելն:

Այլ արդ զինչ իցէ՝ թէ “ոչ ոք 'ի մէնջ անձին կեայ”: Ոչ եմք, ասէ, ազատք, այլ տէր ունիմք որ զկեալն մեր կամի և ոչ զմահն. և արդ զայս զերկոսեան վասն մեր օգտի առնէ: Այս և յայտ ևս առնէ եթէ փոյթ է զմէնջ և խնամ տանի, մանաւանդ զի և զմեծութիւնն մեր կեանս վարկանի և զմահն մահ: Ոչ եթէ անձանց միայն մեռանիմք, այլ Տեառնն՝ եթէ ստոյգ մեռանիցիմք: Իսկ մահ աստ որ 'ի հաւատոյն լինի՝ ասէ: Բաւական էր այսու հաւանեցուցանել թէ հոգ տանի մեզ. և թէ նմա կեամք և նմա մեռանիմք. բայց սակայն չէ ա-

տացաւ այսու միայն, այլ և այլ իմն յաւելու և ասէ. «Որդ եթէ կեամք և եթէ մեռանիմք, Տեառն եմք»։ Այս յայնմ մահուանէ 'ի միւսն եւ՝ որ ըստ բնութեանն է՝ փոխեցաւ, զի մի համարեսցիս թէ խոշորացայց ինչ զբանն, այլ իմն նշան մեծագոյն ցուցանէ զնորա զխնամոյն։ Որպիսի ինչ արդեօք։

«Ի սոյն իսկ, ասէ, և Քրիստոս մեռաւ և եկեաց, որպէս զի մեռելոց և կենդանեաց տիրեսցէ»։ Օյր և այսու եւս հաւատացուսցէ թէ խնամ տանի մեզ և յայժ փութայ վասն մերոյ փրկութեանս։ Օյր թէ այսպիսի հոգաբարձութիւն և խնամս չունէր առ մեզ, զինչ պէտք տնտեսութեանն էին։ Այս արդ որ զայնպիսի զփոյթ եդ 'ի մտի լինել այնպիսի վասն մեր, մինչև զծառայի կերպարանս առնուլ և մեռանել, ապա որպէս արդեօք յետ զայն ամենայն կատարելոյ արհամարհիցէ զմեզ։ Ոչ յա չէ և չէ իսկ. քանզի ոչ ծախէր իսկ ընդ վայր զայնպիսի վաճառաշահութիւն։ Այս աւանիկ, ասէ, իսկ թէ յաղագս այնորիկ իսկ մեռաւ. որպէս զի յորժամ ասիցէ ոք եթէ այս անուն չառ յանձն արհամարհել զծառայս իւր և ոչ խնայեաց 'ի քսակն իւր, ապա ուրեմն սոյնպէս և նա գործեաց յինքն վասն մեր։ Քանզի և մեք ոչ այնպէս փափագեմք ընչից, որպէս նա մերոյ փրկութե. վասն զի ոչ եթէ զինչս, այլ զիւր զպատուական մարմինն ետ վասն մեր. յաղագս այնորիկ չկամի մերժել 'ի մէնջ վասն որոյ զայսչափ զպատիւս 'ի կիր արկ։ Տես որպէս և զանսահմանն զզօրութիւն նորա յայտնէ թէ անբաւ է. քանզի զսոյն իսկ ասէ՝ թէ մեռաւ և յարեաւ, որպէս զի մեռելոց և կենդանեաց տիրեսցէ։ Այս վերագոյնն ասէ եթէ կեամք և եթէ մեռանիմք, նորա եմք։ Տեսեր զհաստատուն տէրութիւնն, տեսեր զանմարտնչելի զօրութիւնն, տեսեր զհաւատարիս նախախնամութեանն։ Մի ինչ, ասէ, զկենդանեացս միայն ասեր, այլ և զնացելոցն եւս խնամ տանի. զի եթէ մեռելոցն, ապա յայտ է եթէ և կենդանեացս։

Այս արդ յայտ է եթէ չպակասեաց յայսպիսի տէրութենէ առ 'ի ուղղել զմարդն և զարգարութիւնս նորա յարդարել, և առանց այլն ամենայնի 'ի խնամսն մեր նայեաց զոր ունի։ Քանզի մարդիկ արծաթ տան, և յաղագս այնորիկ չատանին կարի խնամ ծառայիցն. իսկ

քեր 'ի մէջ, որ վկայէ թէ ամենեքեան հնազանդելոց են նմա յայնժամ. և ոչ միայն հնազանդութիւն, այլ հաստատուն հնազանդութիւն, և 'ի հին 'ի մարդկանէն և յամենեցունց իսկ խոստովանի: Վասնզի չասաց լոկ եթէ երկիր պագցէ նմա իւրաքանչիւր ոք, այլ թէ և խոստովան լիցին. այսինքն է եթէ վրէժս տայցեն ընդ գործոց: Իսկ արդ կալ 'ի մտի զՋանս զայս, և երկիր յորժամ զհասարակաց զտէրն տեսանիցեմք 'ի վերայ ահաւոր բեմին նստեալ, և մի երկպառակեր և ձեռքել զեկեղեցին զատեալ 'ի շնորհաց անտի և առ օրէնս ընթանալ: Վասնզի և օրէնքն նորա են. և զինչ ասեմ եթէ օրէնքն, այլ և որ ինչ յօրէնսն կայ, և որ ինչ յառաջ քան զօրէնսն: Իսկ ոչ եթէ օրէնքն պահանջեն 'ի քէն պատիժս, այլ Քրիստոս, և 'ի քէն և յամենայն մարդկային բնութենէս: Տես որպէս ելոյծ զահ օրինացն:

Այլ զի մի համարեսցին թէ կարեւոր ինչ է երկիւղ օրինացն, յաղագս այնորիկ չասաց անդէն 'ի սկզբանն զայն, այլ ըստ կարգի յառաջադիմութեանն եդն զայս, և դարձեալ նմին իրաց նախ սկիզբն անէ ասելովն. "Այլ մի դատեսցուք զմիմեանս, այլ մանաւանդ զայն ընտրեսջիք՝ առ 'ի չդնել գլորումն և գայթակղութիւն եղբօրն": Այս ոչ եթէ նորա միայն է, այլ և քո. վասն զի յերկաքանչիւրս կարեն յօդել այս իրք, և կատարելոցն գայթակղել 'ի կերակրոցն խտրութենէ, և որ չև եւս են կատարեալք՝ գայթակղել և գլորել 'ի սաստիկ խոշտանգանացն:

## ՑՈՐԴՈՐԱԿ

Իսկ արդ հայեաց և 'ի միտ առ եթէ որպիսի վրէժս տայցեն որք ընդվայրն գայթակղեցուցանեն: Զի եթէ անդ 'ի զուր և 'ի նանիր էր որ ինչ լինէրն վասն 'ի զուրսն սատանելոյ՝ արգել զայս 'ի լինելոյ, որպէս զի մի գայթակղեցուսցեն և գլորեցուսցեն զեղբայրն, իսկ յորժամ ոչ ինչ ուղղիցեմք և գայթակղեցուցանիցեմք՝ իմ իմիք լիցիմք արժանիք: Զի եթէ որ ոչն յաւելու դատապարտի, և յայտ 'ի տաղանդոյն 'ի թաղմանէ է, իսկ որ և գայթակղեցուցանէ ևս՝ զինչ չգործիցէ: Իսկ արդ

եթէ, ասէ, կամիք գայթակղեցի որպէս տկար զքեզ : Նա յաղագս այնորիկ իսկ յիրաւի է քեզ համբերել և ներել ամենայնի : Զի եթէ զօրաւոր ոք էր, ապա չէր կարօտ այնչափ ինչ դարմանոց . և այժմ քանզի ան-կատարելագոյն էր, յաղագս այնորիկ բազում փութոյ պիտոյ ունի : Հնարեսցուք նմա այժմ զայս և ամենայն ուստեք օգնեսցուք նմա . ոչ միայն վասն նորա որ ինչ ասասցուք բան, այլ և վասն այլոց զորս գայթակղեցու-ցաք : Զի թէ այս առանձին միայն գժնեայ և չար է, իսկ յորժամ և այսք յաւելուցուն՝ ե՞րք կարիցեմք ասել :

Այլ մի համարեսցուք թէ պատճառս ինչ ունիցիմք մեղացն և պատասխանատուութիւնս ինչ գտանիցեմք . քանզի այսորիկ յաւելուած տանջանաց լինի մեզ : Նա և օձն ևս պատուհասեցաւ ընդ կնոջն, որպէս և կինն ընդ առնն, և Աքաաբ ընդ Եզաբելի որ զայգին յա-փշտակեաց՝ դատն պատուհաս ընկալաւ, քանզի նա նիւթեաց զիրսն ամենայն և գայթակղեցոյց : Այնպէս և դու այժմ յորժամ այլոց կորստեան պատճառք լինիս, և գայթակղեցիս վասն քո . քանզի չէ այնպէս մեղան-չելն, և զայլս ևս ածել 'ի կորուստն : Վասն որոյ ասէ՝ թէ "Ոչ միայն որ գործենն, այլ և որ կամակիցն լինին գործելեացն" : Որպէս զի յորժամ տեսանիցեմք թէ մեղանչեն, մի միայն չմեղանչիցեմք, այլ և 'ի մեզ ևս ձգեսցուք 'ի խորխորատէ չարեացն, որպէս զի մի այլոցն կորստեանն և մեք դատապարտութիւն ընդունիցիմք : Այլ արդ յիշեսցուք հանապազ զահագին բեմն և ըզ-գետն հրեղէն և զանլոյծ զկապանսն և զանճաճանչ ըզ-խաւարն և զորդնն զթիւնաւոր :

Այլ մարդասէր է, ասեն, Ած : Ապա եթէ այդպէս է, ուրեմն բանք լոկ են այս . և որպէս դուք ասէք՝ ոչ մեծատունն այն տանջի որ զՂազարոս անտես արար, և ոչ յիմար կուսանքն արտաքոյ առագաստին մնան, և ոչ որք չկերակրեցինն զնա՝ 'ի հուրն երթիցեն որ պատ-րաստեալ է սատանայի . և ոչ որ զաղտեղի զհանդերձն զգեցեալն էր՝ զձեռս և զոտս կապեալ կորնչի, և ոչ դար-ձեալ որ զհարիւր դահեկանն պահանջեաց՝ մատնեսցի 'ի ձեռս տանջանաւորացն, և կամ դարձեալ սուտ իցէ այն որ վասն շնացելոցն ասիցէ, և չիցէ ճշմարիտ թէ "Որդն նոցա ոչ վախճանեսցի և հուրն մի շիջցի", այլ

պատասխանալիք միայն իցեն այն ։ Այո, ասէ ։ Այլ ուսանի համարձակիս զայսպիսի զիրս յայտ առնել ինձ և կամ բերել զհամար զատացելոցդ ։ Իսկ ես զոր ինչ ՚ի հակառակորդաց անտի զոր ինչ առայցին՝ կարեմ ցուցանել. զի թէ հանդերձելոցն չհաւանիս, գոնեայ եղելոցն հաւատա. քանզի թէ չէր եղեալ և ՚ի գործ եկեալ իրաց ինչ, յիրաւի ասէիր թէ սպառնալիք և բանք միայն են ։ Ապա արդ ո՞վ էր որ զտիեզերս ամենայն ջնջից ջրհեղեղաւն և զգժնդակ նաւաբեկութիւնն գործեաց և զամենայն ազգս մերոյ առ հասարակ զսատակումն ։ Ո՞վ յետ այնորիկ դարձեալ զշանթընկէց զաւերութիւնն և զանձրևաձև զհուրն թոյլ ետ գալ ՚ի վերայ սոդոմայեցւոցն երկրին ։ Ապա կամ ո՞վ զամենայն Եգիպտոս ընկղմեաց ։ Ապա կամ ո՞ դարձեալ զվեց հարիւր հազարսն յանապատին ծախեաց. և կամ զհրապարակն Աբիրոնի ո՞ բորբոքեաց. և կամ ո՞ որ զԿորխեանն և Դաթանեանն էին՝ հրամայեաց երկրի բանալ զբերան իւր և զնոսա կենդանւոյն կլանել. և որ զեօթանասուն հազարսն ՚ի միում ժամու յական թօթափել տապալեալ արկանէր առ Դաւթաւ ։ Ասացէք և զայնոսիկ որք միայն սանձինն տանջեցան, որք զգանկ հանապազ մատնեցան զատապատանացն. զ[illegible] որ մնաց զկնի ամենայն ազգին, և զ[illegible], և որ վասն սակաւ մի փայտ ժողովելոյ զայն տանջանս կրեաց ՚ի շաբաթու. զքառասուն մանկունսն զայնոսիկ որք գազանակերք եղեն և ոչ ՚ի ագեղծ հասակէ անտի գտին ներել թաղման ։

Իսկ արդ եթէ յետ շնորհացն կամիս զայսպիսիսս ՚ի մէջ առնուլ, հայեաց ՚ի Հրեայսն եթէ զինչ ինչ կրեցին, զիարդ զորդիս իւրեանց կերան կանայք ոմանք խորովելով, և ոմանք այլ տարապարտ ծախեցան, որպէս անկշռելի սովոյն մատնեցան և պէսպէս և դժնդակ պատերազմաց, և զամենայն զյառաջագոյն զմրմնջմունսն իւրեանց ծածկեցին առաւելութիւն վերջին թշուառութեանցն նոցա ։ Ապա զի Քրիստոս ինքն գործեաց զայն ընդ նոսա, լուր նմա որ յառաջագոյն իսկ ասէր նոցա զայս և առակօք և յայտնապէս և հանապազորդ առակօք, յորժամ ասէ՝ «Որք ոչ կամեցան թագաւորել զիս, ածէք այսր և կոտորեցէք». և վասն այգւոյն. նոյնպէս և հարսանեացն ։ Իսկ յայտնապէս յորժամ ասէրն՝ թէ «Անկ-

ցին 'ի ձեռս որոյ և զերեւեցին 'ի հեթանոսս, և եղիցի անձկութիւն 'ի վերայ երկրի ազգաց 'ի ձայնէ ալեաց ծովու և 'ի զարհուրանաց ոգւոց մարդկան յերկիւղէ, և եղիցի նեղութիւն այնպիսի՝ որ ոչ եղեալ եղև և ոչ լինիցի ,,: Այլ Անանիաս և Սափիրա վասն փոքր մի զողութեան արծաթոյ որպիսի ինչ վրէժս եառուն՝ ամենեքին տեղեակ էք: Իսկ զհանապազորդ թշուառութիւնն չարչարանացն, մինչ է և այսորէնիկ չեղեն. չարչարանացն այժմ որք որոշին մանչքն կամ որք բարբառութեանն և խայտառակե-առութեանց մարմնովքն հարեալ են, որք աղքատու-թեանցն համապատաղ կեան և որք բիւր անձանեալ չար-չարանացն և նեղութեանցն համբերեցին:

Այլ մարդ ո՞ր բան ունիցի զայս՝ թէ ոմանք տանջեցան և ոմանք չտանջեցան: Ոչ՛ի եթէ չէ անիրաւ Աստուած, որ-պէս զի և չէ իսկ, այլա՛ յայտ է թէ և զաւ ունիս տա-պատ ընդ մեղանչելոյն: Իսկ եթէ ասիցես՝ մարդասէր է և ոչ դատի, այլ պարտ էր և ոչ զնա դատել: Այժմ վասն այնորիկ են մեր բանք, զնազուեալս ասա տանջէ Աստուած. զի յորժամ բանիցն ոչ հաւատայցեմք, և տարաժամանելեացն զանէ տանջելոցն իրօք հաւատայցեմք: Այլ արդ քանզի հինն զմեզ չերկեցուցանէ այնպէս որ-պէս ըստ իւրաքանչիւր ազգացն պատահեացն, որպէս զի ըստ ժամանակին ուղղեսցէ զծուլագոյնսն: Այլ էր վասն, ասէ, զամենեսին ասա չտանջէ. առ 'ի տալոյ այլոցն յա-ւելումն ապաշխարութեան: Ո՞ր վասն, ասէ ասա ինձ, և զամենեսեան անդ տանջէ. զի մի բազումք յերկբայ-ացին 'ի նորա խնամոցն. քանզի առաւելք ոմանք չար-չարեցան աստէն, իսկ այլք չոգան առանց դատելոյ ինչ աստի: Այլ արդ ո՞ւր է, ասէ, մարդասիրութիւնն Այ:

Այլ արդ իմ է ընդ քեզ հակառակութիւն. զի թէ ոչ ամենեւին ոք տանջէր, ունէիր ուրեք ապաւինել. իսկ յորժամ ոմանք տայցեն դատ և կէսքն չտայցեն, և ա-ռաւել ևս որք մեղանչիցեննն, այլա՛ ո՞ր բան ունիցի զայն եթէ ընդ յանցանացն չիցեն պատժելոյ: Այլ արդ ո՞ր-պէս չիցեն արդեօք տանջանաց արժանի այնորքիկ որք զայսպիսիսն իշխեն ածել զմտաւ: Այլ արդեօք զնոյնս դարձեալ ճառեալ ասիցես թէ էր վասն ամենեքին ասա չտանջին, լուր նմա որ վասն այսորիկ իսկ քեզ պատաս-խանին արար: Երբեմն 'ի վերայ ոմանց աշտարակ իջն

'ի վայր փլաւ, և վախճանել որպէս թէ արանց ութե-տասնից. ապա ասէր ցնոսա որք հիանայինն վասն իրացն. "Արդ կարծէք, ասէ, թէ մեղաւորք էին նոքա քան զա-մենեսին. ոչ. այլ ասեմ ձեզ, եթէ ոչ ապաշխարիցէք, և դուք իբրև զնոսա կորնչիք,,: Խրատէ զմեզ զի յոր-ժամ այլք վրէժս տայցեն, մի մեք յանձնապաստան բա-զում մեղանչիցեմք. և ոչ եթէ ոչ դառնայցեմք, տա-լոց եմք վրէժս:

Եւ որպէս արդեօք, ասէ, անմահ տանջիցիմք որ ա-փոքր մի ժամանակս մեղաք: Եւ արդ, ասա ինձ, զիարդ փոքր մի ժամանակի 'ի թօթափել ական մի միայն՝ անհ գործեաց և հանապազ 'ի կենդանութեան իւրում զմե-տաղացն թշուառութիւնս և զտառապանս կրէ յանձին, այսինքն է զանփոփոխ և զանդադարական զփոր-ձումն: Ոչ, ասէ, մի՞ չառնէ ինչ այսպիսի: Եւ արդ որպէս արդեօք զերեսուն և զութ ամ ունէր 'ի տան-ջանս զանդամալոյծն, և զի վասն մեղաց զնա տան-ջէր՝ լուր զինչ ասէր. "Տես, ասէ, զի ողջ եղեր, մի՛ ևս մեղանչեր,,: Բայց սակայն, ասէ, զլուծումն ընկալաւ հիւանդութեանն. այլ անդ չէ այնպիսի ինչ: Զի չու-նին այն տանջանք լուծումն, լուր նմին իսկ ուեանն որ ասէր՝ թէ "Որդն նոցա ոչ վախճանի և հուրն նոցա ոչ շիջանի,,. և դարձեալ ասէ. "Երթիցեն սոքա 'ի կեանսն յաւիտենականս. և նոքա 'ի տանջանսն յաւիտենից,,: Զի թէ կեանք յաւիտենականք գոն, ապա յայտ է թէ և տանջանք յաւիտենից են: Զտեսանե՞ս որչափ ինչ սպառնալիս ցուցաւ Հրէիցն. և արդ զինչ՝ եղ 'ի գլուխ ամենայնն, եթէ լոկ բանք էին ասացեալքն: Բայց թէ "Ո՛չ մնասցէ այդր քար 'ի քարի վերայ,,. և ապա զինչ մնաց, և ոչ երբէք: Եւ դարձեալ յորժամ ա-սացն՝ թէ "Եղիցի նեղութիւն որպէս ոչ երբէք եղև,,. ապա զինչ չեղև: Ընթերցիր զպատմութիւնն Յովսե-պոս, և ոչ հաս կլանել անգամ չժամանես լոկ 'ի լսե-լեացն զոր ինչ կրեցին չարչարանս վասն իրացն այնոցիկ: Զայս ասեմ ոչ զի տրտմեցուցից, այլ զի զգուշացու-ցից. բարեմտաւոր հոգւով և երկիւղիւ եղեր, յաղագս այնորիկ բարբառիմ քեզ զդժնդակագոյնսն:

Եւ արդ ընդէ՞ր, ասէ ասա ինձ, չվարկանիս տանջա-նաց արժանի զայնոսիկ որ մեղանչեննն. ո՞չ յառաջագոյն

պատուիրեաց զամենայն. ո՜չ յառաջագոյն իսկ կոչեաց առաքելովքն. ո՜չ բիւր ինչ գործեաց վասն մերոյ փրկութեան. ո՜չ յաւազանէ վերստին դարձեալ ծնունդ պարգևեաց և զառաջինն զմեղսն զամենայն 'ի բաց ջնջեաց. ո՜չ յետ թողութեանն այնորիկ և աւազանի դարձեալ զապաշխարութիւնն եցոյց քեզ օգնական և թողութիւն մեղաց. ո՜չ դիւրինս գործեաց քեզ զճանապարհն և յետ մեղացն թողութեան: Սուր զինչ հրամայեաց. զի թէ թողցես դու, ասէ, ապա և ես քեզ թողից: Իսկ արդ զինչ դժուարին էն պատուէրքն. "Դատ առնել որբոյն և իրաւունս հանել այրւոյն": Իսկ իբրև զայս առնիցէք, ասէ, "եկայք խօսեսցուք յանդիման. և եթէ իցեն մեղք ձեր իբրև զծանծախարիթ, իբրև զձիւն սպիտակ արարից": Իսկ արդ զո՞ր ջան ունիցի այն զոր ասէն՝ թէ "Ասա դու զմեղս քո զի արդարասցիս". և կամ զինչ դժուարութիւն այն ունիցի որ ասէն՝ թէ "Զմեղս քո ողորմութեամբ քաւեսցես": Իսկ արդ զո՞ր քրտունս ունի այս: Ասաց մաքսաւորն. "Քաւեա զիս զմեղաւորս", և էջ արդարացեալ: Իսկ արդ որպիսի աշխատութիւն ունէր այս. Նմանեա մաքսաւորին:

Այլ չկամիս հաւատալ և յետ այսչափ օրինակաց եթէ գեհեն և տանջանք են: Եթէ այդպէս է, ապա և ոչ զսատանայէ ասես թէ տանջի: Իսկ արդ զինչ իցէ որ ասէն՝ թէ "երթայք 'ի հուրն զոր պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա": Զի եթէ նա ոչ տանջեսցի, ապա և ոչ մեք. իսկ եթէ նա տանջի, ապա և մեք. վասն զի և մեք յանցեաք, թէպէտ և ոչ այնչափ ինչ: Իսկ արդ զիա՞րդ չզարհուրիս զայսպիսի զյանդգնութիւնս բարբառել. քանզի յորժամ ասիցես թէ մարդասէր է ա՜ծ և ոչ տանջէ, իսկ ապա եթէ տանջիցէ՝ նման մեզ գտանի և ոչ ևս մարդասէր: Տեսանես յորպիսի պատասխանատուութիւն ածէ զքեզ սատանայ: Իսկ արդ զինչ ասիցեմք, որք 'ի լերանց 'ի գագաթունս երթեալ բնակեալ իցեն միայնակեացքն և բիւր ճգնութիւնս ցուցանիցեն, առա՞նց պտղոյ երթիցեն. զի եթէ չարքն չտանջիցին, ապա և ոչ միոյ իրիք փոխարէնք հատուցման կայցեն և ոչ բարիքն պսակին:

Այլ, ասէ, ո՞չ այն վայել է զի արքայութիւն միայն իցէ և ոչ եթէ գեհեն: Ապա ուրեմն պոռնիկն և շունն

և որ զբիւր չարիքն գործեցին, 'ի նոյնս վայելեն որք զցա-ծութիւն և զարբութիւն ցուցին. և Պաւղոս ընդ Երե-միայի կարգեցի, մանաւանդ թէ ևս առաւել սաստկանայ իսկ ընդ Պաւղոսի: Այլ թէ գեհեն չիցէ, յարութիւն ա-մենեցուն է, և չարքն և բարիքն ըստ իւրեանց արժանին ընդունին: Այլ արդ ո՞ ոք իցէ որ զայս ասիցէ, թէպէտ և բիւր ոք անզգայ և շաղխեալ իցէ մարդն. մանաւանդ եթէ ո՞չ դև իսկ իշխիցէ զայն ասել, քանզի և նոքա զգե-հենն խոստովանին թէ է, վասն որոյ գոչէին ասելով. «Եկիր այսր յառաջ քան զժամանակն տանջել զմեզ»: Որպէս արդեօք չերկնչիս և չզարհուրիս յորժամ դևքն խոստովանին և դու ուրանաս, և զիա՞րդ չտեսանիցես զվարդապետսն զայսպիսի չարեաց: Քանզի որ յառաջն խաբեաց զմարդն առաջի դնելով նմա զմեծագոյն ըղ-ձալին, ասա և զայն որ անգէտն 'ի բուռն իսկ ունէր ըղ-բարիսն՝ կորզեաց 'ի նմանէ, նոյն ինքն է և որ այժմ զձեզ գրգռէ զայս ածել զմտաւ և խորհել. և երագ հաւանեցուցանէ ասնուլ կարծիս եթէ չէ գեհեն, որով մարթասցէ զձեզ 'ի գեհեն արկանել: Այնպէս և ած 'ի հակառակորդաց անտի կազմէ. սպառնացաւ գեհեն և պատրաստեաց զհուրն, որպէս զի յորժամ լսիցես՝ այնպէս վարիցիս, զի մի՛ անկանիցիս 'ի գեհենն: Ո՛ր եթէ գեհենն է, և սատանայ այնպէս հաւանեցուցանէ թէ չիք, և եթէ չիք՝ ո՞րպէս արդեօք ինքեանք խոստո-վանեսցին դևքն: Այլ այս միայն փոյթ է նոցա առ 'ի զայն կարծիս 'ի մեզ արկանել, որպէս զի ընդարձակու-թեամբ կեցեալ 'ի ծուլութիւն գայցեմք, զի և զմեզ ընդ ինքեանս 'ի գեհենն արկանիցեն: Այլ զիա՞րդ, ասէ, յայնժամ խոստովանէին զգեհենն: Վասն զի չկարէին հանդուրժել վտանգին որ 'ի վերայ կայր:

Այլ արդ զայս ամենայն իմացեալ դադարեսցին 'ի խա-բելոյ զանձինս և զընկերս որք զայս ասիցեն: Ապա թէ ոչ՝ և ընդ բանիցն իսկ բազում վրէժս տայցեն. զահա-գին զայնպիսի զիրս փոյթ յանձին ունին լուծանել և ընդ վայր հաշուել, և ոչ բարբարոսացն այնոցիկ նմանեն անգամ: Քանզի նոքա թէպէտ և քան զամենեսին տխմարագոյնք էին, բայց լուան թէ կործանելոց է քա-ղաքն՝ ոչ միայն չեղեն անհաւատք, այլ և յօգուտ հա-նին, քուրձ զգեցան և 'ի զղջումն եկին, և ոչ հրաժա-

րեցին զամենայն ինչ տանել մինչև լուծին զկարկութիւնն ։ Իսկ դու այսքան առեր զփորձ իւրացն և զբանիցն, արհամարհես զառացելովքս ։ Այլ արդ գտան ընդդէմ միմեանց իրքն. զի զոր օրինակ նոքա զորհուրեալք 'ի բանիցն՝ չեկին իրք տանջանացն 'ի վերայ, սոյնպէս և դու արհամարհելով զբանիւք սպառնալեացն՝ զարդիւնս տանջանացն կորզես 'ի քեզ ։ Իսկ ապա եթէ քեզ այժմ բարբաջանք թուիցին բանքս, այլ ոչ եթէ յայնժամ յորժամ արդիւնքն իսկ հասանեցուցանեն ։ Զտեսանես աստէն իսկ զինչ արար. երկուս աւազակս ընկալաւ, այլ ոչ եթէ զերկոսեանն միոյ պատուի արժանի արար. այլ զմինն ընդ իւր յարքայութիւնն եմոյծ, իսկ զմիւսն 'ի գեհենն առաքեաց ։ Այլ զինչ ասեմ զաւազակէն և ըզմարդասպանէն, ուր և յառաքելոցն իսկ չխնայեաց, վասն զի մատնիչ եղև. այլ և 'ի մահն եւս եւս մերձեալ և 'ի խեղդ մատաբերեալ և ընդ մէջ հերձեալ, քանզի այպթեաց և հեղաւ ամենայն փոր-նորա ։ Ոչ թէպէտ և յառաջագոյն գիտէր զայս ամենայն, այլ թոյլ ետ նմա կրել զայն, որպէս զի 'ի մերձակայէս հաւանեցուսցէ զքեզ հաւատալ և հանդերձելոցն ։

Այլ արդ մի առաջի դնէք զձեզ սատանայի հաւանել, քանզի այս խորհուրդ և մտածութիւն նորա է ։ Ոչ եթէ դատաւորք և տէրք և վարդապետք և բարբարոսք զբարիս պատուեն և զչարիսն պատժեն, ապա ո՞ր բան ունիցի առ 'ի յայդ հակառակ լինել սմին մինչև 'ի նմին պատուի առնել զբարիսն և որք չիցեն սոյնպիսիք ։ Այլ արդ երբ կարասցեն հրաժարել 'ի չարեաց այնպիսիքն, զի եթէ այժմ մինչդեռ ակն ունին գեհենին և 'ի մէջ այսչափ երկիւղի են 'ի դատաւորէն և յօրինացն՝ և ոչ երբէք հեռանան 'ի չարեաց, իսկ ապա և յորժամ զերկիւղս զայս 'ի բաց թողուն մերժիցեն յինքեանց և ասիցեն թէ զնացեալքն 'ի մէնջ ոչ միայն 'ի գեհենն չերթան, այլ և արքայութեանն հասանեն, ապա երբ կարիցեն հեռանալ[1] որք 'ի չարիս են հաստատեալ զանձինս ։ Այլ այս մարդասիրութիւն է, ասա ինձ, որ 'ի չարիսն ծախեաց զժամանակն և բազում յանձնեաց զնշանակ մեղացն, և ապա ընդ պարկեշտին և ընդ զգաստին

1 Յօրինակին պակասէր Հեռանալ ։

զուգես զայնպիսի զպարսն. զՀաւատացեալն և զանձա-րիչսն մի դատես, զՊաւղոս և զսատանայ 'ի միասին կար-գես: Այլ մինչև յերբ քանիցս աղաչանաց մերոց զնի-ցես: Վասն որոյ աղաչեմ հրաժարել ձեզ յայնպիսի մոլորութեանց, և անձանց ուշ ունելով հաւանեցուցէք զոգիս ձեր երկնչել և զարհուրել. որպէս զի և 'ի գե-հենէն զերծանել մարթասցուք, և հանդերձ պարկեշ-տութեամբ կալ 'ի կենցաղումս յայսմիկ, և յաւիտե-նական բարութեանցն հասանել շնորհօք և մարդասի-րութեամբ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիս-տոսի, ընդ որում փառք Հօր հանդերձ Հոգւովն սրբով այժմ և յաւիտեանս. ամէն:

## ՃԱՌ ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ

"Գիտեմ և հաստատեալ եմ թէ չիք ինչ պիղծ նո-վաւ. բայց այնմ որ համարիցին թէ պիղծ իցէ, նմա է պիղծ":

Յառաջ նախ սաստեաց այնմ որ դատէր զեղբայրն, և յայնպիսի մեղադրութենէ մերժեաց զնա. ապա այ-նուհետև վասն ուսանողութեանն տկարէ և յոյժ հան-դարտութեամբ խրատէ զտկարացեալսն, նա և բազում իսկ հեզութիւն ցուցանէ այժմ: Քանզի չասաց եթէ դատ տալոց են, և ոչ այլ ինչ 'ի սոյնպիսեացս. այլ զեր-կիւղն լուծանէ զնոցա, որպէս զի զիւրընկալ առնիցէ զասացեալսն յինքենէ, և ասէ այսպէս՝ եթէ "Գիտեմ և յուսացեալ եմ 'ի տէր": Այլ զի մի ոք ասիցէ որք չենն յոյժ հաւատացեալք, եթէ զի՞ ասես եթէ դու հաւատաս, քանզի չես իսկ արժանի հաւատալոյ եթէ փոխանակ հաստատելոյ զօրէնսն՝ որ զայսպիսի իմն ան-դուստ 'ի վերուստ հրամայեալ, յարէ 'ի սոյնս՝ թէ հաս-տատեալ եմ 'ի տէր. այսինքն է թէ 'ի նմանէն ուսայ և հաստատեցայ. և ոչ եթէ ըստ մարդկօրէն մտաց հա-մարի ինչ: Իսկ արդ յինչ յուսացեալ ես և գիտես, ասէ ասա զայն. "Զի չիք ինչ պիղծ նովաւ": Բնութեամբ, ասէ, չիք ինչ անսուրբ, այլ 'ի յօժարութենէ ճաշա-

կեղեւացն լինի. ապա ուրեմն լոկ նմա է պիղծ և անմաքուր, այլ ոչ ամենեցուն. զի որ համարեսցին եթէ պիղծ իցէ, նմա է պիղծ։

Այլ արդ ընդէ՞ր ոչ ուղղեցես զեղբայրն, որպէս զի մի՛ կարծիցէ անմաքուր ինչ. եթէ վասն ոչ հրաժարեցուցանելոյ յայնպիսի սովորութենէ և 'ի կարծեաց ամենայն իշխանութեամբ, որպէս զի մի՛ վարկանիցի պիղծ ինչ։ Այլ կրկնեցի՛մ, ասէ, գուցէ տրտմեցուցանիցեմ ինչ զնա։ Վասն որոյ 'ի սոյնս յարեալ ասէր. "Զի թէ վասն կերակրոյ եղբայրն քո տրտմիցի, ոչ ևս սիրով գնայցես"։ Տեսե՞ր որպէս ընտանեցուցանէ զնոսա ցուցանելով թէ այնչափ հոգ ունի զնոցանէն՝ որպէս զի և տրտմեցուցանել իսկ չկամիցի, և ոչ ճոխութեամբ ինչ տայ զհրամանն. այլ որ յոյժ կարևորն էր, ներելով իմն ձգէ զնոսա և սիրով։ Քանզի և ոչ յորժամ եղծ զերկիւղն՝ 'ի հարկէ ինչ կարգէ առ ինքն, այլ թողու զնոսա անձանց տեարս լինել։ Այս և չէ իսկ զոյգ 'ի կերակրոցն հեռացուցանել և դարձեալ տրտմութեամբն զկծեցուցանել։ Տեսանե՞ս որպիսի ինչ փոյթ տանի նոցա սիրոյն, քանզի գիտէ թէ զամենայն ինչ ուղղէ. յաղագս որոյ և մեծագոյնս իմն զայս պահանջէ 'ի նոցանէ։

Քանզի ոչ միայն, ասէ, զանձինս պարտ է 'ի կարևորս անդր մերձեցուցանել, այլ թէ և զիջանել ևս լիցի՝ մի՛ և այնու դանդաղեսցես։ Վասն որոյ զտովլինեն ածեալ ասէր՝ թէ "Մի՛ կերակրովն քով զնա տրտմեցուցաներ վասն որոյ Քրիստոսն մեռաւ"։ Ո՞չ այնմ անգամ արժանի վարկանիս զեղբայրն որպէս զի քո 'ի կերակրոցն հեռանալով շահեսցես զնորա զփրկութիւնն։ Այս սակայն և Քրիստոս և ծառայ եղև և մեռանել չհրաժարեաց վասն նորա. իսկ դու զկերակուրն չարհամարհե՞ս վասն զնա ապրեցուցանելոյ. և այն զի թէպէտ և ոչ ամենեքին օգտեցան 'ի Քրիստոսէ, բայց սակայն նա յիւրմէ կողմանէն վասն ամենեցուն մեռաւ և զնոյն կատարեաց։ Իսկ դու գիտես եթէ վասն կերակրոյ կործանի եղբայրն, և ևս տակաւին յամառե՞ս. վասն որոյ Քրիստոսն բազում փոյթն էր, և քեզ արհամարհելի՛ թուիցի. և զոր նայն սիրեաց, դու անպատուե՞ս։ Այս նա ոչ եթէ վասն տկարացն միայն, այլ և վասն թշնամեացն մեռաւ. իսկ դու և ոչ վասն տկարացն հրաժա-

Նորև առաջ զխաղաղութենէն և զխնդութենէ, առա-յայս ասէ՝ եթէ խաղաղութիւն և խնդութիւն և որ ՚ի չար գործոց գտանիցին, կամի ցուցանել՝ եթէ ոչ զայն խաղաղութենէ ինչ ասէ, այլ որ «ի Հոգին սուրբ» է։ Զի եթէ կորուսանես զեղբայրն, և զխաղաղութիւն և զխնդութիւնն ՚ի վայր կործանեցեր. զի թէպէտ և վնաս ինչ գործեաց ումեքի և կամ զինչ ուրուք յափշտակեաց, այն ևս չար է զի յայլմէն ապրեցաւ, և դու կորուսանես զնա։ Նա առաջ եցոյց եթէ չկարէ կերակուրն յարքայութիւնն մուծանել, թէպէտ և կատարեալ առաքինութիւն իմն թուէր նոցա այն. և որ ամեն հակառակքն թուին, նոքին իսկ մուծանեն յարքայութիւնն, ասէ։ Նոյա ուրեմն պարտ է արհամարհել ըզփոքրն, զի զմեծն հաստատիցեմք։

Նա և ցուցանէ իսկ հաւաստեաւ եթէ ՚ի փառաւորութենէ էին անկեալ յայն. նայս և զառանն յաւելու ևս ասելովն. «Եթէ որ յայսմ ծառայէ Քրիստոսի, նա հաճոյ է Քրիստոսի և ընտիր մարդկան»։ Քանզի ոչ այնպէս ոք զարմանայ ընդ կատարելութիւն կերակրոյն, որպէս ընդ խաղաղութիւնն և ընդ միաբանութիւն. վասն զի ՚ի սորա լաւութիւնս ամենեքին վայելեն, իսկ ՚ի նմա և ոչ ոք։ «Նոյա ուրեմն պարտական եմք զհետ երթալ զխաղաղութեան և զշինութեան որ առ միմեանս»։ Որպէս զի սա առ նա զխաղաղութիւնն կալցի, և նորա ամա դիւրիս արկեալ՝ չտայ լուծանել եղբայրութեանն։ Նա դարձեալ երկոցունց կողմանցն առ հասարակ զայս դնէ ասելովն՝ եթէ «զշինութեան որ առ միմեանս է»։ Նա եցոյց եթէ առանց խաղաղութեան ոչ բարւոք լինի շինութիւն։

«Եւ արդ մի վասն կերակրոյ քակեր զգործ Այ»։ Զեղբօրն զփրկութիւն այսպէս կոչէ, և յոյժ ահիւ դնէ զբանն. և ցուցանէ՝ թէ որ ամեն հակառակն է, զայն փութաս առնել. զի ոչ եթէ չշինես միայն զոր կամիս, այլ և քակես ևս զշինուածն, ոչ զմարդկան ինչ, այլ զԱյն քակես. և ոչ եթէ վասն մեծամեծ ինչ իրաց, այլ վասն զի յոյժ արհամարհելի է։ Նոյա զի մի պատճառս տայցէ նոցա ՚ի ներելոյ անտի, և հաստատեսցին տկարացոյնքն անդրէն ՚ի չար կարծիսն, այլ իմն աւանդէ նոցա ասելովն՝ եթէ «Ամենայն ինչ սուրբ է, այլ չար

այնմ մարդոյ է՝ որ խղճիւն ուտիցէ»։ այսինքն՝ չար մի-
տօք։ Ով որ թէպէտ և հարկաւորեսցի ուտել, չգործէ
ինչ օգուտ. զի ոչ եթէ կերակուր պղծէ զքեզ, այլ բարքն
որով ուտեսն։ Ոի թէ զնա չուղղեսցես, զամենայն ինչ
ընդ վայր գործեսցես, մանաւանդ եթէ վնասեցար իսկ.
վասն զի չէ ընդ. մի համար պիղծն վարկանել, և զար-
ձեալ ճաշակել 'ի նմանէն։ Երկուս իսկ մեղանչես աստ,
զի և զհակառակութիւնն անձեցուցանես, և յանսուրբ
իրաց հարկաւորես ճաշակել՝ զոր չէ պարտ առնել և ոչ
զայլս հարկաւորել։

«Բարւոք է ոչ ուտել միս և ոչ ըմպել գինի որով
իւիք եղբայրն քո կամ գայթագղի կամ տկարանայ»։
Դարձեալ այլ առաւելութիւն իմն պահանջէ, որպէս
զի մի միայն չհարկաւորիցեն զնոսա ճաշակել, այլ և զի-
ջանիցին ևս ընդ նոսա։ Քանզի նա ինքն բազում ու-
րեք զայնս գործեաց. որպէս յորժամ թլփատէրն և
գերծայրն և կամ յորժամ զոհեաց զզոհն հրէական։
Եւ չասաց լոկ թէ մի ուտեր զայն, այլ ըստ կարգի բա-
րուցն զնէ, որպէս զի մի ևս ծուլագոյնս զնոսա քան
զտկարագոյնսն առնիցէ։ Եւ արդ զինչ ասիցէ. «Բա-
րւոք է չուտել միս»։ և զինչ ասեմ զմիս, նա թէ և
գինի իսկ է և կամ այլ ինչ այնպիսի որով եղբայրն
գայթագղի, 'ի բաց հրաժարեա և մի ճաշակեր. քան-
զի չիք ինչ զոյգ եղբօրն փրկութեան։ Եւ զայս յայտ
Քրիստոս արար որ 'ի յերկնից 'ի յերկիր եկն և զա-
մենայն ինչ վասն մեր կրեաց զոր ինչ կրեացն։ Տես
զկարգ և զնոսա 'ի կարգ ածէ ասելովն՝ թէ «Որ թէ
կամ գայթագղէ կամ տկարանայ»։ Եւ մի ինչ ասեր,
ասէ, թէ որպէս անբան է, այլ թէ որպէս կարասցես
դու զնա ուղղել. նա և իրաւանս իսկ ունի 'ի քէն տկա-
րութեանն իւրում բաւական լինել, յորժամ քեզ վնաս
և ոչ մի ինչ լինի. զի ոչ եթէ կեղծաւորութեան իրք
են զիջանելն քո, այլ շինութեան և տնօրէնութեան։
Իսկ ապա եթէ հարկաւորես զնա ճաշակել, քակի շի-
նուածն և զքեզ սոգասնէ, մանաւանդ եթէ շինի իսկ
'ի չուտելն. յորժամ զիջանիցիս դու ընդ նմա, ապա
սիրէ զքեզ և չունի զքեզն կարծիս. եթէ յանձնէ ու-
սուցանես զայն, ապա առնուս իշխանութիւն զանտե-
սանելի զսերմն զուգիլ զաւանդութեանն սփռել 'ի միտս

նայ զնոսա ոչ յուսալն միայն, այլ և սաստից խղճի մե-ռաց ուտել ։ Այս ասէ զպատճառանս թէ իւր խիղճ դա-տապարտի, այսու «զի ոչ 'ի հաւատոցն»։ Զի, ասէ, ուրիշ կերակուրն, այլ քանզի 'ի հաւատոց չլինէին խղճն ։ Վասն զի չկարաց հաւատալ թէ սուրբ է, այլ որպէս 'ի ուրիշ ինչ մերձեցաւ ։ Յաղագս այնորիկ եցոյց նոցա և զխնամն՝ թէ որչափ ինչ գործի յորժամ հարկաւորեն, և նոքա չկամիցին ճաշակել, որպէս զի ուրիշ իսկ հա-մարին ։

Այս զի գտանէ այսու մերժեցէ զնոսա 'ի զգուշացու-ցանելոյ զտկարսն՝ ասէ. «Մեղանչեն որ ոչ 'ի հաւատոց են, մեղք են»։ Զի յորժամ չհաւատայ և չէ վստահ թէ սուրբ է, զիարդ ոչ մեղանչիցէ ։ Իսկ արդ զայս ա-մենայն յաղագս յառաջիկայ խրատս է ճառեալ Պաւ-ղոսի, և ոչ եթէ վասն ամենայն իրիք ։ Իսկ դու տես որպիսի փոյթ խնամոց ունի առ 'ի չգայթակղեցուցա-նել զոք, զոր և վերագոյն իսկ ասէր. «Եթէ վասն կե-րակրոյ եղբայրն քո գայթակղի, ոչ ևս ըստ սիրոյ գնացեր»։ Զի եթէ տրտմեցուցանել չէ արժան, ապա ևս առա-ւել գայթակղեցուցանել չէ պարտ. և դարձեալ՝ թէ «Մի վասն կերակրոյ քակեր զգործ այ»։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Զի որք զեկեղեցին հիմն 'ի վեր բրիցեն, զատան և անսուրբ իրս գործեն, ապա մանաւանդ ևս ուեք ոչք զհոգևոր տաճարսն. վասն զի մարդ պարկեշտա-գոյն է քան զեկեղեցի. քանզի ոչ եթէ վասն որմոցն մեռաւ Քրիստոս, այլ յաղագս այսր տաճարաց ։ Իսկ արդ ամենայն ուստեք զգուշասցուք անձանց, որպէս զի մի փոքր մի տացուք կռուան գտանել 'ի մեզ ։ Վասն զի սատանայի նախանձ է մերձակայ ժամանակս, և ամենայն ուստեք բիւր աչս ունել պարտ է, և մի կարծել զայն բաւական 'ի պատասխանատուութիւն՝ զողջախոհութիւնն. քանզի է և է իսկ և ընդ ողջախոհութեանն զատոտալ յոր-ժամ ողջախոհութիւն առանց ներելոյ լինի ։ Այս և հրէայքն իսկ ողջախոհացան, այլ ոչ եթէ ներելոյ արժանի է ողջա-խոհութիւնն այն ։ Իսկ հեթանոսք ողջախոհացան, այլ ունին պատասխանատուութիւն ինչ ։ Յորժամ զայսպիսի ողջա-

թիւն թէ կամեցի, միայն թէ յանձն առնուցու և ոչ ընդ վայր և 'ի զուր իւր համարեսցի ջանք իւր: Զի ոչ եթէ 'ի պաղեստինացւոց աշխարհին արգելեալ փակեալ զճանապարհս փրկութե և կամ յանկեան յաշխարհի ուրեք: Ոչ լուար մարգարէին որ ասէր՝ թէ "Ամենեքեան ծանիցեն զիս 'ի փոքրկանց մինչև 'ի մեծամեծս նոցա": Զասասանես զճշմարտութիւն խրատուն: Այլ արդ որում ներելոյ և թողութեան արժանի գտանիցին յորժամ անսանիցեն զճշմարտութիւնն աւանդութեամբ առածեալ, և չխուզիցեն և ոչ փոյթ և հոգ յանձին ունիցին ուսանել:

Այլ զայս իսկ 'ի վայրենի և 'ի բարբարոսէ ումեք պահանջես, ասէ: Ոչ միայն 'ի վայրենի և 'ի բարբարոսէ, այլ որ քան զնոսայն են բարբարոսագոյնքն են: Ո՞ր վասն, ասէ առս ինձ, յորժամ յերկրաւոր 'ի վարս փոքր մի զլկիցի, ընդդէմ դիտէ պատասխանիս առնել այնմ որ զրկէն, և ընդդէմ ևս կայ յորժամ բանադատիցի յումեքէ, և զամենայն ինչ առնէ և հնարի, որպէս զի մի յումեքէ խարդախեսցի. իսկ 'ի հոգևորն չարկանէ 'ի կիր զայնպիսի խնամատութիւն: Իսկ յորժամ քարի երկիր պագանէ և ած համարի և տօնս կատարէ և ինչս ծախէ և բազում երկիւղ ցուցանէ և չլինի ծոյլ ինչ և ոչ ասէ թէ անպամբոյծ եմ և անմարթուչ, իսկ աստ յորժամ որ սուրբ և ճշմարիտ ած է և պէտք լինին խնդրելոյ, յայնժամ բերես 'ի մէջ զփառամոլութիւնն նորա և զանպամբոյծ զիրսն. քանզի չէ և չէ իսկ այս:

Այլ արդ ասէ. առս ինձ, զո՞րս կարծիցես ազգս և վայրենագոյնս. որ առ Աբրահամուն էին, թէ այժմուքս. յայտ է թէ նոքա: Զորո՞ւմ ժամանակի զիւրին էր գտանել զաստուածպաշտութիւն. յայնժամ, թէ այժմ. կարծի՛ իսկ յայտ է թէ այժմ. վասն զի այժմ յամենեցունց ած անուննն հաստատուն է, և մարգարէքն քարոզեցին և իրքն 'ի գլուխ ելին և հեթանոսականն ամենայն յանդիմանեցան: Իսկ յայնժամ ամենեքին առանց վարդապետութեան էին և մեղքն զօրացեալ տիրէին, ոչ օրէնք կային որ խրատէին, և ոչ մարգարէք և ոչ նշանք և սքանչելիք և ոչ վարդապետութիւնք և ոչ բազմութիւնք գիտնականաց և ոչ այլ ինչ 'ի այնպիսեաց. այլ որպէս 'ի խաւարի ուր ոչ ծագիցէ լոյս, իբ-

րև 'ի մեծին գիշերոյ ձմերանւոյ այնպէս իմն գործէին ամենայն իրք աշխարհիս։ Նոյն սակայն սքանչելի և առաքինի այրն այն, թէպէտ և այնչափ արգելք էին, և զմեծ ծանեաւ և զառաքինութիւնն ճգնեցաւ և զգացումն յիւր նախանձ ածոյր ած, և այն զի ոչ արտաքին իմաստութեանն վարժ և փորձ էր. որպէս արդեօք՝ լինէր որ չև ևս գտեալ էր գիր 'ի վերայ երկրի։ Քանզի Մովսէս չև էր ծնեալ, քանզի յամենայնէ ընծայ եղև այ. նոյնպէս և զմեծ զոյգ ընդ նմին առաջ և զիւրն ընծայեցոյց նմա։ Քանզի և ոչ զայն ունիս ասել թէ և 'ի հօրէն ընկալաւ զբարեպաշտութիւնն Աբրահամ. քանզի և նա կռապաշտ էր, նա և նորին նախնիքն իսկ. և բարբարոս էր և 'ի մէջ բարբարոսաց սնեալ էր, և վարդապետ զոք ոչ ունէր բարեպաշտութեանն և զմեծ ծանոյց իւրոց ամենայն ծննդոցն, և յօրէնսն և 'ի մարգարէսն ես վայելել. և այնչափ ընտիր գտեալ, մինչև ասել անհնարին է։ Այլ ուստի արդեօք էր այս, եթէ ոչ զի զերկրաւոր իրացս չառնէր ինչ կարի փոյթ, այլ և 'ի հոգևորսն մեծա ձգտեցուցանէր զինքն։ Ո՞չինչ և Մելքիսեդեկ. ո՞չ առաքէն և նա յայն ժամանակս եղև և այնչափ պայծառացաւ, մինչև քահանայ Այ անուանեցաւ. քանզի անհնար իսկ է և կարի յոյժ անհնարին՝ որ արթունն է, թէ չլինիցի երբեք երևելի։

Այլ մի այս զձեզ ամբոխեսցէ, այլ գիտասջիք թէ ամենայն ուրեք բարուցն իմաստութեանն պէտք են. և արդ յանձինս մեր հայեսցուք, որով կարիցեմք լինել լաւք։ Այլ մի յայն հաւատոյ պահանջեսցուք, և մի դարձեալ 'ի յոյզ և 'ի խնդիր արկանիցեմք թէ էր վասն զայս անուն եթող և զայն անուն առնջեաց։ Քանզի զայնս գործեմք, զորպիսի ինչ եթէ յանկարծ ծառայ ոք որ. ընդդիմակաց տեառն իցէ և յինքն արկանիցէ զմեծակարգութիւն տեառն իւրոյ և ասիցէ՝ հէքդ և թշուառականդ, պարտ էր նախ հոգալ վասն քո պատժապարտութեանդ, և եթէ որպէս կարասցես հաշտեցուցանել զտէրն ընդ քեզ։ Նոյն զու մատուցեալ հաւատոյ պահանջես որում դու հանդերձեալ ես պատասխանատու գտանել, և զնոյնս զանց առնես որում զպատասխանիս պարտիս տալ։

Այլ արդ զինչ, ասէ, առ հեթանոսս ասիցես. զայս-

պիղծ ձայնս։ Ոչ ես մի միայն առ հեթանոսսն, այլ և զայն դիր 'ի մտի թէ որպէս կարասցես զնա ուղղել։ Վասնզի յորժամ զքո վարսն քննիցէ և յայնմանէ գայթակղեսցի, ապա յայնժամ 'ի մտի կալ եթէ զինչ ասիցես. իսկ եթէ վասն բանից գայթակղեսցի, չպահանջիս ինչ վասն այնորիկ. ապա եթէ 'ի վարուցն քոց խռովեսցի, զվերջին զվտանգն կրելոց ես։ Ոչ յորժամ տեսանիցէ զքեզ վասն արքայութեանն խնամատարեալ և 'ի մերձակայսս հարեալ, յայնժամ ապա հոգայ յորժամ զայսոսիկ տեսանէ, և մեղադրելով ասէ ցքեզ՝ զի եթէ արքայութեանն ցանկացող ես, ընդէ՞ր զանցաւորս չառնես անտես. և կամ եթէ ահաւոր ատենին ակն ունիս, է՞ր վասն զառաւս զգժնդակ զքոս չարհամարհիցես. և կամ թէ անմահութեան յոյս ունիս, հիմ չհամարիս ծաղր զմահ։ Նոյն արդ յորժամ զայս ասիցէ, յայնժամ հոգ 'ի մտի կալ թէ զինչ պատասխանի տանիցես։ Յորժամ տեսանէ զքեզ զի սարսաս և դողաս վասն խռովութեան ընչիցն որ երկնից ակն ունիս, և ուրախ լինիս և բերկրիս ընդ գիւտ մոյ խեցեկէշի և զանձինդ առաջի գնես վասն սակաւ մի արծաթոյ, յայնժամ ապա կալ հոգ 'ի մտի։ Վասնզի այսոքիկ են որ գայթակղեցուցանեն զհեթանոսսն։ Որպէս զի հոգացիս վասն քոյոյ փրկութեան, յայսցանէ տուր պատասխանի, և մի միայն բանիւք, այլ և գործովք. քանզի վասն այնր գործոց ոչ երբէք հայհոյեաց զԱծ, իսկ վասն չար գործոց բազումք ամենայն ուրեք հայհոյեն։

Նոյն արդ զայսոսիկ ուղղեա. ապա թէ ոչ՝ դարձեալ ասէ ցքեզ հեթանոսն, ուստի՞ ուսանիմ թէ զամենայն ինչ հնարաւոր հրամայեաց Ած. քանզի առհաւատչեայ դու քրիստոնեայ ես 'ի նախնեաց, ասէ, և 'ի բարիոք կրօնաւորութեանդ յայդմ սնեալ, և չգործես ինչ այնպիսի իրս։ Նոյն արդ զինչ պատասխանի տայցես. բայց եթէ զայն ասիցես թէ ցուցանեմ քեզ զայլս զի գործեն, զմիայնակեացսն որք երթեալ յանապատսն յափափայեն լեալ դադարեալ կայցեն։ Նոյն ապա չամաչիցես յորժամ քրիստոնեայ դու զքեզ խոստովանեսցիս, և վասն առաքինութեանն առ այլս առաքել զնոսա, որպէս զի ոչ կարասցես ցուցանել յանձինէ զվարս առաքինութե։ Վասնզի և նա քեզ խակոյն պատասխանի ընդդէմ՝ թէ

զինչ հարկ 'ի վերայ կայ իմ գնալ անցանել ընդ լերինս և ընդ ափափայ անապատս. վասն զի ուրեմն չէ հնար 'ի մէջ մարդկան և քաղաքի իմաստասիրել զայնպիսի առաքինութիւն, և բազում ինչ մեղադրութիւն ունի այսպիսի կարգաւորութիւն, և յաղագս այնորիկ թողեալ զշէնս և զքաղաքս՝ յանապատն ապաւինին. Այլ ցոյց ինձ, ասէ, որ կին ունի և որդիս, և ցածութեամբ կեայ և իմաստութեամբ. Այլ արդ զինչ ունիցիմք ասել առ այն. ո՞չ ապաքէն հարկ է զերեսս 'ի վայր արկանել և զամօթ զգենուլ. Քանզի և ոչ ինքն Քրիստոս այսպիսի ինչ հրամայեաց. այլ զինչ, եթէ "Ծագեսցի լոյս ձեր առաջի մարդկան". և ոչ եթէ ընդ լերինս և ընդ անկոխ անապատս. Զայս ասեմ, ոչ եթէ բամբասեմ ինչ զայնոսիկ որք 'ի լերինսն բնակեն, այլ ողբամ զայնոսիկ որք 'ի քաղաքսն կեան. վասն զի զառաքինութիւնն հալածական արարին աստի.

Յաղագս որոյ աղաչեմ զի զայնպիսի զիմաստասիրութիւն և այսր 'ի ներքս ածցուք. որպէս զի և քաղաքք լի լիցին. և յաղագս այսորիկ և զհեթանոսս կարող են ուղղել, և 'ի բիւր գայթակղութեանց կարող են և ըզմեզ հրաժարեցուցանել. Այլ արդ եթէ կամիցիս զնոսա զատել 'ի գայթակղութենէն, և քեզ իսկ վարձուց 'ի հատուցմունս վայելել, զվարս քո յանձինդ քո ուղղեա, և յամենայն կողմանց պայծառ և լուսաւոր կազմեա, որպէս զի տեսցեն զգործս մեր բարիս 'ի մէջ մարդկան և փառաւորեսցեն զհայր մեր որ յերկինս է. Որպէս ապա և մեք մեծ և անճառելի փառացն արժանի լիցուք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք հանդերձ հոգւովն սրբով այժմ և յաւիտեանս. ամէն.

# ՃԱՌ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՕԹՆԵՐՈՐԴ

«Իսկ այնմ որ կարողն է հաստատել զձեզ ըստ աւե-տարանին իմում և ըստ քարոզութեանն Յիսուսի Քրիս-տոսի, ըստ յայտնութեան խորհրդոյն ըստ ժամանա-կացն յաւիտենից լռեցելոյ, և յայտնելոյ այժմիկ ՚ի ձեռն գրոց մարգարէականաց ըստ հրամանի յաւիտենականին Այ ՚ի հնազանդութիւն հաւատոց յամենայն հեթանոսս ծանուցելոյ, միայնոյ իմաստնոյ Այ ՚ի ձեռն Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս. ամէն»:

Միշտ սովորութիւն է երանելւոյն Պաւղոսի յաղօթս և ՚ի փառաբանութիւն կատարել զխրատ մնացորդու-թեանն. քանզի գիտէ թէ չունին ինքն փոքր ինչ շահ, այլ յոյժ մեծ: Զայս ՚ի գթոյ և յերկիւղածութենէ սովոր է առնել. վասն զի ծառայից և որդւոցն վարդա-պետի չէ միայն բանիւք խրատել, այլ և աղօթիւք զնա ՚ի յԱյ զպատերազմակցութիւնն մատուցանել. զոր և աստ իսկ արար նա: Եւ ըստ կարգի իսկ այն էր. «Իսկ այնմ որ կարողն է հաստատել զձեզ, ասէ, նմա փառք յաւիտեանս. ամէն»: Դարձեալ զարչէին իմն ՚ի սկս-բաց անտի, յաղագս այսորիկ առ զօրաւորն չքմէ ըղ-բանն: Զի յորժամ ասասէ, հաստատակաց իմ առնէ զասասն. իսկ այժմ վասն նոցա պաղատանս մատուցա-նէ: Եւ իբրև ասաց՝ եթէ հաստատեսցէ, յարեաց ՚ի սմին՝ եթէ ըստ այնմ օրինակի, ըստ աւետարանին ի-մոյ՝ ասէ, որ յայտ իսկ առնելոյ էր թէ չև ես էին հաս-տատեալք. թէպէտ և կային, սակայն տատանէին և շարժէին:

Ապա զի որպէս արժանի հաւատարմութեան զբանն գործիցէ, ածէ զսոյնս՝ եթէ «Ըստ քարոզութեանն Յիսուսի Քրիստոսի»: այսինքն է՝ թէ զոր նոյն քա-րոզեաց. իսկ ապա եթէ նա ինքն քարոզեաց, ուրեմն յայտ է թէ ոչ մեր ինչ աւանդութիւն է, այլ նորին օրէնք: Եւ իբրև իմաստասիրեաց բարւոք վասն քարո-զութեանն, ապա ցուցանէ թէ բազում երախտեաց և -

բազում պատուոյ է պարգեւն այն։ Այլ նախ յաւետարանչացն կարգէ զայս, յետոյ ասէ և զնա իսկ զոր աւետարանեցին, քանզի և աւետարան իսկ էր առ այնոսիկ որոց ոչն երբեք յառաջ քան զնոսա էր ծանուցեալ։ Զայս ակնարկելով ասելովն՝ թէ "Ըստ յայտնութեան խորհրդոյն,,. որ է մեծ սիրոյ նշանակ՝ խորհրդոյն հաղորդս առնել, որում ոչ ոք յառաջ քան զմեզ եղև. "Ըստ ժամանակացն յաւիտենից լռեցելոյ, և այժմ յայտնելոյ,,. անդուստ 'ի վաղնջուց որ յառաջ սահմանեալ էր, բայց երևեցաւ այժմ։ Որպէս յայտնեցաւ. "Ի ձեռն գրոց մարգարէականաց,,։ Ըստ դարձեալ լուծանէ զերկիւղս ականջացն. Մի՛ զարհուրիր, ասէ, և մի երկնչիր յօրինացն. զի և օրէնքն զնոյնս կամէին. անդուստ 'ի վերուստ իսկ; ասէ, յառաջագոյն զայս գուշակէր։ Իսկ ասա եթէ քննիցես և 'ի խնդիր արկանիցես եթէ ընդէր այժմ յայտնեցաւ, չգործես ինչ լաւութէ իրս՝ զխորհուրդ Այ 'ի զնին արկանել և հաւատոյ պահանջել. զի ոչ եթէ հետաքննիչ պարտ է լինել այսպիսի իրաց, այլ սիրել և գթալ. ուստի և նա իսկ ընթերանէր[1] զայնոսիկ որք զայսպիսի զգալիս ցուցանէին։ Ի նոյնս յարեալ ասէր՝ թէ "Ըստ հրամանի յաւիտենականին Այ 'ի հնազանդութիւն հաւատոց,,։ Հնազանդութեան պէտք են հաւատոց, և ոչ եթէ 'ի բազում քննիչս արկանելոյ. և յորժամ Այ հրամայէ հաւատալ, պարտ է ոչ 'ի խոյզս և 'ի խնդիր արկանել։

Ըստ և այլուստ քաջալերէր զնոսա՝ թէ "Յամենայն հեթանոսս ծանուցելոյ,,։ Ոչ դու միայն, ասէ, այսպէս հաւատաս, այլ տիեզերք ամենայն. ոչ զմարդ ոք, այլ զԱծ ընկալան վարդապետ. որով 'ի նոյնս յարեալ ասէր. "Ի ձեռն Յիսուսի Քրիստոսի,,։ Ոչ ծանուցաւ միայն, այլ և հաստատեցաւ. երկաքեան իւր գործ են։ Թէպէտ և այնպէս յառաջ անծանօթ էր, իսկ այժմ որ կարողն է հաստատել զձեզ 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի։ Քանզի որպէս յառաջն ասացի իսկ՝ ոչ զերկոսեան միայն, այլ և զփառսն եւս 'ի Հայր առնէ. վասն որոյ ասէրն՝ թէ "Միում փառք յաւիտեանս ամէն,,։ Փառաւորէ դարձեալ սքանչացեալ ընդ անհասանելի

1 Յօրինակին գրեալ էր ընթերնէր։

բարիս եմք ,,: Պարտիմք, ասէ, և ոչ եթէ շնորհեմք ինչ. Այլ արդ զինչ պարտիցեմք. ,,Զտկարութիւն անզօ-րացն բառնալ ,,: Տեսանե՞ս որպէս բարձրացոյց զնոսա գովութեամբքն. և ոչ միայն զօրաւորս եցոյց զնոսա, այլ զի և ընդ նոսա եւս կարգեաց, և նոքա հնազանդե-ցան: Այլ ոչ այսչափ միայն, այլ և որ անձնաւորելոյն իսկ նմանայն էր, յորժամ ձգէ ստամբ զնոսա և անհաստատականս առնէ: Դու, ասէ, կարող ես, և զիջանես ընդ նմա և ոչ ինչ վնասիս. այլ այն է վերջին վտանգաւորութիւն եթէ չզիջանես ընդ նմա և համբերես նմա: Այլ չասաց թէ զտկարսն, այլ թէ զտկարութիւն անզօրացն բառ-նալ. առ ի յորդորել ձգէ զնոսա և խոնարհեցուցանէ. որպէս և այլուր ասէ՝ թէ ,,Դուք որ հոգևորքդ էք, հաստատեսջիք զայնպիսիսն ,,: Այլ՞ն զօրաւոր, հաստ եմ զերախտիսն որ առասցն զքեզ այսպիսի. և հաստուցանես յայնժամ յորժամ զտկարութիւն հիւանդացն ողջա-ցուցանես. քանզի և մեք էաք տկարք և անողջք, այլ ի ձեռն շնորհաց եղաք զօրաւորք: Զայս ոչ եթէ յայսմ պարտիմք միայն առնել, այլ և յայլ հիւանդութիւնս. յորպիսի ինչ, եթէ ոք յոյժ ցասկոտ իցէ և կամ թըշ-նամանող իցէ և կամ այլ ինչ յայսպիսեաց առատ յո-ռութիւն ունիցի, տար նմա և համբերեա:

Այլ զիա՞րդ լինիցի այս, ասէ. լուր այնմ որ լուս կար-գին է: Զի յորժամ ասացն՝ թէ պարտիմք բառնալ, ի նոյնս յարեաց՝ եթէ ,,Մի անձանց հաճոյ լինիցիմք, այլ իւրաքանչիւր ոք ի մէնջ ընկերին հաճոյ լինիցի ի բարիս առ ի շինութիւն ,,: Այլ զոր ասէն այսպիսի ինչ է. զօրաւո՞ր ես, ասէ, առցէ զփորձ քոյոյ ուժոյդ տկարն. նա ուսցի զքո ոյժդ. նմա հաճոյ լեր: Այլ չասաց լոկ թէ հաճոյ լեր, այլ թէ ի բարիս. որպէս զի մի ասիցէ որ կատարեալն է՝ թէ ահաւասիկ ի բարի ձգեմ, յաղագս այնորիկ զայն յաւել՝ թէ առ ի շինութիւն: Որպէս զի թէպէտ ի հարստութեան իցես կամ ի մեծութեան, մի քեզ՝ այլ աղքատին և կարօտելոյն լեր հաճոյ. այս-պէս ի ճշմարիտ ի փառսն վայելես և բազում օգուտ գործես: Քանզի կենցաղոյս այսորիկ փառք ինքեանն ան-դէն խափանեսցին, իսկ հոգևորականքն կայ և մնայ մշտըն-ջենաւոր եթէ առ ի շինուածս գործիցես զայն: Յաղագս այսորիկ յանձնեցուցանէ իսկ առ հասարակ պահանջէ

զայս․ և ոչ այս անուն և այն անուն, այլ իւրաքանչիւր որ 'ի մէնջ ։

Այլ արդ քանզի մեծամեծ հրամանս ետ և զանձանց դիտաւորութեան հրամայեաց զիջուցանել առ 'ի յաղձելոյ զայլոց զանկարութիւնն, դարձեալ զՔրիստոս 'ի մէջ ածէ ասելով․ "Քանզի ոչ եթէ Քրիստոս, ասէ, անձին ինչ հաճոյ եղև,,։ Զոր միշտ իսկ առնէ․ զի և յորժամ վասն աղքատութեան ճառէր, զնա բերէր 'ի մէջ․ "Գիտէք, ասէ, զշնորհսն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, զի վասն մեր աղքատացաւ որ մեծատունն էր,,․ և յորժամ 'ի սէրն յորդորէր, 'ի նմանէն արար սկիզբն․ "Որպէս Քրիստոս սիրեաց զմեզ,, ասէ․ և դարձեալ յորժամ ամօթոյ և նախատանաց հրամայէր համբերել և վշտաց և նեղութեանց, զնա ածանէր խորհրդակից և 'ի նա ապաւինէր ասելով՝ թէ "Փոխանակ ուրախութեանն որ նմա առաջի կայր, համբերեաց խաչին, զամօթ արհամարհեաց,,։ Զայսս և աստ ցուցանէ՝ թէ նոյա է գործեալ զայս, և զմարգարէն՝ թէ անդուստ 'ի վերուստ գոչէր, յաղագս որոյ յարեաց 'ի սոյնս․ ասէ․ "Որպէս և գրեալ է՝ թէ նախատինք նախատչաց քոց անկան 'ի վերայ իմ,,։ Այլ արդ զինչ "Ոչ եղև անձին հաճոյ,,։ Մարթ էր նմա չկրել զոր ինչ կրեաց, եթէ կամեցեալ էր լոկ զանձին գիտել․ այլ չկամեցաւ զայն, այլ զմերն գիտեաց և զիւրն անտես արար։

Այլ էր վասն չասաց՝ թէ զանձն ունայնացոյց։ Քանզի ոչ եթէ զայն միայն կամի ցուցանել եթէ մարդ եղև, այլ թէ և թշնամանեցաւ և բազում չար կարծիս ընկալաւ 'ի բազմաց, զի և տկար համարեցան զնա․ "Եթէ որդի ես, ասեն, իջ՝ էջ 'ի խաչէդ,,․ և եթէ "Զայլս ապրեցոյց, զանձն չկարիցէ փրկել,,։ Վասն որոյ նորա յիշեաց զոր նմա վայելուչն էր վասն մերձաւորաց իւրոց․ և եցոյց թէ և առաւել իմն է քան զոր պատմեացն․ քանզի ոչ միայն զՔրիստոս եցոյց թշնամանեալ, այլ և զՀայր․ "Նախատինք նախատչաց քոց անկան 'ի վերայ իմ,,։ Այլ զոր ասէն այսպիսի ինչ է, թէ ոչ նոր ինչ և ընդ վայր իրք գործեցան․ այլ թէ որ զհինն ընթեռնուլին և զնա նախատէին, նոքին իսկ և ընդդէմ որդւոյն մոլեգնեցան։

Զայս ասէ, որպէս զի նմին նմանողք լիցուք․ այսով

և օծանէր իսկ զայնոսիկ որք 'ի փորձութիւնսն ընկղմիցին՝ ասելով. “Այլ որ միանգամ յառաջ գրեցաւ, ասէ, 'ի մեր վարդապետութիւն գրեցաւ, որպէս զի համբերութեամբ և մխիթարութեամբ գրոց զյոյսն ընկալցուք”. այսինքն է թէ մի անկցուք: Վասն զի պէսպէս ջանք և աշխատութիւնք էին ներքուստ և արտաքուստ, որպէս զի զօրացեալք մխիթարութեամբ գրոց զհամբերութիւն կամիցիմք ցուցանել. և յորժամ 'ի նմին կեցեմք, ապա կարեմք ունել յոյսն. քանզի այսոքիկ են երկոցունց իրացն կազմութիւնք, համբերութիւնն յուսոյն և յոյսն համբերութեանն. որպէս զի երկոքեան 'ի գրոց լինին:

Ապա դարձեալ յաղօթս շրջէ զբանն ասելով՝ թէ “Աստուած համբերութեան և մխիթարութեան տացէ ձեզ զնոյն խորհել առ միմեանս ըստ Յիսուսի Քրիստոսի”: Եւ քանզի սորա զիւրն և օրինակ 'ի Քրիստոսէ եբեր և 'ի գրոց զվկայութիւնն յաւել, և եցոյց եթէ յետ գրոցն նա ևս տայ նոցա զհամբերութիւնն, վասն որոյ և ասէրն՝ թէ “Աստուած համբերութեան և մխիթարութեան տացէ ձեզ զնոյն խորհել ընդ միմեանս ըստ Յսի Քսի”: Քանզի այս իսկ է սէր՝ որ և այլումն այսպէս խորհեսցի որպէս և անձինն: Եւ դարձեալ ցուցանէ թէ ոչ դոյզն ինչ սէր պահանջէ 'ի մէնջ, այլ զայն որ Քրիստոսին հաճոյ է, զոր և այլուր և ամենայն ուրեք առնէ. վասն զի է և այլ սէր: Եւ արդ զինչ շահ 'ի միաբանութենէն լինի. “Որպէս զի, ասէ, միաբանութեամբ 'ի մի բերան փառաւոր առնիցէք զԱծ և զՀայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի”: Եւ չասաց լոկ թէ միով բերանով, այլ թէ միաշունչ հրամայեաց լինել: Տեսանես որպէս միաւորեաց զամենայն մարմինն և յինչ կատարեաց զբանն դարձեալ 'ի փառաբանութիւն նորա. ուստի և յորդորէ իսկ 'ի միաբանութիւն:

Ապա դարձեալ զխրատուէն բուռն հարկանէ: “Վասն որոյ ընկալարուք զմիմեանս, ասէ, որպէս և Քրիստոս ընկալաւ զձեզ 'ի փառս Այ”: Դարձեալ օրինակ անդուստ 'ի վերուստ եբեր և զանբաւ զօգուտն եցոյց: Մանաւանդ եթէ զԱծ իսկ այս փառաւորէ, յորժամ զայս գործիցեմք. թէպէտ և ցաւիցեմք ինչ յումեքէ յորժամ հակառակութիւն յեղյեղօրէն լինիցի, և զմտաւ

ածիցես թէ լուծանես զբարկութիւնն 'ի փառաւորել զտէրն քո, զի թէպէտ և վասն եղբօրն չառնիցես, գոնէ վասն այսորիկ հաստատեաց. մանաւանդ եթէ նախ իսկ վասն այսորիկ: Վասնզի և ճնչէ իսկ Քրիստոս 'ի վեր և 'ի վայր զնոյն յեղյեղու, և ընդ հօր ձայնաւ խօսէր՝ թէ "Յայսմ գիտասցեն ամենեքեան թէ դու առաքեցեր զիս, եթէ լինիցին սոքա մի":

## ՅՈՐԴՈՐԱԿ

Այս արդ հաւանեսցուք այժմ նմա և միաւորեսցուք ընդ միմեանս. քանզի զայն ոչ եթէ զանկարացն միայն ասաց, այլ զամենեսին իսկ կամի 'ի սոյնս յորդորել: Ոչ թէպէտ և կամիցի ոք ձեռքել և որոշել, դու մի ձեռքիր և որոշիր 'ի նմանէ, և մի պցուրտ զբանսն զայնոսիկ բարբառիր, եթէ սիրէ ոք զիս՝ սիրեմ, և եթէ ոչ ոք սիրիցէ՝ թէպէտ և աջոյ ակն իմ իցէ՝ 'ի բաց խլեմ զնա: Սատանայական բանք են այսոքիկ և մաքսաւորաց արժանի, մանաւանդ եթէ հեթանոսի կարճմտութիւն է: Իսկ դու որ 'ի մեծագոյն կարգաւորութիւնն կոչեցար և 'ի յերկինս գրեցար, մեծագոյն ես պարտական ես օրինացն: Այս արդ մի առեր այնպիսի բանս: այլ յորժամ չկամիցին զքեզ սիրել, յայնժամ ցուցջիր զյաճախագոյն սէրն առ նա, որպէս զի կարիցես զնա ընդ քեզ միաւորել: Եղբայր քո է. և անդամք յորժամ 'ի հարկէ իմեքէ կամիցի ձեռքել 'ի մարմնոյ, զամենայն ինչ հնարիմք որով կարիցեմք զնա անդրէն միաւորել 'ի մարմինն, և առաւել ևս խնամս տանիմք յայնժամ. սոյնպէս և առաւել վարձք յայնժամ են յորժամ որք ոչն կամիցին սիրել՝ և 'ի մեզ ձգեմք զնոսա: Ոչ թէ 'ի ճաշ և յընթրիս զայնոսիկ հրամայեաց կոչել որք ոչն կարասցեն փոխարէնս մեզ հատուցանել, որպէս զի առաւելուցուն մեզ վարձք փոխարինացն, ապա և առաւել և 'ի սէր անդր զսոյնս պարտիմք գործել: Վասնզի որ սիրեցաւն 'ի քէն և դարձեալ սիրեաց զքեզ, խակոյն առժամայն հատոյց զերախտիսն քո. իսկ որ սիրէն և չսիրիցի յումեքէ, այնպիսիսն ընդ նոքա զԱծ սոսացաւ իւր պարտապան. և առանց այսորիկ իսկ յորժամ սիրէն՝ չցուցանէ այնպիսի ինչ փոյթ առ քեզ. իսկ յորժամ

չտիրէն՝ յայնժամ է կարօտ քում ընդունելութեանդ ։ Այլ արդ մի՛ ասեր զպատճառս փութոյն պատճառս ծուլութեան, և մի՛ ասեր վասն զի ախտաւոր է՝ յաղագս այնորիկ անփոյթ առնեմ. քանզի ախտ և հիւանդութիւն մեծ՝ ցանկութիւնն սորայն է, այլ դու ջեռո փոխա զլուծութիւնն ։

Այլ արդ զի՞նչ, ասէ, եթէ ՚ի նմին կայցէ մնասցէ, խնձ զայդ հրամայես առնել։ Ո՛չ, ասէ, քանզի որչափ նա ՚ի նոյն դառնայ, ևս առաւել քեզ զհատուցումն գործես. մանաւանդ եթէ այնու խակ եղեր նմանող Քրիստոսի։ Զայս և ծանօթութիւն աշակերտացն ՚ի միմեանց սիրոյն եդ. «Յայսմ ծանիցեն ամենեքեան, ասէ, թէ իմ աշակերտք էք եթէ զմիմեանս սիրիցէք»։ Զի եթէ այս այսպէս է, ապա որչափ ևս[1] որ զատելիս սիրէ։ Զի և տէրն քո զատելիս իւր սիրէր և աղաչէր, և որչափ ինչ տկարք և հիւանդք էին՝ այնչափ յաճախեր զդարմանն տանել, և հանապազ գոչէր ասելով՝ թէ չունին ինչ պէտս ողջք բժշկի, այլ նոքա որ յախտին կան. նա և սեղանոյ ևս յանձն առնոյր հաղորդ լինել մաքսաւորաց և մեղաւորաց. և որչափ ինչ անարգէին զնա բազմութիւնք Հրէիցն՝ ևս քան զևս ցուցանէր առ նոսա զիւր զպատիւն և զխնամսն, մանաւանդ եթէ ևս առաւել։ Այլ արդ սմին նախանձաւոր լեր և դու. քանզի չէ փոքր ուղղութիւնս այս, վասն զի առանց սորա եթէ և մարտիրոսանայ ոք, չկարէ հաճոյ լինել նմա, որպէս և Պաւղոսն ասէր։

Այլ արդ մի՛ ասեր եթէ ատիմ ՚ի նմանէն և յաղագս այնորիկ չսիրեմ։ Վասն այնորիկ խակ ևս առաւել պարտէիր սիրել։ Ո՛չ և չէ խակ հնար ատել զսիրելի զոք, թէպէտ և գազան ոք իցէ, բայց եթէ զիւր զսիրելիսն սիրիցէ։ Զայս և հեթանոսք և մաքսաւորք առնեն։ Եթէ իւրաքանչիւր ոք զիւր բարեկամս սիրիցէ, խակ որ յետ ատելութեանն սիրիցէ՝ որպիսի՞ ինչ սէր չցուցանէ առ նմա։ Այլ արդ զայնս ցուցանիցեմք, և մի՛ դադարեսցուք երբէք ՚ի պատմելոյ թէ որչափ ատեաս զնա, եւ ևս առաւել սիրեմ զքեզ։ Այս այնուհետև զամե-

1 Յօրինակին պակասէր որչափ ևս. և զկնի Զի և տէրն քո զատելիս իւր՝ մի էր յաւելեալ ՚ի յանձին։

նոյն իսկ զհակառակութիւնն նորա և զծուլութիւնն՝ ի բաց հալածես. քանզի յոյժ 'ի խղճխայթմանէ լինի ախտաւոր. այլ զերկաքանչիւրոցն զսիրոյն զզօրութիւն սովոր է ուղղել խրատով ջերմութեամբն։

Զատուսանեմս զայնոսիկ որք յաղտեղի 'ի սէրսն հարեալ ջեռեալքն են, զիարդ զզեղմն ապտակակածս անենն և ընդ երեսս թքանեն, ձաղ և նախատ ամենեցուն կացուցանեն և բիւր չարիս կրեն յայնպիսի պոռնկաց կանանց։ Այլ արդ զինչ, միթէ կարա՞ց լուծանել զայնպիսի սէր Թշնամանացն զօրութիւն. և ոչ երբէք, մանաւանդ եթէ և՛ առաւել բորբոքի։ Այս և այն իսկ են մեծ չարիք, զի ընդ որում պոռնկին և այնպէս նախատ լինի՝ յանարգ և յանշան աղջկէ է. իսկ որք զայն աղէտ 'ի նոցանէն կրեն, Թերեւս և աղաղաք ամենք իցեն և պայծառ նախնիս ունիցին և այլ ևս ինչ երևելի մեծութիւն, բայց ոչ ինչ յայսպիսեացս ելցեն զնոսա և հրաժարեցոյց 'ի սիրոյն։

Այլ արդ համոզեցե՞մք և կարանացուցե՞մք յարժամ անտանիցեմք զի սատանայի և դիւաց սէրն այնչափ զօրութիւն ունի, մինչև որ ընդ յոյ սէրն է՝ չկարացաք այնպիսի ջերմութիւն ցուցանել։ Զիմանամ Թէ այս զէն մեծ է հակառակ Թշնամւոյն. համեմ զմտաւ զի անցեալ մերձ կայր դեռն և կամէր զառեցեալն յինքն յափշտակել և Ճեղքել զանդամն Քրիստոսի, և դու զանց առնես զնովաւ և յաղԹութեանն մասն լինիս։ Տա՞նզի եղբայրն կայր իսկ 'ի միջի մարտին, Թեպէտ և յաղԹէ՝ դու ընդ նմին պսակիս. ապա եԹէ անփոյԹ առնես և ծուլանայցես, առանց պսակելոյ որոշիս։ Այլ արդ դադարեա յայդպիսի սատանայական բանս բարբառելոյ զոր առես՝ Թէպէտ և աջ ակնս իցէ որ առիցէն զիս, խլեմ ընկենում։ Այլ արդ զինչ ինչ քան զայսպիսի բանս վատԹար և յետին կայցէ. նա և զոգւոցն իսկ բարեպաշտութիւնն նշաւակեալ խայտառակեն բազումք, որ քան որ զինչ չկայ դժնդակ այլ ամբարշտութիւն։

Սոյին վասն և ես հեծեմ և յոգւոց հանեմ, զի որ ինչ չարեացն է՝ զայն առաքինութիւն վարկանիք, և զոր պարտն էր արհամարհել և անտես առնել՝ զայն պայծառ և երևելի կարծէք։ Որ մեծ իսկ որոգայթ է սատանայի՝ զբարիոք զփառսն մատուցանել չարեացն, ս-

րով զառնալն իսկ անհնար է այնուհետեւ։ Նա եւ ես իսկ բազում անգամ լուայ յականց՝ եթէ որք միանգամ առեալ զմեղ, մի՛ մերձենայք առ նոսա։ Այլ զիարդ տէրն քո սովորմբք հրճուէր եւ զուարճանայր։ Բանիցս անգամ ՚ի բաց արացաւ ՚ի նմանէ. եւ սակայն նա ոչ երբէք դադարէր ՚ի հետս ընթանալոյ։ Այլ արդ մի ասեր՝ եթէ չկարեմ մերձենալ յառեալն. այլ ասա ոչ կարեմ ազատել զանգամնիչյան իմ։ Այս բանք Քրիստոսի աշակերտաց են, իսկ միւսն սատանայի. սա լուսաւոր յարինէ եւ փառաւոր գործէ, իսկ միւսն անարգս եւ անվայելուչս, այսպէս կատականաց։ Զսան այսորիկ սքանչանամք ընդ Մովսէս, զի յորժամ Տէր ասացնա "Թող զիս եւ բարկացեալ ջնջեցից զդոսա յերկրէ", եւ նա չկարաց անփոյթ առնել զնոսա որք բազում անգամ անարգեցին զնա. այլ ասէր. "Եթէ թողուս դոցա զմեղս՝ թող, ապա թէ ոչ՝ եւ զիս ջնջեա". քանզի այս բարեկամ էր եւ նմանող։ Իսկ մեք որով պատկառել պարտիմք, այնու պերճանամք։ Ասէ՝ մի ինչ ճառեր զգաեհիկ եւ զխոտան առնէ որ բիւր անգամ յամենեցունց ճաղեալ է։ Զայս քեզ ատելութիւնն ուսուցանէ. ապա եթէ դէպ լիցի յայլոց ասել քեզ թէ մի անարգեր զպատկեր այդ, իսկոյն ընթացանաս եւ ընկերանես եւ ծիծաղիս զգանիւքն նորա. եւ որով պարտն էր ամաչել, զայն քեզ բերկրանս համարիս։

Այլ արդ ասէ սա ինձ, քանահեւս զայր հաւատացեալ. իսկ Քրիստոս եւ ոչ զանհաւատսն չարհամարհեաց. եւ զինչ ասեմ թէ չարհամարհեաց, այլ եւ այնպէս սիրեաց՝ մինչեւ անվայելուչք եւ զազրատեսն էաք, մինչեւ մեռաւ վասն մեր։ Այլ արդ յորժամ նա այնչափ սիրեաց զմեզ, եւ այն զի այնպիսիք ոմանք էաք, իսկ դու յորժամ գեղեցկացեալն եւ զարմանալիքս եղաք՝ քանահեւս զայնու որ Քրիստոսի զաւն է, որ տէրունական մարմինն եղեւ։ Զիմանամ զինչ բարբառիցիս եւ չգտանեմ զինչ յանդգնիցիս. գլուխ ունի զՔրիստոս եւ սեղան եւ պատմուճան եւ կեանս եւ լոյս, եւ ամենայն ինչ նա է նորա, եւ դու յանդգնիս ազատել զնա. եւ ոչ զնա միայն, այլ եւ բիւրս եւս ընդ նմա։ Հանդարտեա, այր դու, եւ դադարեա ՚ի մոլորութենէդ եւ ՚ի միա առ. զեղխայրն, եւ ունիր եթէ ամբարտաւանութեան եւ սատանայական

բանք են զոր դու առնես: Նմանապէս եթէ զսոցին հակառակն գործես և ասա. Թէպէտ և բիւր անգամ քամահես զիս, և ես ոչ աղարտեմ զնա: Այսպէս արա և զերկրայինն շահիցես և փառօքն իմ վարեսցիս և հանդերձելոյ բարութեանցն արժանաւոր գտանիցես: Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք Հօր հանդերձ Հոգւովն սրբով այժմ և յաւիտեանս. ամէն:

## ՃԱՌ ՔՍԱՆԵՐՈՐԴ ՈՒԹԵՐՈՐԴ

“Ասեմ եթէ Յիսուսի Քրիստոսի սպասաւոր լինել թլփատութեանն՝ վասն ճշմարտութեանն Այ էր առ 'ի հաստատել զաւետիս հարցն„:

Դարձեալ վասն Քրիստոսի խնամոցն խօսի ընդ մեզ, զի դեռ ևս տակաւին զնմին ձայնէ բուռն հարեալ ունի, և ցուցանէ թէ որչափ ինչ գործեաց յաղագս մեր, և զի չեղեւ անձին հաճոյ: Ընդ այսմ և զայն կամի՝ թէ պարտական են որք 'ի հեթանոսացն են՝ Այ. և եթէ պարտականք են, ապա հարկ է տանել այնոցիկ որք 'ի Հրէիցն էին: Քանզի յոյժ զկծեցոյց զնոսա, ապա զի մի՛ և սոքա 'ի մեծամտութիւն եկեսցեն, այսու զիջուցանէ զհպարտութիւն նոցա. վասն զի նոքա 'ի հարցն աւետեաց ունէին զպարտութիւնն. իսկ որք 'ի հեթանոսացն են, միայն առ ողորմութեան և մարդասիրութեանն Այ. վասն որոյ և ասէրն՝ եթէ “Հեթանոսք վասն ողորմութեան փառաւորեն զԱծ„:

Նաև զի և ս յայտնապէս ասացեալքն լինիցին, զայն զբանս դարձեալ աղաչեմ լսել, որպէս զի ուսանել կարասցեն թէ զինչ է՝ վասն ճշմարտութեանն Այ լինել Քրիստոսի սպասաւոր թլփատութեանն առ 'ի հաստատել զաւետիս հարցն: Նաև արդ զինչ իցէ զոր ասիցէն: Աւետիքն որ առ Աբրահամ ասացան՝ թէ “Քեզ տաց զերկիրն. և զաւակի քում„. և եթէ “Ի զաւակի քում օրհնեսցին ամենայն ազգք„: Այլ պատմա-

պտուղք տանջանաց գտան յայնժամ յետ այնորիկ՝ ամենեքին որք 'ի զաւակէն Աբրահամու էին ։ Վասն զի օրէնք նոցա զբարկութիւն գործէին յորժամ յանցանէին, յաղագս այնորիկ և 'ի հարցն աւետեաց զատեալ մերժեցան ։ Ապա եկն որդին, եղև գործակից հօրն, որպէս զի աւետիքն այն ճշմարտիւ երևեսցին և 'ի գլուխ ելանիցեն, զամենայն իսկ զօրէնսն կատարեաց, որով և թլփատեցաւն. այլ և խաչիւն ևս 'ի բաց ջընջեաց զանէծսն որ 'ի յանցուածոց անտի էին, և չետ աւետեացն անկանել 'ի գետնի ։ Այլ արդ յորժամ ասիցէ՝ թէ “սպասաւոր թլփատութեանն„, զայն ասէ՝ թէ եկն և զամենայն որ ինչ ըստ աւետեացն էր՝ ելից. թըլփատեցաւ և եղև զաւակ Աբրահամու, և զանէծսն ելոյծ, և զԱյ զբարկութիւնն ցածոյց, և պիտանիս արար զայնոսիկ՝ որք հանդերձեալն էին ընդունել զաւետիսն, և զամենայն զընդդիմակացութիւնն միանգամայն մերժեաց. որպէս զի մի ասասցեն նոքա մեղադրութեամբ եթէ էր վասն Քրիստոս թլփատէր և զամենայն ըստ օրինացն պահէր ։ Եւ զի հաստատեսցէ զայսպիսի օրէնս՝ կրեաց զայս, այլ զի իսպառ լուծցէ զնա և հրաժարեցուսցէ զքեզ 'ի նորին անիծիցն, և տարապարտուց ազատեսցէ զքեզ 'ի նորին իշխանութենէն ։ Այլ քանզի դու անցեր զօրինօքն, յաղագս այնորիկ ինքն էառ. ոչ եթէ դու կատարեցեր, այլ զի 'ի քեզ զաւետիս հարցն հաստատեսցէ. վասն զի ոչ զօրէիր զօրինացն զկամսն առնել, զի ցուցանէին զքեզ օրէնքն ընդդիմակաց իւրեանց, միանգամայն և ժառանգութեանն չլինէին արժանի. որպէս զի և դու շնորհօք ապրեսցիս, քանզի արտաքս անկեալ էիր յայնժամ ։ Այլ արդ մի կար ընդդէմ և մի հակառակիր ինչ 'ի զուր յաղագս օրինացն որ զքեզ արտաքս ընկեցին յաւետեացն, եթէ չէր կրեալ զամենայն վասն քո Քրիստոսի ։ Այլ արդ համբերեաց այնմ ամենայնի, ոչ զի դու արժանի ինչ էիր փրկութեան, այլ զի զԱծ ճշմարիտ ցուցցէ ։

Ապա զի մի այսու յամբարտաւանութիւն ինչ եկեսցեն որք 'ի հեթանոսացն էին, ասէ. “Հեթանոսք վասն ողորմութեան փառաւոր առնեն զԱծ„ ։ Այլ զոր ասէն այսպիսի ինչ է, թէ որք 'ի Հրէիցն էին՝ գոնէ զաւետիսն ունէին. իսկ դու և ոչ զայն անգամ, այլ մարդա֊

սիրութեամբն միայն ապրեցար. մանաւանդ թէ և նոցա ինչ աւելի չվճարէր յաւետարանն, եթէ չէր Քրիստոսի եկեալ։ Բայց ապաքէն խառնէ զնոսա ընդ միմեանս և զուգէ. և յիշէ զաւետարանն, որպէս զի մի կատարեալքն 'ի վերայ տկարացն յանդգնիցեն։ Եւ վասն նորա ասէ՝ թէ ողորմութեամբ միայն ապրեցան, վասն որոյ և յիրաւի իսկ պարտին փառաւորել զԱծ։ Եւ փառք Այ՝ մեր մերձաւորութիւնն և միաւորութիւնն և միահամուռ գոհութիւնն և բառնալ զտկարութիւն տկարացն և չառնել անտես զանջատեալ անդամն 'ի մէնջ։

Այս և զվկայութիւնն բերէ 'ի մէջ, որով ցուցանէ թէ պարտ է միաւորել այնոցիկ որք 'ի Հրէից են ընդ այնոսիկ որք 'ի հեթանոսաց էին. այսպէս ասէ, թէ “Որպէս գրեալ է. վասն այսորիկ խոստովան եղէց քեզ 'ի հեթանոսս Տէր, և անուան քում սաղմոս ասացից։ Եւ դարձեալ թէ ուրախ լերուք հեթանոսք ընդ ժողովրդեան նորա։ Եւ այլուր՝ թէ օրհնեցէք զտէր, ամենայն հեթանոսք, և գովեցէք զնա ամենայն ժողովուրդք։ Եւ եթէ՝ եղիցի արմատն Յեսսեայ և որ յառնելոցն է իշխան հեթանոսաց՝ 'ի նա հեթանոսք յուսասցին”։ Եւ արդ զայս ամենայն 'ի մէջ եբեր, զի ցուցցէ՝ թէ պարտ է միաւորել ընդ միմեանս և փառաւորել զԱծ. միանգամայն և որք 'ի Հրէից էին՝ ցածուցանէ, զի մի ինչ յարձակեսցին 'ի նոսա, զմարգարէսն ցուցանէ թէ յառաջագոյն կոչեցին զնոսա. և որք 'ի հեթանոսաց էին, դարձեալ զիջուցանէ յիշեցուցանելովն թէ աւելի պարտական են շնորհացն։

Այս դարձեալ յաղօթս փակէ զբանն ասելով՝ թէ “Աստուած յուսոյ լի արասցէ զձեզ ամենայն ուրախութեամբ և խաղաղութեամբ առ 'ի հաւատալ յառաւել յոյսն զօրութեամբ հոգւոյն սրբոյ”։ Այսինքն է թէ զերծայք 'ի վհատութենէն որ առ միմեանս էր, և ոչ երբէք ծանրացարուք 'ի վհատութեանդ. այս է զոր ասէն՝ յառաւել յոյսն։ Քանզի ամենայն բարութեց պատճառք նա է։ Եւ այն հոգւոյն սրբոյ է. և ոչ թէ լոկ 'ի հոգւոյն, այլ և մեք պարտիմք 'ի ներքս ընծայ լինել։ Վասն այնորիկ ասաց եթէ “Հաւատայք”. կարէք լնուլ խնդութեամբ, թէ հաւատայք և յուսայք։ Եւ չասաց եթէ յուսայք, այլ թէ յառաւել յոյսն.

որպէս զի մի միայն սփոփանս ինչ գտանիցեն դժպատեհութեանցն, այլ խնդութիւն ունել 'ի ձեռն տեսանել հաւատոցն և յուսոյն։ Նոյնպէս ապա և զհոգին 'ի մեզ կարեմք ձգել, ապա և նա եկեալ զձմ ամբողջ պահէ։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Ոչ զոր օրինակ կենդանութիւնս մեր կերակուրս ունի և զմարմնոյ կենդանութիւն անօրինէ, այսպէս թէ ունիմք ինչ բարութիւնս, զհոգին աղաչեմք և նա պահէ. զի եթէ զհոգին ունիմք, ապա և գործս բարիս ունիմք։ Նոյնպէս և որ հակառակն սմին է, զի եթէ գործս չունիմք, հոգին սուրբ մեկուսի կայ 'ի մէնջ և հրաժարէ. զի եթէ 'ի հոգւոյն թափուր գտանիմք, և գործովք կազացեալ լինիմք. ապա յորժամ սա հրաժարէ 'ի մէնջ, պիղծ հոգին գայ։ Եւ յայտ 'ի Սաւուղայ է. զի թէպէտ և չխնդրէր զմեզ այնպէս որպէս զնայն, այլ ևս տարագ հեղձուցանէ 'ի ձեռն չար գործոց։ Եւ արդ պէտք են քնարին Դաւթայ, որպէս զի նուագիցեմք հոգւոց մերոց զծածայրն զնուագն և բերանով և բարի գործովք։ Եւ եթէ զմինն միայն առնիցեմք և լոկ զնուագն լսիցեմք, որ զայնպիսին երգէր՝ և գործովք հակառակ նմին գտանիմք որպէս և նայն յայնժամ, ապա 'ի դատապարտութիւն մեզ լինի դեղ բժշկութեանն, և ևս վայրենագոյնս մոլեգնիմք քան զնա։ Քանզի մինչև լուեալ էր մեր զերգն՝ զարհուրէր չար դևն՝ թէ գուցէ յորժամ լսիցեն յուղղութիւն գայցեն. իսկ ապա և յորժամ յետ լսելոյն սոյնպիսիք գտանիմք, բառնայ 'ի նմանէն և այն երկիւղն, և այնուհետև ևս դառնագոյն լինի ընդդէմ մեր։ Եւ արդ սաղմոսեսցուք երգովք հոգևորօք 'ի ձեռն բարի գործոց, որպէս զի որ քան զդև դժնդակն է մեղքն՝ կարիցեմք արտաքս հանել 'ի մտաց։ Վասն զի դև ոչ կարէ ամենևին վնասեցուցանել զմեզ յերկնից, այլ է ուրեք զի և օգուտ ևս գտանի այնոցիկ որք արթունք են. իսկ մեղք բովանդակին իսկ հանեն յարքայութենէն կամօք մարդոյն։ Դև իսկ է մոլորութիւնս սատանի. վասն այնորիկ և զորս ողորմածն ամենայն, չկամին ճանաչել։

Եւ արդ երգեսցուք նուագս այնպիսի հոգւոյն որ ան-

կեալ զնի, և յայլմէ 'ի գրոց և 'ի նմին իսկ 'ի Դաւթայ: Նոյն արդ սաղմոսեսցէ բերանն և խրատեսցին մտաքըն: Քանզի չեն և այսոքիկ փոքունք. քանզի յորժամ խրատիցեմք զլեզուն սաղմոս ասել, ապա ամաչէ հոգին յորժամ այսպիսի երգ մերձենայ 'ի նա հակառակս ինչ խորհել նմին: Նոյն ոչ եթէ զայս միայն պտղաբերեմք, այլ և են աւելի ինն որ մեզ բարին և օգուտն է. քանզի և վասն մերձակայիցս և վասն հանդերձելոցն զքեզ հմուտ առնէ, և վասն երևելեացս և վասն աներևոյթ արարածոցն: Որ թէպէտ և յաղագս երկնից կամիցիս նախ ուսանել, այնպէս կայցէ մնայցէ. թէ փոփոխումն ինչ ընդունի յայտնապէս պատասխանի առնէ քեզ և ասէ՝ թէ երկինք իբրև զհանդերձս հնասցին, և իբրև զվերարկուս ծալէ զնոսա ած և փոխէ: Նոյն եթէ զձևոյն և զկերպարանացն կամիցիս լսել, ունիս դարձեալ և զայն ես լսել՝ “Որ ձգեաց զերկինս որպէս զխորան”, ասէ: Նաև եթէ զվերինն ոչուցէն նորա կամիցիս 'ի միտ առնուլ, առնէ քեզ դարձեալ պատասխանի՝ թէ “Հաստատեր 'ի վերայ ջուրց զվերնայարկս նորա”: Նոյն ոչ եթէ յայսմ ինչ կայ մնայ, այլ և զլայնութենէ նորա և զբարձրութենէ քեզ ճառեալ պատմէ, և ցուցանէ թէ զորդ չափով երկոքեան են. “Որպէս հեռի են, ասէ, արևելք յարևմտից, այնչափ հեռի արար 'ի մէնջ զանօրէնութիւնս մեր. և ըստ բարձրութեան երկնից յերկրէ՝ այնպէս զօրացոյց տէր զողորմութիւնս իւր 'ի վերայ երկիւղածաց իւրոց”: Թէպէտ և զհիմունս երկրի 'ի խոյզ և 'ի խնդիր արկանիցես, սակայն և զայն չթաքուցանէ 'ի քէն, այլ յորժամ սաղմոսէ նա և ասէ՝ թէ “Ի վերայ ծովու հիմունս արկ նմա”: Դարձեալ թէպէտ և զշարժմանէ կամիցիս գիտել եթէ ուստի լինիցի, վճարէ զքեզ յամենայն հիացմանէ ասելովն՝ թէ “Ով հայի յերկիր, և հարկանէ զնա 'ի դողման”: Նա թէպէտ և զգիշերոյ խնդրիցես զպէտս, և զայս ուսանիս 'ի նմանէն՝ թէ “Ի նմա եղանեն ամենայն գազանք անտառի”: Եթէ ասիցես եթէ յինչ պէտս լերինք եղեն, տայ քեզ պատասխանի եթէ “Լերինք բարձունք են եղջերուաց”: Նաև եթէ ասիցես եթէ էր վասն վէմք եղեն, “Վէմք ապաւէնք ճագարաց և նապաստակաց” ասէ: Ե՞ր վասն, ասիցես, անպտուղ ծառք բուսան.

“Անդ, ասէ, ճնճղուկք բազում դիցեն”։ Եւ կամ դար-
ձեալ ասասցես թէ յի՞նչ պէտս յանապատս աղաւնեացն
իցեն, “Անդ արբուցանէ, ասէ, զամենայն երէ վայ-
րի”։ Ապա դարձեալ թէ յաղագս էր գինի, զի յար-
բուցանել բաւական էր բնութիւն ջրոյն միայն. այլ զի
սփոփեսցիս փոքր մի նովաւ, “Գինի, ասէ, ուրախ առ-
նէ զսիրտ մարդոյ”։ Եւ արդ զայս ուսեալ 'ի միտ առ-
նուցումք որչափ արժան իցէ 'ի կեր արկանել զգինի։
Դարձեալ ասասցես թէ ուստի կերակրին թռչունք և
կամ վայրենի երէք, տայ քեզ պատասխանի ասելով՝
թէ “Ամենեքին քեզ ակն ունին տալ նոցա կերակուր
'ի ժամու”։ Իսկ ապա եթէ ասասցես յէր այս անա-
սունք եղեն, առնէ քեզ դարձեալ պատասխանի՝ թէ և
այսոքիկ վասն քո. “Որ բուսոյց զխոտ 'ի լերինս, ասէ,
և դալար այնոցիկ որք մարդկանն ծառայեն”։ Իսկ ա-
սիցես թէ զի՞նչ պէտք լուսնի իցեն, լսես 'ի նմանէն որ
ասէն. “Արարեր զլուսին վասն ժամանակաց”։ Եւ զի
ամենայն առ հասարակ երևելիքս աներևոյթք եղեալ
են 'ի չգոյէ 'ի գոյ եկեալք, և զայս յայտնապէս ուսու-
ցանէ քեզ ասելովն՝ թէ “Նա ասաց և եղեն, ինքն
հրամայեաց և հաստատեցան”։ Եւ զի լուծումն կայ,
և զայս ուսուցանէ քեզ ասելովն՝ “Աստուած փրկեսցէ
զանձն իմ 'ի ձեռաց դժոխոց յորժամ ընդունիցիս զիս”։
Եւ եթէ ուստի մեր մարմինքս եղեն, սակայն և զայս
ասէ՝ թէ “Յիշեա զի հող եմք”. և կամ ուր դարձեալ
երթամք, “Եւ դարձցին անդրէն 'ի հող իւրեանց” ա-
սէ։ Եւ ո՞ր վասն այս ամենայն. յաղագս քո, “Փառօք և
պատուով պսակեցեր զնա, ասէ, և կացուցեր զնա տէր
'ի վերայ ամենայն գործոց քոց”։ Եւ կամ եթէ ու-
նիցիմք ինչ մեք մարդիկ հաղորդութիւն ընդ հրեշտակս,
և զայս ասէ քեզ 'ի սաղմոսել անդ՝ թէ “Փոքր մի նու-
ազ արարեր զնա քան զհրեշտակս քո”։ Եւ դարձեալ
վասն սիրոյն այ ասէ քեզ՝ թէ “Որպէս գթայ հայր 'ի
վերայ որդւոց, գթացի տէր 'ի վերայ երկիւղածաց իւ-
րոց”։ Եւ յաղագս աստի անդր ընդունելոյն զմեզ և
վայելել յանխռովական 'ի բարիսն, “Դարձիր, անձն
իմ, 'ի հանգիստ քո”, ասէ։ Ապա եթէ ասասցես՝ էր վասն
այսչափ մեծ են երկինք, և զայս ևս ասէ՝ թէ “Եր-
կինք պատմեն զփառս այ”։ Եւ կամ թէ էր վասն

տիւ և գիշեր եղեն, ոչ վասն երևելոյ միայն և համ-գլուատեան, այլ և խրատեսցեն. «Ոչ են բանք, ասէ, և ոչ են խօսք որոց ոչ լսիցին ձայնք նոցա»։ Եւ կամ զիարդ ծով պատեալ կայ զաշխարհաւ, «Իբրև խորք որպէս ըղ-գեստ վերարկու է նորա»։ Քանզի և ՚ի հեբրայական լեզուին այսպէս կայ։ Ապա այսուհետև յասացելոց ան-տի առեալ սկիզբն՝ և այլոց ամենայնի կարեն հմուտ լի-նել յաղագս Քրիստոսի, յաղագս յարութեան. վասն համբարձելոյ կենացն, վասն անձառ հանգստեանն, յա-ղագս տանջանացն, վասն կարգաւորական բանիցն, յա-ղագս ուղիղ հաւատոցն աւանդութե. և գտանիցին բիւր բարութեանք լի գիրքն ամենայն։ Զի թէպէտ և ՚ի փորձութիւնս ինչ անկանիցիս, բազում մխիթարութիւն ՚ի նոյնմէն գտանես. և կամ թէ դարձեալ ՚ի մեղս ինչ ըմբռնիցիս, բիւր դեղս կազմն գտանես անտի. և կամ թէ յաղքատութիւնս և կամ ՚ի վիշտս ինչ, բազում անգամ համգխոտս ընդունիս անտի. և դարձեալ թէ-պէտ և արդար իցես, առաւել ՚ի զգուշութեան պահիս. և եթէ մեղաւոր իցես, դարձեալ բազում սփոփանս ու-նիս. իսկ եթէ արդար իցես, և դժնդակս ինչ կրիցես, լսես զոր ասէն՝ թէ «Վասն քո մեռանիմք զօրհանա-պազ, համարեցաք որպէս զոչխար ՚ի սպանումն։ Այս ամենայն եկն ՚ի վերայ մեր, և մեք ոչ մոռացաք զքեզ»։ Եւ դարձեալ եթէ հպարտացուցանեն զքեզ ուղղու-թիւնքն, լսես նմա որ ասէն՝ թէ «Մի՛ մտաներ ատեան ընդ ծառայի քում, զի ոչ արդարանայ առաջի քո ամե-նայն կենդանի»։ և իսկոյն առժամայն ցածնուս և խո-նարհիս։ Իսկ ապա եթէ մեղաւոր իցես և ՚ի յուսահա-տութիւն անկեալ, հանապազ իսկ ասէ. «Այսօր եթէ ձայնի նորա լուիցէք, մի խստացուցանէք զսիրտս ձեր»։ և իսկոյն երագ կանգնիս։ Թէպէտ և զթագն ՚ի գլուխ ունիցիս և մեծամեծիցես, և ուսանիցիս զոր ասէն՝ թէ «Ոչ ապրի թագաւոր ՚ի ձեռն բազում զօրաց, և ոչ հսկայ իւրով զօրութեամբ», իսկոյն զիջանիս ՚ի մեծա-մտութենէ։ Թէպէտ և մեծատուն ոք իցես և յոյժ փա-ռաւոր, դարձեալ լսես զի սաղմոսէ և ասէ՝ թէ «Վայ որք յուսացեալ են ՚ի զօրութիւն իւրեանց, և որք պար-ծին ՚ի բազում մեծութիւն իւրեանց»։ և եթէ «Մարդոյ իբրև զխոտոյ են աւուրք»։ և դարձեալ թէ «Ոչ

իշխանեն փառք տան նորա ընդ նմա,,․ ապա այնուհետեւ ոչ ինչ յերկրաւորացս վարկանիցիս մեծագոյն ինչ իրս ։ Ո՛չ ի թէ որ քան զամենայն ինչ պայծառն թուին փառքըն եւ մեծութիւնք, եւ զայն այնպէս անարգ համարեցաւ, ապա որո՞վ բանիւ արժանի գտանիցին այլ ինչ երկրաւոր իրք ։ Արդեօք 'ի վհատութիւնս ինչ կործանեալ իցես, այլ լուր նմին իսկ զոր ասէն․ "Ընդէ՞ր տրտում ես, անձն իմ, կամ ընդէ՞ր խռովես զիս, յուսա առ ած, խոստովան լեր նմա,,։ Այլ արդեօք ափցես զոմն առաւել քան զարժանն ընտիր գտեալ մեծութեանն, "Մի՛ նախանձիր, ասէ, ընդ չարս,,․ եւ զայն ես դարձեալ ասէ՝ թէ "Որպէս վխոտ ցամաքեսցին, եւ իբրեւ զբանջար դալարւոյ երագ անկցին,,։ Նա դարձեալ տեսանիցես զարգարս եւ զմեծաւորս զի զոյգ խաշնանգին․ այլ մի՛ զնոյն պատճառս կարծեր զերկոցունց, քանզի "Բազում տանջանք են մեղաւորաց,, ասէ ։ Իսկ վասն արդարոյն չասաց տանջանս, այլ թէ "Բազում նեղութիւնք են արդարոց, եւ յամենայնէ փրկէ զնոսա տէր,,․ եւ դարձեալ թէ "Մահ մեղաւորին է չար,,․ եւ թէ "Պատուական է առաջի տեառն մահ սրբոց իւրոց,,։

Զայս ճառեա հանապազ, այսու խրատեաց․ քանզի իւրաքանչիւր որք յայսց բանից անեզրական խորս անդընդոց ունի զիմաստութիւնս, իսկ մեք իբրեւ հարեւանցի իմն ընթեռնումք լսել ։ Իսկ եթէ կամիցիք ամենայն հաւատարիմ քննել զասացեալս, բազում մեծութեան շահս գտանէք․ բայց սակայն բաւական են եւ ասացեալքըս 'ի յառաջիկայ կարեացն մաքրել զմեզ ։ Յորժամ ոչ նախանձել թողյլ տայ եւ ոչ ընդվայրահար տրտմել եւ վհատել․ եւ ոչ դարձեալ զմեծութիւն համարել թէ է ինչ, եւ ոչ ընդ վիշտսն տրտմել եւ ոչ ընդ աղքատութիւն հոգալ, նա եւ ոչ զնոյն իսկ զկեանսն վարկանել թէ իցեն իսկ կեանք, ապա եւ յամենայն իսկ ախտից մերժեալ զերծիցեսք ։ Նա արդ 'ի վերայ այսր ամենայնի գոհացուք զնա որ զայսպիսի զգանձ ընծայեաց մեզ․ որպէս զի համբերութեամբ եւ մխիթարութեամբ գրոց զյոյսն ընկալցուք, որով եւ 'ի հանդերձեալ բարութիւնսն ժամանեսցուք ։ Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք եւ մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ որում փառք հօր հանդերձ հոգւոյն սրբով այժմ եւ յաւիտեանս․ ամէն ։

# ՃԱՌ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԻՆՆԵՐՈՐԴ

*"Յուսացեալ եմ և ես վասն ձեր, եղբարք իմ, թէ և դուք լի էք ամենայն բարութեամբ, առաւելեալ էք ամենայն գիտութեամբ, կարող էք և զմիմեանս խրատել"։*

*Արդ թէ "Յորչափ ժամանակս եմ առաքեալ հեթանոսաց, զպաշտօնն իմ փառաւոր առնեմ". ասաց թէ "Մի՛ գուցէ և 'ի քեզ չխնայեսցէ". և դարձեալ ասէ՝ թէ "Մի՛ լինիք իմաստունք յանձինս ձեր". և դարձեալ թէ "Դու ընդէ՞ր դատիս զեղբայրն քո". և թէ "Դու ո՞վ ես որ դատիս զայլոյ ծառայ". և այլ ևս բազում քան զնոյնս ասաց։ Արդ վասն զի ամենայն ուստեք խոշորագոյնս բարբառեցաւ առ նոսա, ողոքէ այնուհետեւ. և զոր 'ի սկզբանն ասէր, զնոյն և 'ի կատարածին. քանզի 'ի սկզբանն այսպէս ասէր՝ թէ "Գոհանամ զԱյ իմոյ վասն ամենեցուն ձեր, զի հաւատքն ձեր պատմեալ են ընդ ամենայն երկիր"։ Նոյն աստ, "Յուսացեալ եմ 'ի ձեզ, ասէ, լի էք ամենայն բարութեամբ, կարող էք և զմիմեանս մխիթարել". որ ևս վերագոյն քան զառաջինն է։ Արդ չասաց եթէ լուայ, այլ եթէ յուսացեալ եմ և չեմ կարօտ յայլոց ուսանել. նոյն ինքն ես, այսինքն է թէ որ սաստէի ես և պատուհասակոծս առնէի զձեզ. այժմ զի լի էք ամենայն բարութեամբ, առիթ եղև ձեզ իմ խրատն, ասէ։ Որպէս զի ասիցէ, թէ ոչ որպէս զանհամբոյրս ոմանս և զեղբայրատեացս խրատեցի և ետու հրաման ընդունել զտկարսն և մի փակել զգործ Այ։ Արդ գիտեմ, ասէ, թէ լի էք ամենայն բարութեամբ։ Արդ թուի ինձ թէ և աստ զբոլորովին զառաքինութիւնն կոչէ։ Արդ չասաց եթէ ունիք, այլ թէ լի էք. նա և յաջորդն զնոյնս յայտ առնէ ասելով՝ թէ "Առաւելեալ էք ամենայն գիտութեամբ"։ Արդ զի՞նչ է. զի գթածք և խնամոտք էին և ոչ գիտէին թէ որպէս առ սիրելիսն վարիցին, յաղագս այնորիկ յաւել զայս՝ թէ "Ամենայն գի-*

տութեանց կարող էք խրատել զմիմեանս,,. ոչ միայն ուսանել, այլ և վարդապետել:

«Համարձակագոյնս գրեցի առ ձեզ 'ի մասնէ ինչ. փոքր մի,,: Տես զՊաւղոսի զխոնարհութիւնն որպէս 'ի խոր եդ զհաստատումն առաջնոյքն. և ապա քանզի ուղղեաց զոր ինչ կամէրն, դարձեալ բազում իրս առողջութեան նոցա 'ի կիր արկանէ: Եւ առանց ասացելոցն՝ այն իսկ բաւական էր նոցա զի խոստովան եղև թէ համարձակագոյնս յանդգնեցայ գրել առ ձեզ, այս իսկ բաւական էր զիջուցանել զմիտս նոցա: Այնպէս և հեբրայեցւոցն գրեալ ասէր՝ թէ «Յուսացեալ եմ վասն ձեր, սիրելիք, 'ի լաւ անդր և որ ըն է փրկութեանց,,. և կորնթացւոցն նման սմին. «Յիշեմ զձեզ, ասէ, զի զամենայն ինչ զիմ յիշէք, և որպէս աւանդեցի ձեզ զաւանդութիւնն՝ այնպէս ընկալարուք,,. և գաղատացւոցն դարձեալ՝ թէ «Վստահ եմ 'ի ձեզ թէ ոչ այլ ինչ խորհիք,,: Եւ և յամենայն իսկ 'ի թուղթսն գտանես զայսպիսի զիրս յաճախ. իսկ աստ և մեծագոյնս ինն: Քանզի բազումք 'ի մեծամեծ պատուոցն էին 'ի Հռոմ, ապա կամէր զխղխայթան որ 'ի հպարտութենէն էր զիջուցանել, ոչ զի չմեծամտեսցեն միայն, այլ և զիջանիցին. նա և բազում անգամ իսկ առնէր զայս: Վասն որոյ և աստ ասէ՝ թէ համարձակութեամբ գրեցի առ ձեզ:

Եւ չհամարի զայս բաւական, այլ և յաւելու ևս թէ 'ի մասնէ, այսինքն թէ դոյզն բանիւք: Եւ ոչ աստանօր առ զանեղի, այլ զինչ ասիցէ, թէ «Իբրև յիշեցուցանել ձեզ,,: Եւ չասաց թէ ուսուցանել, այլ վերըստին յիշատակել: Տեսանես որպէս կատարեցան յառաջասացեալքն: Զի որպէս անդր ասէր՝ թէ «Հաւատքն ձեր պատմեցաւ ընդ ամենայն աշխարհ,,, այնպէս և 'ի վախճանի թղթիս ասէ «Ձեր հնազանդութիւնդ յամենեսեան եհաս,,. և որպէս յորժամ 'ի սկըզբանն գրեաց՝ թէ «Իղձկացեալ եմ տեսանել զձեզ զի փոխեցից ձեզ շնորհս ինչ հոգևորս առ 'ի հաստատել զձեզ,,, այսինքն է մխիթարակից ձեզ լինել, այնպէս և աստ՝ առ 'ի յիշեցուցանել ձեզ, ասէր: Եւ 'ի վարդապետական աթոռոյն խոնարհեալ և յառաջնումն և այժմ, և իբրև ընդ եղբարս խօսի և ընդ հաւատարիմ

բարեկամս. մանաւանդ՝ թէ այս իսկ է վարդապետական պէսպէս դիմօք 'ի կիր արկանել զբանն առ 'ի յօգուտ լսողացն.

Այլ դու տես զկարգ առաջին թէ համարձակագոյնս գրեցի առ ձեզ, և եթէ փոքր 'ի շատէ, և դարձեալ թէ առ 'ի յիշատակել. չհամարեցաւ զայս բաւական, այլ և խոնարհագոյնս գործեաց զբանն, և 'ի սոյնս յարեաց. "Ի ձեռն շնորհացն, ասէ, որ տուաւ ինձ յԱյ". զոր և 'ի սկզբան թղթիս ասէր՝ թէ "պարտապան եմ", որպէս յորժամ ասիցէ՝ թէ ոչ անձամբ ինչ յափշտակեցի զպատիւս զայս, և ոչ յանդգնութեամբ 'ի վերայ չոգայ, այլ Ած այսպէս հրամայեաց ինձ, և զայս ըստ շնորհացն, ոչ զի արժանի որոշեցայ յայս: Այլ արդ մի ինչ դժկամակ լինիցիք, քանզի ոչ եթէ ես անձամբ ինչ, այլ Ած է որ տայ զհրամանսն:

Այլ որպէս անդ ասէր՝ թէ "զոր պաշտեմն յաւետարանի որդւոյ նորա", նոյնպէս և աստ ասաց թէ "'ի ձեռն շնորհացն որ տուան ինձ յԱյ", 'ի սոյնս յարեաց և զայն՝ թէ "Ի լինել ինձ պաշտօնեայ Յիսուսի Քրիստոսի 'ի հեթանոսս ցանկալի գործել ամենեցուն զաւետարանն Այ": Այլ յետ բազում աստցելոցն և օրինակացն զոր եբեր, ապա 'ի պարկեշտագոյնսն դարձուցանէ զբանն: Այլ ոչ լոկ պաշտօնեայ ասաց որպէս 'ի սկզբանն, այլ պաշտօն և քահանայապետութիւն. քանզի այս է իմ քահանայապետութիւն, ասէ, քարոզելն և պատմելն, զայսպիսի պատարագ մատուցանեմ: Քահանայքն չկարէ ոք մեղադիր լինել որ փութայն զողջակէզսն անարատ մատուցանել: Զայս ասէր առ 'ի թռուցանել զմիտս նոցա, և ցուցանել թէ և նոքա պատարագ և ողջակէզ են, և վասն անձին հանէր զմիտս նոցա՝ թէ զայս հրամանս առի: Քանզի սուր իմ, ասէ, աւետարանն է և բանն քարոզութեան. և պատճառք զինչ. ոչ զի ես փառաւորեցայց և կամ պայծառ երևեցայց, այլ "զի եղիցի պատարագն հեթանոսաց ընդունելի սրբեալ հոգւովն սրբով": Այսինքն անձինք աշակերտելոցն լիցին ընդունելի, ոչ թէ զիս այնքան ինչ պատուելոյ վասն Ած, այլ վասն ձերոյ խնամոց և օգտի:

Այլ զիարդ լինիցի ընդունելի: Հոգւովն սրբով. ոչ եթէ հաւատոց միայն պէտք են, այլ և հոգևորական

վարուց, որպէս զի ունիցիմք զհոգին որ տուաւ մեզ։ Քանզի ոչ եթէ փայտ և հուր, և ոչ բագին և սուր, այլ ամենայն ինչ հոգևոր է մերս. յաղագս այնորիկ զամենայն հնարեաց, զի մի շիջցի հուրս այս։ Ոչ այս և ըստ կարգաւորութեան իսկ կարօղ եմք առնել։ Յաղագս այնորիկ և նա ասէր ոչ ուսուցանել, այլ յիշատակել. զոր օրինակ քահանայն մերձ կայր և վառէր զհուրն, այնպէս և ես զարթուցանեմ զձեր յօժարութիւնդ։ Եւ տես զի չասաց եթէ լիցի պատարագն ձեր, այլ եթէ հեթանոսաց։ Յորժամ ասէ թէ հեթանոսաց, զամենայն տիեզերս ասէ, առ հասարակ զծով և զցամաքս ասէ։ Այլ այսու[1] զիջոյց զմեծամտութիւն նոցա, որպէս զի մի անարժան վարկանիցեն իւրեանց վարդապետ ունել զնա՝ որ ընդ ամենայն տիեզերս ձգեալ ուսուցանէր. զոր և անդէն 'ի սկզբանն ասէր՝ թէ “Որպէս և յայլ հեթանոսս. քանզի հեթանոսաց և բարբարոսաց իմաստնոց և անմտից պարտապան եմ„. և դարձեալ թէ “Ունիմ պարծանս 'ի ձեռն Քրիստոսի առ Ած„։ Եւ քանզի կարի խոնարհեցոյց զինքն, դարձեալ ճոխացուցանէ զբանն. և զայս յաղագս նոցին առնէ, որպէս զի մի արհամարհելի թուիցի։ Եւ յորժամ ճոխացուցանէ զինքն, և յայնմիկ զիւր զընտանի զբարսն յիշէ այսպէս ասելով՝ թէ ունիմ պարծանս. և ոչ եթէ պարծիմ յանձն և կամ յիւր փոյթն, այլ յԱյ 'ի շնորհսն։

“Քանզի ոչ իշխեմ խօսել, ասէ, զոր ինչ ոչ գործեաց Քրիստոս ինև 'ի հնազանդութիւն հեթանոսաց բանիւք և գործովք, զօրութեամբ նշանաց և արուեստից, զօրութեամբ հոգւոյն սրբոյ„։ Քանզի չունի ոք ասել, ասէ, եթէ մեծամտութիւն ինչ բանքս են. վասն զի զքահանայութեանս իմոյ զխորհուրդ ձեռնադրութեան կամիմ ցուցանել զբազում նշանս։ Քանզի ոչ եթէ պճղնաւոր և զանգակք որպէս առ հնովն, և կամ խոյր և կիդար, այլ որ եւս առաւել և զարմանալի քան զնոսայն է նշանքն և արուեստքն։ Վասն զի չունիցին ասել՝ թէ յանձն եղև քեզ և ոչ կարացեր կատարել որ ինչ հրամայեցաւն. մանաւանդ եթէ ոչ եղ-

1 Օրինակին յոգնաւ։

կատարեցի զայս, այլ Քրիստոս. վասն որոյ և պարծիմ ես 'ի նա ոչ վասն դոյզն ինչ իրաց, այլ վասն հոգևորականացն: Այս է զոր ասէրն՝ թէ առ ած: Այլ զի զի յաղագս որոյ առաքեցայն, և զի չէ բանք մեծաբանութեան, նշանքն և սքանչելիքն յայտ առնեն, և հեթանոսացն հնազանդութիւն:

"Ոչ իոչ իշխեմ խօսել, ասէ, զոր ոչ գործեաց Քրիստոս ինև 'ի հնազանդութիւն հեթանոսաց բանիւք և գործովք, զօրութեամբ նշանաց և արուեստից, զօրութեամբ հոգւոյն սրբոյ,,: Տեսանես զիարդ ջանայ զամենայն ինչ յիւր ցուցանել և ոչ իւրում անձին. զի թէպէտ և խօսիմ ինչ, ասէ, կամ առնեմ և կամ սքանչելագործեմ, ամենայն ինչ նա է, ամենայն ինչ հոգին սուրբ: Զայս ասէ, որպէս զի ցուցցէ զպատիւ հոգւոյն սրբոյ: Տեսանես որպէս ջանայ զամենայն ինչ իւր և ոչ իւր: Զի եթէ բարբառիմ ինչ և կամ սքանչելագործեմ, ամենայն ինչ հոգւոյն սրբոյ գործ է: Զայս ասէ վարդապետութիւն որ յաղագս արքայութեանն խոստատանէր, գործովք և վարուք ցուցանէր, զմեռեալսն զոր յարուցանէր, զդևսն զոր հալածականս վարէր, զըկոյրսն զոր բժշկէր՝ որք 'ի ծնէ կոյրքն էին և ողջանային, և զայլն ամենայն զոր գործէ մեզ հոգին սուրբ:

Այս ապա իբրև եցոյց զայս, յայտնի առնէ զբազմութիւն աշակերտացն, վասն որոյ և 'ի սոյնս յարեալ ասէր. "Որպէս ինձ յԵրուսաղէմէ և շուրջ մինչև 'ի Իլլիւրիկոն լնուլ զաւետարանն Քրիստոսի,,: Այս արդ համարեաց այժմ զքաղաքս և զգաւառս, զազգս և ըզբազմութիւս ռամկացն, ոչ միայն զայնս որք ընդ հռոմայեցւոց իշխանութեամբ իցեն, այլ որք ընդ բարբարոսօքն. և ոչ միայն ընդ փիւնիկեցւոցն և ընդ Ասորւոցն և ընդ կիւլիկեցւոցն և ընդ կապադովկացւոցն Ճանապարհ գայցեն, այլ և որ հուսկ վերջինքն իսկ են՝ ած զմտաւ զՄակեդոնաս, զՊարսս, զՀայս և զայլ զբարբարոսս: Քանզի վասն այնորիկ ասաց թէ "շուրջ,,, որպէս զի մի զուգորդ զուղեգնացութիւնն միայն իմանայցես, այլ զամենայն իսկ զհարաւայինն կողմանսն և զասիացւոց զաշխարհն զմտաւ ած: Այլ որպէս միանգամայն անուանք նշանացն միով բանիւ յամենայն ժամանեալ ասաց՝ թէ զօրութեամբ նշանաց և արուեստից, այսպէս և քաղաքս անբաւս և

ազգս և ռամիկս և զատոսս միով բանիւ շուրջ բոլորա-
ղակեաց։ Այլ ինքն հեռի էր յամենայն հպարտութե-
նէ. և զայս յաղագս նոցա բարբառեցաւ, որպէս զի մի
մեծամտեսցեն յանձինս։ Նա և ՚ի սկզբանն ասէր.
«Զի և ՚ի ձեզ գտից պտուղ ինչ որպէս և յայլ հե-
թանոսս». իսկ աստ կարևոր էր զքահանայութեան իրս
յիշել։ Այլ քանզի սաստիկս բարբառեցաւ և յայտնի
եցոյց զիւր զիշխանութիւնն, յաղագս այնորիկ անդ ևս
ասէր՝ թէ որպէս և յայլ հեթանոսս, իսկ աստ զամե-
նայն իսկ զտեղեացն ասէ, որպէս զի յամենայն կողմանց
՚ի բաց կորուսցէ զմեծամտութիւն նոցա։ Այլ չասաց ևս
եթէ քարոզեմ զաւետարանն, այլ թէ լնուլ զաւետա-
րանն Քրիստոսի։

«Այնպէս առատացեալ յաւետարանելս՝ ոչ ուր ա-
նուանեցաւն Քրիստոս»։ Ահաւասիկ միւս և այլ ա-
ռաւելութիւն. զի ոչ միայն այնպիսեացն քարոզեաց և
հաւանեցոյց, և ոչ եթէ առ աշակերտեալսն ոք չոգաւ,
վասն զի այնչափ հեռի էր յայնպիսի յիրաց առ այլոց
աշակերտսն երթալ և իւր փառս վարկանել զնոսա, այլ
նա փոյթ յանձին ունէր որոց չէին լուեալ՝ զնոսա ու-
սուցանել։ Այսով և չասաց թէ ուր ոչ հաւատացին,
այլ թէ ուր անուանեցաւն ոչ Քրիստոս. որ ևս մեծա-
գոյն է՝ զայն եդ։ Այլ ե՞ր վասն առաւելագոյն այսպէս.
«Որպէս զի մի յայլոց հիման վերայ շինիցեմ», ասէ։
Զայս ասելով ցուցանէ զինքն թէ օտար է յամենայն
փառասիրութենէ, և խրատէ զնոսա թէ ոչ առ խան-
դութեան փառաց և զառ ՚ի նոցանէ զպատիւ եկն յանձն
գրաւել, այլ որպէս զպաշտօն լնուլ՝ և զքահանայու-
թիւնն կատարել, քանզի ցանկայր նոցա փրկութեանն։
Քանզի յայլոց յառաջելոցն, ասէ, ոչ զինչ կերպա-
րանաց և ոչ ըստ քարոզութեան բնութեանն լինիմ
օտար, այլ ըստ վարձուց բանին. իսկ քարոզութիւնն չէ
օտար և ոչ նոցայն, այլ որչափ ինչ վարձքն էին՝ յամե-
նայնէ օտար էի։ Այլ եթէ յայլոց ՚ի ջանս և ՚ի վաստակս
իմ մտեալ էր և քարոզէի, օտար էի յայնպիսի վար-
ձուց. և ոչ եթէ քարոզութիւնն օտար է, այլ մի և
նոյն։ Այս ցուցանէ թէ այսպէս և մարգարէութիւնն
կատարի։

«Որպէս և գրեալ է, ասէ, թէ որոց ոչ պատմեցաւ

ծէ զառաքումն թէ “Եւ 'ի ձէնջ յուղարկել”․ այսինքն է թէ դուք վկայէք ինձ թէ չարհամարհեմ զձեզ, այլ 'ի պէտս իրացն ձգեալ ընթանամ։ Այլ զի այն եւս տրտմեցուցանէր զնոսա, եւս զօրագոյն բժշկէ զնոսա ասելովն՝ թէ “Նախ ձեռք լցայց փոքր 'ի շատէ”։ Ո՛ ի չէր ցանկացեալ փառաց 'ի նոցանէն՝ եցոյց այնու թէ յերթալն իմ 'ի Սպանիա։ Նախ յառաջն թէ նախ ձեռք լցայց՝ զայն յայտ առնէ թէ յոյժ հարեալ է 'ի սէր նոցա․ եւ ոչ եթէ յոյժ լոկ, այլ եւ կարի սաստիկ․ վասն այնորիկ չասաց թէ լցայց, այլ թէ 'ի մասնէ ինչ․ քանզի չիք ժամանակ որ կարէ զիս լցուցանել սիրովք ձերով եւ կամ եթէ յագեցուցանել առաւել գթոյն զոր ունիմ։ Տեսանե՞ս որպէս եցոյց զսէրն, զի եւ յորժամ երթայցէն առ նոսա՝ ոչ հրաժարէ մինչ ոչ յագեսցի սիրովն։ Այլ այս բազում գթոյ նորա նշանակ է յորժամ զայսպիսի զջերմագոյն զբանս 'ի կիր արկանէ։ Այլ չասաց եթէ տեսանեմ զձեզ, այլ թէ լցայց ձեօք, ծնօղաց բանից նմանեալ։ Որ եւ 'ի սկզբանն իսկ ասէր “Ո՛ ի գանից եւ 'ի ձեզ պտուղ ինչ”, զնոյնս եւ աստ՝ թէ “Լցայց ձեօք”․ որպէս զի երկաքանչիւրովքն կարիցէ զնոսա ձգել յինքն․ քանզի մի՛ միաբանութիւն մեծ էր նոցա, թէպէտ եւ պտուղ հանդերձեալ էին տալ նմա զհնազանդութեանն․ իսկ միւսն․ իւրոյ սիրտ սիրոյն նշանակ։ Այլ կորնթացւոցն գրեալ առաքէր սոյնպէս ասելով՝ թէ “Դուք յուղարկեսջիք զիս ուր եւ երթալոցն իցեմ”։ Այլ ամենայն ուրեք զսէրն առ աշակերտսն ցուցանէ, որում չիք զոյգ եւ հաւասար։ Վասն որոյ եւ զսկիզբն իսկ թղթոյն միշտ յայսմ բանից առնէ, եւ զվախճան թղթոյն 'ի սոյն բան կատարէ։ Այլ զոր օրինակ հայր որդեսէր զմանկունս եւ զսէրս որդւի սիրեսցէ, այնպէս սիրէր զամենայն զհաւատացեալսն․ վասն որոյ եւ ասէրն՝ թէ “Ո՞վ հիւանդանայ եւ ոչ ես հիւանդանամ, եւ ո՞վ գայթակղի եւ ոչ ես տոչորիմ”։ Նախ քան զայլն ամենայն զայս պարտ է ունել վարդապետաց․ վասն այսորիկ եւ Քրիստոս ասէր ցՊետրոս․ “Եթէ սիրես զիս, արածեա զոչխարս իմ”։

## ՑՈՐԴՈՐԱԿ

Քանզի որ զՔրիստոսն սիրէ, և զհօտն նորա սիրէ : Վասն զի և զՄովսէս յայնժամ կարգեաց վերակացու բազմութեան Հրէիցն, յորժամ զբարեմտութիւնն առ նոսա եցոյց : Սոյնպէս և Դաւիթ յաղագս այնորիկ եկն 'ի թագաւորութիւնն, վասն զի յառաջ գթով իմն էր առ նոսա : Քանզի այսպէս և մինչդեռ տղայն էր՝ ցաւէր նմա վասն ժողովրդեանն, որպէս զի և զանձն իւր խոկեր 'ի վերայ նոցա՝ յորժամ զբարբարոսն զայն սպանանէր : Իսկ ապա եթէ ասէր զայն բանս՝ թէ զինչ լինիցի մարդոյն այնմիկ որ սպանանիցէ զայլազգին զայն, ոչ եթէ վարձ ինչ պահանջէր ասելովն զայս, այլ զի հաւատայցեն և ընձեռեսցեն նմա զպատերազմն զայն · Նա և յորժամ առ թագաւորն իսկ եմուտ յետ յաղթութեանն, ոչ ինչ ամենևին Ճառեաց վասն այսպիսի իրաց : Նա և Սամուէլ յոյժ և սաստիկ գթած էր, յաղագս որոյ և ասէրն՝ եթէ « Ինձ քաւ լիցի մեղանչել առ 'ի չառնելոյ աղօթս առ տէր վասն ձեր » : Նոյնպէս և Պաւղոս, մանաւանդ եթէ ոչ այսպէս միայն; այլ և առաւել քան զամենեսին տոչորէր վասն նոցա որոց իշխէրն · վասն որոյ և զաշակերտացն այնպէս ուխտեաց · « Եթէ հնար ինչ էր, ասէ, զաչս ձեր հանէիք և տայիք ինձ » : Սորին վասն և զՀրէիցն զվարդապետս նախ այսու մեղադրէ առ ասելովն · « Հովիւք Իսրայելի, միթէ Ճարակեն հովիւք զանձինս · ո՞չ ապաքէն հովիւք զոչխարս արածեն · իսկ նոքա զհակառակն գործէին · ըզկաթնն ուտէք, ասէ, և զասրն զգենուք և զգէրն զենուք և զոչխարսն ոչ Ճարակէք » : Այսպէս Քրիստոս իսկ զառաքինի հովուի և զքաջի բերէր յանձն զօրինակ ասելովն՝ թէ « Հովիւ քաջ դնէ զանձն իւր 'ի վերայ ոչխարաց իւրոց » :

Որպէս և Դաւիթ արար 'ի բազում տեղիս, նա և յորժամ 'ի վերայ բազմութեան ռամկին ահագին ըսպառնալիք մահուն յորձանահոս լինէր, և մինչ աչն ունէր ամենեցուն սպանման, ասէր՝ թէ « Ես հովիւս մեղայ և ես հովիւս գործեցի զչար, իսկ սոյս խաշինքս զի՞ արարին » : Վասն այնորիկ և ընտրութեան պատժոցն

այնոցիկ ոչ փառամոլ ընտրելոց և ոչ զհալածումն 'ի թշնա-
մեաց, այլ որ յետ առաքի մահուն, որով անձն ունէր թէ
այլքն 'ի զգուշութեան պահեցին և զինքն յառաջ քան
զամենեսին կորնչել ։ Եւ ապա քանզի այնոքիկ չերկեն,
ողբայր և ասէր՝ թէ "Եղիցի ձեռն քո յիս․ ապա ե-
թէ այս չիցէ բաւական, և 'ի տուն հօր իմոյ եւս,,։ Քան-
զի ես, ասէ, հովիւս մեղայ․ զի թէպէտ և ոչքս մե-
ղան, բայց սակայն ես եմ պատճառ տանջանաց որ
ոչս ուղղեցի․ իսկ ապա յորժամ իմ իսկ ելն յանցանքս՝
և յիրաւի տանջիմ։ Նա և անձնդուրացանել իսկ կամէր
զանձինն մեղաւորութիւն, յաղագս այնորիկ եդ զանուն
հովուութեան և այնպէս ցածոյց զառաքինութիւնն և զկր-
ձիան 'ի բաց ընկենեաց․ քանզի այնպիսի էր խոնարհա-
նութիւն ։ Ոյս և այն իմաստուն ասէր՝ թէ "Ար-
դարն ամբաստանէ յառաջին պատասխանւոյն,,։ Այն-
քան խնամս և վշտակցութիւնս ցուցանել քաջի հովուի
է ։ Նա և այրէր իսկ և տառապանայր գթութեան․ և յորժամ
նոքայն անկանէին, որպէս թէ իւր ասէր ոտքն անկա-
նիցին, այնպէս աղաչէր զԱծ զառաքինութիւնն յիւր վե-
րայ անձել։ Նա և յառաջին իսկ տպանմանն զայնս գոր-
ծեաց, քանզի ոչ կամէր երթալ նոցա զճանապարհն
զայն․ և յորժամ չոգանն՝ անձն ունէր դարձեալ ընդու-
նել զնոսա, ապա իբրև այն ոչ լինէր և 'ի միտ առ զթր-
շուառութիւնսն, ապա ոչ կարաց համբերել այնու հե-
տև, այլ բռցակիցեալ լինէր վասն Ամնոնեայ անդրան-
կան իւրոյ։ Բայց սակայն յայնժամ ոչ խնդրեաց մահ
անձին իւրում․ իսկ այժմ աղաչէ յառաջ քան զայլսն
ինքն վախճանել։ Այսպիսի պարտ է լինել իշխանացն,
մանաւանդ զի զայլոցն և ոչ զի զանձանց զթշուառու-
թիւնսն ողբայցեն։ Այսպիսի ինչ և յաղագս մանկանն
կրեաց․ զի ուսցիս թէ քան զամենեսին որք ընդ իշխա-
նութեամբն էին՝ զնա քաջ սիրէր․ թէպէտ և անառակ
ոք էր որդին և հայրախաղխող, բայց սակայն ասէր․ "Ո՛
տայր զմահս իմ փոխանակ քո,,։ Ոչինչ ասես, ով ե-
րանելիդ և քան զամենայն մարդիկ հեզագոյն․ սպա-
նանել զքեզ խորհեցաւ որդին և բիւր չարեօք պաշա-
րեաց զքեզ․ և յորժամ նա 'ի մէջս բարձաւ և նշան
յաղթութեան կանգնեցաւ, յայնժամ աղօթես թէ
դու սպանեալ էիր փոխանակ նորա։ Այո, ասէ, չյաղ-

# ՃԱՌ ԵՐԵՍՆԵՐՈՐԴ

“Այժմ երթամ յԵրուսաղէմ պաշտել զսուրբսն։ Հաճոյ թուեցաւ Մակեդոնացւոցն և Աքայեցւոցն հաղորդութիւն ինչ առնել յաղքատսն որ են յԵրուսաղէմ։ Հաճոյ թուեցաւ, քանզի և պարտականք իսկ են նոցա”։

Վասն զի ասաց թէ պէտս ոչ ինչ ունիմ 'ի կողմանս յայսոսիկ, և փափագումն 'ի բազում ամաց հետէ ունիմ գալ առ ձեզ, քանզի հանդերձեալ էր այլ ևս յամել անդէն, և զի մի կարծիցեն թէ խաբէ ինչ զնոսա, ասէ և զպատճառն թէ էր վասն յապաղէր. “Երթամ յԵրուսաղէմ, ասէ, պաշտել զսուրբսն”։ Այս թուի թէ զպատճառսն ասիցէ զյամելոյն։ Իսկ նա աւանիկ և այլ իմն կամի՝ և յորդորէ զնոսա յողորմածութիւն, և փոյթս գործէ. զի եթէ զայս ոչ թուեցոյց կամել, բաւական էր այն յորժամ ասացն թէ երթամ յԵրուսաղէմ։ Իսկ նա աւանիկ և զպատճառն ևս յաւելու զերթալոյն. քանզի ասէ՝ թէ երթամ յԵրուսաղէմ պաշտել զսուրբսն։ Այլ յամէ ևս 'ի բանին և բազում խորհուրդս 'ի ներքս մուծանէ ասելովն՝ թէ “պարտականք են նոցա”։

“Այլ զի թէ հոգևորացն նոցա հաղորդք եղեն հեթանոսք, պարտին և մարմնաւորացն նոցա նպաստ լինել”։ Որպէս զի ուսցին նոքա սոցա նախանձաւորք լինել։ Որով մանաւանդ ընդ նորա իմաստութիւնն արժան է զարմանալ, զի այնպէս խորհրդաւորս օրինակօք իմացոյց նոցա. մանաւանդ եթէ այսպէս իսկ քաղցր հաւանէին քան եթէ ըստ կարգի հրամանս տալոյ էր ասացեալ։ Վասնզի թէ հրամանք թուէին նոցա այն՝ թէ յամօթ առնելոյ զմեզ եթէ զկորնթացիսն և զմակեդոնացիսն 'ի մէջ, յաղագս այսորիկ զնոսա այսպէս յորդորէ ասելովն՝ թէ “Ծանուցանեմ ձեզ զշնորհսն Այ որ տուեալ են եկեղեցեացն մակեդոնացւոց”։ Իսկ մակեդոնացւոցն պատուիրեալ վասն սորին ասէր՝ թէ “Ձեր

նախանձն զբաղումս յորդորեաց „ . Նա և Գաղատացւոց-
քըն զայս յորդորէր, որպէս յորժամ ասէրն՝ թէ
“Որ օրինակ պատուիրեցի եկեղեցեացն Գաղատա-
ցւոց, նոյնպէս և դուք արասջիք „ ։ Բայց Հռոմայեցւոցն
ոչ ախտակից ինչ, այլ ակնածութեանց իմն դնէ, մանա-
ւանդ եթէ ՚ի քաղաքութեանն զայնս գործէ ասելովն.
“Եթէ ՚ի ձեռնջ բանն այս ել և կամ թէ առ ձեզ մի-
այն եհաս „ ։ Վասնզի զի՞նչ ինչ զօրագոյն քան զնա-
խանձ, այլ և ոչ խակ ինչ ։ Վասն որոյ և ՚ի բազում տե-
ղիս զնոյն դնէ. Նա և այլուր խակ ասէր՝ թէ “Որպէս
ընդ ամենայն եկեղեցիս հրամայեմ տամ „ . և դարձեալ
թէ “Որ օրինակ ամենայն ուրեք զամենայն եկեղե-
ցիս ուսուցանեմ „ . և Կողոսացւոցն ասէր դարձեալ թէ
“Ի պտղաբերեալ և աճեցեալ աւետարանն այս յաշ-
խարհի ամենայն քարոզութեանն „ ։ Այսպէս և
աստ յաղագս ողորմածութեանն ասէ ։ Եւ դու տես
որպէս մեծաւ վայելչութեամբ արկանէ զբանն ՚ի կիր.
և չասէ թէ երթամ ողորմութիւն տանել, այլ թէ եր-
թամ պաշտել ։ Զի եթէ Պաւղոս պաշտօնէր, արդ
զմտաւ ած որչափ ինչ էր որ լինէր, յորժամ այն որ
տիեզերաց վարդապետն էր՝ չվարկանէր անարժան տա-
նել զողորմութիւնն. և այն զի ՚ի Հռոմ եւս պատրաս-
տեալ էր երթալ և այնպէս ցանկացեալ էր տեսանել
զնոսա, բայց սակայն զողորմածութիւնն նախադասէ-
քան զնոսա հանդերձեալ ։

“Վասնզի հաճոյ թուեցաւ Մակեդոնացւոցն և Աքայե-
ցւոցն „ . այսինքն է թէ ընդարեցին և ցանկացան հաղոր-
դութիւն առնել ։ Եւ չասաց դարձեալ թէ ողորմութիւն,
այլ թէ հաղորդութիւն նոցա . զի մինչ չերդ ընդ վայր, այլ
զի մի կարծիցեն թէ հաղորդութիւն առնել առաց ընդ
ընդ աղքատաց, այլ “ընդ աղքատս սրբոցն „ , թէ որք
յայտնեցանէ կրկին որք յառաքինութեանցն և յաղքատու-
թեանցն ։ Եւ չհանդերձեաց զայն միայն բաւական, այլ
յաւելաց ՚ի այնս՝ թէ պարտականս իսկ են ։ Եւ արդ
ցուցանէ՝ թէ որպէս են պարտականք ։

“Զի եթէ հոգևորացն նոցա հաղորդեցան հեթա-
նոսք, արդ պարտական են և մարմնաւորօքս պաշտել „ ։
Եւ զոր ասէն, այսպիսի ինչ է . քանզի նոցա էր ամենայն
ինչ, տաճ, վասն այնորիկ եկն փրկութիւնն ՚ի հրէից, և

'ի նոցանէ էր Քրիստոս. վասն որոյ և ասէր իսկ ինքն Քրիստոս՝ թէ "Այլ փրկութիւն 'ի Հրէից է": Ի նոցանէն առաքեալքն, 'ի նոցանէն մարգարէքն, անտի ամենայն բարութիւնք եղեն, նոքօք ամենայնի հաղորդեցան տիեզերք: Արդ եթէ մեծամեծացն եւս ցանկացարուք, և զընթրիսն զոր պատրաստեալ էր նոցա՝ ձեր մնացեալ վայելեցէք զուրախութիւնն որ առաջի կայր, ըստ առակին որ յաւետարանին ասէր, այսպէս ուրեմն պարտիք և մարմնաւորացն նոցա հաղորդ գտանել և տալ նոցա զպէտսն: Այլ չասաց թէ հաղորդել նոցա, այլ թէ պաշտեսցեն. և 'ի պաշտաւորաց աստիճանի կարգեաց զնոսա, և տալ իբրև թագաւորաց հարկս տալ: Այլ չասաց թէ մարմնաւորքն ձերովք, որպէս և հոգևորքն նոցա. վասն զի հոգևորքն՝ նոցա էին, իսկ մարմնաւորքն ոչ որք 'ի հեթանոսացն էին միայն, այլ ամենեցուն իսկ հասարակ: Վասն զի զինչսն ոչ որք մեծացանն՝ նոցա միայն հրամայեաց ուտել, այլ և այլոց ծախել:

"Արդ զայս կատարեալ և կնքեալ զպտուղ նոցա": Այսինքն է թէ որպէս 'ի թագաւորական շտեմարանս համբարեալ, զի անկապուտ ամենայն զգուշութեամբ պահեսցի: Այլ չասաց ողորմածութիւն, այլ պտուղ. զի ցուցցէ՝ թէ շահին մանաւանդ քան թէ տան: "Անցանեմ 'ի ձէնջ, ասէ, 'ի Սպանիա": Դարձեալ յիշէ զՍպանիա և ցուցանէ զիւր անդադրութիւն ընթանալ, և առ նոսա զջերմութիւն զոր ունէր: "Գիտեմ եթէ 'ի գալն իմում առ ձեզ՝ լրութեամբ օրհնութեամբ աւետարանին Քրիստոսի եկից": Զինչ իցէ լրութեամբ օրհնութեանն. կամ զընչիցն ասէ և կամ վասն ամենայն ուղղութեանցն: Վասն զի օրհնութիւն բազում անգամ զողորմածութիւնն սովոր է կոչել, որպէս յորժամ ասիցէ՝ թէ "Որպէս զօրհնութիւն և մի իբրև զագահութիւն". նա հին իսկ սովորութիւն էր այնպէս կոչել զնոյն: Այլ վասն զի առ յաւել՝ թէ լրութեամբ աւետարանին, յաղագս այսորիկ ասացի թէ ոչ վասն ընչիցն միայն է ասացեալ, այլ և վասն այլոյ ամենայնի. որպէս զի ասիցէ՝ գիտեմ եթէ 'ի գալն իմում տեսանեմ զձեզ յամենայն ընտիրս երևեալ և պտղաբերեալս բարութեամբք՝ և բիւր գովութեանց արժանիս ըստ աւետարանին [illegible]. այսպէս զայն գիտելով զսքանչելի խորհրդականութիւն նորա՝ ժա-

մանիցէք 'ի նորին գովութիւնս : Եւ յորժամ զկարասն մատուցանէք , չգնէք ինչ այսպիսի մեղմով . այլ յայլ ինչ օրինակ գայր , որով և զբարս նոցա ուղղէք :

“ Ողջունեմ զձեզ անուամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի 'ի ձեռն հօգւոյն սրբոյ ,, : Ահաւասիկ աստ դարձեալ զՔրիստոս և զհոգին յառաջ բերէ և չյիշէ ուրեք զհայր : Զայս ասէ , զի յորժամ անուանիցես զնա զհայր և զորդի միայն յիշեալ , և կամ դարձեալ զհայր միայն և ոչ զորդի և ոչ զհոգին , մի արհամարհեր զնոսա : Եւ ոչ ասաց թէ հօգւոյն , այլ թէ սրբով հօգւոյն . զի որպէս Քրիստոս սրբեաց զաշխարհս , նոյնպէս և հայր և հոգին սուրբ : Եւ արդ զինչ իցէ վասն որոյ աղաչեաց , ասա ինձ : “ Ջանակից ինձ եղերուք , ասէ , յաղօթս առ ած , զի ապրեցայց յանհաւատիցն որք 'ի հրէաստանի են ,, : Մեծ ուրեմն ջան և մարտ առաջի կայր նորա , վասն որոյ և զաղօթս նոցա կոչէր իւր յօգնականութիւն : Եւ չասաց թէ զի գրկախառն եղէց , այլ զի ապրեցայց . որպէս Քրիստոսն հրամայեաց կալ յաղօթս , զի մի մտանիցեն 'ի փորձութիւն : Զայս ասելով միանգամայն ցուցանէր զառինս գայլս զամենս յարձակեալս 'ի վերայ նորա , և ամենեւին իսկ գազանս եղեալս և ոչ թէ մարդիկ : Յայսմանէ և այլ ինչ կազմէ և ցուցանէ թէ յիրաւի իսկ պաշտեն զսուրբսն . զի թէպէտ և այնքան առաքինիք էին , մինչև զնոսա եւս աղաչէ աղօթս առնել իւր որպէս զի ապրեսցի : Որպէս զի յայնպիսի պատերազմաց 'ի միջի էին նոքա՝ մինչև 'ի սովոյ հանդերձեալ էին ծախել , ապա ուրեմն հարկ էր այլուստ առնել նոցա մխիթարութիւն ինչ :

“ Եւ պաշտօնն իմ , ասէ , որ յԵրուսաղէմ՝ հաճոյ և ընդունելի լիցի 'ի սուրբսն ,, . այսինքն է զի ընդունելի լիցի պատարագն , որպէս զի յօժարութեամբ ընկալցին նոքա զտուեալսն : Տեսանես՞ որպէս դարձեալ բարձրացոյց զպատիւ ընդունելեացն . նա և աղօթից եւս պէտք էին յայնչափ բազմութենէ առ 'ի յընդունել զայն որ ինչ առաքեցինն : Զայսմանէ և այլ ինչ ցուցանէ թէ չէր բաւական ողորմածութիւնն , և ոչ 'ի վեր ինչ քան զնոսա որք ընդունէինն զայն . քանզի յորժամ 'ի հարկէ և 'ի բռնութենէ տայ և կամ յանիրաւութենէ և կամ վասն փառաւորութեան , կորուսանէ զպտուղն :

"Որպէս զի խնդութեամբ եկից, ասէ, կամօքն այ"։ Ուստի և ՚ի սկզբանն ասէր՝ եթէ "Որպէս յաջողեսցի ինձ կամօքն այ գալ առ ձեզ"։ սոյնպէս և այժմ աստ ՚ի նորա կամսն ապաւինի և ասէ, թէ վասն այսորիկ երթամ և աղօթեմ ապրել ՚ի նոցանէն, որպէս զի երագ տեսից զձեզ համբերձ ամենայն հեշտութեամբ, և ոչ մի ինչ վհատութիւն անտի բերելով ընդ իս։ "Եւ եկեալ հանգեայց ընդ ձեզ"։ Տեսանես որպէս դարձեալ զանմեծարգութիւնն ցուցանէ. քանզի չասաց թէ վարդապետեմ ձեզ և կամ ուսուցանեմ, այլ թէ դոյզ հանգեայց ընդ ձեզ։ Եւ որում աշխատիք ջան և մարտ առաջի կայր, զիարդ դոյզ հանգչէր ընդ նոսա։ Շնորհէր իմն նոցա, զի զանձեայ այնու յօժարամիտս լինիցին և կարիցէ առնել զնոսա հաղորդս պսակացն. նա և ցուցանէ իսկ թէ և նոքա ջանային և աշխատէին։ Նա որպէս միշտ սովոր է առնել, յետ սփոփանացն և խրատու զաղօթսն ևս յաւելու ասելովն՝ թէ "Աստուած խաղաղութեան եղիցի ընդ ձեզ ամենեսին. ամէն"։

"Յանձնեմ առնեմ ձեզ, ասէ, զՓիբէ զքոյր մեր որ պաշտօնեայն է եկեղեցւոյն կենքրեացւոց"։ Տեսանես որչափ ինչ զարմանալի ցուցանէ զնա. նա և նախ իսկ քան զայլսն զնա յիշեաց յառաջ և քոյր անուանեաց. չէ փոքր՝ Պաւղոսի քոյր կոչել։ Եւ և զպատիւն ևս յաւել՝ պաշտօնեայ է, ասէ։ "Զի զնա ընկալջիք, ասէ, արժանի սրբոց"։ այսինքն է վասն տեառն, որպէս զի վայելեսցէ ՚ի ձէնջ ՚ի պատուի։ Քանզի զոր վասն տեառնն ոք ընդունիցի, թէպէտ և մեծ ոք չիցէ, բազում փութով ընդունի. իսկ արդ եթէ սուրբ ևս իցէ, զմտաւած թէ յորպիսում պատուի արժանի է այնպիսումն վայելել. յաղագս այնորիկ յաւել զայն՝ թէ արժանի սրբոց. որպէս զի պարտ է, ասէ, զայնպիսիսն ընդունել։ Քանզի կրկին պարտ է, ասէ, նմա վայելել ՚ի ձեր խնամսն՝ և վասն նորին ընդունել, և դարձեալ զի և ինքն ևս սուրբն է։

"Եւ վերակացուք լինիջիք նմա յոր ինչ իրս ձեզ պէտս ունիցի"։ Տեսեր զիարդ անտաղտկալիս արար. քանզի չասաց թէ վճարեսջիք զնա ամենայն իրօք, այլ թէ որ ինչ ՚ի ձէնջն է՝ յայն մի խնայէք, այլ ձեռն տուք և օգնեսջիք յոր ինչ իրս պէտս ունիցի. ոչ եթէ որում

չէքն ձեռնհաս, այլ զոր կարողն էք և նա պէտս ունի՝ զայն տուք նմա՝ և օգնեցէք որում դուք տեարքն էք : Նոյն դարձեալ այլ գովութիւն անուաւ : «Քանզի և նա ինքն, ասէ, բազմաց վերակացու եղև, և ինձ իսկ գլխովին» : Տես զիմաստութիւնն. նախ զգովութիւնս եդ, և ապա 'ի միջին զաղաչանս, ապա կրկին զգովութիւնն եդ. որպէս զի յերկաքանչիւրոց կողմանցն զերանելի կնոջն զգովութիւնն կազմեսցէ : Որպէս արդեօք չիցէ երանելի այն որ 'ի Պաւղոսէ այնչափ գովութիւնս ընկալաւ, թէ այնքան առաքինի էր, մինչև նմա կարաց օգնել որ զամենայն տիեզերս ուղղեաց. այնչափ աճեցոյց զպատուութիւնս նորա, որպէս զի և զիւր անունն եդ զկնոջ առնելով՝ թէ «ինձ իսկ գլխովին». քարոզին տիեզերաց՝ որ զանբաւ վշտան կրեաց, որ ամենայն աշխարհաց բաւական էր : Այլ արդ նմանեսցուք այժմ երանելի կնոջն այնմիկ, և յետ նորա դարձեալ այնմիկ՝ որ հանդերձ արամբն էր : Այլ ո՞ ոք իցեն սոքա :

«Ողջոյն տուք, ասէ, Պրիսկիղեայ և Ակիւղեայ աշխատակցաց իմոց 'ի Քրիստոս Յիսուս» : Զսոցա զառաքինութենէ և Ղուկաս վկայէ յորժամ ասէ՝ թէ «Եղև առ նոսա Պաւղոս. քանզի խորանակարք էին արուեստիւք», ասէ : Զայս զկին ցուցանէ թէ ընկալաւ զՊաւղոս, և ուսուցին նմա զճանապարհս տեառն : Մեծ էր և այն, այլ և առաւել էր այն զոր Պաւղոսն ասէր : Այլ արդ զի՞նչ ասիցէ. նախ գործակիցս իւր կոչէ զնոսա, անուաւ ճգնանցն և վշտացն ցուցանէ հաղորդս. ապա ասէ. «Ընդ իմում անձին և զիւրեանց պարանոցս մատուցին» : Տեսանե՞ս զկատարեալ զվկայութիւնն : Քանզի և առ Ներոնիւ իսկ բազում նեղութիւնս և ճգունս ունէին, մանաւանդ յորժամ հրամանն ետ որոշել զՀրէայս 'ի Հռոմայեցւոցն :

«Որոց ոչ ես միայն գոհանամ, այլ և ամենայն եկեղեցիք հեթանոսաց» : Նոյն զօտարասիրութենէն և զոր յիւրեանց ընչիցն պաշտօն մատուցանէին կատարելոցն՝ զայն ակնարկելով սքանչանայ, զի և զարիւնս իւրեանց հեղուին և զինչս առաջի ամենեցուն դնէին : Տեսէ՞ր զքաջութիւն կնոջն, զի ոչ ինչ խափանեցաւ 'ի բնութենէն՝ յառաքինութեան ընթացսն ընթանալ. մանաւանդ եթէ յիրաւի իսկ, քանզի «'ի Քրիստոս Յի-

## ՅՈՐԴՈՐԱԿ

Սոյս և մեծատունք և աղքատք լուսոյն առ հասարակ. զի եթէ նոքա որք 'ի ձեռագործէն կէին և արուեստին վերակացուք՝ այնչափ առատութիւն ցուցին մինչև բազում եկեղեցեաց պիտանիք գտան, ապա զո՞ր պատասխանատուութիւն ունիցին որք մեծացանն և զաղքատսն անտես առնիցեն։ Վասնզի նոքա և յարիւնն անգամ ոչ խնայեցին վասն այ հաճոյիցն. իսկ դու և 'ի ոսկւոյ մի՛ ինչ խնայես. և 'ի քո ոգիդ ոչ խնայես։ Այս առ վարդապետսն այսպիսիք ինչ էին, իսկ առ աշակերտակիցսն իւրեա՞նց։ Սոյն և ասել չէ հնար, որպէս և ինքն առէր՝ թէ եկեղեցիքն հեթանոսաց գոհանան զնոցանէն. զի թէպէտ 'ի հրէից էին, բայց սակայն այնպէս հաստատութեամբ հաւատոցն, որպէս զի զնոսա ամենայն յօժարութեամբ պաշտեսցեն։

Այսպիսի պարտ է լինել կանանց, և մի 'ի հիւս ոսկեմանս և բազմագինս հանդերձս ունել, այլ այսպիսի առաքինութեամբք պաճուճեալ զանձինս։ Ո՞վ որ, ասա ինձ, թագաւոր այնպէս պայծառացաւ, ո՞վ որ այնպէս հռչակաւոր եղև որպէս խորանակարքն կինն՝ որ յամենեցունց բերան կայ. ոչ եթէ զտասն և զքսան ամ միայն, այլ մինչև 'ի գալուստն Քրիստոսի. և ամենեքին զայսպիսի զիրս նորա պատմեն, զոր և ոչ թագն անգամ կարէ զարդարել զթագաւորն։ Վասնզի զի՞նչ մեծ և կամ զոյգ կոյցէ այնմ որ Պաւղոսի վերակացուն լինի, որ իւրով վտանգն կամէր ապրեցուցանել զվարդապետն տիեզերաց։ Դու արդ հայեաց և տես թէ քանի թագաւորք էին, և լռեալ զաղտարէ յիշատակ նոցա. իսկ խորանակարքն կինն ամենայն ուրեք հռչակեալ գտանի հանդերձ խորանակարաւն. և որպէս արեգակն զի յայտնի է ամենայն աշխարհաց, սոյնպէս և փառք կնոջն այնորիկ ընթանան ընդ ամենայն տիեզերս։ Պարսք և սկիւթացիք և թրակացիք և որ 'ի վերջին 'ի ծագս երկրիս բնակեալ են՝ ասանին և ածեն զիմաստութիւն կնոջն և երանեն։ Ո՞րչափ ինչ մեծութիւնս, քանի՛ թագս և ծիրանիս յօժարութեամբ 'ի բաց ընկենուիր, որպէս զի կարասցես ստանալ զվկայութիւնս զայս յանձինդ։

Նա և ասել իսկ որք ոչ ունի թէ յայնպիսի 'ի միշտան էին և յառատութեան ընչիցն, և վասն քարոզութեան անփոյթ առնէին։ Նա և յաղագս այնորիկ կոչէր զնոսա պաշտօնեայս և գործակիցս, և չհամարի անօթ զկանայս պաշտօնակիցս կոչել իւր անօթն ընտրութեան, այլ և հրձուի ևս այսոքիւք. զի ոչ եթէ 'ի բնութիւնն ինչ հայի, այլ 'ի յօժարութեանն պտուղ։ Նա արդ զինչ ինչ զոյգ այնպիսի զարդու կայցէ։ Ո՞ւր է այժմ մեծութիւնն որ ամենայն ուստեք զեզզըր, ո՞ւր է երեսացն գեղեցկութիւն, ո՞ւր են մնոտի փառքն. զննեցէք զկնոջն զարդ և տեսէք, ոչ զմարմինն զգեցուցանէ, այլ զհոգին զարդարէ, զոր ոչն երբէք գոյ հնար 'ի բաց գնել և մերկանալ. որ ոչ 'ի տապանակի կայ, այլ յերկինս։ Տեսէք զնորա վասն քարոզութեանն զաշխատութիւնն, վասն մարտիրոսութեանն զպսակն, վասն ընչիցն զառատութիւնն, վասն Պաւղոսի զսէրն, վասն Քրիստոսի զբարեկամութիւնն։

Նա արդ կշռեա ընդ այսոսիկ և զքոյսն, զընչիցն ըզփոյթն ունել, առ պտանիկսն զյօժարութիւնն, և առ խօսսն զհակառակցութիւնն. և այսպէս յայնժամ առնուս 'ի միտ թէ որպէս ինչ նոքա իցեն և ո՛ դու։ Մանաւանդ եթէ մի կշռեր, այլ նախանձեաց ընդ այնմ կնոջ, և զծանր և զդժար բեռնն 'ի բաց դիր 'ի քէն. քանզի այնպիսի իմն են երևելի հանդերձքն, և արկ զքև զերկնայինն զարդն, և ուսիր եթէ ուստի եղեն։ Օ երկեամ կերակրեցին զՊաւղոս։ Նա արդ զինչ իցէ զերկեամն այն, թէ որպէս զարդարէին զոգիսն իւրեանց։ Նա արդ զինչ կրիցեմ աս . . . ին չունիմ զՊաւղոս։ Եթէ կամիս, ունիս հաւատեաւ և դու որպէս և նոքայն. քանզի զնոսա ոչ եթէ դէմքն Պաւղոսի արարին այնպէս, այլ բանքն Պաւղոսի. որպէս զի թէ կամիցիս, և զՊաւղոս և զՊետրոս և զՅովհաննէս և զամենայն իսկ ըզդասս մարգարէիցն հանդերձ առաքելովքն ունիս քեզ խորհրդակից։ Նա դու զերանելւոյս զայսորիկ զգիրս և հանապազ հանդիպեաց գրոցն, և տես զի կարեն առնել զքեզ որպէս զկինն խորանակարին։ Նա զինչ ասիցեմ եթէ զՊաւղոս, այլ թէ և զտէրն իսկ Պաւղոսի թէ կամիցիս՝ ունիս. վասն զի 'ի ձեռն լեզուին Պաւղոսի նա խօսի ընդ քեզ։ Նա և այլպէս կարես ընդու-

նել զնա՝ յորժամ զատուցման ընդունիցիս, յորժամ որք 'ի նոյն հաւատան՝ դարմանիցես : Նոյնպէս ապա և յետ գնալոյն նոցա բազում երկիւղածութեան յետ . . . .[1]

## ՎԵՐՋԻՆ ՀԱՏՈՒԱԾ
## ԵՐԵՍՆԵՐՈՐԴ ԵՐԿՐՈՐԴ ՃԱՌԻՆ

. . . . . . . . . . . . . . . . .

Այս արդ վասն մեր ով որ աղօթեսցէ եղբարք, քանզի Պաւղոս և Պետրոս հրաժարեցին 'ի մէնջ : Արդ որ զՊաւղոսի նախանձն ունէին . միայն զանձինս արժանիս յօրինեսցուք այնպիսի խորհրդակցութեան, որպէս զի մի միայն աստ լսիցեմք զձայնն Պաւղոսի, այլ զի և յորժամ անտի երթայցեմք՝ տեսանիցեմք զնահատակն Քրիստոսի . մանաւանդ եթէ աստ լսիցեմք նմա, ապա և անդ կարեմք տեսանել զնա . զի թէպէտ և առ նմա չկարիցեմք կալ, բայց սակայն տեսանիցեմք մերձ առ արքունական աթոռոյն պայծառացեալ . յորում աւուրս քերովբէքն փառաբանեն, յորում աւուրս սերովբէքն թռչին : Անդ տեսանիցեմք զՊաւղոս հանդերձ Պետրոսիւ և այլովք սրբովքն դասուք զգլխաւորօքն և վերակացուօքն, և սէրս 'ի սէրն յայնժամ վայելեմք : Զի թէ մինչ աստ էր՝ այնպէս սիրէր զմարդիկ, որում յընտրելն էր զատանել և ընդ Քրիստոսի լինել, և նա այն հաճոյ թողեալ աստէն յամել վասն մեր, ապա եւս առաւել անդ ցուցանէ զջերմագոյն սէրն :

Այս և զՀռոմ վասն այնորիկ սիրեմ, զի թէպէտ և ունէի այլ ուստեք գովել զնա, և 'ի մեծութենէն, և զի զգլուխ ամենեցուն էր, և 'ի գեղեցկութենէն, և 'ի բազմութենէն, և 'ի զօրութենէն, և յընչաւէտութենէն, և արութեանցն զոր 'ի պատերազմունս ցուցին, արդ զայս ամենայն 'ի բաց թողեալ իմ, յաղագս այնորիկ երանեմ նոցա՝ զի և կենդանւոյն առ նոսա գրէր, և այնպէս սիրէր զնոսա զի յորժամ չոգաւն՝ բերան 'ի բերան խօսէր ընդ նոսա, և զվախճան իւր անդ կատա

1 Պակասի մինչև ցկէս ԼԲ ճառին որ է վերջին.

րեաց, և զոսկերս մարմնոյն նոցա ունին. որով և նշանաւոր իսկ այնու եղև քաղաքն այն քան այլովք ամենայնիւ. և որպէս մարմին ինչ գեղեցիկ և զօրաւոր երկուս աչս ունելով՝ այնպէս ճառագայթեալ ունի զսրբոցն զայնոցիկ զմարմինս։

Չեն այնպէս երկինք պայծառ յորժամ արեգակն ճառագայթս արձակիցէ, որպէս Հռովմայեցւոց քաղաքն որ ունի զայնպիսի զամբարս՝ որք ընդ ամենայն տիեզերս արձակեն ճառագայթս։ Անտի յափշտակի Պաւղոս, անտի Պետրոս։ Ադէ ածէք զմտաւ և զարհուրեցարուք, որպիսի սքանչելիս տեսանէ Հռոմ, ընդ Պաւղոս յանկարծակի 'ի դրանէ[1] իւրմէ հանդերձ Պետրոսիւ յափշտակեալ ընդ առաջ տեառն։ Որպիսի ընծայս մատուցանէ Հռոմ տեառն, և զորպիսի պսակս ունի քաղաքն այն, և կամ որպիսի զօրաւոր ոսկի շարս զգեցեալ, և կամ որպիսի աղբիւրս ընկալեալ։ Վասն այնորիկ զարմանամ ընդ քաղաքն ընդ այն ոչ վասն բազում ոսկւոյն և ոչ վասն սեանցն և ոչ վասն այլ ինչ երևելեացն, այլ յաղագս սեանցն եկեղեցւոյ։

Ո՞վ տայր ինձ այժմ զեղուլ զմարմնովն Պաւղոսի և թաւալել ընդ գերեզմանին և տեսանել զաճիւն մարմնոյն այնորիկ, որով զպակասութիւն նեղութեանցն Քրիստոսի լնոյր, որով զերաշխէպսն ընդունէր, որով զքարոզութիւնն ամենայն ուրեք տարածանէր. զաճիւն մարմնոյն այնորիկ, որով Քրիստոսն բարբառէր, և լոյս ծագեաց՝ որ քան զամենայն փայլատակունս ևս պայծառ էր, և բարբառն՝ որ քան զամենայն որոտմունս ևս ահագին թուէր դիւացն, որով երանելին այն բարբառէր ասելովն՝ թէ "Աղօթեմ նզով լինել 'ի Քրիստոսէ վասն եղբարց իմոց". որով հրապարակախօս լինէր առաջի թագաւորաց և ոչ ամաչէր. որով զՊաւղոսն ճանաչեմք, որով զտէրն իսկ Պաւղոսի։

Ոչ այնչափ զարհուրեցուցանէ զմեզ որոտումն, որպէս ձայնն Պաւղոսի զդևս. զի եթէ 'ի հանդերձից նորա սարսէին, ապա յայտ է թէ ևս առաւել 'ի ձայնէն տագնապէին։ Նա զդևս հալածական տարաւ, նա ըզտիեզերս սրբեաց, նա զհիւանդութիւնս ելոյծ, նա զա-

1 Յոյնն 'ի պաղպանէ։

նորատութիւնս 'ի բաց խլեաց և զճշմարտութիւն տըն-
կեաց. քանզի Քրիստոս հանգուցեալ էր 'ի լեզուի նո-
րա, և նովաւ ամենայն ուրեք յառաջեալ գտանէր. և
որպիսի ինչ են քերովբէքն, այնպիսի էր ձայնն Պօղո-
սի. և զոր օրինակ 'ի վերայ այնր զօրութեանց նստի,
այնպէս և 'ի վերայ լեզուին Պօղոսի. և քանզի ար-
ժանի եղև զՔրիստոս ընդունել, այսպէս զայն միայն բար-
բառէր զոր Քրիստոսն սիրէր, և յայնչափ 'ի բարձրու-
թիւնն թռուցեալ ամբառնայր որպէս սերովբէքն:

Այլ արդ զինչ ինչ քան զայն բարձրագոյն կայր զու-
ասէրն. "Յստահ եմ զի ոչ հրեշտակք և ոչ իշխա-
նութիւնք և՛ ոչ զօրութիւնք և ոչ որ կանս և ոչ հան-
դերձեալքն և ոչ բարձրութիւնք և ոչ խորութիւնք
և ոչ այլ ինչ արարած կարէ մեկնել զմեզ 'ի սիրոյն այ
որ 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր„: Քանի՞ թէև
կարծիցես թէ ունիցի ձայնս այս, քանի՞ աչս. նա վասն
այնորիկ ասէր թէ "Ձեռք ինչ անտեղեակ խորհրդոց
նորա„. յաղագս այնորիկ փախուցեալ հալածական լի-
նէին դեւք, ոչ 'ի բարբառոյն միայն, այլ և մինչդեռ հե-
ռին լինէր 'ի նոցանէն՝ 'ի հանդերձից տեսլենէ հեր-
քեալ փախչէին: Արժէր այժմ տեսանել զածին բե-
րանոյն այնորիկ որով զանձառաբլիսն Քրիստոսի բար-
բառեցաւ, մանաւանդ թէ և ս մեծագոյն քան ինքեանն.
նա և ս մեծամեծս 'ի ձեռն աշակերտացն գործեաց քան
ինքեանն, այնպէս և զանձառաբլիսն 'ի ձեռն նոցա բար-
բառեցաւ, նա և հոգւոյն բաշխմունք ընդ տիեզերս ա-
մենայն նոցա հաւատացաւ:

Այլ արդ զինչ ինչ ոչ գործեաց բարութիւնս բերանն
Պօղոսի. զդևս հալածեաց, զմեղս ջնջեաց, զանմտութս
ընթերանէր, զփիլիսոփայից բերանս խցայր, զտիեզերս
ամենայն ընծայ մատոյց այ, զբարբարոսս փիլիսոփայել
ուսոյց, զամենեսեան յորդորեաց, ամենայնի հասու եղև
որ ինչ յերկինս և որ ինչ յերկրի, և զոր ինչ կամէր՝
ամենայն տուեալ լինէր, կապել և արձակել զորս կա-
մէրն՝ ունէր իշխանութիւն:

Այլ արդ ոչ միայն զբերանոյ նորա զածին կամէի տե-
սանել, այլ և զսրտին. նա և չմեղանչէ ինչ ոք եթէ
սիրտ տիեզերաց կոչիցէ զնա, և աղբիւր բարութեանց,
և սկիզբն և արմատ տարերս կենաց մերոց: Քանզի

հոգին կենդանութեան 'ի նմանէն բաշխէր յամենե-սեան և անդամոցն Քրիստոսի տուեալ լինէր, ոչ եթէ տուրևառիկ կերակրովքն, այլ ըստ բարւոք յօժարու-թեանն։ Այնպէս անգորր էր սիրտն Պաւղոսի, մինչ զի և բովանդակ զքաղաքս անգամ և զաւանս ազգաց տանէր. քանզի "Սիրտք մեր, ասէ, ընդարձակեալ են առ ձեզ"։ Այլ զայնպիսի զընդարձակ սիրտն երբեմն և ձմլեաց իսկ նեղումն յաճախ սիրոյ. քանզի ասէ՝ թէ "Ի բազում վշտաց և 'ի նեղութենէ սրտի գրեցի առ ձեզ"։

Զսա և զլուծեալն ցանկայր տեսանել, որ ջեռնոյր հանապազօր վասն այլոց կորստեան, որ կրկին երկնէր՝ որք բլշակնեցան որդիքն յոյ 'ի տեսլենէն։ Զի որք սուրբքն իցեն, ասէ, սրտիւք՝ նոքա զա̃ծ տեսցեն, իսկ որ պատարագն ա̃յ եղև ամենևին՝ վասն զինչ կարծիցես. պատարագ ա̃յ հոգի մանրեալ։ Ապա որպէս վարկանի-ցես որ բարձրագոյն քան զերկինս էր, որ բղխումն էր տիեզերաց, որ քան զճառագայթսն ևս լուսաւորագոյն էր, որ քան զհուր ևս ջերմագոյն և քան զադամանդ ևս կարծրագոյն յորմէ գետքն հոսէին, քանզի ասէ. "Գետք յորովայնէ նորա բղխեսցեն ջրոց կենդանու-թեան"։ ուստի ելանէր աղբիւրն և արբուցանէր ոչ ե-թէ զերեսս երկրի, այլ զոգիս մարդկան. ուստի ոչ գետք միայն, այլ և աղբերք արտասուաց հոսէին զցայգ և զցե-րեկ. որ նորագոյն իմն կեանս կեայր, և ոչ եթէ զմերս. "Կենդանի եմ ես, ասէ, ոչ եթէ ես, այլ կենդանի է յիս Քրիստոս"։ Ապա ուրեմն նորա սիրտն էր Պաւ-ղոսի սիրտ, և հոգւոյն սրբոյ տախտակք և գիրք շնոր-հաց. որ դողայրն յաղագս այլոց մեղաց. "Զարհու-րիմ, ասէ, գուցէ ընդունայն ինչ վաստակեցի 'ի ձեզ"։ և դարձեալ թէ "Գուցէ որպէս օձն խաբեաց զԵւա"։ և եթէ "Մի գուցէ յորժամ գայցեմն և չգտանիցեմ զձեզ որպէս և կամիմն"։ Նա և յաղագս իսկ իւր կաս-կածէր. և դարձեալ եթէ. "Ստահ եմ զի ոչ հրեշ-տակք և ոչ զօրութիւնք կարեն մեկնել զիս 'ի սիրոյն ա̃յ"։ որ արժանին եղև սիրել զՔրիստոս որպէս ոչ այլ ոք սիրեաց. որ զմահ և զգեհենն արհամարհէր, և յեղ-բայրականն արտասուացն փղձկեալ լինէր. "Զինչ գոր-ծէք, ասէ, զի լայք և ձմլէք զսիրտ իմ"։ զժուժկալ.

Այս զայն յայնժամ առնէր յորժամ մեկնելոց էր 'ի նոցանէն:

Արժէր տեսանել զանձինն ձեռացն՝ որ շղթայիւքն կապեալ էին, որոյ ձեռնադրութեամբն հոգին առեալ լինէր, որովք այսպիսի գիրս գրէր. "Տեսէք, ասէ, որպիսի գրով գրեցի առ ձեզ իմով ձեռամբ„. և դարձեալ թէ "Ողջոյն այս իմոյ ձեռամբն Պաւղոսի է„. զանձին ձեռացն այնորիկ զոր եռես իժն և 'ի խարոյկն անկաւ: Արժէր տեսանել զանձինն աչացն զանեզրական զգեղեցկութիւնն՝ որք հայեցան 'ի փրկութիւն ազգերաց, որք և 'ի կենդանութեան եղեն արժանի զՔրիստոս տեսանել, որք տեսանէին զերկրաւորս և չտեսանէին, որք ոչ դիտէին զքուն, որք 'ի մէջ գիշերին տքնէին և ոչ ինչ վնասէին աչքն: Արժէր և զոտիցն նորա զանձինն տեսանել, որք ընթանային ընդ ազգերս և ոչ վաստակէին, որք 'ի կոճեղան կային պնդեալ յորժամ 'ի նորա 'ի բանտին էր, որք ընդ շէնն և ընդ անշէնն ընթանային, որք բազում անգամ ճանապարհորդէին. Այլ արդ էր վասն մի մի ինչ ասիցեմ. նա կամէի զգերեզմանն իսկ տեսանել, յորում զէնն արդարութեան շտեմարանեալ կայ, զէնն լուսոյ, զանդամսն որ այժմ կենդանիք են մինչ մեռեալ, և մինչ կենդանիք էին՝ մեռեալ էին, յորս յամենեսեան Քրիստոսն էր կենդանի, որ աշխարհիս 'ի խաչն ելեալ էին, որ Քրիստոսի անդամն էր, որ կապեալն էր 'ի Քրիստոս, որ տաճարն էր հոգւոյն սրբոյ, որ շինուածն էր սրբոցն, որ կապեալն էր հոգւոյն, որ բևեռեալն էր ընդ երկիւղն այ, որ կրէր զխարազանս Քրիստոսի: Վասնզի այս մարմին պարսպէ զքաղաքն զայն, և քան զամենայն աշտարակս և զպարիսպս ես զգուշութեամբ պահէ: Ընդ սորայս և Պետրոսին: Նա մինչ կենդանին իսկ էր՝ պատուէր զայլն. քանզի "Ելի, ասէ, տեսանել զՊետրոս„. վասն այնորիկ և 'ի վախճանին արժանի արարին շնորհքն յարկակից միմեանց լինել:

Արժէր տեսանել զառիւծն հոգևոր. զի որպէս առիւծ հուր հնչէ յորժամ 'ի ձահուկս աղուեսուց խառնիցի, այնպէս և նա 'ի դիւաց և 'ի փիլիսոփայիցն 'ի փախստակս մտեալ. և որպէս զառաջամնա զգայլն ինչ կողմ մտանիցես, այնպէս և նա 'ի վայր կործանէր զա-

մենայն փաղանգս դիւաց։ Այս և ոչ ճակատու պատրաստութեամբ կարէր յանդիման լինել նմա. այլ այնպէս զահի հարեալ էր և դողայր, մինչ զի և յորժամ զստուերն տեսանէր և կամ զձայնն լսէր 'ի հեռաստանէ՝ փախստական լինէր։ Այնպէս և զպոռնկացեալն մինչդեռ ինքն հեռին էր՝ մատնեաց 'ի ձեռս նորա, և դարձեալ յորժամ կամեցաւն՝ յափշտակեաց 'ի ձեռաց նորա, և զայլս դարձեալ զի խրատեսցին չհայհոյել։ Տես զիարդ որք նուաւ կարգեալ էին անգամ, փոխէ[1], քաջալերէ, ողոքէ, օծանէ. նա և եփեսացւոցն գրեալ ասէր՝ թէ "Ոչ է մեզ մարտ առ մարմին և արիւն, այլ առ իշխանութիւնս և առ պետութիւնս"։ Այսպէս և ըղյօժարութիւնն[2] դնէ՝ թէ որ յերկինսն է. "Քանզի չէ, ասէ, մեր կռիւս վասն երկրաւորացս, այլ յաղագս երկնից և որ ինչ յերկինսն է"․ դարձեալ այլոց ասէ. "Ո՛չ գիտէք թէ զհրեշտակս դատիմք, թող թէ զերկրաւորս"։

Այս արդ զայս ամենայն խմացեալ, կացցուք առաքինութեամբ հաստատուն. քանզի Պաւղոս մարդ էր՝ ամին ինքն բնութեանս մերոյ հաղորդ, և զայն ամենայն հասարակ ունէր. այլ զի առաւել քան զամենեսեան սիրեաց զՔրիստոս, և 'ի վեր քան զերկինս գտաւ և ընդ հրեշտակս եղև։ Արդ և մեք թէ կամիցիմք արթուն լինել փոքր մի և զհուրն զայն յանձինս մեր վառել, կարեմք նմանել սրբոյն այնմիկ. նա թէ և անհնար ինչ իրք էին, ապա ոչ գոչէր և ասէր՝ եթէ "Նմանողք ինձ եղերուք, որպէս և ես Քրիստոսի"։ Այս արդ մի միայն սքանչասցուք և զարմասցուք ընդ Պաւղոս, այլ և նմանողք նմին լիցուք, որպէս զի արժանի լիցուք յորժամ աստ անդր երթիցեմք տեսանել զնա և անճառելի փառացն հաղորդս գտանիցիմք. որոց լիցի ամենեցուն ժամանել 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որում փառք յաւիտեանս. ամէն։

1 Օրինակ մի սփոփէ. յոյնն հրահանգէ։

2 Յոյնն ըմբշամարտն։

# ՀԱՏՈՒԱԾՔ

## ԱՅԼՈՑ ԹՂԹՈՑՆ ՊԱՒՂՈՍԻ



## Ա· ԿՈՐՆԹԱՑԻՈՑ

### ՅԵՕԹՆԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

“Զոր ոչ ոք յիշխանաց յաւիտենիս այսորիկ գիտաց. զի թէ էր գիտացեալ, ոչ զտէրն խաչէին”: Ապա-թէ ոչ գիտէին, ընդէ՞ր ասէր “Այլ զիս գիտէք, և ուստի եմն գիտէք”: Զի յաղագս Պիղատոսի ասէ զի՛ թէ ոչ գիտէր, և եթէ Հերովդէս ոչ գիտէր: Բայց զնոսա ասասցէ ոք արդեօք կոչել իշխան յաւիտենիս այսորիկ: Այլ եթէ վասն Հրէիցն և յաղագս քահանայիցն ասիցէ ոք զայս ասել՝ ոչ սխալեսցէ. քանզի և ցնոսա ասէ. “Ոչ զիս գիտէք և ոչ զՀայրն իմ”: Այլ զիարդ վերագոյնն ասէ՝ և զիս գիտէք, և ուստի եմ գիտէք: Բայց զի՞նչ օրինակ գիտութեանս այսմիկ, և զի՞նչ այնորիկ որ յաւետարանին ասէ:

Այլ արդ զի՞նչ, թողո՛ւ, ասէ, նոցա որ յաղագս խաչին են մեղք. քանզի ո՞չ ասէ սոցա՝ թէ ապաշխարեալ էր՝ թողցի: Վասնզի որ բիւր ձեռաց մատնեաց զՍտեփանոս և հալածեաց զեկեղեցի Պաւղոս՝ եկեղեցւոյ վերակացու եղև. նոյնպէս և նոցա թողցի եթէ կամեցեալ էր ապաշխարել, զոր և Պաւղոս գոչէ. “Իսկ արդ ասեմ, միթէ գայթակղեցին զի գլորեսցին. քաւ լիցի”: Ասեմ, միթէ մերժեաց Աստուած զժողովուրդ իւր. քաւ լիցի: Այս ցուցանէ թէ ոչ փակեցաւ 'ի նոցանէ ապաշխարութիւն: Բայց “ոչ ծանեան”, ինձ թուի ոչ յաղագս Քրիստոսի ասա ասել, այլ վասն նորին իրաց մատակարարութեան. որպիսի ինչ, զինչ կամէրն մահն, և

նիցէ ընդ գետ հրոյ, պայծառագոյն անցանէ. ապա թէ խառն ունի, ոչ միոյն չանցանէ, այլ և զանձն ևս կորուսանէ... "Սակայն ինքն ապրեսցի որպէս թէ 'ի հուր". այս իսկ է, ինքն ոչ նոյնպէս կորիցէ որպէս զգործն, այլ մնայ 'ի հուրն... քանզի մեր սովորութիւն է ասել' 'ի հուր ապրել յաղագս այնորիկ որ ոչն այրի նիւթն և ոչ ծիւրանայ: Արդ մի զի հուր լուսոյ' կարծիցես յանդուգն թիւն զատանալ 'այրեցելոցն: Իսկ թէ փրկութիւն կոչէ զայնպիսի տանջանս, մի զարմանար. զի սովորութիւն է նորա յաղագս չարաչար ասացելոցն բարի անուանս վարել, որպէս Պաւղոս ասէ. "Գերեալք զամենայն միտս 'ի հնազանդութիւնն Քրիստոսի". և եթէ "Խափանեաց մահ". նոյնպէս և աստ' ապրիցէ, ոչ ինչ այլ. քան թէ սատակութիւն տանջանաց զեկոյց. այս իսկ է' կացցէ մնասցէ մշտնջենաւոր տանջեալ:

### Ի ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

"Մատնեցէք զայնպիսին սատանայի 'ի սատակումն մարմնոյ, զի ոգին ապրեսցի յաւուր Տեառն". որպէս Յոբայն եղև, այլ ոչ վասն նորին պատճառի. զի անդ վասն պայծառ պսակաց, իսկ աստ վասն մեղաց լուծանելոյ, զի տանջեսցէ զնա չարաչար կեղով և այլով հիւանդութեամբ: Իսկ սակայն այլուր ասէ' թէ "Ի տեառնէ դատիմք", զայնպիսիկ կրելով. այլ աստ առաւել կսկծեցուցանէ սատանայի մատնելով: Իսկ այս ըստ իմոյ կամեցն լինէր. վասն զի 'ի շառակերութենէ և 'ի փափկութենէ մարմնոյ ցանկութիւնք ծնանին, զայն տանջէ, հոգին ապրեսցի, այսինքն անձն... զի սորա ապրեցելոյ' և մարմնին հաղորդի փրկութեան. զի և մահկանացու յաղագս նորա եղև' մեղուցեալ. և եթէ արդարութեանց վարի, դարձեալ յոլովս ևս վայելէ 'ի փառս: Սակայն տեսանեմք հոգւոյն զշնորհսն ասէն, որ չիջանեն 'ի մեղանչելն մերում:

## Ի ՎԵՇՏԱՍԱՆԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

"Ո՞չ գիտէք, զհրեշտակս դատիմք, թող թէ զաշխարհականս": Ոմանք ասեն զքահանայս զեկուցանել. այլ 'ի բաց տար, քանզի յաղագս դիւաց է բանս.... զորոց ասէ Քրիստոս. "Պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա": և Պաւղոս. "Հրեշտակք նորա ձևանան իբրև զհրեշտակս արդարս": Ո՛չ յորժամ անմարմինն զօրութիւնքն այնոքիկ նուազագոյնք քան ըզմեզ գտանիցին՝ որք զմարմինս եմք զգեցեալ, դժնդակագոյն տայցեն զդատաստան:

## Ի ՔՍԱՆԵՒՀԻՆԳԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

"Ամենայն որ 'ի սպանդանոցի վաճառի, կերայք և մի խտրէք": Քանզի յանգէտս, ասէ, թէ ուտիցես և ոչ գիտիցես, ոչ անկանիս ընդ տանջանօք. զի անգիտութեան են իրք, և ոչ որկորամոլութեան: Այլ ոչ յայնմանէ միայն ազատէ զնա յանգիտութենէն, այլ և այլուստ բազում համարձակութիւն և ազատութիւն նոցա պատրաստելով. զի և ոչ քննել թողու, այսինքն է հարցափորձել և խուզել զոհեալ կամ իցէ եթէ ոչ, այլ պարզաբար ուտել զամենայն 'ի գաւհացն, և մի ինչ ուսանել թէ զինչ արդեօք իցէ որ առաջին կայ, և ինքեամբ ընձեռել զպատճառն, զի իցէ և անգիտութեամբ ուտելոյն 'ի բաց վճարել: Քանզի այսոքիկ որք ոչ բնութեամբ են չարք, այլ իւրեանց միտքն առնիցեն անմաքուրս. վասն այնորիկ ասէ՝ մի ինչ քննիցէք: "Քանզի տեառն է երկիր լրիւ իւրով", և ոչ կռոցն: Այլ եթէ երկիր և պտուղք և անասունք, և եթէ նորա ամենայն, ոչ ինչ է անմաքուր, բայց այլ աղտ անմաքուր լինի 'ի մտաց և յանհնազանդութենէն: "Եթէ ոք կոչեսցէ զձեզ յանհաւատից, զոր ինչ առաջի դնէ՝ կերիջիք և մի հարցանէք վասն խղճի":

Ի ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

Այլ ոչ գիտեմ, ասէ, թէ յոր տեղի չոգաւ։ Ի՞ր վասն չգիտես, ասա ինձ. զի թէ ուղիղ վարեցաւ կամ թէ այլ ազգ ինչ, յայտ է թէ ուր երթալոց է։ Վասն այսորիկ կոծիմ, ասէ, զի մեղաւոր գնաց աստի։ Պատճառք են այդոքիկ և բարուք. 'ի կենդանութեան նորա պարտ էր քեզ արտասուել, զի թերևս կարճէիր զնա 'ի մեղացն։ Իսկ դու աւանիկ տեսանիս այժմ զի անձնայն իրօք զանձին խնդրես և ոչ զհանգուցելոյն. ընդ այն ևս պարտ էր քեզ ուրախ լինել զի կարճեցաւ յառաջիկայ մեղացն. և ոչ եթէ ողբալ, այլ օգնել գնացելոյն, ոչ արտասուօք միայն, այլ աղօթիւք և պահօք և ողորմութեամբ հաշտեցուցանել զԱծ ընդ նմա։

Քանզի ոչ եթէ ընդ վայր ինչ իրք կարգեցան այս և կամ 'ի զուր ինչ յիշեմք յԱծային խորհրդեան զննջեցեալսն, և վասն ամենեցուն իսկ մատուցանեմք զաղաչանս, զԳառնն առաջի կայ՝ որ եբարձ զմեղս աշխարհի.... Այլ ոչ դարձեալ ընդունայն ինչ որ առաջի սեղանոյն կայ, և զահագին և զսոսկալի խորհուրդն կատարէ, գոչէ՝ վասն ամենեցուն 'ի Քրիստոս ննջեցելոցն, նա և զյիշատակսն ևս վասն նոցա կատարէ։ Ոչ եթէ վասն նոցա քաւութեանն չէր, ապա և ոչ ասէաք իսկ զայնոսիկ. զի ոչ եթէ ընդ խաղ ինչ իրք են, այլ Հոգւոյն սրբոյ հրամանք կատարին։ Այլ արդ զայս գիտելով օգնեսցուք գնացելոյն և կատարեսցուք վասն նոցա յիշատակ. զի եթէ զորդիսն Յոբայ սրբեցին ողջակէզքն, ապա ո՞րչափ ևս առաւել արիւնն Քրիստոսի. զի բաւական է այս նոցա յօգնականութիւն և 'ի մխիթարութիւն. քանզի տէր իսկ է Ած այլովք այլոց պարգևել։ Այլ զայս Պաւղոսի յայտ արարեալ ասէր՝ թէ 'ի բազմադէմ շնորհացն որ 'ի մեզ՝ բազմօք պարգևեցաւ գոհութիւն վասն ձեր։

Այլ արդ մի՛ յապաղեսցուք տանել զյիշատակս վասն ննջեցելոցն, օգնել և աղօթս մատուցանել վասն նոցա. քանզի հասարակ իսկ առաջի ամենայն տիեզերաց կայ սրբութիւն. վասն այսորիկ համարձակիմք վասն ամենայն տիեզերաց աղօթս մատուցանել, և ընդ խոստովանողս

և ընդ քահանայս անուանեմք զգնացեալսն։ Սոյն զի ամենեքեան մի մարմին եմք և պայծառ անդամք յանդամոց նորա․ վասն այսորիկ կարող եմք ամենայն ուժեք ամբարձել մեռելոց բազում օգնականութիւն և ներումն թողութեան յաղօթիցն և 'ի պատարագէն զոր վասն նոցա մատուցանեմք, և յայնցանէ ընդ որս անուանեմք զնոսա։ Դու արդ ընդէ՞ր վշտագնիս և ողբաս որ այսչափ օգնականութիւնս և ներումն թողութեան կարող ես շնորհել գնացելոցն։

## ՀԱՏՈՒԱԾՔ Բ․ ԿՈՐՆԹԱՑԻՈՑ

### ՅԻՆՆԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

“Զի եթէ արտաքին մարդս մեր ապականի, այլ ներքինն նորոգի օր ըստ օրէ”։ Զիարդ ապականի․ տանջեալ հալածեալ, բիւր չարչարանս դժնդակս կրեալ։ “Այլ ներքինն նորոգի օր ըստ օրէ”։ Զիարդ նորոգի․ հաւատով, յուսով, յօժարութեամբ, համարձակեալ այնու հետև 'ի դժնդակութիւնս։ Զի որչափ բիւր անգամ չարչարեսցի մարմինս այս, այնքան քաջալերագոյն ունի յոյս հոգին, և պայծառագոյն լինի որպէս ոսկի առաւել ևս 'ի հուր։

### Ի ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

“Տուաւ ինձ խոչ մարմնոյ հրեշտակ սատանայ”։ Ոմանք զգլխացաւութիւն ինձ ասացին 'ի սատանայէ լեալ․ այլ ոչ է, զի և ոչ մարմինն Պաւղոսի 'ի սատանայի ձեռս տուաւ․ որ և ինքն բանսարկուն հրամանի միայն պարտաւոր տեղի տայր Պաւղոսի, և օրէնս նմա և հրամանս դնէր՝ յորժամ զպոռնիկն մատնեաց 'ի սատակումն մարմնոյ․ և զանցանել ընդ այն ոչ իշխեաց նա։ . . . Սատան ընդդիմակաց ասի եբրայեցւոցն ձայնիւ․ և յերկրորդ թագաւորութեանն զընդդիմակացսն այսպէս կոչեցին գիրք․ և յաղագս Սողոմոնի ասէ՝ թէ ոչ գոյր սատան յաւուրս նորա, այսինքն ընդդիմակաց, պատերազմելով նեղելով։ Արդ զոր ասէն սատանայ է․ ոչ ներեաց ած առանց աշխատութեան յառաջանալ

քարոզութեանն. զխորհուրդս մեր զննեցանելով, այլ մնալոյ հակառակորդաց մերոց յառնել 'ի վերայ մեր... Հրեշտակ սատանայ ասէ զԱղեքսանդրոս դարբին և զՀիմենոս և զՓիլետոս, որ ասէին զյարութիւն արդէն լեալ. և զամենեսեան պարզաբար ընդդիմակացն քարոզութեանն որք վիճէին ընդ նմա և պատերազմէին, որք արկին զնա 'ի կապանարան, որք կապեցին, որք տանէին. և զի զսատանայի գործ գործէին։ Որպէս որդիս բանսարկուին կոչէ զՀրեայսն՝ որք զնորայն նախանձէին, նոյնպէս և հրեշտակ սատանայ զամենեսեան՝ որք ընդդէմ կային քարոզութեանն։ Արդ զայս ասէ. «Տուաւ ինձ խոչ, զի զիս կոփեսցէ». ոչ որպէս ոմն զնոսա զինեալ, քաւ լիցի, այլ որպէս ոչ տանջեալ և ոչ չարչարեալ առ ժամանակ մի, այլ ներեալ և թոյլ տալ վայր մի։

# ՀԱՏՈՒԱԾՔ Ի ԳԱՂԱՏԱՑԻՈՑ

## ՅԵՐՐՈՐԴ ՃԱՌԷՆ

«Քրիստոս գնեաց զմեզ յանիծից օրինաց». և սակայն այլոց նզովից պարտական էր ժողովուրդն. որ ասէրն, «Անիծեալ ամենայն որ ոչ կացցէ յամենայն 'ի գրեալս 'ի գիրս օրինաց»։ Եւ զի՞նչ այս. ժողովուրդն պարտական էր այսմ. վասն զի ոչ եկաց մնաց, և ոչ ոք էր որ ելից զօրէնս զամենայն։ Իսկ Քրիստոս այլ նզովս ընդ այնորիկ փոխանակեաց. որք ասէին, «Անիծեալ որ կախեալ կայցէ զփայտէ»։ Եւ արդ զի որ կախեալն էր՝ նզովեալ էր, և որ զօրինօքն անցանէր՝ նզովեալ. հանդերձեալ զայնոսիկ լուծանել զնզովսն՝ պարտական լինել ոչ էր պարտ և արժան նորա. պատշաճ էր և ընդունել զնզովսն. փոխանակ այնոցիկ զնոսա ընկալաւ, և անտի զնոսա ելոյծ։ Եւ զոր օրինակ ընդ դատապարտեցելոյ ուրուք մեռանել՝ այլ ոք անպարտ ախորժեսցէ մեռանել յաղագս նորա, յափշտակեսցէ 'ի տանջանացն զնա, նոյնպէս և Քրիստոս արար. վասն զի ոչ կայր ընդ նզովիւք յանցանացն Քրիստոս, ընկալաւ փոխանակ նոցա զայսոսիկ, զի լուծցէ զնոսա. քանզի «մեղս ոչ արար, և ոչ գտաւ նենգութիւն 'ի բերան նորա»։ Արդ եթէ

մեռեալ ողք հանդերձեալ էին մեռանել՝ փրկեաց 'ի մահուանէ, նոյնպէս և զանէծսն ընդունելով՝ յանիծիցն 'ի բաց վճարեաց։

## Ի ՀԻՆԳԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

"Մարմին ցանկայ հակառակ հոգւոյ„։ Ոմն 'ի վերայ յարձակին ոմանք, թէ երկուս բաժանեաց զմարդն առաքեալն իբրև 'ի հակառակ բնութեանց կազմեալ... Այլ ոչ են այնոքիկ, ոչ են. զի մարմին աստ ոչ զմարմին ասէ. ապա թէ ոչ՝ զիա՞րդ ունի բան որ 'ի կարգիս՝ ցանկանայ, ասէ, ընդդէմ հոգւոյ։ Այլ սակայն այս ոչ շարժողին, այլ շարժեցելոյն է. ոչ գործողին, այլ որ գործիցին։ . . . . Ցանկութիւն ոչ մարմնոյն, այլ հոգւոյ է. զի և այլուր ասէ, ցանկացեալ է անձն իմ. և զինչ ցանկայ անձն քո՛ արարից քեզ. և մի գնասցես ըստ ցանկութեան ոգւոյ քո։ Այլ դարձեալ՝ որ և ցանկայ հոգի իմ։ . . . Գիտէ մարմին կոչել ոչ զմարմնոյն բնութիւն, այլ զչար յօժարութիւն. որպէս յորժամ ասիցէ, դուք ոչ էք 'ի մարմնի, այլ 'ի հոգւոջ։ Այլ դարձեալ, որ 'ի մարմնին՝ այ հաճոյ լինել ոչ կարեն։ Այլ արդ զինչ՝ սպանանե՞լ պարտ իցէ զմարմին։ Ինքն՝ որ զայս ասէր, ո՞չ էր մարմին զգեցեալ։ Ոչ մարմնոյ, այլ բանսարկուին են այդոքիկ աղանդք. վասն զի նա է մարդասպան։ . . . Մարմին աստ զխորհուրդսն զերկրայինս կոչէ, զպղերգացեալս և զծոյլս . . . քանզի շնչաւոր մարդ ասի՝ որ 'ի ճշմարտութենէ է զրկեալ. և հոգի չարութեան ասի զդիւացն բազմութիւնն։

## Ի ՎԵՑԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

"Այլ զբարիս գործել մի ձանձրասցուք, զի 'ի ժամանակի իւրում հնձեսցուք առանց լքանելոյ։ Մի՛, ասէ, խաբիք, Ած ոչ արհամարհի. զի զոր սերմանէ մարդ, զնոյն և հնձեսցէ. զի զոր սերմանէ 'ի մարմին իւր, 'ի մարմնոյ անտի հնձեսցէ զապականութիւն. և որ սերմանէ 'ի հոգի, 'ի հոգւոյ անտի հնձեսցէ զկեանսն յաւիտենից„։ Զոր օրինակ 'ի սերմանիսն ոչ է հնար եթէ վլիգն ոք սերմանիցէ և ցորեան հնձեսցէ, զի այն-

-պէս 'ի դէմս է ըստ այլոց սերմանն և հնձողն լինել, նոյն-պէս և 'ի գործս, որ սերմանէ 'ի մարմին փափկութիւն, ցանկութիւն, արբեցութիւն, պղծողական հնձեսցէ ան-տի : Այլ զինչ իցեն . տանջանք, պատիժք, ամօթ, ծաղր և ապականութիւն : Քանզի բազմապատիկ յօրինեալ սերմանոյն և այսպէս խորտակացն չէ ինչ այլ վախճան, եթէ ոչ ապականութիւն . զի ինքեանք ապականին, և զմարմինն ընդ նմին ապականեն : Իսկ ոգւոյն ոչ այսպի-սիք ինչ են, այլ ամենևին նոցին հակառակքն . սերմա-նեսցէր զողորմածութիւն, կամ պահին քեզ գանձք յեր-կինս և փառքն յաւիտենականք . սերմանեսցէր զզգա-ստութիւն, կայ և մնայ քեզ պարգևք և պատիւ և հրեշ-տակացն զուարթութիւնք և յարարչէն պատերազմացն պը-սակք . . . . . . . . . . . . . . . . . . .

«Որով ինձ աշխարհս 'ի խաչ ելեալ»։ Աշխարհս աս-է ոչ զերկինս և զերկիր, այլ զաշխարհական իրս, զգո-վութիւնս 'ի մարդկանէ, զպատուաւորութիւնս, զփառս, զընչեղութիւն, զայլ ամենայն որ թուին պայծառք . այ-սոքիկ ինձ մեռեալք եղեն . . . և զմիւսն 'ի վերայ եած, «և ես աշխարհի»։ Երկրին զեկոյց (զմեռելութիւն), նոքա ինձ մեռեալ, և ես նոցա : Այլ ոչ այսոքիկ ըմբռ-նել զիս կարեն և ունել, քանզի մեռեալք են միանգա-մայն . և ոչ ես ցանկամ նոցա, վասն զի մեռեալ եմ նոցա և ես :

## ՀԱՏՈՒԱԾՔ Ա· ԹԵՍԱՂ·

### ՅԱՌԱՋԻՆ ՃԱՌԷՆ

Մի՛ ոք այսուհետև զանգիտեսցէ, թէպէտ և բա-զում ժամանակս իցէ ծախեալ, և չիցէ ինչ վճարեալ . զի մարթի և 'ի սակաւ ժամանակի այնչափ գործ գոր-ծել՝ որչափ յառաջնումն ժամանակին : Մինչ որոյ չէին էր հաւատացեալ՝ այնչափ պայծառացաւ 'ի սկզբանն, որ-չափ ես առաւել որոց վաղուց հաւատացեալ իցէ : Մի՛ ուրուք գարշեալ զնորա «ածեալ զայն՝ ծուլացի, յոր-ժամ և ուսեալ ես գիտիցէ եթէ մարթի 'ի սակաւ ժա-մանակի զամենայն վերստին ստանալ . զի հանդերձեալ ինչ իրք անյայտ են, և օր. տեառն գող գիշերոյ է, և

յանկարծակի յորժամ 'ի քուն կայցեմք՝ հասանիցէ․ այլ թէ չննջիցեմք, ոչ իբրև զգող 'ի վերայ հասանէ մեզ, և ոչ յանպատրաստից առնու․ իսկ եթէ սթափեմք և արթունք լինիցիմք, ոչ իբրև զգող հասանիցէ 'ի վերայ, այլ իբրև զհրեշտակ արքունի կոչիցէ զմեզ 'ի պատրաստեալ բարութիւնսն․ և եթէ 'ի քուն կայցեմք, իբրև զգող գայ 'ի վերայ։ Մի՛ ոք այսուհետև ննջիցէ, և մի վատ և լքոտ յառաքինութեանն կայցէ․ զի այն իսկ է քուն։

Զգիտիցէ՞ք, յորժամ ննջիցեմքն՝ զիա՞րդ չեն 'ի զգուշութեան մեր իւք, որպէս զնիրհ առ 'ի ննջողութիւն․ և յորժամ արթունք իցեմք, չեն ինչ մեզ այնչափ պէտք պահպանութեան․ և յորժամ 'ի քուն իցեմք, թէպէտ և բազում պահպանութիւնք իցեն, կորնչիմք․ թէպէտ և դրունք և նիգք և պահապանք և պահակապանք կայցեն, սակայն մտանէ գող։ Եւ զայս առ մի՞ առնիցեմ։ Ո՛չ թէ արթունք կայցեմք, չկարօտանամք հարցն օգնականութեան․ և եթէ 'ի քուն լինիցիմք, ոչ ինչ կարէ օգնել մեզ այլոց պաշտպանութիւն, այլ համագերձ այնու իսկ կորնչիմք։

Բարւոք է վայելել յաղօթս սրբոցն, այլ յորժամ և մեք ևս 'ի գործն իցեմք։ Եւ զինչ պիտոյ են ինձ աղօթք այլոց, յորժամ ես 'ի գործն իցեմ։ Եւ մի իսկ կացուցանէր զանձն 'ի կարօտութեան, սիրելի․ քանզի և ոչ ես զայն կամիմ․ այլ միշտ 'ի կարօտութեան եմք, եթէ ուրախ լինիցիմք։ Պաւղոս չասաց թէ չեմ կարօտ աղօթից, թէպէտ և որ աղօթս առնէին՝ չէին ինչ այնպէս նմա արժանի, մանաւանդ թէ և ոչ մօտ 'ի նա․ և դու ասես՝ թէ չեն ինչ ինձ պէտք աղօթք։ Պետրոս չասաց՝ թէ չեմ կարօտ աղօթից․ այլ “Աղօթք, ասէ, ստէպ լինէին վասն նորա յեկեղեցւոյն առ Ած„․ և դու ասես թէ չեմ կարօտ աղօթիւք․ վասն այնորիկ և պիտոյ են քեզ՝ զի չհամարիս թէ իցեն պիտոյ․ թէպէտ և իբրև զՊաւղոսն լինիցիս, կարօտ ես աղօթից։ Մի՛ բարձրացուցաներ զանձն, զի մի՛ խոնարհիցես․ այլ որպէս ասացի իսկ, թէ գործս ունիցիմք, և նոքա վճարեցեն, և աղօթքն որ վասն մեր լինիցին․ և լուր Պաւղոսի․ “Ակնածեմ, ասէ, զի այս զիպեսցի ինձ 'ի փրկութիւն վասն ձերոց խնդրուածոց և պարգևաց հոգւոյ Յի-

ժամ և նոցա հաճոյ լինելոյ, յայնժամ վանեսցի զթըշ-նամիսն.

Իսկ զի պիտոյ են, ասէ, աղօթք ընկերաց՝ յորժամ ես հաճոյ լինիցիմ. Մի՛թէ երբեք ասէր զայդ, մի այդ դու. պիտոյ են աղօթք և կարի յոյժ պիտոյ. լուր ինձ, որ ա-սէր ցբարեկամսն Յոբայ, թէ "Աղօթս արասցէ վասն ձեր և թողցէ մեղաց ձեր". քանզի մեղան, և ոչ մե-ծամեծ մեղս. այլ այնպիսի արդար որ ապրեցոյց յայն-ժամ զբարեկամսն աղօթիւք, 'ի հրէական ժամանակին չկարաց ապրեցուցանել զհրէայսն կորուսեալս. և զի ա-ռանձինն ցիս ասաց, լուր ինձ՝ որ ասէ մարգարէիւն. "Թէ յարիցեն՝ Նոյ և Յոբ և Դանիէլ, ոչ ապրեցուսցեն զուստերս իւրեանց և զդստերս. քանզի առաւել զօրա-ցան չարիքն". և դարձեալ՝ "Թէ յարիցեն Մովսէս և Սամուէլ". և ահա զիարդ յերկուս մարգարէս ասէ զայս. քանզի երկոքեին աղաչէին վասն նոցա և չհաւանէր։

Սա և Եզեկիէլ ասէ՝ թէ "Ա՜յ իմ Տէր զի ջնջես զմնացորդս Իսրայէլի". և ապա ցուցանէ՝ թէ յիրաւի ասաց զայն, յայտ-առնելով զմեղս նոցա. Թէ ոչ զնա ինչ արհամարհէ՝ չընդունելով զխնդրուածս նորա, բա-ւական և այն իսկ է հաւանեցուցանել, թէ ոչ վասն ըզ-քեզ արհամարհելոյ, այլ վասն բազում մեղաց նոցա չընդունիմ զպաղատանսդ՝ ասէ. բայց սակայն ածեալ զնոյնիմն ասէ. "Թէ յարիցեն Նոյ և Յոբ և Դա-նիէլ". և յիրաւի իսկ ցնա ասէ զայս, քանզի առաւել վշտացեալ նա էր. ասացեր ցիս, ասէ, քակորով ու-տել հաց, և կերայ. Հրամանն ետուր զհերս և զմօրուս գերծուլ[3], և գերծի. ասացեր 'ի մի կողմն ննջել, և ննջեցի. Հրամանն ետուր ընդ ուսանծակ բարձեալ ել-անել, և ելի. տարեր յինէն զկին իմ և ասես թէ մի՛ ողբար, և չողբացայ, այլ եղէ ժուժկալ առաքինութեամբ. և այլ ինչ ես բազում արարի վասն նոցա. և արդ ես ըզ-քեզ աղաչեմ վասն նոցա, և չանսաս. Ո՛չ արհամար-հեալ ինչ զքեզ, ասէ, չառնեմ զայդ, այլ եթէ Նոյ և Յոբ և Դանիէլ իցեն և աղաչիցեն վասն ուստերաց և դստերաց իւրեանց, չանսամ։

Սա և Երեմիա, որ սակաւ ինչ վշտացաւ յետ հրա-

3 Օրինակին գերծալ։

վասն իմոյ երկիւղին, քանզի արգելեալ է զայն, 'ի մտի զնէր_ցես՝ թէ լաւ է չցասնել զինչսն և ոչ իմոյ սատուցանել. Համբերոյն այնմ առնուցուս վարձս՝ որոյ յաղագս անուն իցէ ծախեալ։ Իսկ եթէ յորժամ կորուսերն՝ գոհանայցես, և կարող ես իցես երթալ առ Հարցուկս, և զայն ունի_ցիս յանձին՝ եթէ լաւ իցէ բնաւ չցասնել՝ քան թէ այնպէս գտանել, որպէս և նա վասն իմոյ երկիւղին 'ի չքա_ւորան ծախեաց, նոյնպէս և դու վասն իմոյ երկիւղին չառ_նուս յանձն գտանել զյափշտակեալսն. զի մեք եմք ան_ձանց տեարք և առնելոյ մեղս և չառնելոյ, և ոչ այլ ոք։

Այլ եթէ կամիք, 'ի գողութիւն իսկ անցցուք զերդոյն. եհատ անկիւն գողն, եմուտ 'ի սենեակ, եհան ոսկի և ակամիս պատուականս, ամենայնն իսկ զամենայն գանձս եհան արտաքս, և չանկաւ 'ի բուռն, և իրքն ծանուցեալ են, և թուի թէ վնաս մեծ եղև։ Չև ևս է վնաս, այլ 'ի քո ձեռս է առնել զայն վնաս և օգուտ։ Այս իսկ Քա_նացայց ցուցանել՝ զիարդ քո կամելովդ չափ մեծ վնաս, և չկամելովդ՝ ես մեծ, քան զոր եղեն, վնաս գործես։ Ո՛ր օրինակ Ճարտարացն յորժամ նիւթն մեծ երեւեալ կայցէ առընթեր, հմուտ Ճարտարութեանն 'ի լաւ ար_կանէ 'ի կիր, և տխմարն խանգարէ և վնաս գործէ. նոյնպէս և յայսպիսի իրս։ Այլ արդ զիա՞րդ լինիցի շահ։ Եթէ գոհանայցես զնա, և ոչ ձիր բարձեալ գուժիցես. և եթէ զՅոբայ զբանսն ասելով, թէ "Տէր ետ և տէր եառ. մերկ ելի յորովայնէ մօր իմոյ, և մերկան_դամ երթալոց եմ"։ Ո՞ւնչ խօսիս՝ տէր առ. և զիա՞րդ կարիցէ ասել՝ տէր առ։ Այլ ընդ այն մի ինչ զարմանայ_ցես. քանզի և Յոբ՝ զոր սատանայ առ, ասէր՝ թէ տէր առ. և դու ընդէ՞ր զոր գողն տարաւ՝ չասիցես թէ տէր առ։ Արդ աղէ տես, ընդ ո՞ր զարմանայցես, ընդ այնո_րիկ՝ որ յաղքատն ծախեաց, եթէ ընդ Յոբայ՝ որ վասն այնպիսի բանից։ Նոքա ուրեմն ոչ սակաւ վարձք են նորա քան զայնոցիկ՝ որ ողորմութիւն տայցեն, թէ_պէտ և չէր ինչ 'ի ժամանակին։

Այլ մի ասիցես, եթէ իմ չէր շնորհ, քանզի ոչ իմ կամաւս եղեն իրքն. յանդգնեալ յանկարծ եմուտ տարաւ_գողն, և ինձ ո՞ր վարձք լինիցին։ Այո և Յոբայ յան_դգնեալ յանկարծ իրքն գործեցին. քանզի և զիա՞րդ իսկ. այլ սակայն կամեցաւ. այլ մարթի քեզ այնչափ վարձս

տանուլ՝ որպէս թէ կամաւ 'ի բաց ընկեցեալ էր զնոսա։ Այլ նմանագոյնս իսկ ընդ այնպիսայն առաւել զարմանամք, որ վշտացն գոհութեամբ տանիցի, քան ընդ այնորիկ՝ որ կամաւն տայցէ։ Ընդէ՞ր։ Զի նա դրուադքն պարգևի և մնացն զուարթութեամբ, և հեշտականն յօւսով վայելէ. և նախ ժուժկալութեամբ տարաւ ընչիցն նուազութեան, և ապա ընկեց 'ի բաց. իսկ 'ի սմանէ՝ մինչդեռ կայեալ էր ընդ նմին՝ հանաւ բանութ. և չէ ընդ մի համար յառաջագոյն հաւանելն յընչիցն անկանելոյ և ապա վատնել, և մինչդեռ 'ի նոյին ցանկութիւնն հարեալ կայցէ և առնուցէ։ Ոչ է զնոյն բանս առիցես՝ բազմապատիկ առնուցուս, և առաւել յաճախագոյն քան զՅոբայն. նա կրկին առ աստէն, և քեզ հարիւրապատիկ խոստացաւ Քրիստոս։

Չհայհոյեցեր վասն իմ երկիւղին, և ոչ չոգար առ հարցուկս, այլ գոհացար 'ի վերջոյն. նմին նմանող ես՝ որ արհամարհեաց. քանզի և այն չլինիցի՝ եթէ ոչ արհամարհիցես. զի չէ ընդ մի համար զբազում ժամանակս անել զհոսու զընչիցն արհամարհութիւն, և յանկարծակի դիպել համբերել։ Նոյնպէս լինիցի շահ վնասն. և չվնասիս ինչ, այլ օգտիցիս ինչ 'ի սատանայէ։ Այլ թէ զկարգ անհնարին մեծս լինիցի. Յորժամ զագիգ տուժեցես։

Այլ աղէ եկ աստ դու ցես. զրկեաց զքեզ յընչիցն գողն, և դու ևս զանձն 'ի փրկութենէն զրկիցես. ընդէ՞ր տուժիցես՝ տուժեալ յայլոյն միշտ կրեցեր. զի՞ դու քեզէն ընդ բազում կարեօք արկանես զանձն։ Այս թէ ևս աղքատութիւն հասցէ քեզ. և դու 'ի կարևորն մնասցես անձին խաղաղութեամբ. նա զրկեաց զքեզ յայնմանէ՝ որ արտաքոյ քան զքեզ իցէ, և յետոյ և ակամայ իսկ գնայ 'ի քէն. և դու զյաւիտենից մեծութիւնն մերկանաս 'ի քէն։ Տրտմեցոյց զքեզ սատանայ՝ զի եհան 'ի քէն զինչսն. տրտմեցո և դու զնա, և մի ուրախ առնիցես։ Եթէ առ հարցուկս երթայցես, ուրախ արարեր զնա. և եթէ գոհանայցես զնա, աղգայ վէրս եառուր նմա։

Այլ տես զինչ լինիցի. նա և գտանես իսկ ոչ՝ յորժամ առ հարցուկս երթայցես, քանզի և չէ իսկ նոցա գիտել զայն. և եթէ յանկարծ ուրեք դիպեսցի՝ զոր ա-

վասն յարութեան բանք էին նորա, այլ վասն պատուոյ և փառաւոր յարութեանն։ Ի յարութեանն, ասէ, ամենեքեան փոփոխեսցին, բայց 'ի փառաւոր յարութիւն ոչ ամենեքեան, այլ քրիստոսեանքն։ Եւ քանզի մխիթարել կամի զնոսա, ոչ այնու միայն մխիթարէ, այլ և բազում պատուով և երանութեամբ յարութեանն. ասաց Թէ ոչ զայն եւս գիտէին իսկ։ Եւ զի պատուովն կամի մխիթարել զնոսա, յառաջ մատուցեալ ասէ, "Եւ յամենայն ժամ ընդ Տեառն լինիցիմք". և "Ընդ նմա յափշտակեսցիմք"։ Բայց Թէ զիարդ հաւատացեալքն 'ի ձեռն Յիսուսի ննջիցեն, այն իսկ է՝ զի զՔրիստոս ունիցին յանձինս. իսկ "ածցէ ընդ իւր" յայտ առնէ յամենայն կողմանց ածեալս ժողովեալս։ "Զայս, ասէ, ասեմք ձեզ Տեառն բանիւ"։ Զայս նոր ինչ հանդերձեալ էր ասել, վասն այսորիկ զարժանի հաւատարմութեանն դնէ. իւր բանիւ, ասէ. այն իսկ է՝ եթէ ոչ յանձանց, այլ 'ի Քրիստոսէ ուսեալ ասեմք՝ "Եթէ մեք որ կենդանիքս մնացեալ իցեմք, 'ի գալստեան Տեառն ոչ ժամանեմք ննջեցելոցն". զոր և 'ի Կորնթացւոց Թղթին ասէ՝ եթէ "Յանկարծակի յական թօթափել". իսկ աստ զհաւատարմութիւն յարութեանն օրինակաւ ինչ յանդիմանն կացոյց։ Քանզի դժուարին ինչ իրք Թուէին, որպէս դիւրին է, ասէ, կենդանեաց մեռանել, նոյնպէս և վախճանելոցն. բայց մեքն՝ ոչ Թէ զանձինս ինչ ասէ, քանզի չէր մնալոց մինչև ցյարութիւնն, այլ զհաւատացելոցն ասէ. վասն այնորիկ առընթեր եդ՝ մնացեալք, ասէ, 'ի գալստեան Տեառն՝ ոչ ժամանեսցուք ննջեցելոցն։ Որպէս զի ասիցէ, Թէ մի համարիք դժուարին[1] գործ լինել ինչ... Աստուած է որ առնէ։ Այլ որպէս դիւրին է զողջսն և զկատարեալսն ածել, նոյնպէս և զլուծեալսն։ Այլ են ոմանք որ Թերահաւատեն յիրայն, քանզի չգիտեն զՏէր։ Եւ որդ աղէ սաս, որ դիւրագոյն իցէ, յոչնչէ 'ի գոյ ածել, եթէ զքակտեալն և զլուծեալն միւսանգամ կանգնել։

Այլ տես զինչ ասէ. այս անուն, ասէ, նշաւակութիւն կրեաց և ընկղմեցաւ. և իբրև անկաւ՝ ձկունք բազումք կերան զնա, և 'ի ձկանցն իւրաքանչիւր ոք մի

1 Երկու օր. նեղ յաւէլ ինչ գործոյ ընթերցի։

ծիցէ, ամենայն տեղի տայցէ։ Այլ թէ այսպիսիք տարակուսելիք են . . . եմուտ յիս այժմ խորհուրդ մոլորեցն որ զծննդեան զանմարմին հարցաքննեն զՔրիստոս . . . ոչ ոք երբէք պատմել կարէ. և զիմո՞րդ զանճառն զայն և զանասելի ծննդեան քննիցեն արդեօք. . . . Այլ զայս ոչ եթէ վայրապար եդև մեզ ասել, այլ զի յարութեն հաւատայցեմք, և յորժամ դարձեալ խորհրդով կամիցիմք հասանել և չգտանիցեմք, մի դժուարեսցուք և մի զայրասցուք, այլ մտավարժ բարուք դարձցուք և նահանջեսցուք զխորհուրդս . . . . . . . . . .

## ԵՕԹՆԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

“Զայս ասեմք ձեզ տեառն բանիւ, զի մեք կենդանիքս մնացեալք 'ի գալստեան տեառն՝ ոչ ժամանեսցուք ննջեցելոցն„։ Մարգարէքն յորժամ զհաւատարմութիւն բանիցն ցուցանել կամէին, նախ քան զայլն զայս ասէին՝ թէ “Տեսիլն զոր ետես Եսայի„. և դարձեալ. “Պատգամ Տեառն, որ եղև առ Երեմիա„. և դարձեալ թէ “Այսպէս ասէ տէր„. . . բայց զայս զոր տայցս, յայտ յանդիմանն լաւ լինի . . . Տեսցուք և այժմ զինչ ասէ։ “Զի մեք կենդանիքս 'ի գալստեան տեառն ոչ ժամանեսցուք ննջեցելոցն. զի ինքնին տէր հրամանաւ 'ի ձայն հրեշտակապետին յետին փողով իջցէ յերկնից„. ըստ այնմ եթէ “Յայնժամ զօրութիւնք երկնից շարժեսցին„։ Այլ վասն էր արդեօք փողով. քանզի և 'ի Սինա լերինն զնոյն տեսանեմք, և հրեշտակս իջեալ և անդ։ Այլ արդ զինչ կամիցի ձայն փողոյ հրեշտակապետին յայտ առնել։ Զոր օրինակ 'ի կուսանաց ճառին ասէ՝ եթէ արիք, եկն Փեսայ փեսայն։ Կամ զայն իսկ ասէ, կամ որպէս թագաւորաց կայցեն յայնժամ հրեշտակք 'ի սպասու 'ի յարութեանն։ Ասէ թէ յարիցեն մեռեալք, և լինիցին արդիւնքն՝ ոչ եթէ հրեշտակաց ինչ այնմ զօրութիւն լինելոյ, այլ 'ի նորա բանէն, որպէս 'ի թագաւորի հրամանէ՝ թէ ելցեն արգելեալքն և հանիցեն սպասաւորքն ոչ իւրեանց ինչ զօրութեամբ, այլ նորա բարբառովն հարկանիցեն զսպասաւորութիւնն։ Զայս և այլուր ինքն Քրիստոս ասէ՝ թէ “Առաքեսցէ զհրեշտակս իւր հանդերձ փողով մեծաւ, և ժողովես-

ցա. մանաւանդ թէ նորա մեզ մնացեն, և մեք նոցա ոչ եմք. քանզի յանկարծակի յական թօթափել լինի յարութիւնն։ Նաև ասելն եթէ ժողովին, քանզի յառնեն ամենայն ուրեք և հաւաքին 'ի հրեշտակաց։ Աստուծոյ զօրութեանն գործ է հրաման տալ երկրի արձակել զաւանդն. և այնմ չէր որ ապառաւոր, որպէս յայնժամ կոչեաց զՂազարոս, “Ղազար, ասէ, եկ արտաքս”. և անդէն անպատմաւորական լինի։ Նաև եթէ այսր ասէր ընթանայցեն և ժողովեսցեն հրեշտակք, իսկ աստ ասէ զմարդ յափշտակեսցեն... քանզի միանգամայն յորժամ ոչ որ գիտասցէ լինիցի։ Նաև յորժամ առեսցեն զերկիր զողջեալ և փոշւով լցեալ, և յամենայն կողմանց մարմինս յարուցեալ՝ առանց ուրուք սպասաւորութեան, այլ հրամանին բաւականութեամբ լըցեալ զերկիր ամենայն, զմտաւ ած որքան է որ յԱդամայ. մինչև 'ի նորա գալուստն՝ ամենեքեան կան յայնժամ հանդերձ կանանիք և որդւովք։ Յորժամ առեցեն այսքան 'ի վերայ երկրի ամբոխ, յայնժամ գիտասցեն. զոր օրինակ 'ի մարմնոյն անտեսութեան[1] ոչ ինչ յառաջագոյն տեսին, նոյնպէս և յայնժամ։

Արդ յորժամ այսոքիկ լինիցին, յայնժամ և ձայն հրեշտակապետին եղիցի՝ որ գոչէ և հրեշտակացն հրամայէ, և փողքն՝ մանաւանդ թէ հնչիւն փողոցն։ Յայնժամ ո՞ր երկիւղ, ո՞ր դողումն՝ որ 'ի վերայ երկրի մնացեն, յորժամ մի կին յափշտակեսցի և միւսն մնասցէ, մի այր առնուցու և միւսն թողուցու. զի՞նչ ինչ նոցա ոգիքն կրեսցեն յորժամ զայլսն վերացեալ տեսանիցեն և զանձինս մնացեալ. ո՞չ քան զամենայն գեհեն ահաւորագոյն է այն. գրեթէ զայն այժմ լեալ։ Վասնզի թէ մահ յանկարծակի կամ քաղաքաց շարժմունք և պատահմունք այնպէս շարժեն զմեր ոգիս, յորժամ զերկիր պատառեալ տեսանիցեմք և լցեալ ամենեքումբք նոքօք, յորժամ զձայն փողոցն լսիցեմք, և զաղաղակ հրեշտակապետին՝ քան զամենայն փող հնչական առաւելացեալ, յորժամ զերկինս գալարեալ և զամենեցունց Թագաւորն անդ եկեալ տեսանիցեմք, որպիսի ինչ մեր ոգիքս լինիցին. Օ՜ սարհուրեսցուք աղաչեմ և երկիցուք,

1 Յօրինակին գրչագրին. կարծ բառ յաւելի։

ծառայինն անձեալ կացուցից առաջի, և տակաւին առի-
ցէք թէ վասն ապաշխարելեաց ասացեալ է. և արդ ա-
ռաջի հաւանեցուցից զձեզ։ Սատանայի միտք են այդ.
անօգուտ շնորհ շնորհեալ, որ անձնականն ծոյլս կազմէ. և
արդ ուստի բանայցեմք զայն 'ի միջոյ. ուշադիր և առի-
ցեմք 'ի գրոց, ասէք՝ վասն ապաշխարելեաց է։

Նայել զայլոց զհանդերձելոցն թերևս մարթիցէ ոք ա-
սել, այլ զանցելոցն և 'ի գլուխ ելելոցն ոչ ևս։ Լուա-
րուք զՋրհեղեղէն. միթէ և այն վասն ապաշխարելեա՞ց ինչ
ասացաւ, և չեղև՞ և չե՞լ 'ի գլուխ. և Նոքա բազում ինչ
այպանելիս ասէին. և զՀարիւր ամ 'ի հանդերձել տա-
պանին և 'ի կցել փայտիցն և 'ի բաղդել արդարոյն՝ չէր
ոք որ հաւատայր. և չհաւատալին բանիցն ապաշխա-
րելեաց, կրեցին արդարևմբք պատուհաս. զնոյն և մեք կրե-
լոց եմք, եթէ չհաւատայցեմք։ Վասն իրի իսկ զգալու-
ստըն իւր՝ Նոյի աւուրցն նմանեցուցանէ. քանզի որպէս
այնժամ Ջրհեղեղի չհաւատացին ամենեքեան, նոյնպէս և ոչ
այժմ հեղեղի գեհենին։ Մի՛թէ այն ապաշխարելիք էին,
ո՞չ ապաքէն արդարևմբք իսկ եղեն. որ յայնժամ զյան-
կարծակի պատուհաս ած 'ի վերայ, ո՞չ առաւել և այժմ
ածիցէ. քանզի ոչ ինչ նուաղագոյն գործ քան զայն՝
այժմ առս գործին. որպէս զի յայնժամ ասէ. «Ամ-
րին արդիքն ծոյ առ գտանէր մարդկան». և 'ի խառնա-
կութիւնս միայն էին անօրէնութիւնք. իսկ այժմ ա-
հաւասիկ անհնարին կերպարանք չարեաց են, որ անձ-
նաւին յանդգնութիւն է։

Հաւատայցէ՞ք արդեօք՝ եթէ եղև Ջրհեղեղ, եթէ
առանցելոց ինչ բանք թուիցին ձեզ. և տակայն լերինքն
յորս տապանն զետեղարեաց՝ վկայեն, զՀայոց լերանցն
ասեմ։ Նայել ևս յաճախութեանն՝ և յայլ ևս քան 'ի
Նոյն՝ յայտնագոյն ածիցէ բանս. երթեալ ուրուք իցէ
ձեր 'ի պաղեստինացւոց աշխարհն. զայսուհետև ոչ ևս
բանս, այլ արդիւնս իսկ առնեմ. թէպէտ առաջինքն քան
զարդիւնքն յայտնագոյնք են, զի զոր գիրք ասեն՝ և քան
զաչաց տեսիլ հաւատարմագոյնք են։ Երթեալ ուրուք
իցէ ձեր 'ի պաղեստինացւոց աշխարհն, զինչ ոք 'ի ձէնջ
վկայեսցէ ինձ, որոց զտեղիսն իսկ տեսեալ իցէ. քան
զՍոդոմ և քան զԳոմորա 'ի վերոյ, անդ իսկ 'ի տապա-
ռուածի Յորդանանու գետոյ՝ վայրքն ինչ բազում են և

ամենայնիւքըք. մանաւանդ թէ էին, քանզի այժմ ոչ և նոյնպէս, որ երբեմն իբրև զդրախտն Այ էին. «Ետես, ասէ, Ղովտ զամենայն կողմանս Յորդանանու՝ զի էին յուռթի իբրև զդրախտն Այ». և արդ որ այնպէս ծաղ-կալից և ամենաշատ վայրքն էին, հակառակեալ ընդ ա-մենայն աշխարհի, և ժամանակին լինելութեանն զդրախտին Այ, քան զամենայն անապատ անապատագոյն է այժմ: Կան ծառք և պտուղ ունին, և պտուղն բարկութեան Այ յիշատակիչ է. կան նռնենիք, և զփայտակէն իսկ ա-սացից, և պտուղն գեղեցիկ իսկ երևի ՚ի վերայ, և զան-տեղեակսն բաղձումն յուսով լի առնէ. իսկ յորժամ ՚ի ձեռն առեալ հատանիցէ, պտուղ ամենևին ինչ ոչ է, բայց մոխիր և փոշի շատ ցուցանէ ՚ի ներքս ամփոփեալ. այնպիսի է և երկիրն ամենայն: Եթէ քար տեսանի-ցես, մոխրեալ գտանես. և զինչ զքարէ և զփայտէ և զհողս, որ զի և օդքն և ջուրքն զնոյն հարուածս կրե-ցին: Որպէս մարմնոյ ինչ այրեցելոյ զկերպարանսն և զնշմարանսն տեսանիցեն ՚ի հուր, և զհատակն և զչափն, և զօրութիւն ինչ ոչ, նոյնպէս և անդ զերկիրն է տե-սանել. բայց չունի ինչ զերկրի, այլ ամենևին մոխիր. ծառս և պտուղս, այլ ոչ ինչ զծառոյ և զպտղոյ. օդս և ջուրս, այլ ոչ ինչ զջրոյ և զօդոյ. քանզի և այն ամխե-նացեալ: Թէպէտ և զխորդ իսկ երբէք այրեացին օդքն կամ զխորդ ջուրքն, և ջուրն մեռուցէ. փայտն և քարն մոխրթի այրել. բայց օդոյ և ջրոյ չէ երբէք հնար: Ո՞նց չէ հնար, այլ առաւելին հնարաւոր է: Այսուհետև ոչ այլ ինչ է, թէ ոչ հնոց՝ օդն, և հնոց՝ ջուրն. ամենայն անապատ, բնաւ անծին, բոլոր ՚ի պատիժս պատուհա-սից, կանուխ բարկութեանն պատկերք, հանդերձե-լոցն նշանակք. միթէ և այն բանից սպառնալիք իցեն. միթէ և այն խօսից ինչ վճիռք իցեն:

Եւ ոչ առաքինիքն անհաւատք են, այլ նոյնպէս բա երևելեացն և աներևութիցն հաւատարիմք. նա և ան-հաւատիցն բաւական են այնպիսի գործք առ հաւատս: Թէ չհաւատայցէ ոք գեհենին, զՍոդոմ զմտաւ ածի-ցէ, զԳոմոր յիշեսցէ, զանցեալ պատիժսն, որ և առ-դէն իսկ են. և այն մշտնջենաւոր լինելոյ տանջանացն նշանակ է: Ահագին ինչ են բանքս. և այժմ չիցե՞ն ա-հագին՝ յորժամ ասիցեն, թէ չիք գեհեն, այլ թէ վայ-

վրէժս, ընդ ամենայնի առաւելոց եւս անդ։ Ողջայա-բարոյան՝ որք ոչ ափնչափ ինչ յանցանս յանցեան՝ այնպիսի տանջեաց, և 'ի մեզ խնայիցէ. այլ չէ ինչ 'ի դէպ այս. թէպէտ և զնոյն մեղս զնոցայն մեղանչեմք, մեծամեծ տանջանաց քան զնոսա արժանի եմք։ Ընդէր. զի 'ի բազում շնորհս իսկ վայելեալ, յորժամ աւելի եւս և մեծամեծ քան զնոցայն յանցանիցեմք, որպիսի՞ ինչ պատուհաս ոչ կրիցեմք։

Իսկ մի ոք զիս համարիցի՝ թէ մեծարանս ինչ զնելով և ներելով նոցա՝ ասիցեմ զայս. քաւ լիցի. յորժամ մեծ պատուհիցէ, որ հակառակ այնմ բերիցէ վճիռ՝ 'ի տառապանայականս մնաց ասնիցէ զայն։ Եւ այսուհետև զամենայն ինչ զնոսա կամ ներելով ասեմ զայս, այլ հայեցեալ 'ի մեր չարիսս. նոքա թէպէտ և տրտմեցին, այլ ընդ անապատն շրջէին. իսկ մեք 'ի մերում աշխարհի եմք և 'ի մեր տունս, և տրտմեմք. նոքա թէպէտ և պատժեցան, այլ յեգիպտականն չարեացն այն ինչ հեռացեալ էին, և գրեթէ չև ևս էր լուեալ այսպիսի օրէնս. իսկ մեք 'ի նախնեացն զփրկութեան վարդապետութիւնս ընկալաք. ապա ուրեմն մեծաց պատժոց պատժապարտ եմք։

Կամիս և այլ եւս ինչ լսել. մինչչափ ինչ մինչաս 'ի պաղեստինացւոց աշխարհին կրեցին. սով, սուր, պատերազմունս, գերութիւն 'ի բաբելացւոցն, յասորեստանեայցն, 'ի մակեդոնացւոց, անհնարին չարիս 'ի Ադրիանոսէ, 'ի Վեսպիանոսէ։ Կամիս քեզ, սիրելի՛, և այլ եւս ինչ պատմել. այլ մի ինչ առնկայցեալ 'ի բաց մերժեսցես. մանաւանդ թէ յառաջ քան զայս այլ ինչ ասացից։ Սով եղև երբեմն 'ի քաղաքի, և թագաւորն ելեալ շրջէր 'ի վերայ պարսպացն. և մատուցեալ կին մի՝ այսպիսի ինչ բանս խանդաղատանաց խօսէր. "Տէրայ, ասէ, կինս այս ասաց ցիս, թէ խորովեսցուք այսօր զքո որդիդ և կերիցուք, և վաղիւն զիմն. խորովեցաք և կերաք, և զիւրն ոչ կամեցաւ տալ". զի՞նչ քան զայս մինչ անհնարին կայր։ Պատմեալ այլուր մարգարէն ասէ, եթէ "Ձեռք կանանց ողորմածաց եփեցին զմանկունս իւրեանց". Հրեայքն ափնչափ վրէժս ետուն, և մեք առաւել եւս ո՛չ տայցեմք։ Կամիս և զայլոյ եւս չարեաց նոցա ուսանել՝ ընդ Յովսեպեայ գիրսն անց, և անտի ուսանիս զամենայն աղէտս նոցա։

Այս արդ հաւանեցուցանք արդեօք զձեզ յայսմ ամենայնի՝ զոյ գեհենն։ Ո՛ մտաւ աճ, զի թէ նոքա տանջեցան, մեք ընդէ՞ր չպատժիցիմք, կամ զիարդ չիցէ 'ի դէպ մեզ պատժել որ սաստիկ քան զնոցա յանցանս յանցանեմք. եթէ յայտ իսկ է, վասն զի պահեալ կան մեզ պատիժքն. և եթէ կամիս՝ և իւրաքանչիւր ես 'ի դէմս տարեալ զբանս՝ տեսցես, թէ զիարդ տանջեսցան։

Սպան զեղբայրն Կային. անհնարին մեղք էին. և տակայն եւ վրէժս, և անհնարին վրէժս, և արժանի բազում մահուց. վասն որոյ բազում անգամ յանձին ունէր մեռանել։ Յուր նմին իսկ. «Եթէ հանիցես զիս, ասէ, յերկրէ, և յերեսաց քոց թաքեայց, եղիցի ամենայն որ գտանիցէ զիս սպանանիցէ»։ Այս արդ աղէ ասա, ո՛չ զնոյն իսկ գործս զնորայն գործեն և այժմ եւ բազումք. յորժամ ոչ զմարմնաւոր՝ այլ զհոգևոր եղբարս սպանանիցեն, ո՛չ ապաքէն զնոյն գործ գործեցեր։ Այս այն զի ասեն՝ եթէ ոչ սրով, այլ այլովք օրինակօք. յորժամ կարող ես փարատել զոսին, և անտես առնիցես։ Իսկ չնախանձեցաւ որ այժմ ընդ եղբօր, և չարեկ որք զընկերին 'ի վիշտս. այլ չետուն աստէն վրէժս, սակայն տալոց են անդ։ Որ ոչ օրինաց ինչ գրոց լուաւ և ոչ մարգարէից, որ ոչ նշանս ինչ եւես մեծամեծս՝ այնչափ կրեաց պատիժս. որ յետոյ զնոյն գործեաց, և ոչ այնչափ օրինակօք զգաստացաւ, տաւանց պատժոց լինիցի. և ո՞ւր իցէ ո՛չ իրաւանցն, և կամ ո՞ւր բարութիւն։

Դարձեալ փայտ ոմն քաղեաց 'ի շաբաթու, և քարկոծեցաւ. թէպէտ և փոքր ինչ պատուիրան էր, և քան զթլփատութիւնն յուեգոյն. որ զփայտն քաղեաց 'ի շաբաթու և քարկոծեցաւ, որք բազում չարիս բազում անգամ գործեցին՝ տաւանց պատժոց երթայցեն։ Եթէ գեհեն չիցէ, ո՞ւր արդարութիւն իցէ, ո՞ւր անաչառութիւն[1]. թէպէտ և բազում ինչ այնպիսի մեղաւորք լինինոցա, թէ զշաբաթս ոչ պահէին։ Դարձեալ այլ ոմն Աքարի անուն՝ գողացաւ 'ի նզովից, և ամենայն ազգաւն համօրեալ քարկոծեցաւ. և արդ զիարդ. չեղե՞ւ տաժանակողապուա յայսմ հետաւ։ Դարձեալ Ոզաւ իրնայեաց՝ ոչ կամաւոր տարադէպ, այնչափ պատիժս կրեաց.

1 Օրինակին անաչառութիւն։

հատուցանողն ձրատապարտութեանցն, և յաղագս 'ի դժնդակ պատժելոց բազմաց ճառեցին. և եթէ այն առասպելք իցեն, այլ ոչ եթէ որ 'ի միջի մերում իրքս պատմեցան: Նա և զայն ոչ եթէ վայրապար առ ահ ինչ արկանելոյ[1] կամեցան ասել, և ոչ ծանրատաղտուկ բեռինս 'ի վերայ մերոց ուշոցս կուտել յօժարեցին, այլ առ 'ի ցածուցանել և թեթևագոյնս յարդարել:

Նա և ես իսկ յանձնխնագոյնս ընդ այն կամէի՛ թէ չէին տանջանք. և մանաւանդ առաւել քան զամենեսին ես: Ընդէ՞ր: Զի 'ի ձէնջ վասն իւրաքանչիւր ուրուք որք միայն կասկածիցէ, և ես ընդ ամենեցուն վերակացութեան համար տալոց եմ. որպէս զի առաւել քան զամենեսեանց՝ և ինձ անհնարին է զերծանել 'ի պատժոց. այլ չէ հնար թէ չիցեն տանջանք կամ թէ չգտացէ գեհեն: Նա արդ զի՞նչ գործեցից՝ զայն ոչ գիտեմ: Ո՞ւր իցէ, ասեն, այն մարդասիրութիւնն: Զամենայն ժամ ասեմ, այլ առաւել 'ի միւսում ժամանակի խոստացեալ վասն տալոյն իրաց. զի՞ ընդ միմեանս խառնեցից զձայնս գեհենին: Բայց առ այժմ զոր շահեցաք՝ մի վրիպեսցի 'ի մէնջ. քանզի մեծ շահ է հաւանել թէ գոյ գեհեն. այսպիսի բանից յիշատակն՝ իբրև զսաստիկ ինչ դեղ զամենայն ախտոյն փարատէ, առէպ ունել 'ի միտս մեր. արկցուք 'ի կիր զնա, զի սուրբ սիրտ ունիցիմք. և այնպէս արժանի եղիցուք տեսանել զոր ակն ոչ ետես, և ունկն ոչ լուաւ, և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ: Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՅԻՆՆԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

Վասն որոյ աղաչեմ զամենայն հնարս հնարեսցուք առ 'ի մի ինչ երբէք նիրհելոյ: Զանխտանիցէք զարտհապանսն. յորժամ սակաւիկ ինչ զանձինս քնոյ տայցեն, չօգտին ինչ 'ի բազում պահպանութենէն. քանզի 'ի

1 Յօրինակին առ ոմն չարաճճիելոյ:

տակաւ ժամուն զամենայնն կորուսին. զի բազում հա-
մարձակութիւն ետուն գողոյն։ Ոչ որինակ որպէս
մեք զգողոյն չտեսանիցեմք՝ և նոքա զմեզ տեսանեն, նոյն-
պէս և սատանայ առաւել քան զամենեսին 'ի վերայ
յարուցեալ դարանակալ լինի, և կրճէ զատամունս։

Մի այսուհետև ննջեսցուք, և մի ասասցուք՝ եթէ
այս ինչ բանք են, և այն ինչ. զի ուստի ակն չկայ՝ գող
բազում անգամ ակնան հասանէ. նոյնպէս և 'ի չարիսն,
որում ակն չկայցէ՝ այնու կործանիմք. ամենայնի հաւա-
տեաւ դէտ ակն կալցուք։ Մի արբեսցուք՝ ընդրհեմք,
մի փափկասցուք՝ և ննջեմք, մի մոլորեսցուք տրտաք-
նացն իրօք՝ և արթնութեամբ կատարիմք. յարդարեա-
ցուք զանձինս ամենայն ուսմամբ. որպէս որք 'ի ձգելոց
չուանացն վերայ գնայցեն, չէ հնար տակաւին մի շուշել,
և եթէ փոքր մի հեղգայցեն՝ մեծամեծ չարիք գործին.
վրիպեալ վաղվաղակի անկանիցի 'ի խոնարհ և սատա-
կիցի. նոյնպէս և մեզ չէ հնար ծուլանալ. քանզի ընդ
անձուկ ճանապարհն գնամք, քարավէժ լինիցիմք յեր-
կայունց կողմանց պատռնալեաց, ու զերկոսին ոտս միան-
գամայն չընդունի։

Տես որչափ հաւատարեաց պէտք են մեզ. չտեսանի-
ցե՞ս որք ընդ այնպիսի ճանապարհ գնայցեն՝ ոչ միայն
ոտիւքն զգուշանան, այլ և աչօք. և եթէ կամիցի այլ
ուրեք նայել, թէպէտ և ոտքն 'ի հաստի կայցեն, ցնո-
րեալ աչքն 'ի խորոցն՝ ամենեւին 'ի վայր գլորեալ ան-
կանիցի. այլ այնպէս պարտի զգուշանալ գնացողին. քան-
զի ասէ իսկ. "Մի յաջ մի յահեակ„։ Բազում ան-
դունդք են չարեացն, մեծամեծ քարանձաւք, բազում
խաւար 'ի ներքոյ անձուկ ճանապարհին. զգուշասցուք,
ահիւ գնասցուք և դողութեամբ. ոչ ոք յայն ճանա-
պարհ անկեալ՝ և մեղկի անկանի 'ի ծաղու է, և ոչ ծան-
րանայ արբեցութեամբ. զուարթութեամբ և անօթի
գնայ ընդ այն ճանապարհն։

Եւ ոք յուղի անկեալ՝ և բառնայ ինչ ընդ իւր յա-
ւելորդացն. պարտ և պատշաճ է պնդակազմն լինել, զի
կարող լինիցին ընթանալ անցանել։ Եւ ոք պարուանդէ
զիւր ոտս, այլ արձակ ժողովի գնայ. և բազում հո-
գովք կապեսցէ զանձինս, և բիւրապատիկ բեռինս երկ-
րաւոր բարձեալ կրեմք, մեղկեալք լքեալք, և զիարդ

ակն ունիցիմք ընդ անձուկ ճանապարհ գնալ։ Ո՛չ վայրապար ինչ ասաց՝ թէ անձուկ է, այլ զարմանալով. «Ո՜րանի անձուկ է, ասէ, ճանապարհն»։ այսինքն եթէ յոյժ անձուկ, զի եւ մեք ընդ կարի ինչ զարմանալիս զնոյն ասեմք։ «Նեղ է, ասէ, ճանապարհն որ տանի 'ի կեանս»։ եւ բարւոք ասաց. յորժամ ընդ բանից եւ ընդ խորհրդոց եւ ընդ գործոց եւ ընդ ամենայնի պարտիցիմք պատիժս կրել, արդարեւ անձուկ է. եւ առաւել անձկագոյն զնա մեզ գործեմք, յորժամ լայնեցեմք զանձինս եւ ընդարձակիցեմք, եւ զառս ասոր առնող մեծամեծս ընկենուցումք։ Անձուկն ամենայնի դժուարին է, բայց առաւել գիրացելոյն եւ ամբքացելոյն. որպէս զի որ զանձն մաշիցէ՝ ոչ ինչ զգայ զանձկութիւնն, եւ որ սովորն իցէ նեղութեան՝ չտառապեսցի ինչ ընդ ճնշելն։

Մ՚ի ոք այսուհետեւ հանգստեամբ ակն ունիցի զերկինս ժառանգել, քանզի չէ հնար. մի ոք հանդերձ փափկութեամբ վստահ լինիցի ընդ անձուկ ճանապարհն գնալ, քանզի չէ մարթ. մի ոք ընդարձակաւուն ունիցի ակն կենաց. յորժամ տեսանիցես բաղանիս, սեղան ամենալից, սպասաւորս, եւ յայլ եւս բազմապատիկ փափկութեան զոք, մի երբեք զանձն համարիցիս՝ թէ չվայելեսցես յախտակիսի ինչ, այլ յաղուց հանէքը ընդ նորա, զի ընդ կորստականն ճանապարհն գնայ։ Ոչ ինչ չար յայնմ ճանապարհէ իցէ, յորժամ 'ի նեղութիւնն վախճանիցէ. ո՞ր վնաս յանձկոյն, յորժամ 'ի հանգիստն տանիցին։

Բայց աղէ եկ տես դու ցիս, թէ յարքունիս ոք կոչեցեալ էր ընդ նեղ եւ ընդ խորաձորս երթալ, եւ միւսն 'ի մահ ձգեալ ընդ մէջ հրապարակաց, ո՞ւմ երանի տայաք, կամ վասն ո՞յր յաղուց հանէաք. ո՞չ ապաքէն վասն այնորիկ որ ընդ արձակն գնայր. նոյնպէս եւ այժմ մի բարեկեցացն երանի տացուք, այլ վշտահանացն. զի սոքա յերկինս փութան, եւ նոքա 'ի գեհեն։ Մերկեա բազումք 'ի նոցանէ եւ ծաղր եւս առնիցեն զդասն. եւ եւ վասն այնորիկ առաւել եւս աշխարեմ եւ ողբամ ըզնոսա, զի չգիտեն ընդ որ ծիծաղել պարտ իցէ, եւ վասն որոյ սուգ առնուլ. այլ զամենայն ընդ միմեանս խառնեալ խռովեն եւ աղմկեն. վասն այնորիկ իսկ աշխարեմ զնոսա։

Ոչ ինչ խօսիս, այր դու. յառնելոց եւս եւ հանապազ

տանել պարտ էր նմա հաւատալ։ Այլ վասն որոյ բաղում ինչ յառաջագոյն ասացաւ՝ եթէ անօրէն, և որդի կորստեան, և գալուստ նորա ըստ սատանայի ազդեցութեանն. և վասն նորա սոցին հակառակըն՝ եթէ կենարար է, և բաղում բարութիւնս բերէ։

“Փոխանակ, ասէ, զի զսէրն ճշմարտութեան ոչ ընկալան զի ապրեսցին, վասն այնորիկ առաքեսցէ նոցա Աստուած զմոլորութեանն ազդեցութիւն առ ՚ի հաւատալ նոցա՝ ստութեանն, զի դատապարտեսցին ամենեքեան որ ոչ հաւատացին ճշմարտութեանն, այլ հաճեցան ընդ անօրէնութիւնն”։ Ոչ ի դատապարտեսցին, ասէ, և ոչ զի տանջիցին. այլ նախ քան զայս տանջելոց էին. այլ զի դատապարտեսցին, այսինքն յաՀագին տանելին, զի լիցին առանց պատասխանի տալոյ որք ոչ հաւատացին ճշմարտութեանն, այլ հաճոյացան ընդ անօրէնութիւն։ Սէր ճշմարտութեան զՔրիստոս կոչէ. փոխանակ, ասէ, զի զսէրն ճշմարտութեան ոչ ընկալան. քանզի երկուք էին և վասն երկոցունցն եկն. վասն զի սիրէր ըզմարդիկ, և վասն ճշմարտութեան եկն։ Բայց հաճեցան ընդ անօրէնութիւնն. զի յապականութիւն մարդկան գալոց է՝ մերձանչել նոցա։ Ոչ ինչ ինչ ոչ գործիցէ ՚ի ժամանակին. զո՛րմ դղրդիցէ, զմնացս խռովեցուցանիցէ, և հրամանօք և ահիւ. ահագին երևեսցի յամենայն կողմանց, զիշխանութիւնն ՚ի գործ արկանել, զանապարոյն միտս, զիրս անօրէնս ՚ի ձեռս առնել։ Բայց մի զանգիտեսցես, զի ՚ի կորուսանելոյն ունի զօրութիւն. քանզի և Եղիա գայցէ ՚ի ժամանակին զգուշացուցանել զհաւատացեալսն. և զայս Քրիստոս իսկ ասէ՝ եթէ “Եղիա եկեսցէ և յօրդարեսցէ զամենայն”. և յաղագս Յովհաննու “զօրութեամբ և հոգւով Եղիայի” վասն այնորիկ է ասացեալ, զի չարար ինչ նշանս և ոչ զքանչելիս որպէս Եղիայն. և “Յովհաննէս, ասէ, նշանս ինչ ոչ արար. բայց զամենայն ինչ զոր ասաց վասն նորա՝ ճշմարիտ էր”։ Այլ զիա՛րդ զօրութեամբ և հոգւով Եղիայի, այն իսկ՝ զի զնոյն սպասաւորութիւն առնուցու. զի որպէս սա կարապետ առաջին գալստեան, նոյնպէս և նա կարապետ է փառաւոր և երկրորդ գալըստեան նորա։

# ՀԱՏՈՒԱԾՔ ՅԵԲՐԱՅԵՑԻՈՑ

## ՅԱՌԱՋԻՆ ՃԱՌԷՆ

Այլ քանզի սրբութիւն արար զնա մեղաց մերոց, կացցուք մնացուք սուրբք. և մի ինչ կալցուք աղտ յանձինս, այլ զգեղն և զվայելչութիւնն զոր զգեցեալ եմք՝ պահեսցուք անարատ. զի ոչ ինչ գտանիցի աղտ և խորշ, կամ թէ այլ ինչ այնպիսի: Աղտ և խորշ՝ սակաւ ինչ մեղքն են, բամբասանք, թշնամանք, ստութիւնք. մանաւանդ թէ և նոքա իսկ չիցեն փոքունք, այլ կարի իսկ մեծամեծք, և այնպէս մեծամեծք, զի և յարքայութենէն երկնից կարեն վրիպեցուցանել: Որպէս և առաքեալն ասէ: "Որ կոչէ զեղբայր իւր մորոս, պարտաւոր լիցի 'ի գեհեն հրոյն". զի եթէ որ մորոս կոչէ, որ թեթև ինչ թշնամանք թուիցին և մանկունց խօսք, իսկ որ չարաբարոյն և չարագործ և նախանձոտ կոչիցէ, և այլ բազում նախատանօք թշնամանիցէ, որպիսի ինչ ահագին տանջանաց չգտանիցի պատժապարտ:

Այլ անսասցէք փոքր մի բանիցս, աղաչեմ. զի թէ որ առնիցէ մեռեալ 'ի փոքրկանց, նմա առնէ կամ չառնէ, զիարդ ոչ 'ի բարին խօսել և 'ի չարին զնոյնն առնէ. որ թշնամանէ զեղբայրն՝ զանձն թշնամանէ, և որ պատուէ զեղբայրն՝ զանձն պատուէ: Ապաշաւեսցուք պատհեան զբարին եւեթ խօսել. լռեցո զլեզու քո 'ի չարութենէ. ոչ վասն այնորիկ ետ զնա մեզ, զի չար խօսիցիմք և թշնամանիցեմք և բամբասիցեմք զմիմեանս, այլ զի զանձն օրհնիցեմք, և զայն ինչ խօսիցիմք՝ որ լսելեացն շնորհ տայցեն, որ ինչ 'ի շինութիւն իցէ, որ ինչ յօգուտ: Խօսեցար չար զումեքէ, զինչ օգտեցար. քան անձին վնաս արարեր, զի զչարախօսի կարծիս առեր յանձն. քանզի չիք և չիք իսկ չար, որ այնմ եւեթ մեղանչիցէ՝ որում ասէն, եթէ ոչ և զասացեալսն ընդ նմին զրուցիցէ: Որպիսի ինչ՝ նախանձոտին թուի՝ թէ այլում վնաս առնիցէ, և զայն ոչ գիտէ եթէ նախ ինքն յանգի 'ի մեղսն, հալեալ ծնկեալ և ամենեցուն յաչաց ելեալ. նոյնպէս և ագահն և անձնասէրն եւս առաւել բամբասելի յայլոց:

Բայց կարի իսկ լաւ են փառք քան զինչս. զի զմին ոչ ոք դիւրաւ գտանէ, և զմիւսն դիւրաւ ստանայ. մանաւանդ զի մի՛ այնմ որ չունիցի՝ չլինիցի փառաւոր. և միւսն՝ զայն որ ոչն ունիցի, նախատ և ծաղր կացուցանիցէ, և ամենեցուն թշնամի և ատելի առնէ. և ցասկոտն նախ զանձն պատժէ, և ապա զայն՝ որում ցասնուցուն. Որպէս և չարախօսն նախ զանձն յամօթ առնիցէ, և ապա զայն՝ զումէ չարն խօսիցի. և Թերևս ոչ հնարեսցի ինչ 'ի չարախօսութենէն, այլ գնասցէ ամօթով. զժանտն և զաղտեղն և զարհամարհելոյ առեալ կործես. և զումէ չարն խօսէր՝ զնա ևս առաւել սիրելի առնէ: Յորժամ լսիցէ ոք զչար բանսն, և ընդ այնր վրէժ ինչ չառնուցու, այլ գովիցէ ևս և զարմանայցէ, ոչ զնա գովէ, այլ զանձն:

Իսկ որպէս վաղագոյնն իսկ ասացի, թէ միշտ չարախօսութիւնք նախ չարախօսացն մեղանչիցեն. նոյնպէս և բարիք ինչ՝ զոր ընկերին կամիցի ոք առնել, նախ ըղգործելեան ուրախ առնեն. զի որ ծնանի ոք բարի ինչ կամ չար, իրաւունք են՝ զի նախ ինքն վայելիցէ. և զոր օրինակ ջուր աղի և անոյշ զամանս ջրաւորացն լնուն, և ակն աղբերն ոչ պակասէ, նոյնպէս և բարիքն և չարիքն, ուստի ելանեն՝ նախ զնոսա ուրախ առնեն կամ տրտմեցուցանեն, և ապա զայնոսիկ՝ յորս արկանիցեն. և այն՝ ասա. այլ անդ՝ ո՞ կարիցէ պատմել, որպիսի՞ բան, որպիսի՞ միտք զբարեացն և զչարեացն. չիք ոք, չէ ոք ձեռնհաս: Ո՛ ի բարիքն և ըստ ամենայն միտս իսկ անցանեն, ոչ եթէ ըստ բանս միայն. և զչարեացն առացեալ իսկ մերովք ամենախախ անուամբքս՝ հուր է, ասէ, անդ և խաւար և կապանք և որդն անվախճան. և ոչ այս միայն որ ասացեալս է՝ կարէ հաւատեաւ յայտ առնել, այլ ևս անհնարինք են. և եթէ կամիցիս վաղվաղակի առնուլ զհանգամանս, միտ դիր. զի եթէ հուր է, զիա՞րդ լիցէ խաւար: Տեսանես՝ զի այլ իմն անհնարին է. զի այս հուր լուսաւոր է, և այնմ չիք լոյս. և եթէ հուր իցէ, զիա՞րդ համատարած այրիցէ. տեսանես զիարդ չար դժնդակ է քան զայս. վասն այնորիկ իսկ անշէջ կոչի:

Ի միտ առցուք, որչափ չարիք են համատարած այրել, որչափ չարիք են միշտ 'ի խաւարի մնալ, և ցանկ անհա-

դառ հեծել, և զաստուածն կրձել, և չիք հնար այցե-
լու գտանել։ Այլ յորժամ առա որք յաղթուականաց 'ի
բանտս մտանիցէ, և դժար հատն լսել և 'ի խաւարի նըս-
տել, և ընդ մահապարտս կապեալ՝ քան զամենայն մահ
չար համարի, 'ի միտ առ որպիսի ինչ չար այն իցէ, յոր-
ժամ ընդ ամենայն աշխարհաց մահապարտան աքսորի-
ցիմք. ոչ զոք տեսանիցեմք և ոչ որք զմեզ տեսանիցէ.
այլ յայնչափ բազմութեան այնպէս համարիմք՝ եթէ
միայն իցեմք. զի խաւարն և մութն չտայցէ մեզ զըն-
կերսն ճանաչել, այլ միայն ինքն և եթ իցէ 'ի պատիժս. զի
եթէ խաւարն միայն առանձինն կարէ նեղել զոգիս մեր,
զի՞ գործիցեմք յորժամ խաւարն և ցաւք միանգամայն
'ի վերայ հասանիցեն, և անշէջ հրոյն աղախարշանքն։
Վասն որոյ աղաչեմ զձեզ հանապազ զմտաւ ածել,
և զբանիցս տրտմութիւն յանձին ունել. զի մի ար-
դեամբք իսկ պատիժքն 'ի վերայ հասանիցեն. քանզի
լինելոց է այս ամենայն։ Այլ զայնոսիկ որ այնպիսի ինչ
տանջանաց արժանի գործիցեն, ոչ ոք կարէ ապրեցու-
ցանել, ոչ հայր, ոչ մայր և ոչ մարդ փրկեսցէ. Թէ-
պէտ և բազում համարձակութիւն ունիցի առ Ած և
մեծ զօրութիւն. զի ինքն իսկ է որ հատուցանէ իւրա-
քանչիւր ըստ գործս իւր. և այժմ գոյ հնար ապրել՝
եթէ կամիմք, և 'ի տանջանս մտանել թէ հեղգայցեմք։
Այլ արդ արասցուք մեզ բարեկամս 'ի մամոնայէ ան-
տի անիրաւութեան, յորժամ տայցեմք ողորմութիւն
և գործիցեմք զբարիս։ Թօթափեսցուք զինչս յաղքա-
տըս, զի թօթափեսցուք 'ի մէնջ զհուրն, և շիջցուք, և
ունիցիմք անդ համարձակութիւն. զի անդ ոչ թէ նոքա
իցեն՝ որ ընդունիցին, այլ գործքն մեր։ Այլ զի ոչ վայ-
րապար այսպիսի բարեկամութիւնն կարէ զմեզ ապրե-
ցուցանել, միտ դիր յաւելուածոյն. ընդէ՞ր ոչ ասաց,
եթէ արարէք բարեկամս՝ որ ընդունիցին զձեզ յարկսն
իւրեանց յաւիտենից, այլ և զօրինակն եւս յաւել, ե-
թէ 'ի մամոնայէ անտի անիրաւութեան. յայտ արար՝
թէ յընչիցն պարտ է առնել այնպիսի բարեկամս. զի
ցուցցէ՝ թէ ոչ վայրապար ինչ բարեկամութիւն կարէ
մեզ պաշտպան լինել, եթէ ոչ գործս բարիս ցուցա-
նիցեմք. եթէ զոր անիրաւութեամբն ժողովեցաք, ար-
դարութեամբ թօթափիցեմք։

Այս զբանն աղօթամատուցութեան ոչ միայն մեծատանց պատշաճ համարել, այլ և աղքատաց, և այնմիկ որ ընաւ իսկ 'ի մուրոյն եւեթ կայցէ. քանզի չիք այնպէս աղքատ, որ կարի իսկ աղքատ իցէ, եթէ երկուց դան-կաց չիշխիցէ. քանզի մարթի և 'ի սակաւէն սակաւ տալ, և անցանել զայնոսիկ՝ որ բազում ինչսն ունիցին և աւելագոյն տայցեն, որպէս և կինն այրի. զի ոչ եթէ ըստ չափոյ տրոցն է, այլ ըստ զօրութեանն և ըստ կա-մաց տուողացն համարի տրոցն մեծութիւնն ։

Նմանայն ուրեք կամացն պէտք են և ուղիղ մտաց և Աստուծոյ սիրոյն. և ընդ այն զինչ և գործիցեմք, եթէ շատ տայցեմք և եթէ սակաւ՝ չդարձուցանէ զերկոս Աստուած, այլ ընդունի զմեծն, և զփոքրն իբրև զմեծն. քանզի 'ի կամսն հայի, և ոչ եթէ 'ի տուրսն. զմեծա-մեծս և զփոքունս ընդ մի համար առնիցէ, և յաւի-տենից կենացն արժանաւորս արասցէ զերկոսին կող-մանսն. որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստո-սի, ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն ։

ՅԵՐԿՐՈՐԴ ՃԱՌԷՆ

Այս արդ զայս ամենայն լուիցեալ, մի ինչ ամօթ հա-մարեսցուք. և մի ամբարտաւանս ինչ խորհեսցուք. զի եթէ նա որ Տէրն է և տէր և որդի Այ, չզանգիտե-ցաւ առնուլ զծառայի կերպարանս, որչափ ևս առաւել մեզ պարտ իցէ զամենայն ինչ վասն նորա առնել, թէ-պէտ և խոնարհագոյնք իցեն ։ Այս արդ ասէ ասա ով մարդ, ես մեծամտիցես. աշխարհիս ինչ իրօք, այլ այս ամենայն մինչև երեկեալ անցանէ. իսկ հոգևո՞ր ինչ իրօք, այլ մի ինչ ուղղութիւն հոգևորացն իսկ է՝ չմե-ծամտելն ։ Այս արդ ընդէ՞ր մեծամտիցես. վասն զի ու-ղղութիւնս ինչ արարեր. այլ լուր Քրիստոսի որ ասէն. եթէ "Յորժամ զամենայն ինչ առնիցէք, ասասջիք՝ եթէ մեք ծառայք անպիտանք եմք, որչափ ինչ պարտ էաք առնել՝ արարաք„ ։ Այլ առ մեծութեանն ինչ մե-

ծանօթիցես. չանասանիցես որչափ մերկք և բանք երթան 'ի մտանելս. ոչ ապաքէն մերկք մնաք յաշխարհս, և դարձեալ մերկք գնալոց եմք:

Ա՛յլ ոք որ զայլս ինչ ունիցի՝ և մեծամտիցէ. որք յիւրեանց պէտս ևեթ ունին ծախել զինչս, անկանին 'ի նոցանէ ահամայ բազում անգամ՝ և յառաջ քան զվախճանն. այլ 'ի վախճանին հարկ իսկ է: Ա՛յլ մեք, ասեն, կենդանութեան որպէս կամիմք վայելեմք. մանաւանդ թէ չիք իսկ զոք վաղվաղակի տեսանել, եթէ որպէս կամիցի՝ վայելիցէ. իսկ եթէ վայելիցէ ևս՝ որպէս կամիցի, չէ ինչ այն մեծ. քանզի սակաւ ինչ են կեանք աշխարհիս առ այնչափ անվախճան յաւիտեանս:

Մեծամտիցես, ով մարդ, վասն զի ընչաւէտ և մեծատուն իցես. զմէ, էր վասն. զի այնպիսի ինչ իրք և աւազակաց դիպեսցին և գողոց և սպանողաց և բզակելոց և պոռնկաց և ամենայն չարագործաց: Այլ արդ ընդէր մեծամտիցես. թէ և 'ի բարի ինչ ծախէիր՝ չպարտէիր մեծամտել, զի մի զպատուիրանն խափանիցես. ապա թէ ոչ 'ի բարի ինչ՝ այնու իսկ չպարտիս մեծամտել. զի ծառայ եղեր ընչից և ստացուածոց, և իբրև 'ի թակարդի հարեալ կաս 'ի նոսա: Այլ արդ ասէ. ասա, եթէ ոք ջերմնընկալ ջուր շատ ըմպիցէ, և սակաւ մի զտապն ցածուցանիցէ, և յետոյ ևս չար բորբոքիցէ ըղբոցն, մեծամտել ինչ պարտիցի: Որ 'ի բազում հոգս ընդ վայր հալիցի, մեծամտել ինչ պարտ իցէ: Նաև զի բազում տեառս ունիցիս, և բազում հոգս, և բազում սուտակապապաս. այլ և ծառայես ևս նոցա:

Օ՛ի ուսանիցիս, միտ դիր հաւաստեաւ. այլ ևս կարիքն որ 'ի մեզ կան, է ուրեք զի օգուտ են. որպէս ցասումն իսկ բազում անգամ յօգուտ լինիցի. «Ցասումն, ասէ, տարապարտուց ոչ քաւեսցի». որպէս զի թէ իցէ և յիրաւի ցասնուլ. և դարձեալ թէ «Որ բարկանայ եղբօր իւրում, և ոչ լոկ ասէ, այլ եթէ վայրապար, պարտաւոր լիցի 'ի գեհեննին». Որպէս նախանձն և ցանկութիւնն, զի մին վասն որդիս ածնելոյ անկեալ է 'ի մեզ, և միւս՝ վասն բարեաց նախանձաւոր լինելոյ. որպէս և Պաւղոս ասէ, եթէ «Բարիոք է նախանձել 'ի բարիս յամենայն ժամ». և դարձեալ եթէ «Նախանձաւորք լերուք շնորհացն՝ որ լաւագոյնն իցէ». և

նայ քան 'ի մեծութեան։ Ե՛ւ է զիա՞րդ. չմնիցի[1] ամբարտաւան, այլ հեզ, պարկեշտ, հանդարտ, իմաստուն. իսկ որ 'ի մեծութեանն է, բազում ինչ խափանիչս ունիցի այնպիսի իրաց։ Այլ արդ տեսցուք, որպիսի ինչ իցեն զոր մեծատունն գործէ, մանաւանդ որ չարկանիցէ բարիք 'ի կիր զմեծութիւնն. յորժամ յափշտակիցէ, ագահիցէ, բռնադատիցէ։ Իսկ զանպատեհ ցանկութիւնս և զանօրէն խառնակութիւնս, և զդիւթութիւնս և զկախարդութիւնս, և զայլսն ևս ամենայն չարիս, ո՛չ ապաքէն 'ի մեծութենէն զօրացեալք ծնանել։ Տեսանե՞ս զի յաղքատութեանն քան 'ի մեծութեանն դիւրին է զառաքինութիւնն կատարել. և մի՛ վասն այնր ինչ՝ զի աստէն չտայցեն վարձս ինչ մեծատունք, համարիցիս թէ չմեղանչիցեն ինչ. զի եթէ աստէն մարթ էր տալ նոցա վարձս, նոքօք զտանէիր պեսաղ զամենայն բանս։

Բայց այլովքն հանդերձ և զայն ևս չար ունի մեծութիւնն, զի զչարիսն գործէ և պատիժս ինչ ոչ կրէ, և ապա ոչ դադարէ 'ի չար գործելոյ. այլ ընդունելոց է վրէժս առանց բժշկութեան. և չիցէ ոք որ սանձս 'ի բերանս դնիցէ։ Այլ եթէ կամիցիք, և ցանկութեան զտանէ պատճառս բազում՝ յաղքատութենէ. որպէս զի 'ի հոգւոց ազատէ և յատելութենէ, և 'ի կռուոյ և 'ի հակառակութենէ և 'ի գրգռութենէ և 'ի բազում չարեաց։

Այլ արդ մի՛ ինչ փութասցուք 'ի մեծանալ, և մի՛ նախանձեսցուք միշտ ընդ ընչաւէտսն. այլ որք ունիցիմք, 'ի բարի պէտս ծախեսցուք. և որք չունիցիմք, մի՛ ինչ տրտմեսցուք, այլ գոհութիւն տացուք վասն ամենայնի զԱյ̃, որ ընդ տակաւ վաստակոյ՝ մեծատանց՝ և կամ թէ ևս մեծամեծս՝ եթէ կամիցիք՝ պատրաստէ մեզ տանել վարձս, և 'ի սակաւէն շահել. քանզի և որ զերկուս տաղանդսն մատոյց, զարմանալի եղև, և պատուեցաւ այնմ հանգոյն՝ որ զհինգն մատոյց։ Այլ է՞ր վասն արդեօք. երկուցն միայն հաւատացաւ, այլ յիւրմէ կողմանէն զամենայն իսկ կատարեաց. և որչափ ինչ հաւատացաւ նմա, երկպատիկ մատոյց։

1 Յօրինակին ըմնիցի։

Այլ արդ զի փութասցուք զի բազում ինչ յանձինս ընկեցի մեզ, յորժամ հնար գուցէ և 'ի սակաւուն ըն-բազումս շահել. յորժամ աշխատութիւնն սակաւ ինչ իցէ և վարձքն բազում. զի դիւրաւ աղքատն յիւրմէն մեկնեսցի, քան թէ մեծատունն յիւրոյն՝ որ բազում և շատ ինչս ունիցի։ Այլ թէ չիցէք ունեւոր՝ զի որ բա-զում հանդերձս ագանիցի, ևս բազմաց ցանկանայ։ Այլ արդ զի մի այնպիսի ինչ կրիցեմք, մի խնդրեսցուք մե-ծութիւն, և մի զժկամակ ինչ ընդ աղքատութիւնն ու-նիցիմք. մի ինչ փութասցուք 'ի մեծանալ. և եթէ ու-նիցիմք, այնպէս ծախեսցուք որպէս և Պաւղոս հրա-մայեաց. եթէ «Որ ունիցին՝ որպէս թէ չունիցին. և որ վարիցեն զաշխարհս՝ որպէս թէ ոչ յախարիծախս»։ Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մար-դասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՉՈՐՐՈՐԴ ՃԱՌԻՆ

Այլ եթէ զսակաւք չարհամարհիցես, որչափ առա-ւել զշատն։ Դարձեալ և զայլ ևս ցոյց, եթէ զսակաւն 'ի բարի ինչ իրաւ ծախեսցես։ Ոչ ունիցիս զարտաքնոյն ճարտարախօսութիւնս, և ոչ զիմաստութեանցն զա-տատութիւնս. սակայն զմիջինն գիտես, և զբազում մանկտի դրացիս ունիս, և զբարեկամս և զազգայինս և զծառայս. Թէպէտ և յեկեղեցւոջ յայտ յանդիման չկարիցես խօսել, զայնպիսին առանձինն կարիցես խրա-տել։ Ոչ են ինչ պէտք հռետորական բանից, և ոչ բա-նիբուն իմաստնոցն ճարտարութեանց։

Այլ արդ ցոյց այնու, զի եթէ և ճարտարախօս էիր, չհեղգայիր և չառնէիր անփոյթ. և եթէ 'ի փոքուն կի-ցես փոյթ[1], մեծին զիա՞րդ հաւատասցիս. և զի այսմ ամենայն որ բաւական է, լուր զինչ ասէ Պաւղոս, զիարդ և աշխարհականաց հրամայէ զմիմեանս խրատել. «Շի-նեցէք, ասէ, այր զընկեր, որպէս և առնէքդ իսկ, և

1 Օրինակքն պակասեն և եթէ 'ի փոքուն լինիցես փոյթ։

Պաւղոսին խօսէր. «Նախանձաւոր լերուք շնորհացն՝ որ լաւն իցեն. բայց ես առաւել ևս ճանապարհ ցուցանեմ ձեզ»։ Եւ զինչ իցէ առաւել ճանապարհն. Կորնթացիքն հպարտացեալ էին 'ի շնորհսն, և որք զմեծագոյն ունէին և կամ փոքր ինչ այլ շնորհս՝ հպարտանային առ այլսն՝ որ ոչ ինչ ունէին. և արդ ասէ, բնաւ կամեցիք իսկ շնորհս ինչ. ես ցուցանեմ ձեզ ճանապարհ, որ ոչ սակաւ ինչ լաւագոյն, այլ կարի լաւագոյն. և արդ ասէ, «Եթէ զլեզուս մարդկան խօսիցիմ, և սէր ոչ ունիցիմ, ոչ ինչ եմ. և եթէ ունիցիմ հաւատս մինչև զլերինս փոփոխելոյ, և սէր ոչ ունիցիմ, ոչ ինչ եմ»։

Տեսեր զշնորհսն, նախանձաւոր լեր. զի քան զմեռեալս յարուցանել ևս մեծ է, և քան զայլսն ամենեւին կարի առաւել. և զի այս այսպէս է, լուր բանիցն՝ զոր Քրիստոս ընդ աշակերտսն ասէր. «Յայսմ ծանիցեն զձեզ ամենեքին՝ եթէ իմ աշակերտք էք», ոչ զի նշանս ինչ առնիցէք, այլ զի սէր ընդ միմեանս ունիցիք. և դարձեալ ցհայր ասէր ևս, «Յայսմ ծանիցեն զի դու զիս առաքեցեր, եթէ լինիցին սոքա մի»։ Նա ինքն իսկ ասէ ցաշակերտսն, եթէ «Պատուիրան մի նոր տամ ձեզ զի սիրեսջիք զմիմեանս»։

Քանզի որ զմեռեալս յարուցանիցէ, այն պարկեշտագոյն և պայծառագոյն է. և յիրաւի իսկ. զի այն ամենեւին իսկ Քրիստոսի շնորհացն է, և այս քո փութոյ. այս արդարև քրիստոնէի է և աշակերտի Քրիստոսի, որոյ զանձն 'ի խաչ հանեալ իցէ և չունիցի ինչ հաղորդութիւն ընդ երկրի. զի առանց այսր ոչ մարտիրոսութիւն ինչ կարէ օգնել. և զի այս այսպէս իցէ, ուսիր 'ի Պաւղոսէ երանելւոյ, որ զերկուս գլխաւորս առաքինութեանցն առ, մանաւանդ թէ երիս իսկ, թէ որք զնշանսն առնիցեն, և զգիտութիւն տայցեն, և ընվայրն յաղօթեսցեն առանց սիրոյ, և ոչ ինչ օգտեն. և եթէ կիսով իցէ, լուր. «Եթէ ջամբեսցիս զինչս իմ աղքատաց, և սէր ոչ ունիցիմ, ոչ ինչ իսկ եմ»։ Քանզի զի մարթի ջամբել զինչս աղքատաց առանց սիրոյ, և մատնել զամենայն ինչ. և զայս ամենայն ասացեալ է մեր անդէն իսկ 'ի սիրոյն տեղւոջ, և անդր առաքեմք զայնոսիկ՝ որք կամիցին հաւաստեաւ 'ի վերայ հասանել։ Բայց այժմ որպէս ասացին՝ «Նախանձաւոր լե-

բուք շնորհացն»․ զմիմեանս սիրեսցուք և չլինիցիմք կա-
րօտ ինչք յառաքինութեանն ուղղութիւն, այլ ամե-
նայն ինչ դիւրաւ լինիցի մեզ առանց քրտանց, և զա-
մենայն ինչ ուղղեսցուք մեծաւ փութով։

Նոյն ոչ հաւատիկ, ասեն, այժմ սիրեմք զմիմեանս․
ամն ունի երկուս բարեկամս, և ամն երիս։ Չէ այն սէր
վասն մեր, այլ վասն սիրելի լինելոյ․ զի որ վասն մեր սի-
րիցէ, ոչ աշխարհի ինչ սիկղեն սիրոյ ունիցի, այլ զամե-
նեսեան իբրև զեղբարս․ և այնպիսեան զիւր հաւատակիցսն
իբրև զեղբարս հարազատս սիրել․ իսկ զհերետիկոսս և
զհեթանոսս և զհրեայս՝ ունել առ եղբարս ըստ բնու-
թեանն, և առ բարեկամս անպիտանս․ ողորմել և արքա-
մել և արտասուս արկանել վասն նոցա։ Նոյնու լինի-
ցիմք նմանողք մեր, յորժամ զամենեսեան սիրիցեմք և
զթշնամիսն, քան թէ նշանս առնիցեմք․ զի և ընդ մեր
ոչ կարի ընդ այն զարմանամք՝ յորժամ սքանչելիս ինչ
առնիցէ, որպէս յորժամ զմարդասիրութիւնն ցուցա-
նիցէ, և զչարիս ինչ չյիշիցէ։

Իսկ արդ եթէ առ մեր այն կարի զարմանալոյ արժանի
իցէ, մեծապէս և առաւել առ մարդկան․ յայտ է եթէ
այն իսկ առաւել զարմանալի առնէ զմեզ։ Սմին նա-
խանձաւորք լիցուք, և քան զՊաւղոս և զՊետրոս և
զայլս բազումս՝ որք զմեռեալս յարուցին, չզարմանիցեմք
նուաղագոյնք, թէպէտ և զմեռեալ անգամ չկարիցեմք
յումեքէ հալածել․ և առանց այսր թէպէտ և քան
զառաքելոցն մեծամեծ նշանս առնիցեմք, և թէ բա-
զում ձգունս վասն հաւատոցն յանձին կրիցեմք, չօգ-
տիցիմք ինչ․ և զայս ոչ եթէ ես ասեմ, այլ նա իսկ,
որ սիրոյն մնունդ էր, այսպէս պատուիրէր։ Արդ նմա-
նեսցուք․ և այնպէս կարիցեմք հասանել խոստացելոց
բարութեանցն, որոց լիցի ամենեցուն մեզ հասանել
շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի
Քրիստոսի․ ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն
սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և
յաւիտեանս յաւիտենից․ ամէն։

### Ի ՉՈՐՐՈՐԴ ՃԱՌԻՆ

Ո՛ ի որ 'ի մահուանէ չերկնչի, արտաքոյ քան զբռնութիւն սատանայի է. զի եթէ մարթ ընդ մարթոյ իցէ, և զամենայն ինչ որք փոխանակ անձինն տանիցէ, յորժամ և զնա եւս 'ի մահ դնիցէ արհամարհել, ապա ո՞ւմ լինիցի ծառայ։ Չերկնչել ինչ յումեքէ, չզանգիտէ բնաւ ինս. զի քան զամենայն ինչ 'ի վեր է, և ազատ է յամենայնէ. և որ յիւր անձն չխնայիցէ, եւս առաւել և ոչ յայլոց. և յորժամ զայնպիսի անձն գտանիցէ սատանայ, չկարիցէ ինչ նմա գամագիր լինել։ Այլ արդ ասէ ասա, ոչ կարիցէ գամագիր լինել. զնա ինչ ըսպառնայցէ, կամ անարգանս, կամ յաշխարհէ՞ հանել։ Այլ այն կարի իսկ փոքր է այնմ՝ որոյ և զանձն արհամարհեալ իցէ ըստ երանելւոյն Պաւղոսի։ Տեսանե՞ս զի յորժամ զմահու բռնութիւնն 'ի բաց արար, և զսատանայի զզօրութիւնն ընդ նմա խափանեաց։ Որ ոք վասն յարութեանն բարւոքապարտիկ Ճարտարեալ և զգաստանալ գիտիցէ, զիա՞րդ իցէ զի 'ի մահուանէ երկնչիցի կամ սարսիցէ։

Այլ արդ մի՛ ինչ դժկամակ լինիցիք՝ թէ ընդէ՞ր զայս ինչ և զայն ինչ չարչարանս կրեցաք. քանզի այսպէս պայծառագոյն լինի յաղթութիւնն. չէր այնպէս պայծառագոյն, թէ չէր մահուն զմահ լուծեալ։ Այն իսկ է զարմանք, զի որովք զօրանայր՝ նոքիմբք պարտեաց, որով ամենայնիւն հնարս և մեքենայս կարէր գտանել։ Այլ արդ մի՛ տացուք զյաղթութեան պարգեւս 'ի ձեռն թշնամեաց. «Քանզի ոչ եթէ ընկալաք զհոգի վեհատութեան, այլ զհոգի զօրութեան և զսիրոյ և զգաստութեան»։ պինդ կացցուք առաքինութեանն արհամարհել և ոչ ինչ համարել զմահ։

Այլ հեծեն մի՞շտ միտք դաւանալէս, եթէ յո՛ եհան զմեզ Քրիստոս, և յո՛ իջուցաք մեք զանձինս։ Յորժամ տեսանիցեմք զկածողս 'ի հրապարակս և զձիս և զաշխարհանս 'ի վերայ մեռելոց, զիա՞րդ խայտառակեն զանձինս ողբովք և կական բառնալով։ Ով հաւատացայք, ամաչեմ 'ի հեթանոսաց և 'ի Հրէից և յայլազանդոց և յամենեցունց իսկ առ հասարակ. որ զայն տեսանեն՝

զմեզ ծառայս առնեն. և որչափ առիցեմ այնուհետև, ընդ վայր առնեմ վասն յարութեան. և որչափ ճարտարիցեմ ինչ, ոչ ընդ իմ բանսն հային հեթանոսք, այլ ընդ ձեր գործսն: Այս անդէն վաղվաղակի առիցեն, ով որ 'ի սոցանէ կարիցէ զմահ արհամարհել, որ ոչ և զայլոց մահ կարիցէ տեսանել: Բարիոք են բանքն որ 'ի Պաւղոսէ ասացան, բարիոք և երկնից արժանի և Աստուծոյ մարդասիրութեանն: “Եւ ապրեցուսցէ զայնոսիկ՝ որ հանապազ մահուն երկիւղիւ կէին, և 'ի վտարանդի էին 'ի ծառայութեան„. այլ չտայք այսմ հաւատարիմ լինել, դուք որ գործովքդ մարտանչիք ընդ բանսն. Թէպէտ և բազում անգամ ա̃ծ արգել 'ի մարդկանէ, զի բառնայցէ 'ի միջոյ զայնպիսի չար սովորութիւնն:

Այս արդ աղէ ասա, զինչ յայտ առնիցեն կանթեղքն և մոմեղէնք լուցեալք. ո՞չ ապաքէն իբրև զնահատակս յուղարկեմք. զինչ ինչ յայտ և օրհնութիւնքն առնիցեն. ո՞չ ապաքէն զա̃ծ փառաւորեմք և գոհանամք՝ թէ այսուհետև պսակեաց զգնացեալն, և ազատեաց յաշխատութեանց, և հան յանյայտ աշխարհէ, և առ իւր՝ պահել զետեղ և անարատ: Ո՞չ վասն այսորիկ են օրհնութիւնքն և սաղմոսիցն պէսպէս նուագն. և այն ամենայն յուրախութենէ սրտիցն յայտ առնին: “Ուրախ ոք իցէ, ասէ, սաղմոս ասիցէ„:

Այլ ոչ ընդ այն ինչ հային հեթանոսք: Ո՞վ, ասէ, զայնմանէ ասէր ինչ՝ որ արտաքոյ կարեաց ճարտարիցէ և զցածութենէ խօսիցի. չէ ինչ այն մեծ և զարմանալի. այլ զայն ցոյց՝ որ 'ի կարիսն ոք ցածուցեալ՝ ճարտարամտիցէ, և ապա հաւատայից յարութեանն: Այս եթէ աշխարհական կանայք զայն առնիցեն, չէ ինչ զարմանալի, թէպէտ և նոցա զնոյն գործ գործել կարի յոռի է, քանզի և նոքա զնոյն գործ պահանջիցեն. որպէս և Պաւղոս ասէ, եթէ “Վասն ննջեցելոցն ոչ կամիմ եթէ տգէտք իցէք. զի մի իբրև զայլ հեթանոսս տրտմիցիք, որք ոչ ունիցին յոյս„. և ոչ եթէ վանականաց գրեաց զայն, և ոչ հանապազորդն կուսանաց, այլ աշխարհականաց և արանց. բայց սակայն ոչ այնպէս չար է: Յորժամ կին ոք կամ այր առիցէ զանձնէ 'ի խաչ ելեալ ընդ Քրիստոսի, և այրն զհերսն փետիցէ, և կամ

հակ ամենցի, ոչ նման եւեթ խրատ տալ չմերձենալ 'ի չարս, այլ զնոսա եւս երկեցուցանէ. և արդ ձեզ՝ և նոցա ձեօք խրատ տամ, մի ձեզ կոչել զայնպիսիսն, և մի նոցա գալ: Եւ արասցէ ա͞ծ զի բանս մեր գործ բարիս ինչ գործեսցէ, և սպառնալեացն յաղթիցէ. ապա թէ, որ մի իսկ լիցի, եթէ արհամարհիցիմք ինչ, հարկ լինի և մեզ զսպառնալիսն 'ի գործ ածել, և զձեզ եկեղեցւոյ օրինօք խրատել, և զնոսա՝ որպէս և նոցա պատշաճ իցէ: Ապա թէ ոք առ յանդգնել ինչ արհամարհիցէ, լուիցէ այժմ Քրիստոսի՝ զոր ասէրն. "Եթէ յանցանիցէ քեզ եղբայր քո, երթ յանդիմանեա զնա, մինչ դեռ դու և նա միայն ընդ միայն իցէք. ապա եթէ ոչ անսայցէ, առ ընդ քեզ մի կամ երկուս. եթէ այնպէս ոչ անսայցէ, ասասջիր յեկեղեցւոջ. եթէ եկեղեցւոյն եւս ոչ լուիցէ, համարեալ լիցի քեզ իբրև զմաքսաւորն և իբրև զհեթանոսս„: Եւ եթէ զայն որ առ իւն յանցանիցէ և չանսայցէ, հրամայ հատանել և 'ի բաց ընկենուլ, իսկ որ իւրն մեղանչիցէ և առ ա͞ծ, նմա զինչ պարտիցիմ [1] առնել՝ զայն դուք ընտրեցէք. զի դուք մեզ ինչ ոչ ստգտանիցէք՝ եթէ այնպէս ինչ անառակս գնացաք առ ձեզ:

Եթէ զմեր կապանս ոք արհամարհիցէ, Քրիստոս խրատեսցէ զայնպիսին՝ ասելովն, եթէ "Զոր կապիցէք յերկրի, կապեալ եղիցի յերկինս. և զոր արձակիցէք յերկրի, արձակեալ եղիցի յերկինս„: Զի թէպէտ և մեք տառապեալք և անպիտանք եմք և արհամարհելոյ արժանի, որպէս զի եմք իսկ արժանի, այլ ոչ եթէ զանձանց վրէժս խնդրեմք, և ոչ զպատման քէն պահանջեմք, այլ ձերում փրկութեանն տածիցք լինիմք: Պատկառեցէք աղաչեմ, և ակն ածիցէք: Զի թէ բարեկամ ոք վասն լուի սաստիցէ ումեք, ընդ միտսն պարտ է նայել. եթէ խնամոյ վասն իցէ սաստն և ոչ ամբարհաւաճութեամբ, անսալ պարտ է. որչափ եւս առաւել յորժամ վարդապետ սաստիցէ: Եւ վարդապետս՝ որ ոչ ձոխութեամբ ինչ խօսիցի, և ոչ զիշխանի թեկն ածիցէ, այլ խնամակալի բարս ցուցանիցէ. քանզի ոչ եթէ զիշխանութիւն ինչ կամիցիմք ցուցանել. և

1 Յօրինակին խանգարեալ էր զինչ պարտիցիմ:

զիարդ որդեակք, որք աղօթս առնեմք զի մի՛ արդեամբք այնպիսի ինչ ձեզ հասանիցէ, այլ վասն ձեր տառապիմք և կոծիմք։

Այլ արդ զանձինս մեծարիցէք, և մի՛ ոք զկապանս եկեղեցւոյ արհամարհիցէ. զի ոչ եթէ մարդ է որ կապէն, այլ Քրիստոս է՝ որ զիշխանութիւնս զայս ետ մեզ, և արար տեարս զմարդիկ այնպիսի պատուոյ։ Մեք յարձակել կամիմք ընդ գործ արկանել զիշխանութիւն. մանաւանդ թէ և զայնր իսկ զհարկն չկամիցիմք. քանզի և ոչ զոք 'ի ձէնջ կամիմք ընդ կապանօք արկանել. զի ոչ եթէ այնպէս հէքք և թշուառականք իցեմք, թէպէտ և կարի իսկ անպիտանք իցեմք։ Ապա 'ի հարկէ ինչ այնպէս լինիցի, մի ինչ մեղադիր լինիցիք. քանզի ոչ եթէ կամաւ և ախորժելով ինչ, այլ քան[1] զձեզ՝ որ ընդ կապանօք մնանիցէք, մեզ ևս չար ցաւեն կապանքն։ Իսկ եթէ ոք արհամարհիցէ զկապանսն, հասցէ 'ի վերայ նորա ժամանակ դատաստանին, որ և ցուցանիցէ նոցա։ Ամաչեցեալն ասեմ, և չկամիմ ասել, զի մի՛ խոցեցից զմիտս ձեր։

Բայց նախ աղօթս առնեմք, զի մի՛ լինիցի մեզ հարկ յայն գալ. ապա եթէ գալ լինիցի, մեք զմերն կատարեմք, արկանեմք ընդ կապանօք։ Այլ եթէ ոք խզիցէ, սակայն ես զիմն արարից, և անհոգ լինիցիմ յայնուհետև 'ի պատժոց. և ձեզ բանք ընդ այնմ լինիցի, որ ինձ կապելն հրամայեաց։ Քանզի և յորժամ այր թագաւոր յորժամ յատենի նստիցի, և հրամայիցէ զոք 'ի սպասաւորացն կապել, և նա ոչ միայն դահճին չանսայցէ, այլ և զշղթայսն ևս մանրիցէ, ոչ եթէ զդահիճն և ըզսպասաւորն թշնամանիցէ, այլ զթագաւորն՝ որ հրամայեաց։ Սոյն եթէ որ ինչ 'ի հաւատացելոց գործ գործէին՝ զայն իւր համարի, յորժամ որ յուսուցանել[2] ոք կարգեալ իցէ՝ և թշնամանիցի, որչափ ևս առաւել իւր համարի զթշնամանսն։

Այլ մի՛ լիցի ումեք յեկեղեցւոյ յայնպիսի հարկ գալ։ Զոր օրինակ չմեղանչելն բարի է, նոյնպէս և ըզղջանալն յանձն առնուլ՝ կարի ազնիւ։ Կալցուք յան-

1 Օրինակին պակասէր քան։

2 Օրինակին յուսուցել. եղելոց յանձին։

ձին զպատուհասն, և փութացուք չմեղանչել. ապա եթէ մեղանչիցեմք, և սաստիկն տանիցիմք: Որ օրինակ չէ բարի վէրս յանձն առնուլ. և եթէ այնպէս դէպ տայցէ, պարտ է դեղ դնել վէրին, նոյնպէս և աստ: Բայց մի լիցի ումեք այնպիսւոյ դեղոյ կարօտանալ. զի “Հաստատեալ եմք վասն ձեր 'ի լաւ անդր, և որ լինի է փրկութեամբ„. զի թէպէտ և այսպէս սաստկագոյնս խօսիցիմք, վասն բազում ձերոյ զգուշութեան խօսիմք: Լաւ իցէ եթէ ես խիստ և անագորոյն և յանդուգն կարծեցայց ձեզ, քան թէ դուք զայս կամօն չառնիցէք: Հաւատամ յա̃ծ եթէ ոչ յանօգուտ ինչ լինիցի ձեզ բանս այս, այլ այնպէս դառնայցէ, որպէս և բանքդ ձեր 'ի մեր գովութիւն ծախին և յարգանս. զի ամենեքին արժանի լիցուք հասանել բարութեանցն, զոր խոստացաւ ա̃ծ սիրելեաց իւրոց 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սըրբոյ փառք, պատիւ և իշխանութիւն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## Ի ՀԻՆԳԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

Եւ արդ ընդէ՞ր խռովիցիմք. մի՛ ոք յորժամ տեսանիցէ զչարս 'ի բարութիւն, խռովիցի ինչ. չէ աստէն հատուցումն ոչ չարեաց և ոչ բարեաց: Եւ եթէ դուն ուրեք յանկարծակի ինչ լինիցի չարեաց կամ բարեաց հատուցումն, ոչ ըստ արժանւոյն, այլ դիպըն ինչ Ճաշակ է դատաստանին. զի որ 'ի յարութենէն թերահաւատ լինիցին, գէթ աստէն ինչ խրատիցին: Եւ արդ յորժամ տեսանիցեմք զչար ոք մեծացեալ, մի ինչ ընդ այն կասիցեմք. և յորժամ տեսանիցես զբարի ոք 'ի տառապանս, մի ինչ խռովեսցուք. անդ են պսակք, անդ են տանջանք, անդ են պարգևք, անդ են պատիժք:

Բայց այլ ևս, չիք չար որ ամենևին չար իցէ, և չիք բարի որ ամենևին բարի իցէ, այլ ունի մասն ինչ 'ի մեղաց. և յորժամ աջողեսցի մեծութիւն չարին, գլխոյն եղեռան է. զի վասն սակաւ բարութեանցն զոր աստ առնուցուն, անդ զկատարեալ տանջանսն ընդունիցին, վասն այնորիկ աստէն առնու: Իսկ երանելի է այն՝ որ աստէն լլկիցի, զի զամենայն մեղսն Թօթափիցէ, և

սուրբ և անարատ և առանց պատժոց երթիցէ անդ։ Այլ զայս Պաւղոս ուսուցանէ մեզ. «Վասն այնորիկ են 'ի ձեզ բազում հիւանդք և ախտաժէտք, և շատ ննջեցեալք»։ և դարձեալ թէ «Մատնեցի զայնպիսին 'ի սատակումն մարմնոյ»։ և մարգարէն ասէ, թէ «Ընկալաւ 'ի ձեռանէ տեառն կրկին զհատուցումն մեղաց իւրոց»։ և Դաւիթ, թէ «Տես զթշնամիս իմ զի բազում եղեն, և ատելութիւն 'ի նանիր ատեցին զիս»։ և «Թող զամենայն զմեղս իմ»։ և դարձեալ «Տէր, տուր ինձ զխաղաղութիւն քո, քանզի զամենայն ինչ հատուցեր մեզ»։ այլ այսու ամենայնիւ յայտ առնէ զչարեացն պատիժս, զոր վասն մեղաց աստէն կրեցին։

Իսկ մեք գտանիցեմք, եթէ չարք աստէն առին զբարեաց հատուցումն, և անդ զկատարեալ տանջանսն տանջիցին, լուր Աբրահամու որ ասէր ցմեծատունն, եթէ «Դու ընկալար զբարիսն քո, և Ղազարոս զչարիսն»։ զոր բարիս։ Ընկալար իսկ՝ յայսմ վայրի զմիթէ չընկալարն ասել յայտ առնէ. զի ցուցցէ եթէ երկոքին ըստ պարտեաց ընկալան. նա զբարութիւնսն, և սա զչարիսն. և թէ եղև, վասն այսորիկ ասէ՝ եթէ «Սա աստ մխիթարի, և դու այդր տապակիս»։ զի տեսանես զսա աստ սուրբ 'ի մեղաց, և դու չկարես ինչ օգտել։

Այլ արդ մի ինչ տրտմեսցուք, յորժամ զմեղաւորս աստ 'ի բարիս տեսանիցեմք. այլ յորժամ վշտանայցեմք ինչ մեք աստէն, ուրախ լիցուք, զի այն 'ի փոփոխումն լինիցի։ Մի խնդասցուք ընդ դիւրութիւն, քանզի նեղութիւն խոստացաւ իւրոց աշակերտացն Քրիստոս. և Պաւղոս ասէ, «Ամենեքին որք կամիցին ա̅ծպաշտութեամբ կեալ 'ի Քրիստոս Յիսուս, 'ի հալածանս կեցցեն»։ Ոչ ոք նահատակ առաքինի 'ի մարտի բաղանիս խնդրէ, և կամ սեղան ամենալից խորտկօք, և գինի և ուրախութիւն. չէ այն արուեստ նահատակաց, այլ անձնադիւրաց. զի ըմբիշ նահատակն ընդ փոշին, ընդ եւղն, ընդ ձիւռագայթիցն ջերմութիւնն, ընդ քիրտն բազում նեղութեամբք ոգորի։

Ժամանակ այս է նահատակելոյ. և եթէ այս այսպէս իցէ, ապա և վէրս առնլոյ, և ընդ արիւն և ընդ ապաւառ գալոյ, և ձգունս յանձին կրելոյ։ Լուր զինչ ասէ երանելին Պաւղոս. «Այնպէս նկրտիմ, ասէ, որ-

պէս ոչ եթէ զհողմն ինչ կոծիցեմ »: Զամենայն աւուրս կենաց 'ի պատերազմի կալ համարեսցուք, և մի երբեք խնդրեսցուք հանգիստ, և ոչ իբրև զխաղս տաղտապիցեմք ընդ նեղութիւնս: Ապա եթէ ոչ միշտ մըրցիցիս, յորժամ պատերազմ հասանիցէ՝ խամ գտանիցիս: Այլ է հանգստեան ժամանակ. նեղութեամբ պարտ է մեզ կատարեալ լինել. թէպէտ չիցեն հալածանք և նեղութիւնք, այլ են այլ նեղութիւնք, որ հանապազորդն 'ի վերայ հասանեն. և եթէ այս նեղութեան չժուժայցեմք, հազիւ այլոց նեղութեանցն տանիցեմք: « Փորձութիւն 'ի վերայ ձեր չիք եկեալ, ասէ, բայց 'ի մարդկանէ »:

Աղօթս արարէք առ ած՝ մի մտանել 'ի փորձութիւն. բայց եթէ մտանիցեմք, առաքինութեամբ տանիցիմք: Զձգել իւրովին զանձինս 'ի նեղութիւնս, ցածնոց մարդոց է. իսկ յեկեալ հասեալ 'ի նեղութիւնսն կալ հաստատուն և համբերել, առաքինեաց և նահատակաց է: Մի անձամբ զանձինս ձգեսցուք 'ի նեղութիւնս, զի այն յանդգնութեան գործ է. և մի յորժամ այլք տքնաբար տանիցին, և իրքն կոչիցին, թողացուք. զի վատութեան գործ է այն: Այլ եթէ քարոզութիւնն կոչեսցէ, մի հրաժարեսցուք և զանգիտեսցուք. բայց վայրապար առանց իրիք պատճառանաց յորժամ ոչ պէտք ինչ իցեն, և ոչ հարկ 'ի վերայ կայցէ, և ոչ ածպաշտութիւն կոչեսցէ, մի մեզէն 'ի վերայ դիմիցեմք. զի այն ցոյց առնելոյ իրք են, և սնոտի պարծանաց նշանակ. ապա եթէ իցէ ինչ՝ որ ածպաշտութեանն վնաս լինիցի, թէպէտ և բազում մահ հասանիցէ մեռանել, ընդ այնորիկ մի զանգիտեսցուք:

Մի անձամբ ձայնատուր փորձութեանցն լինիցիս. յորժամ ոչ ըստ ածպաշտութեանն ինչ 'ի վերայ հասանիցեն ձգունքն՝ որոց ցանկանայցես, զի կորզիցես վայրապար 'ի քեզ զնեղութիւնսն, ուստի շահ ինչ ոչ լինիցի: Զայս ասեմ, քանզի կամիմ զի պահիցէք զօրէնս Քրիստոսի, որ հրաման ետ չմտանել 'ի փորձութիւն, և զմիւս հրամանն՝ առնուլ զխաչն և երթալ զհետ նորա. և սոքա չեն հակառակ միմեանց, այլ կարի իսկ միաբան: Դու որպէս զայր մի զինուոր պատրաստ լինիցիս զինուք՝ հանապազ արթուն և զուարթուն,

ցանկ ակն ունել պատերազմի. բայց մի՛ ծնանիցիս պատերազմունս. զի այն ոչ զօրականաց գործ է, այլ խաղամարար մարդկան: Իսկ եթէ ա̃ծպաշտութեանն փող գոչիցէ, վաղվաղակի ելանիցես, և զանձն 'ի մահ դնիցես. մտանիջիր բազում խրախանօք 'ի պատերազմ. փլուզանիջիր զսահմանս թշնամւոյն. կծիցես զղեկն սատանայի, կանգնիցես զնշանակ յաղթութեանն:

Ապա եթէ ոչ ինչ ա̃ծպաշտութիւնն վնասիցի, և ոչ կրօնքս մեր յաւարի վարիցին, զոգւոցն վտանգս առիցեմ, մի ինչ հարկ լինիցի քեզ առնել զոր ինչ ա̃ծ ոչ կամիցի. մի վայրապար ինչ յանդգնեսցիս: Նոյն արիւն պարտ է գալ քրիստոնէին, ոչ ընդ այլոյ, այլ զիւր արիւնն պատրաստական ունել հեղուլ. այնպիսի յօժարութեամբ հեղուցուք զիւրաքանչիւր արիւն, յորժամ վասն Քրիստոսի պատերազմ ինչ 'ի վերայ յառնիցէ, զոր օրինակ ոք զջուր սաստիկ հեղուցու. քանզի չար իսկ է արիւն որ բղխէ 'ի մարմնոյն: Այլ այնպէս դիւրաւ մերկասցուք զմարմինն, որպէս զհանդերձս ինչ 'ի բաց մերկանալ յանձնէ:

Այլ այն յայնժամ լինիցի, յորժամ ոչ յինչս կապիցիմք, և ոչ 'ի տունս, և ոչ յայլ ինչ խնամս. եթէ ամենեքին լինիցիմք կատարեալք. զի թէ որ զզօրականաց կեանս կեցին՝ զամենայն ինչ 'ի բաց թօթափեն, և ուր պատերազմ կոչիցէ՝ վաղվաղակի անդր հասանեն, և ամենայն ժուժկալութեամբ համբերեն վշտաց, որչափ ևս առաւել մեզ, որ Քրիստոսի զօրականքս եմք, պարտ իցէ պատրաստ գտանել՝ տալ ճակատ ընդ մարմնոյ կարիս: Զիջեն այժմ հալածանք, և մի իսկ լիցի երբէք. սակայն են այլ պատերազմունք ընչիցն ցանկութեանց: Զայնպիսի պատերազմէ ճառեալ Պօղոս ասէր, “Ոչ է մեզ մարտ պատերազմի ընդ արեան և ընդ մարմնոյ”:

Այլ քանզի այսպիսի պատերազմ միշտ 'ի վերայ յառնէ, վասն այնորիկ ցանկ կամի վառեալ և կալ մեզ հաստատուն. զմիշտն վառեալ և կալ կամի. “Պնդեցէք, ասէ, զմէջս ձեր”. զի և այս իսկ հանապազորդ ժամանակի է. և յայտ արար թէ ցանկ պարտ է կազմ գտանել: Քանզի բազում պատերազմ է ընդ լեզուի, բազում կռիւ է ընդ աչս, և մեք ամենին զգուշանայցեմք.

թագաւոր պատերազմունք են և ցանկութեանց, վասն այնորիկ նախ անտի առնէ սկիզբն վարել զզօրականն Քրիստոսի. “Պնդեցէք, ասէ, զմէջս ձեր ճշմարտութեամբ”. քանզի պատրանք և ստութիւն է ցանկութիւնն, և որպէս և մարգարէն ասէ, եթէ զի “Սիրտք իմ լցան պատրանօք”. չէ ցանկութիւն ինքն, այլ ընտուեր ցանկութեանն. “Պնդեցէք, ասէ, զմէջս ձեր ճշմարտութեամբ”. Այս ինքն է, ճշմարիտ ցանկութեամբքն, զգաստութեամբ, պարկեշտութեամբ.

Վասն այնորիկ տայ զայսպիսի խրատ, զի գիտէ զմեղացն զեղծութիւն, և կամի զամենայն անդամս մեր պարապել. “Յասուածս, ասէ, տարապարտուց՝ ոչ արգարացի”. Եւ զրահս կամի ագուցանել մեզ, և վահանս ընդդէմ ունել. քանզի կարի յանպատրաստից դիմէ ՚ի վերայ ցասումն, և թագաւոր անձրևաբերից և դարանաց պէտք են առ ՚ի զինքս հարկանել և յաղթել. Վասն այնորիկ որպէս ՚ի քաղաքս ինչ յանկերպայն կազմեաց[1] ամ̃ ոչ ՚ի ցասմանն, զի մի դիւրաւ հասանիցէ և ելանիցէ ամենևին ապականել զմեզ կենդանիս. քանզի հուր է և մորիկ ծխեալ. և չէր հնար այլում անդամոց այնպիսի բռնութեան հանդուրժել: Քանզի և բժիշկք ասեն, թէ վասն այնորիկ թաղանթ ՚ի ներքոյ և ՚ի վերոյ տարածեալ է շուրջ զսրտիւն, զի ՚ի մէջ կակղին կայցէ, որպէս ՚ի սպունգ ինչ յեցեալ և հանգուցեալ սիրտն. զի մի ՚ի շարժելն ընդ ոսկերս ՚ի խստի բախիցի փափուկն, և ճմլեսցի ՚ի խաղալոյ ցասմանն բարկութէ:

Նաև արդ կարի պէտք են մեզ կարծրագոյն զրահից, զի հանապազ ՚ի հանդարտութեան պահիցեմք զայնպիսի զաղանս: Մխոյ է և մեզ սաղաւարտ ՚ի գլուխ, զի անդ բանին խօսին բնակեալ է, և անտի կամ կեալ հասանիցէ՝ եթէ զլաւ ինչ խօսիցիմք, և կամ կորնչել՝ եթէ զչար ինչ և զանպիտանս բարբառիցիմք. վասն այնորիկ ասէ, և “Առէք զսաղաւարտն փրկութեան”. քանզի և ուղիղն փափուկ է, վասն որոյ և նա որպէս ընդ ամանով ինչ ընդ գանգովն ծածկեալ կայ ՚ի վերայ քան զամենայն անդամսն, և ամենայն բարեաց և կարեաց պատճառք լինի մեզ, կամ զլաւն կամ ոչ զանպիտանսն ճառաչել:

1 Օրինակին պակասէր կաղեաց:

Այլ ոտից և ձեռաց մերոց պէտք են զինուք. ոչ այսց ոտից և ոչ այսց ձեռաց, այլ ոգւոցն. զի ձեռքն զբարիս գործեսցեն, և ոտքն յօգուտ գնասցեն։ Աղաչեսցուք այսուհետև զանձինս այսպէս, զի յաղթել կարասցուք պատերազմաց, և գտցուք զպսակն 'ի գլուխ Քրիստոսի Յիսուսի տերամբ մերով, ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## Ի ՎԵՑԵՐՈՐԴ ԺԱՄԷՆ

Այս արդարև այն իսկ է հանգիստ, զոր մերժեսցին ցաւք և տրտմութիւնք և հեծութիւնք։ Ուր ոչ հոգք ինչ իցեն, և ոչ աշխատութիւնք, և ոչ կասկած. և ոչ երկիւղ խախտիցէ և քայքայիցէ զմիտս, բայց միայն երկիւղն յայն՝ որ լի է խնդութեամբ։ Չիք անդ քրտամբ երեսաց ուտել զհաց, և փուշ և տատասկ. չիք անդ ցաւովք և տրտմութեամբ որդիս ծնանել, և դարձեալ առ այր իւր դառնալ, եթէ նա միւսանգամ տիրեսցէ նմա. այլ ամենեքին խնդութիւն է, խաղաղութիւն և քերկրութիւն և բարութիւն և հեզութիւն։ Չիք անդ նախանձ, և ոչ չարակնութիւն, և ոչ ցաւք, և ոչ մահ. և ոչ մահ մարմնոյ, և ոչ մահ հոգւոյ. չիք անդ խաւար և ոչ գիշեր, այլ ամենեքին տիւ, ամենեքին լոյս։ Չիք անդ վաստակել, և ոչ յոգնել և զմսլանալ, այլ հանապազ 'ի ցանկութիւնս բարութեանն հայեսցուք, միշտ վայելիցեմք, և ցանկ պիտիցի։

Ասեմք զի օրինակ ես ինչ տաց զանտի կենացն. թէպէտ և չէ հնար, սակայն որչափ ինչ հնար է՝ ջանացայց տալ օրինակ ինչ։ Նայեցարուք ընդ երկինս, յորժամ սուրբ յամպոյ իցէ, և ցուցանիցէ զմեծապայծառ պատակն և զփայլելուչ երեսացն գեղեցկութիւն. և յորժամ բազում ժամս պշնուցումք, նայեցարուք դարձեալ և յատակն՝ որ ոչ այնպիսի ինչ իցեն, այլ ես աւելի գեղեցիկ որչափ քան զկաւեղէն յարկք ոսկեղէն. և դարձեալ յետ նորա 'ի վերին ձեղունն. ապա 'ի հրեշտակս և 'ի հրեշտակապետս, և յանչափ գունդս անմարմնական զօրութեանցն. ապա և յայն իսկ արքունիսն, 'ի հայրենի աթոռ։ Այլ չկարէ, որպէս ասացին,

բան յանդիմանս կացուցանել։ Փորձի պէտք են և փոր-
ձիւն գիտութեան։ Որպէս ինչ համարեսջիք զԱ՛դամ 'ի
դրախտին, կարի քան զայն առաւել է այն բնակու-
թիւնն. որչափ լաւ են երկինք քան զերկիր։

Բայց և այլուստ խնդրեսցուք օրինակ ինչ։ Եթէ այն-
պէս ինչ 'ի դէպ լինէր թագաւորին՝ որ այժմ ունիս զա-
մենայն ինչ՝ զաշխարհս ունել, և 'ի պատերազմաց և 'ի
հոգոց ազատ լինել, բազում հարկս առնուլ և յամե-
նայն կողմանց ոսկի յանձախել, և հոյակապ և անուանի
լինել, զիա՞րդ թուէր ձեզ, որպիսի՞ ինչ մեծք լինէին,
որպիսի՞ զուարձութեամբ զուարձանայր. յորժամ պա-
տերազմունք 'ի միջի չկային, և աշխարհս ամենայն 'ի
խաղաղութեան և 'ի ծառայութեան կային նմա. այն-
պիսի է հանգիստն այն. մանաւանդ թէ չեղև իսկ բա-
ւական օրինակ ինչ այնմ 'ի մէջ բերել. այլ պարտ է և
այլ ինչ օրինակ խնդրել։

Մ՛իտ դիր, յորժամ մանուկ ոք արքայորդի մինչ դեռ
յորովայնի մօրն իցէ, չէ ինչ հմուտ թագաւորութեն
պատուոյ. իսկ յորժամ դէպ լինիցի արտաքս ելանել,
և անդէն յաթոռ արքունական հասանել, ոչ մեղմով
ինչ, այլ վաղվաղակի միանգամայն առ ինքն առնուլ.
այնպիսի ինչ է հանգիստն այն. և ոչ միայն այնպիսի,
այլ ևս բիւրապատիկ առաւել։ Կամ թէ ոք կալանա-
ւոր, որոյ բազում վիշտս 'ի բանտի կրեալ իցէ, և յա-
թոռ թագաւորութեան հասանիցէ, նա և ոչ կարիցէ
հաւաստեաւ ինչ օրինակ այնմ հանգստեանն նմանեցու-
ցանել։ Զի աստ որում ինչ ոք և հասանիցէ բարեաց,
զառաջին օրն՝ թէպէտ և զթագաւորութենէն իսկ ա-
սիցեն, մի օր միայն կարի պայծառացեալ ունի զցան-
կութիւնն, կամ զերկուսն կամ զերիս. և յորժամ բա-
զում ժամանակս յառաջ խաղայցէ, կալ կայ յուրա-
խութեանն, այլ ոչ այնչափ ինչ 'ի հանգստեանն. քան-
զի զիջանէ օր 'ի սովորութենէն որպիսի ինչ և իցէ. իսկ
անդ ոչ միայն չկասէ, այլ ևս քան զևս աճէ։

Եւ արդ 'ի միտ առ՝ որպիսի ինչ իցեն ոգիքն որ անդր
երթեալ իցեն, և չունիցին ակն բարութեանցն վախ-
ճանի, և եղծումն և այլայլումն. այլ միշտ գալ յառա-
ւելութիւն և ունել կեանս անվախճանս, կեանս ազատս
յամենայն հոգոց և յամենայն տրտմութեանց, լի ու-

րախութեանն, բազմապատիկ բարութեամբք ։ Ո՜ ի եթէ աստ յորժամ 'ի դաշտ ուրեք եղանիցեմք, ուր զօրք արքունի բանակեալ իցեն, խորանս հարեալ տեսանիցեմք, արահետս ձգեալ, նիզակս կանգնեալ, գեղարդունս շողացեալ, կմբեթեայս վահանացն շրջանակեալս, նշանս արձակեալ, գրօշս գործեալ, կարի իմն զարմանամք և սքանչանամք. և եթէ զթագաւորն ևս 'ի միջի տեսանիցեմք, կամ թէ հետի ընթանայցէ սակեկաւռ վահանօք, և կամ թէ ձիավարիցէ ոսկւովք զինուք և ականակապ ամձաւօք երիւարօք, թուի մեզ՝ թէ քան զայն բարութիւնս այլ ինչ չկայցէ տեսանել. այլ թէ զամենեսին տեսաք ։

Ո՜ ինչ համարիցիս, յորժամ զխորանս սրբոցն կանգնեալս տեսանիցես և զյարկսն յաւիտենից ։ "Ընկալցին, ասէ, զձեզ յարկսն իւրեանց յաւիտենից". յորժամ զիւրաքանչիւր ոք 'ի նոցանէն առաւել քան զարեգական ճառագայթսն տեսանիցես պայծառացեալս. ոչ 'ի պղնձոյ և յերկաթոյ, այլ 'ի փառաց, զորոյ զպայծառութիւնն[1] ակն մարդկեղէն չկարէ տեսանել, և այն զմարդկան. իսկ զհազարաց հազարաց հրեշտակապետաց և զբիւրուց բիւրուց հրեշտակաց և զքրովբէից և զսերովբէից, զաթոռոց և զտէրութեանց և զպետութեանց և զիշխանութեանց, որոց գեղն անհնարին է և ըստ մտ՟մ միտս անցանէ, զիա՞րդ կարիցեմք ճառել ։

Այլ ցե՞րբ ոչ դադարեմք յընթանալոյ զհետ անհաախն. ըստ այնմ "Ո՛ր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զոր ինչ պատրաստեաց Ած սիրելեաց իւրոց" ։ Այլ եթէ այս այսպէս իցէ, ապա չիք ինչ կարի ողորմելի քան զայնոսիկ՝ որք անտի վրիպեցին. և ոչ առաւել երանի քան զայնոսիկ՝ որք այնմ հասանիցեն ։ Այլ արդ եղիցուք և մեք յերանելեացն, զի հասանիցեմք յաւիտենից բարութեանցն 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

1 Օրինակին պակասէր պայծառութիւնն ։

## ՅԵՕԹՆԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

Այլ մեզ այսուհետեւ ժամանակ 'ի դէպ է ասել, մատիցուք համարձակութեամբ եւ խնդրեսցուք. միայն թէ զհաւատսն մատուցանիցեմք, եւ զամենայն ինչ տայ։ Նոյժմ է ժամանակ պարգեւաց. մի ոք զանձն անյոյս համարեսցի։ Յայնժամ է ժամանակ անյոյս, յորժամ հարսանիքն փակեսցին, յորժամ Թագաւորն մտանիցէ եւ զբազմականօքն շրջիցի, յորժամ առնուցուն զզողնահապետին՝ որք այսմ արժանի լինիցին։ Նոյժմ չէ եւս է, քանզի դեռ Թատրն առաջի կայ, դեռ եւս պատերազմ 'ի մէջի կայ, դեռ եւս յաղթութիւնս յերկրայս է. փոյթ յանձին ունիցիմք, քանզի եւ Պաւղոս ասէ. "Նոյնպէս ընթանամ որպէս ոչ յաներեւոյթս ինչ". ընթացից պէտք են, եւ կարի խիստ սաստիկ ընթացից։

Որ ընթանայցէն՝ չտեսանէ զոք, եւ թէ պատահիցէ ոք նմա, եւ թէ ընդ մարգագետինս եւ ընդ սաստիկ տեղիս անցանիցէ. որ ընթանայցէն, ոչ 'ի տեսողսն նայի, այլ 'ի պարգեւիշն։ Ոչ է մեծատունք իցեն եւ թէ աղքատք, թէ պարսաւիցէ ոք եւ եթէ զան հարկանիցէ, թէ թշնամանիցէ ոք եւ քարինս զհետ ձգիցէ, եթէ ըղձուն ոք առնուցու եւ կամ զկին եւ զորդիս առնուցու, թէ զինչ եւ առնիցէ ոք, միումն եւեթ ուշ ունիցի՝ ընթանալ եւ զպսակն առնուլ։ Որ ընթանայցէ, ոչ ուրեք դադարէ. ապա եթէ սակաւ ինչ հեղգայցէ, զամենայնն կորուսանէ։ Որ ընթանայցէ, ոչ միայն չկասէ նախ 'ի գլուխ ասպարիսին եկանելոյ, այլ եւս քաջ յաճախէ զընթացսն։

Զայս ասեմ վասն այնոցիկ՝ որք ասիցեն, թէ 'ի մանկութեանն վաստակեցաք, եւ 'ի մանկութեանն պահեցաք, արդ 'ի ծերութիւն հասաք, չեմք առակ այնպիսի ինչ Ճգունս յանձին ունելոյ։ Նուաճել յայնժամ պարտ է յոլովել յառաքինութիւնս։ Մի՛ զառաջին ինչ ուղղութիւնս համարիցիս. այլ արդ մանկացիր եւ համարեա զանձինդ յաղթող. զի որ զմարմնաւոր ընթացս ընթանայցէ, յիշաւի յորժամ 'ի ծերութիւն հասանիցէ՝ չկարէ նոյնպէս ընթանալ, քանզի 'ի մարմնին տկարանայ է ամենայն Ճգնութիւնն. խակ դու ընդէ՞ր կա-

սեցուցանես զընթացսն. զի ոգւոյն գործ է, և ոգւոյն արթնոց. զի ոգիքն առաւել 'ի ծերութեանն առողջանան, յայնժամ առաւել յաջողք լինին, յայնժամ կարի խիզախեն: Որ օրինակ մարմինն յորժամ ջերմամբ ծնկիցի և այլովք ստէպ ստէպ ցաւօք, թէպէտև կարող է՝ վատ է. և յորժամ զերծանիցի յայնպիսի վարանաց, ապա միւսանգամ ոգի արկանէ. Նոյնպէս զոգին 'ի մանկութեան՝ և ջերմ ցանկութեանն լքէ, և փառասիրութիւնն հաշէ, մանաւանդ ուր փափկութիւնք իցեն, և անառակ ցանկութիւնք որ ափրոդիտեանն կոչին, այս ինքն աստղկեան:

Իսկ ծերութիւնն ըստ ամենայն լկութիւնս անցեալ՝ զմնաւ կարիսն 'ի բաց թօթափէ, զկէան առ յոգ, և զկէան առ 'ի զուարթնութիւն սիրելոյ, զի զեռանդն մանկութեանն կարծեալ ծերութեանն է. և չտալ ընաւ ամենեւին մտացն զհեշտ կամացն երթալ, այլ իբրև զազգի ազգի ինչ պատերազմունս ցածուցանել, որքեալ 'ի խառնութեանց, և 'ի բնակութիւնն հաստատեալ կացուցանէ, և բազում համարձակութիւն և հանդարտութիւն գործէ, և բազում երկիւղ անկէ 'ի միտսն: Ոչ թէ և այլ ոք ոչ, ասեն, սակայն ծերացեալք զիտեն եթէ վախճանելոց են, եկեալ հասեալ է 'ի դրունս մահու: Յորժամ երկրաւոր ցանկութիւնքն յուզեալ 'ի վերայ խաղայցեն, առ ահ դատաստանին մտեալ՝ զայն 'ի բաց քերիցէ, և զխիստ կակուղ առնիցէ, ո՞չ ապաքէն ևս դիւրին լինիցի, եթէ կամիցիս:

Եւ զիա՞րդ իցէ, ասեն, զի աշխատաւորիկ ուսանեմք քան զբազում մանկտի ևս չար զծերս գարգաշեալս: Ոչ յաճախութիւն չարեացն ասեմ. քանզի և զկատաղիս ուսանեմք, թէպէտ և ոչ ոք մեղիցէ, անձամբ քարավէժ լինին: Արդ յորժամ ուսանիցես եթէ ծերն զմանկտոյ ախտ ախտանայցէ, չարեաց յաճախութիւն է այն. քանզի և ոչ ընդ մանկութեան մեղացն կարիցէ աղերս մատուցանել՝ թէ "Զմեղս մանկութեան և զանգիտութեան իմոյ մի յիշեր": Ոչ որ 'ի ծերութեանն այնպիսի կողիցի, յայտ է թէ 'ի մանկութենէ ևս չար. քանզի ոչ եթէ առ տգիտութեան ինչ և ոչ առ խակութեան և ոչ վասն տկեղծ հասակի, այլ 'ի ծուլութենէ: Քանզի այնպիսին կարէ ասել՝ եթէ ըզ-

մեղս մանկութեան և զանգիտութեան իմոյ մի յիշեր, որ 'ի ծերութե զպատշաճն գործիցէ, որ յալևորոյթն դառնայցէ. իսկ եթէ 'ի ծերութեանն նոյնպէս անառակ լիցէ, զիա՞րդ արժանի լինիցի այնպիսւոյն ծեր անուանել, որ ոչ 'ի հասակէն և յալեացն ակն ածիցէ: Իսկ որ ասիցէն՝ եթէ զմեղս մանկութեան իմոյ մի յիշեր, յայտ է թէ 'ի ծերութեանն զարդարութենէ բուռն հարեալ լիցէ, վասն այնորիկ զայն այնպէս ասիցէ: Արդ մի վասն ծերութեանն յոռութեանց՝ և 'ի մանկութե մեղաց զրկեալ գտանիցիս 'ի թողութենէ:

Իսկ արդ զիա՞րդ չիցէ անպատեհ և անզգր քան զթողութիւն, յորժամ ծեր այր 'ի կատակերգանոցս և 'ի կըրպակս մտանիցէ, և 'ի կառամարտիկ ասպարէսն դեգերեսցի, և 'ի թատերան ընդ մանկտի ընթանայցէ, պատուականն 'ի մէջ լկտեաց բազմաց: Արդարև ամօթոյ և առականաց գործ է. 'ի վերոյ մեծարեալ ալեօքն ծաղկեալ, և 'ի ներքոյ զմանկտւոյ միտս ունիցի. և եթէ ոք 'ի մանկտւոյ թշնամանիցէ զայնպիսին, նա վաղվաղակի զալիսն 'ի մէջ բերէ: Դու նախ չակնածիցես յալեացդ. զի եթէ դու 'ի քումմէ չակնածիցես՝ որ ծերդ իցես, զիա՞րդ զմանկտին ստիպես 'ի քոյոցդ ակն ածել, և քեզ մեծարանս դնել:

Զակնածես յալեացդ, այլ յամօթ առնես. ա͞ծ ըղքեզ պատուեաց սպիտակութեամբ հերոյդ, և ետ քեզ զաւագութեան և զառաջներէց տեղի. և դու զպատիւն քեզէն 'ի բաց մերժես: Իսկ արդ ա՞կն ածիցէ 'ի քէն մանուկն, յորժամ դու ես չար քան զնա յաղագարձիցես: Ալիք յայնժամ մեծարոյ են, յորժամ ոք ըստ արժանեացն գործս գործիցէ. իսկ յորժամ լկտիցի ինչ, և չար քան զմանկտին ծաղր կայցէ: Զիա՞րդ կարիցէք մանկտոյդ խրատ տալ՝ յորժամ ծերքդ յանառակութիւնս հատանիցէք: Ոչ զծերս դսրով առնելոյ վասն ասեմ զայս, այլ զլկտիս. զի որ զայնպիսի ինչ գործս գործիցեն, թէպէտ և հարիւրեմեանք իցեն, ես զայնպիսիսն մանուկս լկտիս համարիմ: Զոր օրինակ մանկունք թէպէտ և կարի իսկ տղայք իցեն և զգաստանայցեն, լաւ իցեն քան զծերս, և չէ իմ բանս՝ այլ գրոց, որ գիտէ զայսպիսի ընտրութիւն առնել: “Ծերութիւն պատուական է, ասէ, ոչ որ երկայնակեացն է. և հասակ ծերութեան վարք անարատք”:

Նա և զծերութիւնն իսկ ոչ յայն սակս պատուեմք, եթէ սպիտակ հերքն քան զթուխն պատուականն է, այլ զի նշանակ է առաքինաւոր կենացն. և յորժամ զայնս տեսանիցեմք, նախ առնումք զծանօթս ներքինն ալեացն. իսկ եթէ անուղղայ ինչ ալեացն գործ գործիցէ, ծաղր և կատակ կայցէ նա ամենեցուն: Նոյն վասն այնորիկ առաւել ևս պատուեմք զթագաւորն, զի թագն և ծիրանիքն՝ արքայութեանն նշանակ է. ապա եթէ տեսանեմք զնա ծիրանօքն հանդերձ արհամարհեալ 'ի պատուորացն, խեղդ ընդ անձն արկեալ 'ի բանդ տանիցին, միթէ ո՞չն ածիցեմք ինչ 'ի ծիրանեացն և 'ի թագէն. ո՞չ ապաքէն և զկերպարանան ևս լայցեմք, և եղուկ և ողորմելի համարիմք:

Նոյն արդ մի ինչ անձին շուք գնիցես ալեօքն պատուեալ, յորժամ քեզէն ալեացն մեղանչիցես. քանզի ալիքն վրէժս պահանջիցեն 'ի քէն. զի զայնպիսի զմեծարանաց և զպատուոյ կերպարանս յամօթ առնես: Նոյն զայս ոչ եթէ զամենեցունց ինչ ասեմ, և ոչ յախուռն ընդ ծերութեան ինչ գոռայցեմք, այլ ընդ լկտի մտացն, և որ զծերութիւնն յամօթ առնեն. ընդ այնպիսի ծերոց գչարեալ ասիցեմք ընդդէմ, որք անառակութեամբ զալիսն թշնամանիցեն: Ո՛չ թագաւոր է և ծերն եթէ կամիցի. որ առաւել ծիրանիս քան զթագաւորութեանն ունիցի. և օպասաւորաց տեղի՝ հնազանդեալ ընդ խուժ ցանկութիւնսն: Իսկ եթէ 'ի գետինն անկանիցի 'ի թագաւորութեանն աթոռոց, ընչից ցանկութեան և պաճուճանաց և փափկութեան և արբեցութեան և բարկութեան և անառակ ցանկութեանցն լինիցի ծառայ, և 'ի զարգարանս հատանիցի. և իւղովք օծանիցի, և զտիսն և զալիսն իւրովք կամօք թշնամանիցէ, և որպիսի՞ տանջանաց չլինիցի արժանի այնպիսին:

Այլ և ձեզ ասեմ մանկտոյդ, մի այնպիսի ինչ ամեք լինիցի. քանզի ոչ եթէ ձեզ ներիցէ ինչ ոք զյանցանելն. այլ մարթի 'ի մանկութեանն զծերութեան միտս ունել, որպէս ծերքն 'ի ծերութեան խակք իցեն և ակեղտ: Ո՞ր օրինակ անգ ոչ մազն սպիտակ օգուտ գործէ, նոյնպէս և ձեզ թուխն մազ չկարէ ինչ խափան լինել. զի եթէ տգեղազգոյն իցէ ծերոյն զայն գոր-

ծել՝ զոր տային, որչափ ևս առաւել մանկանն : Բայց սակայն չէ ազատ ՚ի պատժոց և մանուկն. զի մանուկն յայնժամ ևեթ ներելոյ և թողութեան արժանի իցէ, յորժամ ՚ի գործ և ՚ի վերակացութիւն ինչ իրաց մեծամեծաց կոչեսցի, և նա չիցէ ինչ հմուտ, և ժամանակաց և կրթութեան կարօտ :

Իսկ յորժամ զգաստութիւն ինչ պարտ էր ցուցանել, այնուհետև չլինիցի արժանի թողութեան, և ոչ յորժամ ընչասիրութեան յաղթել պարտ իցէ, է ուրեք զի ևս քան զծերոյն քաջ պատիժս պահանջիցէ մանուկն. զի նմա բազում զարմանաց պէտք են վասն ծերութեան տկարութեանն. իսկ սա կարող է՝ եթէ կամիցի՝ բաւական լինել առ ՚ի զանձն ուղղելոյ : Այլ ապաքէն ինչ թողութեան արժանի լինիցի, յորժամ և յափշտակել ինչ կամիցի զծերոյն, յորժամ բազում անպիտանս խօսեսցի, յորժամ թշնամանիցէ, յորժամ բամբասիցէ, յորժամ արբենայցէ : Թէպէտ մինչ ՚ի զգաստութեանն իցէ՝ համարիցի թէ չիցէ ընդ բամբասանօք անկանել. և տես որչափ և անդ իսկ բազում օգնականութիւն ունի եթէ կամիցի. զի թէպէտ և կարի սաստիկ լլկիցէ զնա ցանկութիւնն, այլ բազում ինչ է զոր աւելի քան զծերսն կարէ գործել և թափել զչար գազանն :

Այլ զինչ իցէ : Բազում վաստակք, ընթերցուածք, արթնութիւնք, պահք : Այլ զինչ պիտոյ զայնմ ամենայնէ. մի թէ վանականք իցեմք : Այլ զայդ ցիս զի՞ ասես. Պաւղոսի տուր պատասխանի, յորժամ ասիցէ՝ "Արթուն լերուք յամենայն հանապազորդութիւնս և ՚ի խնդրուածս". յորժամ ասիցէ՝ "Մարմնոյ խնամ մի՛ առնիք ՚ի ցանկութիւնս ամենեւին". զի ոչ առ վանականս միայն գրեաց զայն, այլ առ ամենեսին, որք ՚ի քաղաքս և ՚ի գեօղս և յամենայն տեղիս իցեն : Մի թէ աշխարհականն աւելի ինչ պարտի ունել քան զվանականն, բայց միայն ընդ կնոջն ամուսնութիւնն. ընդ այնր գոյ նմա ներել. ընդ այլոց իրաց՝ ոչ այնուհետև. այլ զայլն ամենայն կշիռ գտակաւ ընդ վանականսն պարտի գործել : Քանզի և երանութիւնքն որ ՚ի Քրիստոսէ տուան, ոչ վանականացն տուան. ապա թէ ոչ, ամենեւին խոկ կորնչէին ամենայն տիեզերք, և անխրատութիւն հա-

մարեալ լինէր յանձակոյս կողմանէ անտի։ Ո՜հ եթէ երանութիւնքն միայն վանականացն տուեալ էին, և աշխարհականն չկարէր անտի ուղղութիւնս կատարել, և զամուսնութիւն Նորա է հրամայել, ապա զամենենեսին իսկ ինքն կորուսանէր։ Եթէ չէր հնար հանդերձ ամուսնութեամբն զվանականաց գործ գործել, բնաւ ամենեքին իսկ եղծեալ ապականեալ գտանէր առաքինութեանն յօժարութիւն։

Այլ բնաւ զիա՞րդ իսկ էին պատուական հարսանիքն, որ այնչափ բարութեանց խափանիչք մեզ լինէին։ Այլ արդ զինչ իցէ։ Հնար է և կարի իսկ հնար կին ունել, և զառաքինութիւնն կատարել, եթէ կամիցիմք։ Որպէս՝ թէ ունիցիմք կանայս, որպէս թէ չունիցիմք, եթէ վարիցեմք զաշխարհս որպէս ոչ թէ յախտի ծախս։ Ապա եթէ ոմանք խափանեցան ինչ 'ի բարիս գործելոյ ամուսնութեամբն, գիտասցեն՝ եթէ ոչ ամուսնութիւն ինչ է խափան, այլ կամքն որ չարաչար վարեցին զամուսնութիւնն. Նա և ոչ գինին գործէ զարբեցութիւն, այլ կամքն չարք որ զանչափն խնդրեցին։ Իսկ եթէ 'ի չափու ունիմք համով զամուսնութիւնն, յարքայութեան ևս առաջին գտանիցիմք, և յամենայն բարութիւնսն վայելեսցուք։ Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՅԻՆՆԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

“Վասնզի անհնարին է որք միանգամ լուսաւորեցան և ճաշակեցին յերկնաւոր պարգևէն, հաղորդ եղեն հոգւոյն սրբոյ, և գեղեցիկ ճաշակս բանին այ ճաշակեցին և զզօրութիւն հանդերձելոյ յաւիտենին և կործանեսցին, դարձեալ նորոգել ապաշխարութեամբ, վերստին խաչել զորդին այ և խայտառակել„։ Այլ արդ զինչ, արտաքս ընկեցեալ իցէ ապաշխարութիւնն. քաւ լիցի. այլ որ 'ի ձեռն աւազանին դարձեալ նորոգումն է . . . վերստին խաչել . . .։ Ո՜ր աւէն այսպիսի է. մկրտութիւնն խաչ է, և խաչակից եղև հին մեր մարդն.

«քանզի կերպարանակից եղաք նմանութեան մահու նորա»։ Եւ դարձեալ «Ընդ նմին թաղեցաք մկրտութեամբն ՚ի մահ»։ Որ որպէս ոչ գոյ հնար միւսանգամ ՚ի խաչ ելանել Քրիստոսի, զի այս է խայտառակելն զնա, նոյն է և երկրորդ անգամ մկրտել... Որ զոր օրինակ մեռաւ Քրիստոս ՚ի խաչին, նոյնպէս և մեք ՚ի մկրտութեանն, ոչ մարմնոյ, այլ մեղաց։ Տեսանես մահ և մահ . . . . . . . . . . . . . .

Այլ արդ ասէ սա, եթէ յարքունիսդ ուրեք մտանէիր, և ամենայնի որ ինչ անդ էր՝ հաւատարիմ լինէիր, և ապա մատնիչ ամենայնի. միթէ դարձեալ հաւատայի՞ր ոք ինչ քեզ։ Այլ արդ, զիա՞րդ, ասեն. չգուցէ՞ ապաշխարութիւն։ Գոյ ապաշխարութիւն. այլ մկրտութիւն կրկին չիք. ապաշխարութիւն գոյ և բազում զօրութիւն ունի, և կարէ իսկ ջրել զմեղսն և զնեկելոցն ՚ի չարիս՝ եթէ կամիցին, և փոփոխել ՚ի բնաւից մեղացն. և զտագնապեալսն կացուցանէ ՚ի զգուշութեն, թէպէտ և յատակս չարեացն երթեալ հասեալ իցեն։ Այլ այս բազում տեսակ յայտ է. «Միթէ որ անկանիցին, ասէ, ո՞չ յառնիցէ. և կամ որոյ զերեսն դարձուցեալ իցէ, չդառնայցէ՞»։ Գոյ հնար միւսանգամ նկարել ՚ի մեզ զՔրիստոս, եթէ կամիցիմք. և լուր ամին Պաւղոսի՝ որ ասէ իսկ. «Որդեակք, զորս դարձեալ վերստին երկնեմ, մինչև նկարեսցի Քրիստոս ՚ի ձեզ»։ միայն բուռն հարցուք զապաշխարութենէն։

Այլ արդ տես զիմ մարդասիրութիւնն. պարտ էր մեզ զառաջինն իսկ ամենայն կերպարանօք ՚ի պատիժս մտանել. քանզի և օրէնս ըստ որքոյս՝ բնականս ընկալաք, և ՚ի բազում բարութիւնս վայելեցաք, և ՚ի տեառնէ անծանօթք եղեաք, և վարս անսուրբս յանձն առաք, և ոչ միայն չպատժեաց, այլ ևս բազում բարութեանց արժանի արար. և այնպիսի բարութեանցն՝ որպէս թէ մեծամեծ բարութեանց երեւութիւնս գործեալ էր մեր։ Դարձեալ անկաք յայնմանէ, դարձեալ սակայն և այնպէս ոչ պատժեաց, այլ ետ մեզ զապաշխարութիւնն դեղ, որ բաւական է զամենայն մեղսն ջնջել և եղծանել, միայն եթէ գիտիցեմք որպիսի ինչ դեղն իցէ։

Այլ արդ թէ որպիսի՞ ինչ իցէ դեղն ապաշխարութեն և կամ թէ զիա՞րդ և իւ կազմեսցի, նախ՝ յըստակա-

և զմեղս մեծամեծս ողորմածութեան ցածուցանէ „ ։ Այլ առաջ չքարշկանաց ումեք, և ոչ ոխս պահել. ամենեցուն թողուլ զյանցանս ։ “Մարդ մարդոյ եթէ ոխս պահիցէ, յԱյ խնդրէ զբժշկութիւն „. և դարձեալ “Թողէք զի թողցի ձեզ „. և դարձուցանել զեղբայրս 'ի մոլորութենէ ։ “Երթ, ասէ, և դարձո զեղբայրս քո, զի թողուցուն մեղք քո „. և ընդ քահանայս ընտանութիւն ունել. “Այլ եթէ մեղս ուրուք գործեալ իցէ՝ թողցի նմա „. և վերակացու լինել զրկելոց, և չունել զյանցանս 'ի մտի, և ամենայնի հեզութեամբ տանել ։

Այլ արդ յառաջ քան զամէն եթէ մարթի ապաշխարութեամբ ջնջել զմեղս, չկարծիցէք 'ի առաջնորդի՝ եթէ չիք այլ մկրտութիւն. և չունիցիք ինչ յոյս անձանց. իսկ արդ ուսայք աւասիկ, եթէ որչափ իրօք ապաշխարութիւնն և թողութիւնն յարդարէ, և եթէ կարող եմք նովաւ յամենայն կարկաց փախստական լինել, և մարթի մեզ 'ի լաւութիւնս վարել նովաւ, որպէս նորոգելոց և թողութեան արժանի լինիցիմք՝ որոց և ոչ 'ի միտ անգամ անկանիցին մեղքն ։ Ոչ եթէ այն մեզ կայր, առաջ ամենայն ինչ դիւրաւ վճարէր ։ Որ օրինակ եթէ ոք ընդ դուռն մտանիցէ, 'ի տունն իսկ է. նոյնպէս և որ զպարիսն մեղաց զմտաւ ածիցէ, և 'ի բժշկութիւն իսկ գայ ։ Ո՛չ եթէ ոք ասիցէ՝ մեղաւոր եմ մեղաւոր եմ, և զմեղսն զմտաւ ոչ ածիցէ՝ եթէ զայս ինչ և զայս մեղայ, այնպիսին ոչ երբէք դադարէ 'ի մեղանչելոյ. հանապազ խոստովան լինի, և փոյթ յանձին ոչ ունիցի երբէք ածել զյանցանսն յուղղութիւն ։ Եթէ սկիզբն առնիցէք, առաջ և այլն ամենայն զնորին զկնի գայ, եթէ զմուտն, եթէ զսկիզբն ցուցանիցէք ։ Ամենայն ուրեք սկիզբն և առաջինք դժուարինք են. և եթէ սկիզբն առնիցեմք հիմն արկանելոյ, ամենայն ինչ հարթ և դիւրին լինիցի ։

Այլ արդ սկիզբն արասցուք աղաչեմ, մեծ յաղօթիցն յանձնաւորութենէ, և մեծ 'ի առէջ արտասուաց, և մեծ 'ի տրտմութենէ. քանզի և ոչ որ կարի փոքր իցէ՝ անօգուտ է ։ “Տեսի, ասէ, զի տրտմեցաւ և գնաց տխուր, և բժշկեցի զճանապարհս նորա „ ։ Այլ յամենայն յաղորմածութենէ, և 'ի թողլոյ զյանցանս ընկերին. և 'ի չպահելոյ ոխս, և 'ի չխնդրելոյ զվրէժ անձին, խնամահեսցուք զանձինս մեր ։

Եթէ միշտ զմտաւ զմեղսն զոր գործեցաք՝ ածեմք, չիք ինչ յարտաքինս իրացն՝ որ զմեզ հպարտացուցանել կարիցէ, ոչ մեծութիւն և ոչ հարստութիւն, ոչ իշխանութիւն և ոչ պատիւ. այլ թէ բնաւ իսկ յարքունի կառս նստիցիմք, հեծեծեսցուք զատանայէս: Վասնզի և երանելին Դաւիթ թագաւոր էր և ասէր. «Լուացից զամենայն գիշեր զմահճիճս իմ». և ոչ ինչ 'ի ծիրանեացն և 'ի թագէն վնասեցաւ, և ոչ հպարտացաւ. քանզի գիտէր թէ մարդ է. և քանզի բեկեալ էր սիրտն, զողբս հարկանէր: Եւ զինչ իսկ իցեն մարդկեղէն կերք ամենայն, այլ հող և մոխիր և իբրև փոշի առաջի հողմոյ, ծուխ և ստուեր և տերև յօդոյ ապացեալ, և ծաղիկ և երազ և քամին և առասպելք, հողմ, օդ լցած տարած և հեղեալ, թև թռուցեալ և ոչ ուրեք դադարեալ, վտակք սահեալք և ոչ ուրեք յանգուցեալք. և եթէ այլ ինչ քան զսոսա չնչինագոյնք կայցեն:

Եւ արդ ասէ սոսա, զինչ ինչ մեծ համարեսցիս, զի՞ պատիւ առնել. զհիւպատոսիցն. քանզի չիք ինչ այլ պատիւ ճոխագոյն քան զայն, և բազմաց իսկ այն առնել մեծարոյ թուիցի, և որ այնչափ 'ի ճոխութիւն և 'ի պատիւ ելանիցէ՝ և բազմաց զարմանալի. և այլ ոք որ լու-նմանէ յիշխանութիւն ինչ իցէ, թէպէտ և փոքր քան զնա իցէ, սակայն պատիւ ունիցին երկոքեան. այլ այնպիսի պատուականք, և յետ սակաւ ինչ ժամանակի չունին պատիւ ինչ: Եւ արդ ասէ սոսա, ե՞րբ եղև, քանի՞ ժամանակս կալաւ. մի ամ, երկուս ամս. սակայն և այն երկոցից պատիւ է: Եւ յերազի ոք առնուցու ինչ այնպիսի պատիւ: Ո՞չ այն, ասեն, երազ է: Եւ այն զինչ աւելի իցէ քան զերազն. եթէ զերազն խոտիցես, ապա և զայն ընդէ՞ր չհամարիցիս երազ: Զոր օրինակ երազն 'ի գալ տուընջեանն յանդիմանի, և չերևի ինչ ուրեք 'ի մէջի, սոյնպէս և նա 'ի հասանել գիշերայն յանդիմանի, և չգտանի ինչ այնպիսի՝ որպէս և յերեկն պերճանայր: Վասնզի հասարակ առին զժամանակն տիւն և գիշերն, և զոյգ բաժանեցին զկեանս աշխարհիս. զոր օրինակ այժմ զցերեկ ոք զուարճանայ, գիշերին ոչ ինչ երևէր, և ոչ ցայգութեանն 'ի տուէ ոք կարէ վայելել:

Եղեր հիւպատոս. եղէ և ես յերազի. այլ ես ըզցայգ, և դու զցերեկ. և այն զինչ առնիցէ. քանզի և

ոչ այնու աւելի ինչ իցես քան զիս, բայց միայն անուամբն. եթէ այս անուն հրապարակ է. յանուանց անտի միայն ունել զառաւելութիւնն: Այլ զի յայտնի արարից զայդ ասեմ. թէ պաշտօն ինչ ունիք առնիցեմ՝ եթէ այս անուն հրապարակ է, ոչ եթէ 'ի բանիցն լինիցի՝ և գնայցէ: Այնպէս և արդիւնքն իսկ, թէպէտ և անուանեսցի ոք բռնեշխ, և կայցէ հրապարակ, առ ժամանակ մի երևի, և այլ ոչ երբէք ուրեք: Դնեսցուք թէ զմի աւուր կայցէ հրապարակ կամ զերկուս կամ զերիս կամ չորս. և մեր իցեն որոց զաւանն ամն կալեալ իցէ զհիպատոսն. չիք ոք, չէ ուրեք:

Այլ ոչ այնպիսի ոք և Պաւղոս էր, հանապազ կենդանի. և ոչ մի օր կամ երկուս կամ երիս կամ տասն կամ քսան կամ զերեսուն. այլ և վախճանեցաւ, և չորեքարիւր ամ 'ի վերայ անցեալ, և տակաւին կենդանի է. և ևս քաջ պայծառագոյն քան մինչ դեռ կենդանին էր. և այն յերկրի. իսկ զերկնից պայծառութիւնն սրբոցն որպիսի ինչ բան կարիցէ յանդիման կացուցանել: Վասն որոյ, աղաչեմ, զայն լուսաւորութիւնն խնդրեսցուք, զնորին զհետ երթիցուք, զի այնմ հասանիցեմք, որ արդարև լուսաւորութիւն և պայծառութիւն է. մեկնեսցուք յերկրաւոր իրացս, և գտցուք շնորհս և ողորմութիւն 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր, ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## Ի ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ ՃԱՌՆ

Այնպիսի պատարագ մատուցուք և մեք. զի այնք մեծութեան և գոյացող են, և սոքա կամաց և պատքինութեան. Նոքա արտաքինք, և սոքա ներքինք. զնոսա ճ և դէտ իսկ ոք կարէ մատուցանել, և զսոսա սակուք: Որչափ քան զոչխար լաւ է մարդ, նոյնչափ քան զնա այն պատարագն. զի առտ զանձն քո մատուցանես պատարագ: Նա այլ ևս հանձն և սերտ պատարագք են մարտիրոսացն մարմինքն. զի անդ ոգիքն և մարմինքն միանգամայն մատչին. և անտի բուրէ հոտ անուշութեան: Արդ թէ և քեզ, եթէ կամիս, այսպիսի պա-

գործիցէ, և կերիցէ մի՛», ասէ. «Այլ դուք զբարիս գործել մի՛ ձանձրանայք»։ Այլ խաբեբայ է, ասեն. զինչ խօսիս, այր դու. վասն պատառոյ միոյ հացի և կաթերտի միոյ ձորձոյ խաբեբայ կոչես։ Այլ տանի, ասէ, և իսկ և իսկ վաճառէ. և դու զամենայն ինչս քո 'ի բարի պէտս ծախես. և կամ թէ ամենեքեան 'ի վատութենէ աղքատանայցեն. ոչ 'ի նաւաբեկութենէ ոք, և ոչ 'ի դատաստանս լինելոյ, և ոչ 'ի գողութենէ, և ոչ 'ի զուր դատաստանաց, և ոչ 'ի ցաւոց, և ոչ յայլ ինչ վշտաց։ Իսկ եթէ լսիցեմք զկառաչ ուրուք՝ յորժամ զաղօթք բառնայցէ, և զաչս ընդ երկինս ամբառնայցէ, և 'ի բերդզեղ շրջեսցի, և ցնցոտիս պատեալ, անգէն վաղվաղակի խաբեբայ և գրթիչ և կեղծաւոր կոչեսցես։ Զամաչեմս, զո՞ կեղծաւոր կոչեսցես. մի՛ տար ինչ ումեք, և մի՛ չար զումեքէ խօսիր։

Այլ զոյաւոր է, ասեն, և կեղծաւոր է։ Այս այն քո չարախօսութեան մեղ է, և ոչ նորա ինչ. զիտէ՝ եթէ 'ի գաղանաց դէմն հասանիցէ երթալ, և ոչ 'ի մարդոյ. եթէ կարի ողորմ խօսեսցի, և յեղուկս անկանիցի, և չգտանիցէ ինչ խնամս. վասն այնորիկ հարկ լինի զողորմ կերպարանս փոխել, զի գէթ այնու փոքր մի զգօսիրտ ճմլեցուցանիցէ։ Եթէ տեսանիցէ ոք զոք աղքատի կերպարանօք 'ի մուրահանս, խաբեբայ է, ասէ, զի կարծեցուցանիցէ զանձնէ՝ եթէ ազնուական ինչ ոք իցէ, և այնու պատճառանօք յաճախ առնուցու զմուրն. և եթէ 'ի գձուձ կերպարանս, և զայն ես 'ի բիծ տանիցին. և այսուհետև զինչ գործիցեն տառապեալք։ Ո՛ անագորոյն միտք, և անգութ և անխնամ աղիք։

Ընդէ՞ր, ասեն, զխեղ ինչ անդամսն մերկացուցանիցեն։ Ասեմ քո. եթէ դու ողորմած էիր, նոքա այնպիսի հնարս ոչ հնարէին. եթէ յառաջնումն տայիր և արձակէիր, նոքա այնպիսի մեքենայս ոչ խառնէին։ Ո՞վ ոք կայցէ այնպէս թշուառական, որ կամաւ այնչափ գործ գործիցէ, և անձամբ զանձն ծանակ առնիցէ, և ընդ հրապարակս գոչել շրջել մերկ խայտառակ կնաւ և որդւովք հանդերձ, հող 'ի գլուխ և մոխիր զգլխովք շըրջեսցի։ Ո՞ ինչ ինչ չար կայցէ քան զայնպիսի աղքատութիւն։ Այլ յայնչափ թշուառութեան վերայ ոչ միայն ողորմութիւն չգտանեն, այլ և բամբասին ես 'ի

ւոր, նոյնպէս և փախանել ամենայն զանուս, և մի յերեւեսցէս զլանդաման նորա. քանզի մարդասիրութեան ժամանակ է ժամանակս, և ոչ հատուցման քննութեան. ողորմու-թեան, և ոչ պէսպէս խորհրդոց: Պարտաւորել դարմա-նել կամի. եթէ կամիս, առ. և եթէ ոչ կամիս, բա-րեաւ յուղարկէ, և մի յայլոց յայլոց հանիցես: Ըն-դէ՞ր այնչափ հեք և թշուառական իցես, զի ոչ զոր ա-ղաչես, և զայն ես որ կամիցիս ողորմել, խոտեցա-նես: Զորժամ լուիցէ ոք 'ի քէն՝ թէ սա խաբեբայ է, և նա կեղծաւոր, և միւսն այլոց ևս փոխ առու, տալա այ-նուհետև ոչ նոցա տայցեն և ոչ սոցա, և զամենեսին խոկ նախանձեալս համարիցին: Գիտէք խոկ, զի զչար ինչ կարծիս զերբաս առնումք, և զբարեացն ոչ նոյնպէս վաղ-վաղակի:

Նշկեցուք ողորմածք, ոչ վայրապար, այլ փոյթ զհայրն երկնաւոր. զի նա զչարս և զարդարս և զխոտարս կե-րակրէ, և զինչ տացից, այլ և զամենեսին խոկ՝ որ ըղ-ձնաւ չարութեանն խոկ զկերպարանս ունիցին յանձին: Ընդէր 'ի մէջ այսչափ բազմութեան հարկ է՝ եթէ բազումք են այսպիսիք. սակայն զամենեսին կերակրէ, զամենեսին զգեցուցանէ: և չիք ոք երբէք՝ որ 'ի սովոյ մեռաւ, բայց թէ կամաւ առ վտանգի ինչ: Նոյնպէս եղիցուք զթածք, զի թէպէտ և ինչ լինիցին, և 'ի վերջոյ իցէ, օգնական լինիցիր: Այց մեք յախտապետի անհան-ձարութիւն հատուք, որպէս ոչ միայն աղքատացն չլինի-ցիմք ձեռնկալու, որք ընդ մանր փողոցսն յածեալ շրջի-ցին առ վշտի, այլ և զայլս ևս առաքինիս վանականս բամբասեմք՝ եթէ այս անուն խաբեբայ է, այս անուն չէ բարի ոք: Ոչ յառաջագոյն խոկ տացի, եթէ ամե-նեցուն անխտիր տայցեմք, միշտ ողորմածք գտանիցիմք. ապա եթէ քննել սկսանիցիմք, ոչ երբէք ողորմիցիմք:

Ո՜ ինչ խօսիս, վասն պատառոյ միոյ հացի 'ի խաբե-բայից կերպարանս լինիցի. զի եթէ բազում ինչ ու-նելոյ բանք էին կամ արծաթոյ կամ պէսպէս հանդեր-ձից կամ ծառայից և աղախնաց, կամ այլ իրիք ինչ պիտանեաց, յիրաւի ոք ասէր զայնպիսին խաբեբայ և կեղծաւոր. իսկ եթէ ոչ վասն այնպիսի ինչ իրաց, այլ վասն պատառոյ միոյ հացի, և խղկան միոյ՝ ուր զգլուխն դնիցէ, կարի անմտութեան բանք են. և նա խոկ է խա-բեբայ՝ որ զայնպիսի վշտագնեալն խաբեբայ համարի:

նեցէ, և 'ի ծիրանեացն ևս զգենուցու. քննել քննեցի և միւսն վասն մարդասիրութեանն միայն յարքունիսն, և դատ ինչ չառայցէ ընդ գործոցն զոր գործեացն. և 'ի տրուպ տեղւոջ կայցէ, բայց իցէ յարքունեացն համարոյ, միթէ կարիցէ՞ ժոյժ ունել 'ի տրտմութենէն: Յորժամ տեսանիցէ զայն՝ որ ընդ իւրն էր՝ յայնպիսի պատիւ համբառնալ և այնչափ փառաւորութեամբ փառաւորեալ, զի աշխարհի ևս հրամանատար լինիցի, և զանձն այնչափ 'ի վատթարութեան տեսեալ, և զչմնաննէն իսկ 'ի տանջանան՝ անարգութեամբ ունիցի. քանզի և այն նման 'ի շնորհացն և 'ի մարդասիրութենէ թագաւորին եղև: Թէպէտ և թագաւորին թողութիւն պատժոյն առնիցէ, սակայն ցանկ ամօթով կացցէ, և չդնիցէ ոք նման մեծարանս:

Եւ արդ յայնպիսի ինչ թողութիւնս ոչ ընդ նմա որք առնուցուն զպարգևն, այլ ընդ նոցա որ տան՝ զարմանամք. և որչափ զմեծամեծ պարգևս տայցեն, ևս քան զևս առաւել ամաչեն՝ որք առնուցուն. և եթէ մեծ մեղք ևս իցեն, որոնք ոչ օք նայել կարիցեն. յորժամ տեսանիցեն յարքունիսն զպատուն և ազգի ազգի քրտունս 'ի մէջ բերիցեն, և զմէրս ցուցանիցեն, և նոցա չփուցէ ցուցանել. այլ և զառաքեալսն ևս միայն յոյժ մարդասիրութենէն ունիցին: Որպէս օրինակ եթէ ոք զմահապարտ և զգող և զչուն 'ի մահ տանիցի, և հրաման տայցէ թագաւորն դարձուցանել զնա անդրէն 'ի դրունս արքունեացն, չկարիցէ ընդ ոք նայել այնուհետև, թէպէտ և 'ի պատժոյն ազատեցաւ. սոյնպէս և այնպիսին:

Եւ արդ, մի վասն զի արքայութիւն տայ, համարիցիք եթէ ամենեքին 'ի մի պատուի իցեն. զի և աստ հազարապետք իցեն, և սպարապետք, և ըստ նոցանէն զօրծականք և իշխանք յարքունիս. և այլք ևս քան զնոսա խոնարհագոյնք, և որք զկարի վերջին տեղին ունին, արտաքին սպասաւորքն՝ յարքունի համարի են. թէպէտ և կարի իսկ մեծապատիւ իցէ 'ի միջի հազարապետացն և արտաքին սպասաւորացն, սակայն և նոքա յարքունեացն համարի են:

Եւ զայս ոչ եթէ զիմ ինչ ասեմ, այլ զՊաւղոսի, որ զայնպիսի առաւելութիւն 'ի միջի դնէ, օկնեալ յա-

բնգանէն մինչև ցլուսին և յաստեղս և ցևս փոքրիկ աստղն. նոյնպիսի ինչ են իւրաքանչիւր պատիւ յառաքայութեանն. Ո՛չ ի բազում առաւելութիւն, ընդ հազարապետան և ընդ արտաքին սպասաւորն, ընդ արեգական և ընդ փոքրիկ աստղն 'ի մէջ կայ. և այս ամենեցուն իսկ յայտ է. Ո՛չ ի արեգակն զամենայն իսկ տիեզերս լուսաւորէ. իսկ լուսին և զաստեղս ևս բազումս ծածկէ. և է ինչ աստղ՝ որ բնաւ իսկ չերևի, և զի մութ ևս իցէ. քանզի բազում աստեղք են՝ զոր և տեսանեմք իսկ ոչ. Իսկ յորժամ զայլս տեսանիցեմք արեգակունս, և մեք զաստեղաց զփոքունց զկարգ ունիցիմք, որ և չերևեսցին ևս, բայց եթէ դոյզն ինչ ընդ աղօտս, որպիսի ինչ մխիթարութիւն կայցէ մեզ անդ.

Մի՛, որդեակք, աղաչեմ, մի վատք, մի ծոյլք, մի զփըրկութիւնն մեր վաճառեսցուք ծուլութեամբ, այլ ջանասցուք 'ի բազում շահս և 'ի տոհմականս ածել. թէպէտ և երախայ ոք իցէ, սակայն զՔրիստոս գիտէ, այլ ըզհաւատն ծանեաւ, այլ զա̃ծեղէն բանսն լսէ, այլ 'ի գիտութենէն չէ ինչ հեռի, գիտէ զկամս տեառն իւրոյ. Ընդէ՞ր յապաղիցէք, ընդէ՞ր հեղգայցէք. չիք ինչ լաւ քան զայս բարիս և աստ և անդ, առ լուսաւորեալս և երախայս. Ո՛չ ինչ ծանր իցեն հրամանքն. կին կալ, ասէ, և 'ի յանձութեան կացջիր. և այն դժուարին ինչ իցէ. Ո՛չ իմա՞րդ. ուր և բազում իսկ առանց կանանց յածուն. ոչ միայն քրիստոնեայք, այլ և հեթանոսք. Աբուլ յառաջադէմ լինի հեթանոսն յաղագս սնապարծութեանն, դու ընդէ՞ր ոչ զնոյն պահիցես յաղագս Ա̃յ երկիւղին.

Տուր, ասէ, աղքատաց յընչիցն զոր ունիս. և ծա՞նր ինչ իցէ. Այս ևս այնու իսկ կշտամբեն զմեզ հեթանոսք. զի բնաւ իսկ զարարսն թափեն սան վասն սնապարծութեան. Մի՛, ասէ, 'ի խեղկատակութիւնս հատանիցիս. և այն դժուարին ինչ իցէ. և եթէ չէր իսկ պատուիրեալ, չէ՞ր պարտ համ դնել լեզուի, զի մի անառակ երևիցիմք. և զի խեղկատակութիւնն դժուարին է, յայտ յամօթոյն և պատկառանացն է. զի յորժամ այնպիսի ոք ինչ խօսեսցի, իսկ և իսկ ձաղ լինիցի. և նա խեղկատակիցէ իսկ ոչ, եթէ չիցէ արբեալ. Ընդէ՞ր յորժամ 'ի հրապարակի մէջ նստիցիս, և կամ

Ըմբշամարտական բաղձանաց 'ի ձեռն բազում անձկաւ տեսեալ է. և ոչ միայն տեսեալ, այլ և յորդորիչք և զարմացողք կառուցն լինեալք, և ոմն 'ի սորա կոյս և ոմն 'ի նորա: Գիտէք զիարդ զաւուրբքն մարտից՝ զգիշերն ամենայն ողջոյն շրջի քաղաքն և ազդ առնէ. ոչ զայլ ինչ հոգայ, այլ զայն ևեթ ազդ առնէ, զի մի երկեալ ծանակ ինչ կայցէ՝ որ 'ի մարտն մտանելոց իցէ. և որ շուրջն դեգերեալ նստիցին, պատուիրեն փողարքն՝ մի վայրապար ընդ ումեք խօսել, և մի զփուքն և զոգին ծախել, և ծաղր և ծանակ կալ 'ի ժամուն:

Իսկ որ մարդկեղէն կռուոյ պատրաստելոց իցէ՝ այնչափ հոգաբարձութեան պէտք են, որչափ ևս առաւել մեզ պարտ է փոյթ յանձին ունել և հոգալ. զի ամենայն աւուրք մեր պատերազմաց են: Այլ արդ ամենայն իսկ գիշերք հսկումն լինիցին մեզ, և միշտ հոգ անձին ունիցիմք՝ եթէ զիարդ զօրն 'ի գլուխ հանիցեմք, զի մի ծաղր ինչ և ծանակ կայցեմք: Այլ երանի թէ ծաղր միայն. նա աւանիկ նստի ընդ աջմէ Հօր յարդարիչ պատերազմացն, և լսէ հաւաստեաւ, զի մի ինչ անօգուտ խօսիցիմք, մի ինչ արտաքոյ քան զնուագսն. զի ոչ միայն որդեանց, այլ և բանից է քննիչ:

Սկսցուք, սիրելիք, քանզի և մեք ունիմք յորդորիչս, եթէ կամիցիմք. քանզի իւրաքանչիւր հրեշտակք նստին շուրջանակի, և մեք խորդամք զայդն ամենայն. և երանի թէ զայն միայն տանէաք. այլ բազումք և աղտեղութիւնս ևս բազում գործեն: Ի գետնախշտիսն փութացեալ ընթանան. և այլք զիւրեանց տունս պոռնկոցս առնեն, և զնոսա ևս 'ի վանս ածեն. և կարի իսկ անպատեհ. քանզի ոչ բարիոք հոգան զպատերազմէս. և այլք արբենան և բարբաջեն. և այլք աղաղմկողակեն. և ումանք 'ի չարիս սկեն, և զայնցանէ՝ որք ննջիցենն՝ նիւթեն նենգութիւնս. և կէսքն զվաշխս և զտոկոսիս համարին. և այլք յայլ հոգս հեղձեալք. և ամենևին զամենայն ինչ համարին, բայց միայն 'ի պատերազմէս պատշաճից յետնեալք գտանին:

Վասն որոյ աղաչեմ, զամենայն թողեալ 'ի մին միայն հայեսցուք, զի զյաղթութիւնն առնուցումք և պսակացն հասանիցեմք. և զամենայն ինչ արասցուք, որով կարող լինիցիմք խոստացելոց բարութեանցն հասանել.

որոց լիցի ամենեցուն մեզ հասանել 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## Ի ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

Իսկ արդ մի՛ ոք որ մեռելոտի գործս ունիցի՝ մատիցէ այսր: Զի եթէ 'ի մեռեալ մարմինն մերձենայր՝ չիշխէր մատանել 'ի սրբութիւնն, որչափ ևս առաւել որ զմեռելոտի գործսն ունիցին՝ անհնարին պղծութիւն: Մեռելոտի գործսն են, որ ամենևին չունին զկենդանութիւն, հոտ չար են: Զի որ օրինակ և մեռեալն չէ իմիք պիտանացու, և ամենևին ոչ զգայ, այլ և տրտմեցուցանէ ևս զախտաւորս, որք մերձենայցեն 'ի նա. նոյնպէս և մեղք մխրաւորեն զխորհուրդս, և չտան թոյլ մտացն խաղաղել, այլ խռովեն և տագնապեն:

Արդ և ախտ ինչ ժանտ, որ 'ի միում տեղւոջ մարմնոյն ծնանիցի, և զամենայն մարմինն ապականէ. այնպիսի են մեղաւորք, և չեն ինչ ընդհատ 'ի ժանտ ախտէն. և ոչ նախ զօդս ապականեն և ապա զմարմինն, այլ վաղվաղակի զոգիսն բորբոքեն: Զտեսանիցեմս որ զժանտ ախտն ունիցի, զիարդ այտուցեալ տարածեալ շրթինս, և չար հոտով լնուն զվայրս. զիարդ երեսքն դեղնեալ, գոյնն եղծեալ, և ամենևին չարատեսք. զի և ոչ մօտ ոք կարիցէ երթալ: Այսպիսիք են մեղաւորք, թէպէտ և ինքեանք զանձինս ոչ տեսանիցեն:

Իսկ արդ աղէ ասա, քան զամենայն ջերմնկալ չիցէ՞ ևս չար՝ որ 'ի ցանկութիւնս մարմնոյն հարեալ իցէ. չիցէ՞ քան զամենայն պիղծս չար աղտեղի՝ որ զամենագործս ծանակաց առնիցէ և յանձին կրիցէ: Ո՞ ոք քան զընչասէրն աղտեղի իցէ. զոր ինչ բոզն 'ի պոռնկոցս չդանդաղին գործել, նոյնպէս և ոչ նա. մանաւանդ թէ նոքա դանդաղիցին ինչ, և նա ոչ: Զի ծառայի բարուց յանձին կալեալ, սրտնէ որոց չիցէ պարտ սրտնել, և դարձեալ խանդամայ, ուր ոչն վայել իցէ. ամենայն ուրեք ոչ զկշիռն գնալ: Ներևս և մարդոց չարաց և ծերոց աղձատելոց, որ կարի իսկ քան զնա աղքատագոյն իցէ, նստեալ սրտնկիցէ, և զառաքինիս և զպիտանիս թշնա-

՝ի բարեկամէ և յեղբօրէ և ՝ի հօրէ, ուր և յետ իսկ չանկանծէ. և զամենայն ինչ առասպելս և ծաղր համարի. քանզի ՝ի բազում ցանկութենէն և ՝ի լսելիսն անզգամ չհանդարտէ ընդունել զօգտակարսն։

Բայց վայ անպատեհութեանն. որպիսի բանս խօսին։ Այս քեզ, ասեն, մանանայ, և որ զքեզ չունիցին. և ընդ այն իսկ է կարի ցասումն մորմոքեալ։ Իսկ վայ այնոցիկ՝ որ զայնն ասիցեն, թէպէտ և ընդ խաղ ասիցեն. այնպիսի սպառնալիս սպառնացաւ Տէր. “Ոչ կարէք, ասէ, երկուց տերանց ծառայել„. և դու լուծանես զսպառնալիսն։ Ո՞չ կռապաշտութիւն կոչեաց զագահութիւնն Պաւղոս, և զագահն կռապաշտ. և դու մնացեալ կաս առ խանդաղնաց[1] կանայս, և ընդ ծաղր արկեալ խօսիս զանօգուտս ՝ի բազմանցս և ՝ի մէջ զուարճանաց. և այն իսկ է՝ որ զամենայն եղծ ապականեաց։

Ուստի կացցեն մեր իրք և զրոյցք. յայսն և ՝ի կատականս եղուք ամենեքեան. և չիք ինչ ուղղութիւն և ոչ հաստատութիւն և ցածութիւն։ Իսկ զայս ոչ առ աշխարհականս միայն ասեմ, այլ գիտեն զորոց ասեմն։ Ուստի լցաւ եկեղեցի. եթէ յանկարծ ոք ընդ խաղ և կամ բարի ինչ բանս խօսեսցի, վաղվաղակի ամենեքին զքրքիջ բառնան. և այն իսկ են կարի աղէտք, զի անդէն յաղօթիցն ժամու չդադարեն կարի իմն ծաղու։ Ամենայն ուրեք գտանէ մուտ սատանայ. անարգեցաւ քամահեցաւ Քրիստոս, յորժամ համարեցաւ եկեղեցի։ Ոչ լսես Պաւղոսի, որ ասէն, եթէ “Ամենայն անառակութիւն և լկտութիւն և խեղկատակութիւն բարձցի ՝ի ձէնջ„. և դու զայն լսես, և ՝ի խեղկատակութիւն հատեալ ես, և բանս մորոսս և անօգուտս խօսիս, ծիծաղիս և այլագունես զերեսս։

Սատականդ՝ որ ՝ի սուգ ես և ՝ի խաչ ելեալ, ծիծաղիս և խնդաս. ասէ տես, Քրիստոս այնպիսի ինչ մեր արար. լուա՞ր երբէք յումեքէ։ Բայց տրտմեցաւ բազում անգամ. զի յորժամ ընդ Երուսաղէմ նայեցաւ՝ տրտմեցաւ. և յորժամ զմատնիչն ած զմտաւ՝ խռովեցաւ. և յորժամ զՂազարն կամէր յարուցանել՝ արտասուեաց. և դու ծիծաղիս և անհամիս։

1 Յօրինակին առ ընկան խանդանգնաց։

Որ վասն այլոց մեղաց չարտամիցի, պատժոց արժանի է. իսկ և որ ոչ վասն իւրոց մեղացն չհոգայցէ ինչ, որպիսի՞ ինչ թողութեան արժանի լինիցի: Պէտ սգոյ ժամանակ է և՝ ներողութեան և ջնջելոյ զմարմնոդ, և հնազանդեցուցանելոյ, և պատերազմաց և քրտանց, և դու ծիծաղիս և լկտանաս. չտեսանես զիարդ պատուհասեցաւն Սառա. չլսիցես զինչ ասաց Քրիստոս. "Վայ տաց, որ ծիծաղիցիքն այժմ, զի նոքա լացցեն": Ի սաղմոսին հանապազ զայդ ասիցես. միթէ ասիցես՝ թէ ծիծաղեցայ. և ոչ երբէք. այլ եթէ "Վաստակեցայ ես 'ի հեծութեան իմում":

Այլ թերևս ոմանք այնպէս լկտիք և անխրատք իցեն, զի և աստէն իսկ 'ի պատուհասիս ծիծաղեսցին, մինչ դեռ զծաղուէն խօսիցիմք. զի այնպէս անսաստ է յանդգնութիւնն, մինչև զպատուհասն անզգամ չառնու 'ի միտ: Կայ քահանայն այ և զամենեցուն աղօթս մատուցանէ, և դու ծիծաղիս և չերկնչիս. նա զահի հարեալ և վասն քո աղօթս մատուցանէ, և դու արհամարհես: Չլսիցես զգրոց. "Վայ արհամարհողաց", և դու չզարհուրիս, և չդնես փոքր մի հաճ անձին: Յորժամ յարքունիս համանիցէ մտանել, կերպարանօք և հայեցուածովք և գնացիւք և ամենայն իրօք զարդարես զանձն, և աստ՝ ուր բուն իսկ արքունիք են, և այնչափ՝ զի ամենայն ինչ իսկ երկնաւոր է, ծիծաղիս և խօլանաս: Այլ ոչ վասն զի դու ինչ չտեսանես. բայց ստուգեալ լուր, զի հրեշտակք շրջին ընդ ամենայն տեղիս, և մանաւանդ 'ի տունս այ շուրջ բակ առեալ զԹագաւորաւն. և ամենայն տեղիք լի են անմարմնականն զօրութեամբք:

Զայս բանս և առ կանայս ասացուք, որք առաջի չիշխեն լկտանալ, և ոչ միշտ քքուել, այլ յորժամ հանգստեան ինչ ժամանակ լինիցի. և աստ ցանգ զօղարկեալ՝ զգլուխ ծածկեալ քրքջեն:

Մի՛ կին դու, որ նստեալ կարկաջիցես, յեկեղեցի եկիր զմեղս խոստովան լինել, առաջի այ անկանել, ողորմութիւն խնդրել, աղաղակել վասն յանցանացն ինչ զոր յանցեր՝ պաղատել, և դու 'ի ծաղր հարեալ ես. և զիա՞րդ կարիցես հաշտեցուցանել ընդ քեզ զԱծ:

Այլ ծաղրն չա՞ր ինչ իցէ, ասեն: Ոչ եթէ ծաղրն չար ինչ իցէ, այլ անժամն և անչափն. յայն սակս անկեալ

է 'ի մեզ ծաղըն, զի յորժամ զբարեկամն տեսանի-ցեմք, ուրախ լինիցիմք, և յանկարծ ուրեք զբօսնու-ցումք. և կամ յորժամ զտրտմեալսն և զտխրեալս, մխի-թարիցեմք ժպտելով. և ոչ զքրքիջ բառնայցեմք, և հանապազ 'ի ծաղր հատանիցեմք : Զայն սակս տնկեալ է ծաղըն 'ի սրտին, զի զբօսանք սրտին լինիցին, և ոչ զի այլայլիցի : Նա և ցանկութիւն մարմնոյ տնկեալ է 'ի մեզ, և ոչ վասն զի տնկեալն է՝ հարկ ինչ 'ի վերայ կայցէ մեզ 'ի կիր արկանել և կամ զանչափն. այլ նա-հանջեմք, և չառնեմք՝ վասն զի կայր 'ի մեզ՝ պարտ էր 'ի կիր արկանել : Արտասուօք ծառայեսցես Այ, զի կարի-ցես լուանալ զմեղսն :

Գիտեմք զի բազումք ունչս իսկ առնեն մեզ, յոր-ժամ վասն արտասուաց ինչ ճառիցեմք. վասն այնորիկ ժամանակ է արտասուաց : Գիտեմ զի խաբեն զանձինս ոմանք և ասեն. "Կերիցուք արբցուք, քանզի վաղիւն մեռանիցիմք : Սնոտի սնոտեաց, ամենայն ինչ սնոտի է". և զայս ոչ եթէ ես ասեմ, այլ նա որ զամենայն իրաց զփորձ գիտէր. "Շինեցի, ասէ, ինձ ապարանս, և տնկեցի այգիս. աւազանս ջրոց կազմեցի, արարի ինձ սպասաւորս արս և կանայս". և զինչ յետ այնր ա-մենայնի. "սնոտի սնոտեաց, ամենայն ինչ սնոտի է" :

Սուգ առցուք և մեք, սիրելիք, սուգ առցուք, զի սեր-տիւ ծիծաղիցիմք, և արդարև ուրախ լինիցիմք 'ի ժա-մանակի ճշմարիտ խնդութեանն : Զի ընդ այս խնդու-թիւնս ապաքէն և տրտմութիւն խառն իցէ, և չիք եր-բէք զսա սուրբ գտանել. իսկ այն սերտ և աներկեւան է, և չիք ինչ 'ի նմա նենգութիւն խառն. ընդ այն ու-րախութիւն բերկրեսցուք : Եւ այլազգ եւս. չէ հնար այնմ հասանել, եթէ ոչ յորժամ ախորժեմքն և ցանգ յօգուտն յօժարագոյնք լինիցիմք. և սակաւիկ մի ընդ նեղութիւն եկեալ կամօք և գոհանալով, ամենայն վըշ-տաց տանիցիմք. զի այնպէս կարասցուք և արքայու-թեանն երկնից հասանել. որոց լիցի ամենեցուն մեզ հասանել 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, ընդ որում Հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն :

## Ի ՔՍԱՆԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

“Յետ ընդունելութեան գիտութեանն ոչ ևս այլոյ է վասն մեղաց պատարագ„: Այէտք են, ասէ, գործոց բարեաց... քանզի սրբեցար ազատեցար 'ի բամբասանաց, եղեր որդի. թէ դարձեալ յառաջին փըխածն դարձցիս, տարագրութիւն մնայ և հուր: Դարձեալ տատ մեզ 'ի վերայ յարձակին որք զապաշխարութիւն 'ի բաց բառնան, և որ միանգամ 'ի մկրտութիւնն գանդաղին գալ: Այդքա ասեն. ոչ զգուշագոյն է 'ի մկըրտութիւն գալ, եթէ ոչ ևս իցէ երկրորդ թողութիւն. և օտքա ասեն, ոչ զգուշագոյն է տալ 'ի խորհրդոյն՝ յանցաւորաց, թէ ոչ իցէ երկրորդ թողութիւն: Այլ արդ զինչ առ երկոսեանն ասիցեմք. եթէ ոչ զապաշխարութիւնն աստ 'ի բաց բառնայ, և որ ոչ ապաշաւանօքն է քաւութիւն, ոչ մղէ և ոչ կործանէ. այլ զինչ. զերկրորդ աւազանն 'ի բաց բառնայ: Քանզի և ոչ ասաց իսկ եթէ ոչ է ապաշխարութիւն կամ թողութիւն, այլ պատարագ ոչ ևս է, այսինքն է խաչ երկրորդ ոչ է. քանզի պատարագ զնա կոչէ:

## Ի ՔՍԱՆԵՐՈՐԴ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

. . . . . . . . . . . . . . . . . . . .

չմնայցէ ժամանակին՝ յորում պսակիչն գայցէ և պըսակիցէ, և առ չժուժալ կամիցի եղանել և փախչել, որպէս զի թէ չկարիցէ տանել տօթոյն և ծարաւոյն: Այնպիսի իմն ակնարկեալ և նորա զինչ ասիցէ. “Զի փոքր միւս ևս և այնքան, ասէ, որչափ որ գալոցն իցէ՝ եկեսցէ և ոչ յամեսցէ„: Զի մի ասիցեն թէ երբ գայցէ, 'ի՛ գրոց մխիթարէ զնոսա. և այլուր յորժամ ասէ եթէ “Այժմ մերձ է փրկութիւնն մեր„, մխիթարութեան վասն ասէ՝ թէ սակաւ ինչ կայ ժամանակին: Այլ զայս ոչ եթէ յանձնէ ինչ ասէ, այլ 'ի գրոց. զի եթէ յայնմ ժամանակի, “սակաւ ինչ էր յայնժամ մինչև որ գալոցն իցէ գայցէ և ոչ յամիցէ„, յայտ է թէ այժմ կարի իսկ մօտ է. որպէս զի ամէն ունել ոչ սակաւ վարձք են: “Զի որ արդարն է, ասէ,

'ի հաւատոց իմոց կեցցէ. և եթէ դանդաղեսցի, ոչ հաճեսցի ընդ նա անձն իմ»: Մեծ մխիթարութիւն է այս յորժամ ցուցանիցէ որք զամենայն ինչ ուղղութե արարեալ ոմանց, և վասն սակաւ ինչ ծուլութեան մեռ հցեն կորուսանել, և զգուշացուցանիցէ: «Այլ մեք ոչ եթէ դանդաղանաց եմք 'ի կորուստ եմք, այլ հաւատովք 'ի փրկութիւն ոգւոց: Զի հաւատքն են հաստատութիւն յուսացելոց իրաց, յանդիմանութիւն չերևելեաց. քանզի նովաւ վկայեցան առաջինքն»: Նաև ճրագես ինչ բան 'ի կիր արկ յաւելն՝ յանդիմանութիւն չերևելեաց . . . . . . . . . . . . . . .

Այս մեք առ վհատեալսն զնոյնս ասասցուք, եթէ արդարև լինելոց են տանջանքն, արդարև գալոց է, և առ դուրս կան այսուհետև իրք յարութեանն: Այս ուստի յայտ իցէ, ասեն: Զասեմ 'ի գրոց, չասեմ 'ի մարգարէից. քանզի ոչ եթէ ընդ քրիստոնեայս միայն են խօս առ այժմ բանքս, այլ թէ և հեթանոս ոք իցէ՝ կարի վստահիմ ցուցանել օրինակս և ուսուցանել: Զինչ, ասեն, և ուստի: Նախագուշակ ինչ յառաջագոյն ասաց Քրիստոս. և եթէ չել այն ամենայն 'ի գլուխ, մի հաւատայցես այլոցն ևս բանից. և եթէ ելին 'ի գլուխ և կատարեցան, ընդէ՞ր երկմտիցես 'ի մնացելոցն. թէպէտ և կարի անհաւանութիւն էր, թէ չէին կատարեալ առաջինքն, այլոց հաւատալ. քան՝ զի յորժամ ամենայն կատարեցաւ, այլոցն որ չև են լեալ՝ չհաւատալ. մեծաւանդ զի օրինակաւ ևս յայտ արարից զիրսն:

Ասաց Քրիստոս՝ եթէ Երուսաղէմ առցի, և այսպիսի աւերածով աւերեսցի. և ել 'ի գլուխ կանխասացութիւնն: Ասաց՝ եթէ եղիցի նեղութիւն մեծ, և եղև: Ասաց՝ թէ որպէս մանանխոյ սերմանի, այնպէս՝ տարածեսցի քարոզութիւնն, և զնոյն տեսանեմք համապազ ընդ ամենայն աշխարհ ընթացեալ: Ասաց՝ եթէ որք թողուցուն զհայր կամ զմայր կամ զեղբարս կամ զքորս, ունիցին հարս և մարս. և զայն արդեամբք իսկ տեսանեմք կատարեալ: Ասաց՝ եթէ յաշխարհի նեղութիւն հասանիցէ ձեզ, այլ քաջալերեցարուք, ես յաղթեցի աշխարհի. այս ինքն է՝ թէ ոչ ոք իցէ որ ձեզ յաղթիցէ. և զայս արդեամբք իսկ տեսանեմք եղեալ 'ի գլուխ: Ասաց՝ եթէ դրունք դժոխոց ոչ յաղթահա-

րեացեն զեկեղեցի, և այն զի 'ի հալածանս կայցէ, և ոչ ոք իցէ որ շիջուցանիցէ զքարոզութիւնն. վկայ և այսմ կանխասացութեան փորձ իսկ իրացն. թէպէտ և կարի առանց հաւանութեան էր յայնժամ զայս ասել։ Ընդէ՞ր. զի ամենայն բանք էին, և չև ևս զհանդէս ցուցանէր բանիցն. որպէս զի կարի իսկ հաւատալի եղև այժմ։ Ասաց՝ եթէ յորժամ քարոզեսցի աւետարանս ընդ ամենայն հեթանոսս, ապա եկեսցէ կատարած. ահաւասիկ այսուհետև մօտ 'ի վախճան եկաք հասաք. քանզի 'ի մեծ մասն աշխարհիս քարոզեցաւ աւետարանն. այսուհետև եկն եհաս կատարած. երկիցուք սիրելիք։

Բայց աղէ ասա, զի հոգայցես վասն կատարածի. թէպէտ և մօտ իսկ է. զի իւրաքանչիւր կեանք կարճեալ են և մօտ 'ի վախճան։ "Աւուրք, ասէ, ամաց մերոց 'ի նոսա եօթանասուն ամ, և եթէ ևս քաջ՝ ութսուն ամ"։ Մերձ է օրն դատաստանի, երկիցուք զարհուրեսցուք։ "Եղբայր ոչ փրկէ և ոչ փրկեսցէ մարդ". բազում անգամ զղջանայցեմք անդ. այլ 'ի մահու ոչ ոք է՝ որ խոստովան լինիցի նմա։ Վասն այնորիկ ասէ. "Կանխեսցուք քան զերեսս նորա խոստովանութ̃բ". այսինքն է քան զգալուստ նորա։ Աստ զինչ և ստանիցեմք, ունի զօրութիւն. իսկ անդ՝ ոչ ևս այնուհետև։ Եթէ 'ի հնոց ջեռուցեալ արկանէր ոք զմեզ վայր մի. ո՞չ ապաքէն զամենայն ինչ խոստանայաք տալ վասն ապրելոյ, եթէ զինչս վատնել, և 'ի ծառայութիւն մտանել։ Քանի՜ք են որ 'ի ցաւս անհնարինս անկանիցին, զամենայն ինչ խոստանան տալ՝ եթէ հնար ինչ լինիցի 'ի ցաւոցն ապրել։ Իսկ եթէ ժամանակեան ցաւքն այնպէս 'ի տագնապի կացուցանեն զմեզ, անդ զինչ գործեսցուք, յորժամ ոչ ինչ օգնիցէ մեզ, բայց միայն զեղջն և ապաշաւն տանջիցէ զմեզ։

Որչափ չարեօք լի եմք, և ոչ զգամք. զմիմեանս խածանեմք, զմիմեանս ուտեմք, մեղանչեմք, ամբաստանեմք, բամբասեմք, ընդ ընկերաց փառս խանդամք։ Իսկ տես զանհնարին չարիսն, յորժամ կամիմք զընկերացն մեծարանս ձաղել. այլ այլս իմն, ասէ, խօսին զայսմ անուանէ. ա̃ծ թող ինձ, մի մեղս համարիր. սուտքս լուան։ Իսկ ընդէ՞ր բնաւ խօսեցիս զոր ոչն գիտիցես.

Եթէ չհաւատաս՝ զումէ խօսիցիմ, զի՞ հաւատալի առնես զլուրն շատախօսութեամբ. ընդէ՞ր տարածանես ըղբանսն՝ որ ոչ են ճշմարիտ. դու չհաւատաս, և զա̃ծ աղաչես զի մի մեղս համարիցի. մի՛ իսկ խօսիր, այլ լուռ լեր, և յամենայն երկիւղէ ազատ լինիցիս: Ե՛ս ևս չգիտեմ՝ ուստի ախտս այս եմուտ 'ի մարդիկ:

Ի շատախօսութիւն հատաք, 'ի ցոփութիւն և 'ի շաղփաղփութիւն, չպահեմք զբանս 'ի մտի. լուր իմաստնոյն՝ որ խրատէ և ասէ. "Լուար ինչ բան, մեռցի 'ի քեզ. վստահ լեր, ոչ եթէ ծակէ զքեզ և ելանէ". և դարձեալ եթէ լուաւ ինչ բան մորոս, և երկնեաց որպէս յերկնեաց մանկան ծննդականն: Ի չարախօսութիւն պատրաստ եմք, 'ի դատապարտութիւնն կազմ պատնիմք, թէպէտ և այլ ինչ չարիս չէր գործեալ մեր, այն իսկ բաւական էր կորուսանել զմեզ և տանել 'ի գեհեննն. նոյն իսկ արկանել ընդ բազում չարեօք: Այլ զի ստոյգ ուսանիցիս՝ լուր մարգարէին. "Նստէիր, ասէ, զեղբօրէ քումմէ չարախօսէիր":

Ոչ ինչ խօսիմ, ասէ, այլ այլք խօսին: Եւ դու իսկ խօսիս. եթէ քո չէր ասացեալ, թերևս միւսն ոչ լսէր. և եթէ լսելոց ևս էր, դու մեղացն չէիր պարտական: Զքեզ արժան էր թագուցանել և ծածկել զյանցանս ընկերին, դու ահաւադիկ ձաղես և զվայրօք ածես, պատճառանօք՝ թէ վասն արդարութեան առնիցես. չլինիցիս ամբաստան, այլ շաղփաղփ և ցոփ և փոքրոգի պատնիս, մեռոսանաս և չիմանաս: Ո՛ չարիք. և անհնարին աղէտք. զքեզ ընդ նմին յամօթ առնես, և չառնուս 'ի միտ:

Տես որչափ չարիք անտի ծնանին. բարկացուցանես զա̃ծ, գայթակղեցուցանես զմարդիկ: Լսիցես զինչ ասէրն Պաւղոս զայրեացն կանանց. "Ոչ միայն դատարկք ուսանին, այլ և շոգմոգ և քննողք և շրջողք տանէ 'ի տուն, և խօսին զոր ոչ է պարտ": Որպէս զի ստոյգ իցեն բանքն՝ որ ասացին զեղբօրէն, սակայն այնպէս չէ պարտ խօսել, թող թէ յորժամ սուտ ևս իցեն: Ամենայն ուրեք անձին և եթ զգոյշ լինիցիք. երկնչիցիս՝ եթէ գուցէ պատժիցիս յա̃յ. ապա երկիր՝ եթէ գուցէ վասն շատախօսութեանն պատժիցիս: Ո՛ ի անդ չիք ասել եթէ ինձ մի մեղս համարիցիս, ա̃ծ. քանզի շատ-

խօսեցար և անձամբ անձին կուտեցեր մեղս: Օ՜ն ձա-ղես, զմէ՞ ածցես զվայրօք, ընդէ՞ր այդչափ աճեցուցա-նես զսակաւ բանսն. գիտացի՞ր զի այնպիսի չարիք կո-րուսանելոց են զքեզ: Վասն այնորիկ ասէր Քրիս-տոս. «Մի՛ դատիք, զի մի՛ դատիցիք». և չէ ումեք ինչ փոյթ. և ոչ փարիսեցւոյն գործքն իւրատեն զմեզ. նա ասէր ստոյգ ինչ իրս, թէ չեմ իբրև զմաքսաւորս զայս. և թէպէտ և չլուաւ ոք զիրսն, սակայն դատապարտե-ցաւ: Եթէ որ զստոյգ բանսն խօսեցաւ և ոչ ոք լուաւ, այնպէս դատապարտեցաւ, որք սուտ ինչ՝ որք չիցեն 'ի վերայ հասեալ՝ ընդ վայր տարածանեն իբրև զկանայս շատախօսս, որպիսի՞ ինչ պատիժս ոչ կրիցեն. զիա՞րդ իցէ, չունիցի՞ն արդեօք զժոյժ:

Դնիցուք այսուհետև պահապան բերանոյ, և դուռն և փականս լեզուի. քանզի բազում չարիք 'ի շատախօ-սութենէ ծնան, տունք կործանեցան, բարեկամութիւնք քակեցան, և այլ ևս բիւրապատիկ անհնարին չարիք գործեցան: Մի՛ քններ զընկերին, ով մարդ: Այլ շատ խօսիցես, և չունիցիս ժոյժ. սակայն զինչ և իցէ յանցանս ունիցիս և դու, զքոյն խօսեաց առաջի Այ. և ոչ ևս այ-նուհետև լինիցին յանցանքն յանցանք, այլ յաղթու-թիւն: Խօսեսջիր զյանցանս քո առաջի բարեկամաց՝ որ ստոյգ բարեկամք իցեն և արդարք, յորս կարի վըս-տահ իցես, զի աղօթս արասցեն առ Ած վասն մեղաց քոց: Ապա թէ զայլոց ասիցես, և զքո ոչ, չօգտիս ինչ, և ոչ շահիս, այլ և կորնչիս ևս. իսկ եթէ զքոյն պատ-մեսցես տեառն, բազում վարձս ընդունիցիս. «Ասա-ցի, ասէ, թէ պատմեցից զինէն զանօրէնութիւնս իմ տեառն, և դու թողեր զամենայն ամբարշտութիւնս մե-ղաց իմոց»:

Վասնզի դատել զքոյն դատեաց, և չիք ոք որ քեզ մեղադիր լինիցի: Թէ անձամբ զանձն դատապարտես-ցես, յայնժամ չդատապարտիցիս, յայնժամ չպատու-հասիցիս. յայնժամ պատուհասիս, եթէ չդատապար-տիցես և չյանդիմանիցես զանձն, եթէ չցուցցէ քեզ վասն քո: Եթէ տեսանիցես զոք բարկացեալ զայրա-ցեալ, այլ ինչ յոռութիւնս գործեալ, զմտաւ ածջիր վաղվաղակի և դու զքո զյանցանսն, և այնպէս ոչ կա-րի զնա դատապարտես, և դու ազատես զքեզ 'ի բեռանց

մեղաց։ Եթէ այնպէս ուղղեսցուք զմեր վարս, եթէ այնպէս լինիցիմք վաճառականք և շահիցեմք զկեանս մեր, գտանեմք զոգին։ Եթէ զանձինս դատապարտի-ցեմք, ոչ անկանիմք 'ի բազում մեղս, այլ թերևս իսկ և բազում բարիս գործեմք, յորժամ հեզք և խոնարհք լինիցիմք, և վայելեսցեմք յամենայն բարութիւնսն խոստացելոց սիրելեացն այ. որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ, այժմ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## Ի ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՐԿՐՈՐԴ ՃԱՌԷՆ

. . . . . . . . . . . . . . . . .

չև ևս ընծայեցաւ նմա։ Պատարագ ասա զպատուականն ասէ, զլուսաւորն, զկարևորն։ Ունիմք, ասէ, ասել թէ չընկալաւ, այլ ընկալաւ։ Եւ ասէ ցԿային. “Եթէ ուղիղ մատուցանես և ուղիղ ոչ բաժանիցես„։ Եւ եթէ այնպէս է, ապա Աբէլ ուղիղ մատոյց և ուղիղ բաժանեաց. բայց սակայն փոխանակ այնր ընկալաւ հատուցումն, զի սպանաւ յեղբօրն ձեռաց, և զպատիժն զոր վասն մեղացն կրեաց հայրն՝ նախ նա ընկալաւ, որ զուղղութիւն կատարեաց. և այնչափ անհնարին չարչարանօք չարչարեցաւ, զի յեղբօրէ և նախ քան զամենեսին. և կատարեաց զուղղութիւնն, թէպէտ և չէր ընդ ոք նայել։ Ընդ ո՞ հայեցաւ և այնպէս պատուեաց զնա. միթէ ընդ հա՞յրն և ընդ մա՞յրն. այլ և նոքա թըշնամանեցին զնա՝ փոխանակ երախտեացն։ Միթէ ընդ եղբա՞յրն. այլ և նա անարգեաց. որպէս զի յայտ իսկ է թէ յանձնէ եգիտ զբարին։ Եւ արդ զի՞նչ անցք անցանեն ընդ նա. չարչարի սպանանի։ Ոխա՞րդ և այլ ազգ վկայեցաւ զնմանէ եթէ արդար է։ Ասի թէ հուր էջ և ընկալաւ զպատարագն. փոխանակ ասելոյ եթէ “հայեցաւ 'ի Աբէլ և 'ի պատարագս նորա„. հեբրայեցին ասէ՝ եթէ հուր եկեր։ Եւ արդ զի՞նչ այլ ինչ, և բանիւք իսկ և արդեամբք վկայեաց զարդարոյն, և նորին առաջի իսկ սպանաւ. և չէ և վրէժխնդիր, այլ թոյլ էառ։ Իսկ ձեռըն, ասէ, ոչ այնպիսի ինչ է և չէ . . . . .

Այս զօսք, ասէ ... և ոչ ինչ տեսանէք ... ուցանէ առեալ, մի ինչ խռովիցիք ... եղի ուր առնլոց ... հաւատովք ե ... խեցաւ փոխի ... յաւիտենին պատ ... են, և հաճոյս .... հաւատքն. եթէ ... եթէ ընդունե ... խարէնս, զիարդ ... ճոյ. " քանզի առանց հաւատոյն, ասէ, անհնար է այ հաճոյ լինել„: Զիարդ. եթէ ոք հաւատայցէ եթէ գոյ ած և վարձատրող հատուցանէ, յայտ է թէ անդ ... փոխարէնս: Այս արդ ... իցէ հաճոյութ .. "Հաւատալ, ասէ, պարտ է ... ած„. ոչ եթէ որպ..չ իցէ. զի եթէ յիմէն ... պէտք են և ոչ.. դոյ եթէ որպիսի ոչ իցէ խորհրդովքն հնար իցէ հասու լինել: Այս զի հատուցիչ վարձուցն է, առ այնով է՝ հաւատոց պէտք են և ոչ խորհրդոց. զիարդ զէութիւնն խորհրդովք փակել մարթիցի. որպիսի խորհուրդք կարիցեն այնմ հասու լինել. ամենք ինքնակաց ասեն զամենայն ինչ որ է: Տեսանես զի թէ ոչ հաւատամք վասն ամենայնի, ոչ վասն հատուցմանն միայն, այլ և այնմ թէ է ած, 'ի դերև ելանէ մեր ամենայն ինչ: Բազումք խնդիր են թէ յո փոխեցաւ Ենովք, և ընդէր փոխեցաւ, և զմէ ոչ մեռաւ, ոչ նա և ոչ Եղիա, և թէ տակաւին կենդանի իցեն, և զիարդ և որովք կերպարանօք իցեն կենդանիք: Այլ աւելորդ է զայն խնդրել:

Ի ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՐՐՈՐԴ ՃԱՌԷՆ

Որ յերկնից անկանիցի և յանտի բարութեանցն, որպիսի արտասուօք պարտ իցէ արտասուել: Քանզի արտասուեալ այն՝ որ չարչարիցի ոք, և ինքն չիցէ պատճառ չարչարանացն. յորժամ իւրով կամօք ոք անկանիցի ընդ չարեօք, ոչ եթէ արտասուաց, այլ ողբոց արժանի է. մանաւանդ թէ և անդ և աստ արժանի է: Քանզի տէրն մեր Յիսուս Քրիստոս զԵրուսաղէմ, թէպէտ և ամբարիշտ էր, ողբաց և արտասուեաց:

Արդարև իսկ բազում աշխարանաց արժանի եմք, բազում ողբոց. եթէ ամենայն աշխարհս ձայն առնուցուն, զողբս հարկանիցէ, և քարինք և փայտք և ծառք և երէք և թռչունք և ձկունք և ամենեքին ամենայն տիեզերք համօրէն 'ի ձայն ողբի և ազդոմ աշխարանաց

աշխատիցեն, ոչ ինչ արժանի աշխատելոյն աշխատիցեն ։ Որպիսի՞ բան յանդիման կարիցէ կացուցանել, որպիսի՛ սիրտք զայնպիսի երանութիւն և զբարութիւնս. զայնպիսի ցանկութիւն և զփառս և զուրախութիւն և զլուսաւորութիւն ։ «Զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և ՚ի սիրտ մարդոյ ոչ անկաւ»․ չասաց եթէ անցանէ և եթ զմտօք, այլ եթէ, և ոչ իմանալ ոք երբէք կարաց, «զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց»։

Որոց պատրաստիչ և կազմիչ Աստուած է բարութեանցն, որպիսի՞ ինչ իցեն ։ Զի թէ արար զմեզ վաղվաղակի, և ոչ ինչ ՚ի մէնջ հայր մեզ կազմեն յառաջագոյն, այնչափ ինչ շնորհեաց մեզ ։ Զինչ. զդրախտն, ընդ իւր եւս խօսելոյ արժանի առնել, կենդանութիւն, անմահութիւն խոստացաւ, կեանս երանելիս, ազատս ՚ի հոգոց ։ Իսկ որք վասն նորա այնչափ աշխատեցան և ճգնեցան և համբերին չարչարանաց, զինչ ինչ ոչ շնորհիցէ ։ Ի միածինն ոչ խնայեաց վասն մեր, և զորդին սիրելի ետ ՚ի մահ վասն մեր մինչ թշնամիքն էաք, իսկ իմիք չառնիցէ արժանի մինչ սիրելիքս եղեաք. իւ իւիք չմեծարիցէ՝ մինչ հաշտեցոյց ընդ իւր ։ Մեծատուն է, և կարի այնչափ մեծատուն՝ և ցանկայ և փութայ զմեզ սիրելիս առնել. մեք ոչ այնպէս փութամք, որպէս նայն վասն մեր փութայ. և զինչ ասեմ եթէ ոչ փութամք, նա և կամիմք իսկ ոչ այնպէս բարութեցն հասանել՝ որպէս և նայն կամի. և զի եւս առաւել կամի, որով արարն և եցոյց ։

Մեք վասն մեր անձանց սակաւ ոսկի չարհամարհեմք, և նա վասն մեր զորդին իւր երետ ։ Արկցուք յօգուտ ՚ի կիր զսէրն այս, և վայելեսցուք բարեկամութեանն նորա ։ «Դուք, ասէ, բարեկամք իմ էք, եթէ առնիցէք զոր ասեմ ձեզ»։ Նայէ, զթշնամիսն՝ որ այնչափ հեռի էին ՚ի նմանէ, քան զորս առանց զուգական առաւելութեամբ առաւել է, բարեկամս իւր արար, և բարեկամս կոչէ ։ Զիարդ չիցէ ցանկալի ՚ի վերայ այնպիսի բարեկամութեան չարչարել ։ Վասն մարդկան բարութեան բազում անգամ ՚ի ճգունս մտանեմք, և վասն այս բարեկամութեանն և ոչ ինչ կամիմք ծախել. և արդարև սգոյ արժանի են գործք և գնացք մեր, սգոյ և արտասուաց, լալոյ և աշխարանաց և կոծոյ մեծի ։

Ի յաւուրն մերում անկաք, և 'ի բարձրութենէն խո-նարհեցաք, չգտաք արժանի պատուոյն այ, ապախտա-ւորք և ապաշխարհք եղեալք յետ երախտեացն։ Մ՝եր-կացոյց զմեզ սատանայ յամենայն բարութեանցն։ Ոչ արժանին եղեաք լինել որդիք՝ ոչ ինչ ընդհատ եղեաք 'ի թշնամեացն, որ թշնամանեինն զնա։ Զինչ ինչ այ-սուհետև կայցէ մեզ մխիթարութիւն. նա զմեզ յեր-կինս կոչեաց, և մեք մղեցաք զանձինս 'ի գեհեննն։ "Ա-նէծք և ստութիւնք և գողութիւնք և շնութիւնք հե-ղեալ են յերկրի". կեաք արիւն ընդ արիւն խառնեն, և այլք այնպիսի ինչ գործս գործեն՝ որ եւս չար քան զարիւնն է. բազումք 'ի զրկելոց և 'ի նեղելոց՝ բիւրա-պատիկ մահս ընդունին, քան թէ այնպէս տառապելո-ցին. և եթէ ոչ այ երկիւղ առաջի աչաց կայր, թերևս և անձանց խոկ առնէին. զի այնպէս ցանկան մեռանել։ Իսկ արդ չիցէ՞ այս չար քան զարիւնն։

"Վայ ինձ, ասէ, անձն իմ, զի կորեաւ երկիւղած յերկրէ, և չիք ոք որ ուղղիցէ 'ի մէջ մարդկան". և մեք այժմ զաղօթս բարձցուք վասն մեր. այլ եղերաք ողբոցս ձայնակիցք։ Իսկ թերևս ոմանք հեգնեսցեն և ծաղր առնիցեն. վասն այնորիկ իսկ պարտ է յերկարել զողբս. զի այնպէս մոլիմք և կորնչիմք, զի ոչ թէ մեղու-ցիմք՝ խղճամք. այլ ընդ որոց հեծելն պարտ էր՝[1] ծաղր առնեմք։ Յայտնելոց է, ով մարդ, բարկութիւնն այ յերկնից 'ի վերայ ամբարշտութեան և անիրաւութեան մարդկան. և "Աստուած, ասէ, մեր յայտնապէս ե-կեսցէ, և հուր առաջի նորա գնասցէ և շուրջ զնովաւ մրրիկ յոյժ։ Հուր առաջի նորա վառեսցի, և բորբո-քեսցի շուրջ զթշնամեաք նորա". և "Օր տեսանի իբ-րև զհնոց բորբոքեալ". և չածէ ոք զմտաւ, այլ քան զառասպել եւս չար արհամարհեն։

Այսպիսի ահագինք. և որ լուիցէ չիք. և ծաղր ամե-նեքին առնեն։ Զինչ շահ կայցէ մեզ, ուստի գտանի-ցեմք փրկութիւն. կորեաք սպառեցաք, ծաղր կացաք թշնամեաց մերոց, կատականք եղեաք հեթանոսաց. խաղալիք դիւաց։ Պարծի սատանայ, հպարտ լինի, ու-րախ լինի. յամօթ եղեն հրեշտակք, որ զմեզ յաւանդ

1 Յօրինակին պակասաւոր բան էր։

տալին, ամենեքին 'ի տրտմութիւն են։ Աչք որ զասնայ, 'ի զուր ծախեցան վասն մեր ծախքն. և մեք ձեզ իբրև տանջեալք թուիմք։

Ի դէպ ժամանակի է և այժմ կոչել զերկինս 'ի վկայութիւն, եթէ չիք ոք որ լսէ. վկայ լերուք արարածք. "Լուր երկին և ունկն դիր երկիր զի տէր խօսեցաւ"։ Ձեռն տուք որ չեք էք գլորեալ՝ գլորելոց. որ կայքդ՝ կործանելոց. ողջքդ՝ հիւանդացելոց. զուարթք՝ մոլեխանացն և դանդաչելոցն։ Մի՛ ոք աղաչեմ զբարեկամ քան զշնորհ փրկութեանն մեծարոյ համարեսցի. մի՛ ոք զանձին եւեթ զօգուտ խնդրեսցէ։ Յորժամ ջերմ սաստիկ 'ի վերայ հասանիցէ, և ծառայք տիրեն տերանց. յորժամ նորա ոգին պապակեսցի 'ի տենդոյն, դասակք ծառայիցն թեպէտ և շուրջ կայցեն, ոչ ինչ գրեն և չճանաչեն զօրէնս տէրունականս, մինչ դեռ տէրն 'ի տագնապի իցէ։

Ժողովեսցուք զանձինս, աղաչեմ. պատերազմունք հանապազորդք 'ի վերայ յարուցեալ. գետամերք, ջրաբուժք, ծովակուլ կորուստք. շուրջ աղէտք, յամենայն կողմանց վարանք. սաստ անտի բարկութիւնն ոչ պաշարեալ, և մեք իբրև զհաճոյս այնպէս եմք յանհոգութեան։ Ամենեքեան զձեռս յագահութիւն պատրաստեմք. չիք ոք որ յօգնականութիւն զրկելոցն իջանիցէ. ամենեցուն զաչս յափշտակութիւն արձակեալ, չիք ոք որ յօժարիցէ 'ի պաշտպանութիւն. իւրաքանչիւր ոք ձեպի եւս քան զեւս յաճախել զինչս. չիք ոք որ օգնիցէ կարօտելոյն. իւրաքանչիւր ոք թէ զիարդ առնիցէ յաւելուած ընչիցն, յոյժ զբօսեալ են զկարասեաւ. չիք ոք որ ածէ զմտաւ թէ զիարդ ապրեցուսցէ զոգին։ Մի՛ կասկած ունիք զամենեսեան, թէ գուցէ յաղքատութիւն անկանիցիմք. թէ գուցէ 'ի գեհեն երթայցեմք՝ ընդ այն ոչ ոք կասկածէ և ոչ դողայ։

Ու՞ր արդ չիցէ՞ այս ողբոց և ամբաստանութեան և բամբասանաց արժանի։ Չկամէի զայս ասել, այլ նեղիմ, չունիմ ժոյժ 'ի ցաւոյ. արդահատեցէք, տառապանիմ 'ի սգոյ, բազում ինչ զոր և չկամիմ, ասել։ Ուս քար տեսանեմ զայնս հարուածս, առանց մխիթարութեան են չարիքն՝ որ զմեօք սպառին. մեծամեծ քան զփոփոխութիւնն հասին 'ի վերայ մեր կարիք, կորեաք

սպառեցաք ։ «Ո՛ տայր գլխոյ իմ ջուր, և աչաց իմոց աղբիւրս արտասուաց, զի նստէի և լայի զանհնարին զբեկումն մեր»։

Լացցուք, սիրելիք, լացցուք և հեծեծեսցուք դառնապէս ։ Թերևս իցեն աստ ոմանք՝ որ ասիցեն, համակ ողբոց խօսի, համակ զարտասուաց ։ Չկամէի՝ հաւատացէք՝ չկամէի. այլ համակ ընդ գովութիւնս և ընդ յորդորս անցանել. այլ չէ այժմ այնր ժամանակ ։ Եւ թէ ողբալն ինչ չար է, սիրելիք, այլ ողբոց արժանի գործ գործել ։ Եւ թէ լալն ինչ ձանձիր է, այլ լալոյն արժանի իրս վճարել ։ Մի՛ տանջիր, և չմտանեմ ի սուգ. մի՛ մեռանիր՝ և չլամ ։ Իսկ թէ մեռեալ կայցէ առաջի, աղաչես այնմ վշտակից լինել. և անագորոյնս համարիս զայնոսիկ՝ որք ոչ ընդ քեզ սգայցեն. և ողիքն կորնչին, և ասես, մի մտանել ի սուգ ։ Չունիմ ժոյժ, քանզի հայր եմ, արտասուաց. հայր գթած եմ, և չկարեմ տեսանել մեռեալ, և չլամ ։

Լուարուք որպիսի գոչիւն գոչէր Պաւղոս. «Որդեակք իմ զորս դարձեալ վերստին երկնեմ»։ Ո՞ր մայր մանկատաղածին այնպիսի ձայն արկանիցէ՝ որպէս և նա ։ Երանի թէ էր հնար բանալ և տեսանել զխարոյկ սրտացս, և ապա իմանայիր՝ թէ քան զամենայն կանանց և աղջկանց տարաժամ հասեալ յայրութիւն, զայրացեալ եմ և խորովեալ, և ոչ այրիմ և աղանձիմ ։ Եւ այնպէս կին մատաղ զայր ամուսին սգայ, և ոչ հայր զորդի, որպէս ես զայսչափ բազմութիւն, յորժամ ոչ տեսանեմն յառաջադէմն մատուցեալ ։ Զամենեսեան ի չարախօսութիւն և ի բամբասանս տեսանեմ. չիք ոք որ գործ առնէ հաճոյ լինել Այ, այլ զայսմ անուանէ, ասէ, և զայնմ անուանէ չարախօսեսցուք. այս անուն չէ արժանի քահանայութեան, և միւսն չկայ պարկեշտութեամբ ։

Պարտէաք զմեր չարիս սգալ, և ոչ զայլս դատել. թէպէտ և սուրբք իսկ էաք, չպարտէաք այնպիսի գործս գործել ։ «Ո՞ քննեսցէ զքեզ, ասէ ։ Զինչ ունիս՝ զոր ոչ առեր. և եթէ առեր, զի՞ պարծիս իբրև զչառեալ»։ Դու զի՞ դատիս զեղբայր քո, որ բիւրապատիկ չարեօք լի ես ։ Յորժամ ասիցես, եթէ այս անուն չար է և ժանտ և յոռի, զմտաւ ած և զքո անձն, և քննեսջիր զքոյսն, և ապա գիտասջիր զի զղջանայցես զբանսն ։

Ոչ է ինչ և չիք իսկ այնպիսի յորդորումն յառաքինութիւն, որպէս զմեղացն յիշատակն միշտ կիրթ 'ի մտի ունել։ Եթէ զայս երկուս իրս յարդարեսցուք, կարեմք հասանել խոստացելոց բարութեանցն. կարեմք սրբել զանձինս և ջնջել 'ի մեղաց, միայն թէ զմտաւ ածիցեմք։ Արդ առնուցումք զհոգ իւրայն յանձինս սիրելիք. վշտասցուք աստ մտօք, զի մի՛ վշտանայցեմք անդ տանջանօք, այլ զի վայելեսցուք 'ի յաւիտենից բարութիւնսն, ուստի հալածական լինին ցաւք և տրտմութիւնք և հեծութիւնք. զի հասանիցեմք բարութեանցն՝ որ անցանիցեն ըստ միտս մարդկան՝ 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որ նմա փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ՔՍԱՆԵՐՈՐԴ ՉՈՐՐՈՐԴ

Առաջին առաքինութիւն և գլխաւոր քան զամենայն առաքինութիւնս՝ օտար և պանդուխտ լինել յաշխարհէս, և ոչ ինչ հաղորդել ընդ աստի իրս, այլ իբրև յօտարոտեաց հրաժարել, զոր օրինակ երանելիքն, զորոց ասէ, եթէ «Շրջեցան լաշկ մաշկօք և մորթօք այծենեօք, նեղեալք և տառապեալք և կարօտեալք, զորս ոչ արժէ աշխարհս»։

Նոքա օտարս համարէին զանձինս յաշխարհէ. իսկ Պաւղոս ևս աւելի իմն ասէ. ոչ օտար կոչէ զանձն, այլ մեռեալ աշխարհի, և զաշխարհս իւր մեռեալ. «Ինձ, ասէ, աշխարհ 'ի խաչ ելեալ է և ես աշխարհի». և մեք քաղաքակից եմք աշխարհի, և յոյժ փութամք լինել քաղաքակից երկրի. այնպէս իմն զամենայն աստէն կամիմք շահել։ Նա որպէս էին արդարքն օտարք և մեռեալք աշխարհիս, նոյնպէս և մեք օտարք և մեռեալք երկնից. և զոր օրինակ էին նոքա կենդանիք և քաղաքակիցք երկնից, նոյնպէս և մեք աշխարհիս։ Վասն այնորիկ մեռաք, զի 'ի ճշմարիտ կենացն հրաժարեցաք և զժամանակ աւուրցս ախորժեցաք. յայն սակս բարկացուցաք զա՟ծ, զի մեզ բարութիւնք յերկինս առաջի կան, և մեք յերկրաւորացս չկամիմք հեռանալ, այլ իբրև զոր-

դունս ինչ՝ յերկրէ յերկիր և 'ի տանէ 'ի տուն զեռամք. և բնաւ և ոչ սակաւ ինչ հաճիմք բառնալ զաչս 'ի վեր, և ոչ մերժել զանձինս կամիմք յիւրաց մարմնաւորաց, այլ իբրև 'ի թմբրութենէ քնոյ և յարբեցութենէ ընկըղմեալք՝ աստէն զնովիմք զգաղեալ զանդաչեմք: Այս զոր օրինակ որք քաղցրանիրհ ինչ քնով պաշարեալք ոչ միայն զցայգն, այլ և յառաւօտուն ծագել և 'ի տըւընջեանն լուսաւորել՝ ջերանին 'ի մահիճս և չամաչեն: Նոյնպիսիքն իբրև զծրիս ինչ չնարհեն ցանկութեանն. և զկորուծոյ և զփոյթոյ ժամանակ՝ քնոյ և պղերգութեան ժամանակ առնեն:

Այնպէս և մեք 'ի մերձեալ տուընջեանն՝ 'ի մերժել գիշերոյն՝ մանաւանդ թէ տուընջեանն իսկ, «Զարթեցէք, ասէ, մինչ դեռ աւուր կայ», զգիշերոյ գործս գործեմք. համակ 'ի քուն կամք, միշտ երազս տեսանեմք, ստահիմք յածիմք և ուրախ լինիմք: Կափուցեալ են աչք մտաց մերոց և մարմնոց, բարբաջեմք, զայլ այլս խօսիմք. եթէ 'ի խոր ոք խոցիցէ չզգամք, և եթէ զինչ աւար հարկանիցէ և տանց հուր տայցէ: Մանաւանդ թէ չմնամք այլոց զայն առնել, այլ մեզէն անձամբ անձանց առնեմք. հանապազ խոցեմք և ծակոտեմք զանձինս. խայտառակիմք և ծանակ կամք, մերկացեալք յամենայն վայելչութենէ և 'ի պատուոյ և 'ի փառաց. ըղծանակաց գործոն մեր ոչ մեք թագուցանեմք, և ոչ այլոց պատուիրեմք այնմ զգուշանալ. այլ 'ի մէջ անցեալ կամք խայտառակութեամբ առաջի տեսողաց և անցաւորաց 'ի ծաղր և 'ի կատականս և 'ի զուարճանս:

Թէ չգիտիցէք, և ինքեանք իսկ չարքն նորին գործոյ գործակիցք՝ ծաղր առնեն զգործակիցսն և ստգտանեն: Քանզի հաստատեաց 'ի մեզ ած ատեան ընտրութեան առանց աչառանաց, որ ոչ երբէք եղծանի. թէպէտ և 'ի յատակս իսկ չարութեանցն հասանիցեմք, ատեանն ստգտանեն միտքն զգործսն յոռութեանց. վասն այնորիկ և չարքն դատապարտեն զանձինս. և եթէ կոչիցէ ոք զնոսա, զայն ինչ որ ենն՝ ամաչեն, բարկանան, թըշնամանս համարին: Այլ այսպէս թէպէտ և ոչ գործովք, այլ բանիւք ստգտանեն զոր ինչ գործենն՝ նեղեալք 'ի խղճէ մտացն. մանաւանդ թէ և գործովքն իսկ ստգտանեն զանձինս: Քանզի գաղտ և 'ի ծածուկ գործեն,

մեծ օրինակ ցուցանէին զկամացն՝ որպէս զխարգ ընդ երան հայեցին: Զի այնպէս յայտնի են չարիքն՝ եթէ չարիք են, որպէս զի թէ ամենեքին իսկ դատապարտեալքն զնոցանէ, և որք գործեն զչարիսն: Այլ այնպէս լաւութիւնն է առաքինութիւնն, զի և 'ի նոցանէ իսկ՝ որ չկամիցին նախանձաւորք նորա՝ զարմանալի երևին:

Վասնզի և պոռնիկն գովէ զցածութիւն, և ագահն ամբաստանէ զանիրաւութիւն, և բարկացողն զարմանայ ընդ անոխակալութիւնն և զկարճամտութիւնն պարսաւէ, և աղտեղին զաղտեղութիւնն: Այլ ընդէր, ասեն, գործիցեն զայն: Առ բազում ծուլութեան. և զի չընտրեն զլաւն՝ եթէ լաւ իցէ. ապա թէ ոչ, ամօթ չհամարէր զերան, և ոչ ուրանայր յորժամ ամբաստանն ոք քննէր զնմանէ: Նաւզումք կանխեալ անկեալ 'ի չարիս, ոչ կարացեն համարձակել ամօթոյն և խեղդեցան. զի այնպէս բարւոյ իմն և լաւի անկեալ է 'ի մեզ վկայութիւն. այնպէս քան զարեգակն ևս լուսաւորագոյնք են բարիքն, և քան զամենայն ինչ չարագոյնք նոցին հակառակքն:

Օտարք և պանդուխտք էին սուրբքն: Ի՞ւ և որով օրինակաւ. Երբ խոստովան եղև Աբրահամ՝ եթէ օտար և պանդուխտ եմ: Յակոբ և նա. բայց Դաւիթ խոստովան իսկ եղև, եթէ "Օտար և պանդուխտ եմ որպէս զամենայն հարս իմ": Որք վրանօք բնակէին և արծաթոյ գերեզմանս գնէին, յայտ է թէ օտարք էին, որք և ոչ զմեռեալսն անգամ ուրեք ունէին թաղել: Իսկ արդ զիա՞րդ. 'ի պաղեստինացւոց երկրէն ինչ առնէին օտար զանձինս: Այլ ոչ երբէք. այլ յամենայն իսկ տիեզերաց. քանզի ոչ ինչ տեսանէին աստ յայնցանէ՝ զորս կամէին, այլ զամենայն ինչ օտար և այլոց: Նոքա զառաքինութեանն կամէին գալ, և աստ բազում չարիք էին. օտար համարեալ էին նոցա իրքն, չունէին զոք բարեկամ, չունէին զոք ընտանի, բայց 'ի սակաւուց:

Զիա՞րդ էին օտարք: Զի ոչ գային զատուր ինչ իրք. և զայս ոչ բանիւք, այլ և արդեամբք իսկ ցուցանէին: Որպիսի՞ ինչ օրինակաւ: Ասաց ցԱբրահամ, թող զերկիրդ որ քոյդ կարծի, և եկ յօտար երկիր. և չառ ակն իւրայն. որպէս զօտար ինչ երկիր թողուցու, այնպէս անփութ եթող և գնաց: Ասաց ցնա՝ մատաղ զորդիդ

մեզ. քանզի ոչ իբրեւ զօտար շրջիմք աստ, եւ ոչ իբրեւ 'ի մեր աշխարհ փութամք անդր, այլ որպէս թէ 'ի սա-ջանս երթալոց եմք։ Վասն այնորիկ տրտմիմք, զի ոչ վա-րեցաք 'ի դէպ իրօքն, այլ եղծաք կործանեցաք զկարգն։ Յորժամ ուրախն պարտ էր լինել, աշխարեմք զար-հուրիմք իբրեւ զօտարս եւ զպանդխտեալս՝ որք յա-տեանս դատաւորաց երթալոց իցեն, եւ զամենայն ինչ զինչ եւ գործեալ իցէ զմտաւ ածիցեն, եւ յահի եւ յեր-կիւղի կայցեն։

Ոչ այնպիսի ինչ եւ երանելիքն, այլ փութային ձե-ղելոյն. Պաւղոս եւ հեծէր իսկ, "Մեք, ասէ, որ ընդ յարկաւս եմք՝ հեծեմք ծանրացեալք"։ Այնպիսի էին եւ աբրահամեանքն, օտարք էին յամենայն աշխարհէս, եւ այլ ինն աշխարհ խնդրէին։ Ո՞ր. միթէ զոր թո-ղեինն. եւ ոչ երբէք։ Զինչ արգելոյր զնոսա, եթէ կա-մեցեալ էր, անդրէն դառնալ միւսանգամ 'ի նոյն քա-ղաք. այլ զերկնաւորն խնդրէին, յայն ճանապարհ փու-թային. եւ այնպէս եղեն հաճոյ այ։

"Վասն այնորիկ ոչ ամօթ համարի ած կոչել նոցա ած"։ Նկատէ, որպիսի ինչ պատիւ առին, զի արժանի արար կոչել նոցա ած։ Զինչ խօսիս. ած երկրի կոչի եւ ած երկնից, եւ դու իբրեւ զմեծ ինչ դնես զայն, եթէ չհամարի ամօթ կոչել 'ի վերայ նոցա ած։ Իսկ արդարեւ իսկ մեծ եւ բազում երանութեան նշանակ։ Զիարդ. զի երկնի եւ երկրի կոչի այնպէս ած, որպէս եւ հեթա-նոսաց անուանի, վասն զի արարն եւ հաստատեաց զնո-սա. իսկ սոցա ոչ այնպէս, այլ իբրեւ զբարեկամ մտե-րիմ։

Իսկ զի օրինակաւ եւս յայտ արարից զնոյն. զոր օրի-նակ 'ի տունս մեծամեծս յորժամ առաքինանայցեն ո-մանք 'ի տանն սպասաւորաց, եւ կարի իսկ առաքինիք գտանիցին, եւ զամենայն իրս նոցա վճարիցեն, եւ բա-զում համարձակութիւն առ տեարս ունիցին, 'ի նոցա-նէն կոչին տեարքն, այսր անուան, ասէ, տեարք են. եւ զբազում ոք գտանէ այսպիսի անուանք կոչեցեալս։ Իսկ արդ զինչ ասիցեմ. որպէս կոչէր ած ոչ ազգաց միայն, այլ ամենայն իսկ տիեզերաց, նոյնպէս իսկ կոչէր ած Աբրահամու։ Այլ չգիտեմք որչափ ինչ իցէ պատիւն. քանզի եւ չեմք իսկ հասեալ յայն պատիւ։ Զոր օրի-

Նաև այժմ տէր ամենայն քրիստոնէից ասի, և սակայն անցանէ ՚ի վեր քան զմեր պատիւ անուանս. եթէ միում կոչեցի ա̃ծ, ՚ի միտ առ որչափ մեծ առաւելութիւն իցէ, յորժամ ամենայն աշխարհացն ա̃ծ՝ չհամարիցի ամօթ նոցա կոչել ա̃ծ. Եւ յիրաւի իսկ, զի ոչ միայն աշխարհիս, այլ և բիւրուց ևս այսպիսի աշխարհաց են համեմատ սուրբքն: "Լաւ է, ասէ, մի որ առնէ զկամս Ա̃յ, քան զբիւր անօրէն":

Զի այսպէս զանձինս օտարս կոչէին՝ յայտ իսկ է. և գրեթէ թէ նոցա վասն օտարութեանն կոչէին զանձինս: Նաև Դաւիթ ընդէ՞ր. ո՛չ թագաւոր էր և մարգարէ, ո՛չ յիւրում իսկ աշխարհի բնակեալ էր, ընդէ՞ր ասէր եթէ օտար եմ և պանդուխտ: Զիա՞րդ իցես օտար: Իբրև զհարսն իմ, ասէ: Տեսանե՞ս զի և նոքա օտարք էին, և նա: [illegible], ասէ, աշխարհ, այլ ոչ [illegible] աշխարհն: Զիա՞րդ իցես դու օտար: Յերկրէ. Թէ այնպիսի իցէ՝ և նոքա օտար էին յերկրէ. որպէս նոքա ասին՝ նոյնպէս ես, և որպէս ես՝ նոյնպէս և նոքա:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Եղիցուք այժմ և մեք օտարք, զի մի ամօթ համարեսցի Աստուած կոչիլ մեզ ա̃ծ: Ամօթ է նմա, յորժամ մարդոց չարաց կոչի ա̃ծ, և յամօթ առնէ զնոսա և նա. զոր օրինակ և փառաւորի՝ յորժամ բարեաց և պիտանեաց և առաքինութեամբ վառելոց: Զի եթէ մեք հրաժարեմք կոչել տեարք ծառայից չարաց, և թող տամք և ընդվայր հարկանեմք, եթէ մատուցեալ ոք ասիցէ՝ եթէ այն անուն բիւր չարիս գործէ՝ միթէ քո՞ ծառայ իցէ, ըմբռստանամք վաղվաղակի՝ եթէ ոչ, քաւ լիցի. ՚ի բաց թօթափեմք զնախատինսն: Քանզի աղէտս ՚ի միջի կայ ընդ ծառայն և ընդ տէրն, և ՚ի նա հասանեն կարծիքն նորա:

Այլ նոքա այնպէս լուսաւորք էին և այնպէս համարձակք, որպէս զի ոչ միայն ՚ի նոցանէ չհամարէր ամօթ՝ կոչել ա̃ծ, այլ և ինքն իսկ կոչէր ա̃ծ. "Ես եմ, ասէ, ա̃ծ Աբրահամու, ա̃ծ Իսահակայ և ա̃ծ Յակոբայ": Եղիցուք այսուհետև և մեք օտարք, զի մի ամօթ համարեսցի կոչել մեզ ա̃ծ. զի մի ամօթ համարեսցի և

արկանիցէ զմեզ 'ի գեհեն։ Այնպիսիք էին որ ասէին․ «Տէր ո՞չ 'ի քո յանուն մարգարէացաք և 'ի քո յանուն զօրութիւնս բազումս արարաք»․ այլ տեսէք զինչ ասէ՛րն Քրիստոս․ «Ոչ գիտեմ զձեզ, ասէ»․ որպէս առնեն տեարք առ ծառայս չարս, յորժամ ապաւինել կամիցին 'ի նոսա, և զնախատինս 'ի բաց մերժիցեն․ չգիտեմք, ասէ, զձեզ․ այս ինքն եթէ ուրանամք և հրաժարեմք 'ի ձէնջ։

Այլ մի լիցի մեզ զայնպիսի կորուսիչ և զահագին բարբառ լսել․ զի թէ որ զդևս հանէին և մարգարէ էին, քանզի վարս միաբան գործոյն չունէին, յուրաստ եղև 'ի նոցանէ, որչափ ևս առաւել 'ի մէնջ։ Այլ զիա՞րդ, ասեն, 'ի դէպ էր 'ի նոցանէ որ մարգարէանային և նըշանս առնէին և դևս հանէին՝ յուրաստ լինել։ Թուի ինձ՝ թէ յետոյ դարձան և եղեն չարք․ զի ոչ ինչ շահեցան յառաջին առաքինութենէն․ քանզի ոչ եթէ լուկիզքն միայն պիտոյ է պայծառագոյն, այլ և կատարածն ևս աւելի լուսաւորագոյն։

Այլ արդ աղէ ասա․ Ճարտարախօսն ո՞չ զվերջին բանսն փութայ առաւել յօրինել, զի զովեալ դրուատեալ մեկնիցի․ և սպասաւորն վերջին նուագաց կարի պատկառկայ, զի մի պարսաւ լիցի․ և նաւահատակն եթէ ոչ զվերջին մարտն առաքինագոյն ցուցանիցէ, ո՞չ ապաքէն ամենայն աշխատութիւնն անօգուտ է․ և նաւավարն եթէ յամենայն ծովուն զգուշանայցէ, և մօտ 'ի նաւահանգիստն խորիցէ զնաւն կամ բախիցէ, ո՞չ ապաքէն զառաջին վաստակն կորոյս․ և բժիշկն եթէ թեթևացուցանիցէ զցաւ հիւանդին, և յորժամ մօտ 'ի կատարեալ առողջութիւնն ածիցէ, յայնժամ զեղծցի, ո՞չ ապաքէն զամենայն ջանն կորոյս։ Նոյնպէս և որ զառաքինութեան կատարումն ընդ սկզբանն ոչ միաբանեն, եղծանեն և կորուսանեն զամենայն։ Այն և 'ի կառամարտիկսն, որք 'ի գլխոց ասպարիսացն պնդակազմ զերիվարսն արձակեն, և յետոյ մեղկիցին ինչ և ծուլանայցեն, ոչ պարգևացն հասանեն և ոչ 'ի տերանցն ճանաչին։

Լուիցուք զայս՝ որ ընչից ցանկացողք իցեմք․ զի մեծ անօրէնութիւն այն է, և «Արմատ, ասէ, ամենայն չարեաց արծաթսիրութիւն է»։ Լուիցուք որք կամիմք ևս

առաւել զմեծութիւնն սուտապատուցանել. լուիցուք և դադարեսցուք յագահութենէ, զի մի լուիցուք զոր նաքայն լուան։ Այժմ լուիցուք և զգուշասցուք, զի մի յայնժամ լսիցեմք և տանջիցիմք. այժմ լուիցուք երկիւղիւ, զի մի յայնժամ լուիցուք սաստիւ, «Ի բաց կացէք յինէն, ոչ երբէք ծանուցէի զձեզ». և ոչ յայնժամ, ասէ, մինչև մարգարէանայիցեն իսկ, և զդևս հանէիք։ Ի դէպ է, և այլ ինչ ակնարկել, թէ և յայնժամ չար վարս ունէին անգէն 'ի սկզբանն, և անարժանօք գործէին զօրութիւն շնորհքն։ Զի եթէ Տնտեսամաւ եցոյց ինչ գործ, որչափ ևս առաւել անարժանօքն, վասն նոցա՝ որ նոքօքն շահելոցն էին։ Զի եթէ նշանք և արուեստք չկարացին ապրեցուցանել 'ի պատժոց, որչափ ևս առաւել որ 'ի քահանայութեան պատուի իցէ, թէպէտ և 'ի վերինն իսկ պատիւ հասեալ իցէ, և 'ի ձեռնադրութեան զօրութիւն առցիցեն նմա շնորհքն, և զայլն ամենայն վասն նոցա որք վերակացութեան կարօտ եին, լուիցէ և նա, թէ ոչ երբէք ծանուցէի զքեզ, և ոչ յայնժամ մինչ շնորհքն քև գործ գործէին։

Տեսէք որչափ պարկեշտութեան վարուց խնդիրք են անդ. զիա՞րդ ինքն առանձին բաւական է տանել զմեզ յարքայութիւնն, և թէ չիցէ մօտ, մատնել 'ի կորուստ, թէպէտ և բիւր նշանս և սքանչելիս ցուցանիցեմք։ Եւ ինչ այնպէս ուրախ առնէ զԱ̃ծ՝ որպէս և վարք առաքինիք. թէ սիրէք զիս, ասէ. ոչ ասաց՝ թէ նշանս արասջիք. և դարձեալ՝ թէ զձեզ բարեկամս կոչեմ, ոչ զի զդևս հանիցէք, այլ զի զբանս իմ պահեսջիք. զի այն ա̃յ պարգևացն է, և այս ա̃յ պարգևացն և մերոյ փութոյ։ Փութասցուք լինել բարեկամք ա̃յ, զի մի կայցեմք ցանկ թշնամիք։ Զայս առնեմք և միշտ զսոյն յիշեցուցանեմք և մեզ և ձեզ, և աւելի ինչ ոչ լինի. վասն որոյ երկնչիմ և կամէի լռել, զի մի ևս քան զևս տանջանք մթերիցին մեզ. զի բազում անգամ լսելն և չառնելն՝ բարկացուցանէ զտէրն։ Այլ դարձեալ երկնչիմ 'ի միւսմէ տանջանացն, որ վասն լռութեան գայցեն 'ի վերայ, եթէ 'ի բանս սպասաւորութեանն կարգեալ՝ և լուռ լինիցիմ։

Եւ արդ զինչ արասցուք՝ զի տարիցիմք։ Սկիզբն ա-

րացուք առաքինութեան, մինչ դեռ ժամանակս 'ի ձեռս է. բաժանեսցուք մեզ զառաքինութիւնս, իբրեւ միակ զգործս հողագործութեանն. յայսմ ամսեան յաղթեսցուք բամբասանաց եւ թշնամանաց եւ զուր բարկութեան: Դիցուք անձանց օրինակ եւ ասասցուք՝ եթէ այս օր զայս ինչ ուղղեսցուք, եւ վաղիւն զայն. եւ 'ի միւսում ամսեան վասն ախտակալութեան խրատեսցուք զանձինս, եւ 'ի միւսումն վասն այլ ինչ առաքինութեան. եւ յորժամ 'ի գլուխ հանիցեմք զայն առաքինութիւնս, եւ ապա 'ի միւսն եւս եկեսցուք. զոր օրինակ աշակերտք յորժամ ուսանիցին ինչ, այնմ զգուշանան, եւ այլ եւս առնուն:

Այլ անտի եկեսցուք յընչիցն անփոյթութիւն. նախ կարծեսցուք զձեռս յագահութենէ, եւ ապա արասցուք ողորմութիւն: Մի վայրապար զամենայն ընդ միմեանս խառնեսցուք. Թէ ձեռօք՝ որով սպանանեմք, նախկին զոգցես եւ ողորմութիւնս առնիցեմք: Այլ յետ այնր յայլ առաքինութիւն, եւ յայնմանէ 'ի միւս զօրութիւն. եւ "Բանք յիմարութեան եւ խեղկատակութեան մի եւս անուանեսցին 'ի մեզ":

Եւ այժմ ուղղեսցուք. չեն պէտք թոշակի, եւ ոչ վաստակոց եւ ոչ քրտանց. կամելն միայն բաւական է, եւ ամենայն ինչ դիւրին վճարի. չեն ինչ պէտք 'ի հեռի ճանապարհ երթալ, եւ ոչ ընդ ծով համատարած հատանել անցանել. այլ փոյթ յանձին ունել եւ սանձս դնել լեզուի, եւ զթշնամանս եւ զվայրապար ցասումն, եւ զանպատշաճ ցանկութիւնս եւ զփափկութիւնս եւ զայլս այէս խորտակող յանձնախութիւնս, զընչից ցանկութիւնս, զսուտ երդնուլ, զստէպ երդնուլ 'ի բաց մերժեսցուք յանձանց մերոց: Եթէ այսպէս գործեսցուք զանձինս, եթէ զառաջին փուշն 'ի բաց խլեսցուք, եւ զերկնաւոր սերմն 'ի ներքս արկցուք, կարեմք հասանել խոստացելոց բարութեանցն: Եկեսցէ միակն եւ ամբարեսցէ զմեզ յիշտեմարանն, եւ վայելեսցուք 'ի բարութիւնսն. որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս. ամէն:

Ի ՔՍԱՆԵՐՈՐԴ ՀԻՆԳԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

. . . . . . . . . . . . . . . . .

զարմանաց ընդ գործ . . նահապետան գործեցան : «Սա-հակաւ, ասէ, կոչեսցի քեզ զաւակ», և մտաց սպանանել զորդին : Քաջ զի մի կարծիցէ թէ իբրև անյոյս ինչ լինել զայն առնէր, և վասն այնորիկ . . . մերժիցէ 'ի բաց, այլ զի ուսանի . . թէ . . և այն հաւատոց գործ էր, ասէր թէ այնմ հաւատայր, թէպէտ և կարծէր թէ այն ընդ այսմ ինչ կատարիցի, այլ ոչ ինչ կատարէր : «Քանզի ոչ եթէ մարդկեղէն խորհրդովք չափէր զԱյ զօրութիւնն, այլ 'ի հաւատոյն առնէր զամենայն . որով անկասկած իսկ ասէր՝ թէ և 'ի մեռելոց կարող է յարուցանել Ած . ուստի և յառակս ընկալաւ զնա, այսինքն յօրինակ խոյին . . . խոյին ապրեցաւ . որպէս զի խոյիւն իսկ . . . զնա . քանզի փոխանակ նորա սպանանէ խոյն . Այս ամենայն օրինակք էին . իսկ աստ որդին Այ է սպանեալ : Դու արդ տես քանի ինչ է մարդասիրութիւնն . քանզի մեծ շնորհք տայոց էին մարդկան, կամեցաւ ոչ շնորհօք առնել զայն, այլ իբրև պարտապան . կացմեաց նախ զայս . . զինչ որդի տայցէ փոխանակ իրաց Այ . այլ զի մի մեծ ինչ կարծիցի առնել զայն, զի զինչ որդին տայցէ Ած վասն մարդկան, ուր զի և արդ յառաջ քան զնա զնոյն արար . զի մի շնորհօք միայն կարծեսցի գործն, այլ ըստ պարտուց : Ոչ ի զոր մերժեցեալք, և զայն եւս նոցա շնորհել կամիմք . . զանէն ինչ . . . առաք և առաք տաւք . . . այնու պարծիմք . . իւն և ոչ տրովքն . և չասեմք եթէ զայս ինչ տուաք նմա, այլ թէ զայն ինչ առաք 'ի նմանէ . ուստի ասէ՝ և յառակս ընկալաւ զնա, այսինքն որպէս թէ յօրինակ . զոր օրինակ և խոյն իսկ օրինակ էր Սահակայ . կամ թէ որպիսի տիպս ինչ : «Քանզի խորհուրդ կատարեալ էր, կամ թէ և սպանաւ իսկ Սահակ ըստ իւրում յօժարութեանն, և վասն այնորիկ շնորհեաց զնա նահապետին : Տեսանես զի զոր ցանգ ասէի, և այժմ նոյն յայտ լինի : Յորժամ ընծայեցուցանեմք զմիտս կատարեալ, և ցուցանեմք թէ անփոյթ առնեմք զերկրաւոր իրաց, յայնժամ և երկրաւորքս գոյն . . . զմեզ կալցեալս ընդ նոսա միւս-

Տեսանես ամենայն ուրեք զի ոչ ըստ կարգի ինչ և ոչ ըստ բնութեան օրինաց շրջշրջին իրք, այլ ըստ ոչ ակն ունելոյ յանկարծակի լինի ամենայն ինչ յայտ. նոյնպէս և աստ ոչ ըստ ակնկալութեան ինչ լինի ամենայն։ Այլ քանզի 'ի վեր և 'ի խոնարհ զայն ևեթ ասէր եթէ պարտ է հաւատալ հանդերձելոցն յուսոյ, նմանագոյնս իսկ յուզեաց զայնչափ ձայնս հաւատոց, յայտ արարեալ եթէ ոչ այժմ ինչ, այլ 'ի բնէ և 'ի սկզբանէ ամենայն սքանչելի հաւատովք վճարէին, և ամենայն ուղղութիւնք նոցա գործէին։

« Հաւատովք, ասէ, Ռախաբ պոռնիկն ոչ կորեաւ ընդ անհաւատսն, որ ընկալաւ զլրտեսն խաղաղութեամբ »։ Նա ուրեմն կարի յոռութիւն է յորժամ և քան ըզպոռնիկն ես անհաւատ գտանիցիս. թէպէտ և նա զարանց օտարաց զբանս ևեթ լուաւ, և փաղփաղուկ հաւատոց, որով և փախչան 'ի գլուխ ել, զի 'ի բազմաց ինքն միայն ապրեցաւ։ Զասաց ընդ միտս, թող ընդ իմն բազումն լինիցիմ, զինչ լինիցի. չասաց թէ ... զոր օրինակ վարդապետս այր ախորժիցէ, և զգիրն ըստ տղայական բարբառոյն գրիցէ, չասեմ թէ չգիտէ. և յորժամ հարցանիցէ՝ եթէ ո՞ւր է այս նիշ գիր, գիտեա թէ չէ անտեղեակ, այլ զաշակերտն կամի յորդորել. նոյնպէս և Աստուած ոչ առ կարօտութեան ինչ կայր յաղօթս, այլ զքեզ կամէր յորդորել, զի միշտ հպատակ կայցես յաղօթս, և անդադար կրթութեամբ և բազում զուարթութեամբ արթուն կալ։ Ոչ զգիշերին աղօթելն միայն ասեմ, այլ և զցերեկն արթուն լինել յաղօթս. զի արթուն այնպիսին կոչի։ Վասնզի մարթ է զցայգ յաղօթս կալ և նիրհել մտօք. և զցերեկ յաղօթս չկալ և հսկել, յորժամ միտքն առ Աստուած կայցեն, յորժամ 'ի միտ առնուցու եթէ ընդ ում խօսիցի, և կամ ընդ ում բանք իցեն։ Յորժամ զմտաւ ածիցէ, եթէ հրեշտակք կան առաջի ահիւ և դողութեամբ, և ինքն մատուցեալ յորանջիցէ և քոչքոտիցի և ձկտիցի, որքան օգուտ ակն ունիցի յաղօթիցն։

Մեծ զէն են աղօթք, եթէ պատրաստ մտօք կացցէ յաղօթս. և զի ուսանիցիս եթէ որչափ զօրութիւնս ունի աղօթք, անամօթութեան և անիրաւութեան անմտագոյն մտաց յաղթեցին սաստիկ սաստկ պաղատանքն։

"Լուարուք, ասէ, զինչ ասաց դատաւորն անիրաւութեան",: Նա՛ և 'ի դանդաղանաց ևս հերքեցին աղօթքն. և զոր ինչ չարար բարեկամութիւնն, զայն արար ժտութիւն: "Եթէ ոչ վասն բարեկամութեանն, ասէ, տացէ նմա, այլ վասն ժտութեանն յարիցէ և տացէ նմա",: Նու-զանարժան կինն արժանի արար առնել անդ լրութիւն: "Ձէ բարիոք, ասէ, առնուլ զհաց մանկանց և արկա-նել շանց",. և նա առ այն զինչ. "Այո տէր, ասէ, և շունք կերակրին 'ի սեղանոյ մանկանց տեառն",:

Զգոյշ լերուք աղօթից. մեծ զէն են եթէ սրտի մը-տօք լինիցին, եթէ առանց մնապարծութեան, եթէ միա-միտ սրտիւ: Աղօթք զպատերազմունս մեղմեցին. զազգ մի ողջոյն և զանիրաւ ապրեցուցին և երախտաւոր եղեն. "Լուայ, ասէ, հեծութեան նոցա և իջի փրկել զնո-սա",: Իսկ փրկութեան են աղօթքն, արգել մեղաց, բժշկարան յանցանաց: Աղօթից պատկառ կայր այրեն լոկ միայնացեալ, և եղև հաճոյ:

Եթէ խոնարհութեամբ կացցեմք յաղօթս, եթէ զկուրծս ծեծիցեմք իբրև զմաքսաւորն, եթէ զնոյն բանս խօսիցիմք զոր նայն ասաց՝ եթէ հաշտեաց ընդ մեղա-ւորիս, ամենայնի հասանեմք: Եթէ մաքսաւորք չիցեմք; այլ այլ ինչ չար ևս քան զնորայն մեղս ունիմք. և զայն մի ասեր՝ եթէ սակաւ են յանցանք քո. 'ի նմին արմա-տոյ են իրքն: Որ օրինակ նոյնպէս ասի սպանողն մար-դասպան և որ զմանկունս սպանանիցէ, նոյնպէս և ա-գահն 'ի մեծին և 'ի փոքուն՝ ագահ է. և ոխակալու-թիւն՝ ոչ սակաւ, այլ և մեծ իսկ մեղք են. "Ճանա-պարհ ոխակալացն, ասէ, 'ի մահ",. և "Որ բարկանայ, ասէ, եղբօր իւրում զուր, պարտաւոր է, ասէ, 'ի գե-հենի",. և որ կոչէ զեղբայր իւր մորոս և անմիտ, և բա-զում և այլ ինչ:

Զի հաղորդիմք ևս անարժանութեամբ ահագին խորհրդոյն, նախանձիմք, բամբասեմք. բազումք 'ի մէնջ և արբենան բազում անգամ. և յայնպիսի գործոցն իւ-րաքանչիւր իսկ մի բաւական է հանել յարքայութե-նէն, թող թէ յորժամ ամենայնն 'ի մի վայր ժողովես-ցին. զինչ ինչ այնուհետև մխիթարութիւն կայցէ մեղ-ղչանաց: Բազում աղօթից պէտք լինիցին, բազում ժուժկալութեան, բազում պարապութեան, զի կարի-ցեմք հասանել խոստացելոց բարութեանցն:

Ուսցուք և մեք եթէ հաշտեաց ընդ մեղաւորս, մանաւանդ զի մի առնիցեմք և եթ, այլ զի և զնոյնն խոր- հիցիմք։ Նա եթէ այլ ոք կոչեսցէ զքեզ անուանս, մի բարկասցուք. քանզի լուաւ և նա, եթէ չեմ իբրև ըզ- մաքսաւորս զայս, և ոչ բարկացաւ. այլ 'ի խոր խոցե- ցաւ, զղջմամբ ընկալաւ զնախատինս. նա առաց զվէրն, և սա խնդրեաց զդեղն։ Ուսցուք և մեք, հաշտեաց ընդ մեղաւորիս. բայց թէ և այլ ոք կոչիցէ մեղաւոր, մի բարկասցուք։ Ապա եթէ մեք խօսիցիմք զանձանց բիւր չարիս, և յորժամ յայլոց լսիցեմք՝ դժկամակ լի- նիցիմք, չէ այնուհետև խոնարհութիւն, այլ ցոյցք և սնապարծութիւնք։

Զո՞յս ինչ առաւել իցէ զանձն մեղաւոր կոչել։ Այո. խոնարհութեան կարծիս առնումք. զարմանեան, գովեն զմեզ. և եթէ զնորին հակառակն առիցեմք զանձանց, արհամարհեսցիմք, որպէս զի և զայն փառաց վասն առ- նիցեմք։ Իսկ ո՞ր իցէ խոնարհութիւնն։ Յորժամ այլ ոք նախատիցէ, և յանձին ունիցիմք, հրաժարիցեմք 'ի մեղացն, տանիցիմք բամբասանաց։ Նա և այն չև ևս խոնարհութեան նշանակ է, այլ բարեբարութեան։ Սա առաւել մեք զանձինս կոչեմք մեղաւորս, անարժանս և պիղծս. և եթէ, ոք մի ինչ յայսցանէ նախատիցէ, դժա- րիմք, զայրանամք։ Տեսանես, չէ խոստովանութիւն, և ոչ բարեբարութիւն։ Կոչեցեր զանձնն այնպիսի, մի ցասնուր յորժամ յայլոց լսիցես, մի ընդոստանայցես. զի այնպէս և մեղքն թեթևասցին 'ի քէն. յորժամ այլք նախատիցեն՝ անձանց ծանրութիւն զնեն 'ի վե- րայ, բայց զքեզ 'ի զգաստութիւն ածեն։ Լո՛ւր զինչ ասէր երանելին Դաւիթ, յորժամ անիծանէր զնա Սե- մէի. «Թող տուք, ասէ, տէր հրամայեաց դմա, որպէս զի նայեսցի 'ի խոնարհութիւնս իմ, և հատուսցէ ինձ տէր բարեփոխանակ անիծից զորա այսր աւուր»։ Դու քեզէն մեծամեծ չարիս խօսիս, և եթէ ոչ զաւագաց արդարոցն գովութիւնս լսիցես, դաղանես, զայրանաս։ Տեսանես զի խաղ առնես զչխաղղյն։

Նա և զգովութիւնսն ինկ՝ այլոց գովութեանց ցան- կութեամբք 'ի բաց մերժեմք. զի ևս մեծամեծ գրուա- տեաց հասանիցեմք, զի ևս առաւել զարմանալի լինի- ցիմք. որպէս զի թէ չընդունիցիմք զգովութիւն և եթէ

ոչ եւս քան զեւս աճեցուցանեմք, վասն այնորիկ զայն այնպէս առնեմք, եւ ամենայն ինչ կարծեօք լինի, եւ ոչ ճշմարտութեամբ. վասն այնորիկ ամենայն ինչ ընդունայն է, ամենայն ինչ անպտուղ։ Աստ արդ աղաչեմ, զանէ յայսմ հետէ հրաժարել 'ի մօրէն չարեաց՝ 'ի սնապարծութենէ, եւ կեալ ըստ այ՟ կամացն։ Ոյր եւ հանդերձելոց բարութեանց հասանիցեմք 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, ընդ որում հօր միանգամայն եւ հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## Ի ՔՍԱՆԵՐՈՐԴ ՈՒԹԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

. . . . . . . . . . . . . . . . . .

ինչ կարծիս առնել նոցա յայնմանէ որ վերացաւն, եւ առաւել զարմանալի թուէր նոցա, բերէ մխիթարութիւն եւ սփոփութիւն։

«Շրջեցան, ասէ, լաշկամաշկօք եւ մորթովք այծենեօք, նեղեալք եւ տառապեալք եւ տարակուսեալք, զորս ոչ արժէ աշխարհս»։ Նոյնպէս զի եւ ոչ հանդերձ անգամ ունէին, անհնարին նեղութիւնք, ոչ քաղաք, ոչ տուն, ոչ իջավանք, այնպիսի ինչ որպէս եւ Քրիստոս ասէր՝ եթէ «Որդւոյ մարդոյ ոչ գոյ տեղի ուր զգլուխն դնիցէ»։ Ոչ ինչ ասիցեմ իջավանս. նա բնաւ եւ դադար իսկ ուրեք ոչ գոյր. թէպէտ եւ յանապատն երթեալ հասեալ, սակայն եւ անդ չունէին ինչ դադար։ Զի ոչ ասաց թէ յանապատին կային. այլ թէ եւ անդ փախստականք էին, եւ հալածականք շրջէին ոչ միայն 'ի շէն երկրէ, այլ եւ յանշէն անապատէ։ Յուշ առնէ նոցա զտեղեացն եւ զկրացն՝ որ անդ 'ի նոցանէ գործէին։ Ապա թէ ձեզ մեղադիր լինել կարիցեն . . . զոր հալածէին եւ խուճապէին եւ սովամահ ջանային առնել. քանզի եւ նոքա 'ի ժամանակի անդ կարօտեալք էին։ Իսկ լաշկամաշկօքն շրջել զինչ իցէ։ Յանապատի մոլորեալք եւ 'ի լերինս եւ 'ի այրս եւ 'ի ծակս երկրի։ Իբրեւ զփախըստականս եւ զհալածականս. որպէս եթէ 'ի չարիս ինչ ըմբռնեալք եւ չէին արժանի եւ ոչ զարեւ անգամ տեսանել, նա եւ ոչ յանապատին գտանէին ամուրս ապաստանի, այլ ցանգ փախչել, միշտ ընդ փապարս ան-

կանել, և կենդանւոյն յերկրի ծածկել զանձինս. հա-
նապազ յերկիւղի, հանապազ 'ի կասկածանս...

Այլ զինչ վարձք իցեն ընդ այնպիսի վաստակոց, զինչ հատուցումն... չև ևս, ասէ, ընկալան, այլ տակաւին սպասեն. և այնպէս 'ի նոյն նեղութեանն վախճանեցան, և չև ևս ընկալան. որ այնչափ յառաջագոյն քան զաւուրս ժամանակս յաղթեցին, չև ևս ընկալան ինչ. և դուք որ դեռ տակաւին 'ի պատերազմի էք, որդէն վհատիցէք. Չեղեն իսկ ածէք զմտաւ ուչափ ժամանակս նստեալ Աբրահամ և Պաւղոս առաքեալ սպասեն եթէ երբ դուք կատարեսջիք, և կարիցեն առնուլ վարձս: Եթէ ոչ մեք ընդ երթայցեմք, չառնուն ինչ. քանզի յառաջագոյն ասաց նոցա հայրն չտալ ինչ: Ո՜ր օրինակ հայր ոք գթած որդւոց ժրաց որոց զգործ ինչ վճարեալ իցեն, չասնա յանձն առնել հացի ժամ եթէ ոչ եղբարքն ևս գայցեն. և դուք վհատիք զի չև ևս առէք վարձս: Ո՜ինչ գործիցէ Աբել որ յառաջ քան զամենեսին յաղթեաց, և չև ևս առ զպսակն. զինչ Նոյ, զինչ այլքն ամենեքին որք յառաջին ժամանակս առաքինեցան, և քեզ և այլոց որ յետ քոյ լինելոց են՝ սպասեն: Տեսանես զի մեք զրկեմք զնոսա: Աստ մեր, ասէ, լաւ ինչ խորհեալ էր Աստուծոյ, զի մի՛ առանց մեր կատարեսցին. զի մի համարեսցին եթէ զմեզ զրկիցեն նախ քան զմեզն պսակելովն, մի ժամանակ երևեց... համարս պարտիմք Աստուծոյ: Տեսանես զի և ատեանն Քրիստոսի է, և համարս նմին պարտի, ասեն, այն որ իբրև Աստուծոյ: Այլ յայտ է թէ, օրինակի վասն է ամենայն խոնարհութիւն նորա, և ոչ եթէ իբրև վարձուց ինչ հատուցումն շնորհել նմա՝ ունի 'ի վեր քան զամենայն անուն. այլ զի նովաւ մեզ շնորհիցի: Այլ արդ ուր այսպիսի օրինակս առաջի կայ, չպարտիմք, ասէ, հեղգալ: Ա՜ս և եթէ չէր ինչ հատուցումն, բաւական էր հաւանեցուցանել զամենայն ինչ յանձին կրել. Թող եթէ ուր այսչափ հատուցմունք առաջի կան, ոչ սակաւք ինչ, այլ մեծամեծք և անճառք: Այնպէս զի և մեք յորժամ այնպիսի ինչ չարչարանս կրիցեմք, նախ քան զառաքելոյն զմտաւ ածցուք զՔրիստոս. ընդէ՞ր. զի ամենայն կեանք նորա ըստ մարմնաւորութեանն լի էին Թշնամանօք: Քանզի մեծամե-

լեկան կոչէր և մոլորեցուցիչ և կախարդ. քանզի եր-
բեմն ասէին Հրէայքն՝ եթէ "Ոչ է այրն այն բարիոք, այլ մոլորեցուցանէ զժողովուրդն": Այլ դարձեալ՝ ե-
թէ "Մոլորեցուցիչն այն ասէր մինչ կենդանին էր, ե-
թէ յետ երից աւուրց յառնեմ": Այլ զի 'ի կախար-
դութիւն ևս բամբասէին զնա և ասէին՝ թէ բէեղզե-
բուղաւ հանէ դա զդևս. և զի մոլեկան և դիւահար կո-
չէին. "Ոչ բարւոք, ասեն, ասեմք՝ եթէ դև գոյ 'ի դմա և մոլեգնէ": Զայսպիսի ապախտաւորութիւն հաստա-
ցանէին, և նա երախտիս առնէր նոցա, զքաջնչելիս գոր-
ծէր, զոյ գործս ցուցանէր: Եթէ չէր ինչ արարեալ՝ և զայնպիսի բանս լսէր 'ի նոցանէ, ոչ ինչ այնպէս զար-
մանք էին: Իսկ եթէ զճշմարտութիւն ուսուցանէր և լսէր եթէ մոլորեցուցիչ է, և զդևս հանէր և ասէին եթէ դիւահար է, և զամենայն զհակառակն կործա-
նէր և ասէին եթէ կախարդ է, յայտ է եթէ ընդ բա-
րերարին մարտնչէին: Զայսպիսի բամբասանս մեղա-
խօսէին զնմանէն:

Արդ եթէ կամիցիս և զաղարտանան ևս և զհեգնու-
թիւնսն ուսանել, որք կարի կսկծեցուցանեն զմիտս մեր, լուր նախ անդստին իսկ յարգանդէն. "Ոչ, ասեն, սա է որդի հիւսանն զորոյ մեք գիտեմք զհայր և զմայր. ո՞չ ապաքէն եղբարք սորա ամենեքեան առ մեզ են": Այս և քաղաքաւն ևս աղարտէին. 'ի Նազարեթէ է ա-
սէին. և դարձեալ. "Հարց և տես զի 'ի Գալիլեէ մարգարէ ոչ յառնէ". և այնչափ աղարտէր և համբե-
րէր ամենայնի: Այլ դարձեալ ասէին. "Ոչ գիրք ասեն եթէ 'ի Բեթղահեմ գեղջէ գալոց է Քրիստոս": Այլ միւս և զհեգնութիւնս ևս ուսանել. եկեալ, ասէ, կային շուրջ զխաչիւն, երկիր պագանէին նմա, հարկանէին և կոփէին, և ասէին. "Արա մեզ ո՞ եհար զքեզ". և քա-
ցախ մատուցանէին և ասէին. "Եթէ որդի ես Այ, էջ 'ի խաչէդ". և ծառայ քահանայապետին ապտակ ած 'ի ծնօտն. և նա ասէր. "Եթէ չար ինչ խօսեցայ՝ վկա-
յեա վասն չարին, և եթէ բարի՝ ընդէ՞ր հարկանես զիս": Այլ խաղ առնէին զնա, քղամիդ զգեցուցանէին, ընդ երեսս թքանէին. և այնպէս հանապազ փորձու-
թիւնս մատուցանէին նմա... Ո՞չ հանապազ իսկ փա-
խըստական լինէր, մերթ 'ի Գալիլեա, մերթ 'ի Հրէաս-

տան. ոչ անգամ մի իսկ 'ի խանձարրոցն բազում փոր- ձութիւնք 'ի վերայ կուտէին. ոչ մինչ մանուկ իսկ մա- տաղ էր, առեալ մօրն փախստական լինէր յԵգիպտոս։ Վասն այսր ամենայնի ասէ զայն՝ եթէ "Հայեցարուք յառաջնորդն հաւատոց և 'ի կատարիչն Յիսուս. որ փո- խանակ ուրախութեանն որ նմա առաջի կայր, համբեր խաչին, արհամարհեաց զամօթ, նստաւ ընդ աջմէ այ"։

Այսուհետև ընդ նա հայեցեալք և ընդ նորին աշա- կերտսն, ընթերցցուք և զՊաւղոսին և լուիցուք 'ի նմա- նէ եթէ "Համբերութեամբ բազմաւ, 'ի նեղութիւնս, 'ի վիշտս, 'ի հալածանս, յանձկութիւնս, 'ի գանս, 'ի բանդս". և դարձեալ եթէ "մինչև ցայժմ և քաղց- նումք և ծարաւեմք և մերկանամք և կափահարիմք և ան- հանգիստ լինիմք և աշխատիմք և գործեմք ձեռօք մե- րովք. հայհոյեալք օրհնեմք, հալածեալք յանձն առ- նումք, բամբասեալք աղաչեմք"։ Եւ արդ ո՞վ ոք զանէ տակաւ ինչ մասն զայսպիսի վիշտս վշտացաւ։ Իբրև ըղ- մոլարս, ասէ, և զանարգս, իբրու թէ չունիցիմք ինչ և զամենայն ինչ ունիցիմք. "քառասուն, ասէ, միով պա- կաս արբի 'ի Հրէից. երիցս ձաղկեցայ. միանգամ քար- կոծ եղէ. զցայգ և զցերեկ, ասէ, յանդունդս տառա- պեցայ, 'ի ճանապարհս բազում անգամ, 'ի նեղութիւնս, 'ի վիշտս, 'ի քաղց և 'ի ծարաւ"։ Եւ զի այն էին այ կամք, լուր զինչ ասէր զանձնէն՝ եթէ "Վասն այսո- րիկ աղաչեցի զտէր, և ասէ ցիս. շատ են քեզ շնորհք իմ. զի զօրութիւն իմ 'ի տկարութեան կատարի։ Վասն որոյ, ասէ, հաճեալ եմ ընդ տկարութիւնս, ընդ նե- ղութիւնս, ընդ վիշտս, ընդ անձկութիւնս, ընդ գանս, ընդ բանդս. զի հովանի լիցի 'ի վերայ իմ զօրութիւնն Քրիստոսի"։ Եւ Քրիստոսի իսկ գլխովին լուր՝ եթէ "յաշխարհի նեղութիւն ունիցիք"։

"Արդ աղէ ածէք զմտաւ, որ այնչափ համբեր 'ի մեղաւորաց վասն ընդ նմա հակառակութեանն. զի մի աշխատ լինիցիք անձամբք ձերովք և լքանիցիք"։ Եթէ ընկերացն չարչարանքն յարդարիցեն զմեզ, տէրունականն որպիսի ինչ չտայցեն մխիթարութիւն, զինչ ինչ չառ- նիցեն մեզ. զի զամենայն հակառակութիւնն ասելով՝ յայտ արար և զայնպիսիսն ևս յաւելեալ. այսինքն զապ- տակսն, զծաղրն, զթշնամանս, զնախատինսն, զձաղանս-

սրն • զայս ամենայն՝ հակառակութիւնն ատելով յայտ արար • և ոչ զայս միայն, այլ և զվարուցն ամենայն ըղկարգս և զվարդապետութեանն . . . Մեծ իսկ են և արդարև մեծ մխիթարութիւն՝ Քրիստոսի չարչարանքն և առաքելոցն : Որպէս ազնուագոյն գիտէր զառաքինութեան ճանապարհն որպէս զի և ինքն յանձին կալաւ ընդ նոյնն գնալ • այնպէս գիտէր զնեղութիւնն օգտակար մեզ, և պատճառս հանգստեան լինելոյ, մինչև ասել եթէ "Որ ոչ առնուցու զխաչ իւր և եկեսցէ զկնի իմ, չէ ինձ արժանի,, : Եթէ աշակերտ ես, ասէ, վարդապետին նմանող լեր • քանզի այն է գործ աշակերտի : Իսկ եթէ նա ընդ նեղութիւնն եկն, և դու ընդ հանգստեան ճանապարհն կամիս երթալ, ոչ ես ընդ նոյն ճանապարհն ընդ որ նայն գնաց գնաս, այլ ընդ այլ : Զիարդ երթիցես 'ի հետ որ ոչ երթաս զհետ • զիարդ լինիցիս աշակերտ . . .

Զայն ամենայն ածցուք զմտաւ, սիրելիք • զայն ամենայն կալցուք յուշի, և չվհատիմք այնուհետև և չըքանիմք, թէպէտ և զրկիցիմք և յափշտակիցիմք և բազմապատիկ վիշտս մշտանայցեմք : Յերկնից լիցի մեզ քաջութիւն և յերկնից առաքինութիւնս, և ամենայն ինչ դիւրաւ վճարի մեզ : Ընդր գործս ինչ բարիս ամբարել, և մի աստ իմիք ամենել փոյթ, քանզի սուտ է այս ամենայն և երազ զինչ և իցէ՝ առ յաւալեօքն՝ որում ակն ունիմք • և չիք ինչ որ բնութեամբ է և ոչ ժամանակաւ • եթէ բարիք իցեն՝ բարիք չեն, և եթէ կարիք՝ ոչ ինչ այնպէս անհնարինք : Եւ եթէ կամիս համեմատեսցուք զայս վիշտս ընդ այնց տանջանաց • զինչ ինչ զուգակիան անշէջ հրոյն կայցէ, և կամ զինչ կշիռ անվախճանելի որդանն, և կամ զինչ ըզ հաւասարութիւն կրճելոյ ատամանցն՝ որ անդ լինիցի՝ կայ է ասել, հալածանացն, արտաքին խաւարին, բարկութեանն, նեղութեանն, անձկութեանն • կամ զինչ համեմատ ժամանակացն կայցէ • և եթէ բիւր ամս ասիցես, զինչ իցէ առ այնչափ անչափ և անվախճան յաւիտեանս, ոչ ապաքէն որչափ կաթ մի ջրոյն առ ծովն անչափ :

Իսկ բարութեանցն զինչ համեմատ կայցէ • այլ այն կարի իսկ մեծ առաւելութիւնն, զոր ակն ոչ ետես և ականջ ոչ լուաւ և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ • և այն

յանչափ և յանպակաս յաւիտեանսն ։ Այլ արդ վասն այնր չէ՞ր պարտ բիւրապատիկ պատառ պատառ կոտորել, ցանկ սպանանել, այրել, բազում մահուց համբերել, և զամենայն զինչ և իցեն չարչարանք կրել և թանիւք և արգելանօք. և եթէ կենդանւոյն հրով այրել իսկ հասանէր, չէ՞ր պարտ այրել վասն հասանելոյ խոստացելոց բարութեանցն ։ Այլ զի խօսեցիմ, և առանձեալ համարիցիմ, ընդ այնպիսի արկոյ՝ որք ոչ զինչ արհամարհել յանձն առնուն. այնպէս համարին թէ իբրև զանմահս ինչ ունիցին. և եթէ աւկաւ ինչ 'ի բազմաց տայցեն, այնպէս հաշուին՝ եթէ զամենայն վճարեցին ։ Զեն այն տուրք, չէ ողորմածութիւն. տուրք այն էին, որպէս կինն այրի արկ 'ի գանձանակն. գէթ զաւելորդն տուր, և զքաւականն կալ, և մի զաւելորդն. այլ չիք ոք՝ որ զանեա զաւելորդն տայցէ ։ Մինչ ծառայս բազումս ունիցիս և հանդերձս կերպասեղէն, զաւելորդն ունիս. և եթէ ոչ զկարևորսն և զպիտոյսն, և առանց որոց չմարթիցեմք կալ, աւելորդք են այն ամենայն, և արտաքոյ քան զպէտսն կան ընդ վայր ։

Այլ եթէ զինչ իցեն՝ առանց որոց չկարիցեմք կալ, թէ կամիք տեսցուք ։ Եթէ երկուս ծառայս ունիցիմք, կարեմք կալ. ուր զի ոմանք առանց ծառայից իսկ կեան, և մեք որպիսի ինչ պատասխանի ունիցիմք տալ, թէ և զերկուս և զերիս բաւական չհամարիցիմք ։ Մարթ իմք և յաղքատայս տունս կեալ. և երկու և երեք տուն բաւական են մեզ. մի թէ չիցե՞ն բազումք՝ որ կնաւ և որդւովք 'ի մի տուն կեան ։ Ունիցիս երկուս և երիս ծառայս ։ Զինչ մարթիցի, ասեն, կնոջ ազատի երկու և երեք ծառայիւք միայն արտաքս ելանել ։ Այլ այն իսկ է ամօթանք՝ զի բազմօք ելանիցէ. թերևս ծաղր ևս առնիցէք զոր լսէքս. հաւատացէք, զի այն իսկ կարի ամօթ է. իբրև զոչխարավաճառս և զմարգագետս, զայն իմն մեծարանս համարիք, բազմօքն արտաքս ելանել. հպարտութիւն է այն և մեծապարծութիւն. և միւսն զզուանութիւն և պարկեշտութիւն ։

Ազատակինն ոչ բազում սպասաւորօք երևելի առնել պարտին, այլ ցածութիւնն ։ Զինչ քաղցրութիւն իցէ բազում սպասաւորս առնել. չէ ինչ այն օգուտ գործ. որ ինչ օգուտ գործ չիցէ, և ոչ ազատութիւն ինչ

ցուցանիցէ ։ Այս յորժամ զպակասին բաւական համարիցի, յայնժամ է ստոյգ ազատ. իսկ յորժամ բաղձանաց կարօտանայցէ, աղախին է, և ևս չար քան զգերդաստանիկան ։ Արդ աղէ ասա, Հրեշտակքն ոչ ապաքէն միայն շրջին ընդ տիեզերս, և չեն կարօտ սպասաւորաց. միթէ վասն այնորիկ 'ի վայր ինչ իցեն քան զմեզ, որք կարօտանամքս, նոքա որք չկարօտանանն. և եթէ չկարօտանալն սպասաւորաց հրեշտակական վարք են, ո՞ մօտ իցէ 'ի հրեշտակաց կենաց, որ բազմօք կարօտ իցէ՝ թէ որ զպակասումն բաւական համարիցի ։ Ոչ է այն ամօթ. այլ ամօթ այն է՝ եթէ յոռութիւնս ինչ ոք գործիցէ ։

Աղէ ասա, ո՞ պարծուցանէ զգաւեհիկս, որ բազում սպասաւորս ունիցի, եթէ որ սակաւս. որ զպակասումն ունիցի՝ 'ի նոա ոչ այնչափ հռչակս հարկանի ։ Տեսանե՞ս զի այն է ամօթանաց, որ բազում սպասաւորս ունի ընդ իւր ։ Ո՞ չատ տայ հայել ընդ ինքն կաձառորդացն, որ զանձինս զհանդերձոն ազանի, եթէ որ զզգեցն հանդերձիկն և զաւանց պաձուձանաց. ո՞ պարծեալ մեծապէս առնէ զբազումս, որ փառաւորական և լկտեաւ և ջորեօք կրի, և զոսկեհուռ նուարտանսն զբաստեանսն [1] տարածանէ, եթէ որ համեստ և պարկեշտութեամբն գնայ ։ Ո՛ այնպիսին թէպէտ և տեսանիցեմք, մեծապէս ինչ չառնեմք. և զմիւսն ոչ միայն տեսանել ջանամք բազումք, այլ և հարցանեմն՝ թէ ո՛վ իցէ և ուստի ։ Այս զայն թողլ տալ ասել՝ թէ որչափ նախանձ անտի ծնանի ։

Արդ աղէ ասա. ո՞ր յոռութիւն իցէ, անկանե՞լ յակն եթէ չանկանել. ո՞ր ամօթ չար իցէ, յորժամ ամենեքին ընդ նմա հայիցին, եթէ յորժամ և ոչ ոք. յորժամ 'ի քնին անկանիցին վասն նորա, եթէ յորժամ չառնիցեն ինչ փոյթ ։ Տեսանե՞ս, զի ոչ վասն ամօթոյ, այլ վասն սնապարծութեան առնեմք զամենայն ։ Ապա սակայն քանզի յայնմանէ չէ հնար մեզ 'ի բաց կալ, շատ է այն առ այժմ, զի ուսայցէք՝ եթէ այն չէ ինչ ամօթ, այլ մեղքն են ամօթ, զոր չհամարիցի ոք ամօթ՝ եթէ իցէ բնաւ, այլ զամենայն ինչ ամօթ համարին և ոչ զմեղսն ։

1 Ա. յօրինակս երկաթագրին. միւսն ըստ բոլորագրացն ։

Հանդերձք այնչափ ինչ լինիցին, որչափ զպէտսն վճա-
րիցեն, և մի աւելորդք։ Բայց զի մի կարի յանձուկ ար-
կանիցեմք զձեզ, զայն ևեթ պատուիրեմ, մի յաւելուլ
ինչ զարդ առնել, և մի ՚ի բարակ կտաւոյ. և զայն ոչ
եթէ ես ինչ ասեմ, և զի ոչ իմ են բանքս, լուր երա-
նելոյն Պաւղոսի, որ պատուիրէ կանանց զարդարել զան-
ձինս «Ո՛չ ՚ի հիւսս ոսկեմանս ընդելուզեալս մարգար-
տով, և ՚ի հանդերձս պաճուճեալս»։ Իսկ որպիսի՞ հան-
դերձս կամիցիս, ո՛վ Պաւղոս։ Իսկ թերևս ասիցեն ո-
մանք, եթէ ոսկեհուռքն միայն պաճուճեալք իցեն, և
կերպասեղէնքն չիցեն պաճուճեալք։ Լո՛ւր ապա ասա
Պաւղոս, որպիսի՞ հանդերձս կամիցիս։ «Ունիմք, ասէ,
հանդերձս և կերակուրս, և այնու շատասցուք»։ այն-
չափ ինչ լիցին հանդերձք, որչափ զգեցուցանել միայն.
քանզի վասն այնորիկ ետ մեզ ա̃ծ զհանդերձսն զի զմ-
երկութիւնն զգեցուցանիցեմք. և զայն զինչ և իցէ
հանդերձ կարէ վճարել, սակաւ ինչ գնոց գնել։

Թերևս ծաղր առնիցէք, կանայք, որ համակ ՚ի կեր-
պաս ևեթ լինիք. և արդարև իսկ ծաղու զրոյցք են,
եթէ զինչ Պաւղոս հրամայեաց, և զինչ դուք գործէք։
Ոչ միայն ընդ կանայս են բանքս իմ, այլ և ընդ արս։
Զայն ամենայն զոր և ունիք աւելորդք են. բայց միայն
աղքատքն չունին աւելորդս։ Այլ թերևս և նոքա առ
վտանգի չունիցին աւելորդս. որպէս զի թէ հնար ինչ
էր՝ և ոչ նոքա յայնմանէ հեռանային. բայց սակայն ե-
թէ բարբանօք և եթէ ճշմարտութեամբ, նոքա չունին
աւելորդս։

Այնպիսի ինչ հանդերձ զգեցցուք, որ զպէտսն ևեթ
վճարեն։ Զինչ օգուտ իցէ բազում ոսկի յանձին
կրել. յաշխարհաւանդան վայելէ այնպիսի հանդերձս,
՚ի պոռնկացն և ՚ի գուսանաց վասն. բազից են պաճու-
ճանք՝ որ յակն ևեթ կամին անկանել։ Այնպիսեացն պա-
ճուճեցի՝ որ ՚ի բոզանոցան ելանեն, որ ՚ի վարձկանսն
ելանիցէ, և ՚ի կաքաւսն մտաբերիցէ. քանզի զամենե-
սին կամի առ ինքն ամփոփել, ՚ի պատկերս արկանել, զաւշ
և զուրուշ մտել։

Իսկ կնոջ որոյ զա̃ծպաշտութիւն յանձն առեալ իցէ,
մի այնպիսի զարդուք պճնել, այլ այլազգ։ Ունիս և զա-
բազում և գեղեցիկ զարդ քան զնորայն. ունիս և զգ.

թէատրոն լաւ քան զնորայն, անդր զարդարեաց, անդր անկիր յանկն, զայն զարդ պաճուճեա զանձամբ։ Ո՞ւր իցէ և կամ ուպիսի՞ ինչ քո թատրոն։ Նշկինք, հրեշտակացն գունդքն, հրեշտակապետացն դրունք· չասեմ զայս առ կուսանսն միայն, այլ և առ աշխարհական կանայս որ 'ի Քրիստոս խցեն հաւատացեալ· յայն թատր զարդարեցին, ընդ այն հանդէս ելանիցեն, անդ նազիցին, անդ յօրանայցեն։ Զայն բանս խօսիցին՝ զոր այնպիսի տեսողք ախորժիցեն, այնպիսի քաղաքանենակս արկանիցեն, գինդս, մատանիս, և կշտամբանակս, որ զնոսա ուրախ առնիցեն։

Որդ ապէ ասա, եթէ վարձակ ոք 'ի բաց հանիցէ յանձնէ զոսկին, զհանդերձս պաճուճանացն, զծաղրն թողուցու, զպչրանսն, զհպտանս, զաչացն զմեղմեղանս, զքանոն պատրելիս, զխաղալն, զկատակելն, և հանդերձ գձուձս ագանիցի և զամենայն պաճուճանս 'ի բաց մերկանայցէ, և մատուցեալ զամպարշտութեան բանս խօսիցի, և վասն ցածութեան ձայնիցէ, և ոչ ինչ 'ի խեղկատակութեանցն խօսիցի, ո՞չ ամենեքեան յանիցեն և 'ի բաց գնասցեն, և լինիցի զրաւ թատերն· կամ զնա խսկ 'ի բաց հրամայիցեն հանել, զի ոչ մարթաց զմիտս զուարճելոյն հանել զհանդիսատեսացն· և օտարոտի համարիցին 'ի թատերյն օրինաց, 'ի սատանայական ընթացանացն, 'ի դիւատուր խաղոյն։ Այնպէս և դու եթէ զնոյն պաճուճանան պաճուճեսցիս, և յերկնից 'ի թատրն մտանիցես, հանիցեն 'ի բաց զքեզ հանդիսատեսքն· քանզի անդ չեն պէտք ոսկեհուռ հանդերձից, ձաճկաւորն դիպակաց, այլ այլոց ինչ հանդերձից։ Արդ ո՞րպիսեա՞ց· զո՞րս մարգարէն ասէ, եթէ "'ի քղանցաւորս յոսկեհուռս զարդարեալ և պաճուճեալ"։ Ոչ զմարմինն համակել 'ի սպիտակս, այլ զոգին զարդարել 'ի սպիտակս· քանզի նա է այնր մարտի պատերազմող նահատակ մարտուցեալ 'ի մարտ։ "Ամենայն փառք դըստեր թագաւորի, ասէ, 'ի ներքոյ"· այնպիսի զարդուք զարդարեաց, այնպիսի քաղաքանենակս արկանիցես ընդ պարանոցդ, այնպիսի պախճաւանդօք և լանջազերդ կամարօք զապեալ լինիցիս անդանկապամ, և այնպէս յամենայն չարեաց զերծուցանիցես զանձն, զայլս 'ի հոգւոց և զքեզ 'ի կապկածանաց։

Նա և առնն այնպէս իսկ ընդ միտ մտանիցես, յորժամ ոչ ինչ կարի իմիք թախանձիցես: Քանզի առաւելութիւն իսկ է ամենայն արանց ընդդատանալ ընդ այն, յորժամ կինն զանպատեհ[1] ինչ համդերձս խնդրիցէ. և յորժամ գիտէ, թէ ոչ ինչ կարի պահանջիցէ, համբերէ, յանկչի. գիտէ՝ թէ ըստ նմա է, և չափով խօսի և չափով գնայ: Այլ յորժամ տեսանիցէ այլն, եթէ ոչ ինչ կարի ծանր լինի նմա իւիք, և ոչ այնչափ նայի ընդ տուրս և ընդ բերս, թէպէտ և կարի ոք մեծամեծ իցէ, կարէ կինն ընդ միտ մտանել. և ոչ յայնժամ մինչ ոսկւոյն զարդարիցի. և չառնիցէ և այնուհետև իբրու զաղախին: Քանզի ուստի առնու ոք շատ, հարկ է նմա այնուհետև ՚ի հնազանդութիւնն մտանել. և եթէ ոչ զոք թախանձիցէ, ոչ այնչափ պարտական գտանի. այլ գիտէ՝ թէ վասն ա̃յ երկիւղին հնազանդ լինիցի նմա, և ոչ վասն նորա ինչ տրոց: Իսկ յորժամ գեր ՚ի վերոյ իւմն լինիցի, քանզի գիտէ թէ շատ ես, և բազում պատիւ պահանջէ. իսկ յորժամ սակաւ ինչ տայցէ, չվարկանի, չնախատէ, և ոչ ինքն բռնադատի վասն քո զրկել զանձն:

Ոչ ինչ քան զայն անմտութի̃ւն կայցէ, յորժամ նստեալ ոսկի կրիցէ՝ զի զանձամբ արկանիցէ, ՚ի բաղանիս տանիցի, ՚ի հրապարակս հանիցէ. այլ թերևս ՚ի բաղանիսն և ՚ի հրապարակսն ոչ այնչափ ինչ պարսաւանք իցեն. բայց ոսկւով զարդարել և յեկեղեցի երթալ, ամենևին իսկ ծաղու գործ է: Ընդէ՞ր բնաւ մտանիցէ այսր որ ոսկւոյն զարդարեալ իցէ. զի՞նչ կամիցի լսել, ո՞չ առաքելն զայն՝ եթէ "Զարդարել զանձինս մի ՚ի հիւսս ոսկեղէնս ընդելուզեալս մարգարտով, և մի ՚ի հանդերձս պաճուճեալս": Հիմ մտանիցես այսր, ով կին դու. միթէ ընդ հակառակս ելեալ ՚ի կաքաւ ինչ եկեալ կայցես ընդ Պաւղոսի, և յայտ առնիցես՝ թէպէտ և նա բազում ասիցէ, և դու բազում անգամ լսես և չդառնաս. եթէ զմեզ զվարդապետս խաղ ինչ առնել կամիցիս և յանդիմանել, թէ զոր խօսիմքս ՚ի զուր ինչ խօսիցիմք:

Նղէ ասա, եթէ ոք այր հեթանոս անհաւատ լսէր

1 [illegible]

զընթերցուած տեղւոյն այսորիկ՝ ուր երանելին Պաւղոս հրամայիցէ չզարդարել կանանց, և ունէր կին հաւատացեալ, և տեսանէր եթէ կարի քաջ գայ զզարդու, զոսկւովք մատանեօք, և զմարգարտեայ գնդովք, զապարանջանօք, զքայռամանեկօք, զինչ համարէր զպատուէրն Պաւղոսի՝ որ ասէն, եթէ "Մ՛ի 'ի հիւսս ոսկեմանս ընդելուզեալս մարգարտով, և մի՛ 'ի հանդերձս պաճուճեալս զարդարել զանձինս": Զասէր արդեօք ընդ միտ յորժամ տեսանէր զկինն 'ի սենեկին պաճուճեալ, զարդարեալ, եթէ զի՛ այնչափ յամիցէ 'ի ներքս, զինչ գործիցէ, ընդէ՛ր զայնչափ ոսկի զարդ դնիցէ, յո՞ երթայ, միթէ յեկեղեցի. ընդէ՛ր. զի երթիցէ՝ լուիցէ "Մ՛ի 'ի հիւսս ոսկեմանս ընդելուզեալս մարգարտով, և մի 'ի հանդերձս պաճուճեալս". ո՞չ ապաքէն ծաղր առնիցէ, քրքիջ բառնայցէ, խաղ ինչ և խաբէութիւն ըղմեր ոճս համարիցի:

Վասն որոյ աղաչեմ զոսկին 'ի բաց թողուցուք որք գեհենիկքն իցեն և զվայրօք յածին, որք 'ի բոզանոցն կայցեն և 'ի վարձակացն համարի, և կամ 'ի վաճառանս և 'ի խանութսն ընդ գին[1] ելանիցեն և զպէտս ինչ վճարիցեն: Մեզ ո՞չ պատկերն մի՛ այնպիսի ինչ զարդուք զարդարել. ազատականն ազատութեամբն զարդարեսցի. զանպերճն զանհպարտն զանպարծն զարդ ունիցի յանձին. և եթէ փառաց ինչ մարդկան ցանկանայցէ, այնպէս վաղ հասանէ: Նոյն կնոջ առն մեծատան ոչ յայնժամ զարմանամք՝ յորժամ ոսկի զարդ դնիցէ և կերպաս ագանիցի. զի այն ամենայն՝ և այլոց կանանց մեծատանց հասարակաց է. այլ յորժամ լոկ հանդերձս առուխս ագանիցի, ընդ այն զարմանան ամենեքեան, զայն գովեն. զի այնպիսի հանդերձից բազումս ունի զարգակիցս. եթէ զմիոջն ելանիցէ, միւսն յաղթէ. և եթէ զամենեքումբք ելանիցէ, սակայն թագաւորին կնոջ յաղթէ. բայց միւսոյն ամենեցուն յաղթէ, և թագաւորին իսկ կնոջ. զի նա միայն 'ի մեծատանց՝ ախորժեաց զաղքատացն հանդերձս. որպէս զի թէ և փառաց ցանկանայցեմք, անտի ծնանին մեծամեծ փառք:

Իսկ զայս ոչ առ այրիսն միայն ասեմ և առ մեծա-

1 Միւս երկաթագիրն ընդ գնոցն ելանիցեն և զպէտս վճարիցեն ինչ:

տուն կամայս, քանզի այնպէս թուի՝ եթէ այրեացն մի-այն հարկ ինչ իցէ զայն առնել, այլ և առնականաց : Այլ չկարեմ, ասէ, համբեր լինել առնն, եթէ 'ի գձուձս լինիցիմ : Եւ եթէ առնն կամիս համբեր լինել, այլ բազ-մաց. և զաղքատացն կանանց զսիրտ հանել, հաշել և հառաչել, այրել, խորովել, և ևս չար քան զաղքատու-թիւնն հատուցանել 'ի վերայ : Որչափ հայհոյութիւնք վասն քո լինիցին : Ո՛ր լեզի, ասեն, բնաւ աղքատու-թիւն : Աստուած ատեա՞յ ուրեմն զաղքատս, չկի՞րէ զտա-ռապեալս : Դու զի ոչ առնն կամիս համբեր լինել զի այն-պէսն զարդարիս, զոր դուն իսկ առնես՝ անտոփ լինի յայս ամենեցուն. յորժամ մտանես 'ի հրապարակէ 'ի սե-նեակ, վազվազակի 'ի բաց մերկանաս զհանդերձն, հա-նես զսպիլն և զմարգարիտն : Եթէ վասն առնն ինչ առ-նէիր, 'ի տան պարտ էիր արկանել և ոչ արտաքոյ. և եթէ սոյզ առնն կամիցիս համբեր լինել՝ ցածութեամբ, Ճնշութեամբ, պարկեշտութեամբ զարդարեաց, և այն-պէս համբեր լինիս :

Հատուստ իմն, կին դու, թէպէտ և կարի ոք մեծա-մեծ իցէ այրն, այնու վազվազակի պատրի՝ յորժամ հե-զութիւն և պարկեշտութիւն ցուցանիցես, և յորժամ չխրգայցես և չնազիցիս, չխնդրիցես աւելի պաճուճանս, այլ զհամոյն և զչափաւորն : Բայց զանխտիրն և զանա-ռակն թէպէտ և բիւր պաճուճանօք պաճուճիցիս, չկա-րիցես առնել զքև : Դու զիտեն բազումք՝ որ այնպիսի ա-րանց դիպեցան. որչափ և պաճուճիցես զանձն, նա քան-զի զեղխ է՝ առ այլս երթայ : Իսկ ցածնոյն և զզաստին ոչ պաճուճանօքն համբոյ լինիս, այլ նոցին հակառակօքն : Նոյնու և 'ի սրամտութիւն ևս ածես զնա. քանզի ըզ-կարծիս զարդարելոյ առնուս յանձն. թէպէտ և առ-ակնածել, քանզի հեզ իցէ այրն, չասիցէ ինչ, այլ 'ի մը-տին սոզոտանիցէ զքեզ, և 'ի նախանձու չլինիցիս ա-զատ : Ո՞չ տեսանէ՞ն այնու հետև զամենայն ցանկութիւն մերկանաս 'ի բաց, և 'ի նախանձ գրգռես զայրն ընդ քեզ :

Թերևս չկամիցիք լսել զայնպիսի բանս, և ցասնու-ցուք և ասիցէք՝ եթէ զարս գրգռէ ընդ կանայս : Ոչ եթէ զարս գրգռելոյ վասն ասեմ զայս. այլ կամիմ ե-թէ դուք ձերովքդ իսկ կամօք առնիցէք զայն : Վասն ձեր՝ և ոչ վասն նոցա. ոչ զի զնոսա ազատեցից 'ի նա-

խանձու է, այլ զի զձեզ ազատեսցէ յանօգուտ պաղձանաց: Ապաքէն գեղեցիկ երեւել, այլ գեղ խնդրէ ա՟ծ, այլում գեղոյ ցանկայ թագաւորն: Զինչ կամիցիս, զա՟ծ սիրելի առնել՝ եթէ զմարդ հաճանի: Եթէ այնու գեղով գեղեցկանայցես, ա՟ծ ցանկասցի գեղոյ քում. և եթէ առանց այնր գեղոյ լինիցիս, նա զարշեսցի 'ի քէն, և որք պիղծք լինիցին քեզ հաճանիք. քանզի անսանկնոջ ոչ ազնիւ այր ցանկանայ, այլ ժանտ ոք:

Զայս և առ արտաքին գեղն ածջիք զմտաւ. զի այն գեղ՝ զոգւոցն աւեր՝ զա՟ծ պատրէ, և այս՝ զայրս պղծէ: Տեսանե՞ս զի ձեզ զգուշանամ, զձէնջ հոգամ, զի գեղեցիկք լինիջիք՝ և ստոյգ գեղեցիկք, և փառաւորք՝ և ստոյգ փառաւորք. զի փոխանակ արանց պղծոց հաճանեաց՝ ունիցիմք զամենեցունցն ա՟ծ սիրելի: Իսկ որ զնա սիրելի ունիցի, ում նմանող իցէ: Ընդ հրեշտակս ցնծասցէ և ընդ հրեշտակապետս բերկրեսցի: Զի եթէ որ 'ի թագաւորէն սիրեսցի քան զամենեսին երանելի է, որ յա՟յն սիրեսցի նորա սէր՝ ի՞մ իմիք արժանի լինիցի: Եթէ զամենայն աշխարհս միանգամայն ընդ նմա կշռեսցես, չարժէ զայն գեղ:

Զայն գեղ փութասցուք, այսու զարդու զարդարեսցուք, զի երկնից արժանի լինիցիմք, հոգևոր առագաստացն, անմահ հարսանեացն: Քանզի այս գեղ յամենայն իմեքէ եղծանի. և եթէ բարիոք իսկ պահիցի, ոչ 'ի ցաւոց վտանգի և ոչ 'ի հոգոց ծնկեսցի, որում չէն հնար լինել, չքաւէ չտևէ մինչև ցքսան ամ: Իսկ այն միշտ փթթի, ցանկ ծաղկի, յար հաստանէ. չիք անդ երկնչել 'ի փոփոխմանց, եթէ գուցէ պառաւութիւն գայցէ, և խորշք յայտան անկանիցին, և կամ թէ ցաւք հասանիցեն և յանգոյ հանիցեն և զգոյնն աժգունիցեն և զգեղն եղծանիցեն, և կամ տրտմութեան հոգք հատանիցեն և զմիտսն տմոյն առնիցեն. այլ յայսմ ամենայնէ ազատ է: Իսկ այս գեղ մինչ չև երևեալ խափանի, նա և մինչև երևին՝ չէ ինչ բազմաց զարմանալի. զի ցածունքն ոչ ինչ զարմանան, և որք զարմանան՝ կշտամբութեամբ զարմանան:

Իսկ արդ մի՛ զայսմ հարկանիցիմք, այլ զայնու զայցեմք, զի մեծապայծառ լապտերօք երթիցեմք յառագաստն. քանզի ոչ եթէ կուսանացն միայն ուխտեաց

ղայն, այլ ամենայն ոգւոց որ 'ի չարեաց կուսանք ի-
ցեն: Զի եթէ կուսանացն ևեթ էր, ապա ոչ հնգիցն
ընդդէմ փակէր. ամենեցուն է պատգամն՝ որ ոգւովքն
կուսանք իցեն, որք 'ի մարմնաւոր պաճուճանաց աղա-
տեալք են. քանզի ապականեն զգեղ ոգւոցն այնպիսի
պաճուճանք: Եթէ անարատք մնայցեմք, տանիցին ըզ-
մեզ անդր և տայցեն Թագաւորին. «Խօսեցայ, զձեզ
ասէ, առն միոջ իբրև զկոյս մի սուրբ յանդիման առ-
նել Քրիստոսի»:

Զայս ոչ առ կուսանսն ևեթ ասաց, այլ և առ ամե-
նայն իսկ լրումն բնաւ եկեղեցւոյ: Զի անարատ ոգին
թէպէտ և առն լինիցի՝ կոյս կայ սուրբ կուսութեամբ՝
զարմանալեաւն սքանչելեաւն. զի մարմնոյ կուսութիւն
զայնր կուսութեան զհետ երթայ իբրև զնորին ստուեր.
իսկ ճշմարիտ կուսութիւն այն է. այսու զարդարեա-
ցուք, և այնպէս կարիցեմք զուարթ երեսօք տեսանել
զփեսայն. վառեալ լապտերօք մտանիցեմք յառագաստն.
եթէ զիւղն ևս անապական ունիցիմք ընդ մեզ, եթէ
զոսկին ձուլիցեմք և իւղ գործիցեմք, այն է որ մեծա-
պայծառ լուսաւորէ զլապտերսն. քանզի իւղն այն մար-
դասիրութիւն է: Եթէ այլոց բաշխեսցուք զինչս, եթէ
զոր ինչ ունիցիմք՝ համակ իւղ գործիցեմք, անդ օգնես-
ցէ, յայնժամ շայեկան լինիցի մեզ. և չասիցեմք զոք 'ի
ժամանակին յայնմիկ, եթէ «Տուք մեզ իւղ, զի ահա
շիջանին լապտերքս մեր». չկարօտիցիմք այլոց, չերթայ-
ցեմք առ վաճառականսն, և չփակիցի դուռն հարսա-
նեացն և մնայցեմք արտաքոյ. չլսիցեմք զահագին և ըզ-
սոսկալի զբարբառն, յորժամ զդուրսն բախիցեմք, թէ
«Ոչ գիտեմ զձեզ». այլ ճանաչիցէ զմեզ, և ընդ փե-
սային իսկ մտանիցեմք յառագաստն հոգևոր, և վայե-
լիցեմք յանչափ բարութիւնսն:

Զի եթէ աստ այնչափ վայելուչ են հարսանիք, և
մեծապայծառ առագաստք, որպէս զի չյագիմք խոկնայ-
ելով, որչափ ևս առաւել անդ ուր երկինք են սենեակք,
և երկնից առագաստքն ամենալիցք: Անդ մտցուք, անդր
փութասցուք. զի թէ առագաստն այնչափ գեղեցիկ է,
ապա ուրեմն փեսայն որչափ գեղեցիկ. Եւ զինչ ասա-
ցից թէ զոսկին թօթափեսցուք և տացուք կարօտելոց.
թէ զանձինս ևս հատանէր վաճառել, և հնար ինչ էր

ընդ այնմ փեսայի բնակել, յաշխարհի գեղ վայելել, զնորա միայն զերեսն տեսանել, չէ՞ր պարտ բաղձալ յաժարութեամբ զամենայն ինչ յանձին ունել։ Զթագաւոր ոք երկրաւոր թէ տեսանիցեմք՝ զարմանամք, իսկ յորժամ զԹագաւորն և զփեսայն միանգամայն տեսանիցեմք, չիցէ՞ պարտ վասն այնպիսի բարութեանց զամենայն ինչ յանձն առնուլ, արդարև այս սուտ էր, և այն ճշմարտութիւն. Թագաւորն և փեսայն յերկինս է, և պարտ է փութալ արժանի լինել, և քան զամենայն ինչ զայն լաւ համարել. զի կարասցուք ելանել նմա ընդառաջ լապտերօք. մերձենալ և միշտ ընդ նմին բնակել։

Արդ ածեալ զայնպիսի բարութիւնսն զմտաւ, զի՞նչ ինչ չիցէ պարտ առնել, որպիսի՞ հնարս հնարել, զո՞ր չարչարանս չհամբերել. վասն որոյ աղաչեմ, արկցուք գութ ընդ այնպիսի բարութիւն, փափագեսցուք փեսայիւն, եղիցուք կուսանք ճշմարտութեամբն։ Քանզի զոգւոցն կուսութիւն խնդրէ տէրն. նովին հանդերձ մտցուք յերկինս. զի մի ունիցիմք սպի և մի խորշ ինչ և կարկամութիւն, և մի այլ ինչ այնպիսի. զի և խոստացելոց բարութեանցն հասանիցեմք. որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս. ամէն։

ՅԵՐԵՍՆԵՐՈՐԴ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ ՃԱՌԷՆ

Բազում ինչ է որ կրէ քրիստոնէութիւն, մանաւանդ քան զամենայն ինչ սէր և ընդ միմեանս խաղաղութիւն. վասն այսորիկ և Քրիստոս ասէ. “Զխաղաղութիւն զիմ տամ ձեզ”. և դարձեալ. “Յայսմիկ գիտասցեն ամենեքեան եթէ իմ աշակերտք էք, եթէ սիրիցէք զմիմեանս”. նմին իրի և Պաւղոս ասէ. “Զխաղաղութեան զհետ երթայք և զսրբութեան և զցածութեան, առանց որոյ ոչ ոք տեսանէ զտէր”։ “Տեսէք, եղբարք, գուցէ ոք 'ի ձէնջ յետնեալ գտանիցի 'ի շնորհացն այ”։ Որպէս և որք ճանապարհ ինչ յերկար գընայցեն ընդ բազում ուղեկիցս, տեսէք գուցէ ոք մնացէ։ Ոչ զայն միայն խնդրեմ, ասէ, զի դուք գնայցէք, այլ զի և զայլս դիտիցէք։ Մի՛ ոք 'ի ձէնջ, ասէ, յետ-

նեալ։ Ի շնորհացն այ՝ զհանգերձեալ բարեացն ասէ զհաստատութիւն զաւետարանական առաքինութեանն. ամենայն ինչ 'ի շնորհացն այ է։ Ո՛ր ասիցես՝ եթէ մի ոք կորեաւ, և այն զինչ իցէ. քանզի և վասն միոյ մեռաւ Քրիստոս. վասն որոյ Քրիստոսն մեռաւ՝ դու հոգալ չկամիս։ Դիտեցէք, ասէ, զմիմեանս. այսինքն է քաջ յուզեցէք, հանդէս արարէք. «Մի ոք արմատ դառնութեան 'ի վեր երևեալ նեղիցէ»։ զոր և այլուր գրեալ ասէ. «Փոքր մի խմոր զամենայն զանգուածն խմորէ»։ Ոչ վասն նորա զայն կամի միայն, այլ վասն առ 'ի նմանէ վնաս լինելոյ։ Եթէ այնպիսի ինչ արմատացիցէ, մի և միում շառաւեղի տացես 'ի վեր արձակել, այլ 'ի բաց կորեացես, զի մի բերցէ զիւր պտուղն և զայլս ապականիցէ։ «Մի, ասէ, արմատ դառնութեան 'ի վեր ելեալ նեղիցէ, և վասն նորա բազումք ապականեսցին»։ Եւ նմանապէս իսկ դառնութեան զմեղսն կոչեաց, քանզի չիք ինչ դառնագոյն քան զմեղսն. և հմուտ են որք յետ գործելոյն հաշին և մաշին 'ի միտացն խղճէ և բազում դառնութիւնս ճաշակեն. քանզի դառնագոյն են մեղք և այլայլեն զխորհուրդս. այս իսկ է դառնութեան բնութիւն անօգուտ։ Եւ բարւոք ասաց արմատ դառնութեան, և ոչ դառն՝ այլ դառնութեան. քանզի դառն արմատոյն մարթ է բերել պտուղ քաղցր։....

«Մի ոք պոռնիկ որպէս զԵսաւ»։ Եւ ո՞ւր պոռնիկ էր Եսաւ. ոչ զայն ասէ թէ պոռնիկ, այլ թէ գիջեղի, որկրամոլ, անժուժկալ, աշխարհական, 'ի հոգևորացն հեռացեալ. որ ընդ միոյ կերակրոյ վաճառեաց զանդրանկութիւնսն... Գիտէք, ասէ, ոչ եգիտ տեղի ապաշխարութեան... վասն զի ոչ էին իրքն ապաշխարանաց։ Զի զոր օրինակ տրտմութիւնն Կայենի ոչ էր ապաշխարութեան, և սպանութիւն եցոյց... նոյնպէս և նա յօժարութեամբ սպան զՅակոբ. «Մերձեսցին աւուրք սգոյ հօր իմոյ և սպանից զՅակոբ». ոչ կարացին արտասուք զապաշխարութիւն նմա տալ... ընդդէք. զի ոչ զղջացաւ զոր օրինակ պարտ էր։...

Զգոյշ լերուք մի զլրկեցիք զառանց բժշկութեան գլորումն։ Եթէ ցկաղութիւն միայն իցեն իրքն, գոյ հնար հաստատելոյ. ապա եթէ բնաւ իսկ կործանիցիք, զինչ ինչ այնուհետև հնարք լինիցին։ Ընդ որս չիցեն

այնպիսի ինչ. այլ զինչ. յորժամ լուանին՝ եթէ «Ո՞ւր ես Ադամ։ Լուայ, ասէ, զձայն քո և երկեայ, քանզի մերկ էի և թագեայ»։

Մեծ բարութիւն է 'ի միտ առնուլ զմեղսն և յիշել հանապազ. չիք ինչ որ այնպէս բժշկեսցէ զյանցանս իբրև զհանապազորդն յիշատակս. չէ ինչ որ այնպէս դանդաղկոտ առնէ զմարդն 'ի չարիս։ Գիտեմ զի սոսկայ և ունելոց ելանէ ոգին, և չունի յանձին տանջել 'ի խղճէն՝ յորժամ զչարիսն յիշեսցէ. այլ դու սանձեա և դիր վարկելս 'ի բերան. քանզի իբրև զձի սրըմուզ անհիմաստ է, և չկամի գալ 'ի հաւան թէ մեղայ։ Այս այն ամենեւին իսկ սատանայական գործ է. այլ մեք հաւանեսցուք եթէ մեղաւ՝ զի ապաշխարեսցէ և ապրեսցէ 'ի տանջանաց։

Արդ ասէ սա, զխո՞րդ ապաշխարեսցես ողորմութեն հատանել, որ չեղեր երբեք խոստովան զմեղսն։ Ո՞չ ապաքէն ուր մեղաւն՝ իցէ ողորմութեան և մարդասիրութե արժանի. դու զի ոչ երբեք առեր յանձն՝ եթէ մեղաւոր էի, զխո՞րդ ապաշխարեսցես ողորմութիւն գտանել. յե՞ր վերայ այնչափ անամօթեալ ժխտիցես։ Հաւանեցուսցուք զանձինս՝ եթէ մեղաք. մի լեզուաւ միայն ասիցեմք, այլ և միտօք. մի մեղաւոր միայն կոչեսցուք զանձինս, այլ և զմեղսն մի ըստ միոջէ զմտաւ ածցուք, 'ի համար արկցուք, այց և խնդիր արասցուք։

Չասեմ թէ ձաղէ զանձնդ առաջի բազմաց, և ոչ թէ այլոց առաջի ամբաստան լինիցիս զքէն. այլ հաւանեա մարգարէին որ ասէ, եթէ «Յայտնեա առաջի տեառն զճանապարհս քո»։ Աստուծոյ խոստովան լեր զմեղսն, դատաւորին յայտնեա զյանցանսն, յորժամ յաղօթս կայցես. թէ և լեզուաւ ոչ, սակայն յիշատակաւ. և այնպէս արժանի լինիցիս ողորմութիւն գտանել։ Եթէ ունիցիս զմեղսն հանապազ յուշի, ապա ոչ երբեք ընկերին ոխս պահիցես։ Չասեմ եթէ ստուգել իսկ զանձնէ թէ մեղաւոր իցես, ոչ այնպէս կարէ խոնարհեցուցանել զանձն, որպէս ինքեանք ինքեամբք իւրաքանչիւր կերպարանօքն մեղքն զմիմեանս պահանջիցեն։ Այնուհետև ոչ ոխս ընդ ումեք ունիցիս, յորժամ զայս զմտաւ ածիցես. ոչ բարկանայցես, ոչ բամբասիցես, ոչ մեծամտիցես, և ոչ 'ի նոյն մեղանչեալ անկանիցիս, այլ միտեալ 'ի բարութիւնս յաճախիցես։

խօր, այլ քան զարեգականային ճառագայթսն են ճնշեա-
լայնանալովք. վասն որոյ և ամենայն մարդկան որք են ընդ ամենայն տիեզերս՝ ծագէ։ . . . Ո՛չ ի բաղդատելն իսկ առ ինքն ձգեաց զամենայն աշխարհ, և յայլ կրօնս փոփոխեաց զանկրօնս լրութեամբ բանիցս այսոցիկ, որք լուաք զկարգս աւանդեալս ՚ի նմանէ մեզ։ Այլ աստուա և ամենայն ուսմունք յայտ է թէ ոչ ինչ մարդկայինք տոգայք, այլ Աստուածայինք իւն են և երկնաւոր ուսմունք ՚ի ձեռն անձինս այսորիկ եկեալ առ մեզ։ Ո՛չ ի ոչ ինչ բանից պրոսաւմունք և ոչ բանից ճառամտութիւնք, այլ զօրութիւն անպատմելի և Աստուածային և զուգիչ հաւատոց զանբան զօրութիւն և զխորութեանց բարոյթեանց ունի։ . . .

Որպէս զի՞նչ է զի սկսեալ աւետարանիչս առաջնայն իսկ առէ այսպէս. «Ի սկզբանէ էր Բանն և Բանն էր առ Աստուած»։ Տեսե՞ր զհամարձակութիւնն և զպարզամ իշխանութիւնս. և զիա՞րդ ոչ յերկուանայ և ոչ ՚ի կարծիքս ինչ անկանի, այլ զամենայնս բացայայտեալ բարբառի։ Վասն զի այն է վարդապետի՝ ոչ ինչ ակնկածեալ և շուրջ գալ յորժամ արդեօք ինչ ասիցէ. զի որ այլոցն առաջնորդեսցէ և կարօտանայցէ այլ ուսմունք առաջնորդի որ կարող իցէ հաստատել զնոսա ստուգութեամբ, այնպիսին ոչ զվարդապետաց կարգ ունի, այլ զաշակերտաց։

Իսկ եթէ ոք ասիցէ՝ եթէ ընդէ՞ր զնախկին պատճառն թողեալ, առաժամայն իսկ պատմէ մեզ վասն երկրոր-

մանիք պատգամաց լուսաւորութեան ծագէին յամենայնի անցեալ զանցեալ զճառագայթիւք արեգական. վասն այսորիկ ընդ ամենայն տիեզերս ամենայն մարդկան պարզեալ սփռեալ և տարածեալ գնի։ . . . Իսկ արդ ո՞չ յամենայն կողմանց յայտնի է մեզ թէ ոչ ինչ մարդկօրէն և երկրաւոր բանս լսելոց եմք, այլ աստուածեղէն պատգամս երկնաւորս յաստուածեղէն շնչոյն բերանոյ։ Զի ոչ եթէ պայծառութիւն բանից և ոչ պերճաբանութիւն պատգամաց . . . այլ անճառելի հաստատութիւն և անընդդիմանալ զօրութիւն և բազմաւոր բարեաց առատութիւն։ . . .

« Ի սկզբանէ էր Բանն և Բանն էր առ Աստուած և Աստուած էր Բանն » ։ Տեսե՞ր զհամարձակութիւն առաքելոյն թէ զիարդ ոչ ՚ի կարծ և ոչ զանգիտելով, այլ համարձակ և ստուգիւ հրամանաւ բարբառի զօր խօսս։ Զի այս ինքն օրէն է հաստատուն վարդապետի, զի ոչ գեղեւի և ոչ տաթանէ և ոչ դողդողայ. զի թէ որում պարգ և պատշաճ իցէ այլոց առաջնորդել՝ նմա այլ պիտոյ է որ հաստատեսցէ զնա, նա ոչ եթէ յարենա վարդապետաց է, այլ ՚ի կարգս անկարգ ակար աշակերտաց,

Արդ եթէ ոք մտածեցեալ ասասցէ՝ թէ ընդէ՞ր բնաւ առաքելոյն զառաջինն եթող և զերկրորդն սկսաւ, արդ որ առաջինն ասէ և երկրորդ՝

կարող իցեն տեսանել. իսկ որ յայնժամ խոնարհագոյնքն էին, եթէ բազում անգամ զնոյն լուեալ էր՝ ոչ կարացին ըմբռնել: Տեսնե՞ր, և ոչ կարացին այնչափ համբերել, այլ և քարկոծեն և հալածեն և սպանանել մտաբերեին, և հայհոյիչ կարդային զնա յորժամ հաւատար առնէ զանձն Այ. և երբեմն ասեն և հայհոյէ, քանզի ասաց՝ եթէ թողեալ լիցին քեզ մեղք քո. դարձեալ մոլեգնոտ կոչեն յորժամ ասիցէ՝ որ լսիցէ զբանս իմ, ոչ մեռանի. և կամ յորժամ ասիցէ՝ ես 'ի հայր իմ և հայր յիս, թողուն զնա. և գայթակղին յորժամ ասիցէ՝ եթէ ես յերկնից իջեալ եմ: Արդ՝ եթէ այսմ ամենայնի ոչ կարեն համբերել՝ զի չափաւորագոյն ասէր, որչափ ևս առաւել թէ յամենայն 'ի բարձրագունէ բանն և այնպէս նիւթէր՝ հայէին 'ի նա բնաւ արգերք: Այլ յորժամ ասէ, "Որպէս պատուիրեաց ինձ հայր՝ այնպէս առնեմ", և "Ես յանձնէ ինչ ոչ խօսիմ", բազումք յայնժամ հաւատացին 'ի նա. և նշանակէ աւետարանիչն՝ եթէ "Մինչդեռ նա զայն խօսէր":

Իսկ արդ եթէ խոնարհութեան բարբառն հաւատս ծանուցանէ, իսկ որ բարձրութեանն է՝ այն փախուցանէ, իսկ արդ ո՞չ յետին անմտութիւն իցէ չիմանալ խոնարհացն զհանգամանս եթէ վասն լսողացն ասացաւ: Քանզի և այլուր մեծ իմն կամեցաւ ասել և լռեաց, զայս իմն հանգամանս մատոյց և ասէ. "Այլ զի մի գայթակղեսցին, տար ընկեա զկարթ 'ի ծով": Այն օրինակ և աստ՝ յետ ասելոյն իմն թէ "Գիտէի ես զի

յայնժամ տկարագոյնք էին, եթէ ոչ բազում անգամ լսէին՝ ոչ հաւատային: Նա և ոչ այնու շատանային, այլ և քարկոծ առնէին և հալածէին և սպանանել ձեռնարկէին և հայհոյիչ կոչէին, վասն զի ասէր՝ թողեալ լիցին քեզ մեղք քո: Դարձեալ դիւահար զնա կոչէին, յորժամ ասէր մահու վեհագոյն լինել զլսողս բանից նորա: Նա յորժամ ասէր՝ թէ ես 'ի հայր և հայր յիս. և թէ՝ ես եմ հացն կենաց իջեալ յերկնից, թողուին զնա և գայթակղէին 'ի նա: Իսկ յորժամ ասէր՝ թէ որպէս պատուիրեաց ինձ հայր այնպէս խօսիմ, և թէ յանձնէ խօսիմ և ոչ ինչ, յայնժամ հաւատային: Իբրև զայս խօսեցաւ, ասէ, բազումք հաւատացին 'ի նա. զոր և ցուցանէ աւետարանիչն զայն ասելով:

Նա զի նոքա խոնարհագունիցն հետևէին, և յորժամ զբարձրագոյնսն խօսէր՝ հեռանային 'ի նմանէ, որպէս ոչ է վերջին անմտութիւն, զի ոչ տեսանեն զբանիցն պատճառն թէ վասն լսողացն ասացաւ: Նա և այլուր մեծագոյն ասել խորհէր և լռէր, և զպատճառս զայս յաւել և ասէ. «Բայց զի մի գայթակղեսցին, երթ 'ի ծով և ընկեա կարթ»:

յամենայն ժամ լսես ինձ", ած թարգմանեաց վաղվաղակի՝ եթէ "Վասն ժողովրդեանս ասնեմ առաջի բազմութեան, զի հաւատասցեն":

Նոյն արդ մինթէ մեր ինչ իցեն բանքդ և կամ թէ կարծիք ինչ մարդկօրէն, զի յորժամ յիրաց անտի բատուգեսցուք եթէ գայթակղին 'ի բարձրագոյն բանից անտի, և ինքն իսկ ասէ՝ եթէ վասն այնորիկ իսկ խոնարհագոյնս բարբառիմ զի մի գայթակղեսցին, արդ ո՞ իցէ որ բուսոյ բարուց կարծէ զխոնարհագոյն բանս եթէ իցեն, և ոչ իմանալք։ Սոյն ուրեմն բարբառ ասէ. "Ոչ եթէ վասն իմ ինչ եկն բարբառս այս, այլ վասն ձեր"։ Նոյն արդ բարձուն վայել իցեն վասն նորա խոնարհ բանքն. իսկ խոնարհին օրէնք չեն մեծ և բարձր ինչ բարբառել։ Ոչ ի այս վասն խոնարհութեան ընդ զիջանելոյն լինի, և վասն ուսման տկարութեան պատճառք են՝ զի ածել մարթիցէ 'ի խոնարհութիւն, և ընմարմին զի զգեցեալն էր, զի խրատել մարթասցէ ընլսողսն մի ինչ յանձինս իւրեանց հպարտանալ, և զի կարծեցին եթէ ածընդդէմ է, և զի անհաւատն անէին եթէ յայտ եկեալ է, և զի կարծեցին . . . ասէպ ասէպ 'ի հին կտակարանն՝ եթէ տէր ած քո տէր մի է։ Սոյն որ խոնարհ ոք իցէ և վասն իւր բարձունս բարբառիցի, ոչ ինչ են այն պատճառք և ոչ իրաւարանք.

Զոյն և սա ասէ. քանզի յետ ասելոյն եթէ «Գիտէի զի յամենայն ժամ լսես ինձ», ասէ անդէն թէ «Վասն ժողովրդեանս որք շուրջ կան ասեմ զի հաւատասցեն թէ դու առաքեցեր զիս»։

Արդ մինթէ մեր իցեն բանքս, մինթէ մտածութեամբ մարդկան են ասացեալ, զի եղելոց իրաց ոչ հաւանին մինչ յանդիմանել տեսանելեօք, որով գայթակղէին 'ի բարձրագունիցն. ինքն իսկ ասէ՝ թէ վասն այնորիկ խոնարհագոյնս խօսիմ զի մի գայթակղեսցին, մի արդեօք ընդունելութեամբ լինել զխոնարհագոյնն կարծիցէ բանս, և ոչ զիջանելոյ։ Քանզի և այլուր ձայն եկեալ 'ի վերուստ ասէր. «Ոչ վասն իմ եկն ձայնս այս, այլ վասն ձեր»։ Արդ ուրեմն 'ի բարձրագունիցն հարկ էր ասել բազում ինչ վասն իւր զխոնարհագոյնս. բայց դու զխոնարհագոյնան մի այլ ազգ համարիցիս. քանզի այնորիկ զիջանելոյ վասն լինէին. և տեսողացն և լսողացն տկարութիւնն ունի պատճառս զիջանելն 'ի խոնարհութիւն. այլ և մարմինն ունելն, որով խրատէր զլսողսն ոչ ինչ մեծագոյն վասն անձանց իւրեանց խօսել, և զի մի համարեսցին զնա լինել ընդդիմակաց Աստուծոյ, զի և ոչ հաւատային գալ նմա յայտ, և կարծէին լուծանել զօրէնսն, և վասն մախանաց լսողացն, և զասանէ յաճախ 'ի հինումն՝ տէր ած քո տէր մի է։ Քանզի այն որ փոքր է բնութեամբ, բարձրագոյն ինչ վասն անձին իւրում խօսել՝ ոչ և ոչ մի ինչ

րեալ լինել որ լինելոցն ։ Նոյն զի ասէ՝ լուար ինձ, զայս և առ բարեկամս ասէ և առ համօրէն պատուականս ։ " Այլ ես գիտէի թէ յամենայն ժամանակի լսես ինձ ". այսինքն կատարել զկամս իմ՝ ոչ ինչ պիտոյ են աղօթք առ 'ի գործել, վասն զի մի է խորհուրդք. իսկ աղօթք վասն տկարաց է և թերահաւատից ։

" Եւ զայս իբրև ասաց, 'ի ձայն բարձր աղաղակեաց և ասէ. Ղազարէ, եկ արտաքս " ։ Նոյն ընդէր ոչ ասաց՝ թէ յանուն Հօր իմոյ եկ արտաքս. ընդէր ոչ ասաց՝ եթէ Հայր, յարո զդա. այլ զամենայն թողեալ՝ զաղօթիցն կերպարանս առեալ գործովք և արդեամբք ինքնակամակար իշխանութիւն ցուցանէ ։ . . . բանիւք ընդ խոնարհն, այլ գործովքն և արդեամբք զիշխանութիւն ցուցանել ։ Ռամիկքն այլ ինչ չկամէին մեղադիր լինել Քրիստոսի, այլ զայս միայն ասէին՝ թէ չէ զա յԱյ, և այսու ինքն զբաղուած խաբէին. վասն այսորիկ աստուածութեամբ ցուցանէ զնոյն օրինակ, զոր օրինակ նոցունց իսկ տկարութիւն պահանջէր ։

Ոչ է մարթ և այլ ազգ միաբանութեամբ հաւասարութիւն ցուցանել միով պատուով. այլ վասն ժողովրդեանն որ այնչափ կայիւն ցուցանէ. ասէ. " Ղազարէ, եկ արտաքս ". այսինքն է որ ասացաւն իսկ յառաջ. ասէ. " Եկեսցեն ժամանակք զի լուիցեն ձայնի որդւոյն

նիցէ՝ եթէ ընդդիմակաց քո էի, աղաչեմ ոչ էիր թոյլ տուեալ լինել եղելոցն ։ Իսկ ասելն թէ լուար ինձ, առ սիրելիսն ասի և համազգի պատուականսն ։ « Ես գիտեմ զի յամենայն ժամ լսես ինձ ». այսինքն առ 'ի լինել կամաց իմոց, զի մի են կամք իմ և քոյդ ։ Արդ զինչ են աղօթքն. վասն տկարացն և նուաստամտութեանցն 'ի սէր, 'ի լուր և յիմաստութիւն ։

« Եւ զայս ասելով, ասէ, գոչեաց 'ի ձայն մեծ, Ղազարէ, եկ արտաքս » ։ Իսկ ընդէր ոչ ասաց թէ յանուան Հօր եկեսցես արտաքս. կամ թէ դու Հայր, յարո զդա. այլ զամենայն զայսպիսիս 'ի բաց եհան. և թեպետ էառ զկերպարանս աղօթից, այլ 'ի նոյն գործս զհրամանն իւր ցուցանէ կատարիչ գործոյն ։ Եւ այսպիսի անբաւ խոնարհութեամբ նորա են. զի բանիւք խոնարհէր, և գործով զիշխանութիւնն ցուցանէ ։ Եւ այլ ևս. վասն զի ոչ ինչ կարէին այլ ինչ մեղադրել զՔրիստոս, բայց թէ չէ զա յԱյ, և զբաղուածս պատրէին. վասն որոյ մեծապէս զնոյն ցուցանէ, և առ կերպս տկարութեան նոցա զիջանէ ։

Կարող էր և այլ ազգ ցուցանել զհաւասարութիւնն ընդ Հօր և զիշխանութիւնն. այլ ոչ էր կարող ժողովուրդն յայսպիսի բարձրութիւնս ելանել. ասէ. « Ղազարէ, եկ արտաքս ». այս այն է որ ասաց. « Եկեսցէ ժամանակ և արդէն իսկ է. յորժամ մեռեալք լուիցեն ձայնի

ասաց՝ եթէ զի հաւատասցեն դոքա եթէ չեմ ես քո հակառակ : Պարտ և պատշաճ էր 'ի վերայ կարծեացն եղանել : Այլ յորժամ կարծէին եթէ զօրէնս լուծանէ, զբանն զայն գնէր. զի նոցա և ասացեալ ինչ չէրևէր. «Մի՛ կարծիցէք, ասէ, եթէ եկի ես լուծանել զօրէնս»...: Իսկ արդ զի՞նչ պիտոյ էր այնչափ շուրջ գալ առակօք. շատ իսկ այնչափ էր ասացեալ թէ չեմ հակառակ քնու, և 'ի բաց կալ : Օ՛ խորհուրդ, շատագոյն, ասէ, թէ չառնեմ զկամս իմ: Եւ զայս ծածկագոյն առնուցուն 'ի տկարութենէ նոցին, և 'ի նոցունց իսկ պատճառանաց ուստի աղօթքն եղեն :

Իսկ այն զի՞նչ է «զի լուար ինձ»... ոչ զայս ինչ ցուցանէ յայտնի եթէ անձամբ ոչ կարէ. զի եթէ այդպիսի է, ոչ տկարութիւն միայն է, այլ և ողխաւթիւն. զի եթէ յառաջ քան զաղօթսն ոչ հնազանդեալ իցէ նմա ա՛ծ և ոչ գիտէր, զիա՞րդ ասէր՝ երթամ զի զարթուցից զնա. և ոչ ասաց եթէ երթայց յաղօթս կացից առ հայր, զի զարթուցից զնա : Այլ զոր օրինակ այս ոչ 'ի տկարութենէ է, այլ 'ի միաբանութենէ, սոյնպէս զոր ասէն՝ բայ. «յամենայն ժամանակի լսես ինձ»: Եւ կամ թէ իցէ ասել եթէ առ նոցա կարծեացն ասացաւ : Ապա եթէ ոչ անգէտ էր և ոչ տկար, յայտնի է եթէ վասն խոնարհութեան բանից է զոր

ժամ էր նմա աղօթելն, այլ վասն էր պատճառանն՝ նոցա համարի. ընդէ՞ր ոչ ասաց՝ թէ հաւատասցեն եթէ ոչ եմ որդի քո: Զի պատշաճ էր լսել կարծեաց նոցա գնալ: Յորժամ համարէին զնա լուծիչ օրինացն, զնոյն բանս եդ. մինչ նոքա ոչ ինչ ասացին՝ ասէ. «Ոչ եկի լուծանել զօրէնսն կամ զմարգարէս, այլ լնուլ». իսկ առս հաստատելով հաստատէ զկարծիս նոցա: Եւ զի՞նչ պիտոյ էր նմա այս ամենայն շրջանապատութիւն և առակքս. բաւական էր ասել միով բանիւ եթէ ոչ եմ նման հօր, և աղաւաղել զանձն: Այլ զի՞նչ ասեն. ո՞չ ասաց՝ եթէ ոչ առնեմ զկամս իմ: Այլ և այս իսկ պատրուակաւ է և առ 'ի միտս նոցա, լսել նոյն պատճառաւ էր և աղօթելն:

Արդ զի՞նչ իցէ եթէ «լուար ինձ»: Այսինքն եթէ ոչ է հակառակութիւն իմ առ քեզ. այլ ամենայն ինչ որ քո է՝ իմ է: Իսկ եթէ տկարութեան էր աղօթքն, որ և ոչ զայս յայտնէ եթէ ինքն ոչ կարէր. ապա թէ այնպէս է լսել ձեզ, ոչ անզօր միայն էր, այլ և անգէտ, զի յառաջ քան զաղօթելն ոչ գիտէր եթէ լսէ նմա ա՛ծ. և եթէ ոչ գիտէր, զիա՞րդ ասէր՝ թէ երթամ զարթուցանել զնա: Եւ ոչ ասաց՝ երթամ աղաչել զհայր զի յարուսցէ զնա: Արդ որպէս այլ բանքն ոչ էին տկարութեան, այլ կամակցութեան, սոյնպէս և այն՝ թէ յամենայն ժամ լսես ինձ: Իսկ եթէ ոչ անգիտանայր և ոչ տկարանայր, քաջայայտ է եթէ վասն այնոցիկ խոնարհագոյն խօսի բանս, զի 'ի

լինին. և ամենք զարմացեալ էին և պատմեցին փարիսե-ցւոցն:

Այլ փոխանակ ասոյ զի պարտ էր սքանչանալ և զար-մանալ, խորհուրդ առնէին զի սպանանել կարասցեն զայն որ յարոյց զմեռեալն: Տեսանես զանմտութիւնն. որ յայլոց մարմինն մահու յաղթեաց, 'ի մահ մատնել խորհէին զնա, և այդ ասեն. "Զինչ խորհեսցուք, զինչ գործեսցուք. զի այրն այն բազում և մեծամեծ սքանչելիս առնէ": Այլ այդ կոչեն ամպարշտին, որ զայս-պիսի հանդէս տնտեսութեան ցուցանէր: Զինչ գործես-ցուք: Հաւատալ արժան է և երկիր պագանել, և այ-նուհետև ոչ մարդ համարել:

"Արդ եթէ թողումք զնա, զան, ասէ, Հռոմայեցիք և բառնայցեն զքաղաքս մեր և ջնջեսցեն զազգս մեր": Զինչ է զոր կամին ասել: Այլ զժողովուրդն կամին շարժել, և իբրև առ իւրեանց վշտին առ 'ի կործանեալ բռնադատ թագաւորութեանն. զի եթէ ամբոխաժո-ղով տեսանեն զնա հաւատացեալք, կարծեն զմէնջ բռնա-դատ թագաւորութեանն, զքաղաքս առնուցանեն:

Իսկ ընդէ՞ր այդ, մինթէ այդ ապստամբութիւն ուսու-ցանէ. ոչ ապաքէն հարկ յօժարեցուցանէ տալ կայսեր. ոչ թագաւոր զնա կամեցարուք առնել, և փախեաւ. և

զոր արարն Յիսուս, հաւատացին 'ի նա. և ոմանք 'ի նոցանէ գնացին առ փարիսեցիսն և պատմեցին նոցա զոր արարն Յիսուս»:

Ասոյ փոխանակ զի պարտ էր զարմանալ և սքանչանալ, խորհուրդ արարին սպանանել զայն՝ որ զբազմօրեայ մեռեալն յարոյց: Տեսանես զանմտութիւն նոցա և զչարագոյն զչարութիւնն. զի որ յայլոց մար-մին մահու յաղթեաց, 'ի մահ մատնել խորհէին զնա: «Ժողովեցան, ասէ, քահանայապետքն և փարիսեցիքն յատեան և ասեն. զինչ ա-րասցուք, զի այրն այն բազում նշանս առնէ. եթէ թողումք զնա այս-պէս, ամենեքեան հաւատասն 'ի նա»: Զինչ արասցուք, ասեն: Հա-ւատալ արժան էր, աղաչել և երկիր պագանել, և այնուհետև ոչ մարդ համարել զնա: Իսկ նոքա ոչ այսպէս. այլ զինչ. մարդ զնա գործեալ կոչեն. որք այնչափ անտեսութիւն առնել նոքա զօրութեանն, որ միայն Այ էր կարողութիւն: Զինչ ասաց:

«Հաւատասն 'ի նա, ասէ, և գայցեն Հռոմայեցիք և բառնայցեն զտեղիս մեր և զազգս»: Զինչ իցէ այս զոր ասեն: Առ նախանձու չարութեանն զժողովուրդն շարժել կամէին. զի 'ի մահ մատնեսցեն զնա. իբրև թէ վասն կործանեալ ապստամբութեան ինքեանք մատնելոց են 'ի նեղու-թիւնս. ասեն, եթէ տեսցեն զնա Հռոմայեցիք զի ժողովէ իւր ժողովս, հա-մարեսցին զմեզ ապստամբս և գան խլեն զքաղաքս մեր:

Արդ էր վասն, ասա ինձ. մինթէ ապստամբութիւն ուսուցանէր. ոչ ապաքէն զհնազանդութիւն վարդապետէր և զխոնարհութիւն և

ոչ զխոնարհութեան աներեւոյթ զկնի գնայ. ոչ տուն, ոչ տեղի յերկրի գլխոյ դոյր: Նաև իբր ոչ եթէ ակն ունէին եթէ նա այնպիսի ինչ լինելոց է, այլ նախանձ չարակնութեան և նենգութեան կարկատէին: Բայց սակայն նոցա էր վիճակն զոր խնդրէինն, և յորում ժամու ակն ոչ ունէին՝ կատարեցաւ. քանզի և զքաղաքն բարձին և զազգն ընջեցին զհրէիցն: . . .

զանընչութիւն և հանդարտութեամբ գնեալ եղեւ աշխարհական կարգաց. մինչ ոչ հրամայէր հարկս տալ կայսեր. ոչ ատեալք թագաւոր կամէին առնել զնա, և փախեաւ 'ի բաց գնաց 'ի ձեռնց. ոչ խոնարհ կերպարանօք և կենօք վարեցաւ առ ձեզ, չառանելով ոչ տուն և ոչ այլ ինչ: Արդ զոր ասէին՝ ոչ էր յերկնէ, այլ 'ի չար նախանձուէ, վասն նորա ոչ 'ի կարծիս լինելով: Սակայն եղև առանց կարծեաց և կասկածանաց. քանզի առեալ հռովմայեցւոց զազգս նոցա և զքաղաք, բարձին զնա:

---

# ԽՕՍՔ

## ՎԱՍՆ ՀԵՐՈՎԴԻԱԴԱՑ

Դարձեալ Հերովդիաս մոլեգնեալ յանդգնի, դարձեալ կաքաւէ, դարձեալ միւսանգամ խնդրէ զգլուխն Յովհաննու ՚ի Հերովդէ անօրէնութեամբ կտրել։ Դարձեալ Յեզաբէլ փութայ յափշտակել զայգին Նաբութեայ, և զսուրբն Եղիաս հալածական առնել յանապատն։ Ես այնպէս կարծեմ ոչ եթէ զիս միայն ՚ի զարմանս ափշութեան անկանել, այլ զամենեսեան որ լսեն բարբառոյ աւետարանին, և որ զարմանալին էր՝ զՅոհաննու քաջասրտութիւնն և զՀերովդիայ զթեթեւութիւնն և զամբարիշտ կանանցն զգազանական մոլեգնութիւնն։ Զինչ արդեօք լսէաք, եթէ Հերովդէս, ասէ, կալաւ զՅոհաննէս և եդ ՚ի բանտի։ Վասն է՞ր արդեօք. վասն Հերովդիայ կնոջ Փիլիպպոսի եղբօր իւրոյ։ Եւ պարսաւիցէ ոք արդեօք զանմտութիւնն Հերովդիայ ՚ի չուառական կանանցն հրապուրեալ։

Որպէս զիարդ ոք մարթիցէ ասել և կամ պատմել զայնպիսի կանանց զանյագ չարութիւնն։ Ինձ այսպէս թուի եթէ ոչ ինչ է գազան չար յաշխարհի և նման քան զչարութիւն կնոջ։ Այլ այժմ ինձ վասն չարեաց է ճառ բանիս, և ոչ վասն բարեաց և զգաստից. քանզի բազում զգաստս և ցածս և զբարիս զորոց ունիմ յիշատակաւ ցուցանել զվարս նոցա առ ՚ի շինած և փափագ գործոց բարեաց։ Ոչ ինչ այսուհետև յաշխարհի գազան չար նման կնոջ չարի։ Զինչ է գազան չար քան զառիւծ ՚ի չորքոտանիս, և ոչ ինչ. և զինչ քան զվիշապ խիստ ՚ի սողունս, ապաքէն ոչ ինչ։ Բայց քան զկին չար և անզգամ՝ առիւծ և վիշապ ՚ի չարութիւնն նուազեալ գտանի։ Վկայէ ինձ բանիս և Սողոմոն իմաս-

Ո՛չէ առա խնձ, որ գաղան իւրոյ զուգակցին զայնպիսի ինչ բարս ած զմտաւ երբէք. որ միշտ զիւր զուգակիցն կամի թէ կորիցէ. որ մատակ առիւծ զիւր հաւանին 'ի սպանումն մատնէ: Տեսէ՞ր զի բարիոք առաց իմաստունն՝ եթէ "Ոչ է գլուխ չար քան զգլուխ օձի, և ոչ է չարութիւն քան զչարութիւն կնոջ": Ամենայն ոք առ հասարակ որ ունիցի կին անզգամ, ծանիցէ զամբարշտութեան իւրոյ զվարձս հատուցման: Այլ ոչ առանց մկայութեան է բանս. լուր իմաստութեանն զի ասէ. "Այն չար՝ անօրինի տացի փոխանակ գործոց իւրոց չարեաց": Առն վասն չար կանանց մինչև ցայս վայր բանս կայցի սահման:

Բանզի պարտ է մեզ յիշել և վասն որբոցն, մանաւանդ առաւել վասն հայաւորացս: Զի լաւ քան զլաւոյ քաղցրութիւն իբրև զիւրեանց տեսանէն, և զնոցա առաքինութիւնն իւրեանց պսակ վարկանիցին: Այն լաւ և հիւրասէր էր երանելին Սամնիտոս, որ զայր իւր ազաչէր անհնական չինել Եղիսէի, զի յանցանելն իւրում անխափան իցէ հանգիստն նորա. զնէր 'ի նմա մահիճս մի լոկ, աշտանակ և սեղան լոկ. ոչ եթէ լոկ առանց հանդերձից, այլ կային 'ի նմա անկողինք որպէս և վայել էր. աշտանակն ոչ եթէ առանց ճրագի, այլ հանդերձ ճրագաւ և ձէթ յարծարծումն լուսոյ. և սեղանն ոչ եթէ լոկ առանց հացի, այլ պատրական կերակրով:

Արդ զինչ ոք ասիցէ վասն երանելւոյ այրւոյն այնորիկ, զի ոչ ինչ խափանէր զնա աղքատութիւն ընչիցն վասն հարստութեան կամացն, զի ոչ ունէր ոչ հաց և ոչ գինի և ոչ խորտիկ և այլ ինչ երկրական 'ի մխիթարութիւն տնանկութեանն. ոչ անգք էին ցորենաբերք 'ի բոյս հացի և սերմանց, և ոչ այգի խաղողաբեր ողկուզաբոյծ ճախիտ քաղցրապտուղ, և ոչ ծառ տերևալից պտղաբեր քաղցրահամ բերովք, մանաւանդ զի և ոչ թզեան մի երկիր վայրոյ տեղի կայր նորա, և կանգնեան մի հող 'ի մատաղատունկ տնկի: Բայց 'ի ժամանակի հնձոց իջեալ ընդ արտորայ համակակցը զերեսս 'ի գետին, ձեռն 'ի հասկ զաղեւաղել հնձողացն զաոսաբել մանգաղին ափս ածեալ ժողովէր 'ի բաւականութիւն կարևոր կերակրոյն բովանդակեալ ժամանակին զկերակուրն զնէր:

Որ նա չոգաւ Սարեփթա 'ի ժամանակս սովոյն, յոր- ժամ ամենայն երկիր առ հասարակ երաշտացեալ փրթ- թէր, և օդք պղնձացեալք և ամպք սանձեալք. յորժամ ոչ բոյս, ոչ դալարի և ոչ ծաղիկ, ոչ 'ի ծայրս կաղնեաց բողբոջ և ոչ երամ ցօղախառն, ոչ պատիճ հասկին բե- րանոց. յորժամ գետք նուազեալ էին և զաղբերացն զակունս զյորդառատ ջուրցն սաստիկ բացախառն կիզոյր և ցամաքեցուցանէր, և ծով նուազեալ էր և աղբեալք առ 'ի չհոսանել ջուրցն քաղցրահամոց և առ 'ի չգալ ան- ձրևացն և հասանել. յայնժամ չոգաւ Սարեփթա առ աղ- քատն, առ այրին: Ո՜վ է որպիսի ինչ կերք կրին և 'ի ժա- մանակս լիութեան ընդ այրիս, զայն դուք տեսեալ էք: Այս թողեալ մարգարէն զմեծատունսն որք ունէին ան- դաստանս բազումս, և իջանէր 'ի լեռնէ անտի և երթայր առ կինն այրի:

Այս ընդէ՞ր ոչ որ զհուրն հրամանաւ 'ի յերկնից ի- ջուցանէր, անձին իւրում հաց ընդէ՞ր ոչ իջուցանէր. միթէ ո՞չ կարէր արդեօք: Այո կարէր, այլ զայն ոչ առնէր. ընդէ՞ր. զի մի յօտարասիրութենէ զրկեսցէ զկինն այրի: Այլ և այլ ազգ, զի և զափոքն ալեւրն և զսակաւիկ մի ձէթն օրհնութեամբք բազմացուցէ: Ոչ ոչ եթէ այնչափ մարգարէն երթայր առ նա զի կերակրեսցի յայրւոյն, որչափ և զնորա աղքատութիւնն լուցանէր և յայտնի առնել զծածկեալս որպէս եթէ կամք առնէր զայն: Քանզի մեծ հզօր է, զամենայն տուրքս որ յաշխարհի յինքեան կերակրէ. այլ կարծէր զտուրսն իւր 'ի նոցանէն, զի զգուարթառատսն զմիտսն 'ի ժամանակս առատութեանն պատրել գործոցն ընտ- րեսցէ: Նոյն յորժամ ոք չիցէ ուրեք որոց պարտ իցէ զայնողախան ընդունել, կամ թռչնովք կերակրէ որպէս և զԵղիաս 'ի լերինն, և կամ տալով մարգարէիւ որպէս զԴանիէլ 'ի գուբ առիւծուցն, և կամ ծածկեալս գա- ղանաւ որպէս զՅովնան 'ի փոր ձկանն, և կամ ինքն իսկ յինքեանէ տեղեաց զկերակուր որպէս և հարցն մե- րոց յանապատին. քանզի ոչ ոք գտանէր որ ընդունէր զնոսա, յերկնից տեղայր զմանանայն և 'ի վիմէն զջուրն բղխէր: Նոյն յորժամ իցեն տուրքք ընծայեալք յաշ- խարհի, ընդ այս յինքեն ամփոփէ 'ի նոցանէ զաջ բա- ղուկ իւր. թէպէտ և տեսանիցէ զնոսա նեղեալս, թողլ

տալ և ներկայ զի տացէ զպարգևս այնպիսիս որք զգաստու-
թեան և իմաստութեան արարին, որք և կամեցան զփրկութիւնն շա-
հել իւրեանց:

Ջոգաւ Դիոգինէս առ կինն այրի որոյ ոչ ինչ գտանէր, բայց միայն ամփով մի ալիւր, զոր աշխատութեամբ իւր և որդւոց իւրոց 'ի ժամանակին խնայեալ էր. քանզի և ճաշայն անգամ չէր բաւական: Եւ ասէ ցկինն՝ թէ "Տո՛ւր ինձ փոքր մի ջուր զի արբից": Եւ մինչդեռ նա երթայր, զկնի աղաղակէր և ասէր՝ եթէ "Ո՛րպէս ինձ և կատար մի հաց 'ի ձեռին քո": Եւ ապա նա զոր չկայրն ասէր, և զոր կայրն խոստանայր՝ թէ "Կենդանի է տէր թէ գուցէ իմ նկանակ, բայց միայն ամփով մի ալիւր և փոքր մի ձէթ": Սոյնց այն զարմանք են, զի յայնպէս ժամու կարօտութեան կերակրոյն որ կայրն աղքատութեանն իւրոյ՝ ոչ ուրացաւ: Եւ քանի ամանք են այժմ որ զամկի և զարծաթ իբրև զկաւ ունին շատ, աղայքն և աղերսին, և զերախտիս սիրելեացն ոչ յիշեն, և յաղօթ անկեալ՝ նոքա ուրանան զգթն. և ապա եթէ յանկարծ երբէք բազում աղերսանօք հնազանդեցին առ տուրսն, գիրս և մուրհակս խնդրեն. որ խստացեալքն են քան զերկաթ, և զկարկատեալ ձեռնն յանձուլ նախ զբանս ասողեն, և ապա երաշխաւորս և միջնորդս առնուլն տանեն:

Իսկ կինն այրի 'ի միոյ ձայնէ ոչ ուրացաւ զամփով ալիւրն, և ասէ ցնա մարգարէն. "Փութա վաղվաղակի և արա բլիթ մի նախ ինձ և ապա քեզ և մանկանց քոց": Փորձութիւն էր բան մարգարէին, քննութիւն կամաց, յայգ մնաց. և կայր իբրև 'ի վերայ կշռոց սիրտ երանելի այրւոյն, և փորձէր թէ յոր կոյս զլեսցէ գութըն, յինքն և յորդիս իւր՝ եթէ առ հիւրասիրութիւն մարգարէին: Իսկ նա կամէր տալ զինքն և զմանկունս իւր նեղել և վշտացուցանել, զի զմարգարէն ընկալցի և պատուեսցէ. քանզի գիտէր եթէ "Որ ընդունի զմարգարէ յանուն մարգարէի, զվարձս մարգարէին ընկալցի. և որ արբուսցէ բաժակ մի ցուրտ միայն՝ յանուն աշակերտի, ոչ կորուսցէ զվարձս իւր":

Եւ զի ասէր մարգարէն՝ թէ փութա վաղվաղակի և արա, մինչ այնչափ քաղցեալ էր զի և փութով եւս լիցի: Այլ թերևս ոչ: Այլ զգութ ողորմութեանցն

# Ի ՁԿՆՈՐՍՈՒԹԻՒՆՆ ՊԵՏՐՈՍԻ

Յորժամ վարդապետն բարեփառ, յայնժամ աշակերտն դիւրահաւան. յորժամ աշակերտն քաջայոյս, յայնժամ վարդապետն յօժարամիտ[1]. յայնժամ վարդապետն շահս առաջաբերէ, յորժամ աշակերտն զգութութիւն ցուցանէ. յայնժամ աշակերտն վարդապետին արուեստին անձին ունի, յորժամ զգեզգերանն իւրեւ զպարեկամ ողջունեսցէ: Քանզի այլ ազգ վարդապետին անհնար է ծածկել, եթէ ոչ զաշակերտին զպատերան գոցէ վասեալ ուսմնաւորութեան ծիթով: Այս այլապէսպաբար անհնար է աշակերտին աճել, եթէ ոչ վարդապետն զառուս խնամութեան հեղուցու առաջի: Քանզի պէտս ունին ընթացից և փութոյ երկոքին կողմանքն. և առ 'ի շինուած մեհագունութեան երկոքանչիւրոցն զոր ինչ ըստ կարողութեան 'ի միասին բերել 'ի ներքս. միումն զլեզուն որել, իսկ միւսումն զլսելիսն պատրաստել. ումեմն զմիտսն կատարեալս ունել, և ումեմն զանձն հանդարտացեալս:

Այս այսուքիկ ոչ միայն 'ի մարմնաւորս կարեւորք, այլ և 'ի հոգեւորականն փութանքք. Զի որպէս 'ի մարմնականս ոչ այլ ազգ ազատի մանուկ տխմար՝ եթէ ոչ յուսմունս ածնիցի, նոյնպէս և 'ի հոգեւոր ուսմունս այլ ազգ 'ի զատապարտութենէ ոչ վճարի մարդ, եթէ ոչ յօրէնս տեառն խորհեսցի 'ի տուէ և 'ի գիշերի ըստ մարգարէին բանի. Այս առաջ զի այսուքիկ զայս ունին օրինակ, և ամենեքեան որք եւս առ՝ անկակից եւս Քրիստոսի, վասն զի զմի և զնոյն ունիւք առաջնորդ և վարդապետ զտէր մեր Յիսուս Քրիստոս ըստ ասելոյ աստուածայնին ձայնին եթէ "Այցիցին ամենեքեան ուսեալք յԱյ", բեր այսօր զնկրկին լսելիս զհոգեկանն ուսեալ և զմարմնականն ընդարձակագոյնս պատրաստեսցուք առ տեառն մերոյ վարդապետութիւն. որպէս զի

1 Միւսն յօժարչիոր:

նես. և յեկեղեցի, և յառաջ քան զսուրբ պատարագն արտաքս ելանես: Լսէիր յառաջէն՝ "Որ արհամարհեն զիս, արհամարհեսցի յինէն":

Օրինչ ասէ աւետարանիչն Ղուկաս. "Եւ եղև 'ի խռնել ժողովրդեանն զՅիսուսիւ, և նա էր կացեալ առ ծովակին Գեննեսարեթայ": Ով քաջալերութեան աւետեան մերոյ խնամութեանն: Գնեաց առ ծովակին կայր. և մանաւանդ մարդկան որսողն եկն 'ի ծովակն, զի զորսականս ձկանցն որսայցէ: Քանզի ոչ ինչ է դատարկ 'ի աւետարանէ Յիսուսէ Քրիստոսէ, ոչ տեղի, ոչ բան, ոչ տառակ, ոչ քեմ, ոչ խօսք, ոչ օրինակ: Վասն զի Պետրոս և Անդրէաս, Յակոբոս և Յովհաննէս զեա եւս առ ծովակին Գեննեսարեթայ գեզերէին ընդ զխաղաղական ինչ արուեստ անցանելով, յանկարծ զայսն խուռեանց ունելով, ձգելով զապականեալ զործիսն, ընդ անբախտութիւնն հակառակելով, ոչ զխոնարհեալ եթէ երբ այսպէս իցէ կերակրել, զողանալով քան թէ վաստակելով. խաբելով քան թէ հաւանեցուցանելով. զի առանց պատրաստանաց ինչ ձուկն ոչ լինի որսացեալ: Ի սոսա հայեցեալ տեառն Տծայինն ակամբն՝ պատրաստական զոլ 'ի մարդկան որս քան 'ի ձկանց, եկն 'ի ծովակն, զի զժողովուրդն ուսուսցէ և զձկնորսան կարթեսցէ: Լուր արդ զասելն նորա:

"Մտեալ Յիսուսի 'ի մի 'ի նաւուցն որ էր Սիմոնի, աղաչեաց սակաւիկ մի վերացուցանել յերկրէ": Տեսանե՞ս զիարդ մտանէր 'ի նաւն որ ոչ ունէր պէտս նաւի, զի զտէր նաւուն շահեսցի: Եւ այս զի՞ աղաչէր տէրն զՍիմոն: Եւ եթէ զի՞, լուր խնամութեանն Սիմոնի: Զամենայն գիշերն աշխատեալ և անհոգուն կացեալ, բնաւ ինչ ոչ կարացեալ որսալ ձուկն: Ընդէ՞ր. զի ամենայն ձկունքն մնային տեառն Յիսուսի, որ համդերձեալ էր ասել Սիմոնի՝ յանուն իմ արկէք զգործիս ձեր յորս: Եւ վասն զի Պետրոս զամենայն գիշերն աշխատեալ և ոչ ինչ կալեալ, մնայր անգործ և դժուարանայր յոյժ, ունայն ձեռօք լուանալով զգործիսն և աշխատութեամբ զաշխատութիւն կրելով և շահ ինչ ոչ տեսանելով, այսորիկ աղագաւ տեսեալ տէրն զՍիմոն դժուարացեալ և տխրեալ, աղաչէ զնա, քանզի մխիթարիչ է վշտացելոց: Եւ իբրև եսես տէրն զՍիմոն

ուսուցանէր զժողովուրդն 'ի նաւէ անտի : Այլ զինչ ուսուցանէր. զսէր անկեղծ, զհաւատս աներկմիտս, զխաղաղութիւն անխորամանկ, զբարեպաշտութիւն անկաղապանելի, զեղբայրսիրութիւն անհատանելի, զանձարութիւն անարծաթասէր, զողջախոհութիւն անապղծելի, զկուսութիւն անաղտ, զճգնութիւն անկորանալի, զլծակցութիւն անձեղքելի, զամենայն տարժանանս վասն Ճշմարտութեանն կրել, և մի երկնչել յայնցանէ որ սպանանեն զմարմին և զոգին ոչ կարեն սպանանել : Զայսոսիկ տէրն ուսուցանելով, և ևս յաւելուածով եթէ "Որ սիրէ զանձն իւր, կորուսցէ զնա,,. և դարձեալ. "Եթէ ոք կամեսցի գալ զկնի իմ, ուրասցի զանձն իւր և առցէ զխաչ իւր համապազ և եկեսցէ զկնի իմ,,. և անդէն "Մի ստանայք ոսկի, մի արծաթ և մի պղինձ 'ի գօտիս ձեր. մի պարկ, մի գաւազան, մի քսակ և մի երկուս պատմուճանս,,: Զայսոսիկ տէրն ուսուցանելով և Սիմոնի լսելով, որ համարէր զնաւն 'ի վարձու առեալ, սկսաւ տրտնջել յինքեան և ասել. 'ի սմանէ ես վարձս զինչ ակն ունիմ առնուլ. վայ ինձ, 'ի վնաս զտիւս անկայ ընդ գիշերայս, արդեօք զինչ պատահեսցի ինձ այսօր : Եւ վասն անստացուածութեան խօսի, ոչ ումեք ունել ինչ ուսուցանէ. արդեօք և ինձ հրամայեսցէ զնաւս վաճառել զի աղքատաց բաշխեցից : Ի սմանէ վարձս առնուլ զիարդ ակն ունիցիմ :

Զայսոսիկ Պետրոսի զմտաւ ածելով, ընդ որ տէրն զվարդապետութիւնն, զի և զսքանչելագործութիւնն իւր ցուցցէ և զՍիմոն հաւանեցուսցէ. քանզի աշխատութիւն մեծ է հաւանեցուցանել զտգէտս : Այլ 'ի կատարել զբանսն տեառն, և ամենայն ժողովրդեանն հաճոյ եղեալ, ապա մատուցեալ Սիմոն ասէ ցտէրն. բանք քո բարի են և ձայնդ քաղցր և վարդապետութիւնդ պատուական. բայց սակայն առ իս լից զոր խոստացարն և հրամայեա ինձ առնուլ զվարձ նաւարկութեանս, զի և ես ընդ ժողովրդեանդ խնդալից երթայց 'ի տուն իմ : Իսկ տէրն մեր ասէ ցՍիմոն, որպէս այժմ իսկ լուար. եթէ զվարձս քո կամիս առնուլ, Սիմոն, հան զնաւդ քո 'ի վեր 'ի խորն, և արկէք զգործիս ձեր յորս, և ահա յինէն զխոստացեալն քեզ վարձս : Իսկ Սիմոն ասէ ցտէրն. որսացայց և զգործիս արկից և այլ ես աշխա-

տաւթիւն կրեցից . Երանի թէ և զգիշերս ոչ էր աշխատեալ և ունայն ձեռօք զգործիս յաւզեալ . միթէ զահմտագոյն[1] իցես քան զիս իմոյ արուեստիս, կամ զիտակ նաւարկութեանս . կամ ստացեալ ինչ իցես յաներեւոյթ խորան, կամ ընդ ձեռամբ քոյով իցեն ձկանցն բազմութիւնք : Կարես վարդապետել, միթէ և ձկանց[2] որսորդ գաս : Այլ 'ի նաւէս աղաչեմ . քանզի տեսանեմ զքեզ զի ոչ ինչ ունիս, ընդէ՞ր և զժամանակն կորուսանեմ . ո՞չ յառաջագոյն իսկ վկայեցի զայս, և արդ արժանաւորապէս կրեցի . ընդէ՞ր ոչ յառաջագոյն զվարձն իմ խնդրեցի, այլ կարծեցի եթէ ունիցիս ինչ, և տեսանեմ այժմ բանիւք միայն հաստատացուցանելով, և համարիմ զօրս զայս իբրև զգիշերս : Իսկ տէրն մեր ասէ ցՍիմոն . մի՛ որպէս յանինչ հայիր յիս, Սիմոն . մի՛ 'ի ձեռս և 'ի ծոցս իմ հայիր . զի ոչ 'ի ձեռս, այլ 'ի բերան իմ ունիմ զվարձս քո : Ո գիշերս աշխատեալ ոչ ինչ կալար . զի գիշեր չքաւորական՝ հրէական խաւարգամութիւնք են, իսկ տիւ շնորհացն է՝ արկ զգործիսդ . վասն զի լոյս բարեպաշտութեան են քրիստոնէական հաւանութիւնք . հանէք 'ի խորն, և արկէք զգործիս ձեր յորս :

Յայնժամ ասէ Սիմոն ցտէրն . որպէս այժմ լուար, “Վարդապետ, զամենայն գիշերս աշխատեալ ոչ ինչ կալաք, բայց արդ ըստ քո բանիդ արկցուք զգործիսս : Եւ զայս արարեալ փակեցին շատ բազմութիւնս ձկանց, և պատառէին գործիքն նոցա” : Ո՛վ իրացն, ոչ պատառէին[3] հացք 'ի Պետրոսէ, զի պատառէին գործիքն, և առ Քրիստոս հայէր, զձկունսն տեսանէր և զգործն զմտաւ ածէր . և ոչ կարէր քարշել զուռանն, և օգնականս կոչէր . քանզի “ակնարկէին, ասէ, ընկերակցացն որոց 'ի միւսն նաւն՝ գալ օգնել նոցա” որ էին Յակոբոս և Յովհաննէս : Ակնարկէին, ասէ . ոչ ձայնէին, զի առանց ճչելոյ և ամբոխելոյ ոչ ինչ գործեն ձկնորսք : Ընդէ՞ր . վասն զի սքանչելիք իրացն յանձայնութիւն ածէին զնոսա . զի ոչ ինչ ունէին աղաղակել, այլ ակնարկել որպէս զօտար ինչ և սքանչելիս տեսանելով խորհուրդ :

1 Միւսն արուեստաւորագոյն ոք իցես արուեստիս իմոյ :

2 Միւսն ձկնորսող գաս :

3 Միւսն պատառէին հացքն :

զերծ, և զորս 'ի միջի սորա՝ բազմադիմեան հնար, սուր և խնձ զընութեանս զմիաւորական զհանդերձ, որպէս զի յօրինացն որպէս 'ի բանականաց խոստովանեցայց, և զչնորհըս որպէս մարգարէր տեսանէ փառաւորեցից 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր ընդ հօր և սուրբ հոգւոյն յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## Ի ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆՆ ԵՒ Ի ՄԻՇՏ ԿՈՅՍՆ ՄԱՐԻԱՄ

Սոյնպէս սքանչելութիւնք մեծայից հրաշալիք են, որք նման են պայծառութեան աստեղաց յիշատակօքն։ Քանզի զոր օրինակ աստեղք յերկինս զարդութեամբ և բազմասպիւք են կառուցեալ, և զամենայն ծիրն երկնից փայլեցուցանեն, և նոյնք առ 'ի հնդկաց տեսանելն և 'ի ափիւթացւոց ոչ ծածկեն, յերկիր փայլեն և զծով լուսաւորեն և ուղղեն զնաւելոյն, որպէս թէպէտ և վասն բազմութեան զանուանեն անգիտանալք, այլ վասն պայծառութեանն ընդ զեղեցկութիւնն յայտ զարմանանք, այսպէս և 'ի սրբոցն զիւրաքանչիւրսն. զի թէպէտ և գերեզմանս փակեալ են նշխարք նոցա, սակայն զօրութիւնք նոցա ոչ պարագրին 'ի ներքոյ երկնից։

Իսկ զի ճշմարիտ իցէ ասացեալս, արժան է քեզ 'ի նոցունց իրացն ուսանել. Պաղեստին զնշխարսն ունի զԱբրահամու, և խուղ նորա ընդ դրախտին հակառակի. քանզի որ անդ բազմաց ած ընդդէմ Սոդոմայ, աստ 'ի հայրապետէն օտարընկալ եղև[1]։ Յովսէփայ ոսկերսն մի գերեզման փակեալ ունի. իսկ ընդդէմ եգիպտացւոյն պատերազմ զծագս տխեղերաց մկրտանանէ։ Մովսէսի և ոչ գտանի իսկ գերեզմանն. և յետ մահուն քարոզի 'ի ձեռն գաւազանին հերձեալ զծովն կարմիր։ Եսայի գիտեմք իսկ ոչ եթէ ուր թաղեալ իցէ, և ամենայն եկեղեցիք 'ի ձեռն մարգարէութեան նորա աղաղակեն «Ահա կոյս յղասցի և ծնցի որդի»։ Դանիէլ 'ի Բաբելոնի թաղեցաւ, և ընդ ամենայն եր-

1 Երկու օր. օտարընկալեցաւ։

կեր աղաղակէ "Ահաւասիկ 'ի վերայ ամպոց երկնից իբրև որդի մարդոյ գայր": Որք սա Նախախնամեալքն էին ամենեքեանք՝ և նոքա 'ի Նազարեթէ նշմարեցին, և 'ի ձեռն նոցա գուշեն ամենայն տիեզերք որ ըստ օրէ "Օրհնեսցէք ամենայն գործք տեառն զտէր": Եզեկիէլ 'ի պարսիկս թաղեցաւ, և ընդ քերովբէս աղաղակէ. "Օրհնեալ են փառք տեառն 'ի տեղւոջէ իւրմէ": Այսպէս և ոչ շահեցաւ բանսարկուն մահացուցանելով զԱդամ 'ի դրախտին. քանզի եբաց մեծ արգասիս 'ի ձեռն մահուն իւրոյ դուռն համարձակութեան:

Այլ արդ ամենայն յիշատակք որքանցն հրաշալիք են, այլ ոչ այսչափ 'ի փառս ծագեաց որպէս աւընթերագոյ[1] [illegible]: Աբէլ վասն պատարագին անուանի, Ենովք վասն հաճոյ լինելոյն յիշի, Մելքիսեդեկ որպէս պատկեր մեծ քահանայի, Աբրահամ վասն հաւատոյն գովի, Իսահակ վասն օրինակ գոլոյն գովի, Յակոբ վասն զաւակաւն լինելոյ ընդ մեզ՝ երանի, Յովսէփ վասն զգաստութեանն պատուի, Յոբ վասն համբերութեանն երանելի լինի, Մովսէս որպէս օրէնսդիր բարեհամբաւի, Յեսու Նաւեան որպէս կանխաւանդիչ մեծ և զօրավար յիշատակի, Սամփսոն և այլ դատաւորքն որպէս փրկիչ ազգին Հրէից գովեցան, Եղիա որպէս նախանձաւոր մեծարի, Եսայի որպէս մեծաբան վերագրի, Դանիէլ որպէս հանճարեղ քարոզի, Եզեկիէլ որպէս տեսանող անճառելեացն սքանչանի[2], Դաւիթ որպէս հայր ըստ մարմնոյ խորհրդեանն բարեբանի, Յովսէփ որպէս խնամատուն սքանչանի:

Այլ ոչ ինչ այսպիսի որպէս մեծածին կոյսն Մարիամ. քանզի զոր նոքա ամենեքեան 'ի ձեռն օրինակի տեսին, սա յորովայնի իւրում մարմնացեալ կրեաց, և ոչ ինչ ընդդատ եղև անճառ բանին մեծ անօրէնութեանն: Սրբութեանն խանչումն. այլ յամենայն ուսուցմանց և յախտից[3] օտար է բանն: Այսպիսեաւ մեծ իմն նուազութեամբ և ոչ գարշանս ինչ կրէ մեծութիւնն. այլ զոր վերստեղծելոյն ոչ շաղախեաց, 'ի սմա մարմնացեալ և 'ի սմանէ ծնեալ՝ ոչ պղծեցաւ, այլ ևս սաս-

1 Երկու օր. աստուածընկալութեան: անանձնական:
2 Երկաթագիրն ատտա մեքայն 3 Երկաթագիրն յաղթից:

լուսոյ տունջեան. առաքեցաւ Գաբրիէլ յայտնելով զ'ի ծոց հօր՝ զնոյն 'ի գիրկս մօր. առաքեցաւ Գաբրիէլ ցուցանելով զ'ի վերայ քերովբէից նստեալն, զնոյն և 'ի յայրին. առաքեցաւ զինուորն գուժել զխորհուրդ թագաւորին. խորհուրդ որ հաւատով ճանաչի և ոչ բաղ- մտութեամբ[1] որոնի. խորհուրդ երկրպագեալ և ոչ կշռեալ. խորհուրդ մեծարեալ և ոչ որոնեալ. խորհուրդ խոստովանեալ և ոչ չափեալ:

«Ի վեցերորդում ամսեանն առաքեցաւ Գաբրիէլ առ կոյս»: Ո՞ր արդեօք վեցերորդ ամիս ասիցէ. յորմէհետէ ընկալաւ Եղիսաբեթ զաւետիսն, յորմէհետէ զՅովհաննէս յղացաւ: Եւ ուստի է այս յայտ. մեկնեսցէ ինքն հրեշտակն ասելով ցկոյսն. «Ահաւասիկ Եղիսաբեթ ազգական քո յղի է և նա, և այս վեցերորդ ամիս է նորա որ ամուլն կոչիւր». «Ի վեցերորդում ամսեանն». 'ի վեցերորդում յղութեան Յովհաննու. վասն զի պարտ էր նախ ժամանել զօրականին, պարտ էր նախ յառաջել զինուորին, պարտ էր ճանապարհ անել զգալուցչին տէրունական գալստեանն.

«Ի վեցերորդում ամսեանն առաքեցաւ Գաբրիէլ առ կոյս խօսեցեալ առն». խօսեցեալ, բայց ոչ մերձաւորեալ. խօսեցեալ, բայց պահեալ: Եւ վասն էր խօսեցեալ. զի մի արագ իմասցի ատաղակն զխորհուրդն: Քանզի պիտէր չարին եթէ 'ի ձեռն կուսի գալոց է թագաւորն, քանզի և նա լուաւ զձայնն Եսայեայ զահա կոյս յղասցի և ծնցի որդի, և յիրաւի յառաջապահ լինէր իւրաքանչիւր ումեք 'ի կուսից. որպէս զի թէ ուրեք ըղձասցէ, պարտաւանս ինչ յարեսցէ: Վասն այնորիկ 'ի ձեռն առն խօսեցելոյ եկն տէրն. քանզի խօսեալն՝ այնուհետև հարսն երաշխաւորեալ գոյր:

«Յամսեանն վեցերորդի առաքեցաւ Գաբրիէլ առ կոյս խօսեցեալ առն, որում անուն էր Յովսէփ»: Տես զինչ յաղագս առնս այսորիկ և կուսի ասէ մարգարէն. «Տացի թուղթս այս կնքեալ առն որ գիտասցէ դպրութիւն»: Թուղթս այս կնքեալ՝ ամենայն իրօք անշաղախ սուրբ կոյսն է: Բայց յումմէ տացի. յայտ է թէ 'ի քահանայիցն: Եւ ում տացի. հիւսանն Յովսեփայ:

1 Երկու օր. քաղցրաբանութեամբ:

Մարդ երանելոյն Յովսէփ 'ի բարետոհմիկ ազգէն լեալ, մինչ դեռ եւս մանուկ էր, այն ինչ մօրուքն 'ի ծնօտսն էին զուարճացեալք զօրէն վարդի ծաղկեալ 'ի մէջ շառագոյն ծնօտիցն զգլխացն ծաղիկ պսակէր, զգարնանային մանուշակի զծիրանութիւնն 'ի բիբս աչացն նմանեցուցանէր, սպիտակ ունելով զատամունսն քան ըղկաթն, և կարմիր զշրթունսն, յօնս խոնարհեալս[1] ունելով շուշանագոյնս ընդ ճակատովն՝ խորութեամբ մազոցն ընդ իրեարս լծակցեալս: Բայց զինչ եւս հրահանգիմ զպատանին գեղեցկութեամբ նկարագրել, զոր գիրք յաւէտ հրաշացեալ գովեցին ասելով. “ Բարի յոյժ տեսանելով և գեղեցիկ յոյժ դիմօք „:

Այս վաճառեալ լինէր յաղագս չարակնութեան եղբարցն, որպէս նոցա թուէր, 'ի ծառայութիւն. բայց որպէս մեզ կանխաւ էր սահմանեալ՝ 'ի թագաւորութի, և ածեալ լինէր յԵգիպտոս պատանին իբրև զմանուկ ոք անարգ. վասն զի ոչ[2] եւս տեսանէին զնորա որք զնեցինն՝ զձխութիւն առաքինութեանն, և անգիտանային զնա որ հանդերձեալն էր 'ի ձեռն ողջախոհութեանն զարդու բովանդակ Եգիպտոսի տիրել, և զբոլոր զնա կորուսեալն սովով կերակրել: Մեծեալ լինէր յԵգիպտոս, և վաճառեալ երկրորդ անգամ, այլ և ոչ մի անգամ ծառայեցաւ: Վասն զի որ բարուք է ազատ, թէպէտ և բիւր անգամ վաճառեսցի, և ոչ մի անգամ ոչ ծառայ է. որպէս դարձեալ ծառայ կարգովքն՝ եթէ բիւր անգամ ազատեսցի, ոչ մի անգամ ոչ ազատի: Զի զոր իւր բարքն ոչ ազատեն, զայնպիսին բիւր արտաքինք և սևադեղով գիրն սպիտակացուցանել ոչ կարեն:

Մեծեալ լինէր յԵգիպտոս, և վաճառեալ 'ի տուն Եգիպտացւոյն սիրելի լինէր տեառնն, սիրելի լինէր և տիկնոջն. այլ տեառն սէրն բարի էր, իսկ տիկնոջն աչարութիւն. վասն զի նա սիրէր յաղագս երկիւղիւ ծառայելոյն, իսկ միւսն վասն մոլեկան անարգելութեանն: Եւ որքան յերկարէր ժամանակն և Յովսէփու գեղեցկութիւնն 'ի վերայ ծաղկէր, նոյնքան և տիկնոջն որ 'ի նա էր չար ցանկութիւնն՝ աճէր, և արծարծեալ հուր

1 Այսպէս ուղղագրեալ 'ի ձեռագրին, որ նախ գրեալ էր խոնարհեալս. իսկ միւսն խոտան նայեցեալս:

2 Իմա չէ եւս:

բաղձանաց սրտին փաղաքէր զնա ։ Խոտրել զպատանին կարծէր, ամենայնիւ որովք պատրեն զերեսս երիտասարդաց՝ ձեռնարկէր, զդէմսն իբրև զբուրաստան ինչ ծաղկելով, սնգուրաւ զայտսն կարմրացուցանելով, և սպիտակաւ զձակատն պայծառացուցանէր, և ծարրաւ զաչսն յօրինէր, ոսկի զարդուք զպարանոցն և զձեռսն պձնէր, և զփափուկ հանդերձսն զանազան անուշահոտութեամբք բուրեցուցանէր. և էր պարզաբար որոգայթ մահաբեր, ամենայն զգալեօքն կարծէր պատրել զպատանին, զդէմսն երևելի պատմուճանօքն և զսեքսն փաղաքշական մեղութեամբքն, զհաստատելին անուշահոտութեամբն որսալ ։

Այլ տես ինձ զառաքինին. թուի ինձ և ա̃ծ ներէր հակառակ պատանւոյն գալ փորձութեանց, զի միանգամայն զծածկեալ առաքինութիւնն 'ի պատանւոջն յանդիմանեսցէ ; և եկեղեցւոյ վարդապետարան զնորա կեանսն թողուցու. վասն զի ոչ ինչ է 'ի հարցն լեալ բարի, զոր ոչ յեկեղեցւոջ իբրև զարձան ինչ զյիշատակս բանիցն բերելով հաստատեաց ա̃ծ ։ Տես ինձ զառաքինւոյ նահատակին զարութիւն որքան էին ընդ նմա մարտուցեալքն. իւր մանկութիւնն պատերազմէր ընդ նմա. հեշտութիւնքն 'ի ներքուստ մարմաջեցուցանէին, և կինն արտաքուստ մարտնչէր, պատմութեամբք[1] փաղաքշէր և ողոքանօք յանկուցանէր, և զօրս առաքէր կանայքն թախանձէին փաղաքշանօք զլսելիս նորա և զգալիս խռովէին ։ Բայց ոչ ինչ յայսցանէ հերքել[2] զնա կարաց. զի ոչ ողոքանօքն մեղկեալ զերեսանակն թողացուցանէր, և ոչ պատմութեամբքն ամբոխեալ արհամարհէր զողջախոհութիւնն, և ոչ 'ի սպառնալեացն նուաստացեալ մատնէր զփարթամութիւն առաքինութեանն. այլ զամենայն մարմնոյն իւրոյ մասունս պարկեշտ խորհրդովք սանձէր ։

Եւ իբր ոչ կարաց կինն 'ի ձեռն այնքան գործեաց կորուսանել զպատանին, ինքնեամբ ինքն 'ի տան ուրեմն գաղտնեաւ բռնաբար ունէր զնա առ անկարգ անկողինսըն ։ Եւ լինէր տեսանել մեծ տեսարան ոչ երկրաւոր,

1 Յոյնն խաղամաճէ. նոյնպէս և զկնի երկիցս ։

2 Յոյնն յաղթել ։

ցանէ, բայց ոչ իսպառ խաւարեցուցանէ. քանզի հա-
մանմբ արեգակնային լուսոյն վաղվաղակի 'ի բաց վարի:
Նոյնպէս և անուն ծառայութեան ոչ շիջուցանէ զլա-
րեւորհնութեան իմոյ նշոյլս. զի ոչ յետ բազում ինչ
ժամանակի Չաւագայթք բարուց իմոց տարածեցին, և
զամենայն զԵգիպտոս պայծառացուցեն իմոյ. քաղա-
տոհմութես գեղեցկութիւնք: Ամաչեցայ քեզ, դա-
ւանիմ և ես և ոչ ուրանամ. զծառայութեան վայելչական
սպասաւորութիւն քեզ կատարեցի. անսուտ եղէ քեզ,
անմիտս, անարատս, անմեղ, առանց դայթակղութե, ա-
ռանց ամբարտաւանութե. և ոչ մի ինչ քեզ իմոյ անա-
ռակութե չարախօսութի եղև. և այժմ կամիս ինձ ա-
նել իբրև անսուրբս, և գաղտնեաւ ընդ իս իբրև օձ շշըն-
ջես՝ կարծելով պատրել զիս, և մահաբեր սպառնալեօք
խոնարհեցուցանել առ 'ի ցանկութիւն անարգելութեց
քո գործոյ: Ո՜վ խաբիր ով կին դու, և մի հայիր յիմ
մանկութիւն. կարէ և նոր տիկ հին գինի բերել, և քը-
ռակ նոր մարգարիտս պատուականս ունել: Որ տեսա-
նես զդալարութիւնս, այլ ալեւորեալ տեսցես զբարս.
մանկադէմն բնութիւնս[1] ընձեռեաց ինձ, և ծերացեալ
միրա օրէնքն գործեցին յիս: Ո՜վ խաբիր, ոչ յաղթեա-
ցես առաքինութեանս իմոյ, ոչ յաղթեսցես Յովսէ-
փու որդւոյս Յակոբայ, Յակոբայ այնորիկ՝ որ մինչ-
դեռ յորովայնին էր՝ խաբէր, յետ այնորիկ և ընդ
հրեշտակին զօրացաւ մարտնչելով. մի խաբիր, նոյն-
պէս իբրև զհայրն իմ մարտնչիմ: Նայց և պատմու-
թեամբք զիս ողոքել կարծես. զինչ այնպիսի կարա-
ցես խոստանալ, ասա ինձ, որ իցէ իբրև զողջախոհու-
թիւն. ո՞ր թագաւորութիւն զուգահաւասարեսցէ պար-
կեշտութեան: Անգիտանա՞ս զի ողջախոհութիւն երկ-
նային ստացուած է, հրեշտակական իրք, Այյ շնորհք:
Այլ առ քեզ զպատիւդ քո, կալ զխոստմունսդ քո.
պատիւք անպատուութեան են առիթք. քո փառք
զոր խոստանաս, ամօթոյ են սկզբունք, ոսկի քո երկ-
րի ծնունդ և ժանգոյ Ձարակ. բայց իմքս Այյ է ծը-
նունդ, յաւիտենական շառաւիղ: Այլ և զանխլանալ
կարծես իրացս. անգիտանա՞ս զԱյյ անքուն ակն, որ զա-

1 Յօրինակին կենդանութիւնս. միւս օրինակն նմանակ ընդ բնութիւնս:

մնայն 'ի խաւարի և յանտեսանելւոջ լեալ իրատեսանէ. քանզի այժմ զմտաւ ածես աստ հրեշտակս կացեալս առաջի, որքանեաց վկայից լինել զիրսդ: Օ մտաւ ած, ով կին դու, զայրն քո, զեղբարսն, զազգայինս որք յաղագս պարկեշտութեան քո պարծին. խնա զմերձակայսս, զմտաւ ած զհեռաւորսն. կամ 'ի հեռաւոր մարդկանէն պատկառեա, և կամ 'ի մերձաւոր հրեշտակաց ամաչեա: Որովք աչօք այնուհետև տեսցես զայրն քո որում դժրել յօժարեցեր. զո՞ր զիրկս նմա տարածիցես զոր ապականանելն կամիս. որո՞վք բանիւք զնա ողջունեսցես զորոյ զանկողինսն քեղէն պղծես: Յիշեա որքան ինչ նմա խոստացար, զիարդ զպարկեշտութեան հաւատն պահել նմա դաւանեցեր, մինչ առաւել քան զքեզ զնա սիրել հանդերձ երդմամբ երդնունէիր[1]: Ամանեաց, ով կին դու, տատրակի. նա ընդ մի արուի խառնեալ, ընդ այլում ոչ եւս խառնի. և եթէ զիջեսցի զնորա արուն որսորդացն ըմբռնել և կամ թաչուն ոք սպանցէ, ընդ այլում արուի ոչ խառնակի. վասն զի յառաջագոյն խոստացելումն և հրաժարեցելումն կայ միայն միշտ, և առ նա անձկալով ընդ յիշատակ նորա մեռանի: Խրատեսցէ զքեզ ա̃յ երկիւղն և երբայեցւոցն օրէնք, առաջնոցն պարկեշտ առաքինութիւնք:

Օ յայտնի ասացեալ Յովսեփու տեսանէր զնա տակաւին անամօթաբար վակժայժ[2] լեալ զհանդերձիցն, բորբոքեալ առաւել եւս մոլութեամբն. վասն զի ցանկութիւնք յայնժամ առաւել առ սիրեցեալն բորբոքին, յորժամ մերձենալ 'ի նա ոչ կարասցեն, և իբրև զառաքինի ոք ըմբիշ մերկացեալ 'ի հանդերձիցն՝ բռոբակին զնա հանդերձ պատմուճանաւն յերկիր ունայնացուցանէր[3]. մերկ յաղթող վազէր արտաքս 'ի կռուարանէն, զողջախոհութեանն յաղթութիւն բառնալով: Այս լինէր եգիպտացւոյն ունել զտերևս անպտղութե. և Յովսեփու զպտուղ ողջախոհութեանն ընդունել: Խնդութիւն էր յերկինս յաղագս յաղթութեանն Յովսեփու. զուարճանային հրեշտակք, և ողբային դևք. պսակեալ լինէր Յովսեփ, և մնեալ եգիպտացին. զա-

1 Այլազգէս յօրինական. յոյնն հաստատէիր:

2 Յօրինական վակճայժ:

3 Յոյնն նուաճանէր:

Վ Րանգի յիշեմ զի յառաջագոյն խոստացայ ձեզ զերա-
նելոյն Շուշանայ զողջախոհութեանն նահատակու-
թիւն ՚ի բազմաց օգուտ քարոզել: Յորժամ էր Յով-
սէփ հակառակ եգիպտացւոյն հանգիստացեալ, ամենե-
ցուն ձեզ մարտ պարկեշտութեան ցուցանէր: Նոյն նա-
հատակեսցի և Շուշան յայսմ տեսութեան մարտի,
ուր ծեր և հրեշտակք, արք և կանայք տեսանեն. մար-
տիցէ և ուսուցէ որպէս պարտ և արժան է մանկամար-
դացն մինչև ցմահ յաղագս պարկեշտութեանն նահա-
տակել:

Սրանելյն Շուշան բարեպաշտօնեայ ազգաւ էր հան-
գիտեալ և քաջամայրեալ գեղեցկութեամբք, փափուկ
եղնգամբքն[1] ՚ի տան հայրենի լեալ, և պարկեշտ վա-
րուց օրինակաւ կրթեալ: Այլ յորժամ մանկու-
թեանն գեղեցկութիւն ՚ի նմա էր ծաղկեալ, օրինաւոր
հարսանեօք զուգեցաւ ընդ առն: Այլ զամուսնութեանն
խորհուրդս պահէր անարատ իւրում առնն, ոչ զայլ
անառակ առ երիտասարդական տարբոց գեղեցկութիւն
բերէր ՚ի տեսութիւն, ոչ զլսելեան բանայր ՚ի պատանեա-
կան երգոց գեղեցկաձայնութեան ընդունելութիւն, ոչ
զհոտոտելեան թողոյր առնուլ զերիտասարդաց հանդեր-
ձիցն զանուշահոտութիւն, և ոչ զայլ ինչ զգայութեան մեղ-
կէր վայրապար ՚ի բերանն իւրոց. զի մի որ ՚ի տանն նո-
րա էր պահեալ ողջախոհութիւնն, ապականեսցի խա-
բէութեամբք պատրանաց, և ՚ի հեշտութիւնս կործա-
նեսցի:

Վասն զի յոլովք ՚ի մեղացն. զգայութեամբ յանձինս մեր
մտանեն: Որինակ իմն անձն իբրև կայս յառագաստի ՚ի
մէջ տանն դադարեալ և ՚ի հինգ զգայութեանց իբրև
՚ի նաժշտաց ամանց սպասաւորի: Որոց զգայութեանց.
՚ի տեսանելեաց, ՚ի ճաշակելեաց, ՚ի հոտոտելեաց, ՚ի
լսելեաց և ՚ի շօշափելեաց: Այլ եթէ ոչ մի զգայու-
թիւն ապականեալ պատրեսցի, պահի անարատ և ա-
ռանց վնասու անձինն. ապա եթէ գիտեսցի տեսանե-
լեացն առանց առաջնորդութեան կալ մնալ առ երիտա-
սարդական գեղեցկութիւնն թափառեալք, առնլով զա-
ւլեկծութիւն տենչանացն աչքն ՚ի խորան տանն ընդու-

1 Փափուկ եղնգամբքն իմա ըստ յոյն ըստ լոյսին ոձոյ ՚ի ձանկամբքն:

նի, և վաղվաղակի մերկաւ հեշտութեանցն սաստանեալ՝ առ 'ի մեղսն խորասոյզ գտանի 'ի պարկեշտութենէն նուաղեալ, և ախտանայ այնուհետև զայն զոր Դաւիթ երգելով ասէ. «Եկի 'ի խորս ծովու, և պտոյտք ընկլուզին զիս»: Նմանապէս և լսելիքն եթէ բացեալ ընկալցին զգեղեցկաձայնութեանն զպատրանս՝ առ նա զմիտսն կարկառելով, զառավանդակ զինքն պաճուճական երգովքն մեղկեալ կործանէ: Իսկ ճաշակելիքն շատկերութեամբ և գինւով յոլովիւ լցեալ, առ ցնորումն և յարբեցութիւն զոգին զուգահաւասար վայրաբերեն: Իսկ հոտոտելիքն զքնքշական անուշութիւնս երիտասարդացն ընդունելով, և զոգին հանդերձ ինքեամբ կապէ ընդ նմա: Նոյնպէս իբրև զկոյս որ անպարկեշտ հագին՝ անզգամ նաժշտօք զգայութեամբքն ըմբռնի և յանարգութիւն սխալմանցն մատնի: Սոյն զի մեղք զամենայն զգայութիւնսն խելագարեցուցանելով, զօրէն գողոց գաղտնեաւ 'ի շտեմարանս սրտին մտեալ՝ բովանդակ զնա մերկացուցանեն, զամենայն ողջախոհութեանն կողոպտելով:

Այլ զգուշանայր երանելին այն հայեցուածոյն, գնացիցն, ձևոյն, լսելեացն, տեսանելեացն, հոտոտելեացն, շօշափելեացն, և էր ճշմարտապէս ըստ իմաստութեանն որ ասէ. «Պարտէզ փակեալ և աղբիւր կնքեալ»: Զի որպէս պարտէզ փակեալ ոչ յումեքէ ընդունի զզրժումն, յորում ամենայն ինչ պտղին պարկեշտութեանն խունկք. և իբրև զաղբիւր կնքեալ, յորմէ ոչ ոք յանասնակացն զողջախոհութեանն գեղեցկութիւն պղծել զօրէ:

Նորա 'ի ցանկութեան հարեալ եղեն երկու ծերքն 'ի ժողովրդեանն, որք թուէին առաջնորդել հօտին. և իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ բոցով ցանկութեանն տաչորեալ, ընկեր ընկերի զ'ի ներքս արծարծեալ զհուրն յայտնել ամաչէր: Իսկ 'ի միում աւուր երկոքեան նոքա գաղտ յիրերաց երթային դիտել զՇուշան. և գտեալ զմիմեանս քննելով խոստովանեցին իրերաց յաղագս որոյ պատճառի էին երթեալք. յայնժամ հաղորդութիւն գնելով 'ի մեղացն գործս չարութեան, առնէին խնամով զքննութիւնն և սպասէին ժամանակի թէ որպէս նմա միայնոյ հանդիպեսցին:

Դէպ երբեմն լինէր ՚ի միում աւուր մտանել Շու-շանայ ՚ի բուրաստանն առանձին խուց լոգանալ ՚ի տօթոյն. և ՚ի բաց առաքել նորա զնաժիշտսն յաղագս բերելոյ օճառ, ընթանային ՚ի վերայ յանկարծակի ծերունքն, և իբրև գայլ զորոջ ունէին՝ մոլութեամբ անարգելու-թեանն գոշել կամելով: Այլ էր Շուշան միայն ՚ի մէջ երկուց ծերոցն որպէս Դանիէլ ՚ի մէջ երկուց առիւ-ծուց, և ոչ ոք օգնական, ոչ նաժիշտք, ոչ ծառայ, ոչ ազգակից, ոչ սիրելի, ոչ դրացի, բայց միայն որ յերկնից հայէր ա͞ծ որ խափանելն կարէր. այլ ներէր լինել մար-տին, զի զծածկեալ զգործն յանդիմանեսցէ, զՇու-շանայ զողջախոհութիւնն և զծերոցն զանարգելութ͞ի. միանգամայն և կանանց մեծ վարդապետարան զՇու-շանայ նահատակութիւնն ցուցանիցէ:

Այս էր սաստիկ մարտն, մեծ հանդէս Շուշանայ ա-ռաջի կայր, մեծագոյն ևս քան զՅովսեփուն. վասն զի նա այր ընդ միում կնոջ կռուէր, իսկ սա կին ընդ եր-կուս այրս մարտնչէր: Տեսութիւն էր մեծ և վայելուչ, կին ընդ երկուս այրս մարտնչէր. և որ սքանչելին է, ե-թէ լուիցէք, որ մրցարանն բացեալ լինէր. ՚ի դրախ-տին, յորում օձն զԱդամ խաբեաց: Այս իբրև պա-տերազմական եղև մարտն, և նահատակադիրն յերկնից հայէր ՚ի կռիւն, և գունդք հրեշտակաց յառեալ սպա-սանէին. օձն յանօրէնսն, և հաւատն ՚ի պարկեշտն: Յաճախագոյն հոգք էին վասն յաղթութեան, ծերոցն զի մի ՚ի կնոջէն պարտեսցին, և Շուշանայ զի մի կո-րուսցէ զողջախոհութիւնն. նոցա զպատճառս յաղթու-թեանն դեւք պատրաստէին, և Շուշանայ զյաղթանակ ողջախոհութեանն յերկնից յօրինէին հրեշտակք:

Ամբոխէին զՇուշան անօրէնքն, և նախ առաջին բա-նիւք մարտնչէին ընդ նմա. զինչ ասելով. Ալեւորք եմք ժողովրդեանն, մեզ օրէնքն հաւատացան, ընծա-նել և կապել իշխանութիւն առաք. ոչ ոք է աստ դէտ. Լեր ընդ մեզ, վասն զի ցանկացեալ եմք քեզ. արդ թէ ոչ ախորժեսցես, վկայեմք զքէն եթէ երիտասարդ մի էր ընդ քեզ, և յաղագս այնորիկ արձակեցեր զաղ-ջկունսն ՚ի քէն: Տես որքան էին որ վտանգէին զՇու-շան, զդատապարտութիւն անարգելութեանն, երկիւղ մա-հուն, բամբասանք այնքան ժողովրդոց, ամէլութիւն

առաքեցին „ ։ Գայր նա և ծնողք իւր և այլք և մանկունքըն և ամենայն ազգակիցք իւր ։ Այլ գայր Շուշան որպէս եթէ մահու իցէ պարտական յաղագս ողջախոհութեանն, հանդերձ բազում երկիւղիւ հառաչէր վտանգեալ, ոչ զի մեղաւորն էր հանդերձեալ, այլ զի անուն չար պատրաստեալ էր թողուլ ծնողացն, և զի թշնամանս թողոյր բովանդակ ազգին ։ Այլ զոք ունէր վկայ եղելոցն 'ի դրախտին․ յորմէ ելին որք արտասուէին յաղագս նորա, սիրելիք, ազգայինք, ծնողքն, դրացիքն․ այլն ազգայր ; տուն նորա ողբայր․ և նա ինքն վշտացեալ, տխուր, արտասուէր վտանգեալ, բազում նուաստութեամբ որպէս կայր յատենի ։ Ատեան բազում էր տեսութիւնն, այ, հրեշտակաց, մարդկան ։

Յանկէին երկոքեան ծերքն՝ ձեռս հովուաց զայլքն, դնէին 'ի վերայ նորա գլխոյ, և խօսէր 'ի նոսա զբարբառ օձին ։ Այս զինչ ասէր․ « Ի զգնալն մերում երկ միայն 'ի դրախտին եմուտ դա հանդերձ երկու նաժշտովք, և 'ի բաց արձակեաց զնոսա և փակեաց զդուրս դրախտին․ եկն պատանի մի որ էր թագուցեալ, և անկաւ ընդ դմա ։ Մեք էաք յանկեան դրախտին․ և տեսանելով զլեալ անօրէնութիւնն, ընթացաք առ դոսա․ զնա ոչ կարացաք ունել, վասն զի զօրաւոր էր քան զմեզ, և բացեալ զդրունս արտաքս վազեաց․ զսա ըմբռնեցաք և հարցաք եթէ ով էր պատանին, և ոչ կամեցաւ ասել մեզ․ զայդ վկայեմք „ ։ Այս հաւատաց ժողովարանն նոցա իբրև ծերոց ժողովրդեան և դատաւորաց, և դատապարտեցին զնա մեռանել ։

Ածեալ լինէր Շուշան 'ի մահ, և ոչ ոք էր վրէժխնդիր ճշմարտութեանն և վկայ, բայց միայն այ, և ներէր լինել իրացն․ ընդէր․ զի յերկուսին կատարեալպէս ցուցցին գործքն, անօրինացն անարգելութեան չարութիւնն և զրպարտութիւնն, և երանելւոյն Շուշանայ մինչև ցմահ հաստատութիւն պարկեշտութեանն ։ Տեսանես մինչև ցերբ այ ներէ, և թողու իբրև ոսկի 'ի բովս տանջելով զարդարսն 'ի փորձութիւնս, որպէս և Աբրահամու արար ։ Ածէր զԻսահակ յողջակէզս, դանակն չլինէր, զփայտն 'ի վերայ դիզանէր, և ոչ ուրեք ոչխար․ յարձակեցաւ զենուլ․ և ապա այ ձայնիւ զձեռնն սանձեաց ։ Զայս ասեմ, զի իւրաքանչիւր ոք

'ի ձեռն յորժամ փորձիցի, թէպէտ և մերձ 'ի մահ լի-
նիցի, մի յուսահատեսցէ յիւր օգնականութենէն, այլ
մինչև 'ի վախճան վստահասցի։

Տարեալ լինէր Շուշան 'ի մահ, և ոչ ոք էր օգնա-
կան. և յորժամ ետես այնու հետև և ոչ լեալ 'ի մարդ-
կանէ զօգնականութիւն, ընթանայր մտօքն յերկինս 'ի
վեր առ հաւատարիմ վկայն և անքուն ակնն. և զինչ
ասէր հանդերձ ձայնիւ. "Աստուած յաւիտենական
ծածկագէտ, որ ճանաչես զամենայն նախ քան զլինելն
նոցա, դու գիտես զի սուտ վկայեն զինէն. և ահա մե-
ռանիմ, որ ոչ ինչ գործեցի զոր սոքա զինէն չարախօ-
սեցին"։ Եւ լուէր նմա որ ասացն "Մինչդեռ խօսե-
ցես, մերձ եմ"։

Եւ յերթալն նորա 'ի կորնչել, զարթոյց ա̃ծ զհո-
գին սուրբ 'ի մանկան տղայում որում անուն էր Դա-
նիէլ. գոչեաց ձայնիւ մեծաւ՝ մաքուր եմ ես յարենէդ
յայդմանէ։ Դարձան ամենայն ժողովուրդն և ասեն՝
զինչ է բանդ զոր դուդ խօսեցար։ Եւ նորա կացեալ
'ի մէջ ասաց. այդպէս յիմարք էք, որդիք Իսրայէլի,
ոչ հարցաքննելով և ոչ յայտնապէս գիտելով դատա-
պարտեցէք զդուստրդ Իսրայէլի. դարձարուք անդրէն
յատեան, վասն զի սուտ վկայեցին զդմանէ։ Եւ դար-
ձաւ ամենայն ժողովուրդն հանդերձ փութով։ Ասէր
Դանիէլ՝ որոշեցէք զդոսա 'ի միմեանց. եհարց զմինն
և ասէ. հնացեալ աւուրբք չարեաց, այժմ եկին մեղք
քո զորս առնէիրն յառաջագոյն. ասա ինձ՝ ընդ որո՞վ
ծառով տեսեր զդոսա զի խօսէին ընդ իրեարս։ Եւ նա
ասէ՝ ընդ հերձեաւն։ Եւ ասէ Դանիէլ. ուղղակի ստե-
ցեր 'ի քոյին գլուխ, քանզի մնայ հրեշտակ ա̃յ ունելով
զսուր հերձանել զքեզ ընդ մէջ։ Եւ 'ի բաց կացուցեալ
զնա կոչէր զմիւսն և ասէր. զաւակ Քանանու և ոչ Յու-
դայ, գեղ դորա խաբեաց զքեզ և ցանկութիւն աչաց
խոտորեցոյց զսիրտ քո. ասա ինձ, եթէ տեսեր զդո-
սա, ընդ որո՞վ ծառով էին յորժամ խօսէին ընդ մի-
մեանս։ Եւ նա ասէ՝ ընդ սղոցեաւն։ Եւ ասէ ցնա
Դանիէլ. ուղղակի և դու ստեցեր 'ի քոյին գլուխ. քան-
զի մնայ հրեշտակ ա̃յ ունելով զսուրն սղոցել զքեզ
ընդ մէջ։ Եւ աղաղակեաց ամենայն ժողովուրդն մեծա-
ձայն և ասեն. օրհնեալ է ա̃ծ որ փրկեաց զամենայն

ղջունաստեղծ 'ի նա։ Այլ ապրեցաւ յաւուր յայնմ արիւն արդար. և յետ 'ի Պաւղոսեայ առաքելոյն 'ի դիմաց Շուշանայ. "Այժմ զկնի քո անձն իմ, և զիս ընկալաւ աջ քո. նոքա զուր խնդրեցին զանձն իմ,,. անօրէն ծերքն "մտցեն 'ի ներքոյ անդնդոց երկրի, մատնեսցին 'ի ձեռս սրոյ,,. քանզի միայ, ասէ, հրեշտակ Տն ունելով զսուրն. "Բաժինք աղուեսուց եղիցին,, աղուէսքն դիւաց. "Բայց թագաւոր ուրախ եղիցի յԱծ,,. այրքն Շուշանայ. "գովեսցին ամենեքեան որ երդնուն 'ի նա,,. այս է որ հաւատաց 'ի նա. "զի խցան բերանք խօսողաց զանիրաւութիւն,,, անօրէն ծերոցն անիրաւ բերանքն։

Յայնժամ փոփոխեալ լինէր սուգ ուխտաւորաց 'ի խնդութիւն. այսինքն զուարճանային փառաւորելով զԱծ, ազգայինքն բերկրէին, զուարթնքն հրճուէին, ամենայն սուրբ նորա ուրախանային, և միաբանականին պարզերգար ամենաբաղում է սմին Տն, հրեշտակաց և մարդկան։

Տեսէք 'ի կանացի մարմնի զզօրութիւն հոգւոյն. անսէր զկնոջն զաղքատութիւն, որոյ յիշատակն կայ մնայ հանդերձ յաղթութեամբ։ Նա 'ի մարդկանէ փառաւորեցաւ, 'ի հրեշտակաց մեծարեցաւ, յԱյ պսակեցաւ։ Որոց նմա նախանձեցարուք, ով կանայք, զի նորին պատուոյ և դուք արժանաւորք լինիջիք յԱյ 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որում փառք յաւիտեանս. ամէն։

## Ի ՍԱՂՄՈՍՆ ՅԻՍՆԵՐՈՐԴ

Կենդանագիրք նման են արուեստի 'ի բնութեան. խառնելով զերանգսն ստեղծանեն զպատկերս երևելեաց մարմնոց, և առնեն մարդիկ և անասունս և ծառս, թագաւորս և ռամիկս, բարբարոս և պատերազմունս, մարտս և արեանց ուղխս, աշտարակս և զգահս և վահանս, առնեն և ամեն թագաւորական և թագաւոր նստեալ և բարբարոսք հնազանդեալ, սուր արեամբ և գետս հոսեալս և դաշտս զանազանեալս, և ամենայն տեսանելեաց 'ի ձեռն արուեստին նմանեցուցանելով ընձեռեն տեսութիւն ողջ հայելեաց։ Այսպէս և մարգա-

ըէք կենդանագիրք ունինք են տարբերութեան և չարութեան. քանզի առնեն և նոքա զմեղաւորն և զարդարն, և զապաշխարողն որ կայն և զանկեալն և զյարուցեալն և զզղջացեալն: Այլ զոր օրինակ կենդանագիրք առնեն քարքարոս և սպառնումս, նոյնպէս և նոքա առնեն զմեղսն, երբեմն 'ի վերայ եկեալս և երբեմն 'ի վայր անկեալս. նոյնպէս և զգեւս մխրտեցեալս և պատերազմեալս, այնպէս զատամնայ դրժող և յաղթահարեալ:

Այլ արդ զի այսպիսի է նոցա կենդանագրութիւնն, հանգերձ համաստութեամբ զայս ուսցուք. վասն զի զարտաքին պատկերսն տեսանելով՝ ոչ ինչ շահեսցուք 'ի բաց գնացեալ: Վասնզի զինչ օգուտ է ինձ թագաւորի կամ քաջէշխի պատկերն. թագաւոր լինել ոչ կարեմ և ոչ կամիմ. զինչ օգուտ է 'ի տեսութենէն զորոյ զզանկութիւնն ոչ ունիմ, և եթէ քաղձայցեմ՝ պատժիմ: Զինչ շահ է ինձ տեսանել զմարդ փարթամ և[1] զաղքատ. զի ոչ նախանձիմ, թէպէտ և ձախ իցէ. ոչ յաջողեմ դարձեալ զայնոսիկ անտանելով, թէպէտ և ողքամ: Արդ թող 'ի բաց զայն զերկրպարանս, և հայեաց յայս տեսութիւն: Զի եթէ տեսից քաջեաշխս, զինչ օգուտ է ինձ. իսկ եթէ տեսից զմեղաւորն 'ի վայր անկեալ և կանգնեալ, տեսութիւնն վարդապետութեան պատճառ լինի: Եթէ տեսից զարդարն կացեալ հաստատուն, տեսութիւնն ինձ յիմաստասիրութիւնն օժանդակէ. 'ի տեսութենէն ուսանիմ զկռիւն և խրատիմ զյաղթութիւնն: Եթէ տեսանիցեմ զարդարն ընկճեալ, դարձեալ իմաստնագոյն 'ի տեսութենէն լինիմ:

Այս ամենայն ոչ վայրապար ինչ և ընդ վայր ասացան, այլ վասն զի սաղմոսս այսօր մեզ ընթերցեալ[2] յայտոսիկ ածէ վարդապետութեանն պատճառս: Այլ զինչ ասէ մարգարէն. "Ողորմեա ինձ Ա̃ծ ըստ մեծի ողորմութեան քում, և ըստ բազում գթութեան քում ջնջեա զանօրէնութիւնս իմ": Այս է պատկերն. վասն զի զապաշխարող պատկեր կոչեմ: Զի զանազան իսկ տեսանեմ 'ի սաղմոսս, զմեղս 'ի վերայ եկեալս և սպանեալս,

1 Յոյնն եթէ աղքատ իցեմ, նախանձիմ. և եթէ փարթամ՝ նախանձու մաշիմ. և դարձեալ զայնոսիկ ախտանալով 'ի հաւանի լինիմ: Այդ Լող:

2 Յոյնն յաւելու և զպատկերն:

զհայրաշխարութիւնն մերձ կացեալ և մերատեկից լեալ,
զնոյ մարդասիրութիւնն 'ի վերուստ պայծառացեալ, զխ-
նամատարութիւնն ընձեռեալ, և յոլովս հալեալ ար-
տասուացն աղբիւրս խոստովանութեան: Սոյնպէս ե-
րեսք զկերպարանս պայծառացուցանէն զաղամուկս:

Բայց հարկաւոր է և զորոյ վերագիրն հաւատա-
ձեզ պատմել: Զի զոր օրինակ պատկեր 'ի վերայ կա-
լով 'ի տարրին 'ի խարսխին ունին զգիրն՝ ո՞ր թագա-
ւորին է և ո՛ր և զոր պատերազմ մղեաց, նոյնպէս և 'ի
սաղմոսն վերադոյն վերագիրն կայ, զինչ է պատճառն
և զինչ վարդապետութիւնն և զինչ արմատ և էր ա-
ղագաւ սաղմոս ասացաւ: Տուք ինձ հաւատեաւ զլսե-
լիս բանիցս, զի ոչ յաղագս զուգնալքէից է մեզ պատ-
մութիւնս:

"Սաղմոս 'ի Դաւիթ 'ի մտանել Նաթանայ մար-
գարէի,,. այս է վերնագիրն. և "Յորժամ եմուտ նա
առ Բերսաբէ կին Ուրիայ,,: Ուսցուք զինչ է Նաթան,
ուսցուք ո Բերսաբէ է, զինչ գիտութիւն Ուրիայ, և
յոր ժամ առ նա եմուտ մարգարէն, և ընդէր զսաղ-
մոսս զայս գրեաց: Զի ոչ ամենայն սաղմոսք 'ի Դա-
ւիթ են ասացեալք. ամենեքեան 'ի նմանէ, այլ ոչ ա-
մենեքեան 'ի նա ասացան. զի ոչ զինքեան զիրս եթ
պատմեաց, այլ և զայլոց թշուառութիւնս ողբերգար-
կեաց: "Առ գետս բաբելացւոց անդ նստէաք և լայաք,,:
Բացայայտ է եթէ ոչ յաղագս իւր է սաղմոսս. զի ոչ
չոգաւ իսկ 'ի Բաբելոն և ոչ ետես զբարբարոսաց գա-
ւառն. ոչ նստաւ յօտար երկրի և լալց, այլ զիրս հ-
րէիցն պատմէ: Եւ յորժամ ասէ դարձեալ. "Ծակե-
ցին զձեռս և զոտս իմ, և թուեցին զամենայն ոսկերս
իմ,,, ոչ զիւր զչարչարանսն թուեաց, այլ զխաչն և զը-
պատարագն աշխարհի քաւողեաց ազգի մերում: Արդ
զի պատկեր է զանազան ունելով զվարդապետութիւն,
երբեմն զինքեան, երբեմն զայլոց պատմելով: Եւ զի
սաղմոսս այս ոչ օտարաց ինչ պատմէ, յաղագս այնո-
րիկ ասէ. "Յորժամ եմուտ առ նա Նաթան մարգա-
րէ,,: Որպէս զի վերագիրն ոչ նէրէ մեզ մոլորել և
ոչ այլուր տանել զմիտսն, այլ եկաց մնաց զայսպիսիս
գործելով և վարդապետելով և այլ ևս իմաստս զոր
մեզ վերագիրն ասէ:

Արդ՝ հայեցարուք հաւատացեալք որք արդարք էք և որք մեղաւորք, վասն զի երկաքանչիւր կողմանցն պիտանացու է. սակայն․ արդարոյն զի մի խցէ ծոյլ, և մեղաւորին զի մի յուսահատեսցի յիւրմէ փրկութենէն։ Երկոքեան դժուարըմբռնելիք․ զի մի և արդարն պղերգացեալ՝ ի վայր կործանեսցի, և մեղաւորն յուսահատեալ ոչ կանգնեսցի։ Արդ զի մի նա՝ ի կործանմանն կայցէ և մի սա անկանիցի՝ ի կործանումն, երկոցունց կողմանցն ՝ի փրկութիւն այս լինի նախադրութեան սահմանիս պատճառ։ Քանզի հանդերձեալ եմ ասել զմեղս մարգարէին, մեծս և դժուարինս։ Այլ մի ոք՝ ի ձէնջ տարագայցէ. վասն զի ոչ մարդասիրութիւնն հաստատակաց ազգի մարդկան նախախնամութիւն ասելով և զուղղութիւնս արդարոյն գրեաց, և զյանցանսն դեղով փոփոխեաց, զի այլոց վէրքն այլոց դեղք լինիցին, և արդարոյն նաւաբեկութիւն՝ մեղաւորին նաւահանգիստ գտանիցի։ Ոչ ի յորժամ արդարն մեղանչէ, ոչ եւս յուսահատիմ ես յիւրմէ փրկութենէն. յորժամ տեսանեմ թէ յերկնից՝ ի վայր անկաւ, նորա յանցանքն ինձ կանգնելոյ պատճառք լինին։ Ոչ ի յաղագս այնորիկ և հոգւոյն շնորհ ոչ զուղղութիւնսն միայն, այլ և զմեղս արդարոյն յիշեաց. զի ոչ նոցա եւեթ նախահոգացաւ, այլ և զկնի եկելոցս։

Արդ կամիմ ցուցանել զայս առաքինի այր խոցեալ, անկեալ, մարտուցեալ պարտեալ, կանգնեալ, յաղթող, պսակեալ։ Քանզի ոչ ցուցանեմ զնա կացեալ՝ ի մեղսն, այլ և յարուցեալ, զի յերկոցունց կողմանց զու օգնեսցիս. զի յորժամ մեղիցես, մի յուսահատեսցես; այլ վաղվաղակի՝ ի յարութիւնն ընթասցիս. և մի ասիցես՝ վայ ինձ, կորեայ, պոռնկեցայ, շնացայ, սպանի. ունիս զփրկութեանն նաւահանգիստ, անդրէն ընկըրկեաց զմեղսն։ Քանզի յորժամ տեսանեմ այսքան ընկղեալ վէրս և գիշատեալ, վաղվաղակի յապաշխարութիւն ընթանամ, և համարձակիմ զարտասուացն աղբիւրս հեղուլ, զի նորա ապաշխարութեամբն հաւատամ զիմ փրկութիւնն ուսանիցիմ. Աղաչեմ ինչ ասեմք, յոլովք բազում անգամ արք և կանայք անկան ընդ դժնդակ և անբժշկելի ախտիւ. արտասուք հեղան, դեղք ծախեցան, բժշկականն արուեստն տարակուսեցաւ, դե-

ձառեցին, նոյնպէս երկիւղ էր մի գուցէ և նման նոյնպէս գործիցեն. որպէս զի երկիւղն՝ զգուշութեան մայր լինէր։

Գայր մարգարէն տարակուսեալ, տուր ինձ զմի ոք յորդւոց քոց։ Ոչ ունիմ, ասէ, այլ մանուկ փոքր՝ հովիւ ոչխարաց։ Ոչ այնպէս տեսանէ մարդ, որպէս տեսանէ ա̃ծ։ Ուր են աղձ՚նեալքն գեղեցկադիմութեան երեսաց. Ո՞ւ ինձ ասեր զբարեդիմութիւն մարմնոյ, այլ տես զգեղեցկութիւն մտացն։ Զի՞նչ է գեղեցկադէմ կին՝ գերեզման բռեալ, եթէ ողջախոհ չիցէ. ժամանակաւ խամրի, մահուամբ փտանի. բայց գեղեցկութի՛ հոգւոյն անմահ կայ մնայ և անաղտ. այլ և յայնժամ զիւր գեղեցկութիւնն առաւել ցուցանէ, յորժամ զադարեն ախտքն, և ՚ի խաղաղութեան մնան միտքն խորհրդոցն։ Արդ եթէ տեսանիցես զայր կամ զկին գեղեցիկ, մի զարմանայցես. զի և կաղնիք են ՚ի բարձումն ամբարձեալք, պտուղ ոչ ունելով, մարդկան ինչ ոչ օգտանացու, այլ միայն տեսանող. իսկ որթն յերկիր քարշեալ, և վայելչական ունի զպտուղ ողկուզոցն։ Զինչ կամէիր, որթ եթէ կաղնի. յայտ է եթէ որթ։ Զինչ քան զմեղու տրուպ, և զինչ քան զսիրամարգ գեղեցկագոյն. ո՞ր լաւ իցէ, մեղո՞ւ եթէ սիրամարգ. յայտ է եթէ մեղու։

Եկն Դաւիթ, գտեալ զիւղն օծաւ. հրամանաւն ա̃յ սպասաւորութիւն մարդոյ ՚ի վերայ նորա եդ զիւղն, և փոխանակ ծիրանեացն իւղ։ Եւ անցեալ գնաց ունելով զթագաւորութիւնն. ոչ զբահս զգենլով, ոչ վահանս, ոչ տէգս. այլ ունէր զա̃յ զկամսն, որ քան զամենայն զօրութիւնք են։

Լինէր երբեմն պատերազմի կոչ, և իւրքն էին ամբոխեալք, բարբարոսքն ՚ի վերայ եկանէին Հրէիցն։ Երթայր տեսանել զմարտն և զպատերազմն, և զբարբարոսն որ կոչէր ՚ի միայնակռուութիւն. և ոչ ոք իշխէր յառաջ երթալ և ոչ արտաքս ելանել։ Երթայր Դաւիթ և տեսանէր փայլատակեալ զպատերազմն և զլալովս անկեալս։ Հովիւն ՚ի պատերազմն, և որք էին ՚ի պատերազմին՝ յուլացեալք և ոչ զձայնն բերէին պատերազմողին. իսկ որ ՚ի լերինսն և ՚ի հօտս և յաղբերս էր դեգերեալ, առաջի դիմաց նորա կայր և ասէր. Ո՞

է անթլփատն այն որ լուտացաւ զբանակն այ,,։ Եւ տես ցնա եղբայրն. ուստի՞ է քեզ այդ հպարտութիւն։ Ո՛չ ոչն էր ամբարտաւանութիւն, այլ հաւատ. զի ոչ ամբարհաւաճութիւն, այլ երկիւղածութիւն էր ասացեալքն. յաղագս որոյ ոչ զզրահս, այլ զհաւատն զգենոյր. և ոչ հայէր 'ի նորա մեծութիւնն, այլ յամայութիւն մտացն. ոչ տեսանէր եթէ մեծ է նա, այլ զի զնաւուղիղն ոչ ունէր։ Եւ ոչ երկնչէր 'ի նմանէ, վասն զի թշնամի էր այ. քանզի թէպէտ և բիւր անգամ էր զօրաւոր, այլ յաղագս 'ի վերուստ հրամանին ամենայն իրօք էր տկարագոյն. ո՞վ է, ասէ, անթլփատն այն։ Յո՞ր զէն վստահանաս, ով Գողիաթ։ Ոչ 'ի մարմնականս, այլ 'ի հոգևորս. “Վասն զի զէն մեր ոչ է մարմնաւոր, այլ հոգևոր,,։ Եւ զիա՞րդ, զի դու փոքր ես և տկար։ Այլ մեծ է տէրն. տրուպ է նուաս, այլ որ առաքեացն՝ զօրաւոր։ Զծով արար, զվէմն պատառեաց, զսարերս փոխափոխեաց. ևս առաւել միում առն լիցի յաղթող։

Գայ առ արսն և ասէ ցնոսա. զի՞նչ տայցէ առն որ բառնայցէ զգլուխ նորա։ Յաղագս վարձուց խօսէր. ոչ զի առցէ վարձ, այլ զի զնոսա 'ի հաւատն ածցէ։ Եւ զի՞նչ եղբարքն։ Դարձեալ մախանք։ Յո՞յր ձեռն թողեր զսակաւ ոչխարսն զայնոսիկ. մեք գիտեմք զհպարտութիւն քո և զչարութիւն սրտի քո, եթէ ոչ կարէիր զպատերազմն յայտնիս տեսանել։ Ո՛վ նախանձ ախտիւք լցեալ, ո՛վ մախանք հուր անշէջ։ Զի զոր օրինակ ասր զորդն ծնանի, նոյնպէս և նախանձ զնախանձօղն մաշէ, և ընդ որում նախանձին՝ պայծառագոյն պատրաստէ։ Այսպէս և Յովսէփու և եղբարցն նորա եղև. զի որք նախանձեցանն՝ յազատութենէ 'ի ծառայութիւն ածեալք եղեն, և որ նախանձեալն լինէր՝ թագաւորէր։ Դարձեալ եղբարքն. “Մեք գիտեմք զամբարտաւանութիւն և զչարութիւն սրտի քո,,. ընդէ՞ր բնաւ և տեսանել էր քեզ զպատերազմն և որո՞վ ցանկութեամբ։ Եւ զի՞նչ նա խոստանն այր ասէր։ Զի՞նչ արարի այժմ, ո՞չ ապաքէն բանք են. և եթէ տեսանելոյ աղագաւ զպատերազմն իջի, զի՞ նախանձիս, ընդէ՞ր յաչաղես. բան տեսեր եթէ ընչից փառաւորութիւն ոչ համբերես։

ղամ, զի զիս ամաչեցուցեր, ունիմ զյանդիմանութիւն։ Այլ թէ եկեսցէ այրն իմ, զինչ ասասցից, զինչ խօսեցայց. զատանիմ յղի, սպանանէ զիս, 'ի ներքս ունիմ զյանդիմանութիւնս մեղացս։ Տեսանե՞ս զնուաբեկութիւնս գործեցելոյս. տեսանե՞ս որքան չար են մեղք։

Այլ զինչ Թագաւորն. մեղս 'ի վերայ մեղաց դնէր։ Պարտ է ընդարձակել զվէպն։ Գայր Սերխաս այր կնոջն 'ի պատերազմէն, մտանէր առ Թագաւորն։ Այլ ասէր ցնա. զինչ իցք են, Սերխաս, զիարդ պատերազմն։ Նա-սէր՝ բարի, յաղթեցաք։ Ասէր Թագաւորն եթէ զինուորն յաղթեաց, և ինքն պարտեցաւ. զինուորն զպատերազմն հնազանդեցոյց, և Թագաւորն 'ի ցանկութենէն պարտեցաւ. զօրավարն մարտիցն յաղթող եղև, և նա անպատուութեամբն 'ի վայր կործանեցաւ։ Զինուորն ասէր զպատերազմին յաղթութիւն. իսկ նա յամօթոյն և ոչ զպարտութիւնն ասել համարձակէր։ Յաղթեցաք, ասէ, և մեհագոյնք եղաք։ Ի տարակուսանս էր Թագաւորն, և ոչ զգայր յաղթութեան պատերազմին յաղագս ամօթոյ պարտութեանն որով ինքն ընկճեցաւ։ Ասէր զինուորին. երթ 'ի տուն քո և լուայիր, վայելեաց 'ի սեղան, վայելեաց 'ի կնոջ քում։ Զի թագուցանիցէ զվէրն, զի 'ի նմանէ կարծիցի մանուկն ծնեալ։ Նայց անքուն ակնն ոչ ներեաց խնայելով 'ի վերաւորեալն։

Այլ զինչ զինուորն։ Մի՛ եղիցի, ասէ. և զիարդ կարացից զքեզ տրտմեցուցանել, և ես հանգերձեալ իցեմ փափկանալ։ Զայսպիսի ասէր անգիտանալով զինուորն։ Թշնամանք լինէին Թագաւորին, զի զինուորն և ոչ զտունն իւր ախորժեաց տեսանել եկեալ 'ի պատերազմէն, և Թագաւորն այնքան անօրինեցաւ՝ վասն այսորիկ հարկ 'ի վերայ բերէր զինուորին տեսանել զիւր զկինն, զի կարասցէ զվէրն իւր ծածկել։ Այլ զինչ առնէր։ Նաև ոչ ևս գոյր հնար ծածկել զիւր զվէրն, ասէ, առ Թուղթ և գրէ այնպիսի իմն առ զօրավարն, և տայր նմա։ Զ Սերխա զինուոր առեալ կացուսջես 'ի միւս կողմն պատերազմին, որպէս զի գա սպանցի։ Այլ ընձեռէր զԹուղթն Թշուառականն։ Զմեղացն սուր բանայր հակառակ ինքեան գրեալն, և զԹուղթն բերէր արեամբ լցեալ։ Այլ կաց 'ի պատե-

զկարգ․ ամբողջութեան պատճառ լինի։ Վասնզի առ ընչեղն բազում է ամբարտաւանութիւն. իսկ առ աղքատն կինն լինի սպասաւոր և պաշտօնեայ. ծնանի մանկունս, և լինի իւրոյն մայր և դայեակ։ Բայց առ ճոխն ոչ այսպէս, այլ ծնանի զմանկունսն և ընձեռէ զնա օտարի, և զսիրելութիւնն յերկուս հատանէ ամբարտաւանութիւնն. ծնանի, և ոչ լինի մայր գեղեցիկ[1], վասն զի ոչ լինի սնուցիչ իւր մանկանն։ Իսկ Քրիստոս ոչ այսպէս. այլ ծնեալ զմեզ, և ինքն դաստիարակ եղև մեզ. և փոխանակ կերակրոց իւրով մարմնովն զմեզ կերակրեաց, և փոխանակ ըմպելեաց զարիւնն իւր արբոյց մեզ։ Տեսցուք զողջախոհութեանն զպատմութիւնն ամբողջութեանցն։ Եկն օտար առ ընչեղն այն։ Ո՞վ էր օտարն։ Ցանկութիւնն. Օ՜ի ցուցցէ զնորա պարկեշտութիւնն, օտար զձանձրապարհ ցանկութեանն կոչեաց։ Վասնզի ոչ երբէք զայլոց անձնանուիրութիւն արտեաց, և ոչ անկարգ խորգ եռեւ. այլ խոցեալ այնու կնաւ զպարկեշտութիւն վաճառեաց. և սուղ ինչ ապերախտացեալ, եկն օտարն՝ անդարձեալ ցանկութիւնն զազրագնացն այն։ Եկն օտարն առ ընչեղն, եկն առնուլ 'ի հօտիցն և յանդեայցն. առաքեաց և յափշտակեաց զորոջն աղքատին, որ 'ի ծոցն քնանէր և 'ի սեղանոյն ուտէր։

Մարդկային թագաւորն, քանզի կարծեաց օտար զդատաստան տալ, և զիրաւունսն երևեցուցանէր հանդերձ բազում պայծառութեամբ, զի ոչ է նման սիրելի ժամանեցուցանել զիրաւունսն։ Որով մեռցի, ասէ, և զորոջն չորեքպատիկ տուժեսցէ։ Հրամայէր ըստ օրինացն, զի և օրէնքն չորեքպատիկ հրամայէին զողոցն հատուցանել։ Բայց սա գերազանցեաց քան զօրէնսն. հրամայէր զայրն սպանանել, և չորեքպատիկ տալ զոչխարն. և հան զվճիռն և զդատաստանն կատարեաց։ Ընկենու զպատկերն և ասէ. դու ես, թագաւոր։ Ո՜վ հաւատոյ, մի սուր, որ հատանէ զգայութեանցն ցաւս հանճարօ յանդիմանութեամբն։ Օ՜ի յորժամ արժան էր, ծածկեաց զամբաստանութիւնն[2]. և յորժամ պիտոյ էին յանդիմանութեան, եառ և 'ի բաց կորզեաց։ Դու ես, թագաւոր։ Եւ զի՞նչ նա. «Մեղայ տեառն», ասէ։ Տես և

1 Իմա դայեակ։

2 Իմա զպատճառն կամ զամբաստանութին

այնորիկ զրկեմ, զի զմերս ուսանիցին և զգեղն. ոչ զանգիտեմ յանօթից, վասն զի ցանկամ իմում փրկութեան: Նոյնպէս և Պաւղոս ասէր, յետ թողութեան մեղացն իւրոց յարձանագրութեանցն և ասէր. «Շնորհ ունիմ զօրացուցչին իմոյ Քրիստոսի, վասն զի հաւատարիմ զիս համարեցաւ, որ յառաջագոյն հայհոյիչ և հալածիչ և թշնամանող», այժմ հաւատարիմ արար: Յաղագս այսորիկ և ես հրապարակագոյժ ասնեմ. զի եթէ ոք իցէ անարգել հայհոյիչ, եկեսցէ զի ունի յոյս փրկութեան:

Այլ դու ով Դաւիթ, վասն զի շնացար և սպանութիւն արարեր և թողութիւն յինէ առեր, ասյգր ապագաւ հռչակեցուցանես: Նոյն, ասէ, զի եթէ իցէ ոք շնացող կամ այրասպան, ուսցի եթէ կարէ փրկութեան հանդիպել: Յաղագս այնորիկ դնէ 'ի բաց զմեղս, և զապաշխարութեան ընդունի: Այսպիսի են միայն խնդրելի, եթէ քաղցրայայտ ամենեցուն արար և ուղղեցաւ: Ո՜ խորհրդ, ես ասեմ: Որպէս լուայք եթէ ապաշխարութիւն բազում և մեծամեծ թողութիւն ունի և յոլով համարձակութիւն բերէ մեզ, նոյնպէս և զայն ուսանել ձեզ հարկաւոր է, եթէ որ ընդ մեղօք անկեալ է և յոլով ամօթ ստանայ, ոչ միայն բաւական լինի ապաշխարութեանն, այլ երկնչի և դողայ մի գուցէ դարձեալ 'ի նոյն անկանիցի: Որդ կամի ցուցանել եթէ ոչ միայն զյանցուցեալսն ճանաչէ սաղմոս, այլ և զապաշխարողն: Այլ զայսորիկ 'ի ձեզ պահեմ, և մի ոք զկնի ապաշխարանացն յինքն վստահասցի, այլ մանաւանդ հաւատագոյն զիւր զապաշխարութիւնն 'ի նաւահանգստի կացուսցէ:

Կամիմ ցուցանել զնա թէ բժշկեցաւ, և լաւագոյն և զօրաւոր այնքան եղև: Այլ զիարդ յետ ցանկութեան այնորիկ անկաւ 'ի մեղս և ես բաղձանս: Դարձեալ մարտ, դարձեալ կռիւ, դարձեալ 'ի վերայ եկն նորա ցանկութիւն, դարձեալ պատերազմ խմբեցաւ, և պատերազմ դժնդակ, և իւրքն կային շուրջ: Էր աղբիւր 'ի տեղւոջն, յորում սաստկագոյն էր պատերազմն, ետես Դաւիթ 'ի պատերազմին և 'ի դժնդակագոյն ծարաւ անկանէր և ցանկայր. դարձեալ փափագումն, յորմէ ոչ արգելլաւ. յայնժամ ցանկացաւ մարմնոյ, և այսօր Ջուր ըմ-

նիսն չոգաւ, և իւրում երթալովն զամենայնութիւն պատուեաց, և ընծայս մատոյց՝ զՋուրսն գինի փոփոխելով։ Ընթացցիս որքան ախորժեսցես. իսկ յորժամ ձեռնարկեսցես, առցես զղեղն զմխարանութեանն, զի մի փորձեսցէ զձեզ սատանայ։ "Իւրաքանչիւր ոք զիւր կին կալցի"։ Երեք են պատճէնք, կուսութիւն, ամուսնութիւն, պառանկութիւն. կուսութիւն գեր 'ի վերոյ, ամուսնութիւն մէջ և պառանկութիւն 'ի վայր։ Կուսութիւն պսակ ունի, և ամուսնութիւն չափաւոր գովութիւն, իսկ պառանկութիւն տանջանս և պատուհաս։ Որք առս թէ ժուժկալիցես, եթէ կարիցես զժուժկալութիւն մարմնոյդ բառնալ, և կամիցիս զչափն զանց առնել։ Ոչ ի զօր օրինակ որք հանդերձեալ են զուղել, այնքան մանեն որքան խմանան թէ պարտ է երանել, նոյնպէս և դու զմտաւ ած որքան կարես համբերել, զի մի առաւել քան զչափն անկանիցիս արտաքս։ Յաղագս այսր ամենայնի փոհասցուք զՀայրն և զորդւոյ և զՀոգւոյն սրբոյ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## Ի ԲԱՆ ՄԱՐԳԱՐԷԻՆ ՈՐ ԱՍԷ. «ՍԱԿԱՅՆ Ի ՆԱՆԻՐ ԽՌՈՎԻ ԱՄԵՆԱՅՆ ՄԱՐԴ ԿԵՆԴԱՆԻ. ԳԱՆՁԷ ԵՒ ՈՉ ԳԻՏԷ ՈՒՄ ԺՈՂՈՎԷ»։

Ներ այժմ, սիրելի, 'ի դաւթեան երգոցն զսաղմոսականն հարցուք նուագս. և ընդ նմին զմարգարէին տեսութիւնսն յայտնապէս ցուցցուք. "Սակայն 'ի նանիր խռովի ամենայն մարդ կենդանի". խռովի և 'ի ազատ կորնչի, խռովի և որպէս չեղեալ ապականի, խռովի և յառաջ քան զհասանելն ընկղմի. որպէս հուր բորբոքեալ տաշտի և որպէս եղէգն անձրևանայ, որպէս բալ վերանայ և որպէս մոխիր գետնանայ, որպէս բոց ծօծէ և որպէս ծուխ լուծանի, որպէս ծաղիկ գեղեցկանայ և որպէս խոտ չորանայ, որպէս զամպ ակաւ և որպէս կաթիլ պակասի, որպէս պղպջակ պատառի և որպէս պատրոյգ առկայծեալ շիջանի. խռովի և զհարըստութեանն միայն զտիրելն տանի. խռովի և զժլատութեան և զնեխութեան շահս շահի. խռովի և 'ի խառ-

կարգաւորիչ լինել կենդանեաց. ոչ թէ 'ի դժոխս վասն երկրաւորիս կարգաւորեաց. մի է կենդանեաց և մեռելոց կարգաւորիչ, կշռէ իւրաքանչիւր ուրուք զարժանն։

Ո՜վ ի ունայն խորհիս, ով մեծատուն, զի գանձես և ոչ գիտես ում ժողովես զայն. զի՞ զտառապելոց և զորբոց մտեալ ես զհետ. զի՞նչ 'ի նոցանէն աղաչելով ծախիս որպէս զքո ինչ իրս տալ. զհայրենին իւրեանց կալուն և ոչ զքոյն, զձեռնադրեալն քեզ վասն նոցա և ոչ զընդ քեզ ծնեալ։ Ո՜վ որ առերն տուր, և զոր կալարն շահիս. շատ է քեզ զի տալ և ոչ առնուլ հրամայեցար, շատ է քեզ զի ընդ տառապելոցն. Քրիստոս զանձն իւր ձգեաց առ քեզ։ Նա անձրեւէ զառ 'ի ներքոյ երկնից առ հասարակ, արծաթ 'ի քէն խնդրէ. որ որոտայն և փայլատակէ, ողորմեաց քեզ, ասէ, որ զամենայն իւ ողորմութեամբ։ Նա զգեցոյց զերկինս ամպովք, զգեստ 'ի քէն խնդրէ. շատ է քեզ զի աղքատն իբրեւ զքեզ աղաչէ զքեզ։ Տուր գթա ողորմեա քեզ, ասէ, և դու զլծնող վեր 'ի վայր տանիս և ոչ աղաչելոյ նոցա հաւանիս։ Տուր նոցա զնոցայն, և 'ի հօրէն առցես զփոխարէնն։ Հայր ունին Թագաւոր, տուր նոցա և առ 'ի հօրէ նոցա զփոխարէնն զայն որ ասէ. "Ամէն ասեմ ձեզ, որովհետեւ արարէք միում 'ի փոքրկանցս յայսցանէ յիմ հաւատացելոց, ինձ արարէք"։ *

## ԱՌ ՀՐԵԱՅՍ, ՀԵԹԱՆՈՍՍ ԵՒ ՀԵՐՁՈՒԱԾՈՂՍ ԵՒ Ի ԲԱՆՆ «ԿՈՉԵՑԱՒ ՅԻՍՈՒՍ Ի ՀԱՐՍԱՆԻՍՆ»։

Ձագք ծիծռանց նստելով 'ի բունի անտառին ծնողացն գալոյ և բերելոյ զկերակուրն. և յորժամ տեսանիցեն զնոսա եկեալս, թեւ թե թեւոքն շարժեն զօդն և ճռուելով հրճուին։ Նմանապէս և ծնողքն հանդերձեալք մտանել յիւրեանց 'ի բոյնն՝ ձագուցն, յառաջագոյն յայտնելով ձագուցն զիւրեանց զգալուստն։ Նոյնպէս և դուք նստիք 'ի բունիս յայսմ յեկեղեցւոյ սպասելով մերում գալստեանս. և յորժամ տեսանիցէք զիս ե-

* Թերի եւս ճառս երկեր ժամանակս։

կեալ, Թեթև Թևօք մտաց Թռչիք ։ Արդ նման և ես համարձակեալ մերձենալով 'ի հոգևոր բազմս այս՝ նախամայնեմ փառաւորելով զԱծ իմ, որ այսպիսի ուրախ ետ ինձ սիրելիս ։ Ընծայանցն բերանոյ 'ի բերան տըւեալ լինի կերակուրն. իսկ ձեզ ոչ այսպէս, այլ 'ի բերանոյ 'ի լսելիս. և նոցայն յապականութիւն յառաջեալ անցանէ, բայց այս յանապականութիւն. նա ըզմարմինն կերակրէ, և սա զհոգի պարարէ ։ Այս ամենայն ոչ վայրապար և ոչ ընդ վայր ասացան ինձ, այլ զի յաւետարանէ այսօր ընթերցեալ տեղին յայս վարդապետութիւն մեզ օժանդակէ և հարկաւորէ զձեզ խրատել ։

" Կոչեցաւ, ասէ, Յիսուս 'ի հարսանիս ,, ։ Այլ առանց ձանձրանալոյ տուք ինձ զձեզ աղաչեմ և հայեցարուք յասացելոյս ։ Ասեն զի ունինք պատճառսն զամուսնութիւն, այլք զմանկունս, կէսք զզինուորութիւն, ոմանք զվաճառականութիւն, կէսք զաղքատութիւն և զայլ ինչ որ այսպիսի իրք են ։ Արդ ջանամ ցուցանել ձեզ, եթէ ոչ ընչեղութիւն խափանէ և ոչ աղքատութիւն, ոչ զինուորութիւն և ոչ վաճառականութիւն, ոչ ամուսնութիւնք և ոչ որդիք, ոչ ծառայութիւն, ոչ ազատ և ոչ այլ ինչ 'ի նոյնպիսեացն ։ " Կոչեցաւ Յիսուս 'ի հարսանիսն ,, ։ Չոգա՞ւ եթէ ոչ չոգաւ. յայտ է եթէ չոգաւ ։ Իսկ եթէ չոգաւ, զինչ՞ ամուսնութիւն չար իցէ. մի՞ ունիս ինչ պատասխանիս ։ Բայց ես ոչ միայն ասեմ եթէ չոգաւ, այլ ընծայս ևս մատոյց՝ զջուրն 'ի գինի փոփոխելով ։ Արդ մի պատճառեր զամուսնութիւն. տէրն քո չոգաւ 'ի հարսանիս և փառաւորեաց զնա, և դու Թշնամանես զամուսնութիւն և ասես եթէ խափանիչ է մեզ ամուսնութիւն ։ Ոչ ինչ է խափան առ բարեպաշտութիւն ։

Կամիս ուսանել եթէ ոչ ինչ վնասէ կին ունել և մանկունս. Մովսէս ո՞չ ապաքէն կին ունէր և մանկունս. Եղիա ո՞չ կոյս էր. Մովսէս ո՞չ մանանայ իջոյց յերկնից. Եղիա ո՞չ հուր իջոյց յերկնից. ո՞չ Մովսէս լորամարգի ետ ժողովրդեանն. ո՞չ Եղիա բանիւ կապեաց զերկինս. ո՞չ ընդ Մովսէսի խօսէր Աստուած. և ընդ Եղիայի նոյնպէս. ո՞չ Մովսէս զծովն եհերձ և անցոյց զժողովուրդն, և Եղիա հրեղէն կառօք համբարձաւ ։ Ո՞չ վնասեաց ինչ զնա կնութիւնն. մի խափան ինչ,

լաւ զլուծ մեղացն, զկցան և 'ի կաւոյ, որ զՀետ երթայ ձգողացն, որ ոչն վարի զօրութեամբ և ոչ եզջերացն, այլ պատրաստաքար խոնարՀեցուցանէ զպարանոցն կամողացն առ 'ի զենուլ։ Զենէք զկամաւոր սպանդդ. զենէք զկենդանաբարն զենողացն զնա. զենէ՛ք որ յետ զենլոյն ոչ մեռանի. զենէք որ յանդամսն[1] և ոչ բաժանի. զենէք զուտելին Հաշակողաց իւրոց և ոչ երբէք զըսպառելին. զենէք որ զկերողսն երանելիս գործէ։

Այս կերեալ ուրախացուք, ՙՙ զի որդիս իմ այս մեռեալ էր և եկեաց, կորուսեալ էր և գտաւ. և սկսան ուրախ լինել,,։ Ամենեքեան գիտէք զՀօգևոր ուրախութիւնն որ Հաշակեալ էք 'ի նմանէ, և զպաշտօնեայս տծային քաՀանայագործութեանն՝ նմանեալ Հրեշտակաց թևոցն՝ նուրբ կտաւոյն 'ի վերայ աՀեակ ուսոյն ունելով, ընթանալով յեկեղեցին և գոչելով։ Ո՛վ ոք յերեխայից, մի ոք յանՀաւատից քաեսաց, մի ոք 'ի չկարողաց տեսանել զզենումն զուարակին, մի ոք յանկարողաց տեսանել զերկնային արիւնն որ Հեղաւ 'ի թողութիւն մեղաց, մի՛ ոք անարժան կենդանւոյ զենմանն, մի՛ ոք ախմար և պիղծ շըթամբք Հուպ լինել ոքանչելեացն. և Հրեշտակացն յերկնուստ գոչելով, սուրբ Հայր, կամեցող զենման պարարակի զուարակիս. սուրբ որդի միանգամայն և զուարակ, որ Համապազ զենու կամաւորապէս և ոչ մեռանի. սուրբ Հոգի մխիթարիչ որ զզենումն աւարտագործես։

Այսպիսեաց 'ի ներքս կատարելով, երէց որդին յանդաստանէ եկեալ լուաւ զձայն երգոյն և զպարուց, և կոչեցեալ զմի 'ի ծառայիցն Հարցանէր՝ զի՛նչ իցէ Հընչումն խորՀրդական իմն որ Հարկանէ զիմ լսելիս։ Քան զի մարգարէն Դաւիթ նուագէ ասելով. ՙՙ Յայնժամ Հանցեն 'ի զենարան քո զուարակս,,. նոյն գործեալ յորդորէ զկոչեցեալսն յուտել, ասէ. ՙՙ Ճաշակեցէք և տեսէք զի քաղցր է տէր,,։ Պաւղոս տծային խորՀրդոցն պատմող աղաղակէ և ասէ. ՙՙ Զատիկ մեր զենաւ Քրիստոս,,. եկեղեցի տօնէ։

Ձգիպելով իմ անգ 'ի ներքս, այլք զխմն առ 'ի յեմոյ չգիտելոյ բաժանեն։ Այո, ասէ, ՙՙ զի եղբայր քո

1 Օրինակ մի անդամն։

եկեալ է, և եզեն հայր քո զեզն պարարակ զի ողջամբ ընկալաւ զնա»: Եւ նորա բարկացեալ ոչ կամէր մտանել: Բարկացաւ արդարն, նախանձու եղև ծառայ. որ[1] կոխեաց զկենցաղոյս վայելչութիւն, վերադարձն քան զնախանձն գտաւ: Եւ զի ասէ Պաւղոս «Կամիք և ես ինքնին նզովեալ գոլ վասն մարմնաւոր եղբարց իմոց»: Բայց աղէս ձևայոյց փրկիչն զբանն ոչ նախանձեցուցանելով զարդարն, այլ զի քարոզեսցէ զքաղցրութիւն հօրն, զառաւել մարդասիրութիւնն յայտնի առնելով վերջինով քըն[2]. քանզի ասէ. «Եւ հայրն ելեալ աղաչէր զնա»: Ով անճառելի իմաստութեանն ծածայքն, որ մեղաւորին ողորմեցաւ և զարդարն աղաչեաց, զանկեալն յարոյց, և զկանգնեալն ոչ եթող անկանել. զաղքատն մեծատուն եցոյց, և զմեծատունն ոչ եթող աղքատանալ նախանձու:

Եւ նա պատասխանի տուեալ ասէ ցհայր իւր. «Բազում ամք են զի ծառայեմ քեզ, և երբեք զպատուիրանաւ քով ոչ անցի, և ինձ ուլ մի ոչ ետուր երբեք զի ուրախ եղէց ընդ բարեկամսն իմ». այլ յարաժամ շրջիմ ընչկամաշկաք և մորթովք այծենեաց պակասելով նեղելով տառապելով: Իսկ իբրև եկն որդին քո այդ, որ եկեր զկեանս քո ընդ պոռնիկս, զեներ դմա զեզն պարարակ, և ոչ գտեալ բանիւ մի զզուեցեր զնա և ոչ տարազաւ գործոյցեր զերեսս քո 'ի նմանէ. այլ նոյնժամայն անձկացեալ առ դա իբրև 'ի հեռի ուղեգնացութենէ առ քեզ դարձեալ ընկալար զդա, և պատմուճանաւ պաճուճեցեր զդա, և քոյին մատանեաւ փայլեցուցեր զդա, և ոտիւ ամոդեցեր զոտս դորա, և եկեղեցի բացեր և զեղանն զարդարեցեր և զմաժակն խառնեցեր և զպարարեալ զուարակն զեներ և զհաւատացեալսն ժողովեցեր առ 'ի խրախանալ և զհրեշտակս 'ի խնդութիւն շարժեցեր և օտարս ազանչելագործութեամբ երկնի և երկրի յընթերս դրդրեցեր, և այդպիսի պարգևս շնորհեցեր արհամարհողիդ քեզ և թըշնամանողիդ զքո բարեառհմութիւնդ: Ոչինչ առաւելոց

1 Հատուածդ որ խոխեաց ... գտաւ թերակատար 'ի միում օրինակի, զի յայլս պակասեն բառքս, ըն- ծաւ 'ի յաւելեն:

2 Ումն՝ յաղթող բանիւքն որ ըղ- հետ դաս: Ամենայն օր. վերջնոյն կամ վերջնոյս:

տու անդամնդս քո տկարոյդ, զխաչդ զարմացուցոյց ընդ ծո-վուղ[1] քո յապաշխարութիւն. այլ ողորմեա ինձ ամենե-ցուն, որ յամենայնի կարող ես, և անտես առնես ըզ-մեղս մարդկան ապաշխարութեամբ։

„Իսկ հայրն ասէ ցնա. որդեակ, դու հանապազ ընդ իս ես, և ամենայն որ ինչ իմ է՝ քո է„։ Դու յիմ գըր-կացս ոչ մեկնեցար երբէք, դու զիմով եկեղեցեաւս ոչ խայտացեր երբէք, դու սաղմոսից և օրհնութեանց պա-րապես միշտ, դու զենարանի խնդ կալով զաստուծով՝ հա-մարձակութեամբ գոչես „Հայր մեր որ յերկինս, սուրբ եղիցի անուն քո„։ Իսկ սա եկն զինքն մատնեալ դա-տապարտելով, ամօթալից զերեսս յերկիր կցելով, և զորով ձայնիւ և տխուր կերպարանօք գոչեաց. „Հայր, մեղայ յերկինս և առաջի քո. չեմ արժանի կոչել որ-դի քո, արա զիս իբրև զմի՝ ի վարձկանաց քոց„։ Ո՞ ինչ ունէի առնել զայսպիսի բանս ասելով նորա. կարէի՞ չո-ղորմել որդւոյ իմոյ առ իս ապաւինելոյ, դու դատես որ տրտմեալդ ես։ Նա ոչ ընտրեցոյց՝ մարդասէր զոլով անմարդասէր[2] ինչ իրս գործել. ոչ կարեմ չողորմել զոր եսն արարի, ոչ կարեմ չգթալ յիմոց աղեացս ծնունդ։ „Որդեակ, դու հանապազ ընդ իս ես, և ամե-նայն ինչ որ իմ է քո է„։ Երկինք քո են, հաստա-տութիւն քո է, արեգակն լուսաւոր քո է, լուսին սպա-սաւորութի քո է, աստեղք զարդարանք քո են, օդ դայեակ քո, օդայինք քո, երկիր և որ ՚ի նմա քո է, ծով և որ ՚ի նմա ծնունդք՝ քո է. եկեղեցի, զենարան, զաւազան, զենումն, հրեշտակք, մարգարէք, առա-քեալք, մարտիրոսք, ներկայք, ապառնիք, յարութիւն, անմահութիւն, անապականութիւն, արքայութիւն, ա-մենայն երևելիք և իմանալիք քո են։ Միթէ զքո՞ ա-ռեալ նմա ետու. միթէ զքեզ մերկացուցի և զնա զգե-ցուցի. ո՞չ քո և նորա նոյն եմ հայր. զքեզ պատուեմ վասն առաքինութեանդ, և նմա ողորմիմ վասն դար-ձին. զքեզ վասն վարուցդ սիրեմ, և զքո եղբայրն վասն փոփոխմանն։ „Այլ քեզ ուրախանալ պարտ էր, զի եղբայր քո մեռեալ էր և եկեաց, կորուսեալ էր և գը-

1 Երկու օր. ընդ խորամանկին գնա-ծէանցդ։

2 Երկու օր. անմարդի։

տալ ,, ։ Ո՛րանգի ո՛վ որ տեսանէ զմեռեալ յարուցեալ և ոչ ուրախանայ . ո՛վ որ կորուսեալ գտանէ և ոչ խնդագայ ։ Արդ և դու որդեակ, ուրախացիր ընդ մեզ և խայտաս ընդ հրեշտակս և հանճարուրեա ընդ իս զեղբայր քո, և սաղմոսեա ընդ Դաւթեայ զհոգևորական նուագն զպատշաճն այսմ ժողովոյս . "Արդարև որոց թողան մեղք և ծածկեցան անօրէնութիւնք ,, ։

Լուայք զառակս, ծանեայք զնկատումն տէր և զգօրութիւն, ուսայք թէ որպիսի մարգարէք մեծ ունիմք ։ Արգարև առ նա ապաւինեսցուք աստլով . Տէր Յիսուս Որդի միածին որդի Աստուծոյ, մեղաք յերկինս և առաջի քո, չեմք արժանի կոչիլ որդի քո . այլ վստահանալով 'ի քո գթութիւնդ, ունիմք պանտանդ զքո մարդասիրութիւնդ . ընկալ զմեզ որպէս զերբեմն զապականիչն, որպէս զաւազակն, 'ի ձեռն նոցա յօրգորել զմեզ զամենեսեան զմեղաւորքս ընթանալ առ քո բարերարութիւնդ ։ Որպէս զնոսա կատարեալ երանելիս ցուցեր, և 'ի մեզ առաջի քո անկեալքս գթա . որպէս յարուցեր զմեռեալս խաչիւդ քո, այսպէս և զմեզ մեղօք մեռեալս յարս մարդասիրութեամբ քո, զի և մեք վայելեսցուք ընդ նոսա ։ Այլ զայս յանելով մի պաղատեսցուք, զի և նա ասասցէ առ մեզ, "Ըստ հաւատոց ձերոց եղիցի ձեզ ,, ։ Այլ դուք որ հանդերձեալ էք մկրտութեան պարգևօք վայելել, զամենայն մարդկային խորհուրդս 'ի բաց ընկեցեալ, և զհոգիս ձեր ուղղեցէք առ երկնային փեսայն . "Տէր մերձ է, մի ինչ հոգայք ,, . 'ի դուրս ելեալ է փրկողն, բժիշկն հաւատացողաց հասեալ է, բժշկարանն բացեալ է, դեղք առաջի եդեալ կան, աւազանն զամենեսեան ընդունի, շնորհն սփռեալ է, հոգևորական պատմուճանն 'ի հօրէ և յորդւոյ և 'ի հոգւոյն սրբոյ հաւատեալ տուեալ մեզ . . . ։ Որ ի նորա են փառք և պատիւ յաւիտեանս . ամէն ։

## Ի ՔԱՆԱՆԱՑԻՆ ԵՒ Ի ՓԱՐԱՒՈՆ· ԵՒ ԵԹԷ «ՈՉ ՈՐ ԿԱՄԻՆ ԵՒ ՈՉ ՈՐ ԸՆԹԱՆԱՅ, ԱՅԼ ՈՐ ՈՂՈՐՄԻՆ»։

Ծնեալ էտ և պղտորեաց զմեզ երեկորի խաւարութիւն, այլ զուարճացոյց ամենեցուն փոյթն. վասն զի ոչ հայէի յամբոխեցն անհարթութիւն, այլ 'ի լսողացն յօժարութիւն։ Այլ էր տեսանել զամբոխն զանհնիկ ամէ և սակաւիկ, բայց զյօժարութիւնն մեծային և առաքինի, և ասել եթէ "Ձեռքդ ձեռք Եսաւայ և ձայնդ ձայն Յակոբայ"։ Սակաւիկ էր ամբոխն, այլ մեծային նախանձն. և ոչ ինչ պարտ և արժան է դժուարել ընդ աղաղակ փութացելոցն, այլ հայել 'ի նախանձ լսողացն։ Զի և քանանացին աղաղակէր առ փրկիչն, բայց ոչ հայէր 'ի նոցա ամբոխ աղաղակին, այլ 'ի փութացեալ միտսն։ Բարբառէր, որպէս արդ եւս լուայք, զհետ երթալով ակերունական հետոցն. "Որդի Դաւթի, ողորմեաց ինձ"։ Ո՛վ հեթանոսաց հաւատոյն, ո՛վ Հրէից չարաբարութեանն։ Քանանացին որ յազգէ իսրայէլացւոցն 'ի բաց որոշեալ, որ ոչ ընդ որդւոցն էր սնեալ և ոչ մարգարէիցն կենակից՝ քարոզէ զճշմարտութիւնն ասելով՝ Որդի Դաւթի, ողորմեաց ինձ. և որ ընդ որդւոցն էին սնեալք և մարգարէիցն լսողք՝ զճշմարտութիւնն ուրանալով զստութիւնն հռչակեցուցանէին ասելով՝ ոչ գիտեմք զդա, սամարացի է և դև ունի։ Ո՛վ հաւատոյն հեթանոսաց, ո՛վ Հրէից չարաբարութեանն։

Տես զինձ և զանէրին ամենեցուն զխրատդ պատուէ զազգն. "Ոչ է բարւոք առնուլ զհաց մանկանցն և արկանել շանց"։ Կոչէ շունս զհեթանոսս և որդիս զիսրայէլացիսն։ Անդրէն 'ի հակառակն դարձաւ 'ի ժողովրդենէն պատիւն. պատուականքն անպատուեն, իսկ անպատուեալքըն երկիր պագանեն. որդիքն կոչեցեալք զբարեգործութիւնն ոչ ընդունին, և քանանացին շուն անուանեալ՝ 'ի բարեգործութենէն 'ի բաց ոչ կայ։ Վասն այնորիկ և փրկիչն շուն կոչեաց զկինն, ոչ զի թշնամանիցէ, այլ զի զգութն մերկացուսցէ, և ցուցցէ զհեթանոսս զի թշնամանեալք ոչ հեռանան 'ի բարեգործու-

Թենէն, իսկ Իսրայէլ բարերգործեալ ուրացաւ զփըր-կիչն: «Որդի Դաւթի, ողորմեաց ինձ»: Եւ որ ամե-նեցուն լսէր՝ լռէր, ոչ 'ի բաց առաքելով զպաղատանսն, այլ պայծառագոյն ցուցանէր զհաւատն: Քանանացի էր ազգն, այլ աբրահամեան հաւատն: «Որդի Դաւ-թի, ողորմեաց ինձ»: Եւ որ նախ քան զաղաղակ բե-րանոյ՝ լսէ աղաչանաց հոգւոց, լռէր և անսայր:

Թուեցաւ առաքելոցն որպէս թէ խիստ ոք իցէ 'ի բաց մերժելով զայնքան պաղատանս: Եւ ասէին ցնա ա-շակերտքն. «Արձակեա զնա, զի աղաղակէ զհետ մեր»: Դուք արդեօք ով Պետրոս և Անդրէաս և Փիլիպպոս, քան զփրկիչդ էք մարդասիրագոյնք. զձեզ խոնարհե-ցուցին աղաչանքդ, և զնա ոչ թախանձեսցեն: Այլ դուք ըստ երևելւոյ դատիք, ասէ, բայց ես զմիտս քննեմ. յառաջագէմ և յերկարեմ առ նմա զխնդրէն, զի մերկացուցից զպայծառ հաւատն: «Ոչ առաքեցայ, բայց առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայէլի»: Եւ արդ հովիւ իցես իսրայէլացւոցն, և ոչ ամենայն աշ-խարհի տէր և հովիւ և դարմանիչ և նախախնամող: Ոչ ասէ՝ ոչ եմ հովիւ այլոցն, այլ ոչ առաքեցայ յայն. ոչ ճշմարտապէս զայն ասէր, այլ պատճառանօք զհա-ւատն մերկացուցանէր . . . : Եղեալ պատուեալք երախ-տամոռ լինին, և սոքա 'ի Քրիստոսէ հալածեալք գո-հանան: Ո՞ր արդեօք ընդունէիր զծառայ, եթէ էիր տէր երկուց ծառայից. զո՞ր սիրէիր, որ յետ բարեգոր-ծութեանց ապերախտ լինէր, եթէ որ խրատուքն բա-րեմանէր:

Սերպարան էր եկեղեցւոյ այսմ քանանացին, որ 'ի բաց մերժեալ՝ զտէրն ոչ ուրանայր, այլ երկիր պագա-նէր նմա ասելով՝ տէր, օգնեա ինձ: Եւ փոխան զի յա-ռաջագոյն ասաց՝ «որդի Դաւթի, ողորմեաց ինձ», կար-ծելով եթէ նուաստագոյն ինչ մատուցանիցէ զպաղա-տանս պատուոյն վերստին կոչել զառաջինն զձայնն, երկ-րորդ բարեմտութեամբ զառաջինն ծածկէ. քանզի ոչ ևս կոչէ զնա որդի Դաւթի, այլ տէր՝ ասելով. «Տէր, օգնեա ինձ»: Եւ ոչ այնպէս պատասխանի տայր: Թա-խանձէին առաքեալքն 'ի ձայնն հայելով, և յառաջագէր նա զհաւատն տեսանելով, և ասէր ցնա. «Ոչ է բա-րւոք առնուլ զհաց մանկանց և արկանել շանց»: Ա՛ն-

կուռս առնէր զխորտակելացն, ոչ այնքան զնոսա պատուելով, որքան յանդիմանէր զչարաբարութիւնն։ Ո՛չ ի որ կոչէին զնոսա այսօր մանկունս, որպէս է ասացին "Որդիս ծնայ և բարձրացուցի, և նոքա զիս անարգեցին"։

Այլ շունս քանանացի, և բերէ զթշնամանեան համբերձ շնորհաւն։ Բայց տեսպան թուի ինձ և հաստատեմ, եթէ թշնամանօքն այնորիկ եղ նմա զպարկեշտութեան զկերպարան։ Շուն կոչէ, ցուցանելով զպարկեշտութիւն կենդանւոյն. շունն բնաւ չարչարանս ընդունելով ՚ի տէրունականն տանէն ոչ կայ ՚ի բաց. վարի և հալածի, առ-ևլի շունն առ դրունս տեառն իւրոյ, և ոչ հեռանայ ՚ի տանէ տեառն։ Շուն յորժամ տեսանէ զտեառնն ըղձնացս՝ լռէ, յորժամ յայլոցն զոք տեսանէ՝ խածէ[1] և հաչէ։ Հրեայք զխնդրող տեառնեն հակառակ ամ՛յ բնաւ հայհոյութիւնս և ոչ խածին։ Տես զքրիստոնեայս, որ լոյ զհայհոյութիւն ինչ ՚ի հերձուածողէ և կամ յայլմէ ումեք ՚ի մոլելոյ, վաղվաղակի խածէ և հաչէ, զոչէ ընդդէմ հակառակողաց։ Ոչ համբերէ քրիստոնեայ տեառնել զտառապանս զդէմս. այլ իբրև զշուն ՚ի տէրունական դրունս հաչէ։ Այլ որք արտաքոյ հաւատոյն են իմաստասէրքն, զշանցն անուն ողջունեցին յաղագս բարեմտութեան կենդանւոյն, և ոչ պատկառեցին յանուանէն, այլ հայեցան ՚ի բարեմտութիւն բնութեանն։

Այլ զի ընդունի մծ որք խօսին յաղագս բարեպաշտութեանն, և բամբասէ զլռեալսն և զոչ բարբառեալսն յաղագս ճշմարտութեանն, ասէ վասն խորտակելոցս այսոցիկ. "Մանկերեան իբրև շունք համրացեալք որք ոչ կարեն հաչել"։ Շուն կոչի անձն բարեմիտ առ տէրն և որ յաղագս տեառն բարբառի, ոչ իբրև թշնամանեալ։ Շուն յորժամ կատաղի, զայն ևեթ ունի նշանակ մոլութեանն, յորժամ հակառակ տեառնն զատամունսն մերացուցանէ. վասն զի ոչ երբեք ողջախոհանալով շունն ընդ տէրն կատաղի։ Ոչ ինչ այլ յանդիմանէ ըղՀրէիցն զմոլութիւն, որպէս որ ընդդէմ փրկչին հաջէին. զի զոր պարտ և արժան էր ճանաչել իբրև զտէր, զնա իբրև զտառապանս ՚ի բաց մերժեցին։ Յաղագս որոյ ամբաստան լինի զնոցանէ ասելով. "Շուրջ եղեն զինև

1 Պակասէր յօրինակին խածէ և հաչէ. յաւելու ՚ի լուսանց։

ծիր յարմարան. քանզի դու վայրենի ձիթենի էիր և հատար 'ի բնական 'ի վայրենի ձիթենւոյն և պատուաստեցար 'ի բարի ձիթենւոյն,,: Եւ զթուղթն հանդերձ հաւատութեամբ ընթեռնու, գտանէ յաւէտ զըղծումն. բայց մեք 'ի համառօտագոյն երթիցուք:

Այլ է զիսրայելեան ազգն բարի ձիթենի, և որք 'ի հեթանոսացն՝ հատեալ 'ի վայրենի ձիթենւոյն և պատուաստեալ 'ի գեղեցիկ ձիթենւոյն: Այլ է զԱբրահամու ազգն գեղեցիկ ձիթենի, և որք 'ի հեթանոսացն էին եկեալք և 'ի քաղցրութենէն Աբրահամու ճաշակեալք և 'ի մարգարէիցն՝ նուաստացուցանէ մի բարձրագոյնս ինչ խորհել: Վասնզի ոչ, ասէ, Իսրայէլ 'ի քեզ պատուաստեցաւ, և ոչ դու ընկալար զԻսրայէլ. ոչ ապաքէն նա զքեզ ընկալաւ: Առաքեալքն միթէ 'ի քէն իցեն, ոչ ապաքէն 'ի Հրէիցն. փրկիչն միթէ 'ի հեթանոսաց, ո՛չ 'ի Հրէից իցէ: Արդ ընդէ՞ր անգիտանաս զարմատն բարեաց և պարծիս. ոչ գիտես եթէ վայրենի ձիթենի էիր, և պատուաստեցար 'ի գեղեցիկ ձիթենւոյն:

Բայց թերևս ասիցես, ամենայն իրօք դարձեալ վերստին զկռիւն առնլով ընդդիմանաս, եթէ նոքա անհաւանութեամբն կոճոտեցան, և ես հաւատով կացի: Պնդեցիկ. "Մի բարձրագոյնս խորհիր, այլ երկիր. զի եթէ Ած 'ի բուն ոստոն ոչ խնայեաց, որ գուցէ և 'ի քեզ ոչ խնայեսցէ,,: Տես զառաքելական զձայնն, հայեաց յառաքելական զօրութիւնն, տես զիարդ հաստանէ արմատաքի զհպարտութիւնն. զնոսա ընկեցանէ, և զոտսա հաւանեցուցանէ մի ամբարտաւանել: "Արդ եթէ պանծայցես 'ի վերայ ոստոյ արմատոյն, ոչ դու զարմատն 'ի վեր ունիս, այլ արմատն զքեզ,,: Ասէ զի որք 'ի հեթանոսացն էին՝ պարծէին առ Իսրայելացիովքն, որպէս թէ նոքա յաղագս 'ի Քրիստոս Ածամարտն լինելոյ խզեցան, և ինքեանք կոչեցան վասն ազնուութեանն, ասէ առ նոսա այնքան յանդգնեցելոցն. "Ոչ դու զարմատն բարձեալ ունիս, այլ արմատն ըզքեզ: Արդ ասեն. խորտակեցան նոքա, և ես պատուաստեցայ,,: Բարեմտութեամբ հաւանիմ քում ձայնիդ, ընդունիմ զքո գեղեցիկ պատասխանիդ. բարւոք է; "բայց մի բարձրագոյնս խորհիր, այլ երկիր. քանզի և-

թէ ա̃ծ 'ի բնական ոստոցն ոչ խնայեաց, գուցէ և 'ի քեզ ոչ խնայեսցէ”: Որք ըստ բնութեանն ունէին զը-բարետոհմութիւնն' յաղագս անհաւատութեան ար-տաքս մերժեաց, և զքեզ ամպարտաւանեալ արտաքս ընկենու յաղագս նորին չարաբարութեանն: Եւ տես զիարդ հակառակութիւնն հատանէր երկիւղիւն:

“Եւ արդ տես զքաղցրութիւնն ա̃յ և զխստութիւն, 'ի վերայ կործանելոցն զխստութիւն, և 'ի վերայ քո զքաղցրութիւն' եթէ մնասցես 'ի քաղցրութեանն. ա-պա թէ ոչ՝ և դու խորտակեսցիս”: Տես զիարդ ահիւն զհակառակութիւնն հատանէ, և կացուցանէ զինքն 'ի մէջ հաւատարիմ ոչ 'ի հակառակել, այլ 'ի զարհուրե-ցուցանել: Ի հարցափորձել զոտար ազգ յաղագս քաջ կենաց յօժարեցուցանել փութա, որպէս զի հաճոյ լի-ցին բարեգործին. մի՛ ասեր զբարետոհմութիւնդ 'ի ձեան բալուցդ:

Եւ ապա ասէ որք 'ի հեթանոսացն էին: Ասան զի զայն 'ի մէջ բերէին հեթանոսքն. Պաւղոս առ մեզ ա-ռաքեցաւ, ոչ առ ձեզ Հրէայս. վասն հեթանոսաց է քարոզ: Այնմ ձայնի զարձեալ Պաւղոս յարմարէ զփրկական դեղ բարեպաշտութեան և ասէ. մի՛ ինչ յիս պանծայք. այո ձեր վարդապետ եմ և ոչ Հրէից, այլ ուսարուք հաւատեաւ. “Քանզի ոչ կամիմ զձեզ անգիտանալ, եղբարք, զի որքան եմ հեթանոսաց վար-դապետ, զպաշտօնութիւն իմ փառաւորեմ”: Օ՜ինչ է փառաւորեմն: Մերձ կացուցանեմ զիմ զպարկաւ-գութիւնս, յանդիման կացուցանեմ զհեթանոսս: Ըն-գէ՞ր մատուցանիցես. “Թերևս նախանձեցուցից երբէք զիմ զմարմինն, և ապրեցուցից զոմանս 'ի նոցանէ”: Ընդ ձեզ զարմանամ, զի զնոսա 'ի նախանձ բերից: Եւ այսպիսի վարելով Պաւղոս, շիջուցանէր զհակառակու-թիւնն, և 'ի ներքս մուծանէր զպայծառ բարեպաշտու-թիւնն. կոտորէր զհակառակութեան իրս, և մուծա-նէր զհամականութիւնն: Բայց 'ի յառաջիկայսն եր-թիցուք:

“Օ՜ինչ ասեմք. միթէ անիրաւութիւն իցէ յԱ՛ս-տուծոյ. մի՛ լիցի. քանզի Մովսէսի ասէ, ողորմեցայ յո-րում ողորմեցայց, և գթացայ յորս գթացայց”: Ըն-ձայնս զայս Պաւղոս ոչ յիւրմէ 'ի գիմաց ասէ, վասն

ասես ինձ՝ զի՞ եւս մեղադրէ, քանզի կամաց նորա, ասէ, ո՞վ կայ ընդդէմ,,: Սկիզբն այսուհետեւ հանդիպելոյն առնէ Պաւղոս ասելով. "Նոյ դու ո՞վ ես, մարդ, որ պատասխանի տաս Այ,,: Նստանօր ոչ է լուծումն ընդդիմաբանութեանն, այլ նախ առաջին սաստէ յանդգնեցելոյն քննել զԱյն. վասն զի ընդերանել զվիճաձգսն՝ ոչ լուծողի զխնդիրն է, այլ անձնացուցանողի զտարակուսանսն: Եթէ ասասցես ինձ զիրաւացի ասացի, լուեմ եւ ընդունիմ զձախաբանութիւնդ, այլ եւ ոչ մի յարմարութիւն ոչ ունիմ: Ընդէ՞ր մեղադրես եւ ոչ հաւանեցուցանես:

Այլ նախ առաջին պապանձեցուցանէ զյախուռաանս մարդկային յանդգնութեանն, որք իշխեննն եւ բոլորամիտ իսկ փութան բան յԱյ պահանջել յաղագս եղելոցն: "Դու ո՞վ ես մարդ որ պատասխանի տաս Այ,,: Ոչ 'ի յօրինակ ինձ հաստատակաց, քանզի պարտ եւ արժան է եւ 'ի հաստատակաց ամփոփութենէն հասանել զմիտսն: Զոր օրինակ եթէ ոք տեսանիցէ զայր ոք որ զիւր ծառայ հարկանէ, եւ մատուցեալ 'ի մէջ ասիցէ՝ ընդէ՞ր հարկանես: Նա նորա զտէրունական իշխանութիւնն 'ի ձեռն առեալ ասիցէ՝ եւ քեզ զի՞նչ փոյթ է, ո՞չ ունիմ իշխանութիւն իմում ծառայիս, ո՞չ ապաքէն իմ է, ո՞չ ընդ իմով իշխանութեամբ կայ: Նոյնպէս եւս զեկուցանողի զիշխանութիւնն, այլ ոչ ցուցանողի զյարմարութիւնն: Նա առ ընդդիմակացն վազվազակի զայրացեալն ասէ՝ զի՞նչ առ քեզ: Բայց յորժամ հալեացէ զարտմութիւնն եւ զնստուցէ զզայրացումն իւր, 'ի հանդարտութիւն եկեալ այնուհետեւ պատասխանի տանէ մեղադրողին: Զի մի զիս ստգտանիցես, ով մարդ, եթէ վայրապար զայրացայ, ուսիր զյանդգնութիւնն: Զայս եւ առաքեալ առնէ: Քանզի պահանջեալ բան 'ի վիճաձգացն՝ եթէ որում կամի ողորմի եւ ում կամի խստանայ, զի՞ եւս մեղադրէ: Վասն զի ետես արդարացեալ զձայնն ասելով "դու ո՞վ ես մարդ որ պատասխանի տաս Այ,,: Կա՞ւ օրինադրէ ստեղծողին, արարածն քննէ զարարիչն, ծառա՞յ պահանջէ բան ինչ 'ի տեառնէ: Նա ո՞չ 'ի հաստատակաց իրացդ ուսանիս. զի եւ յաղագս ազատութեան մատուցեալ ծառայ յորժամ ձգի 'ի ծառայութիւնն, ոչ իշխէ զիւր զգէտն յանդիմանն

Երաես Զակքէոս զտէրն և տեսանել ես ցանկութիւն բորբոքեցաւ. բուռն եհար զսրտէ նորա, և այլ յայլմէ եղև. փոխանակ մաքսաւորի նախանձաւոր, փոխանակ անհաւատի հաւատացեալ և փոխանակ գայլոյ ոչխար ենքազգեստ: Ո՞վ որ այնպէս ցանկայ հօր կամ մօր, ո՞վ որ այնպէս սիրեաց զկին կամ զորդիս որպէս Զակքէոս զտէրն. 'ի նոցին իսկ իրացն զոյ հնար փորձել: Քանզի զամենայն ինչս իւր վասն Քրիստոսի աղքատաց բաշխեաց, և զորս զրպարտեաց՝ չորեքկին ետ նոցա: Ով օրինակ բարւոյ աշակերտի. ով հնազանդութեան վարդապետին և ամենայն զօրութեանն, որ երևեցաւ միայն իւրոյ աշակերտին 'ի գործ եած: Չև ես զվարդապետական բանն Զաքէի տեսաց տէրն. այլ երևեցաւ միայն փափագողին, և հաւատոյն զօրութիւն 'ի սրտէ ցանկացողին 'ի վեր ձգեալ լինէր: Նոյնպէս իմն լինէր աեռատեսին. մերձեցաւ առ տէրն պաղատելով նմա զի բժշկեսցէ, և ոչ անսայր մերձենալոյ ձեռինն, այլ ինքն մօտեալ բուռն եհար զհանդերձէն գաղտնեաւ, և զօրութիւն բժշկութեանն 'ի մերձենալն իբրև 'ի աղբերէ մտանէր:

Զակքէոս անգիտանայր զոր ինչ առնէրն, ամենայն նախանձուն բերեալ և հոգևոր ցանկութեամբ բորբոքեալ՝ 'ի ժանտաթզենին ընթանայր: Իսկ տէրն խորհրդական իմն տեսանելով առէր՝ էջ 'ի ժանտաթզենւոյդ, փութա էջ. զիտեմ զքոյ զանձինդ փափագումն, զիտեմ զքոյ զամենայն զտենչանսդ, էջ այտի 'ի ժանտաթզենւոյդ: Յիշեա զի Ադամ մերկացեալ ընդ թզենեաւն թագչէր, և դու կամելով ապրել 'ի թզենւոյդ մի ընթանար: Պարտ է ինձ զայդ թզենի զօսացուցանել, և այլ անկել խաչիւ պտղաբերացու ծառ. 'ի նա փութացիր հոգւոյդ ընթացիւ, քանզի անտի պատրաստաբար յերկինս ընթացիւ և ամբարձցիս: Զջովլաւ օձն թիւր շուրջ պատեալ է, 'ի դմա ծածկեալ է, 'ի դմա որջացաւ. փութա էջ նախ քան զշշնջելն յանձն Եւայի և հաւանեցուցանել զնա 'ի հեշտ ցանկութեանցն ճաշակել: Ճեպեցիր էջ նախ քան զմերկացուցանել զքեզ զանձինդ առնլով զնորա սնոտի մտածութիւնն. փութա մինչդեռ ես մերձս կամ իջանել, քանզի 'ի տեսանելն զիս նա կարկեալ և սանձեալ է. Ճեպեցիր ի-

այսուհետեւ առաջի կայ ինձ արդարութեան պսակն զոր կազմեսցէ Քրիստոս ,, սրբովք և անթառամ ծաղկօք[1]։

Նմանողի հանդերձեալ է որդի մարդոյ ելանել յԵրուսաղէմ, ելանել ոչ զգալի ոտիւքն, այլ ա͞ծային զօրութեամբն. Ճանապարհորդեա ընդ նմա և դու, մի իբրև զՅուդաս մատնիչ հանդերձեալ, այլ իբրև զՊօղոս դաւանել խոստովանելով, մի իբրև[2] զՊետրոս յորժամ մի յաղջկանէն ուրացաւ, այլ որ առաջի Թագաւորաց քարոզէր զնա։ Հանդերձեալ է և այժմ Քրիստոս զտօնս կատարել իբրև ոչ ըստ տարւոյ տարւոյն խաչեալ լինելով, այլ արծարծել միշտ զբարեգործութեն յիշատակ։ Մեք ևս, տես զնա յաղագս քո չարչարեալ, մի լուտալով զչարչարանսն, այլ զմխիթարութիւնն օրհնելով. մի կատարելով իբրև զՀրեայ, զի մի փնոցա զչարիսն կրեսցես, այլ իբրև զաւազակն աղաչեսցես, զի 'ի դրախտին բնակեսցես. աղաչեա 'ի մեղաց, քանզի մերձեցաւ արքայութիւնն երկնից։ Լաւ է թէ կամիս ուսանել որքան ինչ զօրանայ ապաշխարութիւնն, հայեաց յաւետարանն, և ուսասցես քեզ զեղ խնամող որ ամբարէ զյաւիտենական կեանսն։

Պատմի Քրիստոս մնեալ երբեմն 'ի տան փարիսեցւոյն, և կին մի մեղաւոր մերձեցաւ առ նա խառնանելով զմեղս իւր։ Կինն այն օրինակ է եկեղեցւոյ, մեղաւոր նախ քան զՔրիստոս, այլ պարկեշտ զկնի Քրիստոսի. բոզ յառաջ քան զՔրիստոս, այլ ողջախոհ զկնի Քրիստոսի։ Մի ինչ ամաչեսցես լսելով բոզ. զի և ոչ անունդ ինչ վնասէ զքեզ. մի զինչ էրն զմնաածեր, այլ որ ինչ եղ 'ի նմա. պարծեսցիր առաւելն, զի ցուցցես զբժշկին զօրութիւն։ Զքեզ զեկուցանելով մարգարէական բանն ասէր երբեմն. ,,Գնա և առ քեզ կին բոզ և որդիս պոռնկութեան,,։ Պոռնիկ օրինակս զեկեղեցւոյ կոչեաց. որդիս պոռնկութեան զորս 'ի պղնկութենէն էր ծնեալ, 'ի ձեռն ապաշխարութեն ածան ընծայեաց։

Սակայն եկն Քրիստոս 'ի տուն փարիսեցւոյն, և կին մի մեղաւոր իւղով եծ զնա։ Իւղով զիւղն եծ, յա-

1 Ցայս վայր վախճան նախընթաց ճառին։

2 Յօրինակին պակասէր ՚ի Կ-ըն Դ։

մարդութեան ։ Այնն առէրն և զկապեալսն լուծանէր, քանզի եղեալ զկապանս օրինացն հրէից. և 'ի վերայ յաւանակին նստի, վասն զի զհեթանոսս յիւր 'ի հնազանդ կալէր ։

Այլ մի ինչ սքանչանաց յաղագս կոչմանն հեթանոսաց. անուանեալ է որ ասացն "Կարէ ած 'ի քարանցս յայսցանէ յարուցանել որդիս Աբրահամու "։ Հրեայք որդիք Աբրահամու լինէին զարդարեալս սեռանն, մախանօք հաշեալք ուրանային զշնորհն, այլ նոքա լռէին, իսկ քարինքն աղաղակէին, երկրպագուք քարանցն 'ի տէր հաւատացին ։ Օտարք օրինացն որ յօրինացն քարոզեցան՝ պատուէին, և որք զօրէնս ընթեռնուին՝ ոչ գիտէին. տեսանելով զսքանչելիսն ասէին՝ ո՞վ է սա զինի որ յԵգիպտոսէ փրկութիւնն էր արեամբ գառինն օրինակաւ եղելոյ. ո՞վ է սա յետ փայտին ապականապայծ քաղցրացուցանելոյ զջուրսն. ո՞վ է սա զինի Մովսէսեայ յաղթութեանն. ո՞վ է սա յետ լորամարգին, յետ լուսաւորելոյ կուրացն, զինի եօթն հացին. ո՞վ է սա յետ գնալոյն 'ի վերայ ծովուն, զինի տեսաւորսին, յետ դաւեր ժողովրդապետին և անդամալուծին. ո՞վ է սա յետ Ղազարու ։ Այլ զարմանալի ինչ ոչ է, ով Հրեայ, անգիտանալ քեզ ով է սա. քանզի չխմարտապէս պատրուակ կայ 'ի վերայ երեսաց քոց ։ Այլ ո՞չ տեսանես որ օրինացն լինող քեզ խոստացաւ. ո՞չ տեսանես որ նշանքն եղեալ քեզ զծնութիւնն, և յաղագս այդորիկ ասես ով է սա ։ Այլ զի նշանացն ոչ հաւատացեր, նայն ինքն չարչարանքն ընդ քեզ ուսուցեն. յորժամ տեսանիցես զդա 'ի մեռելոց յարուցեալ, յայնժամ ծանիցես ով է դա. յորժամ տեսանիցես զքաղաքն քո կործանեալ և 'ի գերութիւն մատնեալ, յայնժամ ծանիցես ով է դա. յորժամ տեսցես զամենայն աշխարհ 'ի դա հաւատացեալ, յորժամ տեսցես կզա դատել զկենդանիս և զմեռեալս, յորժամ տեսցես ընտրելոց դարս զգլուխս զդրախտին բացեալս և զձեզ կոծեալս ցեղ առ ցեղս յաղագս 'ի դա ամբարշտութեանն, յայնժամ ծանիցես ով է դա ։

Նստի 'ի վերայ յաւանակի Քրիստոս, և մանկունք յառաջնային հանդերձ ոստովք արմաւենեաց օրհնելով ։ Ամենայն ինչ նոր էր, յաւանակն մատաղ, մանկունքն տղայք. քանզի հինն էանց և ահա եղև ամե-

կեալ իւրով, սափոփով կարեկցութեան ընկերաց զարտա-
սուս այրեաց, որ թեթեւացոյց վերակացութեամբ իւ-
րով զծանրութիւն որբութեան :

Արդ զոր ինչ լեզուօք զարմանս խօսեցուք, զայն եւ
գործովք նմանեցուսցուք, զի կնիք լեզուի ձեռն է, եւ
զայս մեկնէ ձեռինն վերակացութիւն[1] որ նախանձա-
ւոր լինի բանիցս : Արդ արասցուք զաղքատսիրութիւն
յամենայնի եւ 'ի սփռել տնանկաց մի խնայեսցուք, լուի-
ցուք բանիցն տէրունականաց, լսեալ եւ խնայեալ զեր-
կիւղն եւ զփորձն՝ մի 'ի բաց խոտորեսցուք զանձինս մեր
տալ ողորմութիւն 'ի ձեռս աղքատաց : Վասնզի հա-
տանքն ոչ պատուելով զմարդասիրութիւն յառաջա-
տէն արտաքս անկան : Ո՞ր քաղցր յոյսն է մեղաւորաց,
որք տմարդութեամբն թշնամանեցան : Այս խիղճ
զգոյշ առնեսցէ առ բազմաց ծուլացելոց անձինս, որ ոչ
ինչ միասէն զբարեմիտսն, այլ եւ առնուլ ջերմագոյնս
յորդորէ 'ի բարեպաշտութիւն :

Արդ տես, եղբայր, մինչդեռ կայ ժողով աշխարհա-
կան վաճառուս, զոր ինչ վասն պատասխանատուութեան
է՝ վաճառեա. յառաջ քան զգնել ախտաւորն ցոյց զողբս,
ժամանեա 'ի գալուստ փեսային. ընթացիր սրագոյն
քան զմեղս յառաջ քան զժամանակակէտ այցելու-
թեանն : Աշխատեա զդատաւորն. մի առնուլ յանձն
կալ առաջի ահաւոր բեմին մերկ : Այժմ ճապաղեա
զգոյշ, զի յայնժամ լուծցես զմեղադրանսն. խօսեաց
ընդ դատաւորին աւանձինն, զի մի յանդիմանն ամենե-
ցուն դատապարտեսցէ զքեզ. առ միջնորդ 'ի մխիթա-
րութիւն քեզ զտնանկսն, 'ի ձեռն նոցա տուր ընծայ
դատաւորին, 'ի նա միայն վստահացիր զայնպիսի խոր-
հուրդ : Աղքատն առնու, եւ դատաւորն ստորագրէ ըզ-
թողութիւնն. առանց գրոյ ընդունի եւ յառաջ բերէ
զձեռագիրն : “Զի որ ողորմի աղքատին, փոխ տայ Այ„.
զի զոր աստ տաս 'ի ձեռս աղքատաց, զայն անդ գտցես
'ի ձեռաց դատաւորին :

Իսկ արդ եթէ կամիցիս զերծանել 'ի դատաստանէն,
փութա աստ 'ի ձեռն աղքատաց աղաչել զդատաւորն :
Իսկ այսպէս իսկ զմեր վախճանն գրեսցուք յօրինակս 'ի

1 Օրինակ մի Վերակացութեան :

տել ։ Ջանացեալ եմ դարձեալ ցուցանել զԹովմասու զյաւարինաւորն անհաւատութեան փորձելն յարութեան, և 'ի վերջոյ յետ անհաւատութեանն և շօշափելոյն հաւատա-ցեալ, և տէր և Աստուած զնա անուանելով ։ Զգեցէք առ իս 'ի մտաւորն զգեստս ձեր, և հանդարտութեամբ նուաստ բանիցս խորոց անսացէք, զի և դուք զաւ 'ի նոցանէ զօ-գուտն պտղաբերեսջիք ։

Վասնզի փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի խաղեալ զամենակեր արարչին դժոխոց, և եղեալ անդրանիկ 'ի մեռելոց. և զդրացն փակելովք եմուտ առ աշակերտսն, Թովմաս անուանեալն երկուորեակ ոչ էր ընդ նոսա. Որպէս պատմեցելեացն. փափագելեաւն ընդ նոսա, և որ փա-փագէրն՝ Թաղեալ լինի 'ի բացեայ. Հովիւն քաջ և բա-րի հաւանէր, և ոչխարն արտաքոյ գաւթին մնացեալ կայր. Թագաւորն երկնից մերձենալով գայր հաւանէր, և զօրականն արտաքոյ ուրեմն Աստուածային զօրուն դեգե-րէր ։ Այլ էր արդեօք այս Աստուածային անտեսութեանն խոր-հուրդ՝ ոչ լինել մերձ աշակերտացն. Զի թէ էր ար-դեօք մերձ լեալ, ոչ էր երկմտեալ. և եթէ ոչ էր երկ-մտեալ, թերևս ոչ էր վիճաբանեալ. և եթէ չէր ե-դեալ վէճ, թերևս արդեօք ոչ էր շօշափեալ. և եթէ ոչ էր շօշափեալ, ոչ արդեօք էր հաւատացեալ. և եթէ ոչ էր հաւատացեալ, թերևս ոչ այնպէս ցուցեալ էր մեզ հաւատալ ։ Արդէն զի անհաւատութիւնն Թով-մայի մայր եղև մերոյ հաւատոյս ։ Այլ վասն այսորիկ մեք ոչ տեսանելով զՔրիստոս վերօրհնեալք զնա, վասն զի նա տեսանելով զնա երկբայեցաւ. յաղագս որոյ և մեք ոչ շօշափեալ վերօրհնեալք զնա վասն զի նա խարխք ձե-ռօքն կալեալ զանէր մեր վերօրհնեալ ։

Իսկ և եկն Թովմաս յետոյ, ասէին աշակերտքն՝ ե-թէ տեսաք զՏէրն. տեսաք զասողն՝ եթէ յետ երից ա-ւուրց յառնեմ, և զճշմարտութիւն բանիցն 'ի գործոցն գտաք. տեսաք զասողն որ ասէր "Ես եմ յարութիւն և կեանք". զանցն կեանս և յարութիւն 'ի կենդանի ըն-կալաք ։ Տեսաք զասողն որ ասէրն "Իշխանութիւն ու-նիմ դնել զանձն իմ. և իշխանութիւն ունիմ միւսան-գամ առնուլ զնա". և զիշխանութիւն նորա նորին գոր-ծովք ընկալաք ։ Այհաւ յանկարծակի փրկիչն մեր ընդ յարկս, ոչ զդուրսն բանալով գայ. իսկ մեք ընդ պայծ-

Այս մինչդեռ զայս այսպէս առնէր Թադէոս առ աշա-
կերտակիցսն իւր, եմուտ առ նոսա Յիսուս դրօքն փա-
կելովք. եմուտ դուռն կենաց որպէս և գիտէ ինքն մի-
այն։ Զի որպէս ծնաւ և զկուսութեան դուռն ոչ ա-
պականեաց, նոյնպէս և ՚ի ներքս տանն գնաց, և բղ-
փակս տանն ոչ ընկէց ՚ի բաց. և դարձեալ որպէս յա-
րեաւ ՚ի գերեզմանէն կնքեալ մատանեաւք, նոյնպէս ե-
մուտ ՚ի տունն դրօքն փակելովք որպէս և կամեցաւ, և
արգելոյր զնա և ոչ ինչ. զի ամենայն ինչ ըստ կամաց
նորա ընթանայ, վասն զի ա͞ծ էր և տէր գոլով։ Այն-
պէս և ծնունդ նորա յաղթէ ամենայն բանի, և ՚ի գե-
րեզմանէ դարձ նորա գերազանցէ քան զամենայն միտս,
նմանապէս և առ աշակերտսն իւր երևեալ անճառելի
և անպատում մտիւք։

Վասն զի եթէ եմուտ՝ ընկալայ, իսկ եթէ զիարդ ե-
մուտ՝ ոչ ես ուսայ, ոչ ընկալայ և ոչ ես ասել յանդգ-
նիմ։ Օրհնեմ զմեծութիւն, և ոչ հետաքննին լինիմ մտա-
ցածին բանիւք. քարոզեմ զխորհուրդն, և ոչ թարգ-
մանեմ զանթարգմանելին. սքանչանամ ընդ եղելումն,
իսկ եթէ զիարդ եղև՝ ոչ խնդրեմ. հաւատամ գրելոցն
անխառնաբար և ապրիմ, զի լուռ եմ սքանչելեացն տե-
րունականաց, և ոչ խնդրող եմ ա͞ծային ազդմանցն։ Այս
Թէպէտ ոք ՚ի հրէիցն ասիցէ ցիս, ստուգս ինչ քարո-
զես ամենեւին, եթէ զիարդ կարէր ընդ փակեալ դրունսն
անցանել մարմինն և ոչ բանալ զնա, տացի և ես ցնա.
զիարդ կարաց հրեշտակն իջուցանել զԱմբակում ՚ի
գուբն առիւծուց և անտի հանել, և զկնիքն որ ՚ի վե-
րայ կային՝ ողջ թողուլ։ Արդ որպէս ծառայն զոր ինչ
կամեցաւ և արար, նոյնպէս և տէրն զոր ինչ կամեցաւն
կարաց առնել. և այն լինի ՚ի կամելն ա͞յ, և այս լինի
մարդասիրելոյ բանին կամօք։

Եմուտ առ աշակերտսն իւր ճշմարտութեամբ՝ որ-
պէս կամեցաւ՝ փրկիչն մեր, և եկաց ՚ի միջի՝ զի ամե-
նեցուն ողորմեսցի, և ասէ ցնոսա. “Խաղաղութիւն
ընդ ձեզ”. խաղաղութիւն եմ և խաղաղութիւն շնոր-
հեմ ձեզ. զի զոր ինչ բնաւորեցայն՝ զայն տաց ձեզ։
Խաղաղութիւնս այս զամենայն պատերազմունս հնա-
զանդեցուցանէ ընդ ոտիւք ձերովք։ Այս խաղաղութի
զիշխանս արտաքսէ ծառայս ձեզ. այս խաղաղութիւն

ընդդէմ արարածոց ախտեան։ Այլ խնդրեսցին աշակերտա-
քըն դարձեալ ընդ աներեւութական երեւումն, զի ծայրն
արժանաւորք եղեն. և արմկունքն¹ խոթէին զԹովմաս
և անհնարկէին աչօք և ասէին ցնա. ո՞չ ասացաք քեզ
յառաջագոյն եթէ տեսաք զՏէր, և ոչ հաւատացեր
մերոց բանիցս, արդ ահա եկն ինքնին խակ փափագե-
լին, վայելեա որպէս և խնդրեցեր, փարփկացիր և մատիր
առ նա որ վասն մերոյ փրկութեան եկն առ մեզ, և ա-
ղխնդրութեանց վայելուչս։ Իսկ Թովմաս կայր արձա-
կերպով զաչսն յամենայն անդամս մարմնոյն, ուշ դնե-
լով ամենայնի եթէ ճշմարիտ նա՞ իցէ որ մեռաւն և յա-
րեաւ, նա՞ իցէ որ եկն առ նոսա։

Ոչինչ ասաց առ նա միայն բարերարն և մարդասէրն,
որ կամի զամենայն մարդկան ապրել և 'ի գիտութիւն
ճշմարտութեան հասանել։ "Բե՛ր," ասէ, "զմատունս
քո այսր և տես զձեռս իմ"։ Ո՛հ վասն քո եկի առ
քեզ, և վասն քո դարձեալ հասի այսր. վասն քո արկի
զձեռս իմ ընդ բեւեռօք, զի քեզ անթերեւեցից զփրկութիւն
անփչտանալի։ Մերձեցիր առ իս մարմնով և հոգւով և
հաւատով. ուսիր յայտնապէս զոր ցանկացարն ու-
նել, և որպէս կամիս տեղեկացիր։ Շօշափեա ձեռօք ծա-
նիր զկամաւոր զիմ զանհուն վէրս. դնեա առաջի քո
զամենայն անդամս իմ առ 'ի յուզել. չհամարիմ անօթ
զմարմնոյ իմոյ զվէրս. ոչ պատկառիմ 'ի մարմնոյս իմոյ
խոցմանէ զոր ընկալայ վասն ձեր. ոչ թագուցանեմ զխա-
ւաց իմոց և զյաղթութեան զյաղթանակ, աշխարհահռչակ
առնեմ ամ արարածոց յայտ յանդիմանս։ Գիտէ զայս
արեգակն, վասն որոյ և խաւարեցաւ և զտիւն գիշեր ա-
րարչագործեաց². գիտէ զայս և երկիր, յաղագս որոյ
խնդրեաց տեղի փախստեան. գիտեն զայս և վէմք,
վասն որոյ և պատառեցան, զի զիմ սուգն ողբասցեն.
գիտէ զայս և վարագոյր տաճարին, վասն որոյ և պա-
տառեալ՝ յառաջագոյն ողբալով զՀրէիցն զկործանումն.
գիտեն զայս գիտեն և մեռեալքն, վասն որոյ 'ի գերեզմանացն
արտաքս ընթացան։ Տես և դու զձեռս իմ որպէս և կո-

1 Օրինակ մի արմնկունքն։

2 Այդ է հարազատ իմաստ բառ-
մոյ օրինակին և ըստ յունակա-
նին, ուր միւս երկաքն ունին գի-
շեր արար լուսագործեաց. Թերևս զար-
տուղղիր նախատակ օրինակին ա-
[illegible] պայդուես ընթերցեալ. իսկ
լատինն Թարգմանէ գիշեր եղեւ։

մատունս մեր առաքիչն, այլ ինքն իսկ յորդորէ զմեզ և ասէ. «Առէք կերայք, և արբէք. այս է մարմին իմ». բերէք զձեռս ձեր և արկէք ՚ի կողս իմ, և յիմոց անդամոցս վայելեցէք։ Արդ մատիցուք ամենեքեան մաքրաբար, սրբութեամբ ընդունելով զտէրն մեր. մի արհամարհանօք մատիցուք առ նա, այլ հաւատով և սրբութեամբ, զի խոստացեալ բարեացն հասցուք ՚ի Քրիստոս Յիսուս ՚ի տէր մեր, որում փառք յաւիտեանս. ամէն։

## Ի ՎԵՐԱՑՈՒՄՆ ՏԵԱՌՆ

Պայծառ է ինձ այսօր եկեղեցւոյս տեսարան, ոչ ծիծաղմունս մարդկայինս գործեցեալ ընդունայնս, այլ յոյժ սուրբ բանսարկութիւն։ Քանզի տեսանէ ՚ի վեր զոր ՚ի խոնարհս մեռեալ զյարութեանն արմատ. տեսանէ զոր ՚ի խոնարհ ՚ի նմանէ խաչի մատնեալ՝ ՚ի յերկնուստ հայեցող ՚ի վերայ նորա. տեսանէ զերկիր հրեշտակօք լցեալ. տեսանէ՝ հրաշափառապէս ընդ օդս գնացեալ. տեսանէ զերկնայինսն ընդ առաջ խաղացեալս, և զոմանս ասացողս «Համբարձէք իշխանք զդրունս ձեր ՚ի վեր, և համբարձցին դրունք յաւիտենից, և մտցէ Թագաւոր փառաց». և զոմանս դարձեալ ընդ առաջ գալով՝ ողջունելով և ասելով. «Տէր հզօր զօրութեամբ, տէր հզօր ՚ի պատերազմի», զոր վասն մեր առ հասարակս Թըշնամին եցոյց, ընդ որում ոչ ոք ՚ի մարդկանէ, ոչ ՚ի մարգարէից և ոչ յարդարոց մարտնչել կարաց։ Վասն զի բանաւորեալք լինէին ամենեքեան ՚ի թագաւորել մահուանէն, մինչև եկն եհաս Թագաւորս յաւիտենից, և կապեալ զհզօրն՝ եառ զկարասի նորա։

Քանզի իբրև խաչեցաւ տէրն, զօրութիւնքն զարմացան, և արարածք սարսեցին տեսանելով զնոր խորհուրդ և զահաւորն տեսիլ՝ եղեալ ՚ի վերայ երկրի. դողաց երկիր, շարժեցաւ ծով, զարհուրեցան անդունդք, խաւարեցան ամենայն արարածք, երկեան լուսաւորք ՚ի յերկինս, փախեան արեգակն և լուսին, աստեղք նուա-

յղանալն՝ չնութեան համբաւեաց գործ. իսկ յետ անճառելի ծննդեանն ոչ գող զնա կոյս բամբասեաց. նոյնգունակ և 'ի սննդեան կերակրողին զամենայն արարածս՝ տղայապատան զհրեշտակս ուսոյց, կարծեցեալ ընդ նոսա ըմբռնել զանըմբռնելին. խօսելով ընդ հրեայսն՝ 'ի հայհոյել զնոսա յորդորեաց, իսկ 'ի սքանչելագործելն՝ նոյնգունակ 'ի քարկոծել զնոսա կազմեաց. 'ի խաչելն՝ զլրպանողն և զաւազակն նախապատուեաց, իսկ 'ի թաղմանն կնքել զգերեզմանն հաւանեցոյց. 'ի յարութեանն զպարտէ զյարութիւնն: Նոյց յառնելովն և յերկինս համբառնալովն ոչ ինչ ունէր զինչ բարբառեսցի, այլ զինքեանն իսկ զլուխ ծեծէր ուժգնապէս: Աստ որոյ քան զամենայն տօնից այսր աւուրս նմա դժնդակապէս ցուցաւ, տեսանելով զամենեսեան ամենայն ուստեք զօրս հրեշտակաց սպասաւորեալս, և զզօրմանս հետեւողս, իսկ զոմանս յառաջընթացս, զկէսս 'ի դիմի հարեալս, զայլս ոմանս դարձեալ ընդ առաքելոցն խօսեցեալ դասուց, և ասացեալս "Արք գալիլեացիք, զի՞ կայք հայեցեալ ընդ երկինս. վասն զի այս Յիսուս որ վերացաւ 'ի ձէնջ յերկինս՝ սոյնպէս եկեսցէ, զոր օրինակ տեսէք զնա երթալ յերկինս". այս Յիսուս՝ որ բազմութիւն հրաշագործութեանցն եցոյց:*

* [illegible] գրունի յօրինակի [illegible] հատուածս: Աստուածս հաւասար ինձ միտ դիք: Եւ զինչ արդեօք զայս ասէին, միթէ ո՞չ ունէին այս աշակերտքն, միթէ ոչ տեսանէին զեղելոյն. ո՞չ ապաքէն ասաց աւետարանիչն թէ «մինչդեռ հայէին նոքա, վերացաւ». իսկ էր վասն մերձ կային հրեշտակքն. ուսուցանելով նոցա եթէ յերկինս վերացաւ: Յաղագս երկուց այսորիկ պատճառաց, մի՝ հանապազ ճմլէին սիրտք նոցա վասն մեկնելոյն տեառն. և զի ճմլէին՝ լուր զինչ ասէ առ նոսա. «Ոչ ոք, ասէ, 'ի ձէնջ հարցանէ զիս թէ յո՞ երթաս. այլ զի և զայն խօսեցայ ընդ ձեզ, տրտմութիւն ելից զսիրտս ձեր». վասն այսորիկ առաջ և մերձ կացին հրեշտակքն, զի զվերնաճանապարհորդելոյն ըղտրտմութիւն անդր 'ի նոյ դարձութեամբ զալստեանն սփոփեսցեն: Քանզի «այս Յիսուս, ասէ, որ վերացաւ՝ սոյնպէս եկեսցէ»: Արդ զի մի և նոքա զնոյն տրտացեն զոր արար Եղիսէ՝ տեսանելով զվարդապետն իւր վերացեալ, պատառեաց զպատմուճանն իւր, զի և ոչ ունէր իսկ զոք մերձակայ որ ասէ՝ թէ դարձեալ եկեսցէ Եղիսա. արդ զի մի և սոցա զնոյն արարեալ, մերձ կային հրեշտակքն սփոփելով զվատութիւնս նոցա. մի այս են հրեշտակացն մերձակայութեանս պատճառք: Եւ երկրորդ դարձեալ ոչ ինչ ընդհատ յառաջնոյն, վասն որոյ պատճառաց յաւել՝ թէ որ վերացաւս: Եւ զինչ իցէ այս: Ի յերկինս վերանայր. յոյժ էր միջատն. յաղագս այսորիկ մերձ կացին հրեշ-

ղոցն վայելչանայ պտղովք և գնտակօք, ձիթենեացն ծառք ծաղկեալք բուրեն զանուշահոտութիւն, թզենիք զվաղահասուկն բողբոջեալ դիտակս յառաջ ընծայեն, և շարժին առ 'ի բարեխառնութենէ օդոյ՝ քաղցրոյս և կանաչազարդեղ արտոցն հեղլեք ըստ նմանութեան խաղաղածաւալ ծովայինն ալեաց, և ամենայն ինչ 'ի տէրականս վերացման ընդ մեզ պայծառացեալ բերկրի:

Եկ այսուհետև դու և ես զզուարթականն նուագեցից առ ձեզ պատգամս, զոր օրինակ արդ եւս մեզ 'ի ձեռն տէրունականս վերացման երգեաց գոչելով. «Ամենայն հեթանոսք, ծափս հարէք, աղաղակեցէք առ ա̅ծ 'ի ձայն ցնծութեան. զի համբարձաւ ա̅ծ օրհնութեամբ, և տէր մեր ձայնիւ փողոյ»: Այլ ուր էր, վերացաւ աս-տի ոչ երբէք մեկնեցաւ. քանզի «որ էջն՝ նոյն է և որ ելն 'ի վերոյ քան զամենայն երկինս»: Ոչ այլ ոք 'ի մարգարէիցն քարոզեալ, և այլ ոք ընդ առաքելոցն շըրջեցաւ. ոչ այլ ոք 'ի ծոց հօր նստեալ, և այլ որ 'ի Պիղատոսէն դատեալ. ոչ այլ ոք 'ի խաչի բևեռեալ, և այլ որ 'ի քրովբէս վերանստեալ. ոչ այլ ոք 'ի Յովսեփայ կտաւօք պատեալ, և այլ որ ափով զարարածս շուրջ փակեալ. ոչ այլ ոք 'ի գերեզմանի եդեալ, և այլ որ 'ի սերովբէիցն օրհնեալ: Այլ նոյն ինքն որ աթոռակիցն հօր՝ յարգանդի կուսին անսերմնապէս բողբոջեալ, համբարձաւ ա̅ծ օրհնութեամբ և տէր մեր ձայնիւ փողոյ:

Համբարձաւ ա̅ծ օրհնութեամբ, որ յաւիտենից գոյր արարիչն, որ և յոչգոյութենէ զբոլորս առ 'ի գոյացութիւն էած, որ և ստեղծ իսկ զԱդամ և զմարդկային բնութիւն յանգոյութենէ 'ի գոյութիւն ածեալ եցոյց, որ զհաճոյացեալն զԵնովք 'ի տեղի կենաց փոխադրեաց, որ զՆոյ պահեաց 'ի մէջ անձրևածին ջրհեղեղին, որ զհայրապետն Աբրահամ կոչեաց յերկրէն քաղդէացւոց, որ նախատպաւորեաց Իսահակաւ զխորհուրդ խաչին, որ զհամբերութիւն Յոբայ շնորհեաց, որ զՀեղիաս շարժմամբ վերացոյց հրեղէն կառօք, որ 'ի մարգարէսն փչեաց զյառաջգիտողութիւն, որ առաքելոցն զպարգևս բժշկութեան շնորհեաց, որ և առ նոսին գոչէր ասելով. «Քաջալերեցարուք ես յաղթեցի աշխարհի»: Սա է տէրն փառաց՝ որ համբարձաւն յերկինս օրհնութեամբ, և նստաւ ընդ աջմէ երկնաւորն հօր,

որպէս յառաջագոյն խօսք ասացաք, եթէ 'ի բանից կար-գի ասեմք:

Այս յորժամ զԱծ գիտասցես նստեալ 'ի բարձունս, մի միայն 'ի բարձունս կարծիցես, այլ ամենայն ուրեք. զի ոչ եթէ տեղի թափուր է 'ի նմանէ և կամ 'ի նմա-նէ հեռի, այլ ինքն իւր տեղի է. նա ամենայն է յա-մենայնի, ուրեք ոչ բովանդակի: Ոչ է ինչ կարաս-ցէ ունել զանմարմնական բնութիւնն և զանհասա-կանն և զանքուն և զանքննելին, զանտարրականն և զանպա-տումն և զանմատոյցն. զի ով այսպէս իցէ՝ նա Ած իցէ, և որ չէ այսպէս՝ նա չէ Ած: Ով որք Ածապաշտք ի-ցեն, այսպէս պարտ է խոստովանել զԱծ՝ եթէ նա է յա-մէր, որպէս և գրեալ է՝ եթէ "Այս են կեանք յաւի-տենականք, զի ծանիցեն զքեզ ճշմարիտ Ած, որ առա-քեցեր զորդիդ քո սիրելի զՅիսուս Քրիստոս":

Յայսմ տեղի ստգտանեն զմեզ հերետիկոսքն, որք կարդան և ոչ խելամտեն, որք զկանոնաւորն խելամտեն և ոչ խոստովանեն: Ոչ է յորժամ զՔրիստոս լսիցես՝ մի զԱծ միայն կարծիցես և մի լոկ միայն զմարդկան տես-չութիւնս, այլ զերկոսեանն միաբան: Գիտեմք զՔրիս-տոս քաղցեալ, և գիտեմք զՔրիստոս յեօթն նկանա-կէն և յերկու ձկանցն կերակրեալ զհինգ հազարս. գի-տեմ զՔրիստոս ծարաւի, և գիտեմ զՔրիստոս ըզ-ջուրն 'ի գինի դարձուցեալ. գիտեմ զՔրիստոս 'ի նաւի, և գիտեմ զՔս գնացեալ 'ի վերայ ծովու. գիտեմ զՔս մեռեալ, և գիտեմ զՔս յարուցեալ զմեռեալս. գի-տեմ զՔրիստոս զի կայր առաջի Պիղատոսի, և գիտեմ զՔրիստոս նստեալ ընդ աջմէ Հօր. գիտեմ զՔրիստոս թշնամանեալ 'ի Հրէից, և գիտեմ զՔրիստոս երկրպա-գեալ 'ի հրեշտակաց. է ինչ որ ըստ Ածութեանն խելամտեմ, և է ինչ որ ըստ մարդկութեանն, վասն այնո-րիկ յերկոցունց ասի Քրիստոս. գիտեմ զՔրիստոս 'ի Մարիամայ ծնեալ, և գիտեմ զՔրիստոս յառաջ քան զյաւիտեանս ծնեալ 'ի Հօրէ: Խոստովանեսցուք այսու-հետև զտէր մեր Յիսուս Քրիստոս, զանքակ աստուա-ծն, զՀիմն որ 'ի վերայ վիմի հաստատեալ, որ ասէ ցՊետրոս՝ եթէ "Դու ես վէմ, և 'ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, և դրունք դժոխոց մի յաղթա-հարեսցեն զնա": Այնպէս և առաքեալն Պօղոս ա-

միանգամ յանձին կրեալ, ոչ վասն իւր և ոչ վասն հօր, այլ զի՛ ապրեցուսցէ խաչիւն զամենայն ազգս մարդկան.

Եթէ կամիցիս գիտել, որդեա՛կ, զզօրութիւն խաչին, և մեծս պարտ է 'ի վարդապետութենէ պատմել, լուր ի Խաչն քրիստոնէից լոյս, մեռելոց յարութիւն, կուրաց առաջնորդ, անյուսից յոյս, մոլորելոց Ճանապարհ, ցուպ կաղաց, աղքատաց մխիթարութիւն, մեծատանց սանձ, ամբարտաւանից քակտումն, պագշոտաց ապաշխարութիւն, ախոյեան դիւաց, բանսարկուին յաղթութիւն, մանկանց դաստիարակ, նաւավարաց ուղղիչ, տագնապելոց նաւահանգիստ, պատերազմողաց պարիսպ, հայր որբոց, վերակացու այրեաց, անիրաւելոց դատաւոր, արդարոց խորհրդակից, նեղելոց հանգիստ, ողջոց պահապան, սրբոց գլուխ, ծերոց կատարումն, խաւարելոց լոյս, թագաւորաց վայելչութիւն, զէն յաւիտենական, բարբարոսաց մարդասիրութիւն, ծառայից ազատութիւն, անխրատից իմաստութիւն, անօրինաց օրէնք, մարգարէից քարոզ, առաքելոց պատմութիւն, մարտիրոսաց պարծանք, վանականաց ճգնութիւն, կուսանաց զգաստութիւն, քահանայից ուրախութիւն, եկեղեցւոյ հիմն, տիեզերաց զգուշութիւն, մեհենեաց աւերիչ, բագնեաց կործանիչ, ձենձերաց ապականիչ, հրէից դայթակղութիւն, ամբարշտաց կորուստ, տկարաց զօրութիւն, հիւանդաց բժիշկ, բորոտաց սրբիչ, անդամալուծաց առողջութիւն, քաղցելոց հաց, ծարաւելոց աղբիւր, մերկոց վերարկու: Մերկութեան յորժամ լսես, ոչ զմարմնոյ մերկութիւն ասեմ, այլ զանհաւատութիւն. զի յորժամ հաւատայցես, յայնժամ զգեցցիս զՔրիստոս: Լուր Պաւղոսի որ ասէ. “Որք 'ի Քրիստոս մկրտեցարուք, զՔրիստոս զգեցեալ էք”: Այս յորժամ զՔրիստոսէ լսիցես, մի՛ ըզ միայն կարծեսցես և կամ զմարմնոյ տնտեսութիւն ինչ բնական համարել, այլ զերկաքանչիւրն: “Զի և նմա պարտ է անյապաղ քարոզել ձեզ, և ձեզ զգուշանալ և զգաստանալ”: Հանապազ[1] թերևս վարդապետեալ

1 Մթութիւն իմաստիցդ, Թերևս 'ի շփոթութենէ բառ միոյ ևեթ օրինակի, քանզի պակասի յայլսն, պարզի 'ի յունականին՝ որ ասէ. Չի՛ խօսիմ զամենեցուն վարդապետս լինել: Այլ Քրիստոս ասէ, վասն զի մեր-[illegible] [illegible]. [illegible] Քրիստոսի [illegible], ա-[illegible] [illegible] նորա. բան [illegible] վասն զի

ած զԱդամ "Ո՞ւր ես"։ Յորժամ լուիցես՝ ուր ես, մի՛ անգիտութիւն կարծիցես զայդ։ Քանզի ասէր ցնա բանսարկուն՝ եթէ "Յաւուր յորում ուտիցէք, լինիցիք իբրև զԱստուած"։ իբրև կարծէին թէ լինիցին Աստուածք, վասն այսորիկ ասէր ցնա Աստուած՝ Ադամ, ուր ես. ցուցանէր նմա թէ մարդ մնացեր։ Ո՛չ պատուիրեցի քեզ չուտել 'ի ծառոյ անտի. կերար, յանցեար։ Այն էր զոր ասէր՝ ուր ես։ Ո տերև թզենւոյն արկեալ զխորհրդամբք ծածկէին զառակն մեղացն։ Այլ զինչ ասէր Ադամ. "Զձայն քո լուայ զի գնայիր 'ի դրախտի աստ"։ և զարհուրեալ ասէր. "Կինն զոր ետուր ցիս, նա յանցոյց զիս"։ Այլ ասէ ցկինն. "Զինչ զի գործեցեր"։ Այլ ասէ կինն. "Օձն խաբեաց զիս"։ Ո՛հ, ասէ, և համարեաց թէ զքեզ ետու առն քո. մի թէ զօձն ետու քեզ։ Այս զնէին պատճառս, յայտ է եթէ զանձինս արդարացուցանեն։

Այլ ասէր ած զԱդամ. "Անիծեալ լիցի երկիր 'ի գործս քո, փուշ և տատասկ բուսցին քեզ, և քրտամբք երեսաց քոց կերիցես զհաց քո"։ Այլ ցկինն ասէ. "Տրտմութեամբ ծնցիս որդիս, և առ այր քո դարձ քո, և նա տիրեսցէ քեզ"։ Իսկ զօձն ասէ. "Ի վերայ որովայնի քո գնասցես, և հող կերիցես զամենայն աւուրս կենաց քոց. նա սպասեսցէ քում գլխոյդ, և դու սպասեսցես նորա գարշապարին"։ Այլ ընդէ՞ր զօձն անիծանէր և ասէր՝ "Ի վերայ կրծոյ և որովայնի քում գնասցես, և հող կերիցես զամենայն աւուրս կենաց քոց"։ Այլ ընդէ՞ր զորովայնն անիծանէր. քանզի 'ի նմա էր մտեալ՝ որ իմացոյց զչարն. իսկ զպտուղն՝ քանզի կերակրովք խաբեաց. այլ եթէ՝ հող կերիցիր զամենայն աւուրս կենաց քոց, քանզի Ադամ յերկրէ հողեղէն էր։ Այլ առնուն երեքեան զհրամանս պատուհասին, քանզի երեքեանն անցին զպատուիրանաւն։ Այլ քանզի փայտիւն լինէր յանցանքն, որպէս և յառաջագոյն ասացի, վասն այսորիկ և նա զսկիզբն զանդամոյ մեղոյ բևեռեաց ընդ խաչափայտին. զի որպէս 'ի ձեռն փայտին յանցանքն եղեն, նոյնպէս և 'ի ձեռն փայտին փրկութիւն եղիցի։ Այսու ամենայնիւ փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն։

## ՅԱՂԱԳՍ ԶՍԳԱԼՈՑ ԶՎԱԽՃԱՆԵԱԼՍՆ, ՄԱՆԱՒԱՆԴ ՈՐ ՏՂԱՅՔ ԱՆԱՐԱՏՔ ԹՈՂԼԻՆ ԶԱՅՍ ԿԵՆՑԱՂՍ

Մեր այստ Հետև մանաւանդ քան յառաջագունիցն[1] փութալոյ[2] վարդապետութեանց մեզ ՚ի ներքս. քանզի բազում անգամ գիտէ բան մխիթարել զզաւս. գիտէ վարդապետութիւն չափաւորապէս՝ լուծանել զաղտամութիւն: Վասն որոյ զգուշանամք յորոց երէկ ընդ մեզ, այսօր տեսանեմք զի ոչ գոն ընդ մեզ. այլ կամ առ տէրն փոխադրեցաւ, կամ անկեալ ՚ի վերայ մահ-ձուց. և այսուհետև ամենեցուն մեզ անցն ունել է: Վասն որոյ բազումն առ մեզ տեսանեմք ողբս, անդադար յեկե-ղեցւոյ խռովութիւնս, սգաւորաց զարտասուս, զբազ-մաց զանկարգ զկոծս: Վասն որոյ յոլովագոյն յաղագս այսորիկ աղաչեցի և յաւէ արարի՝ թէ պարտ է գոհու-թեամբ և համբերութեամբ տանել զզաւակաց իւ-րեանց զմնջումն, և մի այդպէս ծանակ լինել, և մի իբրև կորուսեալ զերթեալսն առ Տէր համարել, մանա-ւանդ որք տղայք անպարտք թողին զայս կենցաղս: Վասն որոյ մի զնոսա, այլ մանաւանդ զմեզ զմեզօք զգածեալ զանձինս մեր ողբասցուք: Զի եթէ ոչ այսօր սթա-փեալ առնուցուք ՚ի միտ, երբ ապա դարձցուք յուղ-ղութիւն. և եթէ ոչ մահ եղբօր քո իմաստնացուսցէ զքեզ, ո՞վ ապա դարձուսցէ զքեզ. եթէ ոչ մեռեալ տեսանելով եկեսցես յապաշխարութիւն, երբ ապա դարձցիս ՚ի բարի. և եթէ ոչ ՚ի գերեզմանս հայելով ուղղեսցես զվարս քո, երբ ապա դարձցիս յԱստուածայինսն: Ահա զայսպիսիս տեսանեմք, ահա զնոյն կրեմք և ստա-նեմք փորձիւ:

Վասն որոյ խնայեսցուք աղաչեմք, մի ՚ի նանիր և ՚ի զուր խռովեսցուք, մի իբրև անմահք բարբանջեսցուք: Քանզի մի է ճանապարհ մահուն, և ընդ այլ ոչ գոյ անց. մի է ժամանակն և ահագին է ժամն. հաստա-կաց է բաժակն և ամենեցուն տուեալ. մի է կամաւորն

1 Իմն՝ առաջնոց աւուրցն:

2 Օրինակ մի փութայեր:

տանջու՝ մահու ցանկացեալք յանհուն տրտմութենէն: Նոյնպէս, քաջութիւն որ ամենեցուն սարսելի՝ եղև աշխատելոցն կարօտելի, և կենդանութիւն որ ամենեցուն ախորժելի՝ եղև նոցա զարշելի, և լոյս այս որ ամենեցուն փափագելի՝ եղև նոցա ատելի:

Օրհնեալ է Տէր որ զամենայն ինչ յարդարէ յօգուտ մարդկան: Ոչ է չար մահ, այլ եղբարք. և այս ոչ է իմ բանս, "Մահ մարդոյ հանգիստ է" ամենայնիւ Ճառէ Յոբ: Զի որ մեռանին՝ արդարացեալ է 'ի մեղաց և դադարէ յաշխարհիս ժլատութենէ, և արգելու յաւելուլ զչարիս, և ցածնու 'ի յաճախելոյ բեռինս մեղաց, և լսէ 'ի բարկացուցանելոյ զՏէր: Մահ մարդոյ հանգիստ, տղայոց մխիթարութիւն, ծերոց ներումն, աշխատելոց հանգիստ, պատուականաց վճարումն, հօգացողաց լուծումն, վշտացելոց մխիթարութիւն, մեղաց խափանումն: Եւ եթէ ոչ կայր մահ առաջի, զմիմեանս ուտէաք արդեօք. և եթէ ոչ դատաստանի զարհուրեանն մնայաք, կենաց յոյս ոչ ունէաք. և եթէ ամենայնաց ահին ոչ ունէաք, ոչ երբէք դադարէաք 'ի մեղաց, և ոչ 'ի յանցանաց 'ի բաց կայաք:

Տես զսեռանն մարդասիրութիւն, զիարդ որ յանցանացն պատիժք՝ եղեն պատճառք փրկութեան: Զի եթէ արդար է վախճանեալն՝ խնդայ, վասն զի վստահութեամբ և հանգստիւ առ տէրն գնաց. իսկ եթէ մեղաւոր է՝ մի արտասուեր և մի տրտմիր, վասն զի շահեցաւ չյաւելուլ զբեռինս մեղաց: Եթէ մեք ասէին մնայաք, յիրաւի արդեօք լայաք զվախճանելոյն. իսկ եթէ ամենեքեան ամենայն իրօք անդր եմք գնալոց, ապա մի զսակաւ յառաջեալսն քան զմեզ սգասցուք. և մի զոր 'ի վերայ ննջեցելոցն բարեաւ կատարեմք, զայն 'ի ձեռն չարաչար արտասուացն խափանեսցուք: Ոչ տեսանէք որպիսի կարգս կատարեմք 'ի վերայ ննջեցելոցն. սաղմոսիւք և օրհնութեամբ յուղարկեմք զնոսա, զոր առ տէրն գոհութիւն նշանակեմք. նորոգ հանգերձիւք պատեմք, նոր զգեստ անապականութեան նշանակեալ. մեռոն և ձէթ հեղումք, զօծումն մկրտութեան զուշակեալ՝ երթալ ընդ նոսա թոշակ հաւատոյ. խնկօք և ջահընկալութեամբ յուղարկեմք, ցուցանելով թէ 'ի խաւարային կենցաղոյս լուծեալ՝ առ լոյսն ճշմարտու-

եղև մեռեալ։ Իբր ահա երթայ իբրև զպատապարտեալ, յորմէ երեկ գողայլն պարտաւորք. ահա խառնեցաւ և եղև ամենեւին սարսեալ. ահա ամենայն իմաստութիւն և զօրութիւն նորա ընկլաւ. ահա բովանդակ զարհուրեալ թմբրեցաւ, և յիրաւի իսկ։ Զի եւեթ զիշխանութիւնս հրեշտակականս, և զիւր իշխանութիւնն մեռուցաւ. եւեթ զզինուորութիւնս ահագինս, և զիւրն համարեցաւ սարդիոստայն. եւեթ կերպարանս անապականս, և եղև եղծեալ կերպարանօք. լուաւ զձայն հատման վճռոյ 'ի վերայ իւր, և առ հասարակ դողաց մարմնով. և այսպէս մնախարհ եղեալ՝ զարհուրելով ասէր յինքեան, ամենայն իշխանութիւն մարդկան սնոտի է։ Բաբէ, ահա դարք Ճշմարիտք, ահա զօրութիւնք հզօրք, ահա իշխանութիւնք անսասանք, ահա պետութիւնք անփոխանորդելիք, կերպարանք ահագինք, պատուութիւնք յաւիտենականք։

Զայսոսիկ և առաւել ևս քան զսոյն ածեալ զմտաւ, զորմէ անգէտն որք սակաւ մի յառաջեցին և առին զփորձ, ոմանք 'ի մահիճս տապալեալ վաղէն փախչել կամելով և ոչ կարեն. ոմանք զատամունս կրճեն, իսկ այլք զծնօտս հարկանեն. կէսք զաչս իւրեանց շրջշրջեն ողորմագինս՝ տեսանելով սակաւ ինչ զահագին զօրութիւնսն 'ի մարմնոյն ձգեալ, զտաշոտեալ լեզուն, և զաւանդութիւնսն հաստատապէս[1] հանել 'ի վեր ոչ կարացեալ, տեսանելով և զընդդիմակաց զօրութիւնսն առընթեր բանակեալ՝ ամբաստան լինելով զնմանէ յափշտակել ձեռնարկեն զհոգին։

Արդ գիտելով մտեալ զգողն և իմացեալ առ 'ի կորզել 'ի մարմնոյն զհոգին, տեսէք որչափ ինչ պէտք են մեզ յայնժամ բազում օգնականութեան աղօթից և գործոց բարեաց. քանզի օգնականութեան հրեշտակաց յոլովից մեզ պէտք են առաջնորդութեան առ 'ի յօդս համբարձման։ Զի եթէ աստ յաշխարհի ուրեք հեռաւոր երթալով՝ կարօտ լինիմք առաջնորդաց, որչափ ևս առաւել պէտս ունիմք օգնականութեանց և առաջնորդութեան առ 'ի վտարել և անցուցանել զմեզ ընդ իշխանութիւնս և ընդ պետութիւնս և ընդ աշ-

1 Օրինակ մի հաստատաքէս։

չյալ և չոգալ կենդանութեամբ իւրեանց, ոչ հաւանեցուցեալ վասն նոյն որ ասացեալս անհաւանելեաց զկատարելութիւն բնու-թեանն, դնելով զգութ տղայոց յորովայն ծնողաց :"

Ոչ ասեմ զայդ, ով մարդ ; և ոչ օրինադրեմ բնա-կան 'ի վերայ որոց, զի ոչ է մարթ ։ Ոչ և են մարդ-կան օրէնք բնութեանս, և 'ի ժամանակի կատարելու-թեան ոչ կամ հակառակ բնութեան. զի և ես մարդ-կամ և 'ի մէջ ծնեալ եմ և 'ի նմին կայ 'ի ձեռս բնու-թեանց. և կա զխաւսմ զհօր հաւատարիմ և զմօր հեծե-ծանս. զխաւսմ զծանուցեալ տառամութեանն նոցա, զհա-'զիս խառնակեալն անսպառ արտասուաց, զմինչ ածելով զմտաց քաջս և զգանս ։ Այլ սքանչելին Յոբ ոչ այդ-պէս. քանզի նա 'ի հաստատել սանդարամետն 'ի վերայ ու-ստերաց և դստերաց իւրոց, ծառայից և անասնոյն ընչից իւրոց, ոչ խռովեցաւ և լուծաւ և ոչ հայհոյեաց. այլ յարուցեալ անկաւ յերկիր ասելով ասաց, և երկիր պա-գեալ այդ ասաց. "Ես մերկ եկի յորովայնէ մօր իմ-մոյ, և մերկ անդրէն դարձայց. տէր ետ և տէր առ. ե-ղիցի անուն տեառն օրհնեալ" : Ուստայ եմ, և պարտ է ինձ հնազանդել. ոչ է օտար գործս. մեռանի որդիքն, այլ ոչ եթէ կորեան. Քանզի մի հոգին է որ ոչ ունի իշխանութիւն հօրն իւրում առնել ընտրութիւն խա-չանցն. Փոքր ինչ, և մեք երթամք.

Նայեցիք և մեք նմանեցուցեալք, և մի անչափ ողբա-ցուք և իբրև անհաւատք անօթալիցք եղիցուք. այլ լացցուք որպէս Տէրն զՂազարն ։ Ասեմ զի քեզ չափ և սահման արտասուելոյ եդ. թէ ոչ՝ ընդէր արտասուեաց, զոր յետ փոքր ինչ եւս յարուցանելոց էր ....

Այլ տէրն մեր որ սիրեաց զմեզ, աստուածն ողորմածն, որ-պէս 'ի բերանոյ առիւծու կորզեաց զմեզ 'ի մահուն կեն-ցաղոյս, և իբրև զվարդ 'ի փշոց քաղեաց զմեզ 'ի մե-ղաց աշխարհիս, և իբրև զգառինս սիրելիս քաջ հո-վիւն սիրեաց զմեզ, այն որ ընտրեաց զմեզ յառաջ քան զլինելն աշխարհի, նոյն ինքն առաջնորդեսցէ մեզ հա-սանել 'ի կէտ կոչման որդեգրութեանն զոր խոստացաւ սիրելեաց իւրոց. և հանցէ զմեզ 'ի խաւարէ 'ի լոյս, անդ յորում ամենայն հանդարտութիւնք լուսաւորք և ծածկահաճոյք. ուր ոչ ինչ անիրաւ և բռնաւորութեան տե-սանի. ուր ոչ են մեղք և աղջամուղջ խաւարի, այլ

# ՅԱՂԱԳՍ ՀԱՒԱՏՈՅ

Բժշկի նման է եկեղեցւոյ վարդապետ․ բազմաց և զանազան ախտից բժշկական դեղս տանելով, իւրաքանչիւր ումեք ախտացելումն ըստ պիտոյից ցաւոցն տայ ըզդեղն։ Որպէս ինչ․ եկին ումանք 'ի բժշկարան եկեղեցւոյս, յայտնանէ ախտէ ամբարտաւանութեամբն ըմբռնեալք․ առեալ զդեղ խոնարհութեանն՝ յայտուցեալ ախտէ հպարտութեանն բժշկեցան։ Եւ այլք ընթացան 'ի բարկութենէ բոցակիզեալք․ զնստեալք և նոքա յերկայնմտութենէ վարդապետութեանն՝ զոգւոյն զհիւանդութիւն շիջուցին։ Ոմանք 'ի մարմնոյ ախտից 'ի պագշոտութիւն մոլորեալք՝ ընթացան և նոքա, առնլով զդեղ ողջախոհութեանն՝ սրբութեամբ զինքեանս պնդեցին։

Արդ եկայք, սիրելիք, վասն զի որ յառաջագոյն ժամանեալ վարդապետս զհիւանդացելոց զանձինս երեքայարմար հաւատովն բժշկեաց, և մեք սորա հետոցն երթիցուք զհետ։ Քանզի կարծեմ զյոլովս ողջ աստ են, ախորժելով լսել յաղագս հաւատոյ․ իբրև ոչ եթէ ինքեանք պէտս ինչ ունիցին, վասն զի առողջք են, այլ ախորժեն 'ի ձեռն այնորիկ զհիւանդացեալսն բժշկել․ յոլովք են ինքեանք առողջք, բայց ոչ կարեն 'ի ձեռն ինքեանց զախտացեալսն բժշկել։

Յաղագս որոյ, սիրելիք, թէպէտ և յօժարութիւն ունէի այժմ յաւետարանի ընթերցուածոյն բանս առ ձեզ խօսել, և որ 'ի նմանէ հոգին՝ արբուցանել մերձաւորացդ, զայն առ այժմ յապաղեմ, և առնեմ զայս զոր խոստացայս մերձ կացելոց խնդրել։ Վասն զի պարտ և արժան է մեզ աշակերտացս առաքելոյն ընդ ամենեսին ամենայն լինել, զի զամենեսին շահեսցուք։ Աղաչեմ, եթէ սխալեցից ինչ 'ի բանս, թողութիւն ինձ ընձեռեցէք․ վասն զի որք առանց պատրաստելոյ ասեն, բազում անգամ վրիպին, ոչ բաւական լինելով միտքն և զգիրսն տեսանել և զբանսն կազմել։ Եւ դուք իսկ զներքին ձեր մարդ սրտիդ մերձ կացուցէք աստ մաքրա-

դոյն · զի խոստովանեսցի իւր ոք զաստուածութեանն մի միայն ընդգէ, այլ և տեսանիցէ և զի խոստովանեսցի իւր ուսանիցի զգօ-րութիւն:

Նախ աստուծոյ հաւատ յամէ, որք են անշօշափելի անըմբռնելի անտեսանելի անքննելի անխնդրելի անճա-ռելի, լռութեամբ պատուեալ և միայն երկրպագեալ: Հաւատ 'ի Հօրէ սկսանի և յորդի գայ և 'ի Հոգին լնու· Հաւատ աթոռ անձին, Հիմն կենաց, արմատ անմահ· Հաւատոյ արմատ կենդանութեան հայր, ատո անթո-ռամ որդի, պտուղ անմահ Հոգին սուրբ: Երրորդու-թիւն պարզ, առանց շարադրութեան, անխառնելի ան-ճառելի անբաժանելի, անորիշ ըստ միաւորութեան ըստ զօրութեան ըստ գործոյն ըստ ծնութեանն ըստ մեծու-թեանն, էութեամբ և անուամբք միայն բաժանեալք, բայց իրօք և զօրութեամբք միաւորեալք: Երրորդու-թիւն որ նախ քան զյաւիտեանս էր· ոչ 'ի ժամանակէ ումեքէ սկիզբն էառ լինել, այլ անսկիզբն անժամանակ անծերանալի անպարագ անմահ անփոփոխելի· ոչ աճէ ոչ նուազէ ոչ ծերանայ, այլ միշտ որպէս էն՝ կայ մնայ: Երրորդութիւն, ոչ այժմ գտեալ յերկրպագութիւն, այլ յաւիտենից 'ի Հրեշտակաց յերկինս երկրպագեալ, և 'ի հարցն 'ի վերայ երկրի փառաւորեալ, 'ի մարգա-րէից պատուեալ, յառաքելոցն քարոզեալ, և յեկե-ղեցւոյ մինչև ցայժմ մեծացեալ:

Ճանաչելով, սիրելիք, յերկնայնոցն ստացուք սկիզբն՝ ցուցանել զերրորդութեանն զմի տէրութիւն և զերկրպագութիւն և զմեծութիւն: Որոց հրեշտակական զօրութիւնքն քերովբէից և սերովբէից, սուրբ սուրբ սուրբ, անդադար բերանով նուագերգելով 'ի մի տէրու-թիւն աստուածն զփառսն: Որոյ հրեշտակս Աբրահամ հայրապետն հանդիպեալ ընդ կաղնեաւ Մամբրէի 'ի խորանին տեսանելով, մի տէրութիւն զուգապատիւ եր-րորդութեանն հրեշտակացն ընծայեաց: Երեք հրեշ-տակք, և կաղնին և Աբրահամ և խորանն՝ երրորդու-թիւն, և խաչ և եկեղեցի և զաւակ մարդկան: Այն իւքն Աբրահամ Ճանապարհ երից աւուրց գնաց, զոր-դին իւր զԻսահակ բոլորապատուղ այ՟ մատուցանել: Ե-րեքօրեայ Ճանապարհ և Իսահակ բոլորապատուղ լեալ· Երեքօրեայ որ խաչին չարչարանք եղեն միածնին: Ա-

և արժան է մանաւանդ և ոչ պատասխանի տալ այնպիսեացն: Ո՛րչափ եթէ ծառայք յերկրէ լեալք, զառաքելոցն ասեմ, արժանիք եղեն յաթոռ նստել, աՀա դուք երկոտասանքդ, ասէ, "նստջիք յերկոտասան աթոռս դատել զերկոտասան ազգ Իսրայէլի". ևս առաւել Հոգւոյն սուրբ:

Եւ առ այդոքիւք ո՞ւր Հոգւոյն փառք. փառաւորի Հայր, փառաւորի և որդի, ո՞ւր փառաւորի և Հոգին սուրբ՝ խնդրեն անՀաւատքն: Ասասցէ Եսայիաս, և Պաւղոս վկայեսցէ. "Տեսի զտէր 'ի վերայ աթոռոյ բարձու", յաղագս Հոգւոյն ասէ, որպէս յինէն յաւելու ցուցցի այս. "և ամբարձելոյ, ասէ. և լի էր տունն փառօք նորա. և սերովբէք կային շուրջ զնովաւ, վեց թեւք միոյ, և վեց թեւք միոյ, և աղաղակէին ասելով՝ սուրբ սուրբ սուրբ, տէր սաբաւովթ, լի է երկինս և երկիր փառօք քովք": Հայեաց աստանօր, և զաթոռն տեսանես և զփառսն: "Եւ ասէ տէր ցիս զո՞ առաքեցից և ո՞ երթիցէ առ ժողովուրդն այն Հրէից և ասացէ ցնոսա. լսելով լուիջիք և մի իմասջիք, և տեսանելով տեսջիք և մի տեսջիք: վասն զի թանձրացաւ սիրտ ժողովրդեանն այնորիկ, և ականջօքն ծանունս լուան", և որ 'ի կարգին է: Պաւղոս յետ բազում ազգաց ճանապարհաւ մարգարէութեանն լինի 'ի Հռովմէ. վիճի ընդ Հրէայս, տեղեկացուցանելով նոցա զմիածնին Քրիստոսի զՀաւատան. Իսկ նոքա 'ի բաց դաւանային և ոչ Հաւատային. և յայնժամ յիշէր զմարգարէութիւնս զայս յորժամ լքաւն:

Եւ զի՞նչ ասէր ցնոսա. բարւոք ասաց, ոչ Հայր, ոչ որդի, այլ "Բարւոք ասաց Հոգին սուրբ 'ի ձեռն Եսայեայ մարգարէին. լսելով լուիջիք և մի իմասջիք", և որ 'ի կարգին է: Արդ եթէ Եսայիաս տէր սաբաւովթ ասէ 'ի վերայ աթոռոյ բարձու նստեալ և 'ի Հրեշտակաց փառաւորեալ, և Պաւղոս ասէ՝ եթէ Հոգին սուրբ. ո՞ իցէ արդեօք մոլեալ որ յերկուանայ թէ արդեօք ոչ իցէ տէր և ա͞ծ Հոգին, և եթէ պաշտօնեայ իցէ: Եւ նմա փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն:

գովութիւնք ոչ 'ի փառս ինչ առաւելեալ նոցա, այլ բարեբանողաց մեզ բազում այսու ընձեռեն շահս ։

Եւ արդ քանզի այսօր աստուածազգեաց հայրն մեր հոգեւոր, հովիւ և վկայ, յեղծանելի կենաց աստի յերջանիկն արքայուն փոխադրեցաւ 'ի կեանս, ուր անպատում ուրախութիւնն է և անհայելի լոյսն, ուր բիւրք հրեշտակաց են և անպղրանկաց բանակք, ուր առաքելոցն աթոռքն են և մարգարէիցն տեսարանքն, ուր դասապանք նահապետացն են և պսակք մարտիրոսացն, ուր վերինն Երուսաղէմ է և անապակ խաղաղութիւն, ուր ժողովք սրբոցն է և արդարոցն բնակութիւն ։ Բայց մեք զինչ արասցուք այսքան թշուառաբեր վշտօք շրջապատեալ. քանզի ոչ գտանիմք արժանաւոր, որով զարժանին գովութեան բարեբանեսցուք. և զինչ, արդաքէն լռեսցո՞ւք. և ի՞ր վասն հանդիսացուք յայսմ վայրի. այլ ասեմք եթէ վասն զի ոչ կարասցուք բանիւ հաւասարել զմեծութիւն գործոյն, և նորին աղագաւ առաւել եւս պարտ և արժան էր խօսել. քանզի և այս 'ի մեծագունից գովութեանց է, ոչ կարել զառաւելութիւն իրին' բանիւ ցուցանել զաւգակեան. զի յորժամ 'ի վեր քան զմտութիւնս լինին ուղղութիւնքն, քաջայայտ յայտ է թէ անդր քան զմարդկայինս մտածութիւնս վերամբառնան գովասանութիւնքն ։ Բայց ոչ անտես առնէ երանելին զմեզ, և ոչ 'ի բաց մերժէ զաղքատիկ մերս բանս. այլ ըստ նմանութեան փրկչին հատուցանող զտակաւագոյն ընծայսն որ 'ի մէնջ, մեծ իմն համարի, և բիւրապատիկ փոխարէնս ընդ փոքունցն հատուցանէ. քանզի ոչ առ առաւելութիւն իրացն, այլ առ առատութիւն մտացն նկեթ հայի. վասն որոյ թէպէտ և յոյժ նուազագոյնք են մերքս, սակայն յորոց ճոխանամքս' առատ մատուցանեմք. զի և ո՞չ սիրելիքն ըստ կարողութեան պահանջեն ։ Նա և այսու առաւել ևս ճանաչի հանդէս մեծախոհութեան սորա, ոչ 'ի բաց մերժել զդուզնաքեայ ընծայաբերութիւնս 'ի տկար մարմնոյ և բազմադիմի վշտօք պաշարեալ անձնէ. այլ ընկալեալ 'ի մէնջ զգովասանութեանս բան, որում ոչ երբեք կարօտանայ, հատուցանէ փոխարէնս գործովք. որոց յոյժ մանաւանդ կարօտիմք և պիտոյանամք ։

Բեր այսուհետև զխոստմանն հատուսցուք տոկոսիս,

այս բնաւորական յՄեղեան բարութիւնս . բայց մի-այն արատաւս, տառապանս, թշուառութիւնս, վիշտս, ցաւս, ախտաժետութիւնս, նեղութիւնս, անձկութիւնս, հիւանդութիւն, ծերութիւն, մեղս ազգի ազգիս, և մահ 'ի կատարածի . այսքան և այսպիսի զիւրաւլական-ք ծանուցեալ զկենցաղս զայս երանելի հայրս մեր, վասն որոյ նուիրեաց զանձն իւր պատարագ մի, զհետ ընթա-ցաւ չարչարանաց խաչին Քրիստոսի . գիտեք արդեօք ըստ մեծին Պաւղոսի թէ ոչ են արժանի չարչարանք յաւժմեան ժամանակիս՝ հանդերձելոց փառացն որ յայտ-նելոց են 'ի մեզ :

Այլ գիտեմ, եւ լսիցէք, զի ցանկայ իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ կցորդ լինել չարչարանաց նորին, զի և պատ-րաստեալ պսակացն որ 'ի տեառնէ հաղորդ գտանիցի . բայց զի չև է ժամանակ մարտիրոսութեան, և ոչ են այժմ ընթացք յասպարիզի նահատակութեան, վհա-տիցիք արդեօք : Սակայն մի յաղագս այսորիկ տրտմե-ջիք անյուսութեամբ . զի թէպէտ և նոցայն անձեռնար-կելի է յայժմուս, այլ կրթեցէք զանձինս ըստ ժամա-նակիս նահատակութեան : Արհամարհեաց նա զբովան-դակ կեանս, արհամարհեցէք և դուք գոնէ մասնաւո-րաբար զխրախութիւն սորա . մատնեաց նա զանձն հրոյ, շիջուցէք և դուք յանձանց զհուր ցանկութեան . եհեղ նա զարիւն, և դուք զարտասուս առաջի տեառն, ընդ նմին և զաւելորդս գանձուցն 'ի ձեռս աղքատացն . կախեալ նա զկայծակունս բոցոյն, շիջուցէք և դուք առ 'ի ձէնջ զբոց բարկութեան . համբերեր նա յետ բազում նեղու-թեանց՝ մինհաշունչ գազանացն կենակցութեան 'ի խոր վիրապի անդ, համբերեցէք և դուք փորձանաց աշխար-հածուփ կենացս առանց կարճմտութեան . Ս՟ի քրանիր 'ի խրատու տեառն, ուսուցանէ իմաստութիւն . և Դաւիթ երանէ զմարդ խրատեալ 'ի տեառնէ . ընդ այսպիսի և առաքելական բանն երանի տայ որք համբերեն փորձա-նաց, զի թէ ընտիր եւս գտանիցի, առէ, առցէ զպսակն կենաց 'ի տեառնէ :

Յիշեցէք և զհամբերութիւնն սորին յանդնդային վիրապի անդ, ուրեան դառնաբեր վշտօք առլցեալ էր . Բայց որովհետև զկատանդաւոր զայն տեղի յիշեցէք, պարտ է մեզ սակաւ ինչ բանիւք դեգերել անդանօր,

նական խրատուն, զօրանայր ամենեցուն բանիւն. Յաշխարհի, ասէ, նեղութիւն ունիցիք, այլ քաջալերեցարուք զի ես յաղթեցի աշխարհի: Յիշէր ուրեմն և զառաքելականն բան՝ զի Թէ և Արտաքին մարդս մեր ապականի, ասէ, այլ ներքինն նորոգի օր ըստ օրէ, զի այժմու յաճախութիւնն նեղութեանս, զյաւիտենական փառսն գործէ 'ի մեզ: Սաղմոսէր և ընդ Դաւթայ. համբերելով համբերի տեառն և լուաւ աղօթից իմոց, հան զիս 'ի գբոյ տառապանաց 'ի կաւոյ և 'ի տղմոյ. և Թէ Ե՞րբ եկից երևեցայց երեսացդ այ, քանզի խանդակաթ սիրով եմ ես, ցոյց ինձ, ասէ, զերեսս քո, և լսելի արա ինձ զձայն քո, զի ձայն քո քաղցր է և տեսութիւն քո գեղեցիկ, զհետ հոտոյ իւղոց քոց ընթացայց: Այսպիսի ուրեմն բարբառէր հանապազ, այսպիսի աղօթիւք պաղատէր երանելին Գրիգոր, յայսպիսի մաղթանս խանդահեցուցանէր զամենողորմ զթութիւնն այ, մինչև յայց ել հոգին քաղցր մխիթարել հօրն իւրոյ, այն որ կամի զամենայն մարդիկ զի կեցցեն և 'ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն ամենեքեան, և այցելութեանն օրինակ էր. այսպիսի:

Այսումն գեղեցկութեամբ հռչակեալ Հռիփսիմեանուն, յարևմտից արեգակն ծագեալ արևելեան աշխարհին համդերձ լուսափայլ աստեղօքն որ ընդ նմա, կուսանաց վայելչութիւնն, մարտիրոսաց պայծառքն, հրեշտակաց զուարճացուցիչն, զինւաց ահարկուն, երկնաւոր փեսային հարսնացեալքն, այ ինքնանուէր ընծայքն, սրբութեան սիրողն, ամենամաքուր խորհուրդն, տաճանաւէք հոգին, արիական պատերազմողն, հակառակամարտից յաղթողն, պայծառագոյն շառաւեղն, քաջատոհմիկ ազատն, պտղաբեր ձիթենին, նախանձելի վարքն, պարկեշտութեան օրինակն, արևմտից նորաբոյս ծաղիկն, արևելից զարդարիչն, վայելչագեղ տիպն, աստուածատեսակագոյն միտքն, ադամանդեայ պնդութիւնն, որ զանբաւ զօրութիւն սկայազին բռնաւորին 'ի պարտութիւն դարձուցանէր իբրև զտղայ, վասն որոյ երգէ աստուածայինն Դաւիթ. Ամենայն փառք դստեր Թագաւորի 'ի ներքուստ 'ի վերջաւորս յօսկեհուռն պաճուճեալ: Օ՛ր ոչ և վասն իմաստախօս նորուն դայեկի Գայիանէ ասացից, ողջախոհութեանց մօրն, ամենահա-

թուի իսկ Դաւթայ յորժամ զվշտաց իւրոց 'ի թիւ ար-
կանէ զպատմութիւն. Տէր իմ 'ի քեզ յուսացայ, փըր-
կեա զիս, և յիմոց հալածչացն ապրեցո զիս, և մինչև
յե՞րբ տէր մոռանաս զիս 'ի սպառ, և թէ Ես 'ի տան-
ջանս պատրաստ եմ, և 'ի բաց արա յինէն զտանջանս,
և թէ Նախատեցին զիս թշնամիք իմ զօրհանապազ, և ըղ-
մոխիր որպէս հաց կերայ, և պանդուխտ եմ ես և նըշ-
դեհ որպէս և ամենայն հարք իմ։ Տեսանե՞ս զի ոչ մի-
այն զիւրն յայտ առնէ զնեղութիւնս, այլ և զնախնեացն,
և ոչ պարզապար զմիոյ կամ զերկուց՝ այլ զամենեցուն.
որպէս ամենայն հարքն իմ, ասէ, ցուցանելով և յայտ
առնելով եթէ ոչ ոք 'ի նոցանէ յաշխարհիս յայսմիկ
հանգստեան պատահեցաւ։ Արդ թէ իցէք եթէ ախորժէք
'ի բարեմասնութեան նահատակին, յերանելին ասեմ Յոբա,
և լուիցուք չափաւորապէս առ 'ի նմանէ զիւրոցն պատ-
մելով զչարչարանաց, որպէս զի կարասցուք թերևս առ
նորայն նախանձու և զմերս թեթև նեղութիւն համ-
բերութեամբ տանել։ Ո՞չ ապաքէն իբրև զփորձութիւն
են, ասէ, վարք մարդոյ 'ի վերայ երկրի և կամ իբրև
զաւուրեայ վարձու վարձկանի կեանք նորա. և դարձեալ
Գիշերք ցաւագինք տուեալ են ինձ, եթէ ցաւօք լինիմ յե-
րեկորեայ մինչև յառաւօտ, և արգասիք ծաղր լինին, զի
մատնեցին 'ի ձեռս ամբարշտաց. իսկ առ իմն ասէ. Զար-
հուրեցուցանես զիս տեսլեամբ գիշերւոյ, մատնեցեր զիս
'ի ձեռս անօրինի, եդիր զիս բանպասանս ազգաց, պա-
շարեալ եմ յամենեցունց։ Տեսանե՞ս ցաւագին պատ-
մութիւն, տեսանե՞ս բանաւորական վիշտս։ Նման սմին
և Երեմիաս բարբառի. Ո՜հ մայր իմ, ընդէր ծնար զիս.
այր դատեալ և դատապարտեալ, տեսանել զթշուառու-
թիւս մարդկան։ Նոյնպէս և ամենայն արդարոյն դարքն
'ի ցաւս և 'ի չարչարանս անցուցին զկեանս իւրեանց։
Վասն որոյ աղաչեմ և փոխան ասեմ, մի հանապազ
զանգիտեր և զմխիթարանքն խնդրեք Ճանապարհի հե-
տևութեան. քանզի և զինուոր որ պատաղեցի 'ի կեանս աշ-
խարհիս և ոչ ըստ օրինաց զօրավարին մարտիցէ, ոչ
պսակեսցի առ 'ի նմանէ. նմանապէս և դուք, մի վասն
և վեհերոտք յապաւրիցի նահատակութեանն գտանի-
ցիք, այլ նմանեալք երանելի արանցն, համբերեցէք հա-
սելոցն նեղութեանց որ վասն բարեպաշտութեանն. զի-

ցից, դու և գլխաւորական որբոցն ամենեցունց զա-ռաքինութիւնս հաւաքելով խմբապատուիրաբար ըստ օ-րինակի մեղուաց զբազմածաղկեան վարս ընտրելով զիւ-րաքանչիւրոցն 'ի քոյդ բերես նմանութիւն, զորոց բեր-ցուք առաջի մի ըստ միոջէ զանուանս ընտրելոցն յի-շատակաւ.

Աբէլ արդար, անարատ պատարագաւն գովեցաւ. իսկ դու 'ի բազմերջանիկ հայր ընծայ բանաւոր բոլո-րովին զանձն քո մատուցեր նմ հանապազօր մաղթանօք առ նոյն հայելով։ Ենովս անուանելի յուսովն յուսա-ցաւ 'ի տէր, իսկ դու զառաջինկայ յուսոյն օրինակ ար-դէն ցուցանես տակաւին։ Ենովք հաճոյ եղեալ նմ փո-խադրեցաւ յանապականս, իսկ դու զհոգւոյդ տեսու-թիւն բոլորովին յերկրէ յերկինս փոխադրեցեր։ Նոյ արդար գոլով և 'ի վերայ պատարագացն հաճոյ գտեալ, փայտեղէն տապանաւն զկենդանեացն ազգ ապրեցու-ցանէր 'ի ջրհեղեղին կործանմանէն, բայց դու նոր իմն տապան հաստատեցեր զեկեղեցի Քրիստոսի, և 'ի ջրհ-հեղեղէ կռապաշտութեանն զբազմութիւն մարդկան ապրեցուցեր։ Աբրահամ ծածկութեամբն և հիւրա-սիրութեամբն սքանչելի եղեալ, միանգամայն և պատա-րագ ընդունելի առանց զենման զորդին որ յաւետեաց էր՝ մատուցանէր նմ, բայց դու ոչ միանգամ այլ հանա-պազօր զՔրիստոս ընկալար հիւրասիրութեամբ 'ի դրանց տառապելոց, և զենուր ոչ օչխար փոխանակ Իսա-հակայ մատուցեալ, այլ զքեզ ինքնին բոլորապտուղ ողջակէզ բանաւոր ընծայելով կենդանւոյն նմ։ Իսա-հակ արդարութեամբն և օրինակ լինելովն փառաւորի. իսկ դու իբր քանունն արդարութեան զամենայն տե-սակս առաքինութեան և զօրինակ բարեաց 'ի քեզ բե-րելով մաքրապէս։ Յակոբ պարզմտութեամբ հոգւոյն և բազմորդութեամբն սքանչելի եղև, որով և զամե-նայն տեսանէր յերկրէ յերկինս հասանելով, մեծա-գոյն իմն խորհրդոյ օրինակ մեզ ցուցեալ, բայց դու ծնար հոգիս և հոգևորապետս և հօտս բազումս հօտա-պետին Քրիստոսի. և ելս 'ի մտի դնելով քո, իբր ան-տիճանաց ելիւք ըստ իմանալի սանդղոց փառաց 'ի փառս փոխելով յերկրէ յերկինս վերանայեցար. վասն որոյ ոչ նշանաւոր խաշինս, այլ նշանակաւ հոգւոյն շնորհաց բա-

զձայն մատուցանելով, քանզի դու ես հրաշափառաւորդ
որպէս Թուի ինձ հաւատացելոց 'ի ձեռն հրեշտակին կե-
րակրեիր 'ի բանդին: Աւուրցին արդեօք անձայնեսցուք
զքեզ, և յիրաւի ուրեմն. քանզի զորս ընդ մեծ և ար-
ձակ աշխարհիս այսորիկ դիւական անհաւատութեան
ծով նաւակոծեալ ծփէին, քոյով որբազանաբար առ
ւած հայցուածովք զամբոխումն մոլորութեան մրրկին 'ի
հանդարտութեան դարձուցանելով սիք, մեծաւ զգուշու-
Թեամբ զալեկոծեալսն ուղղելով նաւս, 'ի Հրեշտակեան խա-
ղաղութեանն հաստուցեր նաւահանգիստ.

Արդ ով հայր սուրբ և առաջնորդ փրկութեան ա-
մենայն հաւատացելոց, որոց ոչ պակասեցար 'ի քոյոց
սիրելեաց փոխադրելով յաշխարհէ, այլ զի Թէպէտ և
զհասարակաց պարտն հատուցեր զբնութեանս օրինաց,
սակայն յիշատակք քաջութեան քո մնայ առ մեզ յա-
ւիտեան. Նոյնպէս և յայսմ հետէ աղաչեմ ոչ ես մե-
կուսանալ հոգևորական այցելութեամբ առ 'ի մէնջ,
այլ յիշել զմեզ անմոռաց խնդրելով 'ի հասարակաց
յուսոյ փրկութեան մերոյ, զի և մեք զպատահումն սա-
կաւագոյն վշտացս համբերութեամբ կատարեսցուք.
քանզի ըստ առաքելոյ, որ զփորձ առեալ է՝ կարող է
փորձանաւորաց օգնական լինել: Այլ զսակաւաքերթեալս ներ-
բողական բան առ 'ի մէնջ ընկալցիս բարեմտաբար. զի
Թէպէտ և անհանգէտ գոլով քումդ արժանաւորու-
Թեան՝ սակայն Ջերմագոյն հաւատով և կատարեալ մա-
տուցաք սիրով, և քոյին վշտամբեր նեղութեանցս յի-
շատակաւ 'ի մերումս մխիթարեալ սփոփեսցուք. Նաև դու-
իբրև նմանող Քրիստոսի ընկալցիս որպէս և նոյն զայ-
րւոյն խեղճ, զի և ես նմանապէս նմին նուաղեալ 'ի
զօրութենէ անդամանց, տկար գոլով մարմնով և վշտա-
գին անձկութեամբ, մանաւանդ բանդադատեալ սիրով
'ի քո համբուրելեաց 'ի քում վիճակիս, նշանակ սիրոյ
հատուցի քեզ ընծայ Ջերմագոյն սրտիս. զի ահաւասիկ
նուիրեալ եմ և ես յայսմ հետէ լքանել զկեանս զայս
տաղտկալի և լինել ընդ Քրիստոսի. Թերևս անդանօր
հանգիստեսցուք միմեանց զուարճալի և գեղեցկագոյն
հանգստեամբ, բնակեցելով 'ի միասին մերոյն Ջերմաւորա-
տկին, և արժանաւոր լինել երանութեան խորանացն. Ա-
րաց մեզ աղերսեցուք հասանել 'ի Քրիստոս Յիսուս 'ի

Արդ որպէս մեղուն որ թռչելով և յօժարի զամենայն ծաղիկսն ամփոփել յինքն, սակայն ոչ ժուժկալէ, վասն զի ունայր է զօրութեամբ և վասն այնորիկ ընտրէ զորս ՚ի մէջն պայծառ և անոյշ և շահեմարանէ ընդ թևօք և գործէ նոքօք զխորիսխ մեղու, սոյնպէս և ես զորս բաւականանամ ընդունել և զայն շահեմարանեցից ՚ի միտս և պատմեցից լեզուաւ առ ՚ի քաղցրացուցանելոյ զքիմս ընծայելոցն որք փափագեն լսել զգովասանութիւնս սըրբոյն Գրիգորի:

Արդ զի՞նչ կոչեցից զբահանայապետս զայս, եթէ ոչ արեգական յարևելից ծագեալ, որոյ նշոյլք ճառագայթիցն մինչև ՚ի տունս հնացելոց աշխարհին: Մի՛ թէ զբանջարեղէնս, տնկել կամեցեալ ուրուք բուրաստան, նախ հատանէին փուշք և խոլին արմատք մնացականք, և հազիւ իմն արմատանայ բուրաստանն. այլ այս բուրաստան մեծի նահապետակիս և քահանայիս և վկայիս ՚ի մէջ փըշոց բուսեալ և երկնաչափ բարձրացեալ՝ հրեշտակազարթ ծաղկափայլելով գունովք և զփուշ տատասկ և զայլ արմատս մնացականս խոտոց ոչ ՚ի բաց հատեալ ընկեցեալ, այլ փոխակերպեալ ՚ի ծաղիկս անուշահոտս ծառս պտղաբերս, զգժնիկն խնծորաբեր արար անուշահամ և զտատասկն վարդաբեր և մանուշակաբեր անուշահոտս և վայելչացեալս, զերանելիսն ասեմ ըզՀռիփսիմէ և զԳայիանէ առեալ արմատս բազմամասնեայս և սփռեալ ելից զաշխարհս Հայոց մեծաց, յորում ոչ մնաց խոչ ինչ ՚ի հովանաւորութենէ սոցունց: Մի՛ թէ զբանջարեղէնս, այլ մարմնաւոր նմանեալ զօրաց անմարմնոցն, այլ և գերազանցեալ ևս, եթէ ոչ յանդըգնութեամբ է ասել՝ քան զանմարմինսն, քանզի նոցա ոչ գոն վիշտք մարմնոյ և ոչ ցաւք անդամոց. իսկ սոքա յինքեանս ընկալեալ զցաւս և զվիշտս և համբերեալ իբրև զայնս որ ոչ ունին զզգեցուած մարմնոյ: Նմանեալ և այլ ևս է սոցա առաքինութիւնն. հաւասար ասեմ զսա Պետրոսի և Պաւղոսի, զի որպէս նոքա մեծամեծան առաքինութեամբ զաշխարհս արևմտից զարդարեցին ՚ի կռապաշտութենէ ՚ի Ճանապարհս ա̃ծգիտութեան, այսպէս և երանելիս այս զկողմանս արևելից քարոզեցեալ և ուսուցանելով, եթէ արդար է պաշտել զՀայր և զՈրդի և զՀոգին սուրբ. բանին անմեկնելի ՚ի Հօրէ առեալ

խնդրել զթողութիւն որ բազում զիւրս նախատանաց զոյ-լացուցեալ արկանէաք 'ի վերայ, և զի ոչ գոյր չար ինչ 'ի սիրտս նոցա, այնու համարձակեցուք և երթիցուք 'ի գուբս վիրապին և տեսցուք. Ել ծառայդ այ ար-տաքս, և ծառայեա զապաշխարեալ ծառայս քո, որ ա-ռաք իշխանութիւն քեզ յայսմանէ զոր խորտակեցեր յանդգնութս կշտամբելով քո 'ի գուբս խոր, և որպէս ա-սար 'ի քում վարդապետէդ, նոյնպէս արա և դու ա-շակերտաց քոց: Արդարեւ բարի, եւ յաշխարհ Հայաստանեայց որ երևեցաք կրկին Լուսաւորիչ, և փա-խստեան հնացի բարբառեցաք զմիրասն, և բաց բարբա-քեալ արկաք զթոյն վիշապացն. զոր ցոլացուցեալ էին ապերախտութիւնք քո, շիջուցեր զմահաբեր բոց օձիցն և քարբից, և գնացեալ կոխեցեր 'ի վերայ կայծակնա-կերպ վիշապացն, և վերստին երևեցար երկրորդ Նո-նիա, Մարիա և Աիսայէլ պաշտելով զերրորդութիւն անքակտանելի զոր ոչ հաւատացաք: Որդ հաւատացաք և գոչեմք ընդ Նաբուգոդոնոսորայ արքային բաբելա-ցւոց տեսանելով 'ի մէջ հնոցին ցող Աստուծոյն. Եկ ար-տաքս ծառայդ այ բարձրելոյ, քե հաւատացաք խոստո-վանել զհայր և զորդի և զսուրբ հոգի, եւ արտաքս 'ի հնոցէ վիրապէդ, և փառաւորեա զնա որ փառաւո-րեաց զփառաւորիչս իւր, և պարծեաց Աստուծոյն պարծա-նօք, և գոչեա Աստուծոյն ձայնիւ եթէ զնա պաշտեսցէք զի ես համարձակութեամբ քարոզէի, նա է արարիչ որ պա-հեաց զիս անարատ 'ի բազում ժամանակաց վիրապին: Եկ արտաքս նոր Դանիէլ և երևեցո զքեզ Սագովկայ ար-քային բաբելացւոց որ է Հայաստան, զի արկաւ 'ի գուբ, ոչ եթէ 'ի մէջ երկուց առիւծուց, այլ եւս առաւել բըռ-նութեամբ գազանաց, զի ամենայն գազան թէպէտ և բեկանէ, է հնար թերևս միանգամ ապրեցուցանել, իսկ թունաբեր ժանիք վիշապաց ոչ բեկանէ զմարմինն և ոչ նուազեցուցանէ զանդամսն, այլ փոքր ինչ աղան չափ դանելով զմահն անմերկելի 'ի վերայ ածէ, և յայտնանէ մնացեր անվնաս, թող թէ չմահացար:

Որդ զայս ամենայն թերևս 'ի դէպ էր ասել նոցա, այլ մեք 'ի մէջ ածեալ զնորա պատճառ չարչարանացն զամենցուք: Որքայն Տրդատակեան յազգս հօրն իւրոյ ազատանանց մկրտեալ, և յետ այնչափ հարուածոց և

տանջանաց գանից և գեղարանաց, ամպրաբեկ և անդա-
մանմանչ կախաղանաց և ամենայն կտտանաց որով կտտե-
ցին զնա չար մախանօք և նա բազում համարձակու-
թեամբ կրէր վասն անուան տեառն մերոյ և փրկչին
Յիսուսի Քրիստոսի, և առ նոսա այսպէս ասէր. Դուք
հարկանէք զիս գանիւք և տանջանօք մարմնաւորք, վայե-
լելով զայս կեանս վաղանցուկ և երազատիպ յաւա-
հաս լինելով յանանց կենացն, այլ ես զաժամանա-
կեայ կեանս համբերութեամբ տանիմ յաղագս այնմ
որ չարչարեցաւ վասն իմ. բացեալ լինի ինձ կեանքն
անմահութեան, և դրախտին փափկութիւնն անաշա-
հատ բարութեամբ, յոր մտից և ժառանգեցից յաւիտեան
և ուրախանամ և երախտիս համարիմ զոր դուք վար-
կանիք անձին իմոյ արկանելով 'ի վերայ իմ զչարչա-
րանսդ, զի թէպէտ ամպրաբեկ առարէք գեղարանօքդ
զանդամսն զաւուր ժամ մի համբերելով, և յետ այնորիկ
տառապեցուցեալ տապօք և հաստատամտութ իբրև զարմաւե-
նիս բարձրացայց առաջի արարչին իմոյ բազմաստեղն
տարածեալ սաղարթագուարճ և ծաղկազարդ, որ ոչ
թառամեսցի յաւիտեան. այլ գարնանաբեր պտղակազ-
մեալ և պայծառացեալ զուարթանամ 'ի բուրաստանս
ամենատունկ դրախտին, զի թէպէտ և դժնդակ բարձրա-
բերձ մեքենայիւք և գեղարանօք կախէք զիս զլխիվայր,
սակայն վստահացեալ եմ թէ առ սուղ ինչ համբե-
րութեամբ՝ զլխաւորութիւն իմ մինչև յերկինս բարձ-
րասցի առաջի արարչին իմոյ. այլ և փաւազանդ և ար-
ջառաջիլ տանջանարանքդ որ մաշեն զմարմինս իմ, հա-
ւատամ եթէ ամենահունանակատ զարդարեալ պսակք
հիւսեսցին ինձ, զոր կապեսցէ թագաւորն 'ի գլուխն իմ,
և նստուսցանէ յաւագաստ երկնաւոր հարսանեացն. և
արիւնս այս որ հոսեալ իջանէ 'ի մարմնոյ իմմէ, ներկէ
ինձ բեհեղ և ծիրանիս թագաւորական զգեստ անմա-
հութեան որ ոչ մաշի յաւիտեան: Զայս ամենայն
Ջահ էր պատասխանել երանելոյն:

Այլ զինչ ասեմ յետ այսր ամենայնի. ոչ յագէր անօ-
րէնութեամբ արքայն Տրդատիոս որքան կապեալ էր
զնա և չարչարեալ, այլ իբրև զայն ևս հատանէր 'ի վե-
րայ իւրայն եղելոյ, թէ արդարև սա է որդին Անակայ
պարթևի որ սպան զԽոսրով զհայրն իմ, ես հրաման

նելին զի հրեշտակք սրովբէական թևօք բարձեալ իջու-
ցանէին զնա առանց վնասու. և պահպանեալ հրացան և
ամենեն. Մեք ծնունդ եմք որդւոյն որ պատրեաց զԵւա
ճաշակմամբ պտղոյն և աքսորեալ 'ի վայր ընկեց 'ի փափ-
կութենէ դրախտին, և զոր զաւակ Ադամայ և թոռն
Եւայի որ ընկալան զփշաբերութեան անէծս, որ և ա-
ռեր հրամանն յարարչէն ստանալ զկլոյ մերոյ և մեք
քում զաւշտապարապց. և արդ ըստ այսմ հրամանի դի-
մեցաք 'ի քեզ կատարել զմնական թշնամութիւնն մեր
'ի քեզ, և տեսաք զմարմինդ քոյ զորս անմարմնոց, և
զքեզ դատաստանեալ ընդ անմարմնական դասն և պատ-
կառեցաք. այլ շլացան խայթոցք մեր, և ժանիք մեր
թիւնոք կակղացան, և եղեն իբրև զմոմ հալեալ յե-
րեսաց հրոյ ծածաղանդ պատկերէ քումմէ. Թոյնք մեր
որ բոցավառեալ գործէին զմահս 'ի մարմինս ստսուրս,
ծծմբայուղիս աղբեր աղօթիւք քո դարձան և եղեն իբրև
զջուր ցուրտ, և փոխանակ փոխելոյ յերեսաց քոց, ե-
կեցաք 'ի սպասաւորութիւն հեղձուցչին գազանային
բնութեանս մերոյ, զոր և մոռացաք իսկ վասն հրաման և
պատկերի քում առանց երկիւղի քում. և արդ առա-
նակերպ հնչմամբ սնան 'ի տան քում առանց երկիւղի.

Նա և ես զարմացեալ եմ ընդ չորեքտասան ամ լի-
նելոյ նմա անդ. բայց եկեսցուք յայն եթէ զինչ ընկեր
փոխձանն յետ այնչափ ամաց: Ասէ. Յայնմ ժամանա-
կի թագաւորն ժամ տուեալ որոց զօրացն և ինքն ե-
լեալ 'ի կառս կամեցաւ 'ի քաղաքէ անտի արտաքս ե-
լանել՝ և վաղվաղակի պատուհաս 'ի տեառնէ 'ի վերայ
հասեալ, այսոյն պղծոյն հարեալ զնա 'ի կառացն 'ի վայր
կործանէր, և մոլեգնեալ սկսաւ ուտել զմարմինս իւր-
նա և ըստ նմանութեան արքային բաբելացւոց Նա-
բուգոդոնոսորայ եղեալ արտաքս քան զմարդկային բնու-
թիւնս ըստ նմանութեան վայրենի խոզաց աղտեղեալ բնա-
կէր 'ի մէջ նոցա, մնեալ այնուհետև խառնաձայնակ լի-
նէր. և այնուքիկ ազանչելի յայսմ վայրի: Իսկ առ թա-
գաւորն զինչ. պարտ էր ասել. Ով թագաւոր, զհետ
երթալով քո սատանայի արհամարհեցեր զծառայդ
Աստուծոյ, վասն այնորիկ և նա որում սպասէիր՝ ըն-
կեալ տանջէ զքեզ հրամանաւ Ճշմարտին Աստուծոյ,
զոր պաշտէ մեծն Գրիգորիոս. զու արհամարհեցեր

զովեցեր զծնօղս 'ի զաւակս նոցա. Երանելի ես դու որ քակեցեր զորձս գայլոց և խորտակեցեր զգազանս ապա-կանիչ, և պարսպեցեր զփարախ հօտի քում զօրութեամբ այնմ մեծին որ հաստատ առանց ձեռին, և արկեր ցանկ ամրագին պատուիրանաւն և բազմացուցեր զհօտս Թա-գաւորին քում, երանելի ես դու կոչեցեալ առաքեալդ, որ քարոզեցեր զաւետարան որդւոյն Այ և ծանուցեր զանօրինականն մարգարէութիւնն ազգի օտարի և ուսու-ցեր երկրպագել անբաժանելի սուրբ երրորդութեանն և մի Աստուածութեանն հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ. Ե-րանելի ես դու հաւատարիմ վկայ Քրիստոսի որ վկա-յեցեր վասն նորա ընդ նմանութեան երանելւոյն Պետ-րոսի թէ նա է որդի Այ կենդանւոյ անմեկնելի 'ի ծոցոյ հօր. Երանելի դու որ յանձն առեր զչարչարանս վասն նորա որպէս և նա վասն քո. Երանելի ես որ զհնգետաս-ան ամ ժուժկալեցեր 'ի վիրապի. անդ. Գովեմ և զհոգի նորա սուրբ զոր դու քարոզէիր, զէակիցն հօր և որդւոյ. որում պատիւ և զօրութիւն յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ԱՌ ԼՈՒՍԱՒՈՐԵԱԼՍՆ ԱՍԱՑԵԼՈՎՆ ԼՈՒԱՑՄԱՄԲ ՄԱՐԻԱՄԱՑ

Օրհնեալ է Այ, ահա և յերկրէ աստեղք երեւին. աստեղք որ քան զերկինս և պայծառագոյնք, որ 'ի յերկ-րիս են. աստեղք՝ յաղագս որոց յերկնից յերկիր ե-րեւեցաւն. ոչ 'ի գիշերի միայն աստեղք, այլ և 'ի տուըն-ջեան: Այս երկրորդ սքանչելիք, 'ի տուընջեան աստեղք քան 'ի գիշերի պայծառագոյնք՝ քանզի նոքա յարեգա-կանն երեւել ծածկին, իսկ սոքա յարդարութեանն ա-րեգականն երեւել յաւէտ փայլեն: Տեսե՞ր աստեղս եր-բէք ընդ արեգականն երեւեալս. նոքա 'ի կատարածին հասանել ապականին, իսկ սոքա 'ի գալ կատարածին առաւելագոյն երեւին. յաղագս նոցա ասէ՝ եթէ "Աս-տեղք երկնից անկցին որպէս անկանի տերեւ այգւոյ„ բայց յաղագս սոցա ասէ՝ եթէ "Արդարք փայլեսցեն իբրեւ զաստեղս երկնից„: Օ՜ ինչ է՝ որպէս անկանի տերեւ

է, այլ վասն զի թագաւորի պատուէր է ; նոյնպէս և ա-րիւնն այն անազգայ և անշունչ է. որք շունչ ունին մար-դկն՝ փրկեաց. ոչ վասն զի արիւն էր, այլ վասն զի ա-րեանս այս օրինակ էր ։ Յայնժամ եւս սատակիչն զդրունսն շաղախեալ արեամբն. և ոչ իշխեաց 'ի ներքս ընթանալ. և այժմ եթէ տեսցէ սատանայ ոչ 'ի վե-րայ դրանց ցանեալ զարեանն զօրինակ, այլ զմարմինս հաւատացելոցն՝ զշաղախեալ զարիւնն ճշմարտութեան 'ի դրունս քրիստոսազգեաց տաճարին, ո՞չ առաւել եւս զինքն 'ի բաց արգելցէ. քանզի եթէ հրեշտակ տեսա-նելով զօրինակն պատկառեաց, առաւել եւս եթէ սա-տանայ տեսցէ զճշմարտութիւնն փախիցէ ։

Ախորժես և այլուստ տեսանել զարեանն զայսորիկ զզօրութիւն. Հայեաց ուստի հոսեցաւ՝ 'ի սկզբանէ զաղ-բերն ունելով 'ի վերուստ 'ի խաչին տէրունական 'ի կո-ղէն ։ Վասնզի 'ի մեռանելն, ասէ, Յիսուսի մինչդեռ տակաւին 'ի խաչին էր՝ մերձեցեալ զինուորն խոցեաց զկողն տիգաւ, և ել, ասէ, ջուր և արիւն. մինն մկրտու-թեանն օրինակ և միւսն խորհրդոյն. յաղագս որոյ ոչ ասացեալ է արիւն և ջուր, այլ ջուր յառաջագոյն և ապա արիւն. զի նախ մկրտութիւնն է և ապա խոր-հուրդն ։ Խոցեաց զկողն զինուորն այն. փորեաց զորմ սրբոյ տաճարին. և ես զգանձն գտի, զմեծութիւնն ասի ։ Նոյնպէս և գառամբն եղև. Հրեայքն զենին զոչ-խարն, և ես զփրկութիւնն որ 'ի զենմանէն էր ընկալայ ։

Ի կողէն ել ջուր և արիւն ։ Մի՛ զանց առներ վարկ-պարազի զխորհրդովն, սիրելի. քանզի ունիմք և այլ իմն ասել խորհրդական բան ։ Ասացի եթէ մկրտու-թեանն օրինակ և խորհրդոյ էր արիւնն այն և ջուր՝ յոր-կոցունց յայսցանէ եկեղեցի ծնաւ, աւազանաւ վերստին ծննդեամբն և հեղմամբ հոգւոյն սրբոյ 'ի ձեռն մկրտու-թեանն և խորհրդոյն որ 'ի կողէն էր ։ Ի կողէն ուրեմն զեկեղեցի արար Քրիստոս, որպէս 'ի կողէն Ադամայ զԵւայ արար. յաղագս այսորիկ և Պաւղոս ասէ. "Ի մարմնոյ նորա և յոսկերացն եմք", զկողն զեկուցանե-լով ։ Զի զոր օրինակ զկողն յայնժամ էառ ննջ և ըս-տեղծ կին, նոյնպէս և նա ետ մեզ ջուր և արիւն յիւրմէ կողէն և ստեղծ զեկեղեցի ։ Զոր օրինակ յայնժամ 'ի հիացմանն զկողն էառ 'ի քուն լինելն Ադամայ, նոյնպէս

և մահք. ընդ միով կաւէր յայտնի և ծածուկ։ Պատձեալ և երևէր իսկ յայտնի Թշուառութիւնն. մաշեալ և պատառեալ անկողնին. ամբաստանէին հաւ 'ի հաւու վերայ սարդիոստայնքն։ Կարի անողորմ էր տեսանել զանսեղանն, զանաթոռն, զանաշտանակն, զԹախծութիւն երեսացն, զգունոյն գեղնութիւն, զփաղերութիւն գեղնութեան տեսոյն, զանխնամն, զանսատածն, զանլուացութիւն ձեռաց, զբոլոր աղտ մարմնոյն զինքեամբ ունէր, զանմանարն, զանվերարկուն, զանոքն, զանուրեքն, զանպապահակն, զամենևին անջատեալն յամենայն ումեքէ, անցեալ ընդ անկնկալութեան կենաց աշխարհիս։

Իսկ Յիսուս իբրև ետես, ասէ ցնա՝ եթէ ողջանալիս 'ի հիւանդութենէդ։ Իսկ զինչ այսմ տայցէ պատասխանի այրն. վասն զի ոչ սովոր էր զայսպիսի օրհնութեան բարբառ լսել, ոչ ասաց՝ կամիմ տէր, ողորմեաց ինձ. այլ անոյր յառաջին խորհուրդն ընթացաւ որում ակն ունէր. յոր յուսայրն, որում այնչափ ընդ երկար մնայր, ասէ. "Տէր, պահակ իմ ոչ գոյ, զի յորժամ ջուրքն յուզեսցին արկցէ զիս յաւազանն. և մինչ ես դանդաղիմ թէ սակաւիկ մի շարժեցայց, այլ ոք քան զիս վաղագոյն իջանէ 'ի ջուրն"։ Զինչ խօսիս, այր դու։ Ասէ. "արի առ զմահիճս քո և երթ 'ի տուն քո"։ Նոր եցոյց եթէ ամենայն մարդ պանդուխտ է 'ի կեանս աշխարհիս այսորիկ, և բնակեալ են յիւրաքանչիւր հիւանդարան պիտանաբար և ոչ հաստատութ՟։ Նոյց այնոցիկ որ կարացին զգլուխ իւրեանց 'ի վեր առնուլ և թեթևանալ յամենայն ծանրութեանց բեռանց սորա, առողջացեալք և զգաստացեալք փոխանակ մահճացն հոգիքն բառնան զմարմինսն և գնան, 'ի յերկար հիւանդութենէն հանգչին, և դադարեն աստէն յաշխարհիս յուսով շաբաթապահ ամին՛ որ կայ պահի ամենայն արդարոցն Այ որք արժանի եղեն անսուտ խոստմանցն Այ։

Նոր առեալ այրն զմահիճսն ընդ անձին՝ երթայր ընդ մէջ քաղաքացն. լուռ էր բերանն 'ի խօսից. մահիճքն անձայնութեամբ աղաղակէին զքանչելիսն Այ ընդ ժամանակին առ մի այրն, անտի և առ այսր բոլոր մարդիկ. զի եթէ կամի և եթէ ոչ կամի, մահճօք յուղարկի 'ի

տան և զութ ամ, և 'ի ձենջ ողորմութիւն չգտի, զանէ այսօր ողորմեցարուք ինձ և մի ստասկէք զիս 'ի տարապարտուց եթէ դշուառութուս վրէժս խնդրէք։ Ոչ եթէ եկի կրկնաւքաղ 'ի զաւշտս, չարհամարհեցի զօրէնսն Մովսէսի, չգտայ 'ի գողութեան որպէս զՈւքարն. մի վասն իմ զծածուս նորա յիշէք, հնարհեցէք ինձ զնորագիւս կեանս։ Զայս բանս ասացեալ այրն, ընդ տրամբքն թաղուցեալ 'ի տաճարն անկաւ։ Իսկ Յիսուս թէպէտ և խոյս ետ յամբոխէ անտի, եկն եգիտ զնա 'ի տաճարին և ասէ. "Ահաւասիկ ողջացար, այլ մի ևս մեղանչէր, զի մի չար ինչ անցք անցանիցեն ընդ քեզ"։

Ո՜նչ արդեօք իցէ հրաման սաստիկ ահեղ սքանչելեացն. զբաղոր շնորհս ձրի արար նմա, և յետ առողջութեանն յայժ սպառնայ նմա ասելով՝ զի մի չար անցք անցանիցեն ընդ քեզ։ Ուսուի ինձ թէ ոչ են բանքս այս պատիժք պատուհասի, այլ խրատ իմաստութեան ուսուցանէ, և զառաջին յանցանսն մարդոյն յիշեցուցանէ՝ եթէ 'ի մեղացն եղեն տկարութիւնքն և մահք. զերկրորդ սիրոյն շնորհս անմոռաց յիշատակս անկէ, և բժշկելոյն յայս ասնէ եթէ ոչ են կեանք աշխարհիս բաւանդակ որդարութիւն և անմեղութիւն։ Այլ զի դարձեալ ասէ զի մի չար ինչ անցք անցանիցեն ընդ քեզ, զահաւոր գեհենէն յիշատակէ և զբորբոքումն անշէջ հրոյն, զորդանցն անմահից, զանապատելի կըրճել ատամանցն, զլացն անհնարական, զահագին մըրնչիւնն, զանդադար հեծութիւնն, զգբոյն տապականութիւնն, զխորին խաւարային տեղիսն, զտապ տապալկինն, զբոցակէզ զանձուկն, զանողորմ գհարուածսն, զդահճացն զանաշառութիւն, զլիրհն ահագինն, զանանցանելի արգելանն, զկրճիմն անքակելի, զանդութ և զանդորմ տարտարոսն, զանանձուկ և զանսէր ժամանակինն, զարդարոցն չհայել 'ի մեղաւորս, չհայել 'ի տառապանս մարդկան, հօր չողորմել, որդւոյ չարգահատել, սուրբ հոգւոյն չլինել բարեխօս, հրեշտակաց զերեսս 'ի բաց դարձուցանելով, առաքելոց և մարգարէից, մարտիրոսաց և ամենայն կատարելոց առաքինեաց անփոյթ արարեալ վասն մեղաւորացն. իբրև զի չեմք բաւական պատմել զնեղութեան ժամանակին դառնութիւնն, արտասուօք զկեանս մեր վճարեսցուք։ Այս են ասաւել չարիքն որ անցանելոց են ընդ մարդս պատուիրանազանցս։

պիտոյից, Թէպէտ և մի իցեն յերկաքանչիւրում փողոյն և քնարին անուն ։ Այն յաշխարհական երաժշտականան է, իսկ այս յեկեղեցական դասուն. անդ փող երգողական զհանդարտութեան նուագս երգելով, իսկ աստ փող ա̃ծայնին զխաղաղութեանն լռութիւն պատմելով. վասն զի փող և բանն ա̃յ պատմի վասն կարգօք և յարդարմամբք ունելով զվկայիցն զքաղցրութիւն ։ Անդ քնարիցն տուեալք և աղեխնդութեանցն պատճառք, իսկ աստ քնար հոգեւորական օգտութեան յանկումն. անդ բարբառք մնան չքնաղականք, իսկ աստ բարբառք տիրաբանեալք. անդ ծնծղայք պղնձակածոյք, իսկ աստ մարգարէական երգք. անդ Թմբուկք կաշեօք մեռելոտեօք ձկտեալք, իսկ աստ Թմբուկք առաքելական կարգօք կենդանագրեալք ։ Վասնզի ոչ միայն յաշխարհական երգսն, այլ և յեկեղեցական երգսն է փող և քնար և բարբառք և ծնծղայք և Թմբուկք և որ նմանն սոցին ։ Այս ով է վկայ այսոցիկ. հաւանեցուցանէ զքեզ միշտ երանելին շնորհօք երգող ազգին Պաւղոս, որ զփող ա̃ծգիտութեանն քնարաւ հոգեւորութեանն խառնեալ վարդապետական բանիւքն, անշփոթտահելով քրիստոսասէր լսողաց զբարեպաշտութեան նուագս, և տակաւին ես այսպիսեօք բանիւք աղաղակէ ասելով. «Եթէ զընտրութիւն ինչ բարբառոյն ոչ ատացեն, զիարդ ծանուցեալ լինի հարուածն փողոյն կամ քնարին». այսինքն եթէ ոչ լսա պարտին, և յայտնաբար Թարգմանեսցին ։ Զինչ հայր, զինչ որդի, զինչ հոգին սուրբ, զինչ բանն, զինչ բարբառն, զինչ փողն, զինչ քնարն, զիարդ հաւատարմացի բարեպաշտութեանն կարգք. եթէ ընտրութիւն բարբառոյն ոչ տայ, զիարդ ճանաչիցի փողոյն հարկանելն կամ քնարին ։ Բարբառ տալ զբանն վարդապետութեանն, և փող հարեալ զբանն տեառն, և քնար հարեալ զհոգւոյն հրնչումն ։ Արդ լուր իսկ անդէն Ղուկասու աւետարանչին գոչելոյն ։

«Աղաչէր, ասէ, ոմն 'ի փարիսեցւոցն զՅիսուս զի ճաշ կերիցէ ընդ նմա. և մտեալ 'ի տուն փարիսեցւոյն բազմեցաւ ։ Եւ ահա կին մի էր 'ի քաղաքին մեղաւոր. տեսեալ թէ բազմեցաւ 'ի տան փարիսեցւոյն, առեալ շիշ մի իւղոյ ազնուի, և կացեալ առ ոտսն Յիսուսի՝ արտա-

ձեռամբ էր բանալ նմա արքայութեանն երկնից. և կենս առաջի այնուհետև փութայր մտանել։

Իսկ որոյ կոչեալն էր զանէրն մեր, և ծառայք նորա գիտելով զկինն թէ որպիսի ոք էր, և զի յանդգնէր, 'ի բաց մղէին զնա անելով. 'ի բաց կաց 'ի դրացդ զա-ռաջ յայլոսա, զինչ կամիս, խափանել զմեծարկոսն[1] ըղ-ձ]իրուսա. ոչ է պարտ անցանել ընդ այս կեանք; մանա-ւանդ որ ոչ պարկեշտ իցէ. զի մարդ է կոչեցեալն, և ոչ առաքինականն ոք. 'ի բաց կաց 'ի նախադրացդ յա-ռաջ քան զմտել մեր զերեսս քո արտաքոյ։ Այս այն-պէս ծառայքն փարիսեցւոյն գիտելով զնա թէ որպիսի ոք կին էր, բազում թշնամանօք 'ի բաց մղէին զնա։

Իսկ կինն որպէս յաղթող ոք զթշնամանսն ընդունէր անելով. 'ի բաց կացէք 'ի դրացդ, բարեաց խափանիչք. դուք ոչ գիտէք զոր զանձ ունիք 'ի ներքս, իսկ ես գիտեմ զմերձակայդ բժիշկ. և դուք ոչ որպէս զմարդարէ հա-մարիք զնա, իսկ ես՝ զԱծ զորով զնա հաւատացի. 'ի բաց կացէք 'ի մտիցդ, մի զիս խափանէք, զի վասն իմ իսկ խոնարհեցոյց զերկինս և էջ. վասն իմ եկն աստ, զի զիս 'ի բարեացդ խափանէք. գիտեմ ով պատերազմի ընդ իս 'ի ձեռն ձեր. բանսարկուն ընդ իս բարկանայ, որպէս զի թողեալ եմ զնա, զի նորա էի գործարան։ Ընդէ՞ր հալածէք զիս. եթէ զպատնիկական ինչ ունիմ զձև, որպէս զշուն ինչ կատաղի հալածեցէք զիս. իսկ եթէ խոնարհեալ կամ աղաչաւորութեան գիրկս, զի ոչ օգնէք ինձ, այլ հալածէք։ Տրտմեցայք ինչ 'ի դատա-նայր իմում, գիտեմ և ես. զի յորժամ 'ի պոռնկու-թեանն էի՝ աղերսէիք ինձ, իսկ յորժամ 'ի քաւարա-նիս՝ հալածէք։ Ի զուր հալածէք զիս 'ի նաւահանգըս-տէս. գիտեմ զնաւապետն որ 'ի ներքս է, ոչ ընկղմիմ 'ի նաւահանգստիս. տեսի զմիշտ երևելի արուեստին, ուղղակի առաջնորդեմ 'ի տատանմնալականացն ալեաց յա-րձագալթից. 'ի բաց կացէք 'ի մտիցդ, զի մտեալ անկայց առաջի։ Ոչ եմ թուլագոյն քան զՌախաբ պոռնիկն. նորա զլրտեսսն ընկալեալ ապրեցոյց, իսկ իմ զամենա-տեառնն զԱծ ծանուցեալ՝ փրկեալ ես աւանել ապրեցայց։

Այս մտեալ առաջ կինն 'ի տուն փարիսեցւոյն կայր

1 Երկու օր. զմեծարկոսն։

զով զիս ոչ օծեր, զի հաստատեսցիս օծմամբ. համբոյր յիս ոչ մերձեցուցեր, զի կատարելամբ խորհրդոցն հաստատեսցիս: Դու ոչ ինչ յայտնապէս գործեցեր, իսկ սա համբուրելով և օծանելով զիս՝ զեկեղեցին կանխամերձակենդանագործեաց, օծանելովն՝ ոչ խնկելով որպէս ժողովք Հրէից և հեթանոսաց: Արդ որոյ քեզ ասեմ, Սիմոն, դու որ ինչ ետուր՝ ծառայ հասանես զողթեթևեալ և թողացին քեզ սակաւաքն քոյոց յանցանացն. բայց սա եհաս 'ի մեծագոյն թողութիւն: Այլ և զդուստր իմ կոչեցի, զի գործեաց զոր ինչ ես կամեցայ: Իսկ նոյնժամայն ասէ ցկինն. “Թողալեսցեալ, դուստր, հաւատք քո կեցուցին զքեզ, երթ 'ի խաղաղութիւն”: Ահա մեծ յոյս փրկութեան շնորհեալ է մեզ հաւատացելոցս 'ի Քրիստոս Յիսուս յորդին ոչ: Որ ոչ կամի մերձենալ և քաղել զգրաւոր նորա, համարձակ լիցի և բացցի նմա յարարչէն ամենեցուն, որում վայել իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՅԱՂԱԳՍ ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ[1]

Յորժամ երիտասարդն էիր, պարտ էր քեզ զանձնըէ ոյնթան խորհել զկատարածին քո, եթէ բազում ծերք մնացին, և բազում երիտասարդք վախճանեցան. և ոչ շրջել քեզ մեղաւորութեամբ զամենայն կեանս քո՝ յետին ժամանակին մնալով դառնալ 'ի մեղաց. զի վասն այսորիկ յանկարծութեան եղեալ է ամենեցուն կատարած. վասն որոյ յայտնագոյն ասէ առակ իմաստնոցն. “Մի հեղգար դառնալ առ Տէր քո, և մի յապաղեր օր քան զօր. զի ոչ գիտես զինչ ծնցի բերէ քեզ վաղիւն”: Ո՞ր աւազակին զվատութենէ բուռն հարեալ՝ զարքայութիւն մտացեալ ես, ասելով՝ եթէ եկեսցէ ժամանակ յորժամ արժան իցէ ինձ դառնալ առ Աստուած:

1 Ի չորից օրինակաց երկաթագիրն մակագրեալ էր 'ի հին Թարգմանութենէ. Նոր օրինակ մի 'ի հինգերորդ Թարգմանութենէ. և երրորդն յանհաս գրոց:

թիւն. և պէտս ունիմք ամենայն մարդիկ այսոցիկ, ոչ ինչ նուազ քան եթէ ծառք ջրոյ, զի գեղեցիկ և փըրկական բանիւք զօրաւոր հակառակամարտ անձանց ախտիցն երևեսցուք: Այլ այնքան ունի զօրութիւն յորդորումնն, մինչ զի ոչ միայն մարդկան, այլ և անասնոց յագունս արկանէ զօրութիւնս: Վասնզի և շուն և ձի մին զորսորդին ընդունելով զյորդորումնն, և միւսն զերասանակակալին զձայնն լսելով, զկնի ձայնին յընթացսն արագագոյնք լինին: Արդ մի մեք որք զողջախոհութեան ընթացսն ընթանալ կարգեալ եմք յայս, վատթարք երևեսցուք քան զձի և զշուն: Այլ յորժամ լուիցեմք Պաւղոսի որ յողջախոհութիւնն յորդորէ զմեզ, պատկառեալք 'ի խրատողին ձայնէ, ցուցցուք զանձինս արժանաւորս նորա խրատուն և յորդորմանն:

Այլ զինչ ասէ նա: Յաղագս ողջախոհութեան ընդ մեզ խօսելով ասէ. "Ոչ գիտէք եթէ մարմինք ձեր անդամք են Քրիստոսի: Այլ արդ առեալ զանդամս Քրիստոսի առնիցեմ անդամս պոռնկի. մի լիցի": Իրաւական են բանքս այսոքիկ զամենայն զզաստութիւն և զսրբութիւն 'ի մեր յանձինս արկանել. բաւական են բանքս այսոքիկ երկնայնոցն արժանաւորս երևեցուցանել զլսողն: Որ այնմ բանից լսէ, քան ամենայն հեշտութիւնս և քան զբովանդակ անմաքրութիւնս գեր 'ի վերոյ առնէ զանձնն, մինչև տեսանէ առնել զոր բանս լուաւ: Արեգական երևեցելոյ ոչ ոք ներէ քնել, բայց եթէ ոք մարմնովն հիւանդանայ: Այլ զայս զփրկութեն ձայն ընկալեալ 'ի Պաւղոսի բերանոյն, ոչ ոք տրդեօք անսայցէ ծառայել հեշտութեանց. բայց եթէ ոք ախտացեալ իցէ հոգւովն: Վասնզի ճշմարտապէս զոր օրինակ արեգակն աչաց մերոց բերէ զքաղցր և զախորժելի զլոյսս, նոյնպէս և բանքս այսոքիկ զՔրիստոսի լոյսն 'ի մեր յանձինս բերեն. որպէս թէ ոք բանիցս այսոցիկ լսելով իշխէ ծառայել հեշտութեանց կուրացեալ միտք ողորմելի է քան զանշունչսն, որոյ ոչ իցէ հնար իմանալ ինչ: Զի և ոչ նա հաղորդութիւն ունի խորհելոյ որ պատուեցաւն այնպիսի ահաւոր բանիւք, և զնոր ըզհեշտութիւնսն և զգարշելի ցանկութիւնսն յաւէտ կատարեաց քան զտէրունական պատիւն:

Ով մարդ, յիշեաց ով ոք ես, ոյր անուանեցար անու-

Այլ հաւաստի եթէ կամիս ուսանել որքան է միջոց պարկեշտութեան և ողջախոհութեան, լուր Պաւղոսի զի մեր անուանէ անդամս զմարմինս զողջախոհացն, և զի որք շնալլութեանն ծառայեն. «Ո՞չ գիտէք, ասէ, եթէ մարմինք ձեր անդամք են Քրիստոսի. արդ առեալ զանդամս Քրիստոսի արարից անդամս պոռնկի»: Տեսանե՞ս զմիջոց ողջախոհութեանն և պոռնկութեանն. ոչ այնքան է միջոց երկնի և երկրի, որքան զանազանութիւն է որք ժուժկալեն 'ի հեշտութենէ և որք պղծութեանցն յաղթին 'ի նմանէ. Պարտ և արժան էր ամենեցուն ձեզ գիտել զայսպիսեաց բանից լսելիք, և ուսանել զզանազանութիւն պոռնկութեան և ողջախոհութեան. զի որք յայսմ են նահատակեալք՝ տեսանեն բողոքեցուն անուանսն, և որք 'ի նմա գերիք անմաքուրք՝ բազմից ծակիցք, և 'ի Պաւղոսի բանիցն անկանին արտաքս: Պահեսցուք հաստատուն յանձինս զբանսն, և որք 'ի վերայ գան հեշտութիւնք՝ 'ի բաց մերժեսցուք. զի երկեւցիւք ընդ առիւքն կացեալ Քրիստոսի, և ոչ ընկեցեալք ընդ բազս, զորս մերժեցեալքն նոքօք և կենակիցք լեալք տիկնայս իւրեանց զանմաքուրս արարին:

Ո՞չ տեսանես զհարսանիսն 'ի փրկչէն մերմէ պատուեալ, և երթալոյն տեսանեն պատուեալ, սքանչելիս ընկալեալ՝ գինի 'ի ջրոյ լինելով, զհայրն կուսութեան՝ զհայրն Պետրոսի և Պաւղոսի զառաջնորդացն կուսութեան, զվարդապետացն ամենայն սրբութեան: Ընդէ՞ր ոչ ողջամտես զնա և պատուես զօր մեծ եղեալ 'ի պատուականութիւն մերոյ ազգիս. այլ թողուս և անսաս անունս զնոյն պարզեն, և 'ի պոռնկական կործանիս, և կատաղիս 'ի գեղեցկութիւն շնալեալ կանանց: Ո՞չ լսես Պաւղոսի, որ թէպէտ և կամի զամենեսեան կուսութեան նահատակս գործել, սակայն թոյլատուացանէ ամուսնանալ, որ և զհարսանիսն բարեբանէ և զսէր պարգեւ անուանէ: Արդ ընդէ՞ր անպատուես զաշխարհի խորատիչն. ընդէ՞ր ոչ այնպիսի օրինաց զհետ երթաս: Եթէ կարողութիւն է, պահեաց զկուսութիւնն. ապա եթէ տկար ոք իցես՝ զնորա ընդունել զաշխատութիւնն, յամուսնութիւն երթ, և նմա լեր կենակից. միանգամայն և 'ի կնոջն վայելեսցես, և պահեսցես զողջախոհութիւն անձինդ:

Ոչ ինչ առնչեմ յաղագս ամուսնութեան խօսել
ընդ եղբարս, վասն որոյ Պաւղոս կուսութեանն առա-
ջնորդ բազումս և գեղեցիկս արար բանս. զինչ ասելով.
«Բարւոք է մարդոյ 'ի կին ոչ մերձենալ. բայց վասն
պոռնկութեան իւրաքանչիւր ոք զիւր կին կալցի, և իւ-
րաքանչիւր ոք կին զիւր այր»: Տես ինձ զՊաւղոսի մա-
ղաւորութիւնն զիարդ և զլաւագոյնսն բաղձայ ընձեռել
մարդկան: Կամացն տեարս արար, միանգամայն և ա-
ռաքինեացն եւս պատճառս առաքինութեանն, և զայլ
'ի պարկեշտութեան պահեաց. քանզի զկէսսն 'ի պայ-
ծառ ժուժկալութիւն ձայնիւ կոչեաց, և կիսոյն ոչ թո-
ղացուցանէ արտաքոյ լինել կարգեալ սահմանացն: Ոչ
զի օրէնք են և սահմանք յԱյ հաստատեալք ամուսնա-
նալ և կամ կուսութեամբ ժուժկալել. իսկ զպոռնկու-
թիւն և զշնութիւն և զամենայն անմաքրութիւն յե-
կեղեցւոյ փրկչէն 'ի բաց վարեն օրէնքն: «Պատուա-
կան է, ասէ, ամուսնութիւն և անկողինքն անարատք.
բայց զպոռնիկս և զշունս դատի Այ»: Ապա եթէ ոք
ամուսնացեալ և ընդ կնոջ բնակեալ, ապականել իշ-
խեսցէ զԱյ պարգևն, և թող 'ի ներքս ածել, առ որով
ըստ օրինացն Այ է բնակեալ, մի ինչ անգիտասցի զանօ-
րէնութիւնն, վասն զի Թշնամանէ զԱծային հրամանն:
Զինչ և ինքն տէրն ասէր. «Զոր Այ զուգեաց,
մարդ մի մեկնեսցէ»: Զինչ ասես, ով մարդ. զոր Այ
ընդ քեզ հաւասարեցոյց, քան զնա յանդգնիս պատա-
կանագոյն առնել զբաղդն: Ոչ ամաչես 'ի պսակացն, ո-
րովք հանդերձ կնաւն զարդարեցար իբրև յաղթող ա-
նօրէն հեշտութեանցն: Ոչ պատկառես 'ի Պաւղոսէ
որ հրամայէ քեզ ընդ կնոջ բնակել, զի 'ի նմա վայելե-
լով լաւագոյն երևեսցիս քան զպագշոտութիւնն՝ որ ըն-
յաւիտենական հուրն առթէ անժուժկալիցն: «Բա-
րւոք է, ասէ, մարդոյ 'ի կին ոչ մերձենալ. բայց յա-
ղագս պոռնկութեան իւրաքանչիւր ոք զիւր կին կալցի,
և իւրաքանչիւր կին զիւր այր»: Նա ոչ միայն պա-
մեկնեաց 'ի պոռնկութենէն, այլ կամելով հաւաստա-
զողջախոհութիւնն բնակեցուցանել 'ի մարդկան յան-
ձինս, իշխանս միմեանց զայրն և զկինն արար ասելով.
«Կին մարմնոյ իւրում ոչ իշխէ, այլ այրն. նմանապէս
և այրն մարմնոյ իւրում ոչ իշխէ, այլ կինն»: Զի մի

ծառայեսցեն անօրէն հեշտութեանցն, ծառայս մի-մեանց առար:

Ո՜ խորդ ոչ զարհուրիս տեսանելով զՊաւղոս, որ ըստ նմանութեան հրեշտակաց մաքրեալն էր համդերձ այսքան նախախնամութեամբ, ընդ եկեղեցիսն յաղագս ամուսնութեան խօսէր. զի զամենայն անմաքրութիւն և զպոռնկութիւն յիւրաքանչիւր անձնէ արտաքս վարելով, 'ի պարկեշտութեան պահեսցէ զաշխարհս: Ո՜ խորդ ոչ երկնչիս տեսանելով զայլս կուսութեամբ կեցեալս և նուիրեալս ժուժկալութեանն զգնութիւնն, և դու ոչ ախորժելով մնալ յամուսնութեանն՝ անպատուես զնա անօրէն հեշտութեամբքն: Քանզի որ կուսութիւն է կրօնաւորեալ, յոլով քրտանց համբերէ և աշխատութեանց, ընդ նմին իսկ մարտնչելով ընդ բնութեանն, և ոչ մի ինչ ունի հանգիստ, հրով բոցակիզեալ, ակնկծութեամբք ամենայն ուստեք վտանգեալ:

Իսկ զինչ նմա առ այն օգտակար դեղ 'ի Քրիստոսէ տուաւ և կուսութեանն պահապանարան: Յաստուծոյ երկիւղն, որ մեծագոյն ևս զօրանայ քան զգնութիւնս, և 'ի բաց տանի զանձինն 'ի հեշտութեանց: Որպէս որ քաջ զինուոր յամբոխէ պատերազմողաց զպարտեալ զերիտասարդ արտաքս բերիցէ և 'ի նետից ապրեցուցանիցէ, այնպէս բժշկէ զանձն զրոցն խրատուք, և յիշատակաւն նոյ զօրացուցանէ՝ կոչելով զՊաւղոս զողջախոհութեան զփողարն: Ո՛ր զոր օրինակ փողարքն ըզզինուորացն ընդդստուցանեն զմիտս, նոյնպէս սաղմոսքն Դաւթայ յողջախոհութիւն զմանկունս յորդորեն, յորժամ ասիցեն “Զուարճասցին սիրտք մեր երկնչել յանուանէ քումմէ„. վասն զի միայն ընդ նոյ երկիւղն խառնեալ է հեշտութիւն իմն և շնորհ, և զանձինս ուրախացուցանէ 'ի վերայ եկեալ: Որպէս որք յայլոցն երկընչին, կամ յիշխանացն սպառնալեաց, կամ 'ի դազանաց սրտմտութենէ, կամ 'ի դիւաց երևութից, համդերձ ատելութեամբ և թախծանօք ընդունի զերկիւղն. միայն այն ահ շնորհս իմն բերելով գայ, և զանձինս հեշտութեամբ և խնդութեամբ լնու, քան զամենայն զգընծութիւն և զտօնս հեշտալի և քաղցր է: Իսկ եթէ Պաւղոս 'ի նեղքս մնեալ զայս բանս ասիցէ “Ո՞չ գիտէք եթէ մարմինք ձեր անդամք են Քրիստոսի„, ոչ ինչ 'ի

րովք 'ի Պաւղոսէս պատուի։ Յաղագս որոյ յաչաղեմ զմերձաւորս և զլսողս որք կուսութեամբ էք նահատակք, և որք ամուսնութեամբ զպարկեշտութիւն պատուէք, զայս ծանուցանել յականջս հնչեցեալ, և իբրև զօգտակար ինչ դեղ զա̃ծային բանսն զայսոսիկ հաստատուն բերել յանձինս։ Վասն զի զէն ողջախոհութեան է խրատն Պաւղոսի, և նմա լսելով հարկաւոր է զհեշտութիւնս ընդ բռնութեամբ արկանել։

Չար է և դժուարակիր որ առ նոսա մարտն է, և դիւրաւ 'ի վայր ընկենու որ յա̃ծային մարտակցութենէ ամայի։ Այլ զոր օրինակ այլք տանելով զնաւ ամայի վաղվաղակի խորասոյզ առնեն, նոյնպէս և ալէկոծութիւնք հեշտութեանց եթէ առնուցուն զմեզ առանց զգուշութեան և ոչ պարսպեալ սպառազինութեամբ հոգւոյն, դիւրաւ գերիս առնի։ Արդ իրաւացի յորժամ զհեշտութեանցն ձմեռն փարատեսցէ յոգւոյն, յաճախապէս երգել մեզ զերկնաւոր զբանսն, "Ոչ գիտէք եթէ մարմինք ձեր անդամք են Քրիստոսի"։ և այնպէս տեսցէ զանձնն ազատութեամբ կեցեալ, և ցանկութեանցն իշխանութեան անճաշակ։ Քանզի եթէ կախարդացն թովչութեանց դիւրաւ տեղի տան օձք, զինչ սքանչելիք եթէ զգարշ հեշտութիւնսն Պաւղոսի բանիցն դիւրաւ արտաքոյ վարիցեն. Նա և դիւացն սաստելով փախստեայս զնոսա հալածեաց 'ի վերջին սահմանաց երկրին։ Արդ ուրեմն և զձմեռն հեշտութեանցն 'ի խաղաղութիւն և 'ի հանդարտութիւն փոփոխեալ յարմարիցէ դիւրաւ։ Բայց դու ինձ հաւանեցիր, և ըզնոյն ինքն զՊաւղոս վարկիր մերձ կացեալ խրատելով, և զա̃ծային զձայնն զայն արձակեալ յաճախապէս. "Ոչ գիտէք եթէ մարմինք ձեր անդամք են Քրիստոսի. արդ առեալ զանդամն Քրիստոսի առնիցեմք անդամս պոռնկի"։ Բաւական է առնն և զյիշատակն միայն հանդիպեալ զամենայն առաքինութեան զհաստատութիւն 'ի ներքս ածեալ յոգին։ Իսկ եթէ և զա̃ծային ևս ըզբանս զայս ընդ նմին 'ի ներքս ածցէ ընդ յիշատակին, ոչ է հնար որպէս ոչ ժուժկալեսցէ յամենայն պիղծ ցանկութեանց։

Արդ եկ եղբայր, ողջախոհութեանն կրթաւոր և ծառայ Քրիստոսի, որ զա̃յն սիրէ. պահեա յինչ միշտ

զբաղմանս զայս իբրև զաւանդ ինչ 'ի Պօղոսէ առեալ, և համարեաց զառաքեալն 'ի քո տունն յաճախակէս մտեալ զմահճացն ունելով որքեալ զքո մարմինդ ձեռամբ, և պատուել բանիւքս զոր լուայք այժմ։ Բանզի ոչ դանդաղի Պօղոս գլուխն առաքելոց 'ի տուն մեր մտանել, և խրախճանիւք ուրուք փրկութեան յալով առնել նախախնամութիւն։ Ոչ որոշէ զոմեքս 'ի ծառայից, ոչ պատկառէ 'ի ճոխոց, ոչ անպատուէ զաղքատութի, զամենեսեան միանգամայն անդամս Քրիստոսի անուանէ. քանզի "Ի Քրիստոս Յիսուս, ասէ, ոչ ծառայ և ոչ ազատ"։ Արդ մտանէ 'ի տունս աղքատաց և ճոխոց, ծառայից և ազատաց, զողջախոհութի զեղ ամենայն ումեք բերելով. զառողջսն պահէ 'ի լաւութեանն, և զհիւանդացեալսն բժշկէ վաղվաղակի դեղովքն զօրութեամբ։ Նման զի ոչ ինչ է այնպէս զօրաւոր առ ո անձին և ոչ անկասելի և ոչ կայուն, զոր ոչ արտաքս մերժեաց Պօղոս. այլ միանգամայն բարբառեալ, և ախտքն 'ի բաց հալածեցան։ Նա և 'ի կապարանն մտեալ և զբանտապահ կապարանին առնլով տանջեալ և վիրաւորեալ և ամենայն ամբարշտութեան վիրօք լցեալ և ապականեալ վարուք՝ այնպէս վաղվաղակի բժշկեաց, մինչ զի և ամենևին իսկ կատարեալ լինել և սուրբ, որ պղծութեամբ և վատթարութեամբ և ամենայն չարութեամբ էր լի։ Նա արդ եթէ 'ի կապարանն մտեալ, ուր շնացողք և մարդասպանք և կախարդք, զկապարանն եկեղեցի այ արար՝ օրհնութիւնս միայն երգելով այ, զինչ արասցէ եթէ 'ի տունս բարեպաշտից մտանիցէ, և զածային զբանս զայս յանձինս իմաստնոցն արկանիցէ։ Նաև գիտեմ յայտնապէս և հաւատամ եթէ անհնար է մարդոյ 'ի հեշտութեանցն յաղթել որ զփրկական զբանս զայս լուիցէ. այլ միանգամայն լսելով եթէ անդամք այ և փրկչին եմք, և զամենայն զցանկութիւնս 'ի բաց մերժեալ՝ ընդ հրեշտակս հակառակել զմեզ հնարի ցածութեամբ վարուց։

Բաւական է մեծութիւն պատուոյս լաւագոյնս երևեցուցանել քան զմնութիւնս զախարժողսն զամենեսեան։ Նաև դիւրին է զայս ուսանել յըմբշաց ժուժկալութենէ, որք բազում քրտանց և աշխատութեանց

համբերեն, յաղագս յաղթութեանն և պսակին զմօ-տի զփառսն երևեալ տանին։ Բայց մեզ յաղթանակ առաջի կայ պարկեշտութեանն, ոչ տերև ձիթենւոյ կամ դափնւոյ, այլ երկնային պսակքն, որ առաւելա-գոյն քան զարժանաւորութիւն պատուեցելոցն գերա-զանցեն։

Արդ ոչ է պարտ և արժան մատնիչ լինել ածային պարգևացն, այլ պահել յազատութեան զանձն. քանզի նոքա միայն են ճշմարիտ ազատք, որք երբեք ոչ ծա-ռայեալք ցանկութեանց։ Յաղագս որոյ վայելուչ է զան-ժոյժ մարդ ծառայ կոչել և ստրուկ, թէպէտ և թա-գաւոր կարծիցի և յոլով ազգաց իշխեսցէ. և ազատ և բարեպաշտ որ պարկեշտութեամբ է զարդարեալ, թէ-պէտ և ծառայ ոք դիպեսցի և ստրկաց ստրուկ։ Քան-զի ոչ մարդկային պատուով սահմանէ զարդարութիւնն ած, այլ զբարուցն զուգութիւնս խնդրէ, և յաղագս իւրաքանչիւր ուրուք զհրամանն 'ի վերայ բերէ։

Նա ուրեմն հնար և ծառային լինել քաջատոհմ և ա-զատ, և թագաւոր կարծեցեալ լցեալն չարութեամբ՝ ծառայ։ Ով էր որ զեղբօրն իւրոյ զկին անօրէնութեամբ յանդգնեցաւ առնուլ, ոչ 'ի ծառայից ոք էր, այլ 'ի թա-գաւորաց. և սակայն ոչ 'ի ծիրանիսն և 'ի թագն հայե-լով ածայինն Յովհաննէս պատկառեաց 'ի շնացողէն, այլ զոգւոյ զծառայութիւն և զամօթն տեսեալ՝ իբրև զստրուկ և զարծաթագին և զգերի ոք արհամարհեաց, և յանդիմանեաց որ մարդկանն իշխել թուէր և հեշ-տութեանց էր ծառայ։ Իսկ եթէ ախորժիք ուսանել զի և որպիսի է ողջախոհութիւնն, զմտաւ ածէք յան-ձինս որ յաղագս նորա մեռանել համարձակեցաւ. այլ որ գեր 'ի վերոյ քան զմարդկան բնութիւն գործոցն պայ-ծառութեամբ և սուրբ վարուք, որ զմարմինն մարդոյ և զոգին հրեշտակի ունէր։ Այս որ այնպիսին էր, ածային յայտնութեան փրկչին հրեշտակ և միայն արժանաւոր այնպիսի փառաց լինել սպասաւոր, յաղագս պարկեշ-տութեան սրտմտեալ մեռաւ։ Ոչ ներէր տեսանել զա-նարգել բանաւորին զամուսնութիւնն թշնամանեալ և զօրէնսն որք յերկնից իջին։

Քանզի որք յաղագս ամուսնութեան և ողջախո-հութեան են օրէնք, Այ պարգևք են յերկնից իջեալք,

օգնականք ապարութեան մարդկան. որք 'ի բնութենէս և կամ 'ի դիւաց յանցանաց ապականին անձինք, զեղեցկապէս ուղղեն. որպէս ոչ թողացուցանել առ անկաւ սակաւ 'ի հեշտութիւն անկանել, այլ զխորհուրդն հակառակ կարգել պատուիրեն բնութեանն յարձակմանց՝ դատելով զհեշտութիւնն և զողջախոհութիւնն. զմին արտաքս վարեն, և զմիւսն քաղաքավայելչապէս 'ի ներքս մուծանեն և սիրելիս ընդ ամենն զաշխատելոյն. քանզի և արդար իսկ բազում և խիստ քրտանց համբերեն ողջախոհութեանն ընկերիչք: Իսկ եթէ ոչ էր այնպէս; ոչ արդեօք զնոյն անդամս Քրիստոսի անուանել Պաւղոս համարձակէր. այլ զմեծութիւն նուաստակութեանն տեսանելով ուսաւ, և երկայնով բանիւքն զարփարեաց զմեզ. զի 'ի պատուոյն մեծութենէ պատկառեալք՝ մեծագին անուանն արժանաւորս զանձինս փութասցուք առնել, և մի կախարդութեամբ ցանկութեանց պատրեալք՝ զերիս լինիցիմք չար հեշտութեանցն. այլ երկնաւոր բանիւքն պարապեալք լաւագոյնք երևեսցուք քան զաստուածակուսին նետս: Ոի եթէ օրէնքն միայն կայլեն մեզ յայտ որ ողջախոհութիւն 'ի մէնջ պահանջէին, պարտ և արժան էր և այնպէս ցածուցս լինել, և քան զզգծութիւնն լաւագոյն յօրինացն երկնչելով. իսկ յորժամ և յաղթանակս եւս ժուժկալութեան մեծ կայ առաւել լինել Քրիստոսի անդամ, մի ոք լիցի յողջախոհութեանն հանդէս և մի հեշտասէր ոք երևեսցի և քան զթշնամիսն վատթար, որպէս թէ զաւել ինչ ցանկութիւն և զաժամանակեան առաւել ունել քան զերկնաւոր քաղաքավարութիւնն: Իսկ եթէ պարտ իցէ զճըշմարիտն ասել, որդէն իսկ յերկնից արքայութեանն վայելեն ողջախոհութեանն նուաստակք: Ոի եթէ երկնից արքայութեանն ակիզբն է անդամ լինել Քրիստոսի, արդեօք խնդրեսցէ՞ պատիւ ինչ այլ քան զայս պատիւ, որ և քան զհրեշտակաց մեծավայելչութիւնն գերազանցէ. զի և նոքա մեծ քան զինքեանս վարկանին անդամս լինել ընդ և փրկչին:

Բայց չև եւս զզանազանութիւնս ուսաք զզգաստութեանն և զողջախոհութեանն. լաւագոյն է և զայն յաւելուլ յասացեալս: Ողջախոհն անդամ անուանի Քրիստոսի և տաճար հոգւոյն. իսկ պագշոտեալն ան-

դամ պոռնկի և անասնոց հաւասար։ Արդ առեալ, ա-սէ, զանդամս Քրիստոսի արասցո՞ւք անդամս պոռնկի. մի՛ լիցի։ Քաջայայտ է յառաքելոցն ՚ի Պաւղոսէ, թէ ոչ այնքան չար է յերկնից վայր անկանելն ՚ի տիղմ, որ-քան է չար անդամ լինել պոռնկի։ Որ Քրիստոսին է միաւորեալ ՚ի ձեռն ողջախոհութեան, և յետոյ բռ-նիցի հաւատարիմ ինքնակամ ՚ի վայր ձգելով զինքն հա-կառակ խորամ փրկութեանն, ինձ ասել կայ ՚ի Պաւ-ղոսի առաքելոցն նշանակելով ասեալ՝ թէ արդէն խսկ հանդիպեցան ցածունքն և գժոխոց չարեաց զփորձ ա-ռին որ ցանկութեանցն ծառայեն. զի որ միտս ունի, և գիտէ զգալ։ Քանզի արքայութիւնն երկնից պատուա-կանագոյն է, և դառն քան զգժոխոցն տանջանս որ զկնի պատուոյն յայնմանէ ՚ի բոցս անկանելով և անասնոց նմանել վարուքն։ Քանզի "մարդ, ասէ, ՚ի պատուի էր և ոչ իմացաւ, հաւասարեցաւ անասնոց անմտից և նմա-նեցաւ նոցա". և "Ձիք իգամոլք եղեն, իւրաքանչիւր ոք ՚ի կին ընկերի իւրոյ վրնջելով"։

Քանզի ճշմարտապէս այս միայն է մեծ, մարդկան և անասնոց միջոց արար, երկնչել յԱյ և նորա օրէնսքն զանձինս ուղղել. որպէս զի որ զԱյ երկիւղն ՚ի միտս ա-ռաքս հանիցէ, յիրաւի ոչ մարդ անուանեսցի. "ԶԱյ, ասէ, երկիր և զպատուիրանս նորա պահեաց, վասն զի այս է ամենայն մարդ"։ Զառիւծ ոյժն զարդարէ, և զձի արագութիւնն, և զսիրամարգ գեղեցկութիւնն. բայց զմարդ Այ երկիւղն՝ հաւասար նմա և հրեշտակաց լեալ։

Արդ վայել է մեզ որք ողջախոհութեամբն կրօնա-ւորիմք և մարդասիրութեանն եմք կենակիցք և հե-զութեամբ զուարճանամք, գործովք ցուցանել եթէ ճշմարտապէս եմք մարդիկ ծառայք Քրիստոսի Այ. ընդ որում հօր փառք հանդերձ սրբով հոգւովն յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# ՎԱՍՆ ՈՂՈՐՄՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՆՈՒԽԱԿԱԼՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՆ

Ի զանազան երանգս գունոց ծաղկանց նմանեցուցարդ առաքինութեանց։ Այլ զի զոր ունիցիմ ասել. զողորմութիւնն, զանոխակալութիւնն որ 'ի վեր անցանէ քան զամ առաքինութիւնս, եթէ զչշնանալն, զչսպանանելն, զչգողանալն, զչվկայելն սուտութեամբ, զչերդնուլն, զչամբաւելն զոք, և զայն որ ոչ եւս ագահէ, ոչ յաշաղէ, ոչ նախանձի, ոչ զչարի, զչբամբասելն զոք, ոչ ատել ումեք, զոչ շողմոգելն ումեք, զչարբենալն, զլռութիւնն, զոչ բարկանալն, զերկայնմտութիւնն, զչծուլանալն, զչդանդաղելն, զչմատնելն զոք, զչսիրելն զարծաթ որ է հիմն և հաստատութիւն ամենայն առաքինութեան, զանստացուածութիւնն, զչամբարտաւանելն, զչյանկալն, զհամբերութիւնն, զգոհութիւնն 'ի տրտմութիւնս, զմաքրազգեաց աղօթելն, զկատարելազգեաց կրօնաւորելն, և որ ըստ այսմ նման զբովանդակ առաքինութիւնս։

Բեր այսուհետև զգովութիւնս սոցա 'ի մէջ ածցուք, զի օգտակարք իցեն ամենայնիդ, և վասն շահի ոգւոց կարգեցան և հաստատեցան։ Բայց ոչ ոք իցէ որ զագահաւասար կատարեաց զամենեսեան զայս, զի բանաւորկուին բռնադատեալ զխորհուրդս մտաց մերոց տըգեղցէ յականջաց մերոց զմուտ բանից առաքինութեանց։ Բայց զի մի զամենայն զփոյթն 'ի վերայ առաքինութեան այնմիկ վատնեսցուք, որ առանց միւսոյն ոչ ինչ կարէ օգտել զմեզ, այլ զայն ընտրեսցուք յայսմ 'ի բազմութեան զանազան ծաղկանցս որ միայն կարող է մեզ ա· 'ի շահ լինել և հանգիստ գտանել 'ի հանդերձեալ յաւիտեննին. և ոչ ոք իցէ որ խափան առնէ եթէ զծուլութիւն 'ի բաց թօթափիցեմք և զուարթամիտք լինիցիմք։

Այլ զայս ասեմ ոչ յանպատշաճս, այլ յօգտութիւն անձանց ձերոց տնօրինեմք։ Զի եթէ անպատուեմ զառաքինութիւնն զայն, որ առանց միւսոյն ոչ լինիցի յօ-

գուտ, քան լիցի։ Եթէ բովանդակ զամենայն առաքի-նութիւնս ոք կատարեսցէ, զուարճասցի ոգի իմ. ապա թէ ոչ՝ սակայն 'ի յայնմ առաքինութիւնս պարտ է ծախել զամենայն ջանս որ յօգտութիւնս լինիցի հօ-գւոց մերոց։ Եւ որ իցէ այն և ուստի, ասեմ։ Յանց ոխակալութեան և շնութեան ողորմութիւնն շահս բա-զումս առնէ. իսկ ուր ոխակալութիւն լինիցի, ամենայն առաքինութիւնք և ողորմութիւնք և բազմութիւնք բա-րեաց անպտուղք լինիցին. որպէս և ընդդէմ այնոցիկ ա-նոխակալութիւնն զբիւրս 'ի յանցանաց ջնջեսցէ և ան-յայտ արասցէ։

Եւ դարձեալ ողորմութիւնն այլ ինչ ունիցի զանա-զանութիւն։ Եւ որ իցեն այնքիկ։ Որ առատապէսն առնիցէ և ոչ ճշդիւ. զի որպէս խնդրեսցես, այնպէս ջանասջիր առնել։ Լուր զինչ ասէ մարգարէն. «Ողոր-մեա ինձ Տէր ըստ մեծի ողորմութեան քում»։ Դու, ասէ, զայդ ամենայն ճանաչես և գիտես, և յաւէտ ըղ-ձաղմոսդ զայդ բերես 'ի բերան քո, և խնդրէք և ըստ խնդրուածոց ձերոց ոչ առնէք զողորմութիւն։ Եւ սուղ ինչ խնդրէ Տէր, այլ առատապէս։ Մի դուք պատճա-ռիք պատճառս մատուցանել՝ թէ որպէս ոչ ունիմ, ոչ պահանջիմ։ Պահանջի 'ի քէն որչափ և կար է քեզ։ Եւ զկիսորդ արդեօք. որպէս ասեմ, այն որ ունիցի բիւր դահեկանս՝ և որ ունիցի դահեկան մի և ծախէ զայն աղքատաց, հաւասար համարեսցի առաջի տն. զի որ բազում ունիցի, բազում պահանջեսցի 'ի նմանէ, և 'ի չքաւորէն նուազ։ Ի այն որ ունիցի յոլով և ծախէ սակաւ կարօտելոցն, զինչ իցէ շահն. մանաւանդ իբրև թէ ծածուկ եղեալ յայ՝ ոչ գիտելով զգաղտնիսն, առ-նելով զայնոսիկ և բարկացուցանէ զնա քան եթէ ո-ղորմած առնէ սուղ ինչ բաշխելովն։

Եւ ոչ եթէ իմ է բանս այս, այլ վարդապետին իմոյ տն. «Եթէ ոչ յաւելուն գործք ձեր քան զդպրացն և զփարիսեցւոցն», և որ 'ի կարգին է. իսկ նոքա զտասա-նորդսն սովոր էին տալ աղքատաց։ Եւ զոր ասեմ այս-պիսի է. առաջի դիցեն մեզ կարգք առաքինութեան՝ պահք, աղօթք, տքնութիւն. այլ եթէ զամենայն ըղ-փոյթ 'ի վերայ այսց առաքինութեանց դնիցեմք և զո-ղորմութիւնն անտես առնիցեմք, 'ի զուր աշխատեցաք։

Այլ թէ հոգով խնամք զմուտս կերակրոյ և փոխել զաւե-ղի խորտկաց համեմեաց անուշից, և յօրաժամ զգե-շերն 'ի գլուխ համբիցեմք և յաղօթելոյ ոչ մերժիմք և ոչ տամք նինջ արտեւանանց, 'ի զուր աշխատեցաք ձեռ-նարկել այդմ կրից առանց ողորմութեան. առանէն ըն-դունելովս չարաչար տանջեմք անպիտան պահօքն, խոկ ո-գիքս մեր 'ի կեանսն յայն դժուարիմանական տանջանան ժառանգեսցեն։

Այլ յաղագս այսմ բանիցս ծանոյց քեզ վկայ զմեծա-բանն Եսայիաս. «Ոչ պահք զայսպիսիս ընտրեցի ա-սէ տէր, և ոչ զօրն յորում տառապեցուցանէ մարդ զանձն իւր, և ոչ եթէ կորացուցանես որպէս ըմդ օղ պարա-նոց քո, և քուրձ և մոխիր տարածեսցես ներքոյ քո, և ոչ զայն կոչեսցի պահս և օր ընդունելի տեառն. այլ լոյծ զամենայն կապանս զկնճիռն անիրաւութեան, ըն-վաճառաց բռնութեան, արձակեա զխափանեալս թողու-թեամբ և զամենայն պատառ անիրաւութեան 'ի բաց պատառ-եա, քաղցելոց բրդեա զհաց քո և զաղքատս անյարկս տար ընդ յարկաւ քով, և եթէ տեսանիցես մերկ՝ զգե-ցո. յայնժամ ծագեսցի կանուխ լոյս քո, և բժշկու-թիւն քեզ վաղվաղակի ծագեսցէ»։ Տեսեր, սիրելի, զի ոչ 'ի զուր ինչ ասացի թէ ոչ օգտէ 'ի պահոց առանց ողորմութեան։

Ներեցից քեզ և այլ վկայս, ո՞չ ասացեալքն կուսանքն այն զհրեշտակական զառաքինութիւն զգեցեալ էին զկու-սութիւն. ո՞չ զպահս ձգեալ էին յանձինս իւրեանց, որ է հիմն առաքինութեան. ո՞չ յօրաժամ աղօթէին, որ աղօթքն մեծ են բարիք քարոզի. ունէին և ողոր-մութիւն, այլ յաւելորդաց և ոչ առատապէս. զինչ արդեօք վասն նոցա ասացես։ Նոցանէ դրունք փակեալ էին և հարսանեացն, թէ ո՞չ յայտ է թէ զձայնն տէրու-թեան լուան որ ասէր՝ թէ «Ոչ ճանաչեմ զձեզ»։ և ա-պա ապաւինալիք մեծ կայ և մնայ նոցա. զի ամենայն զոր տէր ոչ ճանաչէ, տանջանք անհուն ընկալնեսցէ զնա։ Նոյն նոքա որ զարդարեալ էին կուսութեամբն և պահօք և ա-ղօթիւք, և սուղ ողորմութիւն նոցա չօգնեաց, մինչ-և ասացեալ մեզ որ զուգընթացեալ սարգեալ եմք յոյժ առաքինութեանց, և զողորմութիւնն որպէս պատուէր է ոչ առնիցեմք։

Այս զոր ասէս պայմանի ինչ է. որ բարի առնէ՝ նմա առնէ, սոյնպէս և որ զչարն։ Այս եմ, ասէ, որ զերկինս ձգեցի որպէս խորան, և զերկիր հաստատեցի 'ի վերայ ջուրց, և անսասանելի ունիմ զաթոռ իմ յերկինս, և իմանալի զօրութիւնքն և բազմաչեայ քերոբէքն և վեցթևեան սերոբէքն նկատել ոչ կարեն. բայց միում 'ի փոքրկանց այտի յեղջերց իմոց տեսցես զի դողայ 'ի մէջ փողոցացդ, ես ընդ նմա դողամ ստուգապէս. և եթէ ջեռուսցես զթիկունս նորա, համարեցայց զիս ջեռուցանել. և եթէ զնա արկանես ընդ յորկան քով, զիս արկեր. եթէ առ նա գնայցեր, առ իս եկիր. եթէ զնա անտես արարեր, զիս արարեր. եթէ անարգեցեր զաղքատն, զիս անարգեցեր. եթէ զնա ապտակեցեր, զիս ապտակեցեր. և եթէ բարի արարեր, ինձ արարեր։ Ուստի զչահ ողորմութեանն, մի յապաղեր գործել զնոյն։ Նամբէ. այլ ունիմք, ասէ, որդիք համդերձ մարբն և ոչ կարեմք ծախել զինչս։ Հա դարձեալ պատճառս անհամ, թէպէտ և համարակաց իցէ. մի թէ դու լաւագոյն հոգաս քան զՏէր։ Որդ որ ագարմի աղքատին, ողորմած իցէ. և որ բարի համուցէ չարին՝ Տէր. և 'ի ձեռն այսց երկուց առաքինութեանցս քաւին ամենայն յանցանք։ Վասն որոյ աղաչեմ զձեզ միշտ և հանապազ զողորմութիւնն բառնալ 'ի վերայ ձեռաց։ Այս զոր ասէս այս է. որ բարի առնէ առաւելեացն, ուր եդից զպարգևսն, հատուսցէ լիցի Տէր։ Այս ոչ է իմ բանս, այլ համարակաց Տէրն և վարդապետին։

Այս արդ բաւական է զոր յաղագս այդորիկ խօսեցաք բանս. բեր յաղագս անոխակալութեանն և որ բարի առնէ առաւելեաց իւրոց, ոչ այլում իւիք և ոչ մի օգտիք. բայց եթէ սիրեսջիք զմիմեանս. զի որ սիրեաց զընկերն, կատարեաց զօրէնսն. զի որ սիրէ զընկերն, չար երբէք ոչ գործէ. և լրումն օրինաց սէր է, և ինքն Տէր սէր է։ Այս դարձեալ մի ասասցես թէ զպայապիտս սիրէ Տէր որ մեծատունքն են։ Ո՛ խորդ համարիս թէ յայդ իցէ. զի զոր ասէ Տէր, մարդկան զխորհ շնորհէ. մի թէ սիրէ Տէր զմեծատունս և փասն այնորիկ սոյ նոցա։ Վասն որոյ աղաչեմ և յաղաչելոյ ոչ դադարեմ, զի որ թողցէ ըղյանցանս ընկերին և ոչ պահէ ոխս, թողցի նմա և յանցանք իւր. սոյնպէս և որք ունիցին շնորհս ողորմութեն,

'ի ձեռն շնորհաց իւրեանց ժառանգել զկեանս և հա-
սանել մասին պարգևաց: Արդ իւրաքանչիւր ոք զբա-
րին գործել ջանասցէ և արժանաւորեսցի արքայութեն
երկնից: Որոց լիցի ամենեցուն մեզ հանդիպել շնորհօք
և մարդասիրութեամբ տեառն մերոյ և փրկչին Յիսու-
սի Քրիստոսի. ընդ որում հօր փառք հանդերձ հոգւովն
սրբով յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## Ի ՍՈՒՐԲՆ ՍՏԵՓԱՆՆՈՍ ՑԱՌԱՋՍԱՐԿԱՒԱԳ ԵՒ ՆԱԽԱՎԿԱՅ ՔՐԻՍՏՈՍԻ

Եկն Քրիստոս եհաս ճանապարհ հորդելով առ 'ի կեանս և 'ի փրկութիւն աշխարհի, և ընդ նմա բղխեալ աճեցին բարեպաշտութեանն պտուղք: Ի մեր ծագեաց վկայն ճշմարտութեան, և ընդ նմին պայծառացեալ լուսաւորեցան վկայք մեծի անուանութեանն. հետևեցան աշակերտքն վարդապետին տիրական շաւղացն. ծառայքն ընդ Քրիստոսի, քրիստոսազգեացքն ընդ արեգականն արդարութեան, լուսաւորքն տիեզերաց: Այլ նախ առաջին մեզ ծագեցաւ Ստեփաննոս, ոչ առ 'ի հրէական փշոց բողբոջեալ պտուղ, այլ յեկեղեցական մեծութենէ ընծայեալ տեառն պտուղ առաջին: Քանզի հրէից արարեալ պսակ 'ի փշոց եդին 'ի գլուխ փրկչին, զարժանիս իւրեանց չարաչար մշակութեան ցուցեալ զպտուղ այգւոյն տեառն: Վասն որոյ Եսայիաս նախաձայնեաց. "Այգի տեառն զօրութեանց տունն Իսրայէլի, և մարդն Յուդայ նորատունկ սիրեցեալ. Մնացի զի արասցէ իրաւունս, և արար անիրաւութի":

Իսկ ճշմարտութեն աւետարանական մշակքն սկիզբն և նորընծայ և առաջին պտուղ մշակութեան ցուցանեն տեառն զՍտեփաննոս այր սուրբ: Զոր օրինակ պտուղ ինչ ճշմարիտ առ 'ի բազում և 'ի զանազան առաքինութեանց պատշաճեալ. վասն զի նախ և առաջին սքանչելիս այս՝ զայրեացն հաւատացեալ սպասաւորութիւն, վկայեալ յառաքելոցն բանիւ և արդար դատողութեամբ գոլ զնա այր հաւատարիմ և լի հոգւով սրբով. և դարձեալ յաղագս զօրութեան հոգևոր իմաստութեանն:

Քանզի ամենեղէն բանիւք այնքան յաղագս քարոզու-
թեանն ցուցանէր զհաստագոյնութիւնս, որպէս զի մեծա-
մեծ և հրաշագործ ամենայնով վարդապետութեամբն
հաղորդեալ նմա ամենեղէն ներգործութեանցն ։

Քանզի "Ստեփաննոս լի հաւատովք և զօրութեամբ
առնէր նշանս և արուեստս մեծամեծս„ ։ Ասեն զի ոչ
պարտ վարկաւ խափան գոլ նմա յաղագս բանին առա-
քինութեան որ վասն այրեացն փոյթ ․ այլ և զայց ու-
նէր յօժարութեամբ, և յայնմանէ ոչ նուաղէր ։ Այլ
էր 'ի վերայ նորա մեծաքանչ զարմացումն ․ ոչ բարձ-
րամտութեան լինէր առիթ, վասն զի այր 'ի սէր հա-
ւատացեալ և խնամատար հոգւոց լինէր, զոմանս հա-
ցիւ կերակրելով, իսկ զկէս բանիւ խրատելով ․ և ոմանց
զմարմնականն դնելով առաջի սեղան, իսկ այլոց ոմանց
զհոգևորականն մատուցանելով զարմանս ։ Զի էր, ա-
սէ, այր բարի և լի հոգւով սրբով ․ ուստի բարեբարոյ
մտօք զաղքատացն հաւատացեալ լինէր արքանեկու-
թիւն ։ Իսկ համարձակութեամբն և զօրութեամբ հո-
գւոյն զթշնամիս ճշմարտութեանն վերջահարէր ․ ամե-
նեցուն ընդդէմ բախելով և ընդ ամենեսեան ճգնե-
լով՝ բարեպաշտութեան բանիւք զխորհուրդս քակէր,
և զամենայն բարձրութիւն հպարտացեալ ընդդէմ գի-
տութեանն այ ։ Այլ այնքան էր զօրութիւն բանի նորա
մեծ, մինչ զի ըստ վկայութեան գրոց սրբոց ոչ ումեք
կար էր զդէմ ունել իմաստութեան և զհոգւոյն որով
խօսէր ։

Ստուգիւ սա 'ի ժողով անհաւատութեան ձգեալ
լինէր քարոզ ճշմարտութեան ․ ուստի պարտ է մեզ զա-
մենայնիւ զայլովքն զանց արարեալ՝ զնախավկայիւն նախ
առաջին զպարտսն հատուցանել ։ Քանզի նախ յառաջ
ոչ առաքեալք և ոչ ժամանակօք շուրջ սահմանեալ լինի
սրբոցն դրուատք և յիշատակք ․ և դարձեալ որոց բարքն
ոչ լինին բաժանեալ, նոցին և ոչ յիշատակքն սահմա-
նին ։ Ուստի ոչ այսուհետև մարտիրոսք առանց առա-
քելոց, և ոչ դարձեալ առաքեալք առանց մարտիրո-
սաց ․ քանզի վարդապետք մարտիրոսաց առաքեալք ․ իսկ
պատկերք առաքելոցն մարտիրոսք ։ Ուստի զպատկեր և
զնկարագիր նոցա բերելով երանելին Ստեփաննոս ․ որ
զի թէպէտ և 'ի ձեռն մահուն նախ և առաջին զպր-

հետաքրքիր լինել Ա՟յ արարչութեանցն : Այլ եթէ զԱ՟յ-
արարչութիւնն քննել ոչ հրամայեցար, որչափ եւս ա-
ռաւել զԱ՟յ զծնունդն քննել ոչ պարտիս : Այլ ապա ըզ-
ձողքառամիտս առնելով զԱ՟ծ, 'ի միաւորն ընդ մարմնոցն և
զշունչն Ա՟ծ 'ի վերայ : Բայց զմարդն ստեղծանելով՝ նախ
յարդարէ զզգայարանսն, և յայնժամ ապա զհոգին ա-
րարչագործեալ եմուծ 'ի նա. ընդէր. զի յայտնի ցուց-
ցէ զառաւելութիւն մարդոյն : Այլ զի այլ կենդանիքն
լուծեալ մահուամբ և շունչն ընդ նմին ապականի, ան-
դուստ ասէ և զնոցա լինելութիւնն ուր անդէն հան-
դերձեալ էր ամենևին ապականել. իսկ զմարդն ստեղ-
ծեալ զմարմինն յերկրէ առնոյր, բայց զհոգին փչէ 'ի
նա : Այլ փոքր ինչ անսա, զի և զբան փչմանն ըստ կա-
րի իմում յայտնեցից քեզ. վասն զի 'ի բնմէն իսկ և ըզ-
սորա յոյս յարութեան ստորագրէ :

Ստեղծու նախ զմարմինն, և յառաջ էառ մարդն
պատկեր մեռեալ, և ապա պատկեր կենդանի և կեն-
դանի նկարագիր, և զկենդանի ազդումն ընկալաւ : Նախ
ցուցաւ մեռեալ և ապա կենդանի. յառաջ ստեղծ մար-
մին մեռեալ յոր կատարելոց էր զմարդն, և ապա յոր-
ժամ կատարեաց զմեռեալ մարմինն՝ յայնժամ և ըզ-
կենդանի նշանագիրն : Այլ ոչ առնէ զհոգին յառաջ
քան զմարմինն, զի մի՛ եղիցի ինքնատես եղելոցն. ոչ
առնէ հոգւոյն մերձ կալ յարարչութեանն, զի մի՛ պար-
ծեսցի իբրև զգործակից Ա՟յ. և ոչ միայն զի մի՛ պար-
ծեսցի, այլ զի մի՛ և զօրինակն իսկ տեսցէ զեղելոցն :
Նոյն և այժմ առնէ Ա՟ծ, զի զիւրաքանչիւր ոք ստեղ-
ծաւ յորովայնի. և զիարդ ստեղծու, ոչ տայ թոյլ ու-
մեք տեսանել : Ստեղծանիմք և ստեղծանիմք, և բնու-
թիւնն զիւր կարգն կատարէ, և զպատճառ ստեղծմանն
ոչ ոք կարէ գիտել : Ով զքանչելեացս, շինի տաճար 'ի
մարմնում, ստեղծանի տղայ յորովայնի, տուն 'ի տուն
յարդարի, և որ արտաքոյ տունն ոչ զգայ :

Այլ արդ առնէ զմարդն ըստ մեռեալ պատկերի, ա-
պա ասէ՝ թէ "Փչեաց յերեսս նորա շունչ կենդանի,
և եղև մարդն յոգի կենդանի,, : Այլ բազումք կարծեն
եթէ փչումն այն է շունչն, և զի յէութենէն Ա՟յ փո-
խարկեցաւ տաճարին 'ի շունչ : Այլ այս ոչ բազում ան-
մտութի միայն, այլ և լի բազում յառաւթեամբ. քան-

զի եթէ 'ի գոյութենէն մեր է շունչն, պարտ էր նմա առա ամենեսեան հաւասար լինել, և ոչ էր պարտ 'ի միում լինել իմաստուն, և 'ի միում յիմար և անհանճար. և 'ի ումն շունչ բարի, և 'ի ումն շունչ անիրաւ. վասն զի գոյութիւնն մեր ոչ բաժանի և ոչ այլայլի, այլ կայ ան- փոփոխելի. զի "Ես եմ, ասէ, և ոչ փոփոխիմ": Ա- պա, եղբարք, ոչ միայն զատանելք մեղուցեալ զհոգին, յայտնանէ յանդիմանեալ որպէս զի չեն յէութենէն մեր, այլ զատանելք զնոսա ընդ դատապարտանօք արկեալ. քանզի տէրն ասէ. "Մի՛ երկնչիք 'ի սպանողաց զմար- մին և զհոգին ոչ կարողաց սպանանել, այլ երկերուք ա- ռաւել որ կարողն է զհոգի և զմարմին կորուսանել 'ի գեհեննին": Որդ եթէ 'ի նմանէ է հոգին, ապա զինքն դատի նա:

Այլ արդ զինչ էր փչումնն՝ կարևոր է տեսանել: Փչ- չումնն մեր՝ հոգւոյն սրբոյ է ազդումն. զի որպէս փրկիչն փչեաց յերեսս երանելի առաքելոցն և ասէ. "Առէք հոգի սուրբ", այսպէս զփչումն Աստուծոյ մարդկաբար լսելի լեալ՝ և աստուածայեղաբար ընդունելի գոլ հոգի եր- կրպագելի: Որ հոգի մատուցեալ՝ ոչ եղև հոգի, այլ հոգի ստացոյց. և ոչ ինքն 'ի հոգի փոխարկեցաւ, այլ զհոգին արարչագործեաց. քանզի արարիչ է հոգին, և հաղորդ արարչութեան հոգւոյն և մարմնոյն ընդ հօր և ընդ որդւոյ, և Աստուծոյն զօրութեամբն արարչագործէ զստեղծուածն: Այլ մի կարծիցես եթէ մասն ինչ լինի նպաստ հայր և մասն ինչ որդի և մասն ինչ հոգին սուրբ. այլ զայս ասեմ, զի թէպէտ հայր առնիցէ, որդւոյ գործ է և հոգւոյն սրբոյ ուղղութիւն. և եթէ որդի արա- ցէ, նա հօր արարչութիւն է և հոգւոյն սրբոյ ազդումն:

Նաև եթէ ոք խնդրեսցէ ասել եթէ հոգին սուրբ չէր հաղորդ 'ի մերում արարչութեանն, կշտամբեսցի: Զի եթէ ոչ 'ի սրբոյ երրորդութենէն էաք ստեղծեալք, զիա՞րդ յերրորդութենէն ծնանիմք մկրտութեամբ. և եթէ ոչ 'ի հայր և յորդի և 'ի սուրբ հոգին հաւատայիմ ա- րարածք, զիա՞րդ 'ի հայր և յորդի և 'ի սուրբ հոգին մկրտովին նորոգիմք. այլ յորժամ եղեալքն ստացեալք, ոչ եղեն պէտք հոգւոյն սրբոյ, բայց յորժամ նորոգիմք յայն ժամ, ապա ուրեմն արարիչ է հոգին սուրբ, թէ- պէտ կամին թշնամիքն, թէպէտ ոչ: Այլ գիտասցէ Դա-

ւթի արարչական զօրութեան Հոգւոյն, զոր յաղագս մարդկայնին կազմածոյս ձայնեալ ասէ. «Ամենեքեան քեզ ակն ունին տալ կերակուր 'ի ժամու», և որ զկնին: Եւ ասա զինչ որ 'ի վերայ ածեալն. «Դարձուցանես զերեսս քո և խռովեսցին. հանցես զոգի 'ի նոցանէ, պակասեսցին և 'ի հող իւրեանց դառնան: Առաքես զոգի քո, և ստացեալք եղիցին»: Նոյն ուրեմն ստացիչ և արարչակից է Հոգին սուրբ: Եւ հայեաց 'ի ստուգութիւն բանին. յորժամ վասն մերոյ հոգւոյս ասէ, ասէ՝ «զհոգի հանես 'ի նոցանէ», ոչ զքո, այլ զնոցայն. իսկ յորժամ վասն սրբոյ Հոգւոյն ասէ, «առաքես, ասէ, զհոգի քո, և ստացեալք եղիցին»:

Իսկ եթէ առ այսոսիկ յանդգնեսցի ոք 'ի հերձուածողաց հակառակաբար տեսանել զմեծամարտութիւնն, դարձեալ այլ վկայութիւն փայլատակեսցի՝ զՀոգւոյն սրբոյ զարարչութիւնն քարոզելով, վասն զի լաւագոյն քան զամենայն արարածս և քան զերկինս և զերկիր և զծով Հոգւոյն սրբոյ գործ գտանի: Զի և մարմինն Քրիստոսի ամենասուրբ երկրպագելի, 'ի ձեռն որոյ երկինք և երկիր և ամենայն արարածք փրկին, Հոգւոյն սրբոյ գործ է: Քանզի սրբոյ կուսին տարակուսեալ առ աւետարանեալ ստար և զքանչելի երկունսն, և ասացեալ եթէ «Զիարդ լինիցի ինձ այս, զի ես զայր ոչ գիտեմ», և ասէ ցնա հրեշտակն. «Հոգի սուրբ եկեսցէ 'ի քեզ, և զօրութիւն բարձրելոյն հովանի լիցի 'ի վերայ քո»: Ոմանք կարծեցին զօրութիւն ասել զՈրդի: Եւ պարտ է տեսանել եթէ զՀոգին սուրբ կոչեաց՝ Հոգի սուրբ և զօրութիւն. քանզի որպէս Քրիստոս ասի այ զօրութիւն, նոյնպէս և Հոգին զօրութիւն անուանի, ասելով ցաշակերտսն տէրն. «Կացէք յԵրուսաղէմ մինչև զգենուցուք զօրութիւն 'ի բարձանց»: Նոյն և հրեշտակն ասէր ցՅովսէփ. «Յովսէփ որդի Դաւթի, մի երկնչիր առնուլ առ քեզ զՄարիամ կին քո. քանզի որ 'ի նմայն ծնեալ է, 'ի Հոգւոյն սրբոյ է»:

Եւ արդ զի զմարմինն Քրիստոսի Հոգին սուրբ ստացաւ, ցոյց զզանազանութիւն արարչութեանն առ արարածս և տես, մի ամօթ վարկանիր զՀողեղէն պատկերն: Քանզի եթէ ըստ քո բանից յորժամ եղեն Ադամ, հաղորդութիւն ոչ ունի յարարչութեանն Հո-

զկին սուրբ, այլ զատեալ լինի և անդ. զի հայր և որդի ստանալով զերկրայինն զմարդն, իսկ հոգին սուրբ զերկնայինն. զի «Փչեաց, ասէ, յերեսս նորա, և եղև յադի կենդանի»: Եւ նայեաց զգուշաբար. յորժամ ըստեղծաւն և արարաւն և զընտանին ընկալաւ զպատկեր, կինն չև ևս էր ստեղծեալ: Այլ զինչ. արար զնա ած, որպէս զի ոչ կամեցաւ զհոգին Ադամայ մերձ լինել յարարչութեանն, այնպէս ոչ ետ թոյլ մահկանացու աչօք ումեք կալ մօտ յարարչութեանն: Վասն այսորիկ կամելով ստեղծանել զկինն, էարկ քուն 'ի վերայ Ադամայ, զի մի հայող լինիցի և մի քննեսցէ զայն արարչութիւնն:

«Եւ արկ, ասէ, թմբրութիւն 'ի վերայ Ադամայ». այսինքն նիրհումն, և ննջեաց: «Եւ առ մի 'ի կողից նորա». որ կապեացն, և եղծ. յորոց գործեաց՝ փոխ առնու. յորոց արարն՝ առնու: «Եւ առ մի 'ի կողից նորա և ելից ընդ այնր մարմին»: Եւ ուստի ելից. տարակուսի բանս, այլ զօրութիւնն ոչ տարակուսի: «Եւ շինեաց զկողն զոր առ՝ 'ի կին»: Եւ զիարդ շինեաց դարձեալ ոսկերս, կողս. զիարդ փոխարկեցաւ յաչս, զիարդ 'ի ձեռս ստեղծաւ, զիարդ 'ի փորոտեացն դիրս փոխաձևեցաւ, զիարդ կցեցաւ լեզուն, զիարդ ճախարակեցան շրթունքն, զիարդ փոխաքանդակեցան ունչքն, զիարդ վերաթուեցան ականջքն, զիարդ ծաղկեցան հերքըն, ո՞ւր բուսան եղնգունքն, զիարդ զեղաւ արիւնն: Անհնարին զքո լինելութիւնդ. իսկ եթէ ոչ կարես ասել, ընդէր բանեա զքո հայհոյութիւնդ հակառակ միածնին:

«Եւ արկ թմբրութիւն 'ի վերայ Ադամայ, և առ մի 'ի կողից նորա և արար կին»: Եւ տես զամենիմաստ արարչութիւնն. 'ի միոյն ստեղծու երկուս, զի յերկուցն դարձեալ զմին կատարեսցէ առանց մերձաւորութեան. յԱդամայ եհատ զկինն, և 'ի միոյն արար երկուս, և յերկուցն դարձեալ առնէ զմին. քանզի որ յառնէն և 'ի կնոջէն՝ 'ի մի կատարի մարմին. կողն շինի. բանն մարդկային, և իմաստն ածային: Անհնարին զիարդ շինի կողն, և ոչ գտցես. շինեաց զկողն. զմինն ստեղծ, իսկ զմիւսն շինեաց: Ո՛ր այս է, ստեղծումն յերկրէ և շինելն 'ի կողէն. ստեղծ զԱդամ 'ի հողոյ և շինեաց զկինն 'ի կողէն. և յօրինէ զԱբէլ և զԿայէնն և զորս ըստ նոցայն,

և են եղեալքն ոմն ստեղծեալ և ոմն շինեալ, և ա-նուանքն ոչ որոշեցան հաւասար գոյութեամբքն. և զայս ինչ 'ի դէպ ժամու է ասել:

Քանզի ասեն հերձուածողքն՝ եթէ լինելին և ան-լինելին ոչ են նմանք. այլ որչափ ունին զանազանու-թիւն անուանքն, այնքան և իրքն հեռութիւն ունին: Արդ տուր զերկուց զանազանութիւնն՝ Ադամայ և առ-որս 'ի նմանէն. վասն զի Ադամ լինելի է և անլինելի. լինելի է ըստ որում եղեւն, և անլինելի ըստ որում ոչ ծնաւ. եղև և ստեղծաւ, այլ ոչ ծնաւ. իսկ կինն ոչ ծնաւ և ոչ ստեղծաւ: Նա անդէն զբանն և հաստա-տուն կալ զմիտդ: Ադամ ստեղծաւ և ոչ ծնաւ, իսկ կինն շինեցաւ և ոչ յերկրէ ստեղծաւ և ոչ յորովայնէ ծնաւ. և որք ըստ Կայենին են և Աբէլին, ոչ ստեղ-ծան և ոչ շինեցան, այլ ծնան:

Այս զի բազում զանազանութիւն ունին անուանցն միտք, քանզի այլ է ստեղծանելն և այլ է շինելն, ցոյց զզանազանութիւնն Ադամայ առ Եւա և առ որս 'ի նո-ցանէն: Զի եթէ հատանին յորջորջմամբքն և ոչ գոյ-ութեամբքն, զինչ սքանչելի է եթէ զանունութիւնն ի-մաստաբար դարձուցես. փոխեա զարտաձայնութիւնն. ուսի՛ր քեզ լինելին և անլինելին: Ուրացի՛ր զՀօր և զորդւոյ զյորջորջումն. իմաստագո՛յն եղեր քան զՀո-գին յորջորջութեամբն. ո՞չ էր քան զքեզ հաւատար-մագոյն ամն. ո՞չ էր կարող յառաջ քան զքոյդ հնարա-ւորութիւն զիմաստութիւնս զայս գտանել. ո՞չ արդեօք կարէր ասել՝ մկրտեցէք զնոսա յանուն լինելոյն և ան-լինելոյն: Բայց արդ որ առ հերձուածողսն մարտ և որ յաղագս բարեպաշտութեանն հանդէս՝ այլում ժամա-նակի շտեմարանեսցի, և մեք յառաջիկայսն դարձցուք բան:

“Եւ արկ 'ի վերայ Ադամայ ննջումն, և յայնժամ առ զկողն”. վասն զի զուգահանդերձեալ էր 'ի կողէս յայսմանէ յառաջ գալ պատճառոյն յանցանաց: Կինն եմոյծ զմահն Ադամայ. և փրկիչն կամելով զվէրսն բը-ժշկել, փոխադրեաց զկողն, և 'ի խաչին զնոյն կող տի-գին աւանդեաց. զի ուստի ած զվէրսն 'ի վերայ, ան-դուստ ծագեսցէ փրկութիւնն. “Եւ ել, ասէ, անտի արիւն և ջուր”: Նմա զխորհուրդն և պատուեա զանօ-

ցերեկս. որպէս 'ի վերայ Ադամայ արկ զքունն մեծ և յայնժամ առ զկողն 'ի նմանէ, նոյնպէս և փրկիչն կատարեալ զննջումն ըստ մարմնոյ՝ յայնժամ բացաւ կողն. զի յայնժամ յետ քնոյն, և աստ յետ ննջմանն։ Ո՛վ բնաւորացն տեսեալ զարիւնն որդի այ քարոզեցին, իսկ հերձուածողացն տեսեալ զսքանչելիսն արարած ասեն։

Այլ ընդէ՞ր արգեօք տիգին պատահեաց կողն. զի պարտ էր ձևով խաչին ամենեցուն լուծանել զոր ըստ Ադամայն։ Վասնզի մեծ հանելով զնա 'ի դրախտէն՝ զբոցեղէն սուրն եդ շուրջանակի, որ արգելոյր զնա չմտանել 'ի դրախտն։ Այլ սուրն էր դառնալի, և ամենայն դառնալի մինչև ոչ բախեսցի ումեք ընդդէմ անկելոյն՝ ոչ առկայի։ Պիտէք 'ի փորձմանէն զասացեալս. ամենայն դարձաւոր եթէ ոչ առհարցի ումեք, ոչ կայ յուրոց ընթացիցն։ Այլ զի այնուհետև ոչ ոք կարէր կալ ընդդէմ բոցեղէն սրոյն, 'ի տնօրէնութեն խաչին ձևով տիգին ընդդիմադրեաց զկողն, զի 'ի ձեռն զգալի տիգին իմանալի սուրն հարեալ 'ի կողն՝ դադարեսցէ ապա 'ի սպառնալեաց, և մի այլ ևս արգելցէ զմուտս դրախտին։ Արդ ընկալաւ տէրն զսուրն 'ի ձեռն կողոյն, և առժամայն բացաւ դուռն դրախտին, աղբիւրացաւ 'ի կողէն բժշկութիւն վիրաւորեցելոյն 'ի կողէն. 'ի ձեռն կողոյն եհան զնա 'ի դրախտէն զառաջինն, և դարձեալ 'ի ձեռն կողոյն եմոյծ զնա անդրէն յարքայութիւնն։ Խաչաւեւաց, այլ ողորմեցաւ. եհան արտաքս, այլ ոչ ապականեաց խստաւ. դարձոյց, այլ ոչ արտաքս ընկէց։

Այլ զի ժամ է պաշտաման, թող տալի է մեզ, քանզի զի ամենայն ինչ հնարելի է այ. որպէս զի և 'ի մեզ մտածանել զպակասեցելոցն զմիտս, և ձեզ փոքր 'ի շատէ յայտնել զամենայն բանի զօրութիւն. զի "Տէր, ասէ, իմաստնոյն պատճառս և իմաստնագոյն լիցի„։ Պահասցուք զայն, զի մի զդրախտ կորուսաք, և բիւր դրախտս տնկեցաք ընդ ամենայն տիեզերս։ Պահեսցուք զայն, զի զդրախտն կորուսեալ վասն յանցանացն, յարքայութեան եղեաք կոչեցեալք 'ի ձեռն չարչարանաց տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս. ամէն։

## ՅՕՐ ՊԱՀՈՑՆ ՅՈՐՈՒՄ ՓՐԿԻՉՆ ԶՕՏՍ ԱՇԱԿԵՐՏԱՑՆ ԼՈՒԱՆԱՅՐ ՅԱՐՈՒՑԵԱԼ ՅԸՆԹՐԵԱՑՆ

Ողորմութիւն ա͞յ և զմարդասիրութիւն քարոզէ արարածս ամենայն. քարոզէ և ասացուածս զանօրէնութիւնն: Սատան զի ոչ ինչ է յերևելեացս և յոչ երևելեացն որ ոչ քարոզէ զա͞յ զօրութիւնն. այլ երկինք և երկիր և ծով և ամենայն տեսանելիքս և ոչ տեսանելիքն ողորմութեամբն ա͞յ եղեն և հաստատեցան և պահին: Յաղագս որոյ յիրաւի երանելին Դաւիթ քարոզէ 'ի մարդասիրութենէն զողորմածն ասելով. "Ողորմած և գթած և արդար է տէր ա͞ծ մեր, ողորմի": Խառնեաց ընդ մարդասիրութեանն զարդարութիւն: Արդար կոչէ և մարդասէր. զի յորժամ արդար լուիցես՝ զարհուրեսցիս 'ի դատաստանէն, և յորժամ մարդասէր իմասցիս՝ և ընթասցիս ապաշխարութեամբ: Ոչ քարոզէ զմարդասիրութիւնն արձակ, և ոչ զարդարութիւնն մերկ. եթէ միայն քարոզէ զարդարութիւնն՝ զարհուրեցուցանէ զյուսացեալսն, և եթէ միայն ասէր զմարդասիրութիւնն՝ 'ի քամահանս ածէր զարհամարհողսն: "Ողորմած գթած և մարդասէր է տէր ա͞ծ մեր, ողորմի": Միաւորեաց զարդարութիւնն ընդ մարդասիրութեանն, բայց սակայն սկիզբն և կնիք բանին զողորմութիւն եդ. սկսաւ 'ի մարդասիրութենէն և կատարեաց 'ի մարդասիրութիւնն:

Երկին յաղագս մարդասիրութեան եղև և ոչ վասն պիտոյից ա͞յ. քանզի յորմէ հետէ երկին գործեցաւ, և ոչ ևս է վեց հազար ամ, և նախ քան զերկին և յառաջ քան զանբաւ յաւիտեանսն զայնոսիկ որք սկիզբն ոչ ունին, ա͞ծ էր և է, և նախ քան զմեծութիւնս երն ասի: Ոչ եղև երկին յաղագս պիտոյից ա͞յ, այլ վասն մարդասիրութեան: Յաղագս այսորիկ երկինք պատմեն ոչ զպէտս ա͞յ, այլ զփառս ա͞յ: Ասի ա͞ծ յերկնի ընդ Դաւթայ, "Աստուած մեր յերկինս". այլ ասի ոչ իբրև պէտս ունելով ա͞ծ երկնի, այլ իբրև հանգուցեալ

ուրեք։ Յերկնի են հրեշտակք, որպէս և երկիր որք յերկրեւս մարդիկ։ Նայելի իմն խօսի պատմութիւնն զեկուցանելով զժամ ճաշոյն․ «Ամենայն երկիր ճաշէր»․ փոխանակ եթէ ժամ էր ճաշոյ։ Արդ կոչին երկիր, որք յերկրի են մարդիկ․ կոչին և երկինք, որ յերկնի են հրեշտակք։ Եւ յայսմ եկն 'ի քարոզելն․ «Ու-րախասցին երկինք և ցնծասցէ երկիր»․ այսպէս երկինք։ Որ յերկինս հրեշտակք՝ ընդէր ուրախ լցին․ վասն աշխարհի փրկութեան։ Եւ ո՞ երաշխաւոր լինի ձայնիս այսմիկ․ ինքն հրեշտակաց թագաւորն․ «Ամէն ամէն ասեմ ձեզ, խնդութիւն լինի առ հրեշտակաց որ յերկինս են վասն միոյ մեղաւորի որ ապաշխարէ»։

Արդ եղև երկինք 'ի փառս այ և 'ի պէտս մեր, զի արեգակն զմեզ լուսաւորեսցէ և լուսին և ամենայն աստեղք․ զի ոչ եթէ արեգական պէտս ունէր ած արարիչն լուսոյ․ ոչ ունէր պէտս զգալի լուսոյս, որ միայն ունի զանմահութիւն բնակեալ 'ի լոյս յանմերձենալի։ Եւ ոչ ինչ հրաշալի եթէ ած զգալի լուսոյ պէտ ինչ ոչ ունի, զի և ոչ հրեշտակք ընդ երկնաւ լուսոյն պէտս ունին․ այլ միայն որ 'ի վերայ երկնի, և երկնայինն լոյսն ինքն ած։ Այսպէս վկայեն և գիրք գործոց առաքելոց․ «Ի մէջ գիշերի հրեշտակ եկաց 'ի կապարանին յորում էր Պետրոս»։ Ոչ ինչ ասէ պատմագիրն, մանաւանդ եթէ հոգին սուրբ որ 'ի ձեռն նորա խօսէր․ «Եւ ահա հրեշտակ եկաց 'ի գիշերին և լոյս ծագեաց 'ի տանն»։ Եւ արդ եթէ հրեշտակ ոչ ունի պէտս լուսոյ լեալն, արարիչն ամենեցուն լուսոյ պէտս ունիցի։ Ոչ ինչ են նմա պէտք լուսոյս այսմ, այլ զմեզ զուարճացուցանէ լուսովս, զմեզ կենագործէ, զմեզ փայփայէ․ վասն զի ամենայնն եղև յաղագս փառաց նորա և մերոյ պիտոյից․ արեգակն զի զմարդիկ լուսաւորեսցէ, ամպք յանձրևոյ սպասաւորութիւն, երկիր 'ի պտղոցն քաջաբերութիւն, ծով 'ի վաճառականաց առատութի։

Ամենայն ոք սպասաւոր մարդոյ լինին, մանաւանդ կերպարանին տեառն․ զի և ոչ յորժամ թագաւորական պատկերք և կերպարանք 'ի քաղաք բերեալ լինին, և ընդ առաջ հանդիպին իշխանք և ռամիկք հանդերձ բարեբանութեամբ և ահիւ, ոչ զտախտակն պատուեն և ոչ զմելանն եդեալ գիր, այլ զպատկեր թագաւորին։

ծառայի պատկերի ՏՆ պատկերն. յաղագս որոյ ասէն Պաւղոս. «Որ ՚ի կերպարանս ՏՆ էր, ոչ ինչ յափշտակութիւն համարեցաւ զալ հաւասար ՏՆ. այլ զինքն թափեաց զկերպարանս ծառայի առեալ»։ Զառաջնորդական զմարդկայինն պատկեր և ծառայի կերպարանս զգեցաւ ամենեցուն տէրն. բայց առաւել ՚ի մնորհէնութեանս այսմ զծառայի կերպարանս զգեցաւ, յորժամ յարեաւ յընթրեացն որ կերակրէ զամենայն զընդ երկնաւս, յորժամ բազմեալ էր ընդ առաքելոցն տէրն ընդ ծառայսն, բանն ընդ այնոսիկ որոց զբանն ոչ էր ուսեալ, աղբիւրն իմաստութեան ընդ այնոսիկ որք զգիրս չգիտէին. յորժամ բազմեալ էր ուտելով ընդ նոսա որ զամենեսեան կերակրէ և զարմանէ, ընդ աշակերտսն որ զաշխարհ ամենայն կերակրէ. ոչ բաւական վարկաւ զմեծութիւն ճշմարիտն այնորիկ, զի ընդ իւրում ծառայսն բազմեալ էր։ Պետրոս և Մատթէոս և Անդրէաս և Փիլիպպոս որք յերկիրէս մարդիկ բազմեալ էին ընդ նմա, որում մերձ կային Գաբրիէլ և Միքայէլ և ամենայն զօրք հրեշտակացն։ Ո՛վ սքանչելեացս. որում ահիւ մերձ կային հրեշտակք, ընդ նմա բազմեալ էին աշակերտքն համարձակ բարձում համարձակութեամբ.

Եւ ոչ շատացաւ այնու հրաշալեօքս. այլ յարուցեալ յընթրեացն, առէ, ՚ի բաց եդ զկերկնոցն, որ զգեցեալն է զլոյս իբրև զհանդերձ, և սփածաւ կտաւ։ Սփածաւ կտաւ որ զգեցուցանէ զերկինս ամպովք. և արկ ջուր ՚ի լուացարանն, որ ՚ի լիճս և ՚ի գետս զջրոց բաղխութիւն հեղու. և խոնարհեալ ՚ի ծունկս զաշակերտացն լուանայր զոտս, որում կրկնի ամենայն ծունր երկնայնոց և երկրայնոց և սանդարամետականաց։ Լուանայր զոտս աշակերտացն ամենեցուն տէրն, ոչ թշնամանելով զպատուն, այլ ցուցանելով զանչափ մարդասիրութիւնն։

Սակայն թէպէտ և մեծ էր մարդասիրութիւն, Պետրոս ոչ անփոխացաւ զգերազանցութիւնն, որ միշտ ջերմ ՚ի հաւատսն՝ ջերմագոյն եւս գտաւ ՚ի գիտութիւն ճշմարտութեանն։ Եւ այլքն ամենեքեան ընկալան զլուանալն նորա ոչ ինչ հրաժարելով, այլ դողացեալք ընդդէմ ոչ կարէին ասել տեառն. իսկ Պետրոս հակառակէր ընդ տեառնն յաղագս հաւատոյն և ասէր. «Դու զիմ ոտս լուանաս տէր. ոչ լուասցես զոտս իմ յաւի-

տեան,,: Պնդեցիկ է համառօտ ասացմանն¹ բարեմասնութեանն, այլ անգիտանայր զանանձնութիւնն. Հաւատով սպասաւորէ, և բարեմասնութեամբ հնազանդի. վասն զի պարտ և արժան խակ էր այնպէս լինել բարեպաշտին՝ ոչ անդադանել² յընտրողութիւնս, այլ անձնատուր միոյ կամացն: Հրաժարեցիր իբրև զմարդ, և ապաշաւեցիր իբրև զծառայ:

Փրկչին տեսեալ զնորա զընդդիմակացութիւն հագոյն անխոնարհելի և քան զամենայն սաստ զօրաւորագոյն, ասէ ցնա. "Ամէն ասեմ քեզ. եթէ ոչ լուացից զքեզ, ոչ ունիս մասն ընդ իս,,: Հայեաց զիարդ ահաւոր էին իրքն, և ձայնէս զխոնարհութիւնն եղած ՚ի ձեռն մեծագոյն եւս խստութեան համառօտաբար ընդդէմ նախ երևեալ օտար զնա ասէ յիւրմէ մասնէն, զի մի յաղթեսցէ մարդկայնոյն ընդդիմակացութիւնն, այլ հերքեսցեն միոյ ախորժակքն: Եւ ապա առաքինին և սքանչելին Պետրոս որ³ որպէս հրաժարեալ՝ արագ արագ փոխեցաւ, և յորժամ եւս խիստ զհրամանն՝ համառօտ ընծայեաց զապաշաւանսն և ասէ. "Տէր, մի միայն զոտս, այլ և զձեռս և զգլուխս բովանդակ լուա,,. զամենայն սրբեա, զի ասացից և ես ընդ Դաւթայ "Լուասցես զիս, և քան զձիւն սպիտակացայց,,: Եւ տէրն ասէ ցնա. "Լուացեալն պէտս ինչ ոչ ունի, բայց զոտսն ևեթ,,:

Ընդէ՞ր զոտսն միայն լուանայր. յաղագս ընթացից առաքելոցն: Լուանայր զոտսն, ոչ զաղտոն միայն մաքրելով, այլ և զօրութիւն դնելով ՚ի գարշապարսն ոտիցն: Եւ զայս գեղեցիկ լուացումն տեսանելով Եսայիաս ՚ի հեռաստանէ ՚ի վաղուց⁴ ժամանակաց գոչէր. քանզի եւս եթէ ոչ մարդ լուաց, այլ Աստուած սրբեաց, աղաղակեաց ասելով. "Իբրև՜ զի գեղեցիկք են ոտք աւետարանչացն զբարիս,,: Մերձենայ յոտսն, զի զօրացուսցէ զերկրային ոտսն որք հանդերձեալ են ընթանալ ընդ ամենայն ընդ երկնաւս:

Եւ այլ միւս եւս խորհուրդ, եղբարք. վասն զի ՚ի

1 Օրինակ մի բարեմասնութեան մասին համառօտ, այլ:

2 Օրինակ մի յանձնել:

3 Այլք որքանզի արագ արագ փոխեցաւ ՚ի հրաժարելոյն կամ ՚ի հրաժարելն:

4 Այլք ՚ի վերուստ:

սկզբանն երեւեցոյց մեծ հակառակն Եւայի առնլով օձին. «Նա սպասեսցէ քում գլխոյ, և դու սպասեսցես նորա գարշապարի»: Նոյն հարկանէ զգարշապարին մեղւոյ, որում հրամանն ետ. զի բժշկեսցէ՝ զձեռն 'ի վերայ դնելով, և ոչ առցեն սկիզբն թոյնք օձին. և զի ուսցիս եթէ լուծեալ զառաջն զօրութիւն ընձեռեր այնուհետեւ հակառակ դիւացն: Յառաջագոյն մատնեալ էր զգարշապարն օձին. իսկ զկնի այնորիկ զօրացեալ 'ի ձեռանէքն՝ կոխեաց զմոլորեցուցիչն, որ զօրացոյց զնոցա զոտս և ասաց. «Ահա ետու ձեզ իշխանութիւն գնալ 'ի վերայ օձից և կարճաց»: Պայծառանայ այսուհետեւ և խաչին շնորհ, և զամենեցուն զմեր լուանայ զմիտս բանիւ ճշմարտութեան 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, որում փառք յաւիտեանս. ամէն:

## Ի ՅԱՐՈՒԹԻՒՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ*

Յորժամ զախրական ձմեռն զարնանային ժամանակն փոխանորդեսցէ, և զանազան հաւուցն յօդս թռչուցեալ նուագաձայնութեամբ երգեն՝ զհեշտութիւն ժամանակին մարդկան նշանակելով, յայնժամ ծիծառունք հեշտախօսք երագաթռիչք զօդս հարկանեն 'ի վերայ գլխոց մարդկան անցանելով, զօրէն ծաղկի զիւրեանց ձայնն յականջս մարդկան արկանելով. յայնժամ է տեսանել մաքուր և զօդ առանց հողմոց, և ըղձէմն մարդկան զուարթս նման ցածութեամբ փոփոխմամբ ալեաց ծովու յարմարեալս: Նոյն զի և հաւուցն զանազան հնչմունք հեշտացուցանեն զլսելիս, և օդ մաքուր զուարճացուցանէ զաչս, և ազգի ազգի ծաղկանց պայծառութիւնք վայելչացուցանեն զհոտոտելիս: Որք այս հրճուանք, սիրելիք, ընդ ձեռամբ մարդկան՝ երկրային և ժամանակեայ զարուն. իսկ մեծայլն և անարատ զարունն Քրիստոս զեկեղեցի մանուշակօք և վարդօք և շուշանօք հոգեւորօք զարդարեաց, հաւատովք

* Համառօտութիւն է այսր Ճառ- թեան Նանայի ասորւոյ: որ վերջաբան Յովհաննու մեկնու-

զքեան Սողոմոնի զերգսն, վասն զի վայել է մեզ այժմ քան թէ յայնժամ նոցա. եկեսցէ և զհետ մեր և սըրբոց կանանցն այնոցիկ պար, և ասասցէ զոր յայնժամ 'ի կարմիր ծովուն հնչէին. "Օրհնեսցուք տեառն, զի փառօք փառաւորեցաւ": Եւ զի՞նչ արար. զհեծեալսն և զձիսն ընկէց՝ զերիվարն և զհեծեալն, զձին՝ զիգամոլ զմեղսն, և զհեծեալն որ 'ի վերայ մեղացն նստէր ըզդեն՝ 'ի մկրտութեան աւազանն 'ի վայր ընկղմեաց: Երգ երգեսցուք տեառն, վասն զի փառօք փառաւորեցաւ, և զՓարաւոն և զզօրս իւր ընկէց 'ի ծով, այսինքն զսատանայ և զխաւարային և զպիղծ դիւացն նորա զբանակս 'ի մկրտութեան աւազանին ծովասոյզ արար: Եւ ես երկնչիմ լսելով՝ թէ հող էիր և 'ի հող դարձցիս. վասն զի մկրտութեամբն զհողն 'ի բաց եդի և զերկինս զգեցայ. և լսեմ թէ երկին ես և յերկինս երթիցես. վասն զի "Որք 'ի Քրիստոս մկրտեցայք, զՔրիստոս զգեցայք". և "Որպէս հողեղէնն՝ նոյնպէս և հողեղէնքս, և որպէս երկնայինն՝ նոյնպէս և երկրայինքս": Պարտ է մեզ և յամենայն վերայ ելանել և յերկինս վերընթանալ: Եւ է անվկայ բանս, լուր Պաւղոսի որ ասէ. "Յափշտակեալ լիցուք ամպովք 'ի հանդիպումն տեառն, և այնպէս յամենայն ժամ ընդ տեառն լինիցիմք": Յաղագս որոյ որպէս և այժմ լուայք տաղմոսերգողին, որ մեզ պատուիրէր և ասէր. "Այսօր է զոր արար տէր, եկայք ցնծասցուք և ուրախասցուք 'ի սմա" ոչ արբեցութեամբ և ախակալութեամբ թմբրեալք. վասն զի այն ոչ է ուրախութիւն, այլ անզգամութիւն և խաւար սրտի. այլ բերկրեսցուք 'ի տէր խայտալով և հոգւով ցնծասցուք, սիրով բերկրեսցուք, յուսով զուարձասցուք: Աւէ պարտ և արժան իցէ և զմիւսն իմանալ զուրախութիւն սրտի, զերկնային հացն մաքուր ձեռօք և սուրբ սրտիւ ընդունել յանձինս, առաքեսցուք զյաւիտենական կենացն զպաշար: Սուրբ ձեռօք առեմ, ոչ քնով հանգուցեալս, այլ բարեգործութեամբ պայծառացեալս, և զմ̃ծային և զերկնային զխառնուածն վարդապետեսակ շքթամբք ճաշակեալ. ոչ կարծութեամբ իւիք շառագունեալ, այլ արեամբն Քրիստոսի ծիրանացեալ:

Ո՜վ ճշմարտապէս բարւոյ աւուրս, յորում գան զե-

նեալ լինի և Յուդայ գնեալ և հոգին մեր կենդանի է. քանզի ասէ. «Այս եմ հոգին քաղ»: Ո՞վ նոր խորհրդոյս և սքանչելեացս հրաշափառագունից. խաչն կանգնեցաւ և Քրիստոս բևեռեցաւ, մահն անխռովէր, երևելի վարագոյրն սուրբ լեալ՝ խաչն էր երևելին և առագաստ կատարեալն. երէկ կանգնեցաւ խաչն և այսօր ծանեաւ ժողովուրդն: Ո՞վ մահ Քրիստոսի, որ մահու է մահ, քաղցր աղբիւր 'ի դառն մահուանէ բղխեալ. աբրահամեան խորհուրդն 'ի Քրիստոս կատարեալ. Իսահակ 'ի վերայ սեղանոյն կապեալ լինի, և գառն փոխանակ նորա զենեալ. որդին մի 'ի խաչ ելանէր, Յիսուս վասն մեր չարչարեալ: Հաստատեցաւ սիւն խաչին 'ի նաւի աշխարհիս, և աշխարհս առանց նաւաբեկութեան կայ մնայ. այսու ստացաք նաւելով զնաւաբեկութիւն մահու ոչ դիպեցաք, այլ 'ի վեր յերկինս նաւեցաք յանմահ կենդանութիւնն:

Ոչ ես երկնչի Ադամ, վասն զի Մարիամու յերոյ անիծիցն զերծաւ. ոչ ես Յուդայ երկնչի յօձէն, քանզի Քրիստոս ջախջախեաց զգլուխ օձին 'ի վերայ ջուրց, այս է 'ի մկրտութեանն: Ոչ ես լամ, ոչ ես ողբալով ասեմ՝ դարձաւ թշուառութիւն իմ 'ի ցցել յիս փշոցն, վասն զի եկեալ Յիսուս Քրիստոս զփուշ մեղաց մերոց արմատաքի խլեաց՝ յիւր գլխոյն վերայ եդեալ. լուծան նզովքն, լուծան առաջինն անէծքն որ ասէին ինձ «Փուշ և տատասկ բուսցի քեզ». վասն զի դոսացան փուշք և արմատաքի խլեցաւ տատասկն, և երկնքին հաւատոյ յօրինեալ պսակ և 'ի վերայ գլխոյ իմոյ եդաւ: Ո՞ր ոք 'ի Հրէից կամ 'ի հեթանոսաց հաւատացելոց ոչ խնդացէ՝ եթէ փայտն կանգնեցաւ և կեանք ծաղկեցին, և նա համապարզօր 'ի հաւատացելոցն կթի. և պտուղ ծաղկեցելոյ ծառոյն կայ մնայ: Ամենայն ցեղք և բովանդակ հաւատացեալք յայս ծառ գնացիք հոգւոյն ելանելն և զծոց մնացն անմահութե-պտղոյն լնուլ: Զամենեսեան բառնայ ծառս և զպտղաբերեան յագեցուցանէ, և զկնի այսօրիկ յերկինս ձգէ:

Վասն զի զինչ զոր ոչ յաղագս մեր համբերեաց Քրիստոս լինել. ոչ կարեմք թուել զամենայն նորա, սակայն ձեռնարկեսցուք, ով սիրելիք: Ճանապարհ ; դուռն, այր, ոչխար, հովիւ, մարգարիտ, լոյս, վէմ, ա-

րեգակն արդարութեան, հատ մանանխոյ, որդն, մարդ։ Բազմանուն Քրիստոս և մի է որդի. բազմանուն է և մի է, ոչ փոփոխելով և ոչ այլայլելով, վասն զի անփոփոխելի է ա՛ծութիւնն, այլ իւրաքանչիւր իրի ըստ գործոյն յարմարեցաւ, և զիւր անունն յիւրաքանչիւր 'ի գործն եդ։ Տեսցուք սիրելիք, եթէ կարասցուք իւրաքանչիւր ումեք անուան զգործն պատշաճեցուցանել։

Ճանապարհ կոչեցաւ, վասն զի "Ես եմ ճանապարհ և ճշմարտութիւն և կեանք„. զի նա ինքն է առաջնորդ ամենայն առաքինութեան և յերկինս ճանապարհ ելանելոյ։ Այլ և դուռն, վասն զի "Ես եմ դուռն ոչխարաց„. զի ընդ նա իբրև ընդ դուռն յերկնից արքայութիւնն մտանեմք։ Աղ անուանեցաւ, զի ըզժահահոտութիւն կռապաշտութեան մարդկան 'ի բաց մաքրեաց, և զանձինս մեր հոտովն բարեպաշտութեան հաւատոյ համեմեաց, և զլուծեալ անդամսն մտաց ճըշմարտութեն աղիւն պնդեաց։ Ոչխար կոչեցաւ. "Իբրև զոչխար ածեալ 'ի զենումն, և իբրև զորոջ առաջի կտրողի անձայն„. ոչխար յաղագս զենմանն և վասն անդամոց նորա ճաշակմանն և սրբոյ արեանն նորա կնիք և պահպան։ Հովիւ անուանեցաւ, "Ես եմ հովիւն քաջ„. զի զմոլորեալ ոչխարն դարձոյց և զոսոխն մեր զառիւծն ցպով խաչին սպան։ Մարգարիտ կոչեցաւ, զի իբրև ըզմարգարիտ 'ի գաղտակրի 'ի մէջ երկուց կուսական պատենից, մարմնոյ ասեմ և շնչոյ, առանց սերման եղեալ. և յաղագս լինելոյ զարդ յանձին, և վասն բազմաճառագայթ և մաքուր ամենայն ուրեք զա՛ծութեանն նըշոյլս փայլելոյ։ Լոյս անուանեցաւ, քանզի "Էր լոյսն ճշմարիտ որ լուսաւոր առնէ զամենայն մարդ եկեալ յաշխարհս յայս„. յաղագս խաւարային մոլորութեան մթոյն մտաց մերոց 'ի բաց քակելոյ, զի տեսանիցեմք ճըշմարտապէս որոց երկիր պագանէաքն յառաջագոյն եթէ ոչ են ա՛ծք, այլ գործք ձեռաց մարդկան քարինք և փայտք։ Վէմ անուանեցաւ, զի զերկուս ժողովուրդս իբրև զերկուս որմս հաւատով շինեալ 'ի վերայ նորա կայ 'ի մի յարմարելով զփրկութեանն հաւաքումն։ Արեգակն արդարութեան անուանեցաւ յաղագս լուսաւորութեն իւրոյ և երկոտասան ճառագայթից գնդին երկոտասան առաքելոցն։ Հատ մանանխոյ անուանեցաւ, վասն զի

փոքրկացուցանէ զինքն և զիջանէ ըստ բնութեան մերոյ 'ի սկզբան հաւատոյն. և ապա յորժամ յաճախ հաւատոց մերոց մտանելով 'ի խոր անկցի, երկնաբերձ 'ի վերայ մեր ամբառնայ 'ի բարեպաշտութեանն և յիմաստութեանն ջեռնուլ։ Որդին անուանեցաւ, վասն զի "Նա որդին եմ և ոչ եմ մարդ". որպէս զի զփայլատակեալ ա̃ծութիւնն իւրև զկարթ յորդն մարմնոյն ծածկելով և կենդանարարս այսորիկ 'ի խորս իջանելով՝ իւրև զգալ ձկնորս 'ի վեր ձգեաց՝ ընլով զգրեալսն "Ածցես զվիշապն կարթիւ"։ Մարդ կոչեցաւ, վասն զի ոչ 'ի հեշտութենէ և ոչ 'ի քնոյ, այլ 'ի կուսէ և 'ի հոգւոյն։ Նայց զի իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ, սիրելիք, անստահակ[1] մեղսասահման վարդապետութեանս աստանօր սկսեալ զճառ բանիցս մերոց, կնքեսցուք հոգւոյն սրբով. զի այլք եկեալ մեղրակաթ իմաստութ̃ ուսման մերոյ Յիսուսի Քրիստոսի զընդունարան սրտից մերոց լցուսցէ, և զբազմաբուղխ պտուղ բարեպաշտութեան իւրաքանչիւր ոք 'ի մէնջ բուսուսցէ, ոմն բերցէ երեսուն և ոմն վաթսուն և ոմն հարիւր. զի պսակ շնորհաց ընկալցի 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, որում փառք յաւիտեանս. ամէն։

## Ի ՓՈՐՁԱՆՍ ՕՐԻՆԱԿԱՆԻՆ

### ԵՒ Ի ԳԱՏԱՍՏԱՆԻՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՌ Ի « ՍԻՐԵՍՑԵՍ ԶՏԷՐ ԱՍՏՈՒԱԾ ՔՈ ՅԱՄԵՆԱՅՆ ՍՐՏԷ ՔՈՒՄՄԷ ԵՒ ՅԱՄԵՆԱՅՆ ԱՆՁՆԷ ՔՈՒՄՄԷ ». ՈՐ ԱՍԱՑԱՒ ՋԿՆԻ ՅԱՌԱՋ ԱՍԱՑՈՒԱԾԻՆ

Աստակք և ջանք առաջին վարդապետին եղեն, զի յիմում բուրաստանին տունկս արկի, զիմ անդս սերմանեաց, զիմ զգանձալի զտապանակն պատրաստեաց, որ ճշմարտութեամբ շնորհեաց նմա զգանձս։ Արդարև երանելի գանձ։ Ո՞ք իցէ որ զամենայն փառաւորութիւնս զկենաց աշխարհիս զմտաւ ածիցէ, և զամենայն ինչ լաւ զերևելիս համարիցի. այլ ոչ կարիցէ ինչ զառ-

1 Երկաթագիրն անստաւ հարցս։

նել յայսմ կեանս մեծ և երևելի քան զայսն ինչ, և ոչ առաւել քան զառաւշութիւն ուրախութեան։ Օ՜ իսկ որք 'ի մեծութիւնն յառաջացեալ են, նոքա երազոց և ստուերի նմանեն և կեան անհաստատութեանք և մեռանին անդյայս։ Նոյն արդ յայսմ իբր առ ած է. նորա վախճանն երանելի, կեայ և ուրախ է 'ի կենդանութեանն' յաւոյն համարձակութեանք. Թէպէտ և յառնեն խնչ նեղութիւնք կամ փորձութիւնք 'ի վերայ, սակայն միայն յուրախութեան են յաւուրն որ առ ած. հրաժարեալ յաշխարհէս ուրախութեանք երթայ առ այն որ 'ի կենդանութեանն յաւայր, վասն որոյ փութայր և ջանէր առ նա հասանել ըստ ընթացից վաստակոց իւրոց առնուլ զնահատակութեան պսակն։ Սարս և պատերազմ մեծ ածպաշտաց է կենդանութիւն, կոյս և կուսի բազմադէմ և բազմապատիկ մաքառել ընդ ցանկութիւնս, ընդդէմ կալ ցասման, հեռանալ 'ի ստացուածոց և յընչից սիրոյ, և մերժել և 'ի բաց ընկենուլ զհիւանդութիւն նախանձու, և յամբարտաւանութիւնս խորհրդոց չըմբռնել, սանձահարել զչարախօսութեան սովորութիւն, 'ի նեղութեան գոհանալ և համբերել, 'ի խորհրդոց թերահաւատութեանց 'ի բաց փախչել, զախակալութիւն 'ի բաց թօթափել, փախչել 'ի խառխօսութենէ, խոյշել 'ի սուտ երդմանէ, 'ի գայթակղութենէ հայհոյութեան համեստանալ։ Եթէ զոք 'ի վաստակ ածպաշտութեան տեսանիցես, լեր պատմիչ յօժարութեանք ոյոց զլխաւորն ած է, տէր և պատերազմակից իբրև զօրաւոր. քանզի գիտակ է վերհերկուքնութեանս մերոյ, որ տագնապ է դժուարութե։ Նոյս թէ 'ի կամս նորա հայեսցի փութոյ յօժարութեան, առաջնորդէ և ուղղէ նմա զդժուարին առ 'ի յաւալ նմա ած տէր. շնորհէ նմա զկամս մտաց իւրոց յորժամ հայի առ նա կամաւ ջերմարտութեան, մանաւանդ եթէ ոչ անփոյթ արարեալ արհամարհիցէ զմիկայեալ բարբառն ինչ՝ եթէ "Սիրեսցես զտէր ած քո յամենայն սրտէ քումմէ և յամէ անձնէ քումմէ"։

Ա՛յս զինչ իցէ՝ յամենայն սրտէ քումմէ։ Ա՛սան զի մի երբէք մասն մի 'ի կամաց նորա յայլ կողմն բանդագուշեսցի, այլ պարզ և ուղիղ ընդ նմա հայեսցի. յորժամ այսր անդր մտաց աչօք ոչ սայթաքիցէ, զի մի առ

ած և առ մեծամեծս, և մի՛ առ աղօթս և առ Ճգնաւորա-
կանս, մի՛ առ տեսս հոգևորականս և առ վայելչութիւնս
հեթանոսականն ցանկութեանց, յորժամ 'ի տեսս հե-
թանոսաց և 'ի ժողովս մարտիկոսաց, յորժամ 'ի խաչն
և 'ի մահուանն. քանզի աղաւնեաց զայն ած, ընդ որս
կամիս և զնա սիրել: Այլ ոչ սէր խոկ կոչի սուրբ. զի
Ճշմարիտ սէրն՝ այն որ ինքն ամենևին ակամբն, ամե-
նայն մարմնովն հայեցուածովք առ սիրելին իւր իջեն:
Նկարեա և դու քեզ այնպիսի իրս ըստ մարմնական մե-
րոյ բնութեանս զգեղեցկութիւն ցանկութեան սիրոյ,
և հայեաց ընդ նա և առնու 'ի նմանէ զշարժ և զհան-
գամանս՝ եթէ զիարդ հայեսցի ընդ գեղ նորա և բե-
րանաբաց խօսեսցի, մեր զնիցէ անձանձրոյթ, երկնչի և
զգենու ածէ՝ արտաքոյ քան զկամս սիրոյ նորա եղանել.
ընդ նմա յօղեալ և բևեռեալ է, ընդ նմա ժողովէ զըս-
տացուածս, զնա միայն բերէ 'ի խօսից ժամ 'ի մէջ,
ընդ նա միայն հաճեալ է յելս և 'ի մուտս իւր:

Այնպէս և զած պարտ է սիրել, նորա բանին միայն
հնազանդել, 'ի նորա վարդապետութեանն անձանձրոյթ
կալ, ընդ նորա կամսն բևեռել, զնորա հաճոյսն եւեթ
առնել, նմա ստանալ ստացուածս մեծութեան, և առ
նա բովանդակել զհայեցուածս մտացն, զնա ունել 'ի
խօսս իւր, զնա յիշել 'ի գործս իւր, ոչ բարկացուցա-
նել և երկիր պագանել, ոչ հեռանալ և մերձիլ, ոչ
պաշտամամբ պատուել և վարուք տրտմեցուցանել, և կամ
վարուք պատուել և վարդապետութեամբ կշտամբել,
ոչ զմասն մի սրտին առ ած որոշել և միւսն եւս մասն 'ի
կեանս կապաշտութեան: Այս թէ զմինն չխնեսցէ և
զմիւսն եւս քակեսցէ, զինչ շահեսցի աւելի, բայց միայն
աշխատութիւն. զի վաստակ ընդ վայր լինիցի չխնու-
ծոյն ընդ որում միաբանեալ է աւերած[1]. աշխատու-
թիւն քրտամբ լոկ պաուանց պտղոյ:

Արդ յոր կոյս զլեսցէ հատուցումն արդարութեան,
ասա ինձ. որպիսի պարգևաց արժանի արասցէ զոգին
որ ընդ ած հայիս յուսով. ոչ թոյլ տայ և ներէ յայլ
կողմն ձգել և թիւրել. եթէ այն պատուի արժանի էր,
ապա երկրորդն տանջանաց էր. և եթէ այն վաստահու-

1 Օրհնեալ մի տեսրաց. և միւսն տեսէք այս:

թիւն էր, ապա որ չէին 'ի նմին' այն յանցանաց էր : Աստ այսորիկ արժան է խորհել յերկուց 'ի բաժանել կամաց' որ առ մեզ ոչ միաբանեին . զի որպէս և զխորհ ընկալցի զմերոյ կամացս հայեցուածս յուսով առ նա, ըստ նմին և հատուցանէ զհատուցումն : Նոյնպէս և դատեսցես ըստ օրինակի հայելոյ զկերպարանս հատուցմանն . զի թէ թիւր սրտիւ հայեսցի ոք ընդ մեզ, ընկալցի և առ 'ի նմանէ թիւրութիւն զտեսիլն հատուցման :

Լուր մեզ որ աղաղակէ առ Հրեայսն և ասէ՝ "Եթէ ոչ խոտորեցիք, այլ գնացէք առ իս խոտորնակի և թիւր մտօք, գնացից և ես ընդ ձեզ խոտորնակի ". ըստ ձեր կերպարանաց կերպարանիմ, և ընդ ձերոց օրինակի օրինակիմ : Եթէ միով կողմամբ հայիք ընդ իս և միւով կողմամբ անփոյթ առնէք, ընկալջիք և դուք ըստ նմին օրինակի զհատուցումն առ յինէն : Ոչ եթէ կոչէք զիս տէր և ոչ առնէք զոր ասեմն, որպէս կոչեցից զձեզ և ոչ համարեցայց 'ի ժառանգս : Եւ այս առաւել քաղցրութեան նորա է, որ յառաջագոյն գիտէ ըղկամս, և ոչ ըստ կանխագիտութեանն դատի, այլ կըշտամբէ փորձութեամբք, զի մի ըստ իշխանութեանն[1] տանջիցէ, այլ ըստ վաստակոց երախտեացն հաւասրամիտ լինի : Եթէ եկիցէք առ իս խոտորնակի, եկից և ես առ ձեզ բարկութեամբ խոտորնակի : Եւ թէպէտ և ըստ հատուցմանէ[2] տանջանացն որ ոչ էր ձգեալ և ասացեալ, վասն ընդ բազում ամենայն երախտեաց մեծութեանն պարտ էր նոցա ամաչել, և զարթուցանել յամենայնի զմիտսն 'ի վեր անդ :

Ո՞ ոք զիւրև շրջեալ հայեսցի և ոչ գտանիցէ յամենայնի զերախտիս պարգևաց նորա . ո՞չ 'ի գործ ապաքէն նորա լուսովն լուսաւորիմք . ո՞չ 'ի գործոյ նոյնպէս և նորա գիշերովք դադարեմք . ո՞չ նորա սերմամբք կերակրիմք . ո՞չ 'ի նորա աղբերացն ըմպեմք . ո՞չ 'ի նմանէ կեամք ազատս[3] . ո՞չ ոսկւով 'ի նմանէ վայելեմք . ո՞չ առ 'ի նըմանէ զխորհուրդս տկարութեան մերոյ սնուցիչս և կերակրիչս գտաք զարուեստս . ո՞չ նորա անասնօքն ծառայիմք . ո՞չ նորա կենդանի անասնօքն զենեալ վայե-

1 Երկու օր. իշխանութեանն :     նոցին ոչ էր :
2 Մի օր. ըստ հատուցման պատճա-     3 Մի օր. ազատս . . . ո՞չ ձեռին :

լեռնք. ոչ 'ի յերկրի որ 'ի նմանէ եղեալ՝ կերնք. ոչ 'ի նորա հօտից ազատեսցուք պատուաճառս. ոչ յանցուցելոցն՝ նորա աղօթանուքեանցն սիրեսցուք : Ոչինչ մեծ կամ փոքր կարօտութիւն մեր յնմա զի սիրեսցի միով մատուցանել ըն-րով, կամ ով կարիցէ զառաւելական պատուին պատմել բանիւք, կամ այժմ կամ առ յապա որ լինելոց իցեմք : Ոյ որ անեսանելին՝ անչափ և անբաւ է, և որ 'ի ծածուկն՝ յոյժ մեծութիւն է. զի քան զերևելին առաւելութիւնս[1] տէրունականն չէ նուազ որ 'ի ծածուկն է : Մերձակ հիւանդաց 'ի ծածուկ բաղում անգամ զայս ամ-բժիշկ. քանզի նեղութիւնս զաղտնիս ջրէ 'ի ծածուկ. քանիցս անգամ ճանապարհորդաց 'ի ծածուկ յարձակեցան դևքն 'ի վերայ նոցա, և հալածեալք փախստական եղեն աներևոյթ տէրունական շնորհօքն, և օգնեալք և զօգնութիւնն ոչ գիտեին : Բազում անգամ և որ լար 'ի քուն կային՝ երբեմն եկեալ մերձենայր բանսարկուն և զենու ածէր հեղձուցանել, և զա-նայր անզգալին յետոյ անզգոյշ : Այլ անաղարտ[2] շնորհութեանն անպատում օգնականութեան նորա կարծեալ և արգելեալ[3], յիրաւի է պատուէրս այս առ ամենեսեան որ աղաղակէ թէ " Սիրեսցես զտէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ և յամենայն անձնէ քումմէ ": Ո ամենեսեան զմեզ յանուանէ սիրեաց յառաջագոյն, և պատուէր ետ մեզ զմիմեանս սիրել. քանզի սէր ծածկէ զբազմութիւն յանցանաց : Այլ մեծ առաքեալն Պօղոս եցոյց՝ եթէ 'ի հաւատոյն և 'ի մարգարէութենէն և 'ի վկայութենէն և 'ի լեզուաց շնորհացն սէր ոչ ունելով, ոչ ինչ մեծամեծս գործեսցեր* :

Տաճար ես, ասէ, սուրբ հոգւոյն և անդամ Քրիստոսի, և չէ պարտ զտաճար հոգւոյն սրբոյ և զանդամս

1 Օրինակ մի փէսութիւնս :
2 Մի օր. անաղգ. միւսն [illegible] :
3 Երկու օր. անարգելով :
* Ցայս վայր [illegible]

[illegible] Ցաճար ես. [illegible] Այլ [illegible]

՝Ընդ աւանել անդամ պոռնկի, քաւ լիցի. զի գրեալ է. "Պատուական է ամուսնութիւնն և սուրբ են անկողինք սոցա, բայց զշունսն և զպոռնիկսն դատի ա̃ծ": Ընդ զերծիր յորոգայթիցն յայնմանէ և մի լինիր ցանկասէր, այլ փափագեա երկնաւորին. զի ոչ է պարտ սիրողացն զՔրիստոս զերկնից արքայութիւնն և զուրախութիւնն արհամարհել վասն ոչնչիս այսորիկ և առօրեայ անցաւորիս: Չէ ինչ, ասէ, չարչարանք ժամանակիս համեմատ հանդերձեալ փառացն և անբաւ բարութեանցն և անճառելի կենացն պայծառութեանն զոր ակն ոչ ետես, զոր ոչ ոք կարէ բանիւ ցուցանել զանբաւ բարութեանցն վայելչութիւն զոր պատրաստեաց ա̃ծ սիրելեաց իւրոց, զայն զանճառելի և զանբաւ: Դու թէ թագաւոր լեալ էիր ամենայն երկրի որ ընդ արեգակամբս են, և իշխան ծովու և ցամաքի, պարտ էր քեզ զայն ամենայն արհամարհել և 'ի բաց ընկենուլ վասն երկնից արքայութեանն, զի ոչ համեմատի անցաւորս ընդ մշտնջենաւորն. Թող թէ սիրտ միայն կակղել և 'ի չար սովորութեանց հրաժարել և լսել պատուիրանացն ա̃յ:

Եւ արդ մի լիցի ձեզ, եղբարք, զթիկունս դարձուցանել յայնմանէ, որ յակնարկելն իւրում դողացուցանէ զանդունդս: Նա այսօր է, և վաղիւ մեռանել ունիմք. պարտ է երկնչել 'ի սոսկալի բեմէն և յահեղ դիմաց դատաւորին: Եւ մի կարծեր թէ ներումն ինչ լինիցի մեղօք վախճանելոյն, որ զմեղուցեալ հրեշտակսն խաւարային կապանօք արկանէ 'ի տարտարոսն՝ պահեալ յօրն դատաստանի, որ յաշակերտն Յուդա 'ի մեղուցեալն ոչ խնայեաց, այլ ընդ սատանայի դատապարտեաց: Իսկ արդարքն դողան յաւուր յայնմիկ յահեղ դիմաց դատաւորին. "Եթէ արդարքն հազիւ ապրին, ամբարիշտքն և մեղաւորքն ո՞ւր գտանիցին". և զինչ կատարած մեղաւորացն որ ոչ հնազանդեցան ա̃յ հրամանին: Մե՛ծ դողումն է, ով սիրելիք, զի ոչ թէ ընդ գործոցն միայն են պատիժք, այլ և դատարկ բանից և անդէպ խորհրդոց են պատիժք և պահանջումն: "Որ ասէ ցեղբայր իւր յիմար, պարտաւոր լիցի գեհենին": Ո՛վ թէ փոքր համարելոյ մեղացն այնքան պատիժս պատուհասի է, իսկ վասն մեծամեծացն զինչ պարտ է

տանել: Արդ. զարհուրեաց յահէն յայնմանէ, ով անդելի, յորժամ երկիրս ամենայն հրայրեաց լինի և հրդեհեալ հալին ամենայն արարածք:

Յիշեա և զարհաւիրս հոգւոյն մեղուցելոյ յաւուրն վախճանին, և զդողումն անբերելի յահեղ դիմաց եկելոց պահանջողաց ոգւոցն. յորժամ կերպարանք մեղացն եկեալ կայցէ առաջի, և նա ցանկայ ապաշխարել, և չէ ժամանակ. կամի խոստովանել, երկնչի և դողայ. կարկի լեզուն. կամի առնել ողորմութիւն, և չէ տէր ընչիցն. զի մեռելոցն մեռեալ են և ինչքն, դատարկ են և անշահ: Զայս ամենայն իմացեալ 'ի միտս իւր կոծի և ողբայ և ոչ ինչ օգտի. այլ ստիպեալ հանեն զոգին 'ի մարմնոյն զազրալի մեղօք և խայտառականօք. Զոր պարտ է այսօր առնել զմտաւ, զահեղ տագնապ աղէտիցն յիշել և զարհուրել, երկնչել և դողալ, և հնազանդել պատուիրանացն նոյ:

Յիշեա և զահագին օր ահեղ դատաստանին, յորժամ հնչումն փողոյն տագնապաւ և ահեղ բարբառ հրեշտակապետին զարհուրեցուցանէ զտիեզերս ամենայն, և զօրք հրեշտակաց յերկնից յերկիր ծաւալին, և զարքայն Քրիստոս եկեալ տեսանեսցէ և նստեալ յաթոռ դատողական, և աշխարհս ամենայն ժողովեալ 'ի տիեզերական հրապարակին, և ածեալ կացուցանեն զմեղաւորսն միգապատեալ առաջի աշխարհատես հրապարակին՝ առակ և ծանակ ամօթալից յահեղ դիմաց դատաւորին: Սոսկան դողալով ոսկերք մեղուցելոցն, դողայ մարմինն և կարկամի բերանն և կցի լեզուն 'ի քիմսն առ ոչ կարել տալ պատասխանի վասն անուղղայ գործոցն:

Արդ ած զմտաւ զահեղ արհաւիրս աւուրն այնորիկ, և մի ինչ ընդդէմ կամացն նոյ առներ, զի մի ընդ դատապարտեալս պատժիցիս, որ յետ սակաւիկ աւուրցն մահուն տանջանաց, զոր մի կարծիցես եթէ իբրև զատենի տանջանարանքս է զոր թագաւորք երկրաւորք ածեն 'ի վերայ մահապարտաց: Այլ անդ է դառն լալիւն և չարաչար կսկիծ և աղեխարշանք, յորդել գետոցն հրեղենաց որ հոսին 'ի վերայ, հալին և մաշին մեղաւորացն մարմինքն 'ի տարտարոսն և յաննշմար խաւարն 'ի մէջ որդանցն թունաւորաց, զոր ոչ ոք կարէ բաւել զչարչա-

բանս աղէտիցն և անմերձելի տանջանացն պատմել։ Օ՜ ի եթէ աշխարհ ամենայն ողբային մեծապէս՝ փայտք և քարինք 'ի ձայն աղէտի և ողորմ աշխարանաց, ոչ կարէին արժանապէս ողբալ զայնոսիկ, զգալ որ այնմ չարչարանաց և դառն մահու մատնին. զոր պարտ է ամենեն ածել զմտաւ, յիշել և զարհուրել, և զզուշութեամբ անցանել ընդ սահմանավրէժ և ընդ ալիս ծփանաց մեղսասէր կենաց աշխարհիս։

Օ՜ ի անքաւ են յաւիտենականքն, ով սիրելիք, և պատիր և երազք են երկրաւորքս և տկարագոյնք քան զսարդիոստայն։ Ահա այսօր է և վաղիւն ոչ ևս երևի տեղի նորա. զի երկուց աւուրց են կեանք աշխարհիս, և անքաւ են յաւիտենականքն, և տանջանքն անսպառ և ամօթն ահեղ։ Ահա այլ երկիր կայ անցանելոյ և ըղտէրն փառաց տեսանելոյ. սերտիւ զմիտս մեր քննեսցուք և ամենեն սրբեսցուք, զի յետ սակաւ աւուրց անդ եմք երթալոց առ ահեղ և անխաբելի Թագաւորն, որում գաղտնիքն մեր յայտնի են նմա և խորհուրդք մեր յանդիման, և ոչ ինչ ծածկի 'ի ճշմարտատես քննողէն։

Արդ երկիր յահեղ դատաւորէն. մի յերկար և աներևոյթ նետիւք Թշնամւոյն վիրաւորիր, և չար 'ի վերայ չարի յաւելուր, և յանկարծակի վախճանն քո հասանէ։ Փութա մերձենալ առ Տէր, և Տէր մերձեսցի առ քեզ։ Օ՜ ի գող է որ մահուն, գուցէ հասանիցէ քեզ տարաժամ. “Արթուն լերուք, ասէ Տէրն, զի ոչ գիտէք զօրն և ոչ զժամն„, որ հասանէ յանկարծակի յորժամ ակն ոչ ունիս, և անկանի 'ի վերայ քո որպէս զորոգայթ։ Երկիր յօրէն յայնմանէ, և փութա զըղջացիր զոր գործեցեր մինչև մերձ է ժամանակս. մի տըպաւորիր յերկրաւորս, զի 'ի մօտոյ փոխելոց եմք յերկնաւոր քաղաքն, և զոր ժողովեսդ՝ ամենեն յաշխարհի մնայ. զի ոչ ինչ բերաք յաշխարհ և ոչ տանել կարասցուք, մերկ եկաք յաշխարհ և մերկ երթալոց եմք։ Օ՜ մեռաւ ած զերկիւղ աւուրն այնորիկ, և մի մոռանար զհուրն որ ոչ շիջանի. փութա մեկնել 'ի ձախակողմանէն, և Տէր լինի ընդ աջմէ քումմէ։ Ի սէր հոգւոյն սըրբոյ պատուիրանին, և լուիցէ քեզ Տէր յաւուր դատաստանին. յիշեա զի գան դատաստանք յետ յարու-

թեան և խնդիրք ամենայն գործոց, և հնազանդեա երկիւղիւ աստուածային պատգամացն. զմտաւ ած ըղձողաց քոց բազմութիւն, և զսակաւն որոց մի պահանջեր. հայեաց 'ի կեանս աշխարհիս որ սուտ է, և երկիր 'ի սակաւլի բեռմէն և փութա զա̃ծ հաշտեցուցանել. հան և հալածեա 'ի քէն զհոգեկորուստ խորհուրդն սատանայի, զի վարձս առցես զարքայութիւնն ա̃յ բովանդակ 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, որում փառք յաւիտեանս. ամէն:

## ՅԱՂԱԳՍ ՆԵՌԻՆ

Զգօնթեցուք հանապազ զտիւ և զգիշեր և սպասեսցուք փրկչին որ գայ նա 'ի դատել զերկիր. սակաւն նեղութիւնքս զոր պատրաստեալ է որոց յառաջ ժամանակաւ մինչ գնայ նա յերկրէ, և ոչ անարգաթեամբ՝ այլ 'ի վերուստ յերկնից և հրաշալի փառօք. ոչ է նա արդ կալոյ Պիղատոսի առաջի, այլ անճառ փառօք գայ 'ի դատել զերկիրս: Նման նմին խօսի Նախանձայոյզն Եղիա և բարեգութն Ենոք ընդ ազգի մարդկան. լինի յաւուրսն յայնոսիկ սով սաստիկ և մեծ նեղութիւն՝ որպէս ոչ եղև 'ի սկզբանէ աշխարհի. և ինքն փրկիչն իսկ ասաց զայնմ նեղութենէ եթէ ոչ կարճէին աւուրքն այնոքիկ՝ ոչ կարէր ապրել ամենայն մարմին. այլ վասն ընտրելոցն կարճեցին վտանգաւոր աւուրքն, զի մի լիցի յաւէտ սրբոցն չարչարանքն: Յայնժամ սագարշի երկիր 'ի մեռելոցն հոտոց՝ որ յամենայն կողմանս նեխեալ ապականին զազրանան ամենայն դէմք երեսաց մարդկան 'ի նեղութենէ սովոյ և ծարաւոյ. ոսկի և արծաթ և գոյնագոյն պատմուճանք անկեալ դնի յաւուր յայնմիկ և ոչ ումեք օգնեն. մեռանին անողորմ ծերք և երիտասարդք և մարք ոչ օգնեն ծննդոց իւրեանց. ոչ պակասէ լալիւն 'ի հրապարակաց և 'ի տանց վասն սաստիկ չարեաց որ պաշարեսն զերկիրս. սայիշէ երկիր զգործն աղտեղութեան որ յամենայն ժամանակս գործեցաւ 'ի նմա, յայնժամ ասէ նեռինն մինչ ժողովուրդն առնն 'ի ճակատս մոլորութեանն նշան. սա-

մեզ օգնութիւն 'ի նեղութեան մեծի, զի մի տապառեալ լիցուք առ հասարակ ամենայնիքս. նա ոչ օգնել ինչ կարէ և ոչ զօրել, այլ բանիւք պատրէ զնոսա և մնոտի յուսով 'ի նմին ժամու ըմբռնեալ լինին սուրբքն 'ի ձեռս պղծոյն՝ որ կամի զնոսա պատրանօք խաբել. և յորժամ ոչ հաւանին սուտ պատրանաց նորա՝ ապա սպանանէ զնոսա առաջի բազմաց. խնդութիւն լինի մարգարէիցն սոցա 'ի տեսանել զմահ ճշմարիտ սրբոցն, գոչմամբ մեծաւ ասէ վկայն ամենեցուն. տեսէք ժողովուրդք զօրութիւն իմ մեծ. զի որք 'ի բազում ամաց անմահ լեալ էին՝ ոչ կարացին ապրել 'ի զօրութենանցս իմոց. ոչ ոք կարէ յաղթել զօրութեանս իմում, և ոչ թաքուստ ումեք է յերեսաց իմոց. և մինչ նա զայս խօսի 'ի լսելիս բազմաց, յանկարծակի լինի շարժումն ահեղ որոտման. 'ի նմին ժամուն խաւարեալ մաշին դադարմամբ պաշտմունք վկայքն 'ի յահէ սաստիկ գոչմանն: Որք 'ի հրէաստանի իցեն՝ նոքա փախիցեն 'ի լերինս, և որ 'ի տանիսն կայցեն՝ մի դարձցին 'ի տուն արտագալոյս. յայնժամ երևի յերկինս անճառելի փառօքն թագաւորն Քս, զալարբին երկինք յահէ փառաց նորա, և լերինք հալին իբրև զմոմ 'ի հրոյ. գետ մթագոյն և հրեղէն հոսի 'ի մերուստ 'ի վայր մաքրելով զերկիր յանօրէնութեանցս իւրոց., լուսափայլմամբ երևի նշանն արքունական 'ի զօրացուցանել զապաւինեալս 'ի նա. նա է պարծանք արդարոց, նոյն գովութիւնք սրբոցն, զի կապեցին զանձինս իւրեանց 'ի սէր նորա. թողին զմերձաւորս, թողին զմեծութիւնս, և ընկալան զնա ընդ ամենայնի. նովաւ ըզտէրն ծանեան, նովիմբ անմահացան և դասակից եղեն վերին զուարթնոցն. զայս նա 'ի դատել զոչ դրոշմեալս նովաւ, քանզի ոչ ծանեան զնա յաշխարհ յիմարութեամբն իւրեանց. ոչ կարացին ճանաչել զարքունական ներղանն թէ նա է փայտ կենաց և յաղթութեան նշան. վասն այնորիկ կոծին անմխիթար ողբով, որ արարածք ամենայն 'ի տեսանել զնոսա անհնարին սասանումն և դողումն լինի, զի շարժին ամենայն զօրութիւնք երկնից. դողումն և սասանումն ընդ տիեզերս լինի, և արտասուաց բնութիւնք 'ի գալստեան նորա փառացն. առաջի հրեշտակապետացն ընթանան բազմապայծառ զնդիւք, վերինն զօրականօք. փող սաստիկ հնչմամբ գոչէ 'ի գերեզ-

մանու արկէք մեռեալք 'ի հողոյ ընդ առաջ երկնաւոր Թա-
գաւորին , արկէք ուսուէք զՔրիստոս զերկնաւոր փեսայն
զի եկն եհաս հայրենի փառօք . արկէք ուսուէք զնշանն յաղ-
Թութեան նորա և զպահանջումն հատուցանողականութեանն .
արկէք ամենեքեան արդարք և մեղաւորք և ընկալարուք
զհատուցումն ձեր : Այսեն ընդարմացեալքն և նորոգին
հողացեալքն և զգենուն փութապէս զանապականութիւն մար-
մնոյն . եԹէ գազան զոք եկեր և Թէ ձուկն յօշեաց՝ ոչ
պակասէ մազ մի 'ի ժամուն յայնմիկ . քանզի որ զԱ-
դամն յարոյց ահաւոր ձայնիւ , նոյն զօրուԹիւն ամենայն
ժողովեսցէ զամենայն . ապա յառնեն մեղաւորքն բռ-
նաւորագոյն մարմնով , քանզի ներկեալ լինի գունով
գործոց չարեաց : Յառաջագոյն ես յառնեն պայծառ
մարմնով ընտրեալքն և բարձրանան յերկրէ լուսեղէն
ամպովք . Սրբել առաջինն որ և յառաջ խոկ մեռանին՝ ամ-
բարձեալ լինի 'ի հանդիպումն Տեառն . հարցանեն յայն-
ժամ զմխիթարանս ապա վերին զօրուԹիւնքն եԹէ ո՞վ են
սոքա որ գան երամովքն . և զարմացեալք լինելն ասելով
ընդ միմեանս եԹէ զի՞նչ բարի է սոցա գործեալ յերկ-
րի . զուարձացեալք իմն են և լուսափայլ մարմնով և ու-
նին նշան բարի յանձինս իւրեանց : Նոքա խօսին ասեն
մեր ընդ զօրուԹիւնսն վերինս , եԹէ սոքա ծառայք իմ
են և բարեկիր զինուորք . զանձինս իւրեանց ուրացան
և մեկնեցան յերկրէ և ելին 'ի խաչ վասն սիրոյ իմոյ .
և արդ ես տամ նոցա զոր պատրաստեալ է իմ զուրա-
խուԹիւնն անսպառ և զանանցուԹեան : Ապա և զայ-
լսեն հրեշտակապետքն 'ի Տեառնէ , ձայնաչեն զուարթուն
և ուրախանան անդէն . ասէ ցնոսա՝ դուք էք օրհնեալք
Տեառն , արդ ուրախ լերուք յուրախուԹեան ձերում :
Այլ 'ի նստել անմահին յաԹոռ փառաց իւրոց՝ դողա-
Թեամբ հրեշտակք սպասաւորին նմա . յառաջ կապի
սատանայն առանց հարցափորձի , և ընկենուն 'ի վիհս մե-
ծի տարտարոսի . չարայլուկ կապին և զօրք նորա ձա-
խողք որ մարտակիցք եղեն գործոց ապստամբուԹեան . ոչ
արժան է նմա 'ի դատաստան մտանել՝ զի չիք պատաս-
խանի առաջի Քրիստոսի : Նոյնժամ մեկնեալ լինին Թա-
գաւորին առաջի երկու ժողովուրդք պարսաւորացն և
որբոցն . կան 'ի յաջմէ նորա սուրբքն բարի յուսով , և
յահեկէ մեծ ամօԹով մեղաւորքն . անդ ասէ 'ի նոսա

դատաստանաւ զգեստն, և պատճառանջանաց անաշխատ լոյս խը-
րաքանչիւր գործոց: Յաւուր է ժամն և դատաւորն ա-
հեղ, զի չիք աչառութիւն անդ դատաւորին. ոչ ոք կա-
րէ ապրանել՝ և ոչ օգնել ոք կարէ ընկերի իւրում 'ի
վտանգից իւրոց: Ահ է և երկիւղ զօրեղանն ունի զամենե-
սեան. եթէ զինչ արդեօք հատուցումն լինիցի անձին.
պատրաստեն նստեալ լինի և դպրութիւնք բացին, յանդի-
մանել զամենայն գործսն իւրաքանչիւր. կայցեն զօրանն
խորշունս և ընկենուն 'ի հուր որ ոչ շիջանի: Ամենայն
դրունք փակին յուրախութեանց հարսանեացն, և արտաքոյ
մնան մերժեալքն կուսանքն. հնչէ յանկարծ նոցա ձայն
ուրախութեան մեծի հարսանեացն ուստի նոքայն ան-
կան բաղձալ հատաշանօք արտաքսելոց ողբալեօք: Այ-
մա եթէ տեսցես զուրախութիւնն զայն, և ոչ լինի խնդ
խնդիր տեսանել նոցա. քանզի ոչ վառեցին զողորմու-
թեան լապտերսն, իսկ զայն լսեն զահաւոր բարբառն ե-
թէ երթայք յինէն ես ոչ ճանաչեմ զձեզ: Ընդունայն
եղև նոցա ձայնել 'ի դուռն, և սնոտի վաստակք կուսու-
թեանն իւրեանց, անօթայք գնացին յերանելի դրացն՝ և ոչ
մերձեցան խաւար արտաքոյ նոցա: Յառաջ քան զդատաստանն
ընծայէ թագաւորն զերանական այսպիսի արժանաւորացն
սահմանեալ գնալով՝ եկայք օրհնեալք Հօր իմոյ ժառանգեցէք
զարքայութիւն զոր պատրաստեալ է ձեզ 'ի սկզբանէ աշխար-
հի. փոխանակ նեղութեան ձերոյ ընկալջիք հանգիստ՝ և
ընդ տրտմութեան ձերոյ ուրախ լերուք ընդ իս. այս անդաշ-
պտուղք են Ջանութեանց ձերոց և այս Ճաշակ քաղցրու-
թեան բաղձալ չարչարանացն վասն սիրոյն իմոյ: Կե-
րակրեցէք զփոքունս, և ուրախացարուք վասն իմ զանձինս
ձեր. ժամանակեալ են կարիքն և անապական ուրախու-
թիւնն զոր գանձեցէք ձեզ յաւիտենից յայսմիկ. ե-
կայք առէք 'ի ձեզ զփոխարէնս սիրոյն զոր նուիրեցէք
զաղքատաց սիրով, խաղաղութիւն արարէք ընդ ա-
մենեսեան և վասն այնորիկ կոչեցարուք իմ որդիք. ըն-
տացարուք սիրոյ տուրք 'ի նեղութեանն, վասն այնորիկ
առ իս մերձեցարուք: Ո՜հ ինչ հեշտալի կացցէ քան
զայն ձայնն լսել՝ հարկաւոր բարբառն առաջի վերին
զօրականացն: Հրեշտակապետքն ամենայն դասու թէ-
ր՝ կան շուրջ զթագաւորաւն, իսկ երանելեաքն և սուրբքն
պաշտօնականն յինքեանս և երկրպագեն փառաց թագա-

պայծառացեալ զարդուք ։ Անձինք իբրեւ զարեգական փայ-լեն եւ անձինք իբրեւ զլուսին , եւ աստղ քան զաստղ ա-ռաւել է փառօք ։ զանազանեալ լինելին կերպարանք եւ բազմապատկութեան զարդք փառաց նոցա ։ Կարմրագոյն լինելին մարգարտայոյն պատուիւք եւ պատուականաճանք իւրեանց , եւ անեղ շուշանազարդ կուսանքն պաճուճիւն ։ վասն զի այլ փառք արեգական եւ այլ փառք լուսնի , եւ այլատեսակ պայծա-ռեակ փայլէ ։ Նոյնպէս լինելոց է 'ի յարութեանն ար-դարոց , քանզի բազում է անդ օթեւանք որդոցն ։ Հաս խնկոց եւ խունկ բուրէ յամենեցունց եւ անուշահոտու-թիւն 'ի խորան սրբութեան ։ 'ի դաշտաւ վայրի է բնա-կութիւն նոցա , եւ բանակեալ շայեկան նորոգութիւն նո-ցա ։ պարածին նոքա 'ի լերինն սուրբ , եւ ուրախանան յԱս-տուածեան վերին ։ Հօս մի լինի անդ եւ մի հովիւ ճշմա-րիտ , եւ ընդ միով աջով պահպանեալք լինին ։ Որք այ-սուհետեւ սիրելիք զգուշասցուք անձանց եւ պատրաստ-եսցուք թօշակ ճանապարհին եւ իւղ անանուխք բարձ-ցուք . . .

## ՎԱՍՆ ՄԻՒՍԱՆԳԱՄ ԳԱԼՍՏԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ

Որք փոխելոց երկինք եւ երկրին երկինք նոր , եւ փառքն այն իբրեւ տուեր անցանէ , իբրեւ երազ երծանի մե-ծութիւնն , եւ ոչ ուրեք գտանի երկրաւոր համարձա-կութիւն ։ որ եւ աստեղք իբրեւ զտերեւ յերկնից ան-կանելոց , եւ ամենայն իբրեւ զծուխ անցանէ , եւ ոչ ու-մեք կարեն օգնել , ոչ հայր որդւոյ եւ ոչ մայր դստեր , ոչ այր կնոջ եւ ոչ կին առն , ոչ ծառայ տեառն ։ ոչ մե-ծութիւն ժողովելեալ , ոչ ոսկի եւ ոչ արծաթ , ոչ հան-դերձս պատուականք , ոչ տաճարք գեղազարդեալք , ոչ գեղք , ոչ բազմութիւն ընչից ։ այլ մեր գործքս եթէ բարի լինի եւ եթէ չար ։ Այլ բազցի նոր երկինք եւ նոր երկիր , եւ ահաւասիկ որդի ա̃յ գայ 'ի վերայ ամպոց երկ-նից զօրութեամբ եւ փառօք բազմօք , եւ իջանէ յԵրու-սաղէմ եւ 'ի Սիոն անկեալ ։ Այլ դնի երկոտասան աթոռ՝ երկոտասան առաքելոցն ։ եւ նոա դատէս փայլակն ծագի յարեւելից , եւ երեւի մինչեւ 'ի մուտս արեւու ։ եւ յահէ

նաջէ իւրմէ, և աշակերտն յառաջ քան զվարդապետն, և ամենեքեան սոքա կոչոց են առաջի ահաւոր դատաւորին, ուր իւրաքանչիւր գործք յայտնեսցին. վասն որոյ նորիկ առաքեալն Պաւղոս զայս պատուիրէ ասելով ամենեցուն. "Որդիք հնազանդ լերուք, ասէ, 'ի տէր. հարք մի զայրացուցանէք զորդիս ձեր. ծառայք հնազանդ լերուք տերանց ձերոց. տեարք հաւատարմութիւն պահեցէք 'ի վերայ ծառայից ձերոց, գիտասջիք զի ձեր և նոցա տէր գոյ յերկինս. զի ամենեքեան կոչոց եմք առաջի ահաւոր դատաւորին": Երկրորդ 'ի յօրէն յայտնմանէ, սիրելիք, յորժամ հանդերձէ հովիւն մեկնել զօդիսն 'ի յայծեացն, և կացուսցէ զօդիսն ընդ աջմէ իւրմէ, և զայծիսն ընդ ձախմէ, և ասէ ընդ այնոսիկ որ ընդ աջմէն իցեն. "Եկայք օրհնեալք հօր իմոյ ժառանգեցէք պատրաստեալ ձեզ զարքայութիւնն 'ի սկզբանէ աշխարհի, զի քաղցեայ և ետուք ինձ ուտել, ծարաւի և արբուցէք ինձ, հիւանդ էի և 'ի բանտի՝ եկիք առ իս": Արդ ած զմտաւ զզօրութիւն արդարոց, որ կայ առաջի հրեշտակաց առաքելոց և մարգարէից, և տէրն ասէ. "Եկայք օրհնեալք հօր իմոյ": Արդ դու ով մարդ, զի կաս որ զայս լսես՝ բաշխեա զինչս քո աղքատաց, զի որ աղքատին տայ՝ զայն տեառն տայ. որպէս և ասէ, եթէ ումեք արարէք 'ի փոքրկանցս յայսցանէ՝ զայն ինձ արարէք. զի որ կերակրէ զաղքատն՝ զՔրիստոս կերակրէ, նոյնպէս և որ հալածեն զաղքատն զինքն զՔրիստոս հալածեն. վասն այնորիկ կացուցանէ զնոսա ընդ ձախմէ իւրմէ. և որպէս նոքա հալածեցին զաղքատս, նոյն օրինակի հալածեսցէ զնոսա՝ երթայք յինէն անիծեալք 'ի խաւարն արտաքին, ուր լալ աչաց և կրճել ատամանց: Արդ ած զմտաւ, ով թշուառական, որ առաջի տիեզերական հրապարակին յանդիմանիս. ուր բիւրք բիւրոց հրեշտակաց, գունդք մարտիրոսաց, և դասք առաքելոց և մարգարէից և անթիւ բազմութիւն. անդ քննին աշխարհս ամ: Եւ ասիցէ դատաւորն. "Երթայք յինէն անիծեալք 'ի հուրն յաւիտենից զոր պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա, զի քաղցեայ և ոչ ետուք ինձ ուտել, ծարաւի և ոչ արբուցէք ինձ, մերկ էի և ոչ զգեցուցէք ինձ, հիւանդ էի և ոչ ողորմեցայք ինձ: Արդ զինչ պատասխանիս, ով թշուա-

ուսկան, զի հասոյ զպատճառս քո, ոչ ունիս պատասխա-
նի և ոչ մի ինչ ասել. եթէ ասացեալ էր միայն քեզ,
եթէ հաց ոչ ետուք ինձ ուտել, ունէիր ասել եթէ հաց
ոչ ունէի. հաց ոչ էիր և ջուր ոչ, և յարկս անգամ
ոչ ունիս արդեօք, նա և ասս ոչ ունիս երթալ 'ի տես
հիւանդաց, և որք 'ի նեղութեան էին վշտակից լինել
նեղելոցն. արդ ոչ ունիս պատասխանի և ոչ մի: Նաև
զմեռեալս մի հարկանել զնա լեզուաւ քո. զի եթէ օգնել
ոչ կարօտելոցն, սակայն մի տար նոցա ժամանակ հե-
ծել 'ի վերայ քո, քանզի հեծութեան նոցա վարձա-
պակի լսէ ա͞ծ. զի այնչափ արդարոց աղօթիցն լսէ ա͞ծ,
որչափ աղքատացն. զի աղքատն ոչ զոք ունի իւր պաշտ-
պարան, զի վասն չքաւորութեն չգարշի 'ի նմանէ. նա և
իւր ընտանիքն ատեն զաղքատն, և ազգականքն անարգս
առնեն, բարեկամքն չհային 'ի նա, դրացիքն ծաղր առ-
նեն, ամենայն ուրեք արհամարհեալ են, և ամենայն ու-
րեք անօգնականն է, բայց միայն զա͞ծ իւր օգնական. վասն
այնորիկ լսէ նմա ա͞ծ և հատուցանէ այնոցիկ որ լքեն
զնոսա: Գիտէր մարգարէն Դաւիթ եթէ վարձապակի
լսէ նոցա ա͞ծ և ասէ. ծանեայ զի առնես տէր դատաս-
տան աղքատին և իրաւունս տնանկին, և զկապեալսն
իւր ոչ արհամարհեաց: Արդ գիտելով զայս ամենայն
սիրելիք, մի տար ժամանակ հեծել զքէն առ ա͞ծ. ե-
թէ ունիս հաց՝ տուր, և թէ այլ ինչ որ զկարօտութիւն
նորա մխիթարէ՝ մի արգելուր, և եթէ ոչ՝ սակայն աղէրս
բանիւք զմիտս նորա հաճեցո: Զգուշեա մի որոտմիլ ընդ
նմա, աղօթս մատո 'ի վերայ նորա. զի թէպէտ և 'ի
քեզ է թերևս, այլ մեղքն զոցեն մխիթարութիւն, և
եթէ առնես զայս առաւել քան զայնոսիկ որ արծաթ
և ոսկի տան՝ շահեցար զվարձսն: Մեծ երախտիք են սի-
րելիք, ոչ այնպէս առաքինին քաւէ զմեղս՝ որպէս ղո-
ղորմածութիւն, և ոչ մի առաքինութիւն հաւասարէ
նմա: Վասն այնորիկ աստուածային գիրն ասէ, թէ որ
ողորմին աղքատին փոխ տայ Աստուծոյ: Մարդոյ յոր-
ժամ փոխ տաս, նա յորժամ վճարել կամի զպարտսն՝
եթէ հնար լինի՝ զերեսս քո ոչ կարէ տեսանել. այլ ա-
ռաջի ա͞յ ոչ է այդպէս, այլ որ աղքատին տաս ա͞ծ իւր
կոչէ, և ձեռնատու լինի հաճեալ: Ոչ փոխն զոր ետուր
աղքատին, փութայ լուծանել զերաշխաւորութիւնս

քո, և ոչ լոկ հատուցանէ, այլ բազում պատուով և բազում օրհնութեամբ. ոչ միայն զպարտսն լուծանէ և 'ի բաց մերժէ' զոր ետուր աղքատին, այլ յառաջ կոչէ և ժառանգակից իւր առնէ. «Եկայք, ասէ, օրհնեալք Հօր իմոյ ժառանգեցէք զարքայութիւն զոր պատրաստեալ է ձեզ յառաջ քան զաշխարհս»: յորժամ դու զաղքատն ընդ յարկաւ քո մուծանէիր, ես զարքայութիւնն պատրաստէի քեզ. յորժամ դու հիւանդաց և որք 'ի բանտի էին այց առնէիր, մի՞ կարծէիր եթէ ես անտես առնէի. այլ 'ի խոնարհ առնէիր զողորմածութիւնն և յերկինս առաջի իմ գտանէր այն ա̄մ: Քանզի ասէր հրեշտակն ց'Կոռնելիոս. ասէ՝ աղօթք քո և ողորմութիւն քո ելին առաջի իմ: Եւ զինչ արարին և զինչ պատրաստեցին ողորմածութիւնքն. իբրև զբարի կարապետ, զի յորժամ ելանիցես 'ի մարմնոյդ մի հոգար եթէ անտեղեակ ինչ իցես օթևանիցն, զի ինքն իսկ տանուտէրն ընդ առաջ ելանէ քեզ և ասէ, բարի և հաւատարիմ ծառայ մուտ յուրախութիւն տեառն քո, զի քաղցեայ և ետուք ինձ ուտել, ծարաւի և արբուցէք ինձ, մերկ էի և զգեցուցէք զիս, հիւանդ էի և 'ի բանտի և եկիք առ իս: Տեսանե՞ս ողորմածութեան զմեծութիւն, զի ոչ մի առաքինութիւն հաւասարէ նմա: Ոչ եթէ վասն իմ կուսութիւն պահեցէք, վասն իմ պահս պահեցէք, վասն իմ աղօթս արարէք. բայց միայն զայս ասէ եթէ քաղցեայ և ետուք ինձ ուտել: Մեծ է կուսութիւն և այլ առաքինութիւնք, բայց քան զողորմածութիւն նուաղ գտանի. պահեցին և զկուսութիւն հինգ կուսանքն, բայց յիմարս անուանեցան, զի ձէթ ոչ ունէին և ողորմածութիւն ոչ արարին, վասն այնորիկ արտաքս մնացին առագաստին, և փակեցաւ դուռնն իսկ. յիմարքն զկուսութիւնն միայն պահեցին, հանդերձ պահօք և աղօթիւք համարէին զանձինս իւրեանց եթէ այսու ամենայնիւ մտցուք յարքայութիւնն, ասէ ցնոսա տէրն՝ 'ի բաց կացէք յինէն անիծեալք 'ի հուրն յաւիտենական, ոչ գիտեմ զձեզ. ասեն և նոքա. ընդէ՞ր տէր, ո՞չ վասն քո մեծի խորշակի համբերեցաք, և զկուսութիւնս պահեցաք: Այո, ասէ, զկուսութիւն պահեցէք, գիտեմ ես, բայց աղքատին ոչ ողորմեցայք. յորժամ աղքատն զդուռն բաբախէր, երկիւղիւ և դո-

րախանձայնիւ աղերսէր՝ ողորմեա ինձ, 'ի սակս ապաշխարանիմ, 'ի սակս մաշիմ, մինչ իմ. ծառայ 'ի բանդիտրայս, աչք իմ 'ի ծփանս կան, չկալով հաց՝ մարմինս դողայ, ատամունքս բախբախեն, և երեսս խորշոմեալ են, և ամենայն մարմինս խորտակին 'ի ցրտոյս. արդ ողորմեա ինձ: Զայս ամենայն լսէիր և անտես առնէիր: Արդ զի՞նչ է ինձ եթէ զկուսութիւնդ պահեցեր. այսպիսի աղերս մատուցանէր քեզ, և ողբայր զայս անձինն իւրոյ, նա և զդուրսն ոչ բացեր նմա, և ոչ ողորմեցար աղաչանացն քո. վասն այնորիկ փակեցան ընդդէմ քո դըրունք արքայութեան. 'ի բաց կացէք, ոչ գիտեմ զձեզ. վասն այնորիկ յիմարք անուանեցան, զի զմեծն արարին, և 'ի փոքրէն յաղթահարեցան: Զոր օրինակ ճրագ որ լուցանէ և ձէթ ոչ արկանիցէ, ո՞չ ապաքէն զիւրաւ շիջանի: Նոյնպէս և կուսութիւն շիջանի եթէ ոչ ձիթոյն ողորմութեան կերակրեսցես: Որպէս եթէ տնկեսցէ ոք ծառ բարի և ջուր ոչ տացէ 'ի կարևոր ժամու՝ թառշամի և պտուղ ոչ տացէ, ո՞չ ապաքէն հատանի և 'ի հուր այրի. այսպէս և կուսութիւն եթէ ոչ ձիթոյն ողորմութեան ոռոգանիցէ թառշամելոց է: Իսկ յորժամ զարդարեսցես դու զնել հանդերձս պատուականս կամ այլ ինչ մարմնականս, ո՞չ ապաքէն ամենայն զարծաթն և երկաթս 'ի ճանապարհ հեռի, և աշխատութեան համբերես և 'ի խորշակի տօթոյ, և քաղցնուս և ծարաւիս և տեսես ամենայնի, և հազիւ եթէ կարես գիւտել կամաց քոց. և եթէ կարես գիտել, ոչ եթէ քանզի դու կամիս՝ նա տայ քեզ որ վաճառէն, այլ քանզի իւր հաճոյ լինի. երդնուս դու ոչ գնեմ այդչափ ծանրագնոյ, երդնու նա ոչ տամ այդքանոյ պակաս, և լինի 'ի մէջ ձեր նախ մեղք, և ապա վաճառ: Որպէս և Սողոմոն ասէ, եթէ 'ի մէջ տուրևառ վաճառացն մեր տուակն մեղաց. հարկ է միում տուս երդնուլ, նաև աղերք երկաքեանն. զի բնաւ ոչ որ վաճառն 'ի միում բանի կայ, և ոչ որ գնէն. քանզի որ վաճառէն մեծու ասէ և փոքու վաճառէ, և որ գնէն փոքու ասէ և մեծու գնէ. և այնչափ մեծի աշխատութեանց ստանաս, ոչ գիտես եթէ այրեսցի, զի մինչև 'ի քո տուն հասեալ իցէ՝ մեռանի եթէ անստուն լինի, և կամ կորնչի և կամ անպիտան ինչ գիւտեսցի եթէ հանդերձ լինի, և լինի կըր-

կլին աշխատութիւն ։ Իսկ վասն արքայութեանն երկնից ոչ կրես այդպիսի աշխատութիւն, ոչ ճանապարհ երթալ, ոչ խորշակ որ կքանէ, ոչ սաստկումն 'ի ցրտոյ, ոչ կասկած 'ի գողոց և ոչ այլ ինչ այսպիսի, այլ նստիս 'ի ներքնատան՝ գայ աղքատն և վաճառէ զարքայութիւն և զդրախտն. տուր հանդերձիկ ինչ մաշածոյ, և առ զարքայութիւնն այ̃, և ոչ ինչ խնդրէ 'ի քէն շատ, զի մի զաղքատութիւն 'ի մէջ բերիցես. քանզի և կամիս գնել զարքայութիւնն և զդրախտն. զկամելն միայն խնդրէ 'ի քէն ա̃ծ. տուր հացիկ, տուր բաժակ մի ջուր ցուրտ, տուր զինչ և կամիս, միայն գնեա զարքայութիւնն ։ Նմանող լեր այրւոյն այնմիկ որ զջուրն ետ, և զարքայութիւն երկնից ժառանգեաց ։ Եւ դարձեալ միւս օրինակ որ յաւետարանին յիշեցաւ, որ ինչ ոչ ունէր՝ բայց միայն երկու 'հարէժս, այսինքն երկու դանկ արծաթոյ, և զայն էարկ 'ի յաղքատանոցն և ժառանգեաց զարքայութիւնն ։ Ոչ եթէ բազում ինչս աք ծախէ յաղքատն և գնէ զարքայութիւն երկնից, այլ անձն ողորմած և սիրտ յօժարական. տուր առէ սակաւ ինչ աղքատին յօժար սրտիւ և սիրով, և ունիս պարտական զա̃ծ. զի որ ողորմի աղքատին, փոխ տայ այ̃ ։ Եւ երբ հատուցանէ զփոխն զոր առնու. յորժամ առատ բաշխես զինչս քո, և այդու երթաս մերկ զամենայն ինչ մատակարարեալ, և նա որ փոխն էառ ընդ յառաջ գայ քեզ, և գոհութեամբ հատուցանէ և բազում օրհնութեամբ. բարի և հաւատարիմ ծառայ ասէ, մուտ յուրախութիւն տեառն քո. այլ և բազմեցուսցէ և անցեալ պաշտեսցէ զնոսա ։ Արդ սիրելի յղարկեա յառաջ զինչս քո, և ապա դու գնաս զկնի, մի մնար աւուր վախճանին, աներևոյթ են կեանքս, ոչ գիտես եթէ երբ ելանես յաշխարհէս. որպէս գող գիշերի, այնպէս հասանէ մահ 'ի ժամու յորում ոչ գիտես. դու գնաս, և ինչ քո աստ մնայ. և դու ցանկանաս անդր շիթ մի ջրոյ, որ զովացուսցէ զշրթունս քո. և լսես զայն զոր մեծատունն լսաւ. և Քրիստոսի այ̃ մերոյ փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

---

## ԱՆԲՆԱԳԻՐՔ

